# ԲԱԶՄԱՎԷՊ

## ՕՐԱԳԻՐ

ԱԶԳԱՅԻՆ, ԲԱՐՈՅԱԿԱՆ

ԵՒ ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ

Jan.-Dec. 1868

ՀԱՏՈՐ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ

26th Year





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1868 – ՌՅԺԷ–ՌՅԺԸ



# ԲԱԶՄԱՎԷՊ

ՌՅԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՅՈՒՆՈՒԱՐ

## ԾԱՌ ԾՆՆԴԵԱՆ [1]

### Ա

*Մինչ զեղխութեան եւ ոսկւոյ ծարաւ, եւ խօլ մոլութիւն*
*Զամենայն կարգըս գըրաւէ. մինչ կործանի ամենայն,*
*Ո՛հ, զաւարընին ընտանեաց գէթ պահեսցուք քերթութիւն.*
*Ընդ աւրընտանդ սիրոյն կայ գոնեայ կայցէ ապաստան։*

*Ո՛վ դու Մուսայդ ընտանեաց եւ վաղեմի լաւութեանց,*
*Դու որ սիրես առկաւէն զաւուրս տօնից տէրունի,*
*Ընդ երգեհոն վեհաւէտ նախապատնից տաճարաց*
*Ե՛կ խառնեսցուք համաղոյդ զերգըս քնարի եւ սըրնգի։*

*Յաշխարհ վերացն աւանդից եկ մն անցցուք երկնքեան.*
*Առցուք ըղցուպ ըսպիտակ՝ բարեպարիշտ պանդըխտի.*
*Եկ ըղպատկաց մերոց փունջ տանել ի ծառ Ծընընդեան.*
*Մուսա, Թողեալ ըզՍենա, հասցուք զափունս Հռենոսի։*

1 Այս քերթուածս կարդացուեցաւ Բարիզու Արուեստասիրական ընկերութեան (Société Philotechnique) հասարակաց ժողովին մէջ Յնչ. և քերդողը (Henri Galleau), նոյն ընկերութեան քարտուղար, և Մուրատեան Վարժարանի մէջ գաղղիարէնի դասատու, այս գրութեանս համար մասնաւոր մրցանակ ընդունած է (Lauréat)։

Բ

Որ գեղեցիկ է օրս այս ի վաղեմին Գերմանիա․
Երբ միանգամ ի քաղաքս, երբ ի գեղջկայց դաշտորայ․
Ցեղեմնախառըն պըճնեալ պատուհանացն ապակիս
Զինչ տեսանես յերեկս այս․ միայն ըղձառ Ծընընդեան․
Ծըխրալի ծառն ընդ բընաւ … սըրահք խըռնին համերամ
Հրեշտակակերպ եւ խարտեաշ գըլխովք, աչօք ի յակնիւս …։

Ցնծուս ըղձեղ, ով մանկունք, յիւր ի խրախճանըն կոչէ․
Աստուածեղէն յաղթութեան իւրոյ ըսկիզըն ի ձէնջ է․
Առ ձեզ ծիծաղ իւր անոյշ, առ ձեզ, սիրուն բազմականք,
Զարմանագործ այդ մատեանք՝ պըճնազարդեալք պատկերօք․
Գանձք՝ զոր Ծընունդըն պահէ որոց վարինըն խելօք․
Ձեզ դուղնաքեայքս այս չըքնաղք, հնարից սըրտի հեթեթանք։

Մատիք յառաջ, եւ հանգոյն ի ձողաբարձըն հաւուց,
Մերկացուցէք զայդ ուղէշ ի բնաւ չըքնաղ իւր զարդուց․
Ոչ յայլ ինչ ձեռք, բայց յառնուլ, աչք ի հայել կըրթեցին․
Քաղեցէք ոն, ի ծառոյդ կենաց, մանկունք, քաղեցէք
Զոյգ ընդ պըտղոցն ըղձակունս որոց իցէքդ անձկաբեկ․
Ծառ Ծընընդեանըն միայն չպատրէ ըղյոյս բընաւին ..։

Դա լուսաւորն է այն ծառ, այդ իսկ եւ տունկն աստուածեան,
Ոյր ի Մըսուրն իսկ երբեմն արմատք բուսեալ ջողացան։
Փայտ փըրկութեան է ծառդ այդ․ զի յետ աւուր գեր ի վեր,
Ցորում ըզսերմն աճեցուն յինքն ընկալաւ Բեթլեհեմ,
Փայլս արձակեն շուրջ զոստովք, որք լի զաշխարհ ծածկեսցեն,
Երրեակ պըտուղք երկնագեղք․ այս են, Հաւատք, Յոյս եւ Սէր։

Ծառոյ Ծնընդեանն ի վերայ փայլատակէ միշտ աստղն այն
Որ ըզգարուց գիշերի հերձեալ ըզքօղ մըթութեան,
Լուսաւորել եկն ըզմարդիկ։
Աղէ մանկունք, զերդ երբեմն հովիւք եւ դասք զըւարթնոց,
Շուրջ պատեցէք ըզնովաւ, որ յիւր ժըմնոի խանձարրոց
Ի սիրտ լաւաց վառ անկեղծիկ։

Գ

Անդ ի պարիսպս որ փառօք Նուռեմպերկայ հըռչակին,
Երբեմն, ասեն, ի Մայանս եղեալ դիպուածըն վիպին,

Զոր Հռենոս, պատմիչն հին, միշտ մըտադիւր յեղյեղէ.
Եւ մինչդեռ նա յափունսն յար զրուցէ ըղձեալն ի նորոյ,
Ցերեկոյիս՝ յիւրն ի տան գերմանուհին մեծարոյ
Սիրէ հանոյն պատմել զայն ինքնին յիւրմէ կողմանէ:

Արդ մինչ ի յարկ պալատանց եւ յանպաճոյճն օթեւան,
Ի տաղաւար աղքատին, ի բնաւ տեղիս, ի սոյն ժամ՝
Ծառն հոլանեալ տարածէր ըզպերճութիւն իւր պայծառ,
Ի մըթագգած սենեկի վերնայարկին տըխրերանգ,
Ուր էնն Աստուած, տընանկին սիրող, հայր անուշակ,
Կին մի ինքնին միայնակ ըզծընընդեան պըճնէր ծառ:

Մինչ յօրինեալ զարդարէր ըզծառն համակ գեղեցիկ,
Ըզնուրբ այտիւքն հոսէին մեծ արտասուացըն կաթիլք:
Առ ինչ այդ սուգ ի հոգին, վասն էր արտօսր այն աչաց,
Մինչդեռ ուղէշն, յոր փայլեն նըւէրք ձօնիցդ համօրէն,
Խընձորք, ընկոյզք ոսկեփայլք, մոմք եւ զըրսակք ծաղկեղէն,
Ըզկըտաւեայ ծածկոցաւ կանգնեալ նազի գեղապանծ:

Ո՞ւմ հանդերձանքդ այդ իցեն, զորովք յածի անդադար
Ձեռն որ խառնէ յամենայն ըզգութ սիրոյն անըսպառ:
Անզուգական չքնաղ սէր: — Բայց ո՞ւր մանուկն արդ կայցէ:
Մա՜յր, ժամն հընչեաց աւադիկ... ժա՛մ զարմանաց հանդիսին.
Ո՞ւմ կաս մընաս դու աստէն... ահա զանգակ տաճարին
Ըզյաղթականն օրհնութիւն ի գիշերաց հողմ սըփռէ:

Աղէ ձայնեա դու զորդիդ. ձայնեա, տեսցուք մեք ըզնա:
Զի՜ գեղեցիկ է մանկիկն՝ երբ ձայն ի խինդ իւր բառնայ.
Արա զի յիւրն ըսքանչանս վայելեսցուք զուարճաբար:
Աւա՜ղ, նա ոչ է հեռի... բայց. ո՛վ հանդէս դառնադոյն.
Սիրասընունդդ այդ մանկիկ, այրւոյն միակ ճոխութիւն,
Ոչ եւս եկեալ հասանէ ի մայրականըն բարբառ:

Կայ անդ, եւ ոչ տեսանէ. բարբառ ի շուրթն եւ ոչ մի,
Առ ամենայն անըզգայ... ի խուն ճերմակն անկողնի.
Մարմինն անշարժ տարածեալ, եւ երեսացն հատեալ գոյնք.
Մանրիկ բազուկք խաչաձեւ, իբրեւ ի կերպ մաղթանաց:
Աչք կըկոցեալ ապիկար ի վերացումըն բըբաց,
Ուր ընդ առատ համբուրից այնքան հեղան արտասուք:

Եղկելի՜ մայր... ուրեմն այդ խարտեաշ գըլխովն է մանկիկ,

### Բ

Որ գեղեցիկ է օրս այս ի վաղեմին Գերմանիա․
Երթ միանգամ ի քաղաքս, երթ ի գեղջկայց դաշտօրայ․
Յեղեմնախառըն պըճնեալ պատուհանացն ապակիս
Զինչ տեսանես յերեկս այս․ միայն ըղձառ Ծընընդեան․
Սըխրալի ծառն ընդ բընաւ… սըրահք խըռնին համերամ
Հրեշտակակերպ եւ խարտեաշ գըլխովք, աչօք ի յակնիւ…։

Յիսուս ըղձեղ, ով մանկունք, յիւր ի խրախճանսըն կոչէ․
Աստուածեղէն յաղթութեան իւրոյ ըսկիզըն ի ձէնջ է․
Առ ձեզ ծիծաղ իւր անոյշ, առ ձեզ, սիրուն բազմականք,
Զարմանագործ այդ մատեանք՝ պըճնազարդեալք պատկերօք․
Գանձք՝ զոր Ծընունդըն պահէ որոց վարինըն խելօք․
Ձեզ դուզնաքեայքս այս չըքնաղք, հնարից սըրտի հեթեթանք։

Մատիք յառաջ, եւ համգոյն ի ձողաբարձըն հաւուց,
Մերկացուցէք զայդ ուղէշ ի բնաւ չըքնաղ իւր զարդուց․
Ոչ յայլ ինչ ձեռք, բայց յառնուլ, աչք ի հայել կըրթեսցին․
Քաղեցէք ոն, ի ծառոյդ կենաց, մանկունք, քաղեցէք
Զոյգ ընդ պըտղոցն ըղձաղկունս որոց իցէքդ անձկաբեկ․
Ծառ Ծընընդեանըն միայն չպատրէ ըզյոյս բընաւին․․։

Դա լուսաւորն է այն ծառ, այդ իսկ եւ տունկն աստուածեան,
Ոյր ի Մըսուրն իսկ երբեմն արմատք բուսեալ ջովացան։
Փայտ փըրկութեան է ծառդ այդ․ զի յետ աւուր գեր ի վեր,
Յորում ըզսերմն աճեցուն յինքն ընկալաւ Բեթլեհեմ,
Փայլս արձակեն շուրջ զօստովք, որք լի զաշխարհ ծածկեսցեն,
Երրեակ պըտուղք երկնագեղք․ այս են, Հաւատք, Յոյս եւ Սէր։

Ծառոյ Ծնընդեանն ի վերայ փայլատակէ միշտ աստղն այն
Որ ըզգարուց գիշերի հերձեալ ըզքօղ մըթութեան,
Լուսաւորել եկն ըզմարդիկ։
Աղէ մանկունք, զերդ երբեմն հովիւք եւ դասք զըւարթնոց,
Շուրջ պատեցէք ըզնովաւ, որ յիւր ժըպտի խանձարրոց
Ի սիրտ լաւաց վառ անկեղծիկ։

### Գ

Անդ ի պարիսպս որ փառօք կուդեմպերկայ հըռչակին,
Երբեմն, ասեն, ի Մայանս եղեալ դիպուածըն վիպին,

Ջոր Հըռենոս, պատմիչն հին, միշտ մըտադիւր յեղյեղէ.
Եւ մինչդեռ նա յափունսն յար զըուցէ ըզվէպն ի նորոյ,
Ցերեկոյիս՝ յիւրն ի տան գերմանուհին մեծարոյ
Սիրէ հանոյն պատմել զայն ինքնին յիւրմէ կողմանէ։

Արդ մինչ ի յարկ պալատանց եւ յանպաճոյճն օթեւան,
Ի տաղաւար աղքատին, ի բնաւ տեղիս, ի սոյն ժամ
Ծառն հոլանեալ տարածէր ըզպերճութիւն իւր պայծառ,
Ի մըթազգած սենեկի վերնայարկին տըխրերանգ,
Ուր էնն Աստուած, տընանկին սիրող, հայր անուշակ,
Կին մի ինքնին միայնակ ըզծընընդեան պըճնէր ծառ։

Մինչ յօրինեալ զարդարէր ըզծառն համակ գեղեցիկ,
Ըզնուրբ այտիւքն հօսէին մեծ արտասուացըն կաթիլք։
Առ ի՞նչ այդ սուգ ի հոգին, վասն էր արտօսր այն աչաց,
Մինչդեռ ուղէշն, յոր փայլեն նըւէրք ձօնեցդ համօրէն,
Խընձորք, ընկոյզք ոսկեփայլք, մոմք եւ պըսակք ծաղկեղէն,
Ըզկըտաւեայ ծածկոցաւ կանգնեալ նաղի գեղապանծ։

Ո՞ւմ հանդերձանքդ այդ լցեն, զորովք յածի անդադար
Ձեռն որ խառնէ յամենայն ըզգուշութ սիրոյն անըսպառ։
Անզուգական չըքնաղ սէր։ — Բայց ո՞ւր մանուկն արդ կայցէ։
Մա՜յր, ժամն հընչեաց աւադիկ ... ժա՜մ զարմանաց հանդիսին.
Ո՞ւմ կաս մընաս դու աստէն ... ահա զանգակ տաճարին
Ըզյաղթականն օրհնութիւն ի գիշերաց հողմ սըփռէ։

Աղէ ձայնեա դու զորդիդ. ձայնեա, տեսցուք մեք ըզնա։
Զի՜ գեղեցիկ է մանկիկն՝ երբ ձայն ի խինդ իւր բանայ.
Արա զի յիւրն ըզքանչանս վայելեսցուք զուարճաբար։
Աւա՜ղ, նա ոչ է հեռի ... բայց. ո՜վ հանդէս դառնագոյն.
Սիրասընունդդ այդ մանկիկ, այրւոյն միակ ճոխութիւն,
Ոչ եւս եկեալ հասանէ ի մայրականըն բարբառ։

Կայ անդ, եւ ոչ տեսանէ. բարբառ ի շուրթն եւ ոչ մի,
Առ ամենայն անըզգայ ... ի խուն ճերմակն անկողնի.
Մարմինն անշարժ տարածեալ, եւ երեսացն հատեալ գոյնք.
Մանրիկ բազուկք խաչաձեւ, իբրեւ ի կերպ մաղթանաց։
Աչք կըկոցեալ ապիկար ի վերացումըն բըբաց,
Ուր ընդ առատ համբուրից այնքան հեղան արտասուք։

Եղկելի մայր ... ուրեմն այդ խարտեաշ գըլխովն է մանկիկ,

Ցօր պարծէիրդ յաշխարհի, որով էիր երջանիկ.
Դա այդ որդեակ քո իցէ. աչք կափուցեալ, լեզուն փակ։
Պտուղն անհաս թառամի ի խիստ հողմոց հիւսիսին։
Վաղիւ, աւա՛ղ, ի վաղիւ անշուշտ ի հող տապանին
Դիցես խաչին առ երի ընդքս ուղէշ յաղթանակ։

Դ

Ցաշտարակին իւր կատար մինչդեռ զանգակըն ճօճի,
Մայրն յառաջեալ մերձենայ մօտ որդեկին իւր մահճի,
Եւ ջերմաջերմ համբուրիւք ըղպաղ ճակատըն ծածկեալ,
Ի բնիկ անունն յաւելեալ պէս պէս անուանըս սիրոյ,
Ջեռուցանել խընդրելով վերեան հատեալ ի գունոյ,
Եւ գըրկապլինդ ի ծոցին ըղցուրտ մարմինըն կալեալ.

— Ահա, տաէ, սէր քաղցրիկ, անդ է համայն. տես աղէ,
Զոր խընդրէիրն յինէն ծառ՝ զխաղդ պայծառ նըշողէ.
Ի՛բր ի կանաչ եղեւին փայլէն պըտուղք ոսկենման.
Տես, ամենայն ինչ անդ է. ժըմահեաց... «Ո՛վ մայր, ո՛վ սիրտ մօր.
Աղնըւական ի վըշտիդ, դու ոչ տեսեր ըղբոլոր,
Թէ, գիշերաց է պըտուղ. պըտուղ աւուրց նօթութեան...։

Սիրտ մեծ՝ գիտէ համբերել, եղանիլ զոհ, եւ կալ լուռ։
Անմարթ է քեզ մըտանել ի յարկ քոյին մենաւոր,
Եւ չըբերել ըզվայելս ընդ վերադարկաւադ աղքատին։
Որդիդ ինչ ոչ գիտիցէ զերկարօրեայ քոյ քըրտանց.
Բայց սակայն դու տեսցես. — «Ցխտեւ եւ կոյսըն գըթած,
Սիրուն մանկիկ, քեզ զիւրեանց չըքնաղ ընծայն պահեցին.

«Զի դու, հրեշտակդ իմ եղեալ, դարձցիս ի կեանս միւսանգամ։
Ի բաց բարձցի առ յինէն երջանկութիւն ամենայն,
Թէ հարկեցայց առանց քո մընալ միայն... Աստուած իմ,
Մանկիկ սըրդայդ, զոր քո կամք հըրաւիրեն ի յերկինս,
Զիս կարիցէ՞ լըքանել ի մահատիխ ցաւ վըշտիս,
Մինչ չեւ առ մայր իւր տուեալ գէթ ըղհամբոյր ողջունին։

«Սըրբուհի կոյս Մարիամ, ո՛վ իմ պաշտպան սըրբազգեաց,
Ոչ ներեսցես զի յորդւոյս իմմէ լըքեալ թողացայց,
Զի ի բաղկացս հեռասցի, եւ մանաւանդ յայս սերկեան,
Ցորում առեր դու ըզփորձ երջանկութեան մայրենի։
Սա ինքն իմ յոյս է միակ, սա սոսկ իմ գանձ ի յերկրի.

Դու ինձ զորդեակն իմ տուեր ... այժ, ի սէրդ հաւատամ:

«Մի՛ ոք երբեք տառապեսցէ, քաղցրիկ Յիսուս, զի քո ծառ
Նայես պաղեալ քան ըղձէմ ցըրտին զորդեակն իմ Թշուառ,
Առանց ընդ իս օրհնելոյ զանուն քո սուրբ գերապանց.
Մի՛ տառապեսցէ ոք ուրեք, ով դու Յիսուս, Մարիամ,
Թէ մայրն ի յողբս համակեալ ըղձերդ կարդաց ընդունայն:
Առ իս զորդեակն իմ տուեր. զի անկանիմ մայրամած ...:»

Այսպէս ծընողն արտասուեալ հեղոյր զաղօթսըն վերջին.
Մատուցանէր ի սըրտէն ըղպաղատանս իւր յետին.
Ոչ այլ ինչ գըր լըսելի, բայց թէ մահու լըռութիւն...
Կամէր եւ Յոյսըն խոնջեալ՝ ծալել զթեւսըն պարզուած.
Ահա յանկարծ եղեալ ձայն ի յաւերժից կամարաց, —
«Մեծ են հաւատք քո, ով մայր, տեսէր, որդիդ կայ ի քուն ...:»

Մանուկն ի վեր ամբառնայր զարտեւանունսըն կապոյտ,
Եւ տարածէր ըղբազուկս առ գըգուանացըն կարօտ.
Եւ, ով զարմանք մեծազանց հրաշից սիրոյն մայրենի,
Աչք իւր զըւարթք բերկրանօք, երեսքն ի դոյն կարմրերփեան,
Զըրքանչելեաքն յածէին յայն աղքատին օթեւան.
«Ո՛հ մայր, քանի գեղեցիկ ... աստէն երկին տեսանի ...:»

Այո, մանկիկ, մայրական սիրտ չէ ընդհատ ինչ յերկնէ.
Սա է միայն՝ զոր աստէն երբեք ոչինչ փոփոխէ.
Այնպէս խորին, զի Աստուած գիտէ ըզխորսըն միայն:
Ուսանելով ըզկենցաղս, տանուլք ըզփորձ իսկ վըշտաց.
Սակայն, ով մայր, չիք ինչ ցաւ որ ոչ անկցի 'ի մեռաց.
Մանուկն ի ծունկդ է այժմիկ, ապա ի սիրտդ՝ անապան:

ԹԱՐԳՄ. Հ. Ս. ԿԵՍԱՐԵԱՆ.

ՀԵՆՐԻԿՈՍ ԿԱՎՈՑ

---

## Բարոյական և քաղաքական տնտեսութիւն:

### Ա

### Խեղճ աւան մը:

1846ին աշնան գեղեցիկ օրերէն մէկուն մէջ, կիրակի օր մը հանդստեան պաշտօնէէն ետքը, Գաղղիոյ կեդրոնին մօտ նահանգի մը մէջ եղող Միրըպուաւանին ժողովրդեան մեծ մասը, իրենց երկրին գործատանը մէջ աշխատող հանդուցեալ գործաւորի մը մարմինը վերջին հանգստարանը տարեր էին:

Գերեզմանոցէն դառնալով և աւանին մէջէն անցնելով յուղարկաւորնե-

րը կամաց կամաց ցրուեր ու տուներնին քաշուեր էին։ Եկեղեցւոյն մօտ և կամ ալ հեռուն բնակողները ինչուան տուն ժողովրդապետին ընկերեր էին, որուն բարևնին տալով բոլորովին ցրուելնէն առաջ կանկ առեր ու հանգուցելոյն ազգականին հետ խօսքի բռնուեր էին, որ վաթսունըհինգ տարեկան ճերմակ մազերով մէկն էր, բայց կազմուածքին կորովը դեռ տեղը ըլլալուն և ոչ վաթսուն տարեկան կ'երևար։

Այս անձը Տիւբրէ բժիշկն էր, որուն անունը բոլոր աւանին մէջ մեծարանօք բերան կ'առնըցուէր։

Բանակի հին բժիշկ ըլլալով նշանաւոր եղած էր գիտութեամբն ու զինուորները մխիթարելու համար ունեցած եռանդեամբը, և կայսրութեան ամէն ճակատամարտներուն մէջ գտնուած էր։ Երեսունըհինգ տարուան հասակին՝ խաղաղութիւնը վրայ գալով՝ իր ծննդեան աւանը քաշուեր էր, ուր ընտանիքը աշխատութեամբ չափաւոր հանգիստ մը ձեռք ձգած կ'ապրէին։ Դառնալէն քիչ ետքը կարգուեր էր ազնիւ սիրուն և կիրթ այրի կնկան մը հետ, որ քանի մը տարի միայն պակաս ունէր քան զինքը և ուսկից երկու զաւակ ունեցեր էր։ Կնկանը ստացուածքը քիչ էր. սակայն եկամուտնին իրարու վրայ դնելով հանգստեամբ կրնային ապրիլ, և շատ ալ բարիք կ'ընէին։

Տիւբրէ բժիշկը կրնար անգործ ապրիլ, այսինքն ստացուածոցը հոգատարութիւնն ընելով. բայց բժշկութեան արուեստն ալ չէր ուզած ձեռքէ թողուլ, որ իր նմանեացը օգտակար ըլլալու համար ունեցած բնական հակամիտութիւնը գործածելու մեծ միջոց էր։ Եւ որովհետև կարօտ չէր՝ ձրի կ'աշխատէր, աղքատաց միայն այցելութեան երթալով, յորում ունեցած բարակ դիտմունքը դիւրին է ըմբռնել, և բաց 'ի ստիպողական հարկէն՝ մերձակայ քաղքին մէջ եղող արհեստակիցներուն կը խաւրէր վճարել կրցողները։

Տիւբրէ բժշկին ուրիշ առիթ մ'ալ պատճառ եղեր էր ազատութիւնը ձեռքէ չհանելու։ Բանակաց հետ Եւրոպայի այլ և այլ կողմերը պտըտելով ճամբորդութեան սէր կապեր էր, որով միանգամայն կրնար տնկաբանութեան նկատմամբ ունեցած փափաքն ալ լեցընել։ Հայրենի երկիրը դառնալէն ետքը սովորութիւն ըրած էր ամէն տարի քանի մը ամիս ճամբորդութեան ելլալ, թէ՛ նոր երկիրներ տեսնելու համար և թէ պատերազմի առիթով տեսածներուն վրայ աւելի լաւ գաղափար առնելու համար. և այսպէս Եւրոպայի մեծ մասը տեսած էր։

Ամէն տարի գարնան ճամբայ կ'ելլէր յանձնելով իր աղքատները բարեգործութեանը մասնակից ըլլալ ուզող բարեկեցիկ արհեստակիցներէն մէկուն։ Դէպ ուղիղ հետազօտել ուզած երկրին միջակէտը կ'երթար. անկից շատ անգամ ոտքով ամէն կողմը կը պտըտէր, մասնաւորապէս կանկ առնելով գեղերու մէջ, իսկ քաղաքներու մէջ կը կենար միայն հասարակաց օգտակար շէնքերու այցելութեան ելլալու համար։ Յիշատակարանները, թանգարանները և ուրիշ հետաքրքրական բաները չէր արհամարհեր, բայց քիչ ժամանակ կ'անցընէր անոնց վրայ, չէ թէ գեղարուեստից անզգայ ըլլալուն, այլ վասն զի աւելի ախորժ կը զգար մարդկանց բնաւորութիւնը և բարուց սովորութիւնները հետաքննելու. նաև մի և նոյն ժամանակ շատ մը տունկեր կը հաւաքէր և բարոյական դիտողութիւններ կ'ընէր։

Սակայն կամաց կամաց Տիւբրէ բըժըշկին գաղափարները սկսան ուրիշ ձև առնուլ. ամէն տարի 'ի դարձին իր երկրին վիճակը՝ այցելութեան եղած ուրիշ շատ գեղերուն վիճակին հետ կը բաղդատէր։ Խաղաղութեան հաստատուելէն ետքը անհամար տեղ կրնայ ըսուիլ հրաշալի փոփոխութիւններ կը տեսնուէր. բովանդակ գեղեր աւաններ քանի մը տարուան մէջ կատարելապէս յեղափոխուեր էին։ Ուր որ քիչ առաջ սակաւաթիւ ողորմելի ժող-

վուրդ մը խնդճութեամբ կ'ապրէին, շատ մը բնակչաց հանգստեամբ ապրելու տեղ եղած էր. աշխատութեան և գործունէութեան շառաչն ու աղաղակը կը լսուէր այն տեղերը ուր երբեմն վայրի թռչուններ միայն դաշտաց և անտառաց լռութիւնը կ'ընդհատէին: Մշակութեանց կատարելութիւնը և ճարտարութեանց զարգացումը կարող եղեր էին այս այլակերպութիւններն ընելու:

Միրըպոյ աւանը գոգցես այս հանրական շարժման մէջ թէպէտ և քիչ հեռու էր մասամբ մը ճարտարութեան մէկ կեդրոնէն, բայց դիրքը Եւրոպայի շարժման շրջանէն դուրս անկիւնի մը մէջ կղզիացեալ ըլլալով՝ ճնշեալ մնացեր էր: Տիւբըրէ բժիշկը անկարելի էր որ այս բանս չըմբռնէր. մտածեց թէ արդեօք քաղաքակցացը բարիք ընելու միակ միջոցը ձրի աղքատներն հոգալն էր: Մտաբաց մարդու մը համար որ այնչափ բան տեսած և շատ աղէկ դիտողութիւններ ըրած էր, պատասխանն յայտնի էր:

Ուստի ապրելու կերպը փոխեց և թէպէտ բոլորովին մէկդի չձգեց իր ախորժած ուսմունքները՝ բայց սկսաւ քիչ զբաղիլ անոնց. տարեկան մեծ ճամբորդութիւնները թողուց և միայն կարճ արշաւանքներ սկսաւ ընել, որոնք միշտ օգտակար վախճան մը ունեցան: Ուրիշ պատճառի մը համար ալ ստիպուած էր իր ընտանիքէն քիչ հեռանալ. զաւակները մեծցեր էին և անոնց դաստիարակութիւնը հետզհետէ խնամոցը նիւթ կ'ըլլար:

Տիւբըրէ բժիշկը այն ատենէն ետքը բովանդակ մտածութիւնը իր երկրին ծաղկելուն սկսաւ բանեցնել, և արդի բարելաւութեան վիճակի մը ջանալով հասցընել՝ միտքը դրաւ իր հայրենեացը բարեգործն ըլլալու:

Միրըպոյ աւանին դիրքը սքանչելի էր, բայց բնակիչները չէին գիտեր շահաւոր ընել զայն: Գետակ մը մէջէն անցնելով՝ որ քիչ մը վերով նաւարկելի էր, երկիրը երկու մաս կը բաժնէր. բայց բնակութեանց մեծ մասը առուակին ձախ կողմն էր և ոչ շատ բարձր բլրան մը մեղմ զառ'ի վայրին վրայ որ դէպ'ի գետակը կ'իջնար: Աւանին մէջ տեղը զառ'ի թափը աւելի ուղղորդ էր. իսկ եկեղեցւոյն առջևը ապառաժուտ եզերքով սարատափ մը կը ձևանար, ուսկից շրջակայ կողմանքը շատ աղուոր կը տեսնուէին, և մանաւորապէս երկրին միւս մասը. և այս գեղեցիկ տեսարանին պատճառաւ աւանին անունը կոչուեր էր Միրըպոյ, որ է Գեղադիտակ:

Տուներուն ետևը պզտիկ դաշտ մը կար հիւսիսային կողմանէ անտառախիտ բլրոց շղթայով ծածկեալ, որոնք աւանը ցուրտ քամիներէ կը պատսպարէին: իսկ տուներուն առջևով գետակը մահկաձև էր, որուն կեդրոնին վըրայ էր եկեղեցին. և փարսախ ու կէս հեռաւորութեամբ արևմտեան կողմանէ գետակին ափանցը վրայ պզտիկ քաղաք մը կար, որ նոյնպէս բլրան մը գլուխը ըլլալով հորիզոնին տեսքը կը խափանէր, և որուն եկեղեցւոյն ծրագիծը երկնից կապոյտին վրայ կը նկարուէր:

Գետակին ձևացուցած աղեղնաձևին ներքին կողմը դաշտ մը կար գոգցես մէկ փարսախ լայնութեամբ, որ արևելեան և արևմտեան կողմանէ միանգամայն բլուրներու կրկնակի շարքով շըրջապատեալ էր, որոնք յառաջելով դէպ'ի գետը կը խոնարհէին, և երբ հարաւային կողմանէ իրարու կը մօտենային, ակնահաճոյ էր անոնց գագաթանց և կողերուն վրայ եղած մայրիները դիտել: Սակայն չէին բոլորովին միանար իրարու հետ, այլ մէջերնին հովիտ մը կը մնար՝ ուսկից առու մը կը վազէր, որ մարդուս աչքը շնորհալից ոլորապտոյտ ընթացքը դիտելու կը հրապուրէր, և դաշտին մէջէն անցնելով կու գար գրեթէ աւանին կեդրոնին վրայ գետակին մէջ կը թափէր: Այս առուակին ջուրը միշտ առատ էր և տեղ տեղ ալ՝ ուր գրեթէ ամենևին ընթացք չունէր՝ շատ խոր. տեղ տեղ ալ վա-

կուածքը երաշտաստան էր և ջրվէժներ ունէր զորոնք չէին գիտեր օգտակար ընել:

Մանաւանդ թէ այս առաւելը առանց մեծամեծ յաջողութեանց դուռն ըլլալու տեղ հարուած և մնասուց պատճառ սեպուած էր: Ցած թումբերուն մէջ ամփոփեալ ջուրերը անձրևներէ ետքը շատ անգամ դաշտին մէջ կը ղեղանէին, որ ճախճախուտ եղաեր մը կը դառնար, և փոխանակ առատ խոտ հասցնելու՝ կնիւնով և ուրիշ ջրային մնասակար խոտերով կը ծածկուէր: Ջուրերը երկրին ներս դացած մասերուն վրայ լճանալով ժանտահոտ նեխութեամբ օդը կ'ապականէին և աշնան ժամանակ պարբերական ջերմեր կը պատճառէին, որ ժողովրդեան մեծ ջարդ տալով կը ստիպէր որ երթան գետակին միւս կողմը բնակին: Ուստի այս մարդադետինը որ բանիրուն ձեռքի մը կարօտ էր արդասաւոր ըլլալու համար՝ տեսակ մը ամայութիւն մարդուս աչքին առջևը կը բանար, զոր կ'ընդհատէին սակ քանի մը ղողիր ոչխարներ:

Աւանին եւս եղող սարահարթին հողը ընդհանրապէս բերրի էր, բայց անդադար մի և նոյն տեսակ նիւթոյ մշակութեամբ ուժը կորսնցուցած ըլլալուն՝ բերքը շատ վտիտ էր: Բնակիչք իրենց դաշտերուն խեղճութեանը պատճառաւ խար չունենալով և հետևաբար կենդանի չպահելով, նաև առուեստով դաշտերը լուցնելն ալ չըգիտնալով, չէին կրնար երկիրնին պարարտացնել ու բեղնաւորել: Ամէն տարի այն երկիրներուն մէկ մասը անցան կը թողուին, և այսպէս կը կորսնցնէին այլ և այլ տարիներու բերքերուն եկամուտը: Մասնաւոր մշակութեանց տեսակներուն անգէտ էին, որոնցմով երբեմն երկիր մը բոլորովին կը կենդանանայ:

Միրըպոյի մէջ մնացած հինգ հարիւր հոգին աղքատութեամբ կը տանջուէին անանկ երկրի մէջ որ երեք չորս անգամ աւելի բնակիչ կրնար սնուցանել. մշակութեան աւանդական ոճերէն չէին խոտորիր: Երկրին բովանդակ բերքն էր ցորեն, հաճար, վարսակ, գետնախնձոր, արեգդէմ այգիներէն հանուած քիչ մը գինի, որ համ չունէր անխնամ կերպով շինուած ըլլալուն համար, ոչխարներու անպիտան տեսակէ կտրուած բուրդ, և քիչ մ'ալ տեղւոյն գործածութեը համար պէտք եղած կանեփ. ասոնց հետ քանի մը հասարակ ընդեղէններ, որոնք պարզ մէկ երկու տեսակ ըլլալով միակերպութեան պատճառաւ պէտք եղած կայտառ առողջութիւնը չէին տար. նաև ծառերու անպիտան տեսակներու վրայ անխնամ կերպով մեծցած անհամ և թթու պտուղներ:

Այս բերքերը երկրին տարածութեամբն համեմատ հազիւ կը բաւէին բնակչաց մէկ պզտիկ մասին: Քիչ մը ցորեն, հաւկիթ, քանի մը հաւերէն, քիչ անգամ պտուղք և ընդեղէնք՝ բովանդակ իրենց առակ վաճառելու միջոցներն էին, որուն պէտք ունէին տուրք վճարելու կամ անհրաժեշտ պէտք եղած նիւթերը գնելու համար:

Բաց'ի որմնադրէ, հիւսնէ, սատաղձագործէ և դարբնէ մը, կամ քանի մը ուրիշ ասոնց նման արհեստաւորներէ, առանց որոց որ և իցէ ժողովք մարդկան քաղաքականացեալ ազգի մը քով չեն կրնար ըլլալ, Միրըպոյի մէջ ամենևին ուրիշ արուեստ չէր տեսնուեր: Իսկ գործունէութիւն և աշխատութեան ոգի բնաւ չկար, այլ ընդհակառակն անհոգութիւն, անզգայութիւն և թըմբրութեան նման ծուլութիւն և անյաղթելի դժկամակութիւն մը տիրած էր ընդդէմ ամենայն բանի որ սովորութենէ դուրս էր և կամ անհրաժեշտ կարևոր չէր:

Ասոր վրայ աւելցնենք հասարակօրէն աղքատին սրտին մէջ տեղիք գըտնող նախանձ մը քան զինքը լաւագոյն վիճակի մէջ գտնուողներուն նկատմամբ. վասն զի աղքատները ցաւալի սխալմամբ զօգցեա կը կարծեն թէ այլոց ստացուածքը իրենցմէ յափշտա-

ծուած է . չէին գիտեր թէ հարստու-թիւնը՝ հարստութիւն կը ծնանի, և թէ հասարակաց աղքատութիւնը իւրա-քանչիւր մարդու յարատև թշուառու-թեանը պատճառ է :

Միրըզայի բնակիչները ծուռ աչքով կը նայէին միշտ այն քաղաքակցաց վը-րայ որոնք երկրին կալուածները կ'ու-զէին գնել . փոխանակ ուրախանալու դրամագլխոյ ներս մտնալով ստացու-ծոց աժէքին շատնալուն և երկրին կեն-դանանալուն, եղած հետամտութեանց վրայ կը նեղանային, որով կալուածնե-րուն գինը կը տուգնար, որոնց մէկ դոյզն մասն ալ ձեռքերնէն չէին ուզեր հանել . կարծես թէ իրենց երկիր կը պակսէր, մինչդեռ ունեցածներնուն և ոչ կէսն անգամ մշակել գիտէին : Մի-րըզայի գեղեցկութեանը պատճառաւ հոն եկող բնակող քաղաքացիներն ալ ստիպուեր էին ելլալու երթալու սա-տիկ բամբասանաց նիւթ ըլլալնուն հա-մար : Այսպէս աւանը դրամագլխոյ աճմանն հետ կորանցուցեր էր այն օգ-տակար օրինակներն ալ զորս վարժ և արուեստագէտ կալուածատէրք կըր-նային տալ :

Աւանին շատ տուներուն միակ ե-րևոյթը բնակչաց խեղճութեանն ու հա-սարակ վիճակին՝ յայտնի նշան էր . ին-չուան ոմանք անասնոց գոմը կը նմա-նէին՝ քան թէ մարդկանց բնակարան . նեղ հիւղեր էին և դռնէ զատ ուրիշ լուսամուտ չունէին, և ատոնց մէջ կ'ապ-րէին խոտոյ վրայ խռնուած հայր մայր և մանչ ու աղջիկ ամէն հասակէ տղաք-ներ . մերկ գետին էր բնակարանին յատակը և չորս կողմի երկրէն աւելի ցած ըլլալով յարատև խոնաւութեան մէջ էր . և այս բանս օդոյ և լուսոյ պա-կասութեանը, տեղւոյն աղտոտութեա-նը և կերակրոց անբաւականութեանը վրայ աւելնալով՝ տղաքները վատա-ռողջ և նիհար կ'ըլլային, և զանազան հիւանդութիւններով կը մեռնէին կամ կազմուածքնին կը տկարանար :

Ցանկերուն դուռը ամէն տեսակ աղ-
ա[illegible]ող և աւելցուքի [illegible] մէջ

էր, ամէն դի մի էին լճացեալ ջուրեր, ապականեալ ճահճախուտներ՝ որոնց մէջ կը վաղէր մարդկանց և անասնոց ջրվոթին հետ աղբիւններուն քամուած ջուրը, և իրենց նեխեալ արտաշնչու-թիւնը զմարդ կը զզուեցնէր . այս էր աւանին տեսարանը :

Զկային նաև կանանչազարդ բանջա-րեղինաց պարտէզներ որոնցմով շատ աւաններ հիանալի տեսարան մը կ'ու-նենան, և ոչ ածուներ կամ ծաղկոց-ներ որոնք բազմաթիւ գեղացւոց բնա-կարաններուն չորս կողմը պատելով, նշանակ են միանգամայն իրենց բա-րեկեցութեանը և ըստ բաւականի ազ-նուական վայելից ախորժ ունենալուն : Հազիւ քանի մը հիւղերու քով կը գըտ-նուէին հինգ կամ վեց կարկամեալ պտղատու ծառեր, և ընտանի կենդա-նեաց յարձակմանը դէմ այս և այն կողմանէ փտտեալ ցանկով մը պատու-պարեալ կաղամբի երկու կամ երեք ածու :

Աւանին մէջ կեանք, գործունէու-թիւն, շարժմունք ամենևին չկար . ըն-նաւ աշխատասէր և մտացի ժողովըր-դեան նշան չէր տեսնուեր, որոնք դանա-դան զբաղմամբք աւելի հանդստեամբ իրենց պէտքը լեցնելու հնարքը կը ջանան գտնել : Եթէ մէկը ներսը պտը-տելու ըլլար ուրիշ բան չէր լսեր բայց եթէ քանի մը շատախօս կանանց թըշ-նամանաքար կանչուըռտուքը, կամ հա-սարակաց ճամբաներուն վրայ ձգուած և խաղացող տղայոց աղաղակը, վասն զի Միրըզայի մէջ նոյն ժամանակը դպրոց ամենևին չկար . ծնողք իրենքին անկիրթ ըլլալով չէին ըմբռներ թէ որ-չափ օգտակար էր տղայոց դաստիա-րակութիւն տալը . անհրաժեշտ հարկ կը սեպէին քովերնին պահել որպէս զի իրենց օգնեն . և սակայն անոնք ա-մէն օր փողոցներու մէջ կը թափա-ռէին և յափշտակութիւններ կ'ընէին . ոմանք աղուոր օդերով ժամանակնին հասարակաց արօտներու մէջ նիհար եզ մը արածելու կ'անցընէին, կամ քանի մը ոչխար տանած դէպ'ի ծառա-

դուածքը երաշխաւոր էր և ջրվէժներ ունէր զորոնք չէին գիտեր օգտակար ընել։

Մանաւանդ թէ այս առուակը առանին մեծամեծ յաջողութեանց դուռն ըլլալու տեղ հարուած և վնասուց պատճառ սեպուած էր։ Ցած թումբերուն մէջ ամփոփեալ ջուրերը անձրևներէ ետքը շատ անգամ դաշտին մէջ կը դեղանէին, որ ճախճախուտ եզերք մը կը դառնար, և փոխանակ առատ խոտ հասցնելու՝ կնիւնով և ուրիշ ջրային վնասակար խոտերով կը ծածկուէր։ Ջուրերը երկրին ներս դացած մնալուն վրայ լճանալով ժամանակաւ նեխութեամբ օդը կ'ապականէին և աշնան ժամանակ պարբերական ջերմեր կը պատճառէին, որ ժողովրդեան մեծ ջարդ տալով կը ստիպէր որ երթան գետակին միւս կողմը բնակին։ Ուստի այս մարգագետինը որ բանիբուն ձեռքի մը կարօտ էր արգասաբեր ըլլալու համար՝ տեսակ մը ամայութիւն մարդուս աչքին առջևը կը բանար, զոր կ'ընդհատէին սոսկ քանի մը զաղիր ոչխարներ։

Աւանին ետև եղող սարահարթին հողը ընդհանրապէս բերրի էր, բայց անդադար մի և նոյն տեսակ նիւթոյ մշակութեամբ ուժը կորանցուցած ըլլալուն՝ բերքը շատ վտիտ էր։ Բնակիչք իրենց դաշտերուն խեղճութեանը պատճառաւ խոտ չունենալով և հետևաբար կենդանի չպահելով, նաև արուեստով դաշտերը լաւցնելն ալ չըգիտնալով, չէին կրնար երկիրնին պարարտացնել ու բեղնաւորել։ Ամէն տարի այն երկիրներուն մէկ մասը անցան կը թողուին, և այսպէս կը կորանցնէին այլ և այլ տարիներու բերքերուն եկամուտը։ Մասնաւոր մշակութեանց տեսակներուն ադէտ էին, որոնցմով երբեմն երկիր մը բոլորովին կը կենդանանայ։

Միրըպոյի մէջ մնացած հինգ հարիւր հոգին աղքատութեամբ կը տանջուէին անանկ երկրի մէջ որ իրեք չորս անգամ աւելի բնակիչ կրնար սնուցանել․ Մշակութեան աւանդական ոճերէն չէին խոտորիր։ Երկրին բովանդակ բերքն էր ցորեն, հաճար, վարսակ, գետնախնձոր, արեգդէմ այգեներէն հանուած քիչ մը գինի, որ համ չունէր անխնամ կերպով շինուած ըլլալուն համար, ոչխարներու անպիտան տեսակէ կտրուած բուրդ, և քիչ մ'ալ տեղւոյն գործածութեր համար պէտք եղած կանեփ․ ասոնց հետ քանի մը հասարակ ընդեղէններ, որոնք պարզ մէկ երկու տեսակ ըլլալով միակերպութեան պատճառաւ պէտք եղած կայտառ առողջութիւնը չէին տար․ նաև ծառերու անպիտան տեսակներու վըրայ անխնամ կերպով մեծցած անհամ և թթու պտուղներ։

Այս բերքերը երկրին տարածութեամբն հանդերձ հազիւ կը բաւէին բնակչաց մէկ պզտիկ մասին։ Քիչ մը ցորեն, հաւկիթ, քանի մը հաւեղէն, քիչ անգամ պտուղք և ընդեղէնք՝ բովանդակ իրենց սոսկ վաստըկելու միջոցներն էին, որուն պէտք ունէին տուրք վճարելու կամ անհրաժեշտ պէտք եղած նիւթերը գնելու համար։

Բաց 'ի որմնադրէ, հիւսնէ, ատաղձագործէ և դարբնէ մը, կամ քանի մը ուրիշ ասոնց նման արհեստաւորներէ, առանց որոց որ և իցէ ժողովք մարդկան քաղաքականացեալ ազգի մը քով չեն կրնար ըլլալ, Միրըպոյի մէջ ամենևին ուրիշ արուեստ չէր տեսնուեր։ Իսկ գործունէութիւն և աշխատութեան ոգի բնաւ չկար, այլ ընդհակառակն անհոգութիւն, անզգայութիւն և թըմբրութեան նման ծուլութիւն և անյաղթելի դժկամակութիւն մը տիրած էր ընդդէմ ամենայն բանի որ սովորութենէ դուրս էր և կամ անհրաժեշտ կարևոր չէր։

Ասոր վրայ աւելցնենք հասարակօրէն աղքատին սրտին մէջ տեղիք գըտնող նախանձ մը քան զինքը լաւագոյն վիճակի մէջ գտնուողներուն նկատմամբ․ վասն զի աղքատները ցաւալի սխալմամբ զօգցեւ կը կարծեն թէ այլոց ստացուածքը իրենցմէ յափշտա-

կուած է. չէին գիտեր թէ հարստութիւնը՝ հարստութիւն կը ծնանի, և թէ հասարակաց աղքատութիւնը իւրաքանչիւր մարդու յարատև թշուառութեանը պատճառ է։

Միրըպոյի բնակիչները ծուռ աչքով կը նայէին միշտ այն քաղաքակցաց վըրայ որոնք երկրին կալուածները կ'ուզէին գնել. փոխանակ ուրախանալու դրամագլխոց ներս մտնելով ստացուածոց աժէքին շատնալուն և երկրին կենդանանալուն, եղած հետամտութեանց վրայ կը նեղանային, որով կալուածներուն գինը կը սուղնար, որոնց մէկ դոյզն մասն ալ ձեռքերնէն չէին ուզեր հանել. կարծես թէ իրենց երկիր կը պակսէր, մինչդեռ ունեցածներնուն և ոչ կէսն անդամ մշակել գիտէին։ Միրըպոյի գեղեցկութեանը պատճառաւ հոն եկող բնակող քաղաքացիներն ալ ստիպուեր էին ելլալու երթալու սաստիկ բամբասանաց նիւթ ըլլալնուն համար։ Այսպէս աւանը դրամագլխոց անձանցն հետ կորսնցուցեր էր այն օգտակար օրինակներն ալ զորս վարժ և արուեստագէտ կալուածատէրք կըրնային տալ։

Աւանին շատ տուներուն միակ երևոյթը բնակչաց խեղճութեանն ու հասարակ վիճակին՝ յայտնի նշան էր. ինչուան ոմանք անասնոց գոմը կը նմանէին՝ քան թէ մարդկանց բնակարան. նեղ հիւղեր էին և դռնէ դուրս ուրիշ լուսամուտ չունէին, և ատոնց մէջ կ'ապրէին իրարու վրայ խռնուած հայր մայր և մանչ ու աղջիկ ամէն հասակէ տղաքներ. մերկ գետին էր բնակարանին յատակը և չորս կողմի երկրէն աւելի ցած ըլլալով յարատև խոնաւութեան մէջ էր. և այս բանս օդոյ և լուսոյ պակասութեանը, տեղւոյն աղտոտութեանը և կերակրոց անբաւականութեանը վրայ աւելնալով՝ տղաքները վատառողջ և նիհար կ'ըլլային, և զանազան հիւանդութիւններով կը մեռնէին կամ կազմուածքերնին կը տկարանար։

Տուներուն դուրսը ամէն տեսակ աղտոտութեանց և աւելցուքի կոյտ մըն էր, ամէն դի լի էին լճացեալ ջուրեր, ապականեալ ճախճախուտներ՝ որոնց մէջ կը վազէր մարդկանց և անասնոց ջրվաթին հետ աղբիւններուն քամուած ջուրը, և իրենց նեխեալ արտաշնչութիւնը զմարդ կը զզուեցնէր. այս էր աւանին տեսարանը։

Չկային նաև կանանչապարդ բանջարեղինաց պարտէզներ որոնցմով շատ աւաններ հիանալի տեսարան մը կ'ունենան, և ոչ ածուներ կամ ծաղկոցներ որոնք բազմաթիւ գեղեցիկ բնակարաններուն չորս կողմը պատելով, նշանակ են միանդամայն իրենց բարեկեցութեանը և լաւ բաւականի աղնուական վայելից ախորժ ունենալուն։ Հազիւ քանի մը հիւղերու քով կը դըտնուէին հինգ կամ վեց կարկամեալ պտղատու ծառեր, և ընտանի կենդանեաց յարձակմանը դէմ այլ և այլ կողմանէ փտտեալ ցանկով մը պատըսպարեալ կաղամբի երկու կամ երեք ածու։

Աւանին մէջ կեանք, գործունէութիւն, շարժմունք ամենևին չկար. բընաւ աշխատասէր և մտացի ժողովըրդեան նշան չէր տեսնուեր, որոնք զանազան զբաղմամբք աւելի հանգստաւէտ իրենց պիտոյքը լեցնելու հնարքը կը ջանային գտնել։ Եթէ մէկը ներսը պտըտելու ըլլար ուրիշ բան չէր լսեր բայց եթէ քանի մը շատախօս կանանց թըշնամանաւոր կանչուըռտուքը, կամ հասարակաց ճամբաներուն վրայ ձգուած և խաղացող տղայոց աղաղակը, վասն զի Միրըպոյի մէջ նոյն ժամանակը դպրոց ամենևին չկար. ծնողք խնքնին անկիրթ ըլլալով չէին ըմբռներ թէ որչափ օգտակար էր տղայոց դաստիարակութիւն տալը. անհրաժեշտ հարկ կը սեպէին քովերնին պահել որպէս զի իրենց օգնեն. և սակայն անոնք ամէն օր փողոցներու մէջ կը թափառէին և յանցապարտութիւններ կ'ընէին. ոմանք աղուոր օդերով ժամանակնին հասարակաց արօտներու մէջ նիհար եզ մը արածելու կ'անցընէին, կամ քանի մը ոչխար տարած դէպ 'ի ծառաստա-

տաճները կը տանէին մեծամեծ փտաւտուց պատճառ ըլլալով, որոնց չորցած փայտերը ժողովելու կու գային ձմեռը։ Այսպէս այնպէս ծուլութենէ և իրեն հետևանք ամէն ախտերէն ալ ետ չէին կենար։ Քանի մը ծնողք աւելի ունևոր կամ աւելի խելացի գտնուելով մերձակայ քաղաքներուն կամ աւաններուն դպրոցները կը տանէին իրենց տղաքը. բայց ան ատեն ալ ճամբուն հեռաւորութեանն ու անպիտանութենը պատճառաւ շատ անգամ կ՚արգելուին դպրոց յաճախելէն։

Աւանին շրջակայ ճամբաներն ալ ներքին ճամբաներուն երևոյթն ունէին. ամէն ժամանակ անցուդարձի դժուարութեամբ բեռնակիր անասնոց ուժը կը սպառէր. սովորական ծանրութիւն մըն ալ կառքերու վրայ բեռցընելն անկարելի ըլլալով շատ երթևեկ հարկ կ՚ըլլար ընել և ժամանակի անհնարին կորուստ կ՚ըլլար. նաև շատ անգամ սաստիկ դժուարուտ տեղեր կառքերն ալ ջարդ ու բուրդ կ՚ըլլային։ Ձմեռուան սկիզբը ճամբաներէն շատը անգործածելի էին, և անոր վրայ աւանին աշխատութիւնները կը դադրէին, վասն զի դաշտերու մէջ ալ սայլերը չէին բաներ։

Ձմեռուան երկանակին տեղացիք օրուան մեծ մասը հանդանակներու մէջ կ՚անցընէին, իրենց անարգ վայելիցն համար այնչափ սատկէ ելլալով՝ որչափ կրնային ընտանիքնին քիչ մը չէնցընել, և ժամանակին խեղճութեանը վրայ կը գանգատէին մէջերնին։ Սակայն ետ չէին կենար ամէն եօթնեակ մէյմը անպակաս քաղաք երթալէ թէ երիկ մարդիկ և թէ կանայք, ոմանք տասը՝ տասնուերկու հաւկիթ կամ քիչ մը պտուղ և ընդեղէն ծախելու համար, և այլք 'ի սովորութենէ՝ խօսակցելու և ժամանակ անցընելու համար։ Անպակաս կը գտնուէին նաև շրջակայ չորս կամ հինգ փարսախ հեռաւորութեամբ գեղերուն ամէն տօնավաճառներուն մէջն ալ, և առանց անօգուտ երթևեկներով կորանցուցած ժամանակներնուն վրայ մտածելու՝ իրենց խեղճութեանցը վրայ կը տրտնջային։

Հանդանակներու, տօնավաճառներու և ամէն ժողովքներու մէջ իրենց բիրտ խօսակցութեամբը և խեղճութենէ պատճառեալ նախանձոտ և նախատող ոգւովը՝ կռիւներ կը գրգռէին, որոնք երբեմն հարուածներով կը վերջանային. ատոնց հետևանք էին վէրքեր, ակարութիւններ, և նորանոր թշուառութեանց պատճառներ։ Աւանին մէջ եղած այս շարունակ հակառակութիւններն, ատելութիւններն ու կռիւները նոր և զօրաւոր արգելք էին ամէն կերպ բարելաւութեան։ Միրըպոյի բնակիչները իրենց խածան և կռուասէր բնաւորութեամբը այնչափ նշանաւոր էին, որ մերձակայ քաղքէն ոմանք միտք ունենալով դաշտին և աւանին առջևը եղած հովտին մէջ պտըտող ջրոյն ընթացքը բանի բերել, ստիպուեր էին իրենց խորհուրդէն ետ կենալու, վասն զի կը կասկածէին անընկերասէր դըրացեաց հետ բանի գործի ձեռք զարնելէ։

Այս էր աւանին ընդհանուր վիճակը երբ Տիւբրէ բժիշկը սկսաւ անոր փոփոխութեանն աշխատիլ։

Այս մեծ խորհրդոյն ձեռք զարնելէն առաջ՝ որուն ապագայ յաջողութիւնն անտարակոյս էր, անոր ամէն հետևանքը մտածեց. արդի բարելաւ քաղաքականութեան ջանալով վերածել աւանին վիճակը՝ կը նախադիտէր թէ անոր ոգին և սովորութիւնները պիտի փոխուէին. և թէ բնակչաց համար նոր պիտոյից ծանօթութիւն ստանալն և զանոնք գոհ ընելու կարելիութիւնը խթան պիտի ըլլար կանխակալ սովորութիւններն ու ծուլութեան ունակութիւններն վրաններնէն թօթուելու, և լաւագոյն սովորութեանց ու խելացի փորձերու կիրառութեան պիտի տրամադրէր զիրենք. և երբ բարեկեցիկ վիճակ մը առնուին, բարուց վայրագութիւններն ալ պիտի կորսնցնէին։

Միւս կողմանէ ալ կը մտածէր թէ որչափ դժուարութեանց դէմը պէտք

էր նախատեսեր․ կանխակալ սովորութեան յամառութեանը, անգործ ծուլութեան, նախանձոտաց չարակամութեամբ և դիտմամբ հանելիք արգելքներուն, 'ի շահասիրութենէ ծագած չարախօսութեանց, որ հասարակաց վիճակը լաւցնելու գործ մը միշտ կը պատճառէ։ Կ'իմանար թէ քիչ մը ատենուան համար իր հանգիստը և խաղաղութիւնը պիտի զոհէր, պէտք պիտի ըլլար որ միշտ արթուն ըլլայ հարուածները վստահացնելու և չարախօսները լռեցնելու, կանխակալ կարծեաց դէմ կռուելու, զրպարտութիւնները ջրելու, վերջապէս զամէնքը լուսաւորելու և համոզելու համար։ Պէտք պիտի ըլլար որ կռուի և ուժով կռուի չար ոգւոյն դէմ որ միշտ դիւրաւ յաջողութիւն կը գտնայ։

Սակայն այս կռիւը զինքը չէր վախցըներ․ կորովի բնաւորութեան տէր մարդիկներէն էր որոնց ուժը ընդդիմադրութիւն գտնելով կը կրկնապատկի։ Ջեռնարկութեան երկայնութենէն ալ ամենևին չէր խրտեր․ գիտէր թէ բռնելիք ճամբուն մէջ բարիին միշտ անկորուստ էր և եթէ ինքն ալ վախճանին չհասնէր, իրմէ ետևինները պիտի հասնէին։ Աս ալ կը մտածէր թէ ժողովուրդը մէյմը այն ընթացքը բռնելէն ետքը ալ ետ չկենար․ մանաւանդ թէ շատ անգամ հարկ կ'ըլլայ անոր եռանդը չափաւորել և անկարգ ընթացիցն առջևը առնուլ․ էական բանը շարժիչ ըլլալն էր։

Տիւրբէ ըմբռնեց թէ ինքը միայն կարող չէր ասանկ մեծ գործ մը գլուխ հանելու․ իմացաւ թէ օգնութեան կարօտութիւն ունի, ինչպէս որ բնական է ճշմարիտ արդիւնաւոր և համեստ մարդկանց, և առաջին ջանքը եղաւ իրեն օգնական մը ճարել։

ՌԱԲԷ

Կը շարունակուի:

---

## ՍԱՐԴՔ

### Զրոյցք․

### Ա

Պէտք է խոստովանինք․

Մեր բնութեանը մէջ բերմունք մը կայ որ մեր մտաց ապշութիւնը գրաւելով՝ կամայ ակամայ զմեզ անոր կը ձգէ՝ որ մեծ է և խորհրդաւոր զարմանք մը կը խոստանայ։

Կը տեսնենք փոքրը․ կը դիտենք մանրը․ — Ի՞նչ է, կը հարցընենք։

— Իր մը անծանօթ․ էակ մը անպէտ և անօգուտ։

Կ'ըսենք և կ'արհամարհենք․ վասն զի անարժան կը սեպենք միտքերնիս անոր զբաղեցնել․ ունայն կը համարինք ուշադրութեան հայեցուածք մը տալ այն փոքր էակին՝ որուն երևոյթը չունի այն հրապուրիչ զօրութիւնը, որ առաջին հայեցուածքով մը կարող ըլլայ միտքերնուս վրայ ախորժելի տպաւորութիւն մը ազդել։ Նուաստ կը համարինք, վասն զի իր կերպարանքին վրայ չենք նշմարեր այն խորհրդաւոր զգացման փայլը՝ որ մեծը ցոյց կու տայ, և ախորժելի խառնմամբ մը միտքերնիս կը հրապուրէ։

Այսպէս մեր մտաց ուշադրութիւնը առ այն մեծ և զարմանալին ուղղած, մանրին քովէն անհոգաբար կը քերենք առանց ուշադրութեան մը արժանի սեպելու։

Սակայն այդ փոքրը, այդ մանրն է որ իրապէս կը տիրէ աշխարհքիս․ և նոյն իսկ մեծին վրայ կը թագաւորէ։

Ո՛ւշ դիր․ ահա լռութեան ու խաւարի ստուերաց մէջէն սրտիդ կը խօսի․ «Ահաւասիկ եմ ես»։

Ջունի լեզու յօդակապ որ մինչև ականջդ բարբառ հասցնէ․ բայց հազար ու մէկ մանր ձայներով ինքզինքը կը յայտնէ։

Բոլոր բնութեանը մէջէն խորհրդաւոր ձայնը կը լսես․ երկրիս խորէն,

ջրոց անդունդէն, անկոց ծոցէն, և նոյն իսկ այս դով օդուն մէջէն՝ որ կը շընչենք։

Արուեստներով, ճարտարութեամբք, գեղեցկութեամբք, կրիւք, սիրոյ արտայայտութեամբ, բիւր միջոցներով՝ լաելեայն մեր ուշադրութիւնը կը հրաւիրէ։ Եւ նոյն իսկ այն իր պզտիկութեան մեծութեամբը՝ սրտիդ կը խօսի ըսելով․

« Կը տեսնես դու այն հանքային կոյտերը․ կը նշմարես այն Ապենինեանց, Գորտիլեանց ահագնադէզ ժայռուտ կողերը․ ես փոքրս գիզեցի․ իմ կենդանիս շնչովը զանոնք բարձրացուցի։ Ինծի ժամանակ՝ և ահա աշխարհքներ չինեմ։ Ինծմով կեանքը կը գործէ »։

Բ

Կեանքն է յիրաւի ծածկեալ փոքր էակի մը ստուերին տակը․ նոյն այն կեանքը՝ որ զմեծն իսկ և զզարմանալի երևեալն կը շարժէ, և երկուքն ալ հաւասարապէս իր օրէնքը կը հպատակին։ Կեանք․ համառօտ ձայն մը․ բայց ո՞վ կարող է իմաստն ըմբռնել, ո՞վ անոր ընդարձակ ասպարէզին հասնիլ։ Միտքը՝ համր է․ զգայարանքը խուլ։

Բացարձակ տէր մըն է, կրնայ զուրցուիլ, որ բոլոր աշխարհք զրաւած է ու բազմաթիւ երևոյթներով ինքնիշխան կը թագաւորէ, և զգայապէս կամ անզգալի եղանակաւ՝ միշտ շարժմամբ կը յայտնուի։

Եւ այսպէս ուրեմն զմեզ շրջապատող բնութիւնը զգալեաց աշխարհք մը կը կազմէ․ որուն ամէն կէտին վրայ կեանքն իր զարմանալեաց երևոյթներովը կը զեռայ․ շնչով կը գործէ, մահուամբ կը նորոգի։

Բայց զգայարանքներս տկար ու յողդողդ՝ շրջապատող բնութիւնը գրեթէ անշունչ և անզգայ կը տեսնեն։ Սակայն մտքերնիս չհամոզուիր․ ճարտարութիւնը օժանդակ կ՚առնու։ Անոր առջին խաւարին պատանքը կը մերկանան․ ծածկեալ կեանքը կը յայտնուի, նորանոր տարարածոց աշխարհքներ երևան կ՚ելլեն, բիւրաւոր զարմանալիք։

Ասպարէզ մեծ և ընդարձակ։ Մտաց հետաքրքրութիւնը կը յորդորուի այն զարմանալեաց օրէնքները քննելու, անոնց երևոյթները թուելու․ բայց ո՞ր միտքը կարող է չափել զանոնք։

Եւ սակայն անոնց գեղեցկութիւնը՝ հրապուրիչ զբօսանքներու աղբիւրներ կը բանայ, որոնց առջին կը խաւարին թերևս մեծագունից զարմանալիքները։

Գ

Ճարտարութիւնը՝ մանրադիտակը միջոց կ՚առնու․ այն անձայն մատնիչը՝ խաւարին մէջ լոյս կը ծագէ։ Կը տեսնես, մանաւանդ թէ կը շօշափես կենաց գործունէութիւնը մութ քօղի մը տակ։ Քեզի անանկ մը կ՚երևնայ՝ որ կեանքն ինքն իրեն դէմ կը մաքառի․ անոր երևոյթները կարծես թէ հազար ու մէկ կերպարանաց հանդերձիւք մէկմէկու հետ կը կռուին, մէկզմէկ ջնջելու կը ճգնին։

Ահա աչացդ առջին քօղարկեալ աշխարհք մը, սքանչելագոյն քան զայն՝ որ իր մեծութեամբը հրաշալի կը ներկայանար անմիջապէս մտացդ։ Հարցմունք կ՚ուղղես, տարակուսանացդ լուծումն կ՚ուզես անկէ․ բայց հարցմանցդ նշանացի կը խօսի․ « Ետևէս եկուր »։

Կ՚իջնես խորերը։ Աչքդ ստուերներուն մէջ մթնշաղ կը տեսնեն․ բայց համբերութեան զօրութիւնը ձեռքէդ բռնած կը տանի։ Մի քանի քայլ․ յառաջ, յառաջ։ Մ՚ըսեր՝ Ծայրը տեսայ․ անկէց անդին ալ ուրիշ ծայր մը կայ, և անկէց անդին ալ ուրիշ մը։ Կենաց սահմանը կը բնտռես․ անկէց անդին ալ չէ։ Բայց ո՞ւր է կը հարցնես։ Այն մինչև կէտ մը կը ձգէ․ բայց դու շօշափել չես կրնար։

Դարձուր հիմա աչքդ այդ մոգիչ գործիքէն․ տես արևուն լոյսը․ նայէ այս մեծամեծ էակաց վրայ որ չորս դին կը շրջին։ Կորեկի մը հատիկին վրայ

մանր աշխարհք մը դիտելու զբաղած, մոռցար զատոնք։

Բայց ազդութիւնդ լսեցուր. մի և նոյն սկզբունքն է, կ'ըսեն, որ այդ ահաւոր մեծութեան և այն անհուն պզտիկութեան էակները կը շարժէ. Համեմատութիւն յանհունս մեծ և յանհունս փոքր մի և նոյն կեանքը կը տիրէ։ Ի՞նչ է ուրեմն այդ կենաց սկզբունքը։

Դ

Խոնարհինք բնութեան խորհրդոց առջին. այդ սկզբանը էութիւնը գաղտնիք մըն է, որ խաւար անդնդի մը վրայէն սահելով՝ անթափանցելի քօղէ մը կը ծածկուի։ Զուր տեղ թափանցող միտքը ատկէն կը սլանայ. հազիւ թէ անդնդին ափունքը կը հասնի՝ խարխափելով՝ ինքզինքը մթին մէջ կը կորսնցնէ։

Անհնարին է այդ ծայրը գտնել. բայց անկարելի չէ ճանչնալ որ մի և նոյն աղբիւրէ կը բղխէ այն զօրութիւնը որ զմեծ և զփոքր էակները կը շարժէ. որ զմեծամարմին փիղը և զմանրագոյն միջատը կ'ոգևորէ։ Մի և նոյն կենաց ուժն է որ բարձրաբերձ մայրւոյն և մանրանկար մամռոյ երակաց մէջ հիւթը կը բաշխէ։

Մանրերևոյթ ճճին, թռչող էակը, քալող չորքոտանին կամ լողակաւոր ձուկը, ոչ այլ ինչ են՝ բայց եթէ այլազան անօթք կենաց և գրօսանք բնութեան։

Մի և նոյն սկզբունքն է նաև որ մանրացուցի քօղարկեալ բնութիւնը կը կառավարէ։

Բնութիւնը մայր է ամենայն զարմանալեաց. մայր մը որ իր բազմակերպ այլակերպարան երևոյթներովը կ'ըզբօսնու։ Կը սիրէ ստեղծագործութիւնը. այդ առաքինութիւնը՝ շունչ մըն է յինքն, շունչ բարերար, որուն պտուղ է ներդաշնակութեան ոգին. և իր գրօսանաց շունչը կը ձգէ մինչև խաւարին այն խորերը՝ ուր մարդկային զգայարանքը կարող չէ հասնելու։

Կը ստեղծէ, վասն զի կը զուարճանայ ստեղծելով, կը ստեղծէ, կեանք կու տայ, բայց կը խորշի միակերպութեան գաղափարէն։

Այսպէս երևան կու գայ կեանքը, կը սկսի, կ'ելլէ, կը բարձրանայ, և կամ որ նոյն է՝ կ'իջնէ բարձրէն, կը խոնարհի հետզհետէ, միշտ մի և նոյն սկզբամբ, կարծես կը նուաստանայ ստորնագոյն էակաց երևոյթներով։

Բայց ո՞ւր արդեօք կը յանգին այդ կենաց երևոյթքն. կամ ո՞ր էակը կը կնքէ կենաց եռքի ծայրը։

Ե

Երբ երկայն, շիտակ ճամբու մը մէջտեղը կեցած, տեսութիւնդ ճամբուն երկայնութեանը վրայ ձգես, աչքդ ընդարձակ շիտակ միջոց մը կամ ուղիղ գիծ մը կը շօշափէ։

Ճամբուն երկու կողմը տնկուած առարկաները, իրենց կանոնաւոր շարքովը՝ գծին շնորհքը կ'աւելցնեն, տեսողական զգայարանացդ հրապուրիչ ախորժ մը ազդելով. վասն զի կանոնաւոր օրէնքով մը առարկայ առարկայէ կը խուսափէ ու կը մերձենայ։ Առարկայն ստուերէն, ստուերը առարկայէն բաժնուելով՝ կանոնաւոր շարք մը կը ներկայացնէ աչքիդ, որուն հրապոյրը կ'աւելու հետզհետէ հեռաւորութիւնը, բոլոր այս առարկաները մէկ կէտի մը հաւաքելով՝ իբր աղբիւր ուստի կը բղխեն։

Այն կէտին վրայ աչքդ կանգ կ'առնու, ու տեսութեանդ վստահանալով՝ կը կանչես. «Ահա վերջ այդ ամենայնի»։

Մի՛ ներեր այդ մտածութեանը։

Եթէ այդ ծայրը կամ վերջը շօշափել ուզես, առ քայլափոխդ շտապաւ ճամբուն մէջէն. կը տեսնես որ որչափ դու կը յառաջես, նոյնչափ նոյն կէտը քեզմէ կը խուսէ։ Թերևս հասած ըլլաս այն կէտը ուր աչքդ հանդչեցաւ առաջին հայեցուածքին, և կը տեսնես որ բռնած կէտդ դեռ ևս նոյնչափ ան-

Ջրոց անդունդէն, անկոց ծոցէն, և նոյն իսկ այս զով օդուն մէջէն՝ որ կը շնչենք:

Արուեստներով, ճարտարութեամբը, գեղեցկութեամբը, կրիւք, սիրոյ արտայայտութեամբ, բիւր միջոցներով՝ բնութեան մեր ուշադրութիւնը կը հրաւիրէ: Եւ նոյն իսկ այն իր պզտիկութեան մեծութեամբը՝ որուն կը խօսի ըսելով.

« Կը տեսնե՞ս դու այն հանքային կոյտերը. կը նշմարե՞ս այն Ալպեններեանց, Գորտիլեանց ահագնագէղ ժայռոտ կողերը. ես փոքրս գիտցայ. իմ կենացս ընչովը զանոնք բարձրացուցի: Ինծի ժամանակ՝ և ահա աշխարհքներ չինեմ: Ինծմով կեանքը կը գործէ »:

Բ

Կեանքն է յիրաւի ծածկեալ փոքր էակի մը ոտուերին տակը. նոյն այն կեանքը՝ որ զմեծն իսկ և զզարմանալի երևոյթն կը շարժէ, և երկուքն ալ հաւատարապէս իր օրէնացը կը հպատակին: Կեանք. համառօտ ձայն մը. բայց ո՞վ կարող է իմաստն ըմբռնել, ո՞վ անոր ընդարձակ սահմանին հասնիլ: Միտքը՝ համր է. զգայարանքը խուլ:

Բացարձակ տէր մըն է, կրնայ զուրցուիլ, որ բոլոր աշխարհք գրաւած է ու բազմաթիւ երևոյթներով ինքնիշխան կը թագաւորէ, և զգայապէս կամ անզգալի եղանակաւ՝ միշտ շարժմամբ կը յայտնուի:

Եւ այսպէս ուրեմն զմեզ շրջապատող բնութիւնը զգալեաց աշխարհք մը կը կազմէ. որուն ամէն կէտին վրայ կեանքն իր զարմանալեաց երևոյթներովը կը գեռայ. ընչով կը գործէ, մահուամբ կը նորոգի:

Բայց զգայարանքներս տկար ու յոգնող՝ շրջապատող բնութիւնը դրեթէ անշունչ և անզգայ կը տեսնեն: Սակայն միտքերնիս չհամոզուիր. ճարտարութիւնը օժանդակ կ'առնու: Անոր առջին խաւարին պաղանիքը կը մերկանան. ծածկեալ կեանքը կը յայտնուի, նորանոր տարածոց աշխարհքներ երևան կ'ելլեն, բիւրաւոր զարմանալիք:

Աստղաբէղ մեծ և ընդարձակ: Մտաց հետաքրքրութիւնը կը յորդորուի այն զարմանալեաց օրէնքները քննելու, անոնց երևոյթները թուելու. բայց ո՞ր միտքը կարող է չափել զանոնք:

Եւ սակայն անոնց գեղեցկութիւնը՝ հրապուրիչ զբօսանքներու աղբիւրներ կը բանայ, որոնց առջին կը խաւարին թերևս մեծագունից զարմանալիքները:

Գ

Ճարտարութիւնը՝ մանրադիտը միջոց կ'առնու. այն անձայն մասնիկը՝ խաւարին մէջ լոյս կը ծագէ: Կը տեսնես, մանաւանդ թէ կը շօշափես կենաց գործունէութիւնը մութ քօղի մը տակ: Թեզի անանկ մը կ'երևնայ՝ որ կեանքն ինքն իրեն դէմ կը մաքառի. անոր երևոյթները կարծես թէ հազար ու մէկ կերպարանաց հանդերձիւք մէկմէկու հետ կը կռուին, մէկզմէկ ջնջելու կը ճգնին:

Ահա աչացդ առջին քօղարկեալ աշխարհք մը, սքանչելագոյն քան զայն՝ որ իր մեծութեամբը հրաշալի կը ներկայանար անմիջապէս մտացդ: Հարցմունք կ'ուզզես, տարակուսանացդ լուծումն կ'ուզես անկէ. բայց հարցմանցդ նշանացի կը խօսի. « Ետևէս եկուր »:

Կ'իջնես խորերը: Աչքդ ստուերներուն մէջ մթնշաղ կը տեսնեն. բայց համբերութեան զօրութիւնը ձեռքէդ բռնած կը տանի: Մի՛ քնանիր. յառաջ, յառաջ: Մ'ըսեր՝ Ծայրը տեսայ. անկէց անդին ալ ուրիշ ծայր մը կայ, և անկէց անդին ալ ուրիշ մը: Կենաց սահմանը կը բնտռես. անկէց անդին ալ չէ: Բայց ո՞ւր է կը հարցնես: Ան մինչև կէտ մը կը ձգի. բայց դու շօշափել չես կրնար:

Դարձուր հիմա աչքդ այդ մեզի գործիքէն. տես արևուն լոյսը. նայէ այս մեծամեծ էակաց վրայ որ չորս դին կը շրջին. նորեկի մը հատիկին վրայ

մանր աշխարհք մը դիտելու դրուած, մոռցար դասդ։

Բայց առաջութիւնդ լսեցուր. մի և նոյն սկզբունք է, կ'ըսես, որ այդ ահաւոր մեծութեան և այն անհուն պզտիկութեան էակները կը շարժէ. համաձայնութիւն յանհունս մեծ և յանհունս փոքր մի և նոյն կենանքը կը տիրէ։ Ի՞նչ է ուրեմն այդ կենաց սկզբունքը։

Դ

Խոնարհինք բնութեան խորհրդոց առջին. այդ սկզբանը էութիւնը դատողանեք մին է, որ խաւար անդունդի մը վերայէն սահելով՝ անթափանցելի քօղէ մը կը ծածկուի։ Ջուր առք թափանցող միտքը ետևէն կը ոլանայ. հազիւ թէ անդունդին ափունքը կը համնի՝ խարխափելով՝ ինքզինքը մթին մէջ կը կորսնցնէ։

Անհնարին է այդ ծայրը գտնել. բայց անկարելի չէ ճանչնալ որ մի և նոյն աղբիւրէ կը բղխէ այն զօրութիւնը որ զմեծ և զփոքր էակները կը շարժէ. որ զմեծամեծամին փիղը և զմանրագոյն մժղուկը կ'ոգևորէ։ Մի և նոյն կենաց ուժն է որ բարձրաբերձ մայրւոյն և մանրանկար մամռոյ երակաց մէջ հոյզը կը բաշխէ։

Մանրերևոյթ ճճին, թռչող էակը, քայլող չորքոտանին կամ լուղակաւոր ձուկը, ոչ այլ ինչ են՝ բայց եթէ այլայլէն անօթք կենաց և գրօսանք բնութեան։

Մի և նոյն սկզբունքն է նաև որ մանրացուցի քօղարկեալ բնութիւնը կը կառավարէ։

Բնութիւնը մայր է ամենայն զարմանալեաց. մայր մը որ իր բազմակերպ այլակերպարան երևոյթներովը կ'ըզբօսնու։ Կը սիրէ ստեղծագործութիւնը. այդ առաքինութիւնը՝ շունչ մըն է յինքն, շունչ բարեբար, որուն պսակ է ներդաշնակութեան ոգին. և իր գրօսանաց շունչը կը ձգէ մինչև խաւարին այն խորերը՝ ուր մարդկային զգայարանքը կարող չէ համնելու։

Կը սառեցնէ, վասն զի կը դատարկանայ սառեցնելով, կը սառեցնէ, կեանք կու տայ, բայց կը խորշի միակերպութեան գաղափարէն։

Այսպէս երևան կու գայ կեանքը, կը սկսի, կ'եղէ, կը բարձրանայ, և կամ որ նոյն է՝ կ'իջնէ բարձրէն, կը խոնարհի հետզհետէ, միշտ մի և նոյն սկզբամբ, կարծես կը նուաստանայ ստորնագոյն էակաց երևոյթներով։

Բայց ուր արդեօք կը յանգին այդ կենաց երևոյթքն. կամ ուր էակը կը կնքէ կենաց եռքի ծայրը։

Ե

Երբ երկայն, շիտակ ճամբու մը մէջտեղը կեցած, տեսութիւնդ ճամբուն երկայնութեանը վրայ ձգես, աչքդ ընդարձակ շիտակ միջոց մը կամ ուղիղ գիծ մը կը շօշափէ։

Ճամբուն երկու կողմը տնկուած առարկաները, իրենց կանոնաւոր շարքովը՝ գծին շնորհքը կ'աւելցնեն, տեսողական զգայարանաց հրապուրիչ ախորժ մը ազդելով. վասն զի կանոնաւոր օրէնքով մը առարկայ առարկայէ կը խուսափէ ու կը մերձենայ։ Առարկայն ստուերէն, ստուերը առարկայէն բաժանուելով՝ կանոնաւոր շարք մը կը ներկայացնէ աչքիդ, որուն հրապոյրը կ'աւելնու հետզհետէ հեռաւորութիւնը, բոլոր այս առարկաները մէկ կէտի մը հաւաքելով՝ իբր աղբիւր ուստի կը բղխեն։

Այն կէտին վրայ աչքդ կանգ կ'առնու, ու տեսութեանդ վստահանալով՝ կը կանչես. «Ահա վերջ այսր ամենայնի»։

Մի՛ ներեր այդ մտածութեանը։

Եթէ այդ ծայրը կամ վերջը շօշափել ուզես, առ քայլափոխդ շտապաւ ճամբուն մէջէն. կը տեսնես որ որչափ դու կը յառաջես, նոյնչափ նոյն կէտը քեզմէ կը խուսէ։ Թէպէտ հասած ըլլաս այն կէտը ուր աչքդ հանդիպեցաւ առաջին հայեցուածքին, և կը տեսնես որ ընտրած կէտդ գնաց եւս նոյնչափ ան-

դին կը ձգի։ Նորանոր առարկաներ առջիններուն կը յաջորդեն. նոյնչափ մը կը յառաջեն՝ և նոյնչափ մըն ալ կը փոփոխուին առարկայք պէսպէս կերպարանօք։ Կը մտածես թերևս որ նոյնպիսի երևոյթներով նոյն ճամբան անկէց անդին ալ կը ձգի, և անյաղթելի արգելք մը քեզի չներեր այն բնտռուած վերջը շօշափելու։ Սակայն և այնպէս մտքովդ կը հետևցնես որ այն ճամբայն ՚ի հարկէ վերջ մ՚ունի իր երևոյթներովը հանդերձ։

Ահա կենաց ընդարձակութեան ըստուեր մը։

Զգայարանացս զօրութիւնը ինչուան որոշեալ կէտ մը կ՚առաջնորդէ ինծի. անկէ անդին մանրադէտը ինծի գործի միջնորդ կ՚առնում. կը թափանցեմ նոր աշխարհքներ, կը տեսնամ նոր արարածներ. բայց կենաց վերջին սահմանը հասեր եմ։ Իրաւ է որ կեանքը մինչև այն կէտը կը նշմարեմ. բայց անկէց անդին մութ ստուեր մը կայ որ տեսութիւնս կը խափանէ. միթէ այն ստուերին տակը ծածկեալ կեանք մը չկա՞յ։

Չեմ կրնար չկայ ըսել առանց վրիպելու։ Մանաւանդ որ նոր նոր մանրադիտի էակաց գիւտերը՝ անոնց պատմութեանը մէջ լոյս կը ծագեն։

Զ

Ահաւասիկ գաղափար մը այն բնութեան որ ծածկեալ է իր մանր հասակովը մեր զգայարանքներէն, և սակայն ինքն ալ մեր այս կենաց մասնակից է։

Աւազի հատիկները մերկ աչքին կլորաձև կ՚երևնան և նման մէկմէկու. բայց երբոր մանրադիտի մը վառարանը անցընենք, կը տեսնենք որ բոլորովին աննման են, եթէ մեծութեամբ և եթէ կերպարանօք։ Կան որ կլորաձև են, այլք քառակողմեան, ոմանք կոնաձև են, և մեծաւ մասամբ անկանոն ձևով։

Այս չէ զարմանալի, որչափ այն որ այս մանր աւազիկներուն վրայ բիւրաւոր արարածոց աշխարհքներ կան, որ աւազիկին վրայ կը շրջին՝ ինչպէս մենք այս երկրային գնտին վրայ։

Ով, ըսես պիտոր, վկայ է այդ բանին։ Այն ճշմարտախօս գործին՝ որ միլիոնաւոր անգամ կը մեծցնէ այն առարկայն՝ որ իւր վառարանը գտնէ։

Ահա երկու հակառակ ծայր. փիղ մը միլիոն անգամ մեծցուր կամ նոյնչափ անգամ փոքրկացուր. ինչ ահագին մեծութիւն կամ ինչ ահաւոր պզտիկութիւն։

Մանրադիտի էակ մը որ միլիոն անգամ մեծցուելով հազիւ կորեկի մը հատին կը հաւասարի, միլիոն անգամ պզտիկ մտածէ. արդեօք նոյն պզտիկութիւնը մտքով կրնաս ըմբռնել։

Արդ այսպէս մանր էակներով աշխարհքը լեցուն է, և ամենայն մարմին բնակեալ է անոնցմով. մենք իսկ լեցուն ենք այսպիսիններով, և միշտ կը լեցուինք։

Ի՛նչ անուշ կու գայ զով օդը ամառնային առաւօտները. լի թոքով կը շնչենք. բայց իւրաքանչիւր տուրևառ՝ անհուն արարածոց աշխարհքներ մեր ներսը կը լեցնէ։

Մեր մարմնոյն վրայ, ամենափափուկ մորթի մը վրայ՝ բիւրաւոր անտեսանելի արարածներ կը զեռան։ Մեր մաքրասիրութիւնը կերակուրներուն նըկատմամբ՝ չօգտեր. անոնցմով՝ միլիոնաւոր էակներ ողջ ողջ կը կլլենք։

Եւ պանիրը ապացոյց ըլլայ. կը տեսնես մաքուր ամենայն որդի հետքէ. բայց մի խաբուիր։ Ճերմակ կէտեր կրնաս նշմարել անշարժ, ամենևին անկենդան։ Բերանդ կը դնէի՞ր արդեօք եթէ տեսնայիր որ այն ճերմակ կէտերը կը շարժին. եթէ տեսնէիր որ կենդանի են, այլանդակ կերպարանքներով. և ոչ միայն բերան ունին, աչք և ոտք, այլ և իրենց թափանցիկ մարմինը՝ երկայն ու սուր մազերով ծածկած է։

Պտուղները անուշ կու գան մեր քըմաց. բայց մեր աչքը չներեր մեզի տեսնել անոնց կճեպին խորտաքորտութեանց վրայ լեռներ, ձորեր, դաշտեր, անտառներ, ծառեր, իրենց ճիւղերո-

մը, ծաղիկներովը ու պտուղներովը, համեղերձ պէսպէս կենդանեաց անթիւ խումբերովը։ Մտածէ ինչ ահագին անտառուտ գետին է դեղձի մը կեղևը, որուն թանձր աղուամազը՝ աչաց շնորհք մը կ'երևնայ և չօշափելեաց ախորժելի է. և ինչ բազմաթիւ էակաց բոյն պիտոր ըլլայ։

Հ. Յ. Վ. ԻՍԱՎԵՐԴԵՆՑ

Կը շարունակուի :

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

### Դրաբեանի մը անտիպ յիշատակագիրք։

Այսօր տարի մը կ'ըլլայ քանի որ անզուգական հարս մը կորսնցուցի, և պզտի աղջիկս սքանչելի մօրէ մը զրկուեցաւ։ Այս տխուր և ցաւագին մտածութիւնը միտքս եկաւ, երբ այս պզտի պատմութեան երկրորդ տպագրութեանը ձեռք կը զարնէի, զոր կրնամ ըսել թէ սկսայ գրել գործակցութեամբ և խորհրդով անոր, որուն մահը հիմա կ'աշխարեմ։ Դեռ չտպած, առաջին գլուխները կարդացի իրեն, և եթէ այս յիշատակագիրքն հրատարակելու յանձնառու եղայ, մասնաւորապէս անոր համար է՝ վասն զի տեսայ որ բաւական ախորժելի կու գային իրեն։ Ուստի հիմա որ ամբողջ միացուցած 'ի տպագրութիւն կու տամ, բնական է որ ամբողջ պատմութիւնն ալ իր քաղցր յիշատակին նուիրեմ։

Ներէ ինծի ընթերցողը եթէ երկրորդ անգամ իմ ընտանեկան թշուառութիւններս իրեն կը հաղորդեմ. բայց առջինէն աւելի՝ այս անգամ չկրցայ զայս զանց ընելու, վասն զի հիմա՝ 'ի յիշատակ ինծի այնպէս սիրելի եղած անձի մը կ'անուանեմ այս գիրքս, ոչ այնչափ իրեն երախտագիտութեան և ցաւոց դոյզն սպաս մը մատուցանելու համար, որչափ իմ ազնիւ ընթերցողացս յանձնելու՝ որ այն օրհնեալ հոգին իրենց աղօթիցը մէջ յիշեն. թէպէտ և վստահ եմ հաստատութեամբ որ իր լաւութիւններն ու առաքինութիւնները արդէն զինքը յաւիտենական վայելից և երկնաւոր փառաց օթևանն հասուցած են։

ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԳԱՁՈՆԻ.

### Ա

Կենաց առաջին յիշատակքն աւելի սիրելի և անջնջելի են։ Կեանքը յարատև մրրկայոյզ ծով մըն է, բայց այդ անչափելի ովկիանոսին գրգռեալ ալեացը մէջ, մեր մանկութեան յիշատակը միշտ պարզ և խաղաղ կը ծածանի։ Հասակ անմեղութեան, որ երկրէս աւելի ընդ երկնից կը շաղկապի, ուր կը տիրէ մեր Արարիչն, և որ առ մեր վախճանը կը հրաւիրէ զմեզ. մեր էութեան առաջին արշալոյսը ծաղկամբք և շուշանօք կը զարդարէ։ Այս շուշանաց և վարդից անոյշ բուրումը յաճախ կը զմայլեցնէ ըզմեզ նաև մեր անագան ծերութեան ժամանակը. վա՜յ մարդուս եթէ կենաց պարզ խնդութիւնը՝ առաջին հասակին հրապուրիչ բանաստեղծութիւնը երբեմն երբեմն չզուարճանայ։ Թէպէտ գերեզմանին եզերքը հասած, առաջին մտածութիւնն կը սլանայ այն նախկին օրերուն, որ այլ պիտի չդառնան, և են իբրև առաջին օղակ այն մեծ շղթային որուն հետ կցորդեալ է իմ տաժանեալ էութիւնս։ Թշուառութիւնն իմ մանկութեանս առաջին հետքը գծեց, և վիշտն կերպով մը բովանդակ կենացս անբաժան ընկերն եղաւ. բայց այդ թըշուառութիւնն զիս չէր ընկճեր, և այն վիշտը ոչ երբեք կործանեց զիս, քանի որ անմեղութիւնն դեռ յիս կը ծիծաղէր։

Իմ էութիւնս թշուառութենէ մը կը սկսի. որովհետև սրտիս վրայ տպաւորած առաջին յիշատակն՝ թշուառութիւն մը եղաւ. այս ցաւագին յիշատակէն անդին՝ ամենայն ինչ անծանօթ է ինծի։ Ցառաջ քան զայն, բան մը ինծի չըսեր որ ես 'ի կեանս եղած ըլլամ. իրաւ 'ի կեանս էի, բայց չէի գիտեր, և ոչ այսօր գիտեմ։

դին կը ձգի։ Նորանոր առարկաներ առաջիններուն կը յաջորդեն. նոյնչափ մը կը յառաջեն՝ և նոյնչափ մըն ալ կը փոփոխուին առարկայք պէսպէս կերպարանօք։ Կը մտածես թերևս որ նոյնպիսի երևոյթներով նոյն ճամբան անկէց անդին ալ կը ձգի, և անյաղթելի արգելք մը քեզի չներեր այն բնտռուած վերջը շօշափելու։ Սակայն և այնպէս միտքովդ կը հետևցնես որ այն ճամբայն ՚ի հարկէ վերջ մ՚ունի իր երևոյթներովը հանդերձ։

Ահա կենաց ընդարձակութեան ըստուեր մը։

Զգայարանացս զօրութիւնը ինչուան որոշեալ կէտ մը կ՚առաջնորդէ ինծի. անկէ անդին մանրադէտը ինծի գործի միջնորդ կ՚առնում. կը թափանցեմ նոր աշխարհքներ, կը տեսնամ նոր արարածներ. բայց կենաց վերջին սահմանը հասեր եմ։ Իրաւ է որ կեանքը մինչև այն կէտը կը նշմարեմ. բայց անկէց անդին մութ ստուեր մը կայ որ տեսութիւնս կը խափանէ. միթէ այն ստուերին տակը ծածկեալ կեանք մը չկայ՞։

Չեմ կրնար չկայ ըսել առանց վրիպելու։ Մանաւանդ որ նոր նոր մանրադիտի էակաց գիւտերը՝ անոնց պատմութեանը մէջ լոյս կը ծագեն։

## Զ

Ահաւասիկ գաղափար մը այն բնութեան որ ծածկեալ է իր մանր հասակովը մեր զգայարանքներէն, և սակայն ինքն ալ մեր այս կենաց մասնակից է։

Աւազի հատիկները մերկ աչքին կլորաձև կ՚երևնան և նման մէկմէկու. բայց երբոր մանրադիտի մը վառարանը անցընենք, կը տեսնենք որ բոլորովին աննման են, եթէ մեծութեամբ և եթէ կերպարանօք։ Կան որ կլորաձև են, այլք քառակողմեան, ոմանք կոնաձև են, և մեծաւ մասամբ անկանոն ձևով։

Այս չէ զարմանալի, որչափ այն որ այս մանր աւազիկներուն վրայ բիւրաւոր արարածոց աշխարհքներ կան, որ աւազիկին վրայ կը շրջին՝ ինչպէս մենք այս երկրային գնտին վրայ։

Ով, ըսես պիտոր, վկայ է այդ բանին։ Այն ճշմարտախօս գործին՝ որ միլիոնաւոր անգամ կը մեծցնէ այն առարկայն՝ որ իւր վառարանը գտնէ։

Ահա երկու հակառակ ծայր. փոքր մը միլիոն անգամ մեծցուր կամ նոյնչափ անգամ փոքրկացուր. ինչ ահագին մեծութիւն կամ ինչ ահաւոր պզտիկութիւն։

Մանրադիտի էակ մը որ միլիոն անգամ մեծցուելով հազիւ կորեկի մը հատին կը հաւասարի, միլիոն անգամ պզտիկ մնացած է. արդեօք նոյն պզտիկութիւնը միտքով կրնաս ըմբռնել։

Արդ այսպէս մանր էակներով աշխարհքը լեցուն է, և ամենայն մարմին բնակեալ է ասոնցմով. մենք իսկ լեցուն ենք այսպիսիններով, և միշտ կը լեցուինք։

Ի՛նչ անուշ կու գայ զով օդը ամառնային առաւօտները. լի թոքով կը շնչենք. բայց իւրաքանչիւր տուրեւառ՝ անհուն արարածոց աշխարհքներ մեր ներսը կը լեցնէ։

Մեր մարմնոյն վրայ, ամենափափուկ մորթի մը վրայ՝ բիւրաւոր անտեսանելի արարածներ կը շրջան։ Մեր մաքրասիրութիւնը կերակուրներուն ներկատմամբ՝ չօգտեր. անոնցմով՝ միլիոնաւոր էակներ ողջ ողջ կը կլլենք։

Եւ պանիրը ապացոյց ըլլայ. կը տեսնես մաքուր ամենայն որդի հետքէ. բայց մի խաբուիր։ Ճերմակ կէտեր կրնաս նշմարել անշարժ, ամենևին անկենդան։ Բերանդ կը դնէիր արդեօք եթէ տեսնայիր որ այն ճերմակ կէտերը կը շարժին. եթէ տեսնէիր որ կենդանի են, այլանդակ կերպարանքներով. և ոչ միայն բերան ունին, աչք և ոտք, այլ և իրենց թափանցիկ մարմինը՝ երկայն ու սուր մազերով ծածկած է։

Պտուղները անուշ կու գան մեր քիմաց. բայց մեր աչքը չներեր մեզի տեսնել անոնց կճեպին խորտաբորտութեանց վրայ լեռներ, ձորեր, դաշտեր, անտառներ, ծառեր, իրենց ճիւղերո-

մը, ծաղիկներովը ու պտուղներովը, համեղերձ պէսպէս կենդանեաց անթիւ խումբերովը։ Մտածէ ինչ ահագին անտառուտ գետին է դեղձի մը կեղևը, որուն թանձր աղուամազը՝ աչաց շնորհք մը կ'երևնայ և շօշափելեաց ախորժելի է. և ինչ բազմաթիւ էակաց բոյն պիտոր ըլլայ։

Հ. Ց. Վ. ԽՍԱՎԵՐՏԵՆՑ

Կը շարունակուի :

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

### Դրաբեանի մը անտիպ յիշատակագիրք։

Այսօր տարի մը կ'ըլլայ քանի որ անզուգական հարս մը կորսնցուցի, և պզտի աղջիկս սքանչելի մօրէ մը զրկուեցաւ։ Այս տխուր և ցաւագին մտածութիւնը միտքս եկաւ, երբ այս պզտի պատմութեան երկրորդ տպագրութեանը ձեռք կը զարնէի, զոր կրնամ ըսել թէ սկսայ գրել գործակցութեամբ և խորհրդով անոր, որուն մահը հիմա կ'աշխարեմ։ Դեռ չտպած, առաջին գլուխները կարդացի իրեն, և եթէ այս յիշատակագիրքն հրատարակելու յանձնառու եղայ, մասնաւորապէս անոր համար է՝ վասն զի տեսայ որ բաւական ախորժելի կու գային իրեն։ Ուստի հիմա որ ամբողջ միացուցած 'ի տպագրութիւն կու տամ, բնական է որ ամբողջ պատմութիւնն ալ իր քաղցր յիշատակին նուիրեմ։

Ներէ ինծի ընթերցողը եթէ երկրորդ անգամ իմ ընտանեկան թշուառութիւններս իրեն կը հաղորդեմ. բայց առջինէն աւելի՝ այս անգամ չկրցայ զայս զանց ընելու, վասն զի հիմա՝ 'ի յիշատակ ինծի այնպէս սիրելի եղած անձի մը կ'անուանեմ այս գիրքս, ոչ այնչափ իրեն երախտագիտութեան և ցաւոց դոյզն սպաս մը մատուցանելու համար, որչափ իմ ազնիւ ընթերցողացս յանձնելու՝ որ այն օրհնեալ հոգին իրենց աղօթիցը մէջ յիշեն. թէպէտ և վստահ եմ հաւաստութեամբ որ իր լաւութիւններն ու առաքինութիւնները արդէն զինքը յաւիտենական վայելից և երկնաւոր փառաց օթևանն հասուցած են։

ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԳԱՋՈՒՆԻ.

### Ա

Կենաց առաջին յիշատակքն աւելի սիրելի և անջնջելի են։ Կեանքը յարատև մրրկայոյզ ծով մըն է, բայց այդ անչափելի ովկիանոսին գրգռեալ ալեացը մէջ, մեր մանկութեան յիշատակը միշտ պարզ և խաղաղ կը ծածանի։ Հասակ անմեղութեան, որ երկրէս աւելի ընդ երկնից կը շաղկապի, ուր կը տիրէ մեր Արարիչն, և որ առ մեր վախճանը կը հրաւիրէ զմեզ. մեր էութեան առաջին արշալոյսը ծաղկամբք և շուշանօք կը զարդարէ։ Այս շուշանաց և վարդից անոյշ բուրումը յաճախ կը զմայլեցնէ ըզմեզ նաև մեր տնազան ծերութեան ժամանակը. վա՜յ մարդուս եթէ կենաց պարզ խնդութիւնը՝ առաջին հասակին հրապուրիչ բանաստեղծութիւնը երբեմն երբեմն չզուարճանայ։ Թէպէտ գերեզմանին եզերքը հասած, առաջին մտածութիւնն կը սլանայ այն նախկին օրերուն, որ այլ պիտի չդառնան, և են իբրև առաջին օղակ այն մեծ շղթային որուն հետ կցորդեալ է իմ տաժանեալ էութիւնս։ Թշուառութիւնն իմ մանկութեանս առաջին հետքը գծեց, և վերջին կերպով մը բովանդակ կենացս անբաժան ընկերն եղաւ. բայց այդ թըշուառութիւնն գլխս չէր ընկճեր, և այն վիշտը ոչ երբեք կործանեց զիս, քանի որ անմեղութիւնն դեռ յիս կը ծիծաղէր։

Իմ էութիւնս թշուառութենէ մը կը սկսի. որովհետև սրտիս վրայ տպաւորած առաջին յիշատակն՝ թշուառութիւն մը եղաւ. այս ցաւագին յիշատակէն անդին՝ ամենայն ինչ անծանօթ է ինծի։ Յառաջ քան զայն, բան մը ինծի չըսեր որ ես 'ի կեանս եղած ըլլամ. իրաւ 'ի կեանս էի, բայց չէի գիտեր, և ոչ այսօր գիտեմ։

Գիշեր մը խորունկ կը քնանայի խոշոր խանձարուրքի մը մէջ, խոշորագոյն յարդի մը մօտ, որուն վրայ հայրս և մայրս կը հանգչէին. բնական ազդմամբ, կամ լաւ ևս արեան ձայնէն, միշտ ծնողացս քով քաղցր և խաղաղ կը ննջէի. շատ անգամ երազով մը կամ անտի մտածութեամբ կը վախնայի թէ չըլլայ որ հայրս և մայրս քովս չըլլան. կը տագնապէի, կը բանայի աչքերս և կը նայէի թէ պարապ է անկողինը: Կը լսէի հօրս խռկալը և մօրս հանգիստ քնանալը. այն ատեն դոհ կ'ըլլայի, և նորէն սովորական հանդարտութեամբ քուն կ'ըլլայի: Այն գիշերը անսովոր շշուկ մը զիս յանկարծ կ'արթընցնէ. կը լսեմ որ մօտիկ ժողովրդապետութեան զանգակը կը զարնուի. բայց այն զարնուածքը այնպէս արագ, սաւր, կամ թէ ըսեմ այնպէս ազդու և ահաւոր էր, որ անոր նմանը բընաւ լսած չունէի: Չեմ կրնար ըսել թէ այն ազարեր ձայնը սրտիս վրայ ինչպիսի տագնապոտ տպաւորութիւն մը ըրաւ. կ'իմանայի որ զայն արձակողը եկեղեցւոյն զանգակն էր, բայց նաև կը հասկնայի որ չէր այն քաղցր զանչիւնը, որ այնչափ անգամ տօնական օրեր լսեր էի, կամ երբ պատարագի կամ քրիստոնէականի ժողովուելու համար կը զարնէր:

Այսպիսի նեղիչ վարանման մէջ երկայն ատեն չմնացի. հազիւ թէ արթընցայ, տեսայ որ հայրս արտօրանօք կը հագուէր, մայրս ալ ամենայն փութով իրեն օգնելով: Վերջը տեսայ որ վրան խաչ հանեց, վերաւց պատէն իր վարդարանը և կրծքը վրայ կրաւ. Հուսկ վերջը տեսայ որ տապար մը և ուրագ մը առաւ, և մօրս մնաս բարև ըսելով և ինծի ալ համբոյր մը տալով, շտապաւ տունէն ելաւ: Մայրս ալ ելեր ու հագուեր էր. և որչափ ալ թախանձեց զիս որ անկողինը մնամ, բացարձակ ես ալ ելլել ուզեցի:

Այն միջոցին ձայներու և մարդկան խուլ մռնչիւն մը ճամբէն կը լսուէր. ես այդ նորութեան վրայ զարմացած էի, սակայն ամենևին չէի սարսափեր: Բայց կը տեսնէի որ մայրս նեղեալ ու անհանգիստ էր. մերթ ընդ մերթ աչքերն երկինք վերցնելով, խորունկ հառաչանքներ կ'արձըկէր: Ասիկայ ինծի քիչ մը տագնապ կու տար. բայց դեռ հազիւ եօթը տարեկան էի: Այն հասակին մէջ ցաւը թեթև քօղով անմեղ սրտի մը խաղաղ պարզութիւնը կ'աղօտացնէ. իբրև ամպ մի է որ կարծրակուռ վիմին կը զարնուի, բայց հազիւ զանգուածին երեսը գծելով նորէն ետ կը դառնայ:

Տանը դուռը ելայ. ինչ ահաւոր տեսարան աչքիս դիմացը ելաւ: Գիշերը մութ էր. երկինքը թանձր ամպերով պատած, որոնք իրարու վրայ կը դիզուէին, որպէս թէ մըրկալից և ամբոխեալ ծովու մը ալիքներն ըլլային: Փայլուն և կարմրագոյն լոյս մը ամէն բան կը լուսաւորէր, վերջը ցրտաշունչ և ուժգին քամիէ մը հալածեալ և տատանեալ թանձր և կարմրափայլ ծխոյ սիւներ վեր կը բարձրանային: Ձախ կողմ կը դառնամ և կը տեսնեմ հրեղէն լեզուի նման մեծամեծ բոցեր որ այն թանձրախիտ և խաւարապատ հորիզոնին վրայ զարհուրելի կերպով մը կը ձևանան: Այս տեսարանին ահաւորութիւնը աւելի կը սաստկացնէր զանգակին սգալից ձայնը որ անդադար ականջս կը հնչէր, խառնակ գոչումներն, սոսկալի կանչիւններն, ողորմելի լացերն ու կսկծելի ողբերն, որ սրտիս խորը կը թափանցէին, և խառն սարսափ ու կարեկցութիւն կը զարթուցանէին: Ուժով մը մօրս պլլուեցայ, և իբր բնական ազդմամբ մը իր զգեստին մէկ կտորովը աչքերս գոցեցի, բայց այդ զարհուրելի պատկերը դիմացէս չէր վերնար. մանաւանդ թէ անանկ մը կ'երևար որ երկինքը աւելի մութ և հրդեհը աւելի սոսկալի եղած ըլլար: Առաջին անգամն էր որ իմ մատաղ սիրտս սարսափի և զարհուրանաց տպաւորութեամբ կը զգածուէր. առաջին անգամն էր որ ցաւոց և թշուառութեան զգացմամբք կը տագնապէի, որովհետև իմ ներսս տա-

ղէկ կը զգայի, որ այն վայրկեանին փորձանք մը կը պատահէր։

Մայրս մեկէն խոհակերոցին ծխամած պատի մը վրայ եղած Աստուածածնայ պատկերին դիմացը ճրագ մը վառեց. առջևը ծունր դրաւ, և գլուխ բազկացը մէջ առնելով, պզտի ձեռքերս իրարու քով բերաւ, և արցունքէն հատկըլեալ ձայնով մը ըսաւ ինծի. Հօրդ համար աղօթենք։ Ոչ թէ ես կրնայի կամ այն վիճակի մէջ էի որ իմանայի թէ ինչու համար ինծի այսպէս կ'ըսէ. ես առաւել չէի հասկնար թէ ինչ պատճառաւ հայրս իմ աղօթիցս պէտք պիտի ունենար. բայց մէկ տարտամ և անորոշ մտածմունք մը թէ ինքը վտանգի մը մէջ պիտի ըլլայ՝ մեկէնիմէկ սկըսաւ միտքս տագնապել։ Ծունկս յերկիր խոնարհեցուցի, և ձեռքերս դէպ 'ի պատկերը բարձրացնելով, և այնպիսի եռանդեամբ մը, որպիսի թերևս բնաւ չեմ ունեցած. Տիրամայր, գոչեցի, Տիրամայր իմ, մայրիկս գոհ ըրէ։ Ո՛հ, որպիսի մաղթանք։ Սրբագոյն և անարատագոյն գորով մը դրաւ զայն իմ բերանս. սէրն որդիական, որ մանկական անմեղութեամբը կը դիմէ առ մայր իւր յերկինս, որպէս զի իր մայրը որ յերկրի՝ գոհ ընէ և խնդրուածքն ընդունի։

Այն վայրկենին զարհուրելի շառաչիւն մը, որ ամբողջ մեր տնակը սարսեցուց, զմեզ դողով և սարսափով վեր ցատքեցուց։ Ճամբուն վրայ վազեցինք, և տեսայ որ բոցերն զգալի նուազեր էին. և անոր տեղը ծուխն աւելի թանձր և պտուտալից վեր կը բարձրանար։ Այն սոսկալի շառաչման՝ գերեզմանական լռութիւն մը յաջորդեց. միայն հովը սաստկութեամբ կը շչէր, և մօտիկ անտառին եղևնեաց կատարները կը տատանէր։ Ջախող փայլակներ՝ այն մրրկեալ ամպոց մթին պտոյտքներէն կը թօթափէին. որոտումը հեռուէն կը գոռար, և եթէ կրնամ ըսել, այն ահաւոր տեսարանին սոսկումը կ'աւելցընէր։ Բայց այն լռութիւնը կարճատև եղաւ. ցաւագին հեծութիւնք և խառնաշփոթ աղաղակք ամէն կողմանէ բարձրացան. Թէպէտ տղայ էի, բայց հասկցայ որ սոսկալի արկած մը հանդիպած պիտի ըլլայ։

Քանի մը վայրկեան ես և մայրս այդ նեղութեան և տագնապի մէջն էինք, մէյմ'ալ հրդեհին լուսովը տեսանք որ ամբոխ մը մարդիկներու դէպ 'ի մեզի կու գան, որոնցմէ ոմանք բան մը կը բերէին որ ես չէի կրնար լաւ մը որոշել։ Եւ ահա տեսայ որ շարժական սանդուղի մը վրայ մարդ մը կը բերէին, քովն ալ տեղւոյն ժողովրդապետը կեցած էր։ Լսեցի որ մայրս յուսահատ աղաղակ մը փրթուց և սաստիկ լալ սկըսաւ։ Թափով մը վրան ինկայ և ջերմ արցունքով լալով իրեն պլլուեցայ։ Նախ ժողովրդապետը մօտաւ, և մօրս դառնալով՝ սիրալիր ձայնով մը ըսաւ. Ազնիւ Թերեզիա, մի յուսահատիր. եթէ Դիոնեսիոսին այս դժբաղդութիւնը պատահեցաւ, անշուշտ Աստուած կ'ողորմի, վասն զի իր մերձաւորին բարիք ընելու միջոցն այս բանս իրեն հանդիպեցաւ։

Երբոր ամբոխը տանը դուռը հասաւ, անոնք որ ուսերնուն վրայ սանդուխը կը բերէին, վար ինջեցուցին զայն, և այն մարդը թևերնուն վրայ խոհակերոցը տարին։ Աստուածածնայ ճրագէն աղօտ նշոյլ մը այն մարդուն երեսին վրայ կը ծաւալէր. տեսայ որ բոլոր արեամբ ծածկուած էր, մազերն այրած, և երեսը ծխէն բոլորովին սևցած։ Այն երևոյթը քիչ մը զիս խռովեց. և վախցած՝ մօրս ետևը քաշուեցայ։ Ժողովրդապետը քաղցրութեամբ փայփայեց զիս, և ձեռքը գլխուս վրայ դնելով ըսաւ. Խե՛ղճ պզտիկ, խեղճ պզտիկ։ Աչքերս վերուցի և ուշադրութեամբ ազնիւ քահանային նայելով, տեսայ որ երկու մեծաշիթ արցունքներ երեսէն վար կ'իյնային։ Այս ամէնը ինծի համար գաղտնիք մըն էր. չէի կրնար հասկնալ թէ ով էր այն սանդուխին վրայ տարածեալ մարդը, ինչու այնպէս արեամբ թաթխուած և սևցած էր. ինչու մեր տունը բերին և ամէնքը կուլային, մանաւորապէս մայրս և ժո-

ղովրդապետը։ Բայց այդ գաղտնիքը քիչ ատենէն պարզեցաւ երբոր տեսայ որ այն մարդը հօրս անկողնոյն վրայ պառկեցուցին։ Թէպէտ տղայ էի, բայց գիտէի որ այն անկողնոյն մէջ ինքը միայն կը պառկի, և կը մտածէի որ ուրիշ ոչ ոք հոն կրնար հանգչիլ։ Սաստկութեամբ մահճիս վրայ ցատքեցի տեսնելու համար թէ արդեօք գործը իմ տղայական խորհրդածութեանս հետ կը միաբանէ՞ր. մարդուն այլափոխեալ երեսը նայեցայ, բայց իմ հայրս ըլլալը չճանչցայ։ Գրեթէ ուրիշ մարդ կարծեր էի զինքը, և մահճէս իջնելու վրայ էի, մէյմ՚ալ տեսնամ որ կուրծքին վրայ վարդարանի կտորի մը անցուցած միտալ մը կը փայլի. այն ատեն միտքս եկաւ որ երթալէն առաջ պատէն վարդարան մը վերուց և կուրծքին վրայ կախեց. աւելի ուշադրութեամբ դիտեցի միտալը և յայտնի տեսայ որ այն միտալն էր զոր հայրս շատ անգամ ինծի կու տար՝ զիս ուրախացընելու համար։ Ան ատեն ամէն տարակոյս վերցաւ, սկսայ առատ արցունք թափել, ցատքեցի հօրս անկողնոյն վրայ, և բազուկներս պարանոցին վրայ ձգելով, գլուխս երեսին վրայ դրի։ Ճակատը այնպէս տաքցած էր, որ կարծես թէ գլուխս կրակ դարձած ածուխի վրայ դրեր էի։ Մեծ աշխատութեամբ մայրս ու ժողովրդապետը բաժնեցին զիս անկէց. բացարձակապէս կ՚ուզէի հօրս հետ պատատեալ մնալ։

Քիչ մը վերջը ժողովրդապետը մեկնեցաւ. իր երթալէն քանի մը վայրկեան յետոյ ճամբուն վրայ զանգակի ձայն մը լսեցի. վերջը աղօթաւորաց դաշն ձայներ. հուսկ վերջը պայծառութիւն մը լուսաւորեց գլխոհանոցը։ Տեսայ որ ոմանք վառած ճրագներով ներս մտան. անոնց մէջը կեցած էր ժողովրդապետը, ձեռքը ճերմակ կտաւի մէջ պլլած բան մը բռնած. ուրիշ մը վրան հովանոց մը բացած էր. և ամէնքը անկողնոյն խցիկը մտան։ Ժողովրդապետը հօրս մօտեցաւ. ամէնքը տրտմած ու ամփոփուած ծունր դրին։ Հարցուցի մօրս թէ ինչ կ՚ընեն. հեկեկանօք պատասխանեց. Հայրդ աղէկ չէ. ամենասուրբ Թոշակը տուին։ Չէի հասկնար ինչ ըսել կ՚ուզէր այդ վերջին խօսքը. միամտաբար հարցուցի մօրս. Ի՞նչ բան է Թոշակը։ — Բարի Տէրն է, պատասխանեց, բարի Տէրն է, որ հիմայ հօրդ սրտին մէջն է։

Միշտ կը յիշեմ այն մեծ զարմանքը որ յիս պատճառեցին մօրս այս խօսքերը։ Թէպէտ Աստուծոյ վրայ աղօտ գաղափար մը ունէի, և չէի կըրնար լաւ մը հասկնալ թէ ինչպէս Աստուած իմ հօրս սրտին մէջ կրնար ըլլալ, բայց և այնպէս քաղցր զարմացում մը գրաւեր էր զիս, որ ինծի հաւատացնել կու տար որ իմ հայրս կարգէ դուրս բան մը եղաւ, և մեր տնակը՝ նոր աշխարհ մը։ Աստուծոյ անբաւութիւնն էր որ անհասկանալի միալով եօթնամեայ տղու մը անմեղ սրտին կը յայտնուէր։

Երբոր ամէնքը գնացին, ազնիւ կին մը, որ ես կը ճանչնայի, ձեռքէս բռնեց ու դէպ 'ի եկեղեցին տարաւ։ Այս միջոցին տեսայ նորէն հրդեհը. բայց առաւօտեան արշալոյսը այնչափ սասկալի չէր ցուցըներ զայն, ինչպէս գիշերուան թանձր մթին մէջ երևցաւ ինծի։ Այն ատեն իմացայ որ կրակը գըղեկին մեծ մասը փճացուցեր էր, և առջևէն անցնելու ժամանակս տեսայ բազմութիւն մարդիկներու որ չորս կողմը ջահերու լուսով կ՚աշխատէին. զոր բնաւ տեսած չունէի։ Դէպ 'ի եկեղեցին երթալու միջոց երբեմն երբեմն գլուխս այն տխուր տեսարանին կը դարձընէի. չէի կրնար աչքս բաժնել անկէց, և ինծի անանկ մը կու գար որ այն աղիտաւոր երևոյթը իմ մտքիս անջնջելի պատահար մը պիտի ըլլայ։ Եւ այնպէս ալ եղաւ. այն հրդեհը ինծի համար առաջին կէտ մը եղաւ, որով իմ կենացս ընթացքն սկսաւ. եօթը տարուան հասակիս այն բոցերուն մէջ ինծի աշխարհս յայտնուեցաւ. և այն աւերակներով թշուառութիւնն պարզեցաւ ինծի։ Ճշմարիտ պատկեր

կրից որ մարդուս սրտին մէջ կ'այրի ու կը բորբոքի. և ճշմարիտ պատկեր ցաւոց որ զհոգին կը պատէ և պատրանքները կը կործանէ։

Այն կինը զիս ժողովրդապետին տունը տարաւ. ուտելու համար կաթին մէջ թաթխած հաց տուաւ. մեծ ախորժակով կերայ, և երբ նախաճաշս լմնցուցի, տախտակին վրայ թեւերուս մէջ գլուխս կռթնցուցած խորունկ մը քնացայ։ Այն առաջին անգամն անհանդիստ քուն մը ունեցայ. գիշերուան անձկութիւնքն մատաղ սրտիս մէջ այնպիսի տագնապ մը զարթուցեր էին, որ զարհուրելի երազներով զիս կը խռովէր։ Դեռ կը յիշեմ որ երկու կամ երեք անգամ արթնցայ։ Կէս քնոյ մէջ սենեկին չորս կողմը կը նայէի, ըստ սովորականին հայրս ու մայրս փնտռելով։ Չտեսնելով զիրենք, կը նեղուէի և լալս կու գար. բայց արցունքս գրեթէ կը դադրէր, երբ Մարգարիտա, որ իմ ազնուասիրտ պահապանիս անունն էր, սիրալիր քաղցրութեամբ զիս նորէն 'ի քուն կը հրաւիրէր։ Եւ իրաւցընէ բաւական հանգիստ քնացայ. և երբոր արթնցայ, Մարգարիտա ձեռքէս բռնած զիս դուրս տարաւ։ Քիչ վերջը մեր տնակին դիմացն էինք. երկուքնիս ալ ներս մտանք. և մայրս հազիւ թէ զիս տեսաւ, դիմացս վազեց՝ երեսը արցունքով ողողած, առաւ զիս գիրկը և ուժգին կրծիցը վրայ սեղմելով զիս սկսաւ անյագաբար մը պագնել. և եկուր, ըսաւ, եկուր որ հօրդ վերջին օրհնութիւնն առնուս։ — Տարաւ զիս անկողնոյն մօտ. բարձին քով կանգուն ոտից վրայ կեցած էր ժողովրդապետը. անկողնոյն գլուխը ուրիշ մը ծունր դրած էր, ձեռքը վառած ճրագ մը բռնած։ Հայրս կենաց վերջերն էր. եօթը տարուան՝ չէի կրնար ըմբռնել այն ահաւոր վայրկենին վսեմ ծանրութիւնը. բայց սակայն բաւական կը հասկնայի որ ինքը ալ այն չէր ինչ որ կ'երեւնար ինծի երբ իմ խանձարուրքէս կը տեսնէի զինքը մօրս քով պառկած. լաւ մը երեսը դիտեցի, և թէպէտ այլափոխած ու տգեղցած էր, բայց ինծի վախ չէր բերեր. այն վայրկենին ուրիշ զգացում մը կ'իմանայի, զոր չէի կրնար լաւ մը զանազանել. անմեղ սիրոյ և անզգաստ կարեկցութեան խառնուրդ մըն էր։

Ժողովրդապետը քանի մը խօսք զրուցեց հօրս. անոր ձայնին՝ կարծես թէ խորին թմբրութենէ մը սթափեցաւ. բացաւ աչքերը և մեծ դժուարութեամբ գլուխը դէպ 'ի ինծի դարձուց։ Մէկ թեւը դուրս երկնցուց, և ձեռքը գլխուս վրայ դրաւ. վերջը խորին հեծութիւն մը լսեցի, և ժողովրդապետը դողդղալու ձայնով մը ըսաւ. Վախճանեցաւ։ Յաւիտենականութեան եզերքը հօրս վերջին օրհնութիւն ընդունեցայ։ Խեղճ հայր։

Տարին զիս ժողովրդապետին տունը. չեմ կրնար ըսել որչափ սիրալիր խընամք ցցուց ինծի այն սուրբ ծերունին և ազնիւ Մարգարիտա։ Հետեւեալ օրը երեկոյեան դէմ լսեցի որ եկեղեցւոյն զանգակը երկայն և միակերպ մը կը զարնէր. այն ձայնը չէր ազդեր ինծի միւսոյն սարսափը՝ որ հրդեհին գիշերը լսեցի. բայց ամէն մէկ զարնուածքը տխրութեամբ մը սրտիս խորը կը հընչէր։ Տանը մէջ ասդիս անդին պտըտելով՝ կիսափակ դրան մը հասայ. մէկ փեղկը հրեցի և գլուխս ներս երկնցուցած՝ նայեցայ թէ ո՛ւր կը տանի։ Տեսայ ընդարձակ՝ մութ և խաւար սենեակ մը. մէկ անկիւնը ճրագ մը կը վառէր, որ լուսոյ աղօտ ճառագայթներ կ'արձակէր։ Քիչ մ'ալ յառաջ կ'երթամ և կ'իմանամ որ եկեղեցին եմ. թէպէտ և ոչ երբեք գիշեր ատեն լոյս չեղած տեղ մինակ գտնուած ունէի, բայց և այնպէս առաջ գնացի և տղայական հետաքրքրութեամբ ամէն կողմ կը դիտէի։ Քանի մը քայլ ընելէս ետքը, լսեցի որ մէկը կը մտնէ. յայտնուելու վախէս, որոշ չգիտնալով թէ արդեօք կարօղ էի հոն ներս մտնելու, աւագ խորանին ետեւը պահուըտեցայ։ Տեսայ մարդ մը, որ այն կիսաշէջ լոյսէն ճրագիկ մը վառելով, խորանին քանի մը.

ճրագները վառեց, և վերջը եկեղեցւոյն դուռը բացաւ։ Քիչ մը վերջը մեծ պայծառութիւն մը զդաշտավայրը կը լուսաւորէր. յետոյ քանի մը հոգի երկայն սև փիլոն հագած և ձեռքերնին ճրագ՝ եկեղեցին մտան. անոնց ետևէն ժողովրդապետը տեսայ, վերջը չորս հոգի որոնք ուսերնուն վրայ սև կտաւով ծածկած երկայնաձև բան մը կը բերէին։ Եկեղեցւոյն մէջ տեղը դրին զայն. ամէնքը միաբան քանի մը վայրկեան երգեցին. վերջը ճրագները մարեցին ու գացին։ Այն մարդը որ աւագ խորանին ճրագները վառեր էր, մարեց զանոնք, փակողակով գոցեց եկեղեցւոյն դուռը և իմ մտած դռնէս դուրս ելաւ։

Եկեղեցին իր առջի մթութեանը մէջ մնաց. միայն սովորական ճրագին տկար ճառագայթը այն թանձր խաւարը քիչ մը կ'ընդմիջէր։ Ես չէի համարձակեր պահուըտած տեղէս շարժելու. և թէպէտ կը տեսնայի որ եկեղեցւոյն մէջ կենդանի արարած մը չըկար, չէի սիրտ ըներ ժողովրդապետին տունը դառնալու։ Սիրտս սաստիկ բաբախել սկսաւ. տագնապալից դող մը բռնեց զիս. ուզեցի շարժիլ, բայց գետնին քամուածի պէս եղեր էի։ Սկսաւ ճակտէս պաղ քրտինք մը կաթել. ուզեցի մէկը կանչել, բայց սարսափէս ձայնս խղդուեր էր։ Կամաց կամաց հանդարտիլ սկսայ, և այն առաջին տագնապը անցնելէն յետոյ, սկսայ շարժիլ դէպ 'ի տուն երթալու։ Աւագ խորանին մօտէն անցնելու միջոց եկեղեցւոյն աչք մը տուի. ճրագին տկար լուսովը տեսայ հոն գետինը այն սևով պատած բանը, որ սաստիկ աչքիս զարկեր էր։ Ի՞նչ բան պիտի ըլլայ ատիկայ, կ'ըսէի ինքնիրենս, արդեօք ի՞նչ կայ մէջը։ Հետաքրքրութիւնը կերպով մը իմ գլխաւոր ախտս եղած էր. այս վայրկենիս խիստ սաստիկ կերպով ներսի դիս արթնցաւ։ Կարծես թէ ա՛լ վախ չէր ազդեր ինծի ոչ գտնուած տեղւոյս միայնութիւնը, ոչ հոն տիրած մթութիւնը, և ոչ հոն ապատաքար կենալու իրաւունք չունենալս։

Այս հետաքրքրութենէս շարժած՝ ելլելք դռնէս առաջ անցայ. բայց այն գլխս այնչափ գրգռող առարկայէն քանի մը քայլ հեռու կանկ առի, իբր գաղտնի զօրութենէ մը բռնուած, որ ա՛լ առաջ չերթամ. քանի մը վայրկեան կեցայ անշարժ և տարակուսեալ թէ ի՞նչ ընեմ. բայց վերջը հետաքրքրութիւնը ամէն մտածութեան յաղթեց, և աչքս չորս կողմս դարձնելով՝ տեսնելու համար թէ իրաւցնէ մինա՛կ եմ, սկսայ դէպ 'ի եկեղեցւոյն մէջ տեղը երթալ։ Մօտ հասնելով այն դեռ ինծի անծանօթ բանին, մանրամասն դիտեցի. զանիկայ պատող սև ծածկոցին վրայ ճերմակ ու դեղին մեծ խաչ մը տեսայ. չորս անկիւնները, կամ լաւ ևս՝ ծածկոցին ծայրերը չորս կլոր բաներ տեսայ՝ խաչաձև գաւազանիկներու վրայ կռթնած։ Ի՞նչ բան կը նշանակէ ատիկայ, ըսի ինքնիրենս։ Այս բաները փոխանակ ինծի գաղտնիքը պարզելու, աւելի մթին անհասութեամբ մը կը պատէին զայն, և փոխանակ իմ հետաքրքրութիւնս գոհ ընելու, բիւրապատիկ ևս կը սաստկացնէին։

Ան ատեն որոշեցի որ ծալքերէն մէկը վերցնեմ. և այս խորհուրդս 'ի գործ դնելէն առաջ կտոր մը տատամսեալ կեցայ։ Բայց այնչափ և այնպիսի էր՝ հոն տակը ի՞նչ եղածը իմանալու հետաքրքրութիւնս, որ ինծի անսովոր համարձակութեամբ մը միտքս որոշեցի։ Վերուցի վերջապէս ծածկոցին մէկ ծալքը, ինչուան որ կարծր և ընդդիմահար բանի մը հանդիպեցայ։ Այն առաջին քայլը ընելէն ետև, սիրտ ըրի ամբողջ վերցնելու. բայց գործողութիւնը կարծածիս պէս դիւրին չէր։ Ծածկոցը ծանր էր, և ես մէկ կողմն ալ վերցնելու դժուարութիւն կը զգայի։ Այս խորհուրդէս ետ կենալու վրայ էի, մէյմ'ալ ահաւոր և սոսկալի մտածութիւն մը բռնեց զիս։ Ջեմ գիտեր ինչպէս, երևակայութեանս մէջ տարտամ և չփոթ՝ բայց և տագնապող մտածութիւն մը արթնցաւ թէ գուցէ հոն մեռել մը ըլլայ։ Այն ատեն մշուշ կեր-

պով մը միտքս եկաւ թէ ուրիշ անգամ տեսեր էի իմ տնակիս առջեւէն այն սեւ զգեստներ հագած մարդիկներուն անցնիլը, ձեռքերնին վառած ճրագներ, ետեւնէն ալ ժողովրդապետը, վերջն ալ դիմացս եղածին շատ նման բան մը։ Շփոթ կերպով մը, բայց առանց պարագաներն լաւ մը յիշելու, եւ առանց պատճառն հասկնալու, ինծի անանկ եկաւ որ այն ամբոխը դէպ 'ի եկեղեցին գացած պիտի ըլլայ. սա միայն որոշ կը յիշէի թէ երբոր դիմացնէս կ'անցնէին, մայրս ծունր կը դնէր եւ հայրս գլխարկը կը վերցնէր։

Այս շփոթ եւ խառնակ՝ միանգամայն բաւական կենդանի եւ ցաւագին յիշատակներն այնպիսի անստուգութեան եւ վախի մը մէջ ձգեցին զիս, որ արձանի մը պէս անշարժ մնացի։ Բայց թէ որ, կ'ըսէի ինքնիրենս, ատոր մէջը մեռնիլ կայ։ Այս մտածութիւնը վրաս քստմունք կը բերէր։ Եւ ինչպէս աս տեսակ դիպուածներու մէջ միշտ կը պատահի, մէկ մտածութիւն մը ուրիշ մտածութիւն մը յառաջ կը բերէ, մէկ կասկած մը ուրիշ կասկած կը ծնուցանէ։ Մահուան անորոշ եւ ընդհանուր մտածութիւնը սկսաւ կերպով մը իմ պզտի իմացականութեանս մէջ թանձրանալ. երեւակայութիւնն ալ անոր վրայ աւելցուց այն տարերքն զոր ճշգրիտ եւ որոշ ծանօթութիւն մը չէր կրնար յառաջ բերել. այս մահուան մտածութեան վրայ մեռեալ անձի մը գաղափարն աւելցաւ. եւ այս անձը կամաց կամաց մարմին, կերպարանք եւ վերջը անուն մը կը զգենուր։ Կերպով մը այսպէս ըսեմ, մեռելոյն քով մարդ մը տեսնուեցաւ. եւ այս մարդուն անունը սրտիս խորն հնչեց, եւ սարսափած հարցուցի. Այս մեռեալն արդեօք իմ հայրս է։

Ինչպէս սաստիկ մրրկաց մէջ բոթաբեր փայլակ մը, այնպէս այս սոսկալի մտածութիւնը միտքիս մէջ ցայտեց։ Ինչպիսի մերթ քաղցր եւ պայծառ, մերթ ահարկու եւ տխուր խորհուրդներ ու մտածութիւններ այն վայրկեանին միտքս կը լեցուէին։ Լսեր էի խօսիլ արքայութեան եւ դժոխոց վրայ. վերջինը այնչափ չէր վախցուցած զիս, որչափ առաջինը ուրախութիւն եւ գոհութիւն պատճառեր էր։ Այն գաղափարն թէ արքայութեան մէջ կը տեսնուի Աստուած, Տիրամայրն եւ պահապան հրեշտակը, միշտ իմ մանկական երեւակայութիւնս շարժեր ու ոգեւորեր էր, եւ երբոր անոնց վրայ խօսք կ'ըլլար, կարծես թէ առաջուց մտքովս Տիրամօր հետ ըլլալու քաղցրութիւնը կը վայելէի։ Այս արքայութեան զուարթ մտածութիւնն՝ իբրեւ մրրկալից երկնից վրայ ծիածան մը եղաւ. մահուան մտածութեան ազդած արհաւիրքը մեղմացաւ, մանաւանդ թէ կերպով մը յուրախութիւն դարձաւ, երբ արքայութեան մտածութեան հետ միացաւ։ Այն ատեն բնաւ ինծի վախ չէր ազդեր այն կասկածը թէ հոն մեռել մը ըլլայ մէջը եւ թէ այն մեռելը իմ հայրս ըլլայ, մանկական վերացմամբ մը յափշտակուածի զգացմունք կ'իմանայի, եւ այն անմեղ հոգւոյ մը սեփական ամբծութեամբ կարծես թէ հայրս Տիրուհւոյն եւ հրեշտակաց հետ ընկերացեալ կը տեսնէի։ Այն ատեն միտքս եկաւ իրմէն առած օրհնութիւնս, դըլխուս վրայ ձեռքը դնելը, անկողնոյն ոտքին քով վառած ճրագը, ժողովրդապետին անոր գլուխը բռնելը, եւ մօրս՝ մահուան անկողնոյն քով ծունր դրած լալը։ Այս տեսարանը, որ այն ատենը ինծի ազդեցութիւն մը չէր ըրած, իբրեւ կենդանի եւ ոգելից պատկեր մը մըտացս ներկայացաւ. ինծի կ'երեւար թէ ասիկայ իբրեւ սկզբնաւորութիւն մը ըլլայ այն տեսարանին զոր իմ երեւակայութիւնս արքայութեան վրայօք ինծի կը նկարէր։ Ինծի համար ինչպիսի վայրկեան եղաւ անիկայ. ամենայն վախ փարատեցաւ. եւ ալ ան մութ տեղւոյն մէջ զիս մինակ չէի համարեր, եւ ալ ոչ թէ հեռաքրքրութիւն, այլ բուռն, անդիմադրելի եւ անյաղթելի փափաք մը կը դրդէր զիս այն ծածկոցը վերցնել, եւ մի անգամ եւս հայրս տեսնել.

և կերպով մը գիտնալ թէ արդեօք արքայութիւնն էր ։

Ճրագին լոյսը երթալով կը նուազէր ու կը մթննար. հազիւ կրնայի դիմացս եղած բաները զանազանել ։ Բոլոր ուժս ժողվեցի և մեծաւ աշխատութեամբ կրցայ ճաճկոցը բոլորովին վերցնել ։ Հազիւ թէ զայն վերցուցեր էի, ճրագը բոլորովին մարեցաւ, և ես կատարեալ մթութեան մը մէջ մնացի ։ Այն վայրկեանը ինծի համար սոսկալի եղաւ. անհնարին է բացատրել ինչ որ ես այն մահաբեր վայրկեանին զգացի ։ Վախն ամէն բանի յաղթեց. տերևի պէս կը դողայի, մազերս տնկուեցան, և կարծես թէ ալ շունչ չէի կրնար առնուլ ։ Կորսուած էի, և ինչ ընելիքս չէի գիտեր ։ Խարխափելով մէկ ձեռքս երկընցուցի, որպէս թէ երթալու ճամբան գտնեմ, և քարի պէս պաղ բանի մը հանդիպեցայ, բայց իմ հրելուս տեղի տուաւ ։ Սաստկութեամբ բռնեցի զայն և ուժով սխմեցի. ինծի ուրիշ մատերու և ուրիշ ձեռքի դպչելու պէս եկաւ ։ Ուզեցի խալըսիլ, բայց չկրցայ. որչափ զիս քակելու կը ջանայի, այնչափ աւելի կաշկանդուիլ կ'իմանայի. փուճ տեղը շատ անգամ ջանացի ձեռքս ետ քաշելու, վասն զի երկու աքցանի մէջ եղածէ աւելի սխմուած էր ։ Կը թողում երևակայել իմ տագնապս ու սարսափս. մէկէն միտքս եկաւ այն ահաւոր համոզմունքը, թէ մեռելը բռներ է զիս, և հիմա իրեն իշխանութեան տակ եմ ։ Այն միջոցին տկար և խուլ կանչելու ձայն մը կը լսեմ. Հենրիկոս, Հենրիկոս ։ Այն միայնութեան մէջ, և այն տեղը ուր կը կարծէի թէ մարդ չըկայ, երբոր իմ անունս տրուիլը լսեցի, արիւնս երակներուս մէջ պաղեցաւ, ծունկերս ծալլեցան, և զգայութիւնս կորսնցուցած՝ գետնին վրայ տարածուած ինկայ ։

Կը շարունակուի ։

---

## Եթովպիա և Անգղիացւոց վերջին արշաւանքը ։

Անգղիական տէրութիւնն արշաւանք մը սկսաւ Եթովպիոյ դէմ, անցեալ տարուոյն վերջերը, իւր հիւպատոսին և ազգայնոցը բանտարգելութեան վրէժն առնելու համար ։ Եթովպիոյ աշխարհը՝ որ Ափրիկէ պտըտող ճանապարհորդաց տուած տեղեկութիւններովը միայն ճանչցուած է, երկու մաս կը բաժնուի. Դիկրէ և Ամհարա. հիւսիսային արևելեան կողմն, Կարմիր ծովուն եզերացը մօտ, Դիկրէի մասն է. լեզուներն աղաւաղութիւն մ'է հին Կիզ լեզուին, որ եթովպական սրբազան լեզուն է, Հրէից և Արաբացւոց լեզուներէն ձևացած ։ Ամհարայի մէջ լեզուն բոլորովին տարբեր է, բնակիչներն ալ Տէմպէա կամ Ցանա լճին մօտակայ Եթովպիոյ մէջտեղի դաշտավայրները կը բնակին. հարաւային արևելեան կողմը կ'իյնայ Կոռժամ բարեբեր գաւառը, որուն մէջէն կ'անցնի Կապոյտ Նեղոսի ճիւղերէն մէկը. Դաքազզէ գետն ալ զԱմհարա Դիկրէն կը բաժնէ ։ Հիւսիսային Եթովպիայն, որ հին ատենը Շօայի կամ Հարաւային Եթովպիոյ հետ միացած էր, որ է մասն հին Եթովպիոյ, Կարմիր ծովուն մուտքին վրայ կ'իյնայ, Պապ–էլ–Մանտէպի նեղուցին մօտ ։ Եթովպիայն հիւսիսէն դէպ 'ի հարաւ գրեթէ 600 քիլոմէդր երկայնութիւն ունի, և 400 ալ լայնութիւն արևելքէն դէպ 'ի արևմուտք ։ Գաղղիոյ հաւասար է մեծութեամբ և Զուիցերիոյ պէս ալ լեռնոտ է ։

Կարմիր ծովէն և Հնդկային Ովկիանոսէն բաժնուած է ցած ափունքով մը 100 կամ 150 քիլոմեդր լայնութեամբ, և լեռներու գօտեաց ստորոտէն կը սկըսի, որք պարսպի մը պէս երկու կողմէն կը պատեն բոլոր Եթովպիայն ։ Այս ծովափնեայ ցամաքը Արաբիոյ իշխանութեան տակն է և Օսմանեան տէրութեան հպատակ, որով ծովէն ուղղակի չկրնար մօտեցուիլ ։ Մասսովայի

նաւահանգիստը, որ Արաբացւոց մասին մէջ կ'իյնայ, Եթովպիոյ հետ եղած յարաբերութեանց գլխաւոր կէտն է. բուսատէ կղզի մըն է, չորս դիէն բուստեայ ժայռերով պատած, և կեդրոն է ծովափնեայ ընդարձակ վաճառականութեան, ընդ մէջ մօտակայ եզերաց և գլխաւորապէս Ճիտտէի հետ, որ Մէքքէի և Եամպօյ վաճառաց ընդունարանն է։ Արևելքի միւս ամէն քաղաքաց պէս Մասսովայն ալ աւերակ կերպարանք մ'ունի, աղտոտ և օձապտոյտ փողոցներով։

Եթովպիայն դէպ 'ի հիւսիս և դէպ 'ի արևելք՝ սահմանակից է եգիպտական գաւառաց՝ Սուտանի և Սեննաարայ, ուսկից կու գան, ըստ վերջին քննութեանց անգղիացի Սամուէլի Պէքըրայ, Նեղոսին օժանդակ գետերը։ Կապոյտ Նեղոսը որ Խարթումի մօտ՝ ճերմակ Նեղոսին հետ կը խառնուի, մասամբ մը կը շրջապատէ հիւսիսային արևմուտքը։ Զորս կողմէն Օսմանեան տէրութենէն և Թափառական ցեղերէ շրջապատուած է, որք միշտ թշնամի են իրեն։ Եթովպիոյ քաղաքական վիճակը շատ խեղճ է. օրինակ մըն է ազգի մը որ ժամանակաւ համեմատաբար իր մօտակայ ազգերէն աւելի մտաւորական զարգացման հասնելէ վերջը, յետախաղացութեան վիճակի մէջ կ'իյնայ բռնակալութեամբ և անիշխանութեամբ։ Կառավարութիւնը կալուածական է ինչպէս 'ի Ճաբոն. իշխանները կէս անկախ վիճակ մ'ունին բաւական զինուորական զօրութիւն ունենալու իշխանութեամբ. այսպիսի հանգամանաց մէջ ազգային սահմանադրական կառավարութիւն ունենալը անկարելի է, և ստէպ ներքին պատերազմները բարբարոսական վիճակի մը մէջ կը ձգեն զայն։

Եթովպացիք չորս հինգ միլիոնի կը հասնին։ Աղեքսանդրիոյ պատրիարգաց ձեռքով քրիստոնեայ եղած են, հիմա եւտիքական են. բայց կ'ըսուի թէ վերջերս Թէոդորոս կայսրը կաթողիկէ հաւատքը ընդունեցաւ։ Մէջերնին բացարձակ իշխանութիւն մը չկայ. երկիրը երեք կամ չորս զանազան տէրութիւն բաժնուած է։ Ամհարան և միջին գաւառները Թէոդորոս Նեկուսին ձեռքն են որ ինքը զինք թագաւոր թագաւորաց կ'անուանէ։ Արդի ճանապարհորդաց նկարագրութեանը նայելով Թէոդորոս գրեթէ քառասունըհինգ տարուան կայ, զօրաւոր կազմութիւն մը ունի, չափաւոր հասակ և արթնամիտ գծագրութիւն։ Իր ցեղը Սողոմոնէն կը համարի Սաբա թագուհիէն ինջած. և իր ցեղին առաջին թագաւորին Մէնիլէք անունը կու տան։ Թէպէտ ինքը քսան տարի առաջ կոնտարի մէջ փողոցը քուրջոյ կը ծախէր, և իր անունը Քասսա էր, բայց կորիճ մարդ մը ըլլալով զինուոր եղեր էր և կամաց կամաց իր կողմնակիցները շատցընելով հին թագաւորին թոռը իրեն կին առաւ և անունը փոխեց Թէոդորոս Բ դրաւ և քանի մը անգամ իր հակառակորդաց հետ զարնուելով՝ բոլոր գաւառին տէր եղաւ։ Գահը ձեռք ձգելէն անմիջապէս վերջը, կանոնաւոր բանակ մը ձևացուց. զէնքերը կաֆայթի զինարանէն ելած են, որուն աշխատաւորները Գերմանացիք են։ Աւազակաց խումբերը ջնջեց, որք իրենց աւարառութեամբը բոլոր լեռները կ'ապականէին. պատերազմի մէջ ձեռք ընկողաց տանջանքները վերցուց և վաճառականութիւնը բազմաթիւ արդելքներէ ազատեց։ Բնութեամբ խիստ բռնաւոր և կասկածոտ է, վրան շատ անգթութիւններ կը պատմեն. կասկածաւորութեամբը Անգղիոյ հիւպատը բռնեց բանտ դրաւ. և որչափ անուշութեամբ ջանք եղաւ խնդիրը լուծելու և բանտարգելեալքն ազատելու՝ ճար չեղաւ։ Մինչև Երուսաղեմի Հայոց Եսայի պատրիարգը ինչպէս նաև Կոստանդնուպօլսի Պօղոս պատրիարգը, Անգղիոյ հրաւիրմամբ, յորդորական թղթեր գրեցին, զորս ազգային լրագիրք հրատարակեցին, Թէոդորոսին չզիջանելովը բռնադատեցաւ Անգղիա զէնք ձեռք առնելու։



Տէպրա–Թապոր, Թէոդորոսի դղեակը։

Այս արշաւանքը յարմար առիթ սեպելով Անգղիացիք ուսումնական ընկերութիւն մ'ալ բանակին հետ խառնեցին, որ արեւելեան Ափրիկէի այս մասը՝ որ քիչ քննուած է՝ լաւ մը հետազօտեն։ Հեռաւոր և եւրոպական կենաց հարկաւոր ամէն բաներէ զուրկ աշխարհքի մը մէջ արշաւանք ընելու համար շատ նիւթական պիտոյից պէտք կայ. ուտելիք, ձիոց համար խոտեղէն, թնդանօթք, պատերազմի պաշարք, շարժական հիւանդանոցք, տեղափոխութեան և բանակադրութեան կարեւոր նիւթք. ամենամանր նիւթ մ'ալ պակսի՝ կրնայ բոլոր արշաւանքը փուճ հանել։

Զօրաց և ձիոց մեծ մասը Հնդկաստանի Անգղիացւոց երկիրներէն առնուեցաւ, որք և աւելի վարժած են արեւադարձի կլիմայից։ Ջորիները որ այնպիսի անհարթ երկիրներու մէջ տեղափոխութեանց յարմար են՝ Եգիպտոսէ գնուեցան, և թնդանօթաձիգ զօրաց անտուկները դիւրատար մեծութեամբ մը շինուեցան։ Ձիոց կերակուրին համար Եւրոպայէն եկած չոր և սխմուած խոտով պաշար դիզեցին որպէս զի չըլլայ որ հոն մարգագետին չգտնելով՝ անկերակուր մնան ձիերը։ Հիւանդանոց նաւեր, ձի տանելու և պաշարաբարձ նաւեր ծովով բանակին ետեւէն կ'երթան։ Զօրաց միւս մասն ալ Անգղիայէն կու գայ, կամ Սուէզի ճամբով, կամ Բարեյուսոյ գլխէն և Ուլլայի մօտ Ատուլիզի ծոցը 'ի Հնդկաց եկած բանակին հետ կը միանան։ Մասնաւոր քննութենէ վերջը յարմարագոյն սեպեցին այս նաւակայքը, որ Մասսովայի նաւահանգըստէն ապահով է, նաւերը կրնան Ատու-

լեռի զառ 'ի վեր ծովեզերաց մինչև 500 մետր մօտենալ, և հոնտեղուանք առատ աղբիւր մըն ալ կը բղխէ։ Ջօրաց գալէն առաջ ընկերութիւն մը գնաց տեղը ճանչնալու, ընտրելու։ Շիտակ կոնտար Մայրաքաղաքին կամ Ցէպրա—Թապորի Թէոդորոսի բնակութեան վրայ պիտի քալեն։ Դրուած պատկերն Թէոդորոսի այս պալատն է զոր Բորդուգալցիք շինած են. քառակուսի է ձևով, սպանիական—մաւրիտանայի ճարտարապետութեամբ։

Ուլլայէն դէպ 'ի կոնտար 250 քիլոմետր ճամբայ կայ ընելու, Դիկրէի մէջէն քալելով. լերանց մէջ ճամբայ չկայ, բայց 'ի հեղեղատներու անցքերէն, անոր համար բեռնակիր կենդանեաց համար սակրաւոր զօրականները ճամբայ պիտի բանան։ Քանի մը կիրճերու մէջ ալ, ինչպէս Թէքոնտայի և Քումկլի, ուսկից զօրքերը ստիպուած են անցնելու՝ երկու բարձրաբերձ ժայռերու մէջէն է ճամբան։

Թերևս Անգղիացիք օգնականներ ալ գտնեն իրենց Թէոդորոսի Թշնամի ցեղերուն մէջ, որ շրջակայ տեղուանքը կը կենան, ինչպէս կալլա ցեղը, Քասսայի իշխանը՝ որ Դիկրէի կառավարին է։ Ապագայն պիտի յայտնէ մեզի այս պատերազմին վախճանը, որ 100 միլիոն ֆռանգէն աւելի պիտի արժէ Անգղիոյ։ Փափաքելի է որ նորանոր ծանօթութեամբ աշխարհագրական ուսմունքն ալ ճոխանայ։

Ց. Ռ. Է.

---

## ՍՈՒԷԶԻ ՋՐԱՆՑՔԸ

Անգղիացի ճանապարհորդ մը Սուէզի ջրանցքին մեծ ձեռնարկութեանը վրայ նորերս հետևեալ տեղեկութիւնը կու տայ։

Պոմպէ երթալու համար, հասնելով Աղէքսանդրիա, պէտ քանի մը օր ունէի Սուէզ գտնուելու համար, և որովհետև Բարիզ լսած էի թէ Սուէզ գնացող ճամբորդները կարող են դիւրաւ Բորդ—Սայիտէն ջրանցքով երթալ, անոր համար ուզեցի ես ալ այս ճամբան բռնել։

Վերջի ամիսներս արևելքի գծերուն վրայ գտնուած Գաղղիոյ, Ռուսաստանի, Աւստրիոյ և Տաճկաստանի շոգենաւերը կայան մը հաստատեր են Բորդ—Սայիտի նաւահանգստին մէջ, և որովհետև գոնէ շաբաթը մի անգամ շոգենաւ մը Բորդ—Սայիտի նաւահանգստէն կ'ելլէ դէպ 'ի Աղէքսանդրիա, անոր համար ես ալ մէկ երկու օր սպասեցի Օլկա ռուս շոգենաւուն որ կը պատրաստուէր դէպ 'ի Կոստանդնուպոլիս երթալու։ Շոգենաւուն մէջ բաղդով Աղէքսանդրիայէն հայրենակից մը գտայ, որ ինքն ալ իմ ճամբորդութիւնս պիտի ընէր։ Քանի ժամ ախորժելի նաւարկութենէ ետև՝ հասանք Բորդ-Սայիտ։ Քիչ մը հեռաւորութենէն կը տեսնուի այս նորածին քաղաքին կարևորութիւնը. Թանձր ծուխ մը իր ծոցէն դէպ 'ի երկինք կը բարձրանայ և նաւահանգստին մէջ բազմութիւն շոգեշարժ փորող մեքենաներու և նաւաձիգ նաւերու անդադար կ'աշխատին։

Նաւահանգստին մուտքը պաշտպանուած է արուեստական խոշոր քարերէ մեծ ամբարտակով, որ մէկուկէս մղոն դէպ 'ի ծով կը յառաջէ։ Մեծամեծ խճահան մեքենայք կ'աշխատին ջրանցքը փորելու, որուն հողը հեռուն կը փոխադրեն՝ դէպ 'ի ծով շոգեշարժ նաւակներ։ Օլկա նաւը, որ գրեթէ հազար տակառաչափ կը տանի, ձգեց խարիսխը քաղաքին դիմացը, և ցամաք ելլալնուս պէս առջևնիս գտանք Գաղղիոյ մեծ պանդոկը (Grand-Hôtel)։ Գիշերը անցնելու համար բնակարաննիս ապահովելէն ետքը, գնացինք տեսնելու քաղաքին գլխաւոր տեղուանքը։ Բորդ—Սայիտի քաղաքը երկու բառով կրնայ նկարագրուիլ, վասնզի ապագայ մեծութեանց դիտմամբ կանգնուած է։ Բնակիչն է 8000 Գաղղիացիք, Իտալացիք, Յոյնք և արևելցիք, որոնք հազար փայտաշէն տուն կը բնակին, որոնց ար-

տաքին տեղը մնանաւոր զարդարանք մը չունին։

Ծովահայեաց ծառուղւոյն տներէն ոմանք լաւագոյն կանգնուած են և մեծաւ մասամբ Հնդկաստանցւոց տներուն կը նմանին։

Քաղաքին մնացած մասին մէջ գործաւորաց ընտանեացը տները ձմերոցի նման կարգաւ շարուած են, քանի մը արճանոցներով ու գինետուններով, խանութներով, զոյգ մը պանդոկներով և երկու իրեք մատուռներով։ Քաղքին մէջ տեսնելու նշանաւոր մէկ բան մըն ալ է զգեստուց և տարազուց զանազանութիւնը. կանայք վայելուչ կը հագուին թէ՛ վաճառանոց երթալու համար և թէ բազմամարդ տեղուանք ունեցած խանութնին բանալու համար։

Նաւահանգստին մէջ կը գտնուին միշտ տասուերկու անգղիացի նաւ ածուխ բարձած, և տասնըհինգ մանր նաւեր որոնք Միջերկրականին վրայ կ՚երթևեկեն այլ և այլ ազգաց համար։ Նաւահանգստին կից համբարանոց մը կայ (Dock), որուն մէջ կը շինուին խճահան մեքենաները, նաւակները, նաւակամուրջները, և այլն։ Հոն են նաև Սուէզի պեղման աս կողմի աշխատութեանց արուեստանոցը, ձուլարանները։

Երբ քաղաքը ամբողջ պտըտեցանք երթևեկութեան պաշտօնարանը գնացինք և հոն իմացանք թէ ամէն առաւօտ պզտի շոգենաւ մը Իսմայիլիա կ՚երթայ, անկէ ալ անուշ ջրի ջրանցքով մինչև Սուէզ կրնայ երթըցուիլ 24 ժամու մէջ, գինն ըլլալով 50 ֆռ. առաջին տեղին։

Երկրորդ առաւօտը, ժամը վեցին մտանք այն թղթատար պզտի շոգենաւը, որ հազիւ թէ 30 ճամբորդ կ՚առնուր և վեցուկէսին ճամբայ ելանք նաւահանգստէն և մտանք ջրանցքին մէջ, ժամը վեց մղոն կտրելով։ Ջրանցքին լայնութիւնն է գրեթէ հարիւր քսան մեդր և մինչև խել մը տեղ նոյն լայնութիւնը կը պահէ, բայց քանի մը տեղ գեռ վաթսուներէն ինչուան ութսուն մեդր հազիւ փորուած է. այս տեղերուն մէջ տեսանք խճահան գործեաց աշխատութիւնը, որոնք փորած աւազնին երկայն խողովակներով ջրանցքին ափանցը վրայէն անդին կը թափէին։

Շրջակայ տեսարանը միակերպ ըլլալով մարդուս ձանձրոյթ կը բերէր, և շատ անգամ ջրանցքին երկու ափունքէն զատ ուրիշ բան չէր տեսնուեր։ Իսկ մենք այս ձանձրութեան քանի մը ժամերը անցուցինք այլ և այլ գրեանք կարդալով։ Մինչև ժամը 11 հասանք պզտի կայան մը, որ կ՚ըսուի Էլ—Քանդարա, 33 մղոն Բորդ—Սայիտէն հեռու, և հոն ժամ մը կեցանք ու լաւ նախաճաշիկ մը ըրինք՝ երեք ֆռանգ տալով մարդ գլուխ։ Չորս ժամէն մըտանք Դիմսահ լիճը, որուն մակերևոյթը հիմայ Միջերկրականին հաւասար է, առանց օգնութեան պահանորդ դըրան։ Լճին արևմտեան ափանցը վրայ Իսմայիլիա նոր քաղաքը շինուած է. և Իսմայիլիա կը կոչուի 'ի պատիւ Եգիպտոսի արդի փոխարքային, ինչպէս Բորդ—Սայիտն ալ իր նախորդին անունը կը կրէ։ Իսմայիլիայի դիրքը աւելի գեղեցիկ է, բարձրութեան մը վրայ շինուած, ուրկէ լճին վրայ կը նայի։ Այս քաղաքը Բորդ—Սայիտէն լաւագոյն շինուած է և աղէկ պանդոկ մը ունի, որ վաթսուներէն հարիւր ճամբորդ կրնայ առնուլ։ Ընկերութիւնը քաղաքիս գըլխաւոր բնակարանները վարձած է, և որովհետև կլիմայն առողջարար է՝ ձըմեռն արտաքոյ կարգի ախորժական, անոր համար շատ հաւանական է որ երբ ջրանցքը բացուի, աս քաղաքս շատ առաջ պիտի երթայ։ Հիմա բնակիչն է 4000 հոգի։ Անուշ ջրոյ ջրանցքը հոս կը բացուի Դիմսահ լճին մէջ պահանորդ դռնով մը։ Իսմայիլիա օր մը անցնելէն ետև, նորէն շոգենաւ մտանք Սուէզ երթալու՝ անուշ ջրոյ ջրանցքով, պայմանաւ քանի մը ժամ Սերապէոն կենալու, որ գրեթէ Իսմայիլիայէն տասը մղոն հեռու է, ուր երկու ջրանցները իրարու մօտ են։ Շատ հետաքրքրական է տեսնել Ատեղ ծովային

անցքին փորուիլը, խել՝մը ընդարձակութեամբ փորուածն է ամենամանր ւաս, որ վախ կու տայ թէ նորէն ւաւազով լեցուի, որով հարկ պիտի ըլյ անդադար աւազահան մեքենաներ րծածել, թէպէտ և մինչև հիմա այխի վտանգ մը դեռ չէ պատահած։ անի մը աւազահան մեքենաներ աշատութեան հետ էին հին Սերապէոի մօտերը, ուր մէկ երկու գործարաններ ալ կան, գործաւորաց բնակութեան տներով։

Ասկէ սկսեալ նաւը ցամաքէն քաշեով առաջ կ'երթայ, և շոգւոյն կը փոանակեն ջորիները։ Անապատին մէջէն գեղեցիկ նաւարկութեամբ մը, արաթափայլ լուսնի լուսով, հասանք Սուէզ՝ առաւօտեան ժամը եօթնին, և պանդոկէն քառորդ մը հեռու ցամաք ելանք։ Ճամբաներնուս վրայ տեսնելու տեղերէն մէկը միայն զանց ըրինք, այս ինքն է Շալուֆ ըսուած կտորը, Սուէզէն գրեթէ տասուերկու մղոն դէպ 'ի հիւսիս. այն տեղ ջրանցքին անկողինը պիտի անցնի կարգ մը բլուրներու մէջէն, որոնք այնչափ բարձրութիւն չունին։

Սուէզի մէջ աշխատութիւնները գլխաւորապէս փողոցներու վրայ կը կատարուին, ուր բազմաթիւ մեքենայք կ'աշխատին փորելու և աստիճանաբար ջրանցքին ուղղութիւնը դէպ 'ի հիւսիս տանելու։

Անմիջապէս Սուէզի պանդոկին դիմացը աշխատաւորաց պզտի գաղթականութիւն մը կայ, ջրանցք մը փորելու համար, և ջրանցքին անկողինը անկէ ալ անդին նշանուած է, և տեղ տեղ ալ ըստ մասնէ աւազը վերցուած։

Գիտնալու է որ Պ. տը Լէսէպս կ'ապահովէ թէ գալ տարի, որ է 1869, աշխատութիւնները բոլորովին կը լմըննան, և թէ նաւերը պիտի կարենան ջրանցքին վրայէն երթևեկել՝ տարին երեք միլիոն տակառաչափ փոխադրելով։ Եւ կը յաւելու թէ արդէն մօտակայ երկիրները ծախուելով մեծ շահ առաջ եկաւ, մանաւանդ այն երկիրները, որ Բորդ-Սայիտի, Իսմայիլիայի և Սուէզի կողմերը կ'իյնան։ Սակայն կան մարդիկ որ չեն յուսար այսպէս շուտ լմըննալուն, բայց եղածին նայելով շատ հաւանական է թէ նոյնչափ ատենի մէջ աշխատութիւնները լմըննան, և ժամանակաւ մեծ շահու դուռ պիտի ըլլայ։

Այն ճամբորդները որ Հնդկաստան կ'երթան, ուզելով տեսնալ Ասորիք, կամ Պաղեստին, լաւ կ'ընեն ջրանցքին և Բորդ-Սայիտի ճամբան բռնել, քան թէ Գահիրէէ երկաթուղին. և որովհետև շոգենաւները Աղեքսանդրիայէն կ'ելլեն Բորդ-Սայիտ կ'երթան, անոր համար հոս ալ նոյն դիւրութիւնները կրնան ունենալ արևելքի նաւահանգիստները պտըտելու, ինչ որ կ'ունենային եթէ Աղեքսանդրիայէն ճամբայ ելլէին։

## Կաթնավաճառ կինն ու կաթնամանը.

Բէրրէդ գլխուն վերեւ կաթի աման մը բարձած
    Լաւ մը բարձով հաստատած
Հանդիստ ու անարգել քաղաք հասնիլ կը կարծէր.
Կարճ ու թեթեւ ըզգեստովն առաջ կ'երթար մեծաքայլ.
Դիտմամբ արագ շարժելու՝ նոյն օրն արդէն հագածն էր
    Բանճկոն՝ կօշիկ պարզ անփայլ՝
    Հանդրիճաձեւ ինքն ասանկ,
    Հաշիւ կ'ընէր որչափ դանկ

Ջեռքը կու գար իր կաթէն. անոր բերած ըստակով
Հարիւր մ' հաւկիթ կը գընէր. թուխս կը գընէր երեք հեղ,
Եւ բանն աղէկ կը յաջողէր իւր մըտադիր խընամով։
Ինծի համար դըժուար չէ,
Կ'ըսէր մըտքէն, տանըս բոլորը վառեակներ մեծցընել։
Աղուէսն որչափ ալ լափէ
Ճարպիկութեամբ, մընացածովս ես կըրնամ խոզ մը գընել.
Դիւրին է զինքն առանց մեծ ծախք մը բանալու գիրցընել.
Գընած ատենէս լաւ մը լեցուն էր արդէն.
Կըրնամ կըրկին ծախելով աղէկ ըստակ ձեռք բերել։
Եւ ո՞վ կըրնայ զիս արգիլել որ ախոռին մէջ պահեմ
Կով մը հանդերձ իր հորթով եթէ ձեռք տայ գիներնին,
Որոնց հօտին մէջ հոս հոն պիտի տեսնեմ ցատկըռտելնին։
Ասոր վըրայ ինքն ալ Բէրրէդ վեր կը ցատկէ խընդութեամբ,
Կը թափի կաթն. ողջամբ մընան թուխս, վառեակ, խոզ, հորթն ու կով։

Ըստացուածոց տէր կընիկն աչք մը տալով ցաւագին
Գետին թափուած իւր ընչից
Գընաց պատմեց փեսային,
Թէ կրեց վըտանգ առ կան կից։
Առով զաւեշտ չինուեցաւ
Որ կարճառմաճ կոչուեցաւ։

ԼԱ ՖՈՆԴԷՆ

## ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

## Ա

### Երկրաբանական.

1 Կեդրոնական տաքութիւն։ — Ինչո՞ւ համար երկրիս երեսը կամ ծոցն գրեթէ միակերպ կը մնայ։ — Անոր համար որ երկրիս տաքութիւնն ալ միակերպ կը մնայ։

2 Ի՞նչ է երկրիս տաքութիւնն։ — Այն տաքութիւնն է որ բուն իր մէջ կայ, և դրսէն պատճառած չէ։

3 Ինչո՞ւ համար հանքերու և վիհերու մէջ աւելի տաք կ'ըլլայ։ — Վասն զի որչափ աւելի երկրիս խորը իջնըլուի, կամ կեդրոնին մօտեցուի, այնքան ալ տաքութեան կեդրոնին մօտ կ'ըլլայ։ (Երկրիս որ և է կողմը 30 կամ 40 մեդր խորութենէն կը սկսի տաքութիւնն աճիլ։)

4 Ինչո՞ւ համար երկրիս կեդրոնն աւելի տաք է։ — Վասն զի տեսնոք բոլոր երկիրս հալած վիճակի մէջ էր, վերջէն երեսը կամ վերի կողմը պաղած և կարծրացած է, բայց խորը դարձեալ հալած է։

5 Ի՞նչպէս պաղեր և կարծրացեր է երկիրս։ — Այնպէս ինչպէս որ մեծ զանգուած մը երկաթի կամ կապարի կը կարծրանայ, իր տաքութեան մասնական կորստեամբ։

6 Ինչո՞ւ համար կեդրոնը դեռ հալած վիճակի մէջ կը մնայ։ — Վասն զի իր կարծրացեալ կեղեն ջերմութեան աղէկ հաղորդիչ չէ, անոր համար չկրնար ցըրուել ներքին տաքութիւնը։

7 Թէ որ երկրիս քիչ մը խորն ալ այնքան տաք է, ինչո՞ւ համար շատ խորունկ աղբիւրներ կան որ ցուրտ են։ — Աղբերաց խորութիւնն կարծուածին չափ չէ. և չեն հասնիր 30-40 մեդր խորութեան՝ ուր

որ կը սկսի երկրիս տաքութիւնն աւելնալ։ (Լեռնոտ կողմեր՝ այս խորութեան վրայ աւելցընելու է լերին բարձրութիւնը։)

8 Ի՞նչ չափով կ'աւելնայ երկրիս տաքութիւնն։ — Ամէն 30 մեդր խորութեան մէկ աստիճան (ջերմաչափի) կ'աւելնայ տաքութիւնն. անանկ որ 300 մեդր խորութեան՝ ջուրն պէտք է եռալ. իսկ քանի մը մղոն խորը ամէն նիւթ հալած պիտի ըլլան. անկէ անդին եղած տաքութիւնն մեր չափերէն վեր կրնայ ըսուիլ։

## Բ

### Հրաբուղխք.

9 Ի՞նչ են Հրաբուղխք։ — Անանկ լեռներ են որոնց սովորաբար գագաթն բաց է և բոլորչի կամ ձագարաձև ծակ մ՚ ունի ուսկից երբեմն կամ ստէպ կ'ելլեն կրակ կտրած նիւթեր, քարեր, ծըծումբ, կազ և հալած խառնած՝ այսինքն լաւա։ Հրաբղխի ծակերն կ'ըսուին Բաժակ կամ Խառնարան։

10 Հրաբուղխին դուրս հանած նիւթերն ուսկի՞ կու գան։ — Երկրիս խորէն կամ կեդրոնէն։

11 Ի՞նչպէս լաւայն երկրիս կեդրոնէն ինչուան բարձր լերանց գագաթը կ'ելնէ։ — Որովհետև երկրիս կարծրութիւնը կը սկսի վերէն դէպ 'ի վար, կամ դրսէն դէպ 'ի ներս, կարծր մասն աւելի տեղ կը բռնէ քան հալածը. ուստի քանի որ երկրիս խաւերն կը պնդանան՝ կը սկսին ճնշել երկրիս և հալական նիւթին երեսը. այս սաստիկ ճնշումն ամեն կողմէն գալով կը մղէ զլաւայն այն անցքերուն կամ ճամբաներուն՝ որ կեդրոնէն դէպ 'ի հրաբղխից գագաթները կը հասնին։

12 Ուրեմն ինչու համար հրաբուղխք միշտ չեն պոռթկար։ — Կամ անոր համար՝ որ նիւթերն մէկէն 'ի մէկ և ուժով վազելով կը գիզուին այն նեղ անցքերուն բերանը՝ որ կը հաղորդեն բաժակը ներքին կրակարանին հետ, և կը ստիպուին կամաց կամաց դէպ 'ի վեր ելնել, առնով կրնան ալ պաղիլ ճամբուն մէջ. կամ ստորերկրեայ ջրերու յանկարծական ողողման համար հալած հեղուկին վրայ. կամ գետնաշարժի պատճառաւ։ Այս պատճառներս կրնան մասամբ բոլորովին արգիլել հալած նիւթերը լերանց վերին կողմը ելնելէն։

13 Այս շարունակ ճնշումն վերջապէս ինչ կը պատճառէ։ — Մէկ հրաբուղխ մը գոցելով ուրիշ մը կը բանայ. ասկից է որ ոմանք 'ի հրաբղխից կը դադրին և նոր հրաբուղխք կը բացուին։ Անոնք որ միշտ կը ծխեն՝ վառ և գործունեայ են, ըսել է որ անընդհատ հաղորդութիւն ունին կեդրոնական զանգուածին հետ. իսկ անոնք որ չեն ծխեր՝ մարած են։

14 Հրաբուղխի մը մօտ ատեն պոռթկալուն նշանն ի՞նչ է։ — Նախ գետնին տակէն հրազինուց արձակման նման որոտմունք կը լսուին. ապա լերան գագաթէն թանձր ծուխ մը կը ծխէ, շրջակայ ջուրերն կ'այլայլին կը քաշուին, խառնարանէն դուրս կրակ կտրած կարմիր փոշի մը կ'ելնէ, ստէպ գետինն կը ցնցի, լերան միջի լաւայն վեր կ'ելլէ և գագաթին բերանը հասնելով կը սկսի թափիլ եզերքներէն բոցեղէն հոսանքի մը պէս, և կը քշէ կը տանի ինչ որ գտնէ ճամբուն վրայ։

15 Ի՞նչ ուժով քարեր ու ժայռեր հրաբուղխէն դուրս կը ցատքեն, — Կեդրոնական կրակարանէն արձըկուած կազերն իրենց առաձգութեամբ ուժովնալով կը հրեն կը ցատքեցընեն ինչ որ գտնեն այն ճամբուն վրայ՝ զոր կը ստիպուին բանալու մղուելով տաքութենէն՝ որ երթալով կը տարածուի։

16 Արդեօք լաւայն չէ՞ր կրնար լերան մէջ ըլլալ, առանց երկրիս կեդրոնէն գալու. — Չէ. վասն զի շատ հեղ եթէ դուրս վազած լաւայն մէկ տեղ ժողուելու ըլլայ՝ հրաբուղխէն աւելի մեծ զանգուած մը կը ձևացընէ։ (Հրաբուղխներէն ելած սպնգաքարն (P. Ponce) գրեթէ նոր լեռներ կը կանգնէ։)

17 Մարած հրաբուղխներն կրնա՞ն նորէն արծարծիլ կամ ներգործել։ — Այո, երբեմն երկայն դարերէ վեր դադրած հրաբուղխք՝ մեծ երկրաշարժէ մը վերջ՝ նորէն բացին իրենց վիհը և սկսան նորէն ներգործել։ Ասոր պատճառն յայտնի է. երկրիս կեղևին սաստիկ ճնշելովն էր որ հալած նիւթն չէր կրնար ճամբայ բանալ. երբոր մեծ սասանութեամբ մը այլայլի լերան ծոցն՝ հալած նիւթն նորէն կը գտնէ արգիլուած ճամբաները կամ շնչահանքն։

18 Ինչէ՞ն է որ ժայթքեալ լաւայն տարիներով հեղուկ կը մնայ։ — Մէկ մ՚ անկէց՝ որ մետաղ չեղող երկրային նիւթերն քիչ հաղորդականութիւն ունին. մէկ մ՚ ալ լաւային ժայթքած ատեն ունեցած խիստ սաստիկ տաքութենէն, որ ամենէն սաստիկ տաքցուցած հալոցներէն և հնոցներէն աւելի է։

19 Ինչու համար յորդառատ լաւայն զառ 'ի վայր գետնի մը վրայ տարիներով

կը տատանի, մինչդեռ երեսին վրայ ամենեւին հեղուկի նշան չըլլար: — Երեսնին շուտով կը պաղի և կը պնդանայ, և վրան քարաքոսներ, մամուռներ և ուրիշ լեռնային բոյսեր կ'ելլեն. իսկ տակի խաւերն դեռ հալած կը մնան: Ետնայէն ժայթքած լաւայն ինչուան տասն տարի կամաց կամաց վազած է:

20 Հրաբուղխք ինչ օգուտ ունին երկրիս: — Հրաբուղխք կրնան երկրիս շնչահանքն ըսուիլ. եթէ չըլլային՝ անդադար գետնաշարժ պիտի ըլլար. և եթէ բոլորովին մարէին՝ երկիրս շատ մեծ այլայլութիւն պիտի կրէր, և բնակչաց մեծ վնաս կ'ըլլար:

21 Ծովու յատակն ալ կրնա՞յ հրաբուղխ ըլլալ: — Այո. ինչպէս որ ծովուն յատակը կան հորեր և լեռներ, այսպէս ալ կրնան ըլլալ հրաբուղխք: Եւ ատոնք կ'ըսուին Ծովայատակ կամ Ծովանկիտ հրաբուղխք:

22 Ծովայատակ հրաբուղխք կրնա՞ն երկայն ատեն վառ կամ գործունեայ մնալ: — Ոչ. հազիւ թէ դուրս ժայթքեն լաւայն և ուրիշ նիւթեր, մէկէն ջուրն յորդութեամբ կը թափի խառնարանին մէջ, և շոգի դառնալով՝ կ'աւրէ կը փճացընէ հրաբուղխը: (Բայց շատ հեղ դուրս ժայթքած նիւթերն վրայէ վրայ դիզուելով՝ ջրին երեսէն վեր կ'ելլեն և կղզիներ կը ձևացընեն. այսպիսի կղզիներ կը գտնուին յԻսլանտա, յԱնտիլլեանս, և Խաղաղական ովկիանոսի շատ կողմերը:)

23 Ի՞նչ նշա՛ն կայ Ծովայատակ հրաբուղխի բացուելուն: — Ծովուն ջուրն կը սկսի յուզիլ եռալու պէս, իր յատակը եղած ժաժերուն համար. խիստ շոգիներ կ'ելլեն ջրին երեսէն, և անոնցմէ ետքը կու գան լաւայ և կրակ կտրած քարեր:

Կը շարունակուի:

## ՄԱՆՐ ԳԻՏԵԼԻՔ

### Ստորերկրեայ անցք լերին Սընի:

| | | |
|---|---|---|
| Երկայնութիւն . . . | մեթր | 12220 |
| Լայնութիւն . . . | » | 8 |
| Բարձրութիւն . . . | » | 7 |
| Բարձրութիւն ծովուն երեսէն | » | 1338 |
| Ծախք շինութեան . | | 70 միլիոն ֆր. |
| Սկիզբն աշխատութեան 1858. | | |

| | |
|---|---|
| Փորեցաւ մինչև դեկտ.՝ վերջ 1867 տարւոյն մեթր . . . | 78 |
| Մնայ տակաւին փորել . . . | 437 |
| | 122 |

Վերջին երեք ամսոց մէջ տեղակալներէն մինչ դեկտեմբերի վերջ փորեցաւ 314մ.

### Ջրանցք Սուէզի

| | | |
|---|---|---|
| Երկայնութիւն . . . | մեթր | 16000 |
| Լայնութիւն . . . | » | 100 |
| Խորութիւն . . . | » | 8 |
| Իսկ խորութիւն միջակէտի աւազանին | | 21 |

Բովանդակ փորելու նիւթը 74,112,130 մ. խ. բայց 'ի անոյշ ջրոյ ջրանցքէն որ արդէն լմնցած է 216 հազարամեթր երկայնութեամբ.

Բովանդակ ծախք, առեալ միասին անոյշ ջրոյ ջրանցքին ծախքը . . 330 միլիոն ֆր.

Սկիզբն աշխատութեան 1859.

| | |
|---|---|
| Փորեցաւ մինչև դեկտ. վերջ 1867 տարւոյն . | 33,955,535 մ. խ |
| Մնայ տակաւին փորել . | 40,156,595 » |
| | 74,112,130 » |

Վերջին երեք ամսոց մէջ ձեռնարկներէն մինչև դեկտեմբերի վերջ փորեցաւ 4,080,577 մ. խ

## ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

Ամենէն բանէն դըժար՝ է ինքզինքը ճանչնալ:

Ով որ գիտէ անուշ խօսիլ,
Քիչով գիտէ շատ վաստըկիլ:

Գէշ զուրցողին անուշ զուրցէ,
Աժան կ'ըլլայ ու շատ կ'աժէ:

Շատ գիտցողը քիչ գիտցող,
Ամենէն լաւ լուռ կեցող:

Քիչ խօսակցութիւն՝
Շատ հանգստութիւն:

Լաւ է Աստուած ինչ որ խըրկէ
Քան զան որ մարդ կը խընդրէ:

Բարեկամ մը ինծի չօգնող,
Թըշնամի մը ինձ չըդըպչող,
Երկուք մէկտեղ մէկ զոյգ մը օղ:

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ




ՌՑԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՓԵՏՐՈՒԱՐ

## ԲԱՐՈՑԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ

(Տես երես 7.)

### Բ

*Աւանին հարստանալը.*

Աւանին մէջ Վալքուր անունով Հայւէննական հին ստացուածոց տէր աղէկ ճակուԹիւն ունեցող հարուստ կալուածապետ մը կար, որ մերձաւոր քաղաքը կը բնակէր և հազիւ գարնան կու գար քանի մը օր իր երկիրը կ'անցընէր։ Բնակչաց բնաւորութիւնն էր զինքը Մերըպոյէ հեռու բռնողը, որուն նաև Թշուառութիւնը տեսնալով կը նեղուէր. կը փափաքէր ձեռքէն եկած դարմանն ընել, անոր համար պէտք եղածէն աւելի առատաձեռնութեամբ կ'օգնէր անոնց որ իրեն կը դիմէին. բայց իր պարգևները, ինչպէս նաև սովորական ողորմութիւնները անզօր դեղեր էին, և ամենայն առատութեամբ հանդերձ չարը արմատախիլ չէին կըրնար ընել։

Վալքուր՝ կիրԹ բարի և գերազանց գիտաւորութիւններ ունեցող մէկն էր. կը տեսնէր չարիքը և կ'ուզէր առջևը առնուլ, բայց չէր գիտեր Թէ ինչ հնարք կարելի էր բանեցնել. աշխատասէր էր, յարատևող և ձեռք զարկածը երկայնմտութեամբ առաջ տանող, բայց խսկըղբան երկչոտ և տարտամ. կը տարակուսէր միշտ քանի մը ձեռք զարնելու և շատ մը զանազան խորհրդոց մէջ կը տատանէր. այս տատամնութիւնը ետ կեցուցեր էր զինքը Տիւբրէի սկսանելիք գործոյն ձեռք զարնելէ։

Բժիշկը երբ օգնականի կարօտ ըլ-

լալն ըմբռնեց՝ իմացաւ միանգամայն թէ ինչ մեծ օգնութիւն կրնար ըլլալ իրեն հանդիստ և ընչից տէր անանկ մէկը՝ որ նմանեացը օգտակար ըլլալու համար ստակի չէր խնայեր։ Միրըպոյի վիճակին նկատմամբ շատ անգամ խօսեր էին մէջերնին և երկուքն ալ կը ցաւէին անանկ խեղճութեան մէջ ընկղմած տեսնալով աւան մը՝ ուր այնչափ տարերք կային յաջողութեանց։

Տիւբրէ մէյմը որ միտքը դրաւ ձեռնարկութիւնն սկսելու՝ մասնակից ըրաւ իր խորհրդոցը նաև զՎալքուր որ ամենևին դէմ չկեցաւ. ամենայն ինչ իր տեսութեանցը համեմատ էր, ուստի ինքնայօժար խոստացաւ ձեռնտու ըլլալու։ Տիւբրէ համոզեց զինքը որ առանց դժուարութեան յանձն առնու աւանապետի պաշտօնը, զոր շատ անգամ առաջարկեր էին և ինքը անձին վստահութիւն չունենալով մերժեր էր. ասով Վալքուր ստիպուեցաւ երկայն ժամանակ Միրըպոյ բնակելու. քիչ ատենէն գործակից եղած բանին զբաղելով՝ սովորական բնակութեան տեղը ըրաւ։

Իրենց գործոյն յաջողութեանը դէպք մը մեծ պատճառ եղաւ. աւանին ութսունամեայ ծեր ծխատէրը մեռաւ, որուն անկարելի էր հասակին ծանրութեամբը սրտին բարի խորհուրդները կատարել։ Տիւբրէ ըմբռնած էր թէ առանց կրօնից և քաղաքականի օգնութեան տեղ մը կենդանացնելու համար եղած ամենայն դարմանը անհետև է. փութաց եպիսկոպոսին գնաց և աղաչեց որ ըստ ամենայնի իրեն փափաքներուն ձեռնտու ըլլալ ուզող եկեղեցականը գեղին ժողովրդապետ կարգէ, որ առոյգահասակ քահանայ մըն էր, միանգամայն ողորմած, եռանդուն և գիտուն, և որ Տիւբրէի խորհուրդները գիտնալով՝ ազնուական ըղձիւք վառեալ էր այնմ հետամուտ ըլլալու։ Եպիսկոպոսը Տիւբրէի դիտաւորութեանը աղէկ տեղեակ ըլլալով ընդունեցաւ անոր առաջարկութիւնը, որով Տիւբրէ նոր եռանդեամբ բորբոքեալ Միրըպոյ դարձաւ. կարծես թէ ուժը եռապատիկ աւելցած էր։

Այս իրեք անձանց աւանը չէնցնելու համար միաբան հաւանութեամբ ըրած ամենայն ջանքը շատ երկայն կ'ըլլայ պատմել. քանի տարուան մէջ եղած յեղափոխութիւնը աղէկ նկարագրելու համար՝ բաւական է կերպով մը մեր առջի ըրած նկարին հակառակը ցուցընել։

Տիւբրէ ու Վալքուր համոզեալ էին թէ օրինակէ աւելի լաւագոյն միջոց չըկայ տգիտութեան մէջ ընկղմած ժողովուրդ մը համոզելու համար։ Միրըպոյի բնակչաց մշակութեան լաւագոյն կերպ մը ընդունելի ընել տալու համար՝ բանին արդիւնքը ուզեցին ցուցընել։ Վալքուր իր կալուածոց վարձատուութեան ժամանակին լմննալը առիթ առաւ և ստիպեց զվարձուորը որ իր տեսութեանցն համեմատ շարժի. որուն նաև օգնեց անձին ծախիւքը մեծամեծ աշխատութիւններ ընելով։

Ինչուան ան ատեն Տիւբրէ գործակալի մը օգնութեամբ իր կալուածը բանեցուցեր էր, բայց զայն լաւցնելու համար պէտք եղած դրամագլուխը չունէր. անանկ բան մը մտածեց որով ինքնին ամենաօգտակար օրինակ մը պիտի տար։ Դրամագլուխ ձեռք ձգելու համար իր կալուածոցը կէսը ծախեց որպէս զի մնացած մասը աւելի լաւ կերպով մշակէ. երկրագործաց այն ցաւալի սովորութեանն հակառակ, որոնք ստացուածքնին շատցընելու համար անխոհեմութեամբ փոխ ստակ կ'առնուն։

Այս պարագայիս մէջ իր անձնասիրութիւնը լռեցուց և չվախցաւ կալուածոցը մէկ մասը ծախելով ծագած կերպ կերպ ենթադրութեանց առջև ձգել զինքը. փորձը ցուցուց թէ այս բանը ոչ միայն բարի օրինակ՝ այլ նաև աջանչելի գործ մըն էր։ Տասը տարիէն կալուածոցը կէսը առաջուց ամբողջին բերածին կրկինը կը բերէր. և ճարտարութեամբ գործածելով դրամագլուխները՝ երկրին օդը և պարարտութիւնը լաւցնելու համար, նաև կատարեալ

գործիքներ գնելով, խելացի խնամքներու ձեռք զարնելով և միակութեան կանոնաւոր դրութիւն մը բանելով գրեթէ եռապատիկ աւելցաւ ստացուածքը։

Այսանկ յայտնի յաջողութիւն մը անկարելի էր որ Միրըպոյի բնակչաց աչքէն չզարնէր. իսկոյն երկրագործներէն ոմանք բժշկին օրինակէն և տուած եռանդուն խրատներէն յորդորուելով, ոմանք նաև 'ի ծածուկ վալքուրի քաղաքէն ալ օգնութիւն գտնալով, որոշեցին որ նոյն փորձերը սկսին բանեցնել. ասով գլխաւոր դժուարին քայլը եղած էր։ Մեր երկու բարեկամները գիտէին թէ մինակ իրենք իրենց գործելովին պարզամիտ երկրագործները այնչափ իրենց օրինակին չէին հետևեր, մինչ հարուստներուն ըրածին վրայ անվստահութիւն ունենալով և ըսելով թէ հարուստներուն համար օգտակար և աղէկ սեպուածը իրենց համար բան մը չարժեր։ Ուստի յաղթութիւն մըն էր քանի մը հոգի իրենց տեսածին հետևելու նմանասիրութեան ձգելը, որոնց օրինակին նմանողներ հետզհետէ պիտի աւելնային, ինչպէս որ նախատեսութիւննին փորձով ալ ստուգուեցաւ։

Տիւբրէ այս առաջին յաղթութիւնը տեսնալու համար բանի մը չէր խնայած. իսկզբան առջի տարիները ամէն բանի կը հասնէր, և կրնայ ըսուիլ թէ իր կեանքը յարատև կռիւ մըն էր ընդդէմ արգելից. ամէն տեղ վրայ կը կենար և ընել տուած աշխատութեանցը կը հսկէր, որոնց ելքը ոչ միայն իր գործոյն յաջողութեանը այլ նաև անձնապէս հարստանալուն համար կարևոր էր. մի և նոյն ժամանակ նաև իր հիւանդները հոգալն ալ կը շարունակէր. նոյն իսկ աւելի յաճախ այցելութեան կ'երթար անոնց, և խորհրդոցը մասնակից կ'ընէր։ Ամէն անգամ երկրին գեղացւոցը հանդիպելուն անանկ հարցմունքներ կ'ընէր՝ որով մտքերնին կ'արթնցնէր, և առանց խելացի խորհուրդ մը տալու չէր զատուեր անոնցմէ։ Ամէն կիրակի երբ օդը ներէր եկեղեցւոյն դրանը քով խռնուած ամբոխին մէջ կը խառնուէր. Միրըպոյի բնակիչները չորս բոլորը կը ժողվուէին և հոն եղանակին, բերոց առատութեանը, կամ աւանին գործոցը վրայ խօսելով մասնաւորաց տուած խորհուրդները առհասարակ ամենուն կը հաղորդէր։ Խօսքը կը դարձընէր աւանին վրայ ունեցած բարի բարի մտածութեանցը և կը թողուր որ իրենք առաջարկեն կանխաւ այն բաները որոնց դէմ թերևս հակառակէին եթէ բացէն ինքը ըսելու ըլլար։

Բժշկին մտադրութեանը առաջին բաներէն մէկը եղեր էր աւանին առջևի դաշտին մէջէն անցած առուակը թումբերու մէջ ամփոփել, որով ողողմանց և ջրոյն միապաղաղ կերպով ընթանալուն առջևը առեր էր. մարգագետնին արօտը որ յարատև ջրոյ մէջ ընկղմած անպիտան խոտերով լեցուն էր, բազմաթիւ խրամներու և փոսերու ձեռքով կենդանացեր էր. դէշ խոտերը յարմատոց հանելով և հողը քերքրելով շրջելով պարարտ մարգեր դարձեր էին, առուակին ջրոյն ուղղեալ պզտիկ առուներէ իրենց պէտք եղած ջուրն առնալով։ Շատ մը ոչխարներու հօտերու ճարակ կը մատակարարէին, որոնք աւանին երկիրներուն պարարտութիւն կը հայթայթէին, ուսկից միշտ զուրկ մնացած էին։ Այսչափս դեռ ոչ ինչ է։

Ինչպէս ըսինք այս առուակը ընթացիցը մէջ շատ ջրվէժներ ունէր, որոնցմէ ոչ ոք մտածեր էր օգուտ քաղել. շատոնց 'ի վեր բժիշկը կը ցաւէր զօրաւոր մեքենաներ շարժելու կարողութիւն ունեցող զօրութեանց փճանալը տեսնալով, որով կենդանութիւն և գործունէութիւն կրնար ստանալ երկիրը։ Այս ջրվէժներէն տկարագունին վրայ՝ որ միանգամայն աւանին ամենէն մերձաւորն էր, ինքնիր կողմէն ջաղացք մը հաստատեց որ արդէն աւանին համար բարեգործութիւն մըն էր. բայց անոր օգուտը ան ատեն աւելի ըմբռնեցին բնակիչները երբ ժամանակին լաւագոյն կիրառութիւնն իմացան, վասն զի կ'ազատէր զիրենք այն երկայն ճամ-

բորդութիւններէն որ առաջուց կ'ընէին անպիտան ճամբաներէ անցնելով՝ երթալու իրենց ցորենը աղալ տալու համար ։

Սակայն ասիկա Տիւքրէի մտածածներուն մէջ չնչին բաներէն մէկն էր ։ Աւանին հասարակութեան երկիրը ընդարձակ էր, բայց մեծաւ մասամբ մարգերէ և մացառներէ բաղկացեալ, որով աշխատութեան մեծ նիւթ մը չէր մընար. երկիրները՝ որոնց մշակութեամբը կրնային զբաղիլ բնակիչք, երեսէ ձգուած էին ։ Տիւքրէ կը մտածէր թէ ինչ մեծ շահու դուռ էր աւանին մէջ արուեստ մտցընելը որով զբաղէին. այս խորհուրդս կրցաւ գլուխ հանել ստացուածոցը մէկ մասը ծախելով ։ Գիտէր որ դրամագլուխ ունեցողներ Միրըպոյի հովտին մէջ գործատուններ կը փափաքէին հաստատել. ծախել ուզած ստացուածոց մասը ճիշդ իրենց փափաքածն էր. գինը կտրուեցաւ և իսկոյն մանարանի մը որմունքը սկսան բարձրանալ, որով ժամանակաւ հաւանեցան կալուածատէրք նկարատիպ կտաւուց գործատուն մ'ալ աւելցընել քովը ։ Քիչ ետքը, որովհետև երկիրը աղէկ տեսակ երկաթի հանք ունէր, և որովհետև անցք չըլլալուն համար չըրջակայ անտառները քիչ արժէք ունէին, քանի մը երկաթահանք բացուեցան. հետզհետէ ուրիշ գործանոցներ ալ հաստատուեցան և օր ըստ օրէ հովիտը արուեստական մեծ գործունէութեան տեղ եղաւ ։

Սակայն այս ամէնն ալ առանց դըժուարութեան և վէճի չլմնցաւ ։ Միրըպոյի բնակիչքը ոչ հանճարեղ էին և ոչ ալ այնչափ շատուոր որ գործատան աշխատութեանց բաւէին, ուստի պէտք եղաւ դըսէն գործաւորներ կանչել, որոնց գալստեանը պատճառաւ գրեթէ ընդհանուր շփոթութիւն մը ծագեցաւ աւանին բնակչացը մէջ ։ Ոչ ոք կ'ուզէր հասկընալ թէ բնաւ մէկու մը նախատինք չէր բերեր իրենց չկրցած աշխատութիւնները օտարաց կատարել տալ, և թէ իրենց ներկայութեամբը սպառողաց թիւը աճելով շատ բաներու գինն ալ կ'աւելնար ։ Ընդհակառակն տեղացիք՝ որովհետև գեղը հազիւ կրնար իւր յատուկ բնակիչները սնուցանել, վնասակար կը սեպէին այս նոր եկաւորներուն գալուստը. «Երկիրը սովալլուկ ընելու և կերակրեղինաց գինը սուղցնելու համար եկած շատ մը բերաններ են, կ'ըսէին ։»

Ան ատեն Տիւքրէի պէս մէկը ունենալը հասարակութեան համար բաղդ եղաւ. ունեցած ազդեցութեամբը զամէնքը խաղաղեց. դրդումունքը հանդարտեցուց և եթէ չկրցաւ ալ նոր աշխատաւորները սիրով ընդունելի ընել տալ, գոնէ կրցաւ առջևը առնուլ որ կոյր թշնամութեան մը դուռ չըլլան ։

Բժիշկը աւանին աղէկութեանը համար որոշողական պարագայի մը մէջ միանձնաւորապէս բովանդակ իր ազդեցութեանը պէտք ունեցաւ. խնդիրն էր հասարակութեան ստացուածքը ծախել. այս ստացուածները՝ որոնք Միրըպոյի երկրին մէկ մեծ մասը բռնած էին, կը բաղկանային մացառներէ և շատ մը ընդարձակ դաշտերէ և արօտներէ. աւանին աղքատները իրենց կովերն ու ոչխարները հոն արածելու կը տանէին, ուր տաքնալու համար փայտ ալ կը գտնային ։

Երբոր առաջին անգամ խօսք բացուեցաւ այս նիւթոյս վրայ, բազմութեամբ սկսան պոռալ կանչել, թէ «Այս բանս ընելը աւանը կործանել, աղքատներուն ունեցածը կողոպտել և զանոնք մուրացկան ընել ուզել է ։» Այս պարագայիս մէջ քիչ մնաց որ Տիւքրէ ժողովրդեան երեսէն իյնայ, սակայն ինքը ամուր կոխեց, վասն զի մըտածածին օգտակարութեանը վրայ համոզուած էր ։ Նախ հասարակութիւնը ձեռք զարնելիք հասարակաց օգտակար աշխատութեանց համար ստակ ճարելու պէտք ունէր. միւս կողմանէ, (և այս կէտը կարևորագոյնն էր իր աչքին առջև,) արօտի ձգուած և գրեթէ անբեղուն երկիրները մշակելը հարստանալու մեծ պատճառ էր ։

Բժիշկը ըրած առաջարկութիւնը առաջ տանելու համար հաւանեցուց զինքը որ հասարակութեան երկիրներուն մէկ մասը բնակչաց մէջ բաժնուի, որպէս զի անոնցմէ ամբողջապէս զըրկուելնին չզգան․ Միացածը ծախուեցաւ և երկրին կրկին հարստանալուն պատճառ եղաւ։ Այս գետինները գնողները հասարակութենէն դուրս օտար կալուածատէրք էին, որոնք եկան իրենց դրամագլուխներովը հոն հաստատուեցան և միջակութեան լաւագոյն դրութիւն մը սկսան գործադրել․ ինչուան ան ատեն ծառատունկերէն շահ մը չէր ելլեր, վասն զի այծերն ու ոչխարները մնասակար ակռաներով ծիլերը փճացընելնուն չէին շատնար․ այս բանիս ալ առջևը առաւ շրջակայից արօտական ըլլալու իրաւունքը վերցընելով․ ան ատեն ծառատունկք սկսան աճիլ և երկաթի գործարանց համար այրելու փայտ պէտք ըլլալով՝ իսկոյն ժողովրդեան աշխատութեան դուռ բացուեցաւ։

Հասարակաց արօտներուն ծախուելէն եկած ստակը անանկ աշխատութեանց գործածուեցաւ որով ժողովրդեան հանդիստ վիճակ ունենալուն օգուտ ըլլայ․ յայսմ առաջին պէտք է համարել ճամբաներու հաղորդակցութեան լաւագոյն դրութիւն մը, որով ամենայն կերպ տեղափոխութիւնք դիւրինցան․ քիչ տարուան մէջ աւանին ամէն ճամբաները կատարելապէս հարթ և գնալի եղան, և նոր ճամբաներ ալ բացուեցան շրջակայ տեղեաց հետ վերաբերութիւն հաստատելու համար։ Իսկըզբան գեղացիք ըրածնին ձրի աշխատութիւն մը կը սեպէին 'ի շահ հարուստներուն, և անոնց միայն վաստակ կայ, կ'ըսէին, այն ճամբաներէն․ բայց երբ քիչ ատենէն արուեստից ճարտարութեամբ և միջակութեան զարգացմամբ ապրանքը շատցան, տեսան որ կոկ ու հարթ ճամբաներ ունենալը ոչ միայն հարուստներուն՝ այլ նաև աղքատաց ալ շահաւոր էր․ և երբ այս աշխատութեանց իրենց համար ալ օգտակար ըլլալը ըմբռնեցին՝ պէտք եղած օգնութիւնն ընելէ չէին փախչեր, որով աշխատութիւնները լաւագոյն կերպով կատարուելով կրկնապատիկ և եռապատիկ աւելի արժէք ունեցան։

Ոչ միայն այս նիւթական բարեկարգութեանց փոյթ ունեցան բժիշկն ու իր օգնականները, այլ նաև աւանին բարոյական պիտոյքն ալ իրենց մասնաւոր խնամոցը նիւթ եղած էր։ Աւագերէցը սրտանց ինքզինքը նուիրած ըլլալով ժողովրդեան բարւոյն, ազնուասրտութեամբը՝ իրենց գործոյն համար շահախնդիր երևնալով և ամէն մէկուն ծառայութիւններ ընելու ջանքովը՝ ընդհանուր բնակչաց սիրտը յինքն յանկուցեր էր։ Իրմէ առաջ եկեղեցին կիրակի օրեր դըրեթէ ամայի էր․ քիչ քիչ կրցաւ իր ժողովուրդը հոն հաւաքել, և բնակչաց բազմանալովը եկեղեցին քիչ ատենէն պզտիկ եկաւ․ հարկ եղաւ որ նորոգէ ու մեծցնէ, որուն հաւասարապէս կը փափաքէր նաև բժիշկն ալ, վասն զի անով յայտնի կ'ըլլար թէ ժողովուրդը բարեկեցիկ ըլլալով՝ աւելի ալ երկիւղած եղեր էր։

Այս բանս յարմար առիթ սեպուեցաւ առ 'ի զարդ քանի մը աշխատութիւններ ալ ընելու, զորոնք Տիւբրէ անօգուտ չէր սեպեր․ եկեղեցւոյն առջև եղած ամայի հրապարակը ընդարձակուեցաւ և ծառերով զարդարուելով շրջագայութեան սիրուն արուարձան մը դարձաւ։ Առուակին վերով սարատափ էր՝ ըսինք․ հողը պատով բռնել տալով հողաբլուր ճեմելիք մը կառուցին շրջանակաւոր պատկով հանդերձ, որպէս զի վտանգ չհանդիպի․ և այս շրջագայութեան տեղւոյն և ճեմելեաց մէջ նստարաններ դրուեցան ուր կ'երթար բարի բժիշկը գեղացւոց հետ կը խօսակցէր սիրելի ընտանութեամբ մը, ինչպէս որ յատուկ է գեղերու մէջ, դուրգուրալով անոնց վրայ որոնց մանկութիւնը տեսեր էր և կամ անոնց վըրայ որոնք իրեն հասակակից չէին։

Կ'ախորժէր այն սարատափ ճեմելիքէն առջևը բացուած տեսարանը դի-

տեղ որ մեծաւ մասամբ իր ջանիցն արդիւնքն էր. վարով գետակը յաջ և յաճախ իրեն շնորհալից գալարուն ընթացքը կ'առնուր. եզերքը երկու կողմանէ զարդարուած էին կաղամախիներով կանանչազարդ շքեղ սրահակներու նման. որոնք նաև կարևոր եկամուտ մըն էին. ծառոց շարքը ճեմելեաց առջև քիչ մը ընդհատելով՝ այն անցքէն մարդուս աչքը հովտին մէջ կը տարածուէր և զմայլմամբ կը հանգչէր մարգաց կանանչագեղ գորգերուն վրայ։ Այս գիւղային նկարուս միջակէտը գրաւած էր գործատունը որ ձորոյն մէջ սփռուած բնակարանները կ'ընկղմէր, և աչաց առջև իր բիւրերանգ երկայնաձիգ մետաքսի ժապաւէնները կը պարզէր։

Այն ժամանակները տուներն ալ ոչինչ նուազ ախորժելի փոփոխութիւն մը կրեր էին. տեսքերնին ակնահաճոյ և մաքուր էր. մէջերնին բնակող ընտանեաց համեմատ՝ ընդարձակութիւննին մեր մեծ մեր պզտիկ, սակայն գրեթէ ամէնն ալ յար և նման շինուած էին։ Բժիշկը կրցեր էր հասկըցընել լուսոյ և օդոյ փոփոխութեան կարևորութիւնը, որով ամէնն ալ այլ և այլ կողմանէ շատ մը լուսամուտներ ունէին. միանգամայն շուրջանակի պտղատու ծառերու ծաղկոցներով զարդարուած և կանանչ ցանկերով փակեալ ըլլալով՝ կարծես թէ ընդարձակ պարտէզի մը մէջ կանգնած էին։ Այս պարտէզները և տուներուն առջևը պճնող ծաղիկները բնակչաց բնութիւնասէր ըլլալուն յայտնի նշան էին և իրենց հեզահամբոյր զգացմանցն յայտարար։ Հոն յայտնի կ'ըլլար այնիւ բժշկին ախորժը՝ որ հունձերը և տունկերը մասնակարաբեր էր։ Այս տուները մասամբ ինքը, մասամբ վաչքուր և մեծաւ մասամբ գործատան տէրերը շինել տուեր էին Միրըպոյ եկող գործաւորաց բնակութեանն համար։ Նոքը ժամանակաւ միւս գեղացիք ալ անոնց խակ ուղելու սախրալելով իրենց աղտոտ և անհանգիստ հիւղերուն հետ բաղդատել այս մաքուր և պայծառ տուները, անոնց նմանները շինեցին և քիչ ատենուան մէջ հովիտը լեցուեցաւ հանգստաւէտ և գեղեցիկ բնակարաններով։

Միանգամայն շաղախները և անոնց խոր հետքերը անհետ ըլլալ տալով գեղջին օդը մաքրեցին. փոսերը և ճահիճները լեցուեցան, որով ալ մարդուս աչքը և հոտառութիւնը չէր զզուեր ադբիւններու դէզերն և աղբի կոյտերը տեսնելով, որոնց բազմաւոր հիւթը կը թողուին որ կորսուի 'ի վնաս հասարակաց առողջութեան։ Մաքրասիրութեան ճաշակը դիւրաւ զարգացաւ. հին տուները նորոգուեր, մաքրուեր և ընդարձակուեր էին, շատն ալ նոր շինուեր և ներկայապէս աւելի հանգիստ էին, իրենց պէտք եղած ամէն կահ կարասիքն ունենալով, և որ մեծն է մասնաւոր խնամքով նայուած էին։

Այս փախճանիս հասնելու համար Տիւքրէ իր մեծ յոյսը նոր սերնդեան վրայ դրեր էր, վասն զի գիտէր հին սովորութեանց բարի գիտաւորութիւններէ աւելի զօրաւորագոյն ըլլալը. ուստի առաջին խնամքներէն մէկը եղաւ դպրոց մը հաստատել։

Ան ժամանակ ոչ աղէկ վարժապետներ կային և ոչ կանոնաւոր դպրոցներ, և դաստիարակք միջոց չունէին բաւական կրթութիւն ստանալու. ժողովրդապետը օգնական եղաւ բժշկին. իր հին ժողովրդապետութեանը մէջ ուր դաստիարակութեան շատ զբաղած էր, գիտէր որ միշտ վարդապետին օգնութիւն ընող ողջամիտ և խրատախոհ երիտասարդ մը կար, միանգամայն ամենաբարի զգացմունք և դաստիարակութեան ճշմարիտ ախորժակ ունեցող. զանիկա Միրըպոյ բերել տուաւ և ջանաց որ դասի մը տեսչութիւնը անոր յանձնէ. իր փորձը յաջողութեամբ պսակեցաւ. դպրոցին բացման օրերէն յայտնի եղաւ աղէկ ձեռաց յանձնուած ըլլալը. նաև ժողովրդապետն ալ ատեն այցելութեան կ'երթար և զվարժապետը կը քաջալերէր. տղայոց կանոնապահու-

թիւնը կը դիտէր, անոնց զարգացմանը և կենցաղավարութեանը միտ կը դնէր և ամէն ըրած դիտողութիւնները ծնողաց կը խորհրդածէր։

Սակայն մեծ յարատեւութեան պէտք ունեցաւ ընտանիքները համոզելու համար որ տղաքնին դպրոց խաւրեն. ինչու որ նոյն ատեն հայրերը կրթութիւն առած չըլլալնուն, չէին կրնար հասկնալ որ իրենց զաւակները պէտք ունենան այնմ. բժիշկն ալ ժողովրդապետին հետ ջանաց համոզելու զիրենք որ զաւկըններնէն զրկուիլը բանի տեղ չենպէն անոնց ըրած քանի մը խեղճ ծառայութեանցն համար։ Վարժօրը ալ իր կողմանէ իբրև աւանդապետ տղայոց թափառականութեանն ու յափշտակութեանցը անխոնջութեամբ խօսութիւն ըրաւ. նաև սաստիկ խօսութեամբ պատժեց իրենց հասարակաց փողոցներու վրայ ըրած անկարգութիւնները։ Այսպէս զատարկութեան դէմ կռուելով կրթութեան զարգացմանը հակառակ եղող արգելքները թեթեւցուց։

Քիչ ատենէն իր ջանասէր փութովը դպրոցը յարմար հասակի տղաքներով լեցուեցաւ. գեղին ժողովուրդն ալ աճելով հարկ եղաւ որ դպրոցը՝ ուր մանչ ու աղջիկ տղաքներ ժողվուած էին՝ կըրկին ընելու մտածեն։ Դաստիարակը՝ որուն անունը Հուայմնա էր, կարգուած ըլլալուն կնիկն ալ իրեն հետ դպրոցին խնամոցը հաղորդակից կ'ըլլար. իրեն յանձնուեցաւ աղջկանց դպրոցին վարչութիւնը, որոնք այն ատեն իրենց սեռին պիտոյից յատուկ լաւագոյն դաստիարակութիւն մը ընդունեցան։ Վերջապէս՝ ժամանակաւ գործատանց մէջ զբաղեալ ընտանեաց տղայոցն համար հովտին մէջ առանձին մանկանոց (salle d'asile) մը հաստատեցին. և գործատան տէրերը այս բանիս առատաձեռնութեամբ ըստ մեծի մասին օգնեցին։

Այսչափ ջանք ու աշխատութիւն անարդիւն չեղաւ. ոչ միայն աւանին արտաքին երեւոյթը փոխուեցաւ, այլ նաև գեղացւոց բնաւորութիւնն ալ ոչինչ ընդհատ այլափոխեցաւ. ամօք ու կիրթ վարմունք մը ստացեր էին և կոշտութիւննին ըստ բաւականին կորսնցնելով՝ բարուց վայրագութիննին ալ ոչինչ նուազ մեղմացեր էր։ Հեղգ անգործութեան տեղ գործունէութիւն յաջորդեր էր. տօնավաճառներու եկողները միայն գնելու կամ ծախելու պէտք ունեցողներն էին։ Գինետանց երթեւեկութիւնը նուազեր և ընդհակառակն անդաստանները լաւ եւս կը մշակուէին և հունձքն աւելի լիաբեղուն էին. նաև ատեն մը անծանօթ եղող բերքեր առաջ կու գային. և գեղացիք զանազան նիւթեր մշակելնուն իրենց եկամուտը եղանակաց անյաջողութենէն այնչափ կախումն չունէր. այսպէս մէկ տեսակ բերքին կրելիք վնասներէն դըրեթէ մասամբ մը ապահով էին։

Տնտեսական և արուեստական ընդկոց մշակութիւնն ալ տարածուած էր աւանին մէջ, և այսու փոխանակութեան միջոցը շատցեր էր և պէտք եղած ստակը ներս եկեր էր։ Պտղատու ծառերն ալ՝ որ կանխաւ երեսի վրայ թողուած էին, մեծ մտադրութեան նիւթ եղան. բժիշկը յատուկ խնամք ունեցեր էր անոնց վրայ. կը սիրէր այն բաները որոնք զմարդիկ իրենց տունը կը կեցընեն և անոր հետ կը կապեն. կ'ըսէր նաև թէ պտուղք ինքնաբեր արդիւնք են. ուստի կը յաւելուր, թէ աւելի շահաւոր է գէշ տեսակներուն վրայ խնամք ունենալու տեղ, աղէկները մշակել. ասոր համար կը ջանար ընտիր տեսակները շատցընել և ինքնին ծառերը յօտելու կերպը կը սորվեցընէր։

Նաև մեծապէս փոյթ ունեցաւ կենդանեաց ցեղերը լաւցընել, նոյն խորհրդածութիւնն ընելով ինչ որ ըրեր էր պտղոց մշակութեան համար։ Մարգերուն արգասաբեր ըլլալովը կենդանիները աճելով՝ իր խորհրդովը նոր արուեստական ճարտարութեան մըն ալ ձեռք զարկին գեղացիք, այն է պանիր շինելու։ Ժիւրայի անուանի պտուղ հասցնողներու գիւղական ընկերութիւններն ալ ընդունելի ըրաւ իրենց.

ըստ օրինակի այս ընկերութեանց բովանդակ գեղացւոց կովերուն կաթը մէկուն քով կը հաւաքուէր որուն պարտքն էր պանիր շինել, իւրաքանչիւրին բերած կաթի քանակին հաշիւը բռնելով։ Այս պարզ ընկերութեամբ կաթի գոյզն քանակները օգտակար եղան, ծախքերը ու ժամանակի կորուստը նուազեցնելով։

Արջառադարմանութիւնը՝ որով քիչ առենէն իւրաքանչիւր տուն իրեն ախոռը ունեցաւ, պատճառ եղաւ ամէնուն իրենց տան մէջ կենալուն և ձեռքերնին ախորժելի և շահաւոր զբաղանք մը եղաւ։ Բժիշկը նաև մեղուաց մշակութիւնն ալ սիրելի ընել տուաւ. մշակութիւն մը որ առանց նեղութեան ապահով եկամուտ և բաւական աժողչէք ունեցող բերք է գեղացւոց համար։ Ամբողջ աւանին մէջ գոզցես տուն մը չկար որուն պարտիզին մէջ քանի մը փեթակ չըլլայ։

Տիւբրէ ջանացեր էր նաև Միրըպոյի մէջ այն արուեստակերտ ճարտարութեանց ախորժը ընդունելի ընել որոնք ընտանեկան կրնան ըսուիլ, վառարանին մէկ կողմը 'ի գործ դրուելնուն համար։ Կ'ուզէր որ իւրաքանչիւր երկրագործ արուեստ մ'ունենայ ձեռքը, ձմեռուան երկայն գիշերներուն և գէշ օդերուն զբաղելու համար. անով թէ ժամանակը շահաւոր կ'անցնէր, և թէ դարման կ'ըլլար ընդդէմ ծուլութեան և ապահովութիւն գինետանց յաճախ երթևեկութենէ ազատ մնալուն։

Այս վախճանիս հասնելու համար յարմար սեպեց դաստիարակին ձեռքը յանձնուած պատանեաց դասը իրեն գործիք առնել. միտքը դրածը դժուարաւ յաջողեցաւ, որովհետև շատը հակամիտութեամբ դէպ 'ի գինետունները կը դիմէին. բայց վերջապէս շատ մը աշակերտ առաջացաւ։ Ասիկա Տիւբրէի համար ժողովրդեան վրայ ազդեցութիւն ունենալու մեծ միջոց էր. ինքնին շատ անգամ իրենց վարժարանին մէջ կու գար կը խառնուէր. Ներկայ եղողներուն հետ կը խօսակցէր և միշտ միջոց կը գտնար խորհուրդ տալու և կամ նոր բան մը սորվեցնելու։

Ժողովրդապետն ալ ինքիր կողմանէ ամէն եօթնեակ երկու իրեք անգամ հոն այցելութեան կ'երթար. և իրեն դպրոցին պէս՝ շաբաթը մէկ անգամ կանոնաւորպէս հոգևոր վարդապետութիւն կ'ընէր. ուրիշ օրեր գոհ կ'ըլլար խորհուրդներ տալով, հանդիպած բանի մը վրայ խորհրդածութիւն ընելով. մէկուն մէկալին հարցմունքներ կ'ընէր, ձեռնարկութիւնները կը հետաքրքրէր, հօրերնուն՝ մօրերնուն կամ իրենց կանանցը և հիւանդ տղայոցը ինչպէս ըլլալը կը հարցընէր. կը յորդորէր, խորհուրդ կու տար, երբեմն կը մեղադրէր, յաճախ կը քաջալերէր և միշտ ամէն մէկուն վստահութիւնը կը գրաւէր։

Այսպէս Միրըպոյ աւանը բոլորովին ուրիշ երևոյթ մը առեր էր. քանի տարուան մէջ ժողովուրդը եռապատիկ շատցեր էր. իսկ բարեկեցութիւնը աւելի շուտ զարգացեր էր։ Սակայն աս ալ իրաւ է որ ամենայն ինչ հաւասարապէս յաջող չգնաց. այս աշխարհիս մէջ կատարեալ ուրախութիւն չկայ, և բարին ոչ երբեք անխառն է 'ի չարեաց։

Զարգացման հետ մասնական ձախորդութիւններ և դժբաղդութիւններ հանդիպեցան, որոնք շատ անխոհեմներու կործանմանը պատճառ եղան։ Գեղացւոցմէ ոմանք իրենց դրացեացը յաջողութիւններէն յորդորուելով՝ սխալ հաշիւներով ձեռնարկութիւններ ըրին, սակայն չյաջողելով՝ իրենց ձախորդութիւնը աւելի խոհեմ ըրաւ իրենց ետևէն եկողները։ Փառասէրներ յանդուգն նախագիտմանց (spéculation) մէջ նետուեցան, սակայն դժբաղդաբար չյաջողեցան և իրենց գանգատանօքը առ ժամանակ մը պատճառ եղան որ ամէնքը նորանոր փորձերէ ետ կենան։ Ինչպէս միշտ՝ յանկարծական դիպուածներ և նախախնամութեան կողմանէ համեստ ընտանեաց գլուխը եկած փորձանքներ ալ պակաս չեղան. բայց այս դժբաղդութիւնները առհա-

տարակ ամենուն հարեկցութեամբ նիւթ ըլլալով, կրողները այն հարուածներէ ազատ եղողներուն փութովը մասամբ մը մխիթարուեցան։

Դժուարին չէր յուսալ նաև որ Աստուած եղանակաց խառնակութենէն աւանը բոլորովին ազատ ընէր․ ուստի քանի մը անյաջող տարիներ ալ վրայ եկան և շատերը իրենց սկսած ձեռնարկութեանցը մէջ տագնապեցնելով, և բովանդակ աւանին կերպ մը վերանորոգութեան աշխատութեանցը մէջ վրայ գալով շատ աւելի ծանր եղան։ Ամէն ձեռք զարնուած արուեստից ճարտարութեանց մէջ ալ հաւասարապէս չըյաջողեցան․ անկարելի էր որ գործունէութեան եռանդն վհատութիւն չըգար, որոնք շրջանով մը գոգցես փոփոխակի իրարու կը յաջորդեն․ և անոնք որ աղէկ հիմն դրած չէին՝ բոլորովին լքան։

Ուրեմն Միրըպոյի յաջողութեամբ զարգանալուն ժամանակ տագնապողական պարագաներ ալ պակաս չեղան՝, բայց զանոնք բժիշկը նախատեսեր՞ էր, որով ամենեւին չխռովեցաւ․ այն դժուարին վայրկեաններուն մէջ վհատեալները քաջալերելու՝ համար կրկնապատիկ գործունէութիւն ցուցուց․ և իրեն խրախոյսը կերպով մը կ'աւելնար այնպիսի փորձանաց ժամանակ։ Առժամանակեայ ձախորդութենէ չէր վախնար, վասն զի երբեք միտքը դրած չէր որ յարատև յաջողութիւն պիտի ունենայ․ այնպիսի ժամանակները հանգիստ առնելու վայրկեաններ կը սեպէր որով մարդիկ կրկին ուժ կը ստանան՝ ի յառաջադիմութիւն սլանալու համար։

Աւանին համար մէկ վտանգէ մը միայն կը վախնար, այն է՝ ախտից անղեր գտնալէն․ ուստի ամենայն ճգամբ կը ջանար այսպիսի ապագայ չարիքներէ պահպանել․ ոչինչ ընդհատ կը վախնար նաև սխալ գաղափարաց մուտք գտնելէն, զորոնք իբրև հարուած ընկերութեան կը համարէր։ Վրիպակ կարծեաց աւանին հասուցած վնասովը, այն է երկայն ժամանակ աղքատութեան և թմրածութեան մէջ բռնելովը, կը գուշակէր ուրիշ նոյնպիսի մոլար գաղափարաց հասցընելիք չարեքը, մէյմը որ բնակչաց մտքին մէջ տպագրելու ըլլային։ Հետևաբար կը ջանար ուրեմն կրթութիւնը տարածելու․ այնպէս հեռուէն բռներ էր որ դեռ շատ մոլորութեանց և նախապաշարմանց դէմ պէտք էր կռուիլ։

Սակայն եկեղեցւոյն քով թողած ընկերութեան դառնանք։

ՌԱԲԷ

Կը շարունակուի ։

Մենամարտութիւն Տանկրեդեայ ընդ Կլորինդայ եւ մկրտել զնա ի կարեվէր մահուն[1]։

Վազեն առ սեամս երկոքին, եւ զհետ նոցա տագնապափոյթ հրոսեն ըշտապաւ հեղեղասաստ գունդք փռանկաց․

[1] Մի է տասնչորսից ՚ի հրաշալի դրուագաց անմահանուն քերթուածոյն Տասսոյի, յորս ՚ի պատճառս կանխաբանելով պարագայից ասել զի Կլորինդա այն էինչ խմբեցեալ է յԱրգանտեայ ՚ի ծերունի պաշտամաւորէ իւրմէ զլինել իւր դուստր Սենապեայ քրիստոնեայ թագաւորին Եթովպիոյ, և զի մայրն առ ահի անդէն ՚ի սկզբնաւորս հասակին ընկեցոյց ՚ի նա յանձն է արարեալ զորդի իւր աղաչելով զի մկրտեսցէ․ զոր առ հեթանոսութեանն ապախտ արարեալ էր Արսետի։ Սակայն յանուրջս երևեցեալ և ՚ի վերջս արեամն խրատեալ փութալ ՚ի մկրտութիւն, աղաչէ զԿլորինդա յետ կալ ՚ի խորհրդոց իւրոց և չվտանգել զանձն։ Անսաստէ նա բանից խնամա-

Հարկանէ Սիւլէյման յետս ընկրկեալ զամենեսին,
Եւ հանդէպ երեսաց նկլորինդայ փակին դրունք։

Սա լոկ մնաց արտաքոյ. զի ի պահու ընդ դուռն անցից
Արտաքս արշաւասոյր խաղայր ըղձեա Արիմոնեայ,
Գաղանացեալ սրբամբութեամբ տալ վէրս փոխան ընդ հարուածոյն.
Եւ խոցեաց, մինչ Արգանտէ չգիտէր ըղձա ի դուրս ելեալ.
Զի զարթուն խնամքս սրբոյ եւ ըղձեալն՝ բարձին յաչաց
Մարտ խաղմին, ամբոխ արանց, մառախլապատ երկինք համբուն։

Այլ մինչ յարեան ոսոխին զխճանէր բոց սրբոյն տապոյ,
Եւ յանձին լեալ ըզգաստ զ' առականեալ էին դըրունք,
Եւ զիւրեւ գունդք Թըշնամեաց, կերպարանէր ինք ըղմեռեալ։
Բայց ի միասն անկաւ անդէն նորահրնար գիւտ փրկութեան,
Տեսեալ զի ոչ խէթ ինչ բընաւ ըզնըմանէ գոյր ոսոխին.
Ի նոսա կեղծաւորէր, եւ 'նդ անծանօթ գըրոհ մարդկան
Խառնէր զանձըն խաղաղիկ յամենեցուն անդէտ մըտաց։

Որպէս գայլ անմըռունչ յետ եղեռան ծածուկ գործոյ
Դարձ արարեալ գայ յանտառն եւ զարտուղի գընայ շաւիղ,
Այսպէս եւ կոյսըն զանխուլ երթայր ի ճեմն եւ յառաջէր,
Օգնական ի Թէկն առեալ զաղմուկ գընդին, զօդոց մըռայլ։
Դէպ եղեւ սակայն լոկ զի ծանիցէ ըղձա Տանկրի[2]
Որ վայրիկ մի յառաջ եկեալ հասեալ էր ի տեղին։
Մինչ այն ինչ կոյսըն զԱրիմոն էարկ յերկիր յօրհաս մահու,
Ետես նա, եւ զհետ կըրթէր արշաւակի դէտ ակն արկեալ։

Շահատակել ի հանդէս ցանկայ ընդ իւր ի փորձ զինուց,
Կարծեցեալ զդք արժանի իւր ի կըշիռ անձին ուժոյ։
Պատ առեալ գընայ կոյսն ընդ ափափայ ծագըս լերանց
Առ այլ դուռըն մըտից ուստ անցանել եդեալ էր դէմ.
Մոլեգին գայ նա ընդ հետ, մինչ զի հեռուստ խսկ քաջ ի բաց
Լըսի զինուցըն շառաչիւն. կոյսն ի Թիկունս անդր հայեցեալ
«Ո՛վ այր դու, գոչէ, զի՞նչ ածել քեզ, հի՞մ արշաւել»։
Եւ նորա՝ «Ըզխաղմ եւ մահ, կըրկնեալ անդըրէն պատասխանի».

ծուխն և առնոցի զբաղհաւորեալ եղանէ ընդ Ար-գանանայ արտաքս 'ի քաղաքէն և 'ի միասին հրոյ ճարակ տան զաշտարակն. Թափին 'ի վերայ քրիստոնեայք բազմաձեռն պնդօք. որքա երկրպեան մարտուցեալ յետս նահանջեն. բանայ Սելեւկյման զմի 'ի դրանց քաղաքին որում 'ի պահ կայր և վաղէն առ սեամս երկրպքէն։

2 Բայց ոչ զի Կլորինդա իցէ՝ որոյ կաթողին էր 'ի սէր, այլ էր 'ի Թշնամեաց ոք։ — Ջանուն քաջին զօրավարին Տանկրեդեայ, ըստ մերոյս Վարդանայ պատմչի, և ըստ Ներսէսի քերթողական աղաւաղութեան համաբանելեցաք յուղղական գնել Տանկրի։

«Խաղմ եւ մահ կայցեն ընդ քեզ, տաց զոր ցանկասցես քեզ ընդ հուպ».
Նոյան առնէ բանին դարձուած, կացեալ այնպէս պինդ ի տեղւոջ.
Ցեսեալ Ցանկրեդեայ հեռուստանարս ըզթըշնամին
Իջանէ յերիվարէն՝ ոչ կամեցեալ ըզձին վարել.
Մերկանեան երկոքեան ըզսուր երկաթն ի պատենից.
Բորբոքեալ գոռոզութեամբ, վառեալք ի հուր գոռ զայրութի
Հանդիպել երթան միմեանց, համբուն ըստ տեղ նըմանութեան
Նախանձաբեկ զոյգ ցըլուց ի բարկութիւն բորբ բըրդելոց. —

Լուսաճաճանչ արեգին եւ համայն խիկ Թատերց տեսլեան
Գործք արժանիք արդարեւ էին դաբին յիշատակաց.
Այլ դու, Գիշեր, խաւարամած որ ի ծոցիդ խոր մըթութեան
Զայդ արդիւնս արութեան արկեր յաւերժ մոռացութիւն,
Տուր ինձ ոն հանել զնոսին ի լոյս առնչեան գերապայծառ
Եւ ազդաց եկելոց ի գիտութիւն տալ ծանօթի.
Կեցցէ հըռչակ համբաւոյն, եւ ի հանդէս նոցին փառաց
Փայլեսցէ խաւարին վըսեմափառ քոյ յիշատակ. —

Ոչ խընդրեն խուսափել, նահանջել ինչ կամ կալ ի բաց.
Ոչ հնարից հանճարոյ կըցորդութիւն է անդանօր.
Ոչ զիսեն հարուածս ի կեղծ, որ կըշռակի եւ որ ի չեշտ.
Ի մոլելոյ եւ յըստուերաց լինի [illegible] արուեստ ճարտար.
Կոփիւնք ահեղ սուսերաց հընչեն ընդ կումբս երկաթակուռ.
Անյողդողդ ոտքին 'ի կայս, ոտք ամրապինդ եւ ձեռն ի գործ.
Ոչ հարուածոց է վրիպել, ոչ սուսերաց չկահելն ի զուր.

Բորբոքեալ վառէ ամօթ ըզբարկութիւն ի վրէժ քինու,
Այլ եւ քէն վրէժխնդիր ըզպատկառանսն արծարծանէ.
Յորդեռանդըն զայրոյթ եւ հանդամանք նորանորոգ
Առաւելուն ըզհարուածս եւ ցանդ զըրչտայ տագնապելոյ.
Ազմըկեալ գամ քան ըզգամ եւ առ ի նեղ անկեալ մարտին,
Բաղխեն զիրեարս բըռընցի՝ ոչ օգնելով սուր առ 'ի գործ.
Մարտուցեալ վահանաւ, գըլխանոցաք, ժանգք եւ անդուլթ.

Կորովի բազկօք ըզկոյսն երկցս ապեւսն ի ծոց պընդէր,
Որ եւ երկցս հոսէր զանձն ի կապանացըն խըստութեան.
Ի կապանաց ոչ սիրելոյ՝ այլ ոսոխին գոռոզասերս.
Անդըրէն զերկաթ արկեալք ի գործ եւ թաթաւեն ի վէրս յոլով.
Հուսկ ուրեմըն շընչասպառ եւ երկոքեան վաստակաբեկք
Սակաւ մի նահանջին յաշխատութեանց առնուլ ոգի.

Ամբարձեալ զաչս յիրեարս եւ ըզբեռինըս ծանրութեան
Հաստատեն անզօր մարմնոյ յեց սուսերաց յերախակալս ։
Այն ինչ չողք վերջնանէին յետին աստեղըն գիշերոյ
Ի Նախկին լոյս տուընջեան ցայտեալ յերեսս արեւելից ,
Զախոյեանն եռեւ Ցանկրի լըցեալ արեան բիւր հոսանօք .
Սոնքացեալ խընդաց ի սիրտ յանձին կորովըս հայեցեալ ։ —
Ո՛վ մըտացս յիմարութեան զամէն գովեալ բաղդի շընորհս ։

Եղո՜ւկ քեզ . ըզմէ խընդաս . քանի՛ տըխուր գոն յաղթանակք ,
Եւ բանիցդ այդ պարծանաց քանի՛ ողորմ է կատարած .
Զի աչկունքդ այդ քոյին՝ թէ կեալ ի կեանս հանդուրժիցես ,
Ընդ մէն մի շիթս արեան վըճարեսցեն ծովս արտասուաց ։ —
Անմըռունչ առ վայր մի կացեալ այնպէս պէշ հայեցիւք
Հանդեան 'ի վաստակոց մենամարտիկքն արիւնոտք ։
Ուր ուրեմըն Ցանկրեդեայ ըղըռութիւնն հատեալ երկար ,
Զայս խօսի յունկըն կուսին՝ որ զի զանուն իւր ծանուցէ ։

« Մեզ այս բաղդ եհաս դըժնեայ՝ զի ի հանդէս մըխեալ ուժոյ ,
Եւ լըռութիւն տատանօր զայնս ընդ քօղով տըկցէ զանխուլ .
Այլ քանզի վըճիռ անգութ ճակատագրին ոչ շընորհէ
Վըկայս ըստ արժանի քաջարութեանց եւ դըրուատիս ,
Աղաչեմ , թէ ընդ զինուք աղաչանաց իցէ օրէն ,
Մերկասցիս դու առ իս զանուն քոյին՝ զկենաց վըճակ ,
Իմանալ հաւաստի՝ յաղթող բնաւին իմ կամ յաղթեալ ,
Թէ յումմէ փառաւորեալ օրհասս մահուս կամ յաղթութիւն » ։

« Քեզ ընդ վայր է խընդրել , վայրապն ընդդէմ տանէ դարձուած ,
Զոր ցարդ յամենեցուն պահել զանխուլ սովորեցայ ։
Այլ զի՛ կայ իմ եւ քո . զի Նըկատես դու յանդիման
Ցերկուց զոք որ զաշտարակըն բարձրաբերձ եառուն հըրոյ » ։
Ցանկրեդեայ ընդ այս բան կայծակնացայտ սըրտմըտութեամբ՝
« Դըժպատեհ դիպար ժամու ոգել բարբառ , յաւել ասել .
Ի խընդիր վըրիժուց հըրապուրեն զոգիս իմ արդ ,
Խուժադուժ բարբարոս , բարբառ քոյին եւ լըռութիւն ։ »

Զայրոյթն ի սիրտս անկեալ անդըէն զըրգռէ ի ռազմ ըզպարտասեալս ։
Ո՛վ մարտին դաղանութեան , ուստ արուեստի գործ տարադէր ,
Ուր սպառեալ ոյժ բոլոր եւ մոլութիւն կըռուի փոխան ։
Քանի՛ սուսերըքդ այդորիկ՝ յո եւ ուստք թէ թօթափեալ ,
Լայնածաւալ բանան վէրս արեանց՝ ի զէն եւ ի մարմնի .

Եւ թէ կեան դեռ՝ սրբամբրտութիւն լոկ ըղնոցուն կեանըս զօդէ։

Ջերդ Նըդեանն անդընդախոր, եթէ լըռեն հիւսիս՝ հարաւ,
Որ յուղեալ գամ մի յառաջ ամբոխեցին կուտակադէղ,
Ջեւ խապառ անդորրացեալ, զի տակաւին ճօճին երեսք,
Լըռելի առնէ ըղձայն ըստուար ալեացըն կոծելոց.
Նոյն եւ յարեանցըն թափուըք՝ թէ պակասէ ույժ զօրութեան
Որով վէրս եդին միմեանց, դիմագրաւեն ի բիւր վըտանգս
Սըրտեռանդն աշխուժիւք վառ ի նախկին կատաղութիւն։

Բայց արդ աւանիկ հասեալ ժամուն մահաբերի
Չի կենացըն վախճան ճակատագրեալ հըլորինդայ։
Սայրասուր մըխեալ քաջին զերկաթն ի ծոցըն գեղանի
Մըտանէ խոր ի ներքս յագեալ յարեանն արբեցութիւն։
Ջերմաջերմ լըցան ի գետ հասմայն հանդերձքըն ոսկեհուռ,
Դեռաբուսիկ որ զըստինսըն պընդէին գիրգ եւ փափուկ։
Ըղգացեալ անդէն կուսին ըղմահաբեր հարուածն յինքեան
Ծընկօք կըթուցելովք կայր թալկացեալ ոգի զօգուով։

Իսկ յառաջ զօրավարին վարեալ անձին ըղյաղթութիւն
Եւ ոտընհար ըսպառնալեօք ձըգէ յերկիր ըղկոյսըն խոց։
Ջեւ յերկիր թաւալեալ ի հեծեծանս աղիողորմ
Ըղվերջին խօսսըն մըմնչէր նորոգատուր ազդմամբ հոգւոյն,
Հաւատոյ՝ յուսոյ՝ սիրոյ, աստուածաշիր պարգեւ շնորհաց,
Չի հանդիցէ յաղախնութիւն ըստամբակեալն ընդ կեանս յամայր։

« Ցաղթեցեր, բարեկամ. թողեալ իմ քեզ, թող ինձ եւ դու.
Ոչ մարմնոյս արիութեան, այլ ահ, աւաղ, հոգւոյս իմ լոկ.
Դու ընդ այնր աղօթեա՝ մըկըրտութեամբ սըրբեալ ըղմեղս։ »
Այդպէս մեղմ մըրմունջք ողբանօք հընչեալ ախորժ
Գորովեն ըղսիրտ քաջին, եւ անցուցեալ զըրամըտութիւն
Լուծանեն զակաւողին յորդոր ի լալ եւ յարտասուս։

Ոչ հեռի ի վայրացն անդ ի ծոցոյ բըղխեալ լերին
Ցորձանօք խոխոջաձայն վազէր գընայր վըտակ փոքրիկ.
փութացեալ անդէն քաջին ըլնու ի ջուր ըղսաղաւարտն
Եւ դառնայ տըխրագգեաց յըսպասն ի մեծ բարեպաշտօն.
Այլ ըղճակատն անծանօթ այն ինչ պարզեալ եւ նըշմարէր,
Ըղդողանի ձեռքն հարան՝ կայր ըղտեղեան արձանացեալ
Անբարբառ ի լըռութեան, քանզի եանես անդ եւ ծանեաւ.
Ո՜վ ծանօթութիւն, ո՜վ հանդիպումըն տեսութեան։

Այլ ի պահուն զօրացեալ բոլոր ուժով պինդ ի սրրային
Կեայր ժուժայր տակաւ ի կեանս, եւ ողողեալ ընդ վիշտս ոգւոյն ,
Զոր մահացոյցըն յերկաթ՝ փոխել ի կեանս փութայր ջըրով ։
Այն ինչ քաջին տեսարանեալ եռանդագին զաղօթսըն սուրբ ,
Կոյսն առ խինդ լըցեալ սըրտին ժըմիտ յերեսըն փայլեցոյց .
Եւ տեսել թուէր ի մահուն թեթեւաթափ եւ բերկրալիր՝
Ահա բանան ինձ Երկինք , խաղաղութեան գընամ զուղի ։

Դալուկըն գեղեցիկ մածեալ յերեսըն ձիւնափայլ ,
Շուշանին որպէս ի փունջ խառըն յեռեալ թէ մանիշակք ։
Բեւեռեալ ունէր յերկինս զարտեւանունս ականողեաց ,
Եւ երկինք ընդ արեւու խանդաղատեալ թուէին հայել ։
Ցըրտագին ըզմերկ ձեռն յասպետն ի վեր անդր ամբարձեալ
Եւ զըրաւ ընդ բանից մատուցանէր խաղաղութեան ։
Այսպէս ի քուն զերդ յանդորրու կոյսըն հանգեաւ հըրաշագեղ ։

ԴԱՍՍՈՅ. ԵՐՈՒՍԱՂԷՄ ԱԶԱՏԵԱԼ. ԵՐԳ ԺԲ.

ԹԱՐԳՄ. Հ. Դ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ.

## ՀՐԱԽԱՂՔ[1]

*Մեր օրերուն Եւրոպայի մէջ ամէն ազգային հանդիսից զարդն ու գոգցես վերջաբանը կը սեպուին հրային խաղերու տեսարանները, որոնք նաև առհասարակ ամենայն կարգի ժողովրդեան ամենամեծ հաճոյք և զուարճութիւն կը պատճառեն ։ Առաւօտանց կանուխ բազմաթիւ ամբոխ մարդկան կը խռնին հրարուեստական հրաշալեաց հրապարակին մէջ, և օրն 'ի բուն անհամբերաբար կը սպասեն որպէս զի հոյակապ դղեակները, լուսացայտ աղբիւրները և հրաթև աղօրիները տեսնեն ։ Բաւական է որ մէկը Հռովմայ Ս. Պետրոսի տօնախմբութեան կամ Բարիզի Նաբոլէոնի տօնին լուսաւորութեան հանդէսին ականատես կամ ականջալուր եղած ըլլայ, իսկոյն ըսածնուս ճշմարտութեանը կը վկայէ ։ Համառօտ մը տեսնենք ուրեմն այս զարմանալի արուեստիս սկզբնաւորութիւնն և գաղտնիքը ։*

*Կը կարծուի թէ Չինացիք շատ հին ժամանակէ 'ի վեր կատարելապէս հրախաղուց արուեստը գիտէին . Նոյնպէս շատերը կը հաստատեն թէ արևելեան Հնդկաստանի մէջ ալ գունաւոր բոցեր յառաջ բերող այրելի նիւթեր կը գործածէին տեղացիք, որոնց բաղադրութիւնը շատ դարերէ 'ի վեր աւանդութեամբ հասած էր իրենց ։*

*Սակայն Եւրոպայի մէջ հրախաղութիւնը Թնդանօթի վառօդոյն սովորական ըլլալէն ետքը սկսաւ, և Իտալացիք առաջինը եղան այս նոր արուեստիս ձեռք զարնողներուն մէջ ։ Ժամանակագիրք կը պատմեն որ 1450ին Բարթողիմէոս Քարոլինի անուամբ մէկը Փլորենտիա կանչուեցաւ Կոզմոս տի Մէտիչիէն, և այս դքսին ըրած մէկ հանդիսին առթիւը, Տանդէի քերթուածէն շատ տեսարաններ հանդիսացուց ։*

1 Գղ. Pyrotechnie.

Եօթնևտասանևերորդ և ութևտասանևերորդ դարուն մէջ հրախաղի արուեստը քիչ մը աւելի ծաղկեցաւ, բայց իննևտասանևերորդին՝ Հայր և որդի Գարոն Ռուճճիերեանց աշխատութեամբը ՚ի վերջին ծայր կատարելութեան հասաւ, այնպէս որ մեր ներկայ ժամանակիս գիտցած հրարուեստութիւնը բոլորովին նոր գիւտի մը արդիւնք կրնայ սեպուիլ։

Գլխաւորապէս իրեք նիւթ կը մտնայ հրախաղուց բաղադրութեանը մէջ, որոնք վառօդը կազմող նիւթոց տարրերքն են. բորակ, ծծումբ և ածուխ։ Նոյն իսկ հրացանի վառօդը շատ անգամ կը գործածուի, թէ մանրած և թէ փոշիացուցած ու հատիկ հատիկ ըրած։ Այլ և այլ նիւթեր ալ կ՚աւելցուին բոցը գունաւորելու կամ պայծառութիւնը աւելցնելու համար, որոնք ընդհանրապէս մետաղք են. երկաթ, պողովատ, զինկ, պղինձ, ծարրաքար[1]. նաև քափուր[2], ռետին[3], ջրային մեղրածուծի վառօդ[4], ծխանոցի մուր[5], միքա[6], ստրոնցեան[7] և պարիթեան[8] աղեր, և այլն. վորոնք իրարու հետ խառնելով շատ աղուոր գոյներ և լոյսեր առաջ կու գան։

Զոր օրինակ երկաթի խարտուքը ճերմակ կամ կարմիր կայծեր կը ցայտեցնէ. պողովատը՝ շատ փայլուն կայծեր թափել կու տայ, իր մէջը ունեցած ածխին պատճառաւ. զինկը՝ կանաչ կապոյտ գոյն մը կու տայ. պղինձը՝ փայլուն կանաչով բոցը կը գունաւորէ. ամենուն յայտնի է անշուշտ նաև քափուրի ճերմակ գեղեցիկ բոցը, որ պարզ լուցկիի շփմունքէն կը բռնկի։ Խարտեաշ միքայով՝ ան որ ռամկօրէն ոսկի կատուի[9] կը կոչուի, առաջ կու գայ ոսկեղէն անձրևը։ Ջրային մեղրածուծի վառօդը վարդագոյն բոցեր կը պատճառէ, խարտեաշ սաթն[1] ալ եր գունովը բոցեր։ Ծխանոցի մուրը կարմիր բոցերու համար կը գործածուի, վերջապէս ըստրոնցեան աղերն ալ նոյնպէս կարմրութիւն կու տան, և պարիթեան աղերը կանաչ գոյն[2]։

Հրախաղութեան փայտեայ կաղմածը ընդարձակ տեղւոյ մը վրայ հաստատուած պիտի ըլլայ և որչափ կարելի է բնակութենէ հեռու. վանդակ մը, կամ պարզ չուանէ գիծ մը հանդիսատեսները արուեստատան տեղէն պէտք է զատէ։ Վերջապէս ջրհաններն ալ պատրաստ պէտք է ըլլան, հրկիզութեան դէմն առնելու համար։

Հրախաղութեան համար ըստ կարելոյն պէտք է բացօթեայ տեղ ընտրել, պարտէզ մը և կամ ըստ բաւականի առանձնացեալ վայր մը. աս ըզգուշութիւնս ապահովութեան համար նաև շատ տեղ ոստիկանութենէն ալ հրամայուած է, և ով որ դէմ ըլլէ՝ տուգանք ունի։ Նոյնպէս պէտք է հեռու կենալ արուեստական կայծակներէն կամ հրթիռներէն (Fusée), արուեստական արևներէն, և այլն. վասն զի կրնայ պատահիլ որ անոնք հորիզոնաբար ճամթին և զիգզագակար գլորուածներ պատճառեն։

Հրախաղութեան աղուոր և զարմանալի զարդերէն են Պէնկալայի կրակները[3]. մանաւանդ երբ ծառերուն մէջ բռնկցուին, տերևներուն գորշապատ տեսիլ մը կու տան, և մի և նոյն ժամանակ կը գունաւորեն կենդանի և նրբատեսակ գոյներով՝ որոնք ըստ հաճոյից կրնան փոփոխուիլ կերպ կերպ նիւթերով։

Ճերմակ Պէնկալայ կրակներուն բաղադրութիւնն է 7 մաս աղբորակ, 2 ծծումբ և 1 ծարրաքար կամ Տարրա-

1 Գղ. Antimoine. տճ. ռասթըք թաշը։
2 Գղ. Camphre. տճ. քեաֆիւր։
3 Գղ. Résine. տճ. չամ սաքըզը։
4 Գղ. Poudre de lycopode.
5 Գղ. Noir de fumée. տճ. գուրում։
6 Գղ. Mica.
7 Գղ. Sel de strontiane.
8 Գղ. Baryte.
9 Գղ. Or de chat.

1 Գղ. Ambre. տճ. քէհրիպար։
2 Կրնայ այս բանս ստուգուիլ ալքօօլով քիչ մը վրան այս աղերէն սրսկելով։
3 Գղ. Bengale. տճ. մայթապ։

քարի քլորաւոր[1]. կամ աւ աղէկ, 4
մաս ադբորակ, 4 ծծումբ, 2 մանր վա-
ռօդ[2] և 1 ծարրաքար։

Անձամբ պատրաստութիւնն ընելու
համար՝ խառնուրդը կը խարբալեն և
հողէ ամաններու մէջ կը լեցնեն. յե-
տոյ բարակ վառօդով երեսը ծածկե-
լէն ետքը՝ վրան քանի մը դիւրարծարծ
պատրոյգներ կը դնեն։

Եթէ մէկը ուզենայ կարմիր բոց հա-
նել տալ, կը յաջողի 6 մաս ծծումբ
խառնելով մէկ մաս ծխանոցի մուրի
հետ, 2 ծարրաքար, 6 պոթասիոնի քլո-
րաւոր[3], 20 սդրոնսեանի նաիդրաթի[4]։
Խարտեաշ կրակներուն համար կը
գործածուի 6 մաս ծծումբ, 20 կալա-
քարի մահածին[5], 2 ծարրաքար և 1
ծխանոցի մուր։

Կապոյտ լոյսերու համար կրնանք
առնել 6 մաս ծծումբ, 8 պոթասիոնի
քլորաւոր, 4 ծարրաքար և 5 անգլիա-
կան կապոյտ մոխիր[6]։

Իսկ 30 մաս ծծումբ, 6 պոթասիոնի
քլորաւոր, 190 պոթասիոնի մահա-
ծին[7], 4 ծարրաքար և չորս ծխանոցի
մուր՝ աղուոր և կանաչ լուսոյ ցոլմունք
կը պատճառեն։

Փայլուն կարմիր լոյս մը յառաջ բե-
րելու համար հաւասար քանակով կ'առ-
նուի հետևեալ երկու բաղադրութիւն-
ներէն. 4 մաս պոթասիոնի քլորաւոր, 1
ծծումբ, 3 ադբորակ և 1 ծծումբ։ Իսկ
աւելցնելով առջի բաղադրութեան վը-
րայ 4 մաս ծծումբ և 4 մաս ըսդրոն-
սեանի մահածին, աղուոր կարմիր գոյն
մը կը ստանանք։

Խարտեաշ բոցը առաջի երկու խառ-
նուրդներուն 5 մասովը բաղադրեալ
է, և 4 մաս կալաքարի ածխուտով[8].
Լեթագոյն բոցն ալ կը տարբերի միայն
աւշակով[1] կապուտացեալ պղնձի ծը-
ծըմբուտ[2] խառնելով և 2 մաս պոթա-
սիոնի ծծմբուտ[3] աւելցնելով. վերջա-
պէս կանաչ բոցը՝ մէջը կը պարունակէ
1,75 առաջին խառնուրդէն, 2 ծծմբէն
և 4 պարիթի մահածին[4]։

Հրախաղութեան մը ամենէն էական
մասն է հաստատուն արուեստաշան-
դը[5] որ կը շինուի բարակ թանձրա-
թուղթէ և քանի մը հարիւրորդամեդր



Հրախաղուց՝ լեցուն խողո-վակները սեղմելու մեքենայ.

Հրախաղուց լեցուն խողովակ.

թանձրութիւն ունեցող գլանաձև պա-
րուճակի[6] մէջ վերոյիշեալ խառնուրդ-
ները լեցնելով։ Երբոր պարունակը
աղէկ լեցուած է՝ պէտք է կապել ու-
ժով բարակ չուանով մը. յետոյ հրթի-
ռը պէտք է ունենայ բամբակէ պատ-
րոյգ մը, զանգեալ վառօդով, գինիի
ոգիով[7] և սոսինձով[8]։

Թանձրաթղթին ուղղանկեան դէմ
ընդդէմ կողմունքը որոնք իրարու վը-
րայ կը կլորցուին գլան ձևացնելու հա-
մար, ինչպէս նաև խողովակին վարի
կողմը պէտք է որ հաստատապէս և մեծ
խնամքով իրարու հետ կպած ըլլան։

1 Գղ. Chlorure d'antimoine.
2 Գղ. Pulvérin.
3 Գղ. Chlorate de potasse.
4 Գղ. Azotate de strontiane.
5 Գղ. Azotate de soude.
6 Գղ. Cendre bleue anglaise.
7 Գղ. Azotate de potasse.
8 Գղ. Carbonate de soude.

1 Գղ. Amoniac. տճ. նիշատր։
2 Գղ. Sulfate de cuivre bleu.
3 Գղ. Sulfate de potasse.
4 Գղ. Azotate de baryte.
5 Գղ. Fusée fixe. տճ. եէր ֆիշէնկի։
6 Գղ. Cartouche.
7 Գղ. Esprit-de-vin.
8 Գղ. Colle. տճ. թուղթքալ կամ չիրիշ։

Հաստատուն հրթիռներուն համար գործածուած բաղադրութիւնները ըստ զանազան տեսակի կը տարբերին. քիչ ետքը յաճախ գործածուած խառնուրդներուն համեմատութիւնները կը դնենք ։

Հասարակաց առջև եղած հրային խաղերուն մէջ գլխաւորներն են թռչուն հրթիռներն, որ սաստիկ վեր կը բարձրանան. ասոնց համար պէտք է ընտրել և չափել բաղադրիչ նիւթերը, որպէս զի նետուածքի չափաւոր ուժ և միանգամայն ակնահաճոյ տեսարաններ յառաջ բերուին ։

Փայլուն հրթիռին բաղադրութիւնն է 16 մաս աղբորակ, 4 ծծումբ, 7 ածուխ, 4 պողպատի խարտուք ։

Չինաց կրակ[1] կը կոչուի այն բաղադրութիւնը որ փայլուն կայծեր կը պատճառէ. և կը շինուի իրարու հետ խառնելով 6 մաս աղբորակ, 1 ծծումբ, կէս չափ ածուխ, 9 մանր վառօդ և 5 ֆոնդ[2]. այս վերջին նիւթն է գլխաւորապէս որ վառ արծարծմամբ Չինաց կրակներուն հիմունքը կը սեպուի ։

Թռչուն հրթիռը[3] կազմուած է հաստատուն հրթիռներուն պէս սեղմուած և բարակ չուանով մէկ կողմանէ կապուած թանձրաթղթեայ գլանով ։ Հրթիռին խոռոչաձև առանցքը հոգի[4] կը կոչուի, ուր պատրոյգը կը հաստատեն ։ Խողովակը կը լեցնեն ըստ իւր առանցքին հաւասարապէս խոռոչաձև խցանի[5] մը ձեռքով, և այս գործողութեան ժամանակ հրթիռին հոգին կամ առանցքը նոյնչափ տրամագիծ ունեցող փայտէ պզտիկ գլանով մը կը բռնեն ։ Վառօդը, երբ կրակ առնէ, ուժով ետ կը մղուի և միայար գիծ մը կը ձգէ օդուն մէջ ։ Գաւազանիկ մը կ'ագուցանեն հրթիռին ծանրութեան կեդրոնը տեղափոխելու և շիտակ վեր հանելու համար ։ Փամփուշտին ծայրը կը հաստատեն մետաղի փայլուն կտորներ, որոնք կը բռնկին երբ հրթիռը ընթացքին ծայրը հասնի ։

Գաւազաններուն գործածութիւնը վտանգաւոր է, շատ անգամ կը վիրաւորեն հանդիսատեսները, մեծ բարձրութենէ մը ուղղահայեաց իյնալով ։ Այս անպատեհութենէն զգուշանալու համար Գ. Ռուճճիերի որդին մտածեց ասոնց տեղ կոնաձև թեւիկներ հաստատել, որոնց մէջ կը պարունակուին արծարծուն նիւթեր և ընթացքին ծայրը կը բռնկին ու կ'այրին ։

Հրթիռներուն զարդերը ընդհանրապէս աստղեր և կրակէ անձրևներ են ։ Սպիտակափայլ աստղերը կը բաղադրուին 16 մաս բորակով, 7 ծծմբով, 4 ալ հրացանի վառօդով. ոսկիանձրև աստղերը 8 մաս բորակով, 4 ծծմբով, 4 հրացանի վառօդով, 1 ածխով, և նոյնչափ ծխանոցի մուրով ։

Մէկ աստղի տեղ շատ աստղեր թափող հրթիռք ալ կան, որոնք հռոմէական կանթեղք[1] կը կոչուին ։ Այս պարագայիս մէջ աստղերը կը ձևանան գրեթէ մէկ հազարորդամետր ճառագայթ ունեցող չաղուած մետաղներէ՝ որոնց կեդրոնը ծակ է, և բաղադրութիւննին է 2 մաս աղբորակ, 1 ծըծումբ և 1 հրացանի վառօդ. այս մետաղի այլ և այլ զանգուածները խողովակի մէջ կը զետեղուին առաջուց լեցուած հրացանի վառօդին վրայ. որուն վրայ կ'աւելցուի մասնաւոր խառնուրդ մը 2 մաս աղբորակով և 1 ածխով, զոր դարձեալ կը ծածկեն նոր մետաղի զանգուածով, այս կերպը պահելով ինչուան որ խողովակը լեցուի ։

Հրալից փամփուշտը[2] հասարակ հրացանի վառօդով կը շինուի, երկու կողմանէ կապուած խողովակի մէջ ամփոփելով ։

Հրախաղութեան օձաձև հրթիռները[3] պարզ հրթիռք են, որոնց խողովակը շատ

1 Գղ. Feu chinois.
2 Գղ. Fonte.
3 Գղ. Fusée volante. տճ. հաւայի ֆիշէնկի ։
4 Գղ. Ame.
5 Գղ. Refouloir.

1 Գղ. Chandelles romaines.
2 Գղ. Pétard. տճ. հաւան ֆիշէնկի ։
3 Գղ. Serpenteaux.

անգամ իրարու վրայ ծալլուած խաղի թղթերով շինուած է։ Ուղղութեան ա-



Օձաձև հրթիռներ.

մէն մէկ փոփոխութեան, ուժը կերպ կերպ կը կոտրուի և թղթին օձաձև շարժմունք կու տայ։

Շագանակը[1] կլոր կամ ուղղանկիւն կարծր թանձրաթուղթէ տուփ մ'է՝ որ հրալից փամփուշտներուն պէս կը լեցուի, բայց միայն վառօդը թանձր պէտք է ըլլայ։

Հրթիռին լուսացնցուղ ցոլմունքը կը պատճառին հրանօթից[2] ձեռքով, որոնք մեծ խողովակներ են և թնդանօթներու գործ կը կատարեն հրթիռներով և օձաձևերով։ Երբ խողովակին կրակ կու տան՝ վառօդը հրթիռները և օձաձևերը օդ կը հանէ, որ ճամբուն մէջ կը պայթին։ Գայլ քը-ֆուարները[3] ալ նոյն սկզբամբ կը շինուին։

Մուսէոն[4] կամ մուզայիք տեսա-



Մուսէոն.

բաններ յառաջ բերելու համար՝ մէկ մեծը երկայնութիւն ունեցող անօթնե-րու պէտք է կպցընել հրթիռներ, որոնց զանազան ցայտմունքը չորս կողմանէ կը փայլին։

Կանկառներու[1] շարժմունքը դիւրին է յառաջ բերել այս կերպով. վառօդը տափակ գլանի մէջ պէտք է փակել. գլանին ստորին նեցուկը 4 ծակ ունի և կողմնակի երեսին վրայ երկու հակառակ դրուած ծակեր կան. ցայտումը ստորին ծակերէն դուրս ելլելով՝ խողովակին վերամբարձ շարժմունք կու տայ, և կողմնակի ծակերէն հորիզոնական թաւալման շարժմունք։



Թաւալուն խնուղներ.

Այս օդական խաղերուն կը յաջորդեն հաստատուն խաղեր տեղակալներին վրայ։

Հաստատուն արևները[2] կը բաղադրուին իրարմէ հեռու հրթիռներով, որոնց ցոլմունքը ճառագայթանման է։ Փոքր բռուածները անով կը տարբերին որ հրթիռներուն ծայրերը նոյն պարունակին շրջանակին վրայ չեն լծնար, հապա այնպէս շարուած են որ սուրեր և Մալթայի խաչեր[3], և այլն, ձևացնեն։

Հովհարը[4] և սագի թաթ[5] բռուած.

1 Գղ. Marron. տճ. քէսթանէ ֆիշէնկի։
2 Գղ. Pot à feu.
3 Գղ. Les saumons des loups.
4 Գղ. Mosaïque.

1 Գղ. Artichauts.
2 Գղ. Les soleils fixes.
3 Գղ. Les croix de Malte.
4 Գղ. Éventail. տճ. էլբազէ։
5 Գղ. Patte d'oïe.

ները ալ քիչ շատ մի և նոյն կերպով կը շինուին ։

Երկու տեսակ շրջուն արև[1] կայ. ոմանք կը կազմուին անուոյ մը շրջանա-



Շրջուն արև.

կին վրայ իրարմէ հեռու հաստատուած հրթիռներով, որոնք ծանրոցով մը կը շարժին. երկրորդ տեսակները կը շինուին երկայն և նեղ ու շատ անգամ ինքիր վրայ պլլուած խողովակով. այս արևները՝ որոնք նաև պատրաստ կը ծախուին փոքրադիր ձևով, մէջտեղնէն կը քամուին պատի կամ ցիցի վրայ հորիզոնական տնկուած քամէ. բաւական է միայն արտաքին ծայրէն խողովակին կրակ տալ, որպէս զի զանգուածը իր շրջանակաւոր շարժմունքն առնու, որ ետ մղուելէն կը պատճառի ։ Այս հասարակ արևները մէջերնին կը բովանդակեն 10 մաս հրացանի վառօդ և 3 ածուխ ։ Ճառագայթաձև արևներուն բաղադրութիւնն է 16 մաս վառօդ, 1 ածուխ, 2 միքա ։

Հաստատուն աստղերը[2] արևներէն քիչ կը տարբերին, և շատ պարզ կերպով կը շինուին ։ Երկու ծայրերը փամփուշտներ կը հաստատեն, և ուզած բաղադրութիւննին դնելէն ետև[3], փամփուշտին զուգահեռական հինգ ծակ կը բանան, որոնք նոյնչափ թուով լուսաւոր ճառագայթներ կը ցայտեցնեն ։

1 Գղ. Soleil tournant. տճ. չարքը ֆէլէք ։
2 Գղ. Les étoiles fixes.
3 Կրնայ հետագայ խառնուրդը գործածուիլ. Հասարակ աստղերուն համար 8 աղբորակ, 4 ծծումբ, 3 մանր վառօդ, 1 ծարրուպքար, 2 ծեծած բիւրեղ (cristal pilé) ։

Հաստատուն հրթիռները հորիզոնական հաստատելով սահանք և հրեղէն աղբիւրներ կը ձևանան ։



Չինացի աղբիւր.

Հրախաղուց արուեստին մէջ ամենէն զարմանալի բանն է կանոնաւորապէս և ճշդիւ չէնքեր, գետեր և նշաններ և այլն, ներկայացնելը ։ Այս զարդերը կը ձևանան հետագայ երկու կերպով որ են տէգք[1] և գունաւոր չուանք[2] ։

Տէգերն են թղթեայ ամենաբարակ և անկապ երկայն հրթիռներ. պատրոյգ մ'ունին, և բաղադրութիւննին ալ այնպէս է որ բռնկելէն վերջը մէկէն չեն մարիր՝ այլ կենդանի լուսով կ'արծարծին ։ Ճարտարապետական կամ այլաբանական ձևերով տախտակամածներու վրայ կը հաստատուին անոնք, և հրարուեստական խաղերը ընողին ճաշակին համեմատ այլ և այլ տեսարաններու վրայ ։

Գունաւոր չուանները, որոնցմով ծամածուռ ձևեր և տեսարաններ յառաջ կը բերուին, կը կազմուին թեթև մը մանած և երկաթեայ թելի[3] վրայ ոլորուած բամբակով ։ Այս բամբակը

Փայլուն աստղերուն համար. 8 աղբորակ, աւելի 1 մաս խէժ (gomme) և 1 գինիի խաւրտուք ։
Ա՛լ աղէկ. 12 աղբորակ, 6 ծծումբ, 12 մանր վառօդ, և 1 ծարրուպքար ։

1 Գղ. Les lances.
2 Գղ. Les cordes de couleur.
3 Գղ. Fil de fer.

դիւրավառ ընելու համար, պէտք է թաթխել խառնուրդի մը մէջ որ ունի իր մէջը երկու մաս աղբորակի, 16 ծծմբի, 1 ծարրաքարի և 1 Արաբիոյ խէժի։

Գիւղական տեսարան մը ներկայացնելու համար հրագործը[1] պէտք է հաստատել երկաթեայ կամ փայտեայ թիթեղի գաւազանի մը ծայր, և չորս կողմանէ հեռագայ խառնուրդին մէջ թաթխուած պատրոյգներով պատել. որ կը բաղկանայ 4 մաս ժանգառով[2], 2 պղնձի ծծմբատով[3], 1 անուշադրի աղով[4]։

Այս երեք դոյացութիւնները գինիի ոգւոյ[5] մէջ աղէկ յարեալ և յագեալ պէտք է ըլլան։

Ցառաչաղաս կամ Շախըշնոկը փունջը[6] բազմազգի պարգարուն թըռչող հրթիռներու այլ և այլ տեսակներ բաղնկցընելէն առաջ կու գայ։

Ուղղահայեաց դրուած հրթիռաք մեր. նարաց արկղներու մէջ յատուկ կերպով մի և նոյն պատրոյգին հետ կը հաղորդուին։ Վերջապէս այսօրուան օրս կը տեսնանք որ բազմազգի կատարելութեամբ հրային խաղերով գրեթէ ծիրանի գօտիին ամէն գոյները առաջ կրնան բերուիլ։ Ահաւասիկ համառօտ ցուցակ մը սովորական գործածուածներուն։

| ԲՈՑԵՐՈՒՆ ԳՈՅՆԵՐԸ | ՆԻՒԹԵՐ: Աղբորակ | Ծծումբ | Թնդանօթի վառօդ[7] | [illegible] | [illegible] | Զինկ | Ուռենւոյ ածուխ[8] | [illegible] | Աղ | [illegible] | Բուրեղեան ձիւթ[9] |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Սպիտակ . . . | 4 | 2 | 1 | » | » | » | » | » | » | » | » |
| Երկնագոյն . . | 4 | 2 | » | 1 | » | » | » | » | » | » | » |
| Կապոյտ . . . | 16<br>2 | »<br>3 | »<br>» | 3<br>» | »<br>4 | »<br>3 | »<br>1 | »<br>» | »<br>» | »<br>» | »<br>» |
| Կարմիր . . . | 16<br>» | »<br>» | »<br>3 | »<br>» | »<br>15 | »<br>» | »<br>» | »<br>4 | »<br>» | »<br>» | »<br>» |
| Վարդագոյն . . | » | » | » | » | » | » | » | » | » | » | » |
| Խարտեաշ . . . | 4 | 1 | 4 | » | » | » | » | » | 1 | » | » |
| Կանաչ . . . . | »<br>16 | »<br>9 | »<br>10 | »<br>» | 4<br>» | »<br>» | »<br>» | »<br>» | 4<br>» | 1<br>» | »<br>3 |

Հրախաղք միշտ հաստատուն գետնոյ վրայ չեն ըլլուիր. այլ երբեմն օդաճողակք իրենց օդաչու կառքին կամ սապատին մէջէն արուեստական շանդեր և հրալից փամփուշտներ կ'արձըկեն. Բայց աւելի հրաշալի տեսարան

1 Գղ. Carcasse.
2 Գղ. Vert-de-gris.
3 Գղ. Sulfate de cuivre.
4 Գղ. Sel ammoniac.
5 Գղ. Esprit-de-vin.
6 Գղ. Bouquet classique.
7 Գղ. Poudre à canon.
8 Գղ. Noir de fusain.
9 Գղ. Colophane.

կը պատճառեն ալեծուփ հրախաղք ջըրին մէջ անդրադառնալով։ Օրինակի համար կը կառուցուի արև մը, հաստատելով տաշտի (jatte) մը չորս կողմը շատ մը հրթիռներ։ Վառօդին այրումը բաւական է արագ շարժում մը տալ բոլոր այս կազմածին հոլովմանը։

Մկրտիչ Տիւզեան
Աշ. Ռաֆ. Վարժ։

---

# ՍԱՐԴՔ

(Տես երես 43։)

## Է

Հիմա դիտէ այն կաթիլ մը ցօղը որ տերևի մը վրայ ձևացեր է. տես ինչպէս գոյնզգոյն ճառագայթներ մէջէն կը կորին։ Հորիզոնին բարձրացող արևը, անանկ անսովոր պայծառութիւն մէջէն կը շողշողայ՝ որ տեսութիւնը կը շլացնէ. ծիրանի գօտւոյն գեղեցիկ գոյները մէջը կը նշմարես։ Միով բանիւ երկինք ու երկիր զարմանալի գեղեցկութեամբ մէջը կը ծնանին։

Որչափ անտարբեր ըլլայ մէկը՝ չկրնար այն կաթիլին հայեցուածք մը տալ և չախորժիլ. «ի՞նչ յստակ ջուր, կը կանչէ, ինչպէս ամենաջինջ, բոլորովին պայծառ, անխառն ամենևին ինչ և իցէ նիւթէ»։

Կեցի՛ր քիչ մը, դնեմ առջիդ այդ կաթիլը՝ լիճ մը ահագին. տեսնես այն ամենաջինջ կաթիլիկը, լի զեռուններով, ճնչաւորներով հոծ։ Տեսնես մէջը էակներ կերպ կերպ. կայ որ անուաւոր է և անուի պէս կը հոլովի. կայ որ որդնակերպ՝ և որդի պէս կը սողայ։ Տեսնես մէջը գազաններ պէսպէս. մեծ, մանր, մանրագոյն։ Տեսնես կռիւ, պատերազմ, մահ, ծնունդ և բիւր երևոյթք. տեսնես միով բանիւ աշխարհք մը, տիեզերք մը, և այս 'ի փոքր կաթիլ։

Եւ ինչպէս բազմաթիւ, մանաւանդ թէ անթիւ։

## Ը

Այս ամենայն կաթիլ մըն է. ամէն այս հրէշաւոր երևոյթները, կ'ըսեմ, կաթիլի մը մէջ կը նշմարեմ։ Որչափ անհամար աշխարհքներ ուրեմն գաւաթ մը զուտ ջուր յիս կը լեցնէ։

Բայց մեզի երնէկ. մեր աչաց տկարութիւնը չներեր մեզի այն երևոյթին ականատես ըլլալու։ Ապա թէ ոչ ո՞ր աչքը կրնար տանել այն տեսարանին, ո՞ր սիրտը հանդուրժել այն մտածութեանը, որ անհամար զեռնոց զանգուած մը՝ գաւաթ մը ջրով ստամոքսին մէջ կը լեցնենք։

Իսկ թիւը գիտնալ կ'ուզես. ահա գաղափար մը միայն որ մարդկային երկայնամիտ համբերութեան հրաշալի արգասիք մըն է։

Ոչ գաւաթ մը ջուր, այլ կաթիլ մը, մանաւանդ թէ կաթիլիկ մը որ հազիւ թէ կորեկի մը հատիկի չափ կայ, փորձի առած է մարդ։ Երկայնամիտ համբերութեամբ մանրադիտին միջոցաւ՝ համրեց Լայվէնհէք, գտաւ հազարներ, բիւրաւոր էակներ որ մէջը կը լողային։ Ռոպէրդ Ծուք և այլ շատեր նոյն փորձը կրկնեցին, և գտան ոմն տասը հազար, ոմն երեսուն հազար, և այլ ոմանք մինչև երեսունուհինգ հազա՜ր։ Թուեցին, և այն էակաց պատկերն իսկ գծագրեցին իրենց փորձերուն քովը, 'ի հաւատարմութիւն իրենց խօսքերուն, և 'ի ծանօթութիւն անոնց՝ որ մանրադիտի համբերութեան երկայնմտութիւնը չունին։

## Թ

Կաթիլին օրինակը տես կերպով մը մանր միջատաց վրայ. ճանճը, և քան զինքը մանր՝ լուն, ունին իրենց խորթքն, որ իրենց մարմնոյն վրայ կպած՝ ճանկաւոր, մագլակերպ թաթիկներով՝ ժուռ կու գան, և անոնց մարմնոյն հոյզերովը կը սնանին։

Աչքդ անդին դարձուր. տես այնքա-

րին վրայ յարեալ կանաչը, այն սողացող մամռուկը՝ իբր ովասիս մը շնչասպառ ոգեկորոյս անապատին մէջ։ Կանաչ իբր զմրուխտ, փայփլացող իբր թաւիշ, անշունչ, թափուր ամէն շարժուն էակէ կ՚երևնայ, ամայի՝ կատարեալ անապատ։ Սակայն եթէ կարելի ըլլար աչքդ մանրադէտ փոխուէր՝ ամէն տեսակ կրից երևոյթ մէջը կը տեսնէիր. սիրոյ, ատելութեան, պատերազմաց, այլակերպութեանց և այլ հրաշալեաց, որոց ոչ գիտակ ենք և ոչ դիտող եղած ենք երբէք։

Ժ

Այս մանր էակներն անմասն չեն անշուշտ կարճատև կեանքի մը զբօսանքներէն. անոնք որ տերևի մը վրայ կը գտնան՝ իրենց յատուկ ախորժակին գեղեցկութիւններովը կը պարարին։ Տերևի մը վրայ, տարակոյս չկայ որ բոլոր աշխարհքի մը զարմանալիքները կը նշմարեն։ Անոր թաւութիւնքը, անտես մեր աչաց, անտառաց շնորհքն ունին իրենց առջև. բիւրաւորք անոնց հովանիին տակը կը հանգչին, և այլ անթիւք դաշտերուն վրայ կ՚արածին, կամ հիւթոց ծովակներու մէջ կը լողան, ոսկեփայլ, արծաթագոյն հոյզերով սնանելով։ Չունինք գաղափար. բայց անտարակոյս տնկի մը իւրաքանչիւր մասը՝ նորանոր տեսարանաց, պէսպէս զբօսանաց դուռ է անոնց առջին։

Այլ ափսոս. կեանքը կարճ, վայելքը կարճագոյն։

Այն փոքր աշխարհքին մէջ երիտասարդութիւնը առաւօտեան է անտարակոյս, և ծերութիւնը երեկոյեան։ Յետ որոյ այն մանր էակն ալ այն օրինաց հնազանդելով որ զմեծ էակները կը կառավարէ, կը տկարանայ, կը լքէ շարժմունքէ, կ՚անյայտի, և այլք տեղը կը յաջորդեն. կեանքը մահուան տեղիք կու տայ և մահը կենաց, որով փոփոխակի այս երկու երևոյթք մէկզմէկ կը յաջորդեն։

Այս օրէնքը ընդհանուր է ամենայն կենսունակաց. ասով է որ բնութիւնը կը զինի հնացեալ ծերութեան մը դէմ։ Էակը՝ փայլուն ընթացք մը կատարելէն ետքը, կէտ մը կը հասնի որ ներքին գործունէութեան բոցը մարելով՝ դանդաղութն կ՚ըլլայ. և դառամեալ՝ կ՚անպիտանանայ անկարողութեամբ։ Հարկ է որ նորոգի։ Սակայն նորոգութեան ուրիշ միջոց մը չկայ բայց եթէ հողը՝ ուսկից ծագումն առաւ. որով դարձեալ անոր կը դառնայ, հետը կը խառնուի, կը միանայ ու նորէն կը բողբոջի։

Ահա բողբոջեալ նոր արարած, նոր շնչով ոգևորեալ էակ, որ կը սկսի նոր շրջանով իր կատարեալ զարգացման ընթացքը կատարելու։

Այսպէս բնութիւնը կանոնաւոր շրջանով մը կ՚աշխատի. և այս ամէն հրաշալիքը, այս մեծ ու փոքր էակներն որ կը ստեղծէ՝ ունին իրենց յատուկ պատմութիւնը, որ անտարակոյս չէ զուրկ յօգտաբեր հետաքրքրութենէ, և թերևս այնչափ աւելի՝ որչափ իրենք աւելի մանր են։

Ստուգիւ կրնանք զրուցել առ հասարակ, որ եթէ եղեր են՝ չեն անպիտան. եթէ գոյացեր են՝ իրենց վախճանն ունին. անոր համար ալ իրենց յատուկ քաղաքական պատմութեան քննութիւնը՝ կրնայ մեծապէս օգտակար ըլլալ մարդկութեան, իբր անոր թշուառութեանց բուժիչ։ Ո՞ գիտէ ինչ մեծ մասն ունին ատոնք այն ծանր, լի արհաւրօք թշուառութեանց մէջ, որոնցմով աստուածային ձեռքը՝ մարդկային խեռութիւնը կը հարուածէ։

Ստոյգ՝ որ իրենց պատմութեան ընդարձակութիւնը մեծ է, և այնչափ մեծ՝ որչափ անծանօթ ՚ի մէնջ։

ԺԱ

Այսպէս ուրեմն բնութիւնը անյագ է իր հրաշալեաց մէջ. ստեղծելը՝ զբօսանք մըն է իրեն։ Կեանք կը ստեղծէ, և այդ կեանքը չափ մ՚ունի. բայց մեր կարողութենէն անըմբռնելի։ Կենաց

յառաջբերեալ արդիւնքները միշտ զարմանալիք են։

Բայց այս զարմանալեաց մէջ չկայ արդեօք անպիտան էակ մը, արարած մը որ ամենեւին օգուտ մը չունենայ, որ ըստ ինքեան չարիք կարենայ զուրցուիլ։

Բնութիւնը բարեաց մայր է. այն որ մեր կարճ տեսութեանը չարիք կ'երեւնայ, բարիք կը գտնենք եթէ կարող ըլլանք իր կարգաւորիչ օրինացը խելք հասցնել։ Ցես, ինչ աշխոյժ կը բանեցնէ մանր էակաց վրայ, ուր մենք չարիք կը նշմարենք։

Աստոյգ կը տեսնենք մեծ էակաց վըրայ այն գեղեցիկ ներդաշնակութիւնը, որով մէկմէկու հետ շաղկապեալ են, ինչպէս շղթայի մը օղերը։ Ինչպէս մեծ էակաց վրայ, նոյնպէս մանունց վրայ ալ նոյն ներդաշնակութեան օրէնքը պէտք է որ ըլլայ. վասն զի օրինադրողը մի և նոյն բնութիւնն է։ Եւ ոչ այս միայն. այլ և փոքր և մեծ էակք՝ պէտք է որ վերաբերութեամբք մէկմէկու հետ շաղկապեալ ըլլան։

Բայց եթէ մեր տեսութեան չափաւորութիւնը մեզի չներեր տեսնելու անոնց մէկմէկու հետ ունեցած առընչութիւնը, կամ նշմարել անոնց օգուտը այս ընդհանուր ստեղծագործութեանց աշխարհքին մէջ, մեր անկարողութեանը մեղադրանք գնելու ենք և ոչ բնութեան։

ԺԲ

Սարդը զզուելի էակ մըն է այլանդակ երեւոյթով, խիթալի տեսքով։ Անոր կերպարանքը վախ մը կ'արթնցնէ մեր անփորձ սրտին մէջ. կ'արհամարհենք զինքը և կենաց իսկ անարժան կը սեպենք։

Կը սխալինք...։ Այս ընդհանուր ստեղծագործութեան մէջ այն ալ իրեն որոշեալ տեղը ունի. բնութիւնը զինքը այն տեղ որոշեր, կարգեր է։ Պաշտօն մը ունի կատարելու, ծառայութիւն մը լրացնելու, օրէնք մը հնազանդելու, ինչպէս ամէն էակք։ Զարհամարհենք զայն. չխոտենք բնութիւնը։ Եթէ անգէտ ենք անոր օգտին, քննենք ու սորվինք։ Բնութեան արդիւնքները գիրք մըն են առջենիս բացուած. ոչ գրով միայն դրոշմուած այլ և արդեամբք. ոչ խօսքով միայն կը խօսին այլ և գործով, որ է ազդողագոյն։

Ընդհանուր տեսութիւն մըն է այս որ մանաւոր ոճով մը դրոշմելու կը սկսինք։ Այս ընդհանուր տեսութեանը մէջ կը բովանդակուի այս դասու կենդանեաց համառօտ պատմութիւնը։

Հ. Ց. Վ. ԽՍԱՎԵՐՏԵՆՑ

Կը շարունակուի։

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

Դրաքեանի մը անտիպ յիշատակագիրք։

(Տես երես 17)

Բ

Երբոր ինքնիրենս եկայ, ինծի բոլորովին անծանօթ սենեկի մէջ անկողնոյ մը վրայ պառկած գտայ զիս. երբոր աչքերս բացի, չորս կողմս քանի մը հոգի տեսայ որ սկզբան չկրցայ ճանչնալ։ Կամաց կամաց որոշեցի որ հոն կար ժողովրդապետը, եղբը ազնիւ Մարգարիտա, հուսկ եղբն ալ մայրս։ Չէի կրնար հասկնալ թէ ինչպէս այն սենեկին և անկողնոյն և անոնց մէջ կը գտնուէի. այլայլեալ և խռովեալ գըլխուս մէջ կերպով մը այնչափ բիւր տեսակ խառնակ մտածութիւններ և տխուր երեւոյթներ կը պտըտէին որ զիս սոսկալի կերպով կը սարսափեցնէին։ Ուժգին և տապախառն ջերմ մը կը կեղեքէր զիս. դողդոջուն սարսուռ մը կը ցնցէր զիս և կը տագնապեցնէր. քանի մը անգամ կարծեմ թէ զիս ամենայն ուժով բռնող սատանէ մը փախչողի պէս ուզեցի անկողնէս ցատքել։ Այն

եկեղեցին լուած ոտքը բայց զարհուրելի ձայնս անդադար ականջէս իմ անունս կը շշնջէր. լռելուս պէս, յանկարծ գլխս բռնած տեսակ մը թմրութիւնէս կը սթափէի. կու լայի, ձեռքերս ոտուընդերս կը շարժէի, և դժուարաւ զիս ժողովրդապետն ու մայրս անկողնոյս վրայ հանդարտ կը բռնէին:

Քանի մը օր այս ցաւալի վիճակին մէջ անցուցի: Ազնիւ քահանային անդադար և իրաւցնէ հայրական խնամքները՝ կորսնցուցած հանդարտութիւնս ինծի նորէն դարձուցին. շաբաթէ մը վերջը կրցայ ոտք ելլել և իմ սովորական խաղաղութիւնս ստացայ: Քահանային տանը հիւրն եղեր էի. թէ՛ ճաշուն և թէ ընթրեաց ատեն միշտ ժողովրդապետին քովն էի. Մարգարիտա յարատև մտադրութեամբ ինծի պէտք եղած բաներուն ուշ կը դնէր. գիր ու աղօթք կը սորվեցնէր. ետքը զիս զուարճացնելու և ուրախացնելու համար մօտիկ պարտէզ մը կը տանէր: Ինքը դուլպայ կը հիւսէր և բնաւ քովէս չէր հեռանար: Օր մը հետաքրքրութիւնս եկաւ իրեն հարցնելու թէ Ո՛ւր է հայրս. ինքն ալ պատասխանեց թէ Արքայութիւնն է: Այս պատասխանը զիս շատ մխիթարեց. ան ատեն հարցուցի թէ Ես ալ կրնայի երթալ արքայութիւն, զինքը տեսնելու համար: Դուն ալ, պատասխանեց, դուն ալ հոն կ'երթաս, երբ Աստուած զքեզ կանչելու ըլլայ:

Թերևս Աստուած էր այն, հարցուցի մանկական պարզմտութեամբ, որ այն գիշերը եկեղեցւոյն մէջ կանչեց զիս, երբ մեռելը այնպէս սաստիկ կերպով կաշկանդած էր զիս: Այս հարցմունքիս՝ Մարգարիտայի շրթանցը վրայ ծիծաղ մը ծագեց. վերջը սովորականէն աւելի ծանր կերպ մը առնելով կրկնեց. Մենք էինք, ես և ժողովրդապետը որ զքեզ կը կանչէինք: Ո՛հ Տէր, որչափ տագնապ կրեցինք այն գիշերը: Ամէն տեղ փնտռեցինք զքեզ, և տեղ մը չկարենալով գտնել, սկսանք անունդ կանչել, որպէս զի տեսնենք թէ արդեօք կը պատասխանես: — Հապա ինչպէս վերջը զիս եկեղեցին գտաք. սաստիկ հետաքրքրութեամբ մը հարցուցի: — Դիպուածով եղաւ. երբոր կ'անցնէինք եկեղեցին առնող դրան առջևէն, որ քիչ մը բաց էր, ժողովրդապետը տեսաւ որ սրբութեան ճրագը մարած է: Ան ատեն ինծի և մօրդ, որ տակն ու վրայ եղած՝ ժողովրդապետին տունը եկեր էր, զքեզ փնտռելու հոգը թողլով, մէկէն ճրագը վառելու համար դէպ 'ի աւագ խորանը գնաց: Հազիւ թէ լմնցուց, եկեղեցւոյն խորէն եկող հեծութեան ձայն մը լսեց: Դարձաւ, և մեծաւ զարմացմամբ տեսաւ Դիմոնեսիոսը բացուած, և զքեզ ալ վրան ինկած: Կ'ուզէր կանչել զմեզ որ իրեն օգնենք՝ զքեզ գետնէն վերցնելու և ժամատունը տանելու. բայց մտածելով որ մայրդ այդպիսի խեղճ տեսարանի մը չէր կրնար դիմանալ, ինքը զքեզ բազկացը մէջ առաւ և գրեթէ մեռածի պէս՝ ժամատունը տարաւ: Ինչպէս վախցանք ամէնքնիս, և մանաւանդապէս խեղճ մայրդ, երբոր զքեզ այն ողորմելի վիճակին մէջ տեսանք: Երկու ժամէն աւելի տևեց ինչուան որ զքեզ արթնցուցինք. Մնացածը գիտես, և հարկ չէ ուրիշ բան ըսել:

Ըսէ ինծի միայն, աղաչեցի Մարգարիտա, քիչ մը կենալէն ետև, ըսէ ինծի թէ ինչ մտածութեամբ ան գիշերը մինակ գացիր եկեղեցին, և ինչպէս ան կերպով ինկար, երբ խեղճ հայրդ սովորական սև ծածկոցով գոցուած էր:

Սոյն հարցմունքը, պատասխանեցի, մայրս ու ժողովրդապետն ալ ինծի ըրին: Ի՞նչ գիտնամ. ես ալ չիտեմ ինչ պատասխանեմ: Հետաքրքրութիւնը զիս հոն մօտ տարաւ, հետաքրքրութիւնը դարձեալ ինծի այն ծածկոցը վերցնել տուաւ, կերպով մը միտքս դրած ըլլալով որ կրնամ արքայութիւնը հայրս տեսնել: — Մարգարիտա նորէն ժպտեցաւ ու կրկնեց. Անտարակոյս կը տեսնես զինքը, բայց ոչ այս աշխարհս. անդին կը տեսնես, միայն թէ բարի գործովք արժանի ըլլաս երանելեաց անսահման փառքը վայելելու:

Այս խոստկցութիւնէն քիչ մը ատեն վերջը ժողովրդապետը կանչեց զիս ու ըսաւ. Հենրիկոս, կը փափաքէի դեռ զքեզ իմ ժամատունս բերելու. քու բարի հայրդ վախճանելէն առաջ զքեզ անձկանօք ինծի յանձնեց. և ես խոստացայ հսկելու վրադ՝ ինչպէս ինքը պիտի ընէր, և ես պատրաստ էի քեզի հօրդ տեղ ըլլալու, զոր Աստուած իրեն կանչեց. բայց մայրդ, որ ամենաբարի քրիստոնեայ մըն է, կ'ուզէ ինքը անձամբ քու դաստիարակութեանդ հոգը վրան առնուլ. և թէպէտ աղքատ է, բայց այնչափ վստահութիւն ունի առ Աստուած՝ որ կը հաւատայ հաստատութեամբ թէ երբեք իրեն և որդւոյն պատառ մը հացը պակսելիք չունի։ Հենրիկոս, դու բարի մայր մը ունիս. նայէ ուրեմն որ միշտ զինքը սիրես, ամէն բանի մէջ իրեն հնազանդիս, և ինչ որ ըսէ՝ կատարես. միտքդ պահէ որ բարի որդւոյ մը պարտքն այս է, և պէտք է ըսեմ որ քուկինդ քան զամէնուենն աւելի մեծ է, որովհետև մայրդ այրի է և տառապեալ։ Այսօր տունդ կը դառնաս. մայրդ անհամբեր քեզի կը սպասէ, որովհետև կը սիրէ զքեզ և շատ կը սիրէ։ Բայց նաև միտքդ պահէ որ զիս ունենաս պիտի միշտ սիրալիր հայր մը, որ քու ամենայն թէ հոգւոր և թէ մարմնաւոր պիտոյիցդ մէջ քեզի պիտի օգնէ։ Գնա, որդեակ. Աստուած օրհնէ զքեզ, ինչպէս ես բոլոր սրտիս սիրովը զքեզ կ'օրհնեմ։ Ես ըսելով զիս գիրկն առաւ, գորովանօք մը կրծիցը վրայ դըրուեց, և ճակատիս համբոյր մը տուաւ։

Տեսայ որ բարի ծերոյն սիրտն ելած էր ու կու լար. նաև ես, թէպէտ տղայ էի, բայց այնպիսի սրտի յուզմունք մը կը զգայի, որ դրեթէ աչքէս արցունք կը թափէր։ Մեծարանօք ձեռքն համբուրեցի, և անհնարին ցաւով թողուցի զինքը։ Աղնիւ Մարգարիտան զիս տուն տարաւ։ Մայրս տնակին դրան դիմաց ինծի կը սպասէր. հազիւ զիս տեսաւ, դիմացս վազեց, գիրկն առաւ և սկսաւ անհնարին խանդաղատանօք համբուրել։ Ես ալ իրեն վզին փլլուեցայ, և կրկին և կրկին համբուրեցի. խոհակերոցին սեղանատախտակին վրայ ապուր մը պատրաստուած էր զոր շատ ախորժակով կերայ. մայրս ու Մարգարիտան այս անշուք կերակրոյն ներկայ եղան. վերջը Մարգարիտա ողջունելով զիս՝ ժամատունը դարձաւ։ Իրեն երթալը ինծի մեծ ցաւ պատճառեց. այնչափ ժամանակէ 'ի վեր վրաս ցուցըրած խնամքներն, իրեն համար այնպիսի անմեղ սէր մը աղդեր էին ինծի, որ այնչափ յեղափոխութիւններէ ետև բնաւ սրտէս չջնջեցաւ։

Սկսայ տղայական հետաքրքրութիւն մը իմ աղքատիկ տնակս զննել. այն անպաճոյճ և ծխամած սրմունքն ինչպիսի խառն մերթ զուարթ և մերթ ցաւագին յիշատակներ միտքս կը բերէին։ Տեսայ նորէն այն Աստուածածինը՝ որուն դիմացը մօրս հետ ծունր դրի և միատեղ խեղճ հօրս համար աղօթեցինք։ Խոհակերոցին մէկ անկիւնը տապար մը կախած էր, զոր ճանչցայ այն ըլլալը զոր հայրս հրդեհին սոսկալի գիշերն առաւ. կարծես թէ դեռ զանգակին այն միակերպ ձայնը կը լըսէի, որ այն զարհուրելի տեսարանին մէջոց զիս նեղելէն չէր դադրեր։

Մինչդեռ այս մտածութեանց մէջ ընկղմած էի, մեծիկ անկողնոյն սենեկէն տղու ճիչ մը լսեցի։ Չեմ կրնար ըսել ինչպիսի զարմանք պատճառեց ինծի այն պզտի ձայնը. մայրս մէկէն նըստած տեղէն ելաւ, թողուց աշխատութիւնը և արտորնօք դէպ 'ի խցիկը գընաց։ Քիչ մը վերջը գիրկը տղայ մը՝ դուրս ելլելը տեսայ։ Անանկ գեղեցիկ արարած բնաւ տեսած չունէի. ձեան պէս ճերմակ, և այտերը վարդի պէս կարմրագոյն, որ երկու գեղեցիկ սև աչացը փայլը կը ցոլացնէր։ Դեղին մազերու կերպ կերպ խոպոպիք՝ անզարդ կերպով մը լայն ճակտին վրայ կ'իյնային. երկնային ծիծաղ մը բոսորագեղ շրթանցը վրայ կը ժպտէր։ Երբ զիս տեսաւ, երկայն ատեն ուշադրութեամբ ինծի նայեցաւ. վերջը թաթիկները շարժելով սկսաւ մանկական զուար-

թութեամբ ծիծաղիլ։ — Ափշութեամբ և հիացմամբ, Մայրիկ, ըսի, ո՞վ է աս տղան։ — Քու կաթընկերքոյրդ է, պատասխանեց մայրս։ — Անունը ի՞նչ է, հարցուցի մէկէն։ — Կարոլինա, կրկնեց մայրս։

— Իմ կաթընկեր քո՞յրս. աղէկ չէի հասկնար ի՞նչ ըսել կ'ուզէ ասիկայ։ Նորէն հարցուցի մօրս որ այդ գաղտնեաց պարզութիւն մը ունենամ. ան ալ այսպէս պատասխանեց. Մտիկ ըրէ, Հենրիկոս. Աստուած քեզի բուն ճշմարիտ քոյր մը խուրեր էր. բայց անիկայ ցաւոց և թշուառութեան մէջ ծնաւ։ Այն ատեն աշխարհ եկաւ, երբ արդէն հայրը յափշտակութիւնն անցեր էր. Աստուած ուզեց որ հետը մէկտեղ արքայութիւն երթայ։ Անոր տեղն ինծի այս անմեղ արարածը խաւրեց, զոր ես կը սիրեմ որպէս թէ բուն իմ աղջիկս ըլլար, և դուն ալ պէտք է զինքը սիրես, իբրև թէ քու քոյրդ ըլլար։ Մեծատանց զաւակ է, բայց մեծատունք ալ աղքատին պէտք ունին։ Այս բանս կը թողու Աստուած, մեզի իմացնելու համար որ հոս երկրիս վրայ ոչ ոք անպիտան է, և ամէնքը կարօտ են ուրիշներէն օգնութիւն և նպաստ գտնելու։ Հայրդ իր մերձաւորին օգնելու համար մեռաւ, և մանաւանդ այս աղջկան հօրը բանները ազատելու համար։ Մայրը չկրցաւ, ինչպէս որ կը փափաքէր, զինքն իր կաթամբը սնուցանել. իսկ հայրը ուզեց իրեն համար զոհ եղողին այրւոյն յանձնել զինքը։ Ո՛հ, այո. միշտ պիտի սիրեմ այս անմեղ աղջիկը. այս ըսելով՝ զինքը սաստիկ կը համբուրէր։ Ինքը մեր տիրոջը աղջիկն է. և ինքն իսկ օր մը մեր խաթունիկը կրնայ ըլլալ. պէտք է ուրեմն որ զինքը սիրենք. նախ որ անմեղ է և տկար, և երկրորդ՝ ինքը կերպով մը մեզի տէր է։

Բերանս բաց մնացեր էի լսելով մօրս այս խօսուածքը, որ իրաւն ըսելով՝ քիչ պարզեց այս տղուն ինծի համար ունեցած գաղտնիքը. բայց և այնպէս բաւական ըմբռնեցի թէ ինչ կերպով ինքը մեր ընտանեաց մասն եղեր էր. այն կէտէն սկսայ իրեն վրայ անանկ սէր և գորով ունենալ որ և ոչ մօրս վրայ ունէի։ Ո՞վ կրնար բնաւ ըսել թէ այս անմեղ զգացմունքներն իմ բոլոր թշուառութեանս առաջին պատճառն պիտի ըլլային։

Կարոլինա օր օրուան վրայ կ'աճէր գեղով ու սիրունութեամբ։ Կրնայ ըսուիլ որ իմ միակ մտածութիւնս էր։ Արթննալուս պէս՝ զինքը կը հարցնէի ու կը փնտռէի. երբոր դպրոցէն կը դառնայի ու զինքը մօրս գիրկը չէի տեսնէր, մէկէն օրօրոցը վազելով զինքը կը համբուրէի։ Շատ անգամ քուն եղած ժամանակը, հանդարտ և լուռ կը կենայի ու զինքը կը դիտէի. և դրեթէ շունչս կը բռնէի որ չարթնցընեմ։ Երբոր աչքերը կը բանար ու զիս իր քովը կը տեսնէր, յայտնի հաճութեամբ մը ինծի կը նայէր, և շնորհալից ժպիտով մը կ'ողջունէր զիս. թաթիկներն դէպ 'ի ինծի կ'երկնցնէր, կարծես թէ ըսել ուզելով որ զինքը գիրկս առնում. երբոր իրեն կը մօտենայի, ող բոլոր աշխարհքիս զուարթութիւնն իրեն քովն էր. պզտի թևերը վիզս կ'երկընցնէր և մօրս գիրկը ցատկելով զիս կը գգուէր։ Երբոր անհանգիստ կամ տաղտապեալ կ'ըլլար, խաղալիկ մը իրեն կը ցուցընէի կամ ուրիշ խաղ մը կ'ընէի. մէկէն կը լռէր և իր անուշ և զուարթ կերպը կ'առնուր։ Ո՛րչափ անգամ զինքը քնացնելու համար մեղմով մը օրօրոցը կը շարժէի, և քովէն չէի հեռանար ինչուան որ լաւ մը ապահով չըլլայի թէ խորունկ կը քնանայ։ Մայրս հաճութեամբ կը տեսնէր այս Կարոլինայի ցուցըցած սէրս. խնդիր կին. եթէ մէյմը գալիքը կանխատեսած ըլլար։

Երբեմն երբեմն անձինք կու գային՝ աղջկան վրայօք լուրեր ուզելու։ Օր մը մայրս դղեակը կանչուեցաւ, և իրեն ըսուեցաւ թէ Կարոլինայի ծնողքն հասեր են։ Հագուեցուց զինքը որչափ աղէկ որ կրցաւ, և ինծի ալ տօնի օրուան զգեստներս հագուեցնելով, իրեն հետ մէկտեղ առաւ։ Առաջին անգամն էր

որ այն ղլխակը մնայ, որ Մարգարիտայի հետ ժամատունն երթալուս առաւօտը այնչափ իմ ուշադրութիւնս գրաւեր էր։ Շէնքին տարածութիւնը, մասանց համեմատութիւնը, և մէջը տեսած քանի մը ինծի համար բոլորովին նոր բաներ, ինծի մեծ զարմանք կը պատճառէին։ Ամենայն կողմ կը նայէի. Նախ երկայն և մութ սրահէ մը անցանք, վերջը ընդարձակ դահլիճ մը հասանք, ուր ձիեր և կառքեր կային. անոնց մէջ կը պտըտէին այնպիսի մարդիկներ որ ես բնաւ տեսած չունէի։ Գետնայարկ սենեակ մը տարին զմեզ. քիչ մը վերջը պարոն մը եկաւ, որ ըզմեզ երկու սանդուխէ վեր հանեց։ Մտանք ընդարձակ սրահ մը՝ լեցուն նկարներով, պատկերներով և դէմքերով, որ ինծի համար իրաւցնէ սքանչելիք մըն էին։ Անցանք իրարմէ աղուոր երկայն կարգ մը սենեակներէ, ինչուան որ սրահակի մը դուռը գեղեցիկ խաթուն մը ելաւ, որ զմեզ տեսնելուն պէս՝ մօրս դիմացը վազեց, կարօլինան զիրկն առաւ և ինքիրմէ դուրս ելած և յափշտակուած սկսաւ համբուրել։

Խեղճ աղջիկը այսպէս յանկարծակի անծանօթ մէկ մը տեսնելով, սկսաւ սաստիկ լալ. և փուճ տեղը խաթունը խաղալիկներով և փայփայանքով զինքը հանդարտեցնել կը ջանար. կարօլինա ա՛լ աւելի կու լար։ Չեմ կրնար ըսել ինչպիսի՛ բարկութիւն պատճառեց ինծի խաթունին այդ բռնած կերպը։ Ի՞նչ իրաւունքով, կ'ըսէի ներսէս, այդ կինը ատանկ կերպով այն անմեղ արարածը կը չարչրկէ։ Ծանր կշտամբողական կերպով մը աչքերս անոր վրան տնկեցի. բայց շուտով հանդարտեցայ, երբոր մայրս նորէն զինքը գիրկն առաւ և զիս մօտը կանչեց որ խաղով մը կարօլինան զուարճացընեմ։ Յօժարութեամբ մօտեցայ իրեն, և սովորականին պէս զինքը փայփայելով, կամաց կամաց հանդարտեցաւ, և վերջապէս սկսաւ խնտալ և ուրախանալ։ Քիչ մը վերջը պարոն մը կը մտնայ, բարձրահասակ, երկու մեծ ընչացքներով, և բոլորովին սև հագած։ Ուզեց ինքն ալ կարօլինայի համբոյր մը տալ. բայց անիկայ վախցած՝ գլուխը մօրս ծոցին մէջ ծածկեց։ Պարոնը զինքը փայփայեց և խնտալով ըսաւ. կարօլինա, կը վախնա՞ս հօրմէդ։ Խաթունը ինծի շաքարներ և անուշեղէններ տուաւ, և յանձնեց որ միշտ աղէկ աչքով նայիմ կարօլինային։ Ինծի ըսաւ թէ ինքը անձամբ կու գայ զմեզ մեր տնակը գտնելու, և ան ատենը ինծի աղուոր ընծայ մը կը բերէ։ Սիրտս ան ազնիւ խաթունին կապուեցաւ, մանաւանդ զինքը սիրել մը կու գար ինծի, մտածելով որ ինքն է պզտի կարօլինայի մայրը։

Հազիւ ոտք ելանք որ երթանք, մէյ մ'ալ սենեակը վերէն 'ի վար զարդարուն հագուած երիտասարդ մը մտաւ։ Անիկայ մտաւ չմտաւ, գլխարկը սեղանին վրայ դրաւ, և աթոռի մը վրայ՝ ոտքերը իրարու վրայ ծալլած երկնցաւ։ Հազիւ խաթունը բարևեց, առանց ինծի և մօրս խօսք մը ըսելու։ Խաթունը զինքը տեսնելուն պէս, վրայ բերաւ. Պարոն կօմս, տես, ահիկայ իմ կարօլինաս է։ — Ո՛հ, կանչեց երազողի մը պէս, ա՜հ, կարօլինա՛ն, ո՞ւր է տեսնեմ։ Աս ըսելով կոպտութեամբ զինքը մօրս գրկէն խլեց։ Աղջիկը վախէն սկսաւ լալ ու կանչուըռտել. բայց անիկա փոխանակ զինքը մօրս դարձնելու կամ հանդարտեցնել ջանալու, սկսաւ կանչել. Է՛հ, քեզ տեսնեմ պզտիկս, լուռ կեցիր, մի՛ այդչափ կանչուըռտեր։ Ընդունայն տեղը մայրս ու խաթունը աղաչեցին որ թողու զինքը, որպէս զի այդպէս սաստիկ չվախցնէ։ Սակայն այն բիրտը յամառելով բնաւ չուզեց զինքը թողուլ, և ցնցելով ու խաղցնելով սկսաւ սենեկին մէջ վեր վար պտըտիլ։ Խեղճ կարօլինան ա՛լ աւելի կը ճչար, և թաթիկները դէպ 'ի մօրս կ'երկնցընէր, կարծես թէ աղաչելով որ զինքը ազատէ այդ տանջանքէն։ Բայց ամէն բան անօգուտ. կ'ըսէր թէ պէտք է տղաքը վարժեցնել որ մէկէ մը վախ չունենան։ Թող տան որ լայ, վասն

գի չուտ կամ ուշ հարկաւ կը հանդարտի։ Բարկութենէս կրակ կտրեր էի, տեսնելով անմեղ տղուն այնպէս չարչարուիլը. արիւնը երակացս մէջ կ'եռար, և կենացս մէջ այն առաջին անգամն էր որ բարկութիւնս շարժեցաւ։ Տեսնելով որ ասիկայ չուզեր մօրս և խաթունին աղաչանացը զիջանիլ, սաստկութեամբ և կատաղութեամբ վրան կը յարձըկիմ. ուժով մը զգեստին ծայրերը կը բռնեմ, և զինքը աթոռի մը վրայ կը ձգեմ. մէկէն կը խլեմ խեղճ Կարոլինան՝ լալագին և սարսափած, և մօրս կը տանիմ։ Անպիտանը կրակի պէս կարմրցաւ. նստած տեղէն ելաւ, վրաս վազեց և երկու ուժով ապտակ ինձեցուց, կատաղութեամբ պոռալով. Քեզի պէս սրիկայ։ Վերջը գլխարկն առաւ և շտապաւ գնաց։ Ես տեղանին վրայէն չեմ գիտեր ինչ առի, և սաստիկ զայրացած՝ ուզեցի ետևէն վազել. բայց մայրս զիս բռնեց և ստիպեց որ քովը կենամ։

Այն վայրկենէն սրտիս մէջ անոր դէմ անհաշտ ատելութիւն մը մնաց։ Թէպէտ դեռ տասը տարեկան չկայի, բայց այնու հանդերձ կիրքը մատաղ սրտիս մէջ խոր արմատներ ձգեց. այն միջոցին զգացի բովանդակ այն բորբոքմունքն զոր վրէժխնդրութեան փափաքը կը զարթուցանէ. և նորա՝ իմ հասակէս վեր զօրութեամբ երդուընցայ վրէժ խնդրելու, և շուտով և լիովին վրէժ խնդրելու։ Մայրս իմացաւ իմ այլայլութիւնս. ջանաց զիս համոզցընել որ այդ կերպով գործելս դէշ ըրի. նաև սաստիկ ալ յանդիմանեց զիս, ըսելով որ այն ապտակներուն և աւելիին ալ արժանի էի։ Այս խօսքերս փոխանակ զիս հանդարտելու, աւելի բարկութիւնս ու կատաղութիւնս վառեցին, և մըտքէս յեղյեղելով. ինծի ապտակ մը, ինծի. քթիս տակէն ըսի. Պիտի հատուցանես զայն։

Տուն դարձանք. բոլոր գիշերը և հետևեալ օրը Կարոլինա տագնապեալ ու անհանգիստ անցուց. երեկոյեան դէմ՝ վրան անանկ այլայլութիւն մը եկաւ որ մայրս վախի մէջ ձգեց. և երբոր շաղէկցաւ, հապա աւելի ալ դէշցաւ, մօրը իմաց տուի։ Խեղճ խաթունը եկաւ զինքը տեսնելու, և օր մը առաջ տեսածէն շատ տարբեր գտաւ. շուտից զինքը թողուլ. նստաւ օրօրոցին մօտ և դեղին բժիշկը կանչել տուաւ, որ մանրամասն զննելէ ետև մօրս և խաթունին հետ քանի մը բան խօսեցաւ որ ես չկրցայ հասկընալ. տեսայ միայն որ անկէ ետև երկուքն ալ սկսան սաստիկ արցունք թափել։ Ի՞նչ պիտի ըլլայ. կ'ըսէի ինքնիրենս. արդեօք պիտի մեռնի Կարոլինա։ Այս մահուան տխուր մտածութիւնը, որ շատ անգամ ինծի տագնապ և յուզումն պատճառեր էր, սրտիս խորը թափանցեց։ Այս մտածութեան վրայ, միտքս եկաւ քիչ առաջ դըեկին մէջ հանդիպած տեսարանը, և կարծես թէ ներքին ձայն մը կըսէր ինծի. Եթէ մեռնի Կարոլինա, զինքը սպաննողը՝ քեզի այն ապտակները տուողն է։ Արիւնս մաղձիս հետ խառնուեցաւ. վրէժխնդրութեան մահաբեր մտածութիւնը աւելի սոսկալի և բուռն կերպով մը նորոգուեցաւ. այլ չկրցայ դէմ դնել, և երդուընցայ վրէժս խնդրելու։ Իմ վրէժս հանելով, կ'ըսէի ես ինծի, խեղճ Կարոլինայի ալ վրէժը հանած կըլլամ, որ իրեն պատճառաւը պիտի մեռնի. ուստի ինչ ըլլայ չըլլայ, պէտք է անկից վրէժ խնդրել։

Մէկ դժնդակ յարմարութիւն մը քիչ ատենէն այս իմ դժպհի խորհուրդս 'ի գործ դնելու առիթն հանդիպեցուց ինծի։

Կը շարունակուի:

---

### Մեռելաքաղ 'ի Քոյիւնյիւ։

Երբ Աննամցի մը կը մեռնի, իմաց կու տան իր ազգականացն ու բարեկամացը, որոնք մեռելոյն տունը կու գան, ուր սենակի մը մէջ սնտուկ կը ձըգեն, որով յուղարկաւորութեան ծախ-

քը կ՚ըլլուի։ Այս բանս նաև նշան մըն է թէ որչափ ատելի կամ նուաղ ցաւ պատճառեր է վախճանեալը։

Սուգը երկայն և խիստ է. մէկն որ հայրը կամ մայրը կորսընցուցեր է, չկրնար հրապարակական պաշտօն մը վարել մինչև երեք տարի։ Սուգի հագուստն ալ սպիտակ է։

Քանի որ Գաղղիացիք Սայկոնի կը տիրեն՝ պոնցերն ու առաջուոր ընտանիքները ձգեցին ելան, անոր համար հիմայ ուրիշ անգամներու նման մեծ յուղարկաւորութիւններ չեն տեսնուիր։ Ներսի կողմերն, օր մը բաղդ ունեցայ, կ՚ըսէ ճանապարհորդ մը, ներկայ գըտնուելու թաղման հանդիսի մը։ Երբ գետակի մը եզերքը կը շրջագայէի, ողբոց ու լալու աղաղակ մը լսեցի, այնպէս որ ամենէն պինդ սրտերն ալ կը շարժէին. դէպ 'ի այն տունը ուղղեցի քայլերս ուստի այս աղաղակները կու գային։ Ի՛նչ տեսնեմ, ընտանեաց գլուխը առջի գիշերը մեռեր էր և մարմինը դագաղի մը մէջ փակուած նախնեացն ուրիններու նուիրուած խորանին առջև դրեր էին. ամէն տուն իր խորանն ունի, ուր անուշ հոտեր կը ծխեն։ Այրին երեսը ծածկած ու սպիտակներ հագուած բերան 'ի վար գետին ընկած խոր հառաչանքներ կ՚արձակէր։ Ուրիշ կին մըն ալ նոյնպէս երեսը ծածկած և սպիտակներ հագուած վախճանելոյն կենաց գլխաւոր պարագաները կը պատմէր։ Ննջեցելոյն ազգականները և տեղւոյն մեծամեծները ամէնքն ալ սպիտակ պատմուճան հագուած, կերակուրներով զարդարուն սեղանի մը չորսդին գետին նստեր էին. ամէնքն ալ կ՚ուտէին կը խմէին 'ի պատիւ ննջեցելոյն, որ ըստ պուտտական հաւատոց կը թողուր այս աշխարհս և կը սկսէր գերագոյն կեանք մը, որով աստիճան մը կը մերձենար վերին երանութեան։ Պոնց մը Պուտտայի քուրմերուն այլանդակ զարդերը հագուած՝ մեռելոց պաշտամունք կը կատարէր, հետն ալ Աննամցի երկու մանկահասակ տիրացուներ։ Մերթ ընդ մերթ պոնցը նշան կու տար և խումբ մը երաժիշտ անհամաձայն եղանակներ կը լսեցունէին, որոնց նմանը մարդուս ականջը երբէք այնպէս խայթած չէն։ Իմ հոն գալստեանս զարմանքը քիչ մը պղտորեց այն հանդէսը։ Ծեր մը ոտք ելաւ ինծի եկաւ, գիս հրաւիրեց սեղան նստելու, և ինծի պտուղ, թէյ և բրինձի օղի հրամցուց։ Ես ալ կերայ ու խըմեցի 'ի յիշատակ մեռելոյն հոգւոյն 'ի մեծ հաճութիւն ժողովականաց։ Այն պտուղները որ թողուցի՝ պոնցին սըրբուեցան, ինքն ալ նուիրեց զանոնք պաշտպան ոգւոց և յետոյ խորանին վրայ միւս ընծայից մէջ դրաւ։

Տան հանդէսը լմըննալով, մարմինը վերուցին խլացուցիչ բարձրաձայն աղաղակներով. և այս աղաղակաց նպատակն էր վախցունել և վռընտել չար ոգիները, որ տանը բոլորտիքը կը թափառէին։ Դագաղը մեծ ճաղի մը մէջ դրին որ վիշապներու, օձերու և թռչնոց պատկերներով զարդարուած էր, և երեսուն ու երկու մեռելակիրք վերուցին զայն և երկայն ձողերով ուսերնուն վըրայ զետեղելէն ետքը, հանդէսով ճամբայ ելան տանելու ննջեցելոյն մարմինը, ուր որ ինքը անձամբ ընտրած էր իբր իւր վերջին բնակարան։ Ճամբան երաժշտութիւնն ու աղաղակները վայրկեան մըն ալ չդադրեցան. մանաւանդ երբ ուղեկիցք կը կենային մեռելակիրներուն հանգիստ տալու համար, այն ատեն աղաղակներն ալ աւելի կը բարձրանային։ Երբեմն ալ բազմաթիւ հրալից փամփուշտներ կը պայթեցունէին։ Պոնցը ճամբուն մէջ թղթէ ժապաւէններ կը ցրուէր, որոնց վրայ յուղարկաւորութեան պատշաճ դրուածներ կային։ Աննամցիք այնպէս կը հաւատան թէ չար ոգիները կը կենան ճամբուն վրայ կարդալու այն գրութիւնները, որով շատ մը ժամանակ կը կորսընցընեն, մինչ իրենք կը փութան մարմինը գերեզման իջեցնելու. քանի որ անոնք զբաղեր են իրենց կարդացմունքին, որպէս զի չըլլայ թէ մեռելոյն հոգւոյն հետ գերեզման մտնեն, ու

ցինքը տանջեն ։ Վասն զի Անհամեցիք կը կարծեն թէ հոգին գերեզմանին մէջ պիտի բնակի մարմնոյն հետ մինչև որոշեալ ժամանակ մը ։ Երբ գերեզմանը կը ծածկեն՝ այն ժամանակն երաժշտութիւնը և աղաղակները ձայներնին կը բարձրացունեն, որպէս զի արգելուն չար ոգիները որ գերեզման չմտնեն ։ Ետքէն գերեզմանին վրայ բրինձ ու պըտուղներ կը դնեն և կը ձգեն կ'երթան ։ Ատեն անցնելէն վերջը շիրիմ մը կը կանգնեն այն գերեզմանին վրայ, որուն նոր նոր ընծաներ կը բերեն ։

Այս շիրիմներէն ոմանք շատ շքեղ են. Չինաց շիրիմները մահկաձև են. Անհամցիներունը կամ բարձր բուրգեր են, կամ պզտի գեղեցիկ բակոտներ և կամ պարզ գերեզմաններ, որոնք թամբաւոր պառկած ձիու մը տգեղ ձևն ունին ։ Այս փոքրիկ շէնքերը աղիւսէ և կամ պարզապէս հողէ շինուած են. վերջը մոխրագոյն թանձր շաղախով ծեփած, և այս շաղախը կը կազմեն Անհամք անտառներուն մէջ գտնուած ծառի մը ճիւղերը ջրոյ մէջ լուծելով, ետքը դիւրաւ այն շաղախը քար կը ձևացունեն և ուզած գոյներնին կուտան անոր, այնպէս որ դրսուանց մարդ կը խաբուի և միայն գերեզմաններուն աւերակներէն կ'իմացուի որ ուրիշ բան չէ բայց եթէ չորնալով պնդացած շաղախ ։ Այս շաղախս շատ օգտակար կերպով կը գործածուի տները յատակելու համար ։

Շատ մը ամենապարզ դամբանական շինուածներ ալ կը գտնուին, որոնք հողակոյտէ կը ձևանան, գլխատ բրգան ձևերով, որոնց վրայ մէկ կամ շատ գերեզմաններ պատրաստուած են, ընտանիքի մը մէկ կամ քանի մը անձանց համար ։ Մինչև տասը պզտի գերեզմաններ համրեցի այսպիսի ծայրատ բրգի մը վերին խարսխին վրայ ։

Գերեզմաններուն ատէպ այց կ'ելլեն, մանաւանդ տարեգլխոյն առաջին տօներուն օրերը մասնաւոր այցելութեան նիւթ կ'ըլլան ։ Տարւոյն այս օրերն է որ զանոնք կը մաքրեն և կը նորոգեն ։

Տարւոյն վերջի գիշերը իրենց նախահարցն հոգւոյն յիշատակին ճաշ մը կ'ընեն, և ինչպէս թաղման ճաշին, նոյնպէս ալ հոս կոկորդիլոսի պոչը յարգի կերակուրն է ։ Անոնց նուիրուած խորաններուն վրայ մոմեր կը վառեն, հոտաւէտ փայտեր և խունկ կը ծխեն. և վերջն ալ իրենց արարողութիւններէն սահմանուած ողջոյնքը կու տան անոնց ։ Ի պատիւ մեռելոց ոսկեզօծ, արծաթազօծ, գոյնզգոյն և գրութիւններով ծեփուած թղթեր կը վառեն ։

Նախնեաց հոգւոյն յիշատակին համար տրուած սեղանն օրն երկու անգամ է տարեգլխոյն առաջին երեք օրերը. երրորդ օրը փառաւոր վերջին հրաժարական սեղանը կը մատուցանեն անոնց, շատ մը հրացաններ կը պայթեցունեն, և հոգիները կը ճամբեն ։ Ի վերայ այսր ամենայնի աւելորդապաշտ ժողովուրդը իրեններուն հոգիները չորրորդ առաւօտը կը ճամբէ, երբեմն նաև հինգերորդ առաւօտը, վասն զի նոյն առաւօտը մանտարիններն ու մեծամեծները իրենցները կը ճամբեն, որպէս զի ասոնք իրենց նուիրուած բազմաթիւ ընծաները անոնց կրել չտան ։ Խեղճ ռամիկը, որ կենդանութեան ժամանակ ծանր գերութեան մը տակ կը հեծէ, կը կարծէ թէ գերեզմանէն ալ անդին նոյնպէս է ։ Այս ամէն պաշտամունքն 'ի պատիւ նախնեաց յիշատակին կը կատարուին, և այս գաղափարը իւր պարզութեանը մէջ սրտաշարժ բան մ'ունի ։

Անհամցւոյն գերեզմանը չէ թէ միայն նուիրական տեղ մըն է իւր մահկանացու մարմինը պահելու համար, այլ նաև իր ոգւոյն, իր անձին և վերջապէս իր հոգւոյն բնակարանն է, որ խնամակալ աստուածոց կարգն անցնելով, կը հոգայ իր ընտանիքը և կը պաշտպանէ զայն ։

Հին ժամանակներն ալ հեթանոսութեան ատեն մարդիկ ունէին իրենց առտնին խնամակալ աստուածները ։

---

# ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

(Տես երես 30։)

## Ա· ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

### Գ· Երկրաշարժ·

24 Ի՞նչ է երկրաշարժն կամ ժաժն։ — Այն քիչ կամ շատ ուժով ցնցմունքն որ գետինը կը շարժեն։

25 Ինչո՞ւ համար ժաժի ատեն տանը մէջ եղած բաներն կը տատանին և կը գլորին։ — Վասն զի երկրիս երեսն կը դողայ, և վրայի եղած բաներն ալ կը դողդըղան։

26 Ո՞ր բաներն են որ ամենէն առաջ կը դողդղան։ — Կախուած բաներն, ինչպէս զանգակք, ճօճանակք, և այլն։

27 Ի՞նչ է երկրաշարժին պատճառն։ — Երկրիս կենդրոնական կրակն. հրացեալ հեղուկն միշտ կարծրանալու կ'երթայ՝ վերէն եկած պաղութեան պատճառաւ. այս յեղափոխութեան ատեն՝ կազ կամ շոգիներ կ'արձըկէ, որք ծաւալելու ատեն եթէ բաւական համարձակ ելք չգտնեն հրաբըղխից նեղ վիհերուն մէջ կը սկսին դիզուիլ և կը ճնշուին. ինչուան որ իրենց առաձգութեամբը և անդադար տաքութեան ազդելէն ափռուելովը՝ գետնին արգելքներուն կը յաղթեն, և դուրս ելնելու համար՝ զանիկայ վեր կը հրեն. ինչպէս որ եռացեալ ջրէն ելած շոգին կը հրէ և կը մղէ ամանին խուփը։

28 Ո՞րչափ ատեն կը տեւէ ժաժն։ — Ընդհանրապէս քանի մը րոպէ. քիչ անգամ վայրկենի մը ութերորդ մասը կ'անցնի՛։

29 Ո՞րչափ վնաս կու տայ գետնաշարժն։ — Երբեմն միայն գետինը կը տատանի, կամ տան մէջ կախուած բաները կը շարժին. բայց երբեմն ալ սաստիկ ցնցմամբ՝ շէնքեր և ինչուան ամբողջ քաղաքներ կը կործանին։

30 Ժաժը խմանալէն վերջը տան մէջ մնալո՞ւ է։ — Չէ. ապահով ճամբան է բաց տեղ, դաշտերու մէջ երթալ, աւելի լաւ ծովու վրայ ելլել նաւակով, եթէ ծովը մօտ է։

31 Ինչո՞ւ համար ծովը ապահովագոյն է։ — Վասն զի ջրոց բնութիւնն է միշտ հարթ հաւասար մնալ, և ցամաքէն քիչ մը հեռանալով ցնցմունքը խիստ նուազ կ'ըզգան։

32 Մեծ ժաժեր նախընթաց նշաններ ունի՞ն։ — Շատ հեղ աղբիւրներն կը ցամքին. գետնի տակ բնակող կենդանիք զարհուրած կը փախչըտին, և ինչուան թռչունք օդուն մէջ խառնակ շրջաններով կը թռչըտին։

33 Ո՞ւր տեղուանք աւելի շատ կը հանդիպին ժաժք։ — Ուր որ հրաբըղխի երկիրներ կան։

34 Ժաժի հետ ի՞նչ երևոյթք կ'ըլլան։ — Գետնին պատառուածքներէն թանձր ծուխ մը կ'ելլէ, և օդը կ'ապականէ, որ և բուսոց շատ վնասակար է։

35 Սովորաբար ե՞րբ կը դադրին երկրի մը սասանութիւնք։ — Երբոր մօտերը հրաբուղխ մը կը բացուի։

36 Ինչո՞ւ համար այն ատեն կը դադրին սասանութիւնք։ — Վասն զի կազք ճամբայ մը կը գտնեն հրաբուղխին բաժակէն ելլելու և ալ չեն ստիպուիր երկրիս երեսէն ճամբայ բանալու։

37 Ի՞նչ են Ջերմուկք։ — Ջերմուկք կ'ըսուին գետնէն բղխած տաք ջրերն։

38 Ինչո՞ւ այնպէս տաք կը բղխեն։ — Վասն զի գետնին խորը ինջած ջուրերն՝ կրակ կտրած խաւերու հանդիպելով՝ կ'առնուն անոնց տաքութիւնը և այնպէս երկրիս երեսը կ'ելլեն։

39 Ինչո՞ւ ջերմուկք միշտ աղային կամ ծծմբային խառնուրդ կ'ունենան։ — Վասն զի երկրիս խորերը այն նիւթերն կան, եւ եռացեալ ջուրերն զանոնք կը հալեցընեն և կը ծծեն։

40 Ուրեմն ջերմուկք երկրիս կենդրոնէ՞ն կը բղխին։ — Չէ, այլ մէկալ ջրերու պէս իրենք ալ անձրևէն առաջ եկած են, բայց երկրիս տաք խաւերուն մէջէն անցնելով կ'առնուն ջերմութիւնը։

41 Եթէ 100 աստիճան (Կելսոսի կամ հարիւրամասն ջերմաչափի) տաքութեան՝ ջուրն 'ի շոգի կը դարձընէ, ինչո՞ւ երկրիս խորէն եկած ջուրը շոգիի պէս չգար դուրս։ — Վասն զի ջուրն մեծ ճնշում մը կը կրէ, և քանի որ վեր գայ՝ կը պաղի. ասով՝ թէպէտ իր աղբերական մէջ շատ տաք է, բայց ոչ նոյնպէս օդու հանդիպելուն։ (Սակայն եթէ իր բղխած տեղէն սկսեալ դիւր և անարգել ճամբայ մը գտնէ՝ այն ատեն շոգիախառն կ'ելլէ ջուրն)։

42 Ինչո՞ւ արդեսեան ջրհորոց ջուրն առաջի բերան պաղ կ'ելլէ, բաւական խորութեան հասնելէն վերջը կը սկսի երթալով աւելի տաքնալ։ — Քանի որ ջուրն քիչ խորութեան մէջ է՝ ոչ երկրիս վրայի օդուն տաքութիւնը կրնայ առնուլ և ոչ երկրիս կենդրոնին, անոր համար պաղ

կ'ըլլայ. և թէպէտ մինչև նոյն աստիճան ջերմութեանն ունի՝ բայց ամառը աւելի պաղ կ'երևայ, ձմեռն աւելի տաք: 40 մեդր խորը անցնելէն վերջը՝ կը սկսի տաքութիւնը և երթալով կ'աւելնայ. (ամէն 30 մեդրի՝ մէկ աստիճան մը, ինչուան 6–700 մեդր խորութեան, անկէ ետև աւելի կը սաստկանայ տաքութիւնն:)

## Դ. Վերամբարձմունք.

43 Ի՞նչ կ'ըլլան այն ջուրերն որ կը ցընդին 'ի գետոց, 'ի լճաց և 'ի ծովուց: — Շոգի դառնալով մթնոլորտին վերին կողմերը կ'ելլեն, ամպ կը ձևանան, և հովերէն մղուած՝ խառնուելով նորէն հեղուկ կը դառնան և կը թափին 'ի գետին:

44 Ինչո՞ւ երբեմն լճեր կը ցամքին: — Վասն զի երբեմն գետնաշարժ մը վհեր և յորձանքներ կը բանայ, ուսկից ջուրն վար իջնելով՝ լճին յատակը ցամաք կը թողու. կամ ջրոց շոգիանալով ցնդումը սաստիկ կ'ըլլայ. կամ լճին յատակն բարձրանալով ջուրերն ուրիշ կողմ կը ծաւալին:

45 Գետնաշարժով ինչպէս կը ցամքի լիճ մը: — Երկրիս խորերը և մանաւանդ լերանց քով մեծամեծ այրեր կամ խոռոչներ կը գտնուին, որք պատճառաւ մը բացուելով՝ կ'ընդունին ջուրերը:

46 Ինչէ՞ն կը ձևանան այս ստորերկրեայ այրք կամ դատարկ տեղիք: — Երկրիս կենդրոնէն ելած կազերուն յուզմամբը: (Երկրիս հալած ծոցէն ելած կազք սաստիկ առաձգութիւն ունին, և կ'ուզեն ճամբայ մը. բայց կամաց կամաց տաքութիւննին նուազելով իրենք ալ տեղ մը կը դադրին և կը խառնան. խառնուելով 'ի հարկէ կ'ամփոփուին, և առջի բռնած տեղերնուն մէկ մասը պարապ կը մնայ. ահա ասկէ են ստորերկրեայ վիհք:)

47 Շոգիացումն կամ ցնդումն ինչպէս կրնայ ցամքեցընել լիճ մը: — Երկայն տարիներու մինչև քիչ քիչ ջուրն շոգիացեալ կը պակսի. լճէն ելլելով՝ ուրիշ տեղ մը կ'իյնայ խտացեալ և հովերէն մղուած.

48 Ծովն ալ կրնա՞յ շոգիացմամբ ցամքիլ: — Ոչ. վասն զի ծովք իրարու հետ հաղորդութիւն ունին. իսկ ծովակք և լիճք գետեր ընդունելով՝ շոգիացմամբ կորսուածին տեղը կը լեցընեն:

49 Ուրեմն ծովուն մակերևոյթն երթալով չի՞ ցածնար: — Ոչ:

50 Հապա ինչէ՞ն է որ շատ երկիրներ ատենօք ծովուն եզերքն էին՝ հիմա անկէ հեռացեր են: — Ասոր պատճառն երկրին վերամբարձումն է, որով ինքն հեռացեր է ծովէն:

51 Ի՞նչ է վերամբարձումն երկրի: — Երկրիս կենդրոնական ուժ մ'է որով ներսին մէկ կողմը կը սկսի ուռիլ բարձրանալ:

52 Ի՞նչ է ասոր պատճառն: — Երկրիս կենդրոնը եղած հալական նիւթին շարունակ պաղումն, որ թանձրանալով աւելի տեղ կը բռնէ, և անդադար կը մղէ մնացեալ հեղուկ զանգուածը և իր արտաքին պատերը. որով կը ստիպէ զասոնք իրեն տեղ տալ՝ կամաց կամաց վեր ամբառնալով:

53 Արդեօք մեծամեծ վերամբարձմունք կազերուն ծաւալական զօրութեամբը եղած չե՞ն: — Ոչ. վասն զի կազք շատ ընդարձակ կէտերու վրայ չեն կրնար ազդել, միայն ժաժ ու հրաբուղխ կը պատճառեն. իսկ վերամբարձմունք անդադար և շարունակաբար և շատ ընդարձակ սահմանաց մէջ կ'ըլլան:

54 Ինչո՞ւ երբեմն ցամաք եղած երկիրներ հիմա ջրով ծածկուած են: — Անոր համար որ երկրիս երեսն տեղ մը վեր բարձրանալով՝ ուրիշ տեղ մ'ալ կը ցածնայ. և որովհետև ջուրք հարթայատակ տեղեր կը կենան՝ ուր որ ճնշած և ցած ըլլայ՝ հոն կը վազեն և կը ծածկեն:

Կը շարունակուի:

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ



# ԲԱԶՄԱՎԷՊ

ՌՅԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՄԱՐՏ

## *Մարկոս Աւրելիոս Հռոմայ ինքնակալին առ Ցետալոս իր բարեկամը գրած թուղթը ։*

*Մարկոս Աւրելիոս ինքնակալ Հռոմայ, իշխանակից Աննիոսի Վերոսի եղբօր իւրոյ, Ցետալոսի իւր մտերիմ բարեկամին ողջոյն և բարեբախտութիւն ։*

*Այն օրուընէ 'ի վեր որ դուն նաւ մտար Ոստիայի նաւահանգստէն, ինչուան աս օրս թուղթ մը չէի առած քեզմէ, և ոչ տունէդ մէկը տեսած էի. և որ մեծն է, մէկը չէր գիտեր որ ողջ ես թէ մեռած. ուստի բարեկամներդ կը կասկածէին որ մրրիկէն նաւաբեկութիւն քաշած ըլլաս, կամ թէ գացած երկրէդ չախորժելով՝ ետ դարձած ըլլաս. վասն զի նաւաբեկութեան հանդիպողները՝ խղդուելէն ալ որ ազատին, չեն կրնար օտար երկիր կենալ ։ Բայց երբոր տեսայ զՓրոնտոն քու ձեռասունդ, շատ ուրախացայ՝ լսելով քու կենդանութիւնդ ։ Ուրախութիւնս աւելի մեծ եղաւ՝ իմանալով որ ինչպէս անվտանգ ըրեր ես աս վտանգաւոր ճամբորդութիւնը, ու քու թղթէդ ալ ստուգեցի՝ գացած տեղէդ ինչպէս գոհ ըլլալդ. վասն զի ինծի նոր բան մը կ'երեւայ՝ Հռոմայու փափկութեանց վարժած մարդու մը դուրս տեղ գոհ ըլլալը ։ Երբոր Հռոմ՝ Հռոմ էր, ու Իտալիա կը կոչուէր Մեծ Յունաստան, ամեն ազգ հոն կը դիմէր. ոմանք առաքինութիւն ու քաղաքական կեանք սորվելու, ոմանք մոլութեանց ու զուարճութեանց ետեւէ ըլլալու. վասն զի թէ որ Տիտոս Լիւիոսին ըսածը իրաւ է, Հռոմ բոլոր իր գանձը Ասիայի տուաւ, իսկ Ասիա բոլոր իր մոլութիւններն ու հեշտութիւնները Հռոմայ ։*

Այնչափ բան կը գրես ինծի թղթիդ մէջ, ու փրոնտոն ալ այնչափ նոր բաներ կը պատմէ տյդ տեղւոյդ վրայ, որ չեմ գիտեր ինչ գրեմ քեզի, ու ինչ պատասխանեմ իրեն. վասն զի գրսի լուրերը որչափ որ ախորժելի են լսելեաց, այնչափ ալ դժուարահաւատալի։ Ազնուական մարդիկ՝ որ կ'ուզեն արժանահաւատ ըլլալ ուրիշներուն, թէ և ականատես եղած ըլլան զարմանալի բաներու, պէտք է խօսքերնին չափաւորեն անոնք պատմելու ատեն. վասն զի իր պատիւը գիտցող մարդը խօսք մը չհաներ բերնէն՝ որ ճշմարիտ չըլլալու կասկած տայ։ Ամեն գրածներուդ կ'ուզեմ կարճ կարճ պատասխանը տալ. քեզի ախորժելի պիտոր չըլլայ, բայց ես իմ միտածածս կը գրեմ. ուստի սկսելէս առաջ կը խնդրեմ որ ներես, գրիչս խիստ համարձակելու որ ըլլայ. վասն զի տարիքդ քիչ ըլլալով՝ քեզի չթողուր որ աշխարհք ինչ ըլլալը ճանչնաս. իսկ իմ մազերս ճերմըկցած ըլլալով, ինծի իշխանութիւն կու տան՝ քեզի խրատ, ու աշխարհքիս դէմ վճիռ տալու։

Կը գրես որ մեծ վտանգ անցուցեր ես ծովու վրայ, ու նաւդ թեթեւցընելու համար՝ ունեցածիդ մեծ մասը ծովը թափեր ես։ Ինծի կ'երևայ որ պէտք է շնորհակալ ըլլաս ծովուն կատաղութեանը, որ կրնալով կեանքդ առնել՝ գոհ եղեր է ունեցածդ միայն առնելու. վասն զի ծովով ճամբայ ընողները քանի որ ապահով տեղ մը չեն հասած, աչուընին ունեցածնուն վրայ պիտոր չըլլայ՝ այլ իրենց կենացը։ Կը գրես որ ծովուն վրայ շատ օտար ազգեր տեսեր ես, ու կարծածէդ ու ուզածէդ աւելի ուշացեր ես ճամբան։ Աստր պատասխան, ձիլ իմն ցնտալէ, կ'ըսեմ որ ուշանալէդ աւելի եղած պիտոր ըլլայ քու քաշած նեղութիւնդ. վասն զի երկայն նաւարկութիւն ընողը՝ կարելի չէ որ թշնամանք չկրէ նաւաստիներէն, ու չվախնայ մրրիկներէն։ Կը գրես որ շատեր կան եղեր հետդ։ Ուրեմն սալկիդ ծանրութիւնը քիչցեր է. վասն զի կանոն է որ՝ որչափ ատենը երկայն ու ընկերութիւնը բազմաթիւ է, քաղաքը աւելի կը պարպուի։ Կ'ըսես որ նաւուն մէջը առած խոնաւութեանդ համար՝ ցամաք ինջածիդ պէս յօդուածացաւդ բռներ է։ Կամ ոտքիդ վրայ է ցաւդ, կամ ձեռքիդ. թէ որ ոտքիդ վրայ է, տունը կը կենաս, ուրիշը չիշխեր քու տեղդ հրամմելու. թէ որ ձեռքիդ վրայ է, նարտ չես խաղար ըստ սովորութեանդ, ոչ քու ստակդ կը կորսընցընես, և ոչ ուրիշի կորսընցընել կու տաս։ Կ'ըսես որ այդ տեղը շատ անուանի բժիշկներ գտեր ես զքեզ բուժելու, գիտուն ու փորձ բժիշկներ։ Ասոր ալ Պղատոնին խօսքը կ'ըսեմ. Ուր որ շատ բժիշկ կայ՝ հարկ է որ շատ հիւանդութիւններ ու հիւանդներ ալ ըլլան. վասն զի մարդս աւելորդ փափկութիւններով կը հիւընդնայ, ու չափաւոր աշխատանօք առողջ կը մնայ։ Մեր առջինները չորս հարիւր տարի Հռոմայ մէջ քիչ կ'ուտէին, քիչ ալ կը խմէին. վասն զի ինչպէս որ առողջութիւնը ժուժկալութեան ետեւէն կ'երթայ, ասանկ ալ բժշկութիւնը որկրամոլութեան ետեւէն։ Կ'ըսես որ առատ երկրի մը մէջ ես, մանաւանդ ամեն բանէ աւելի փայտի առատութեան, որն որ Հռոմ կը պակսի։

Աս խօսքիդ ալ կը պատասխանեմ որ եթէ փայտերնիդ շատ է, հացերնիդ քիչ պիտոր ըլլայ. վասն զի հին առած է որ՝ Կրակ շատ եղած տեղը ցորենները քիչ կ'ըլլան։ Թէ որ գոհ ես կեցած տեղէդ՝ փայտը առատ ըլլալուն համար, գիտցիր որ ես աւելի սիրով կը կենամ Իտալիա, ուր որ հացը շատ է. վասն զի ինչ օգուտ է փայտին շատութիւնը փուռ վառելու համար, երբոր ցորեն չըլլայ ջաղացքը երկելու։ Իրաւ՝ աղէկ բան է փայտ ունենալը ձմեռուան համար, բայց աւելի լաւ է ձմեռուան ու ամառուան համար ցորեն ունենալ. վասն զի ծերերուն տաքնալու համար փայտը պակսելով՝ սով չըլլար, բայց տղոց հացը պակսելով՝ կ'ըլլայ։ Կ'ըսես որ աս երկիրը շատ ջուր կայ պաղ, ականակիտ ու այնչափ ա-

ուտա՝ որ տանդ մէջ ալ աղբիւր ունիս։ Ամեն բնարանները կ'ըսեն՝ որ ուր որ շատ ջուր կայ, առողջութիւնը պակաս կ'ըլլայ. ու զարմանք չէ, վասն զի զով տեղուանք՝ մարդիկ վատառողջ կ'ըլլան։ Ոսկեղէն դարուն ատենն որ ըլլային՝ երբոր մարդիկ գինւոյն ինչ ըլլալը չէին գիտեր, ու ամենքը ջուր կը խմէին, ատ տեղը հոս տեղէն անհամեմատ լաւ կ'ըլլար. վասն զի որչափ որ անարգ բան է գինովնալը, այնչափ օգտակար ու գովելի է ջուր խմելը։ Բայց գիտես որ իմ պարտիզիս մէջ եղած աղբիւրը պատճառ եղաւ ամառուան մը մէջ տնէս եօթը հոգի մեռնելու. ու թէ որ ճամբայ մը բացած չըլլայի լճացած ջուրերը դուրս վազցընելու, ամենքս ալ ընտանեօք կը մեռնէինք։ Ուստի նայէ որ առողջութիւնդ պահես, քան թէ ատ տեղի զովութիւնը վայելես. վասն զի բախտաւոր անիկայ է, որուն մարմինը առողջ, ու սիրտն ալ հանդարտ է։ Գովէ երկիրդ որչափ որ կ'ուզես, վայելէ ուզածիդ չափ անոր զովութիւնը, կուշտ մը խմէ ատ տեղի ջրէն, բարեկամներուդ ալ գրէ ինչպէս օգտակար ըլլալը մարմնոյ ծակոտիքը բանալու. բայց գիտցիր աղէկ որ Հռոմայէն շատ աւելի աժան կ'ելլէ Կրետէի գինի գնելու, քան թէ քու կեցած կղզիէդ տակառներով ջուր կրելու։

Կը գրես որ հոս տեղը պտուղը խիստ առատ է, ուտելով չես կշտանար։ Պտուղը ես ալ կ'ախորժիմ, բայց աւելի գոհ կ'ըլլամ տեսնելով զանոնք քան թէ ուտելով. վասն զի ամառը շատ օգտակար բան մը չեն։ Ոկտաւիոս բարեյիշատակ բժշկապետը տեսնելով որ ամառը Հռովմայ օդը վատառողջ է, հրամանց ծանր պատիժ սպառնալով՝ որ Սալոնէն պտուղ չբերեն. ու զարմանք բան, հիւանդութիւն չմնաց Հռոմ, բժիշկները ինքիրեննուն ելան գացին անկէց. վասն զի ուր որ բժիշկը չհարստանար, յայտնի է որ ժողովուրդը հոն առողջ է։ Կը գրես ալ որ հոս տեղը խեղկատակներ ծաղրածուներ շատ կան, ծիծաղելու խաղեր կ'ընեն։ Անոնց խաղերէն այնչափ պէտք է խորշիս, որչափ խարդախ ու խաբեբայ մարդկանցմէ. վասն զի ատոնք ալ անոնց պէս ստակդ կ'ուտեն։ Կը գրես որ հոս տեղը շատ այգիներ կան ու ծաղկահոտ գինիներ կը բերեն։ Գինւոյ առատութիւնը գինովները կը շատցընէ. գիտես որ քրոջս աղջիկը Տոգլինան հօրեղբօրս Գեստուլիոսին հարս ըրած օրերնիս, թէ և մէկ այգի մը միայն ունէր ՚ի Սալոն, բայց այնչափ գինի հանեց անկէ՝ որ բոլոր ընտանիքը ու հարսնիքը եկողները գինովցան։ Լսելով կ'ըսեմ որ հին ատենը պատերազմի աստուածը Արէս ամենէն պատուաւոր աստուածն էր ՚ի Հռոմ, իսկ հիմայ գինւոյ աստուածը Բաքոս՝ ամեն աստուածներէն աւելի պատիւ կ'ընդունի. վասն զի հիմայ գինետուններու մէջ խաղի ու խմելու կ'անցընեն Հռոմայեցիք ան ատենը՝ որ հիները արիական դաշտին մէջ զէնքով խաղալու կ'անցընէին։ Տիտոս Լիւիոս իր պատմութեանը մէջ կ'ըսէ որ Ալպեան լեռանց անդին Գաղղիացիք երբոր լսեցին Իտալիա այգիներ տնկուիլը, վազեցին եկան առնելու անիկայ. անանկ որ՝ այգիները տնկուած որ չըլլային, Գաղղիացիք չէին գար ան գեղեցիկ երկիրը աւերելու։ Հին Հռոմայեցիք՝ որ խելքով ամեն չարեաց դիմացը կ'առնէին, երբոր իմացան գինւոյ համար Իտալիոյ առնուիլը, հրամայեցին որ Հռովմայ ինքնակալութեանը մէջ որչափ որ այգի կար՝ բոլորն ալ խլեն հանեն. ու զարմանալի բան, պատերազմէն ետքը դաղղիացի մը չմնաց Իտալիա, գիտնալով որ այգիները վերցուեր էին։

Կը գրես որ հոս տեղը շատ ազնիւ պատանիներ կան ու պատուաւոր ազատորդիներ, որոնց հետ կը կենցաղավարիս ու ատենդ զուարճութեամբ կ'անցընես։ Թէ որ անանկ է, շատ պարապորդ մարդիկ կան հոս տեղը. վասն զի ծեր զինուորներուն, որոնց կեանքը պատերազմի մէջ մաշեր է, անոնց միայն ատեններին է հանգչելու, ու ժամանակնին խօսակցութեամբ անցընե-

լու ։ Կը գրես ալ որ Հռոմ տեղը շատ գեղեցիկ կնիկտիք կան, մարմիններին աղուոր, ու կերպերնին սիրելի ։ Շատ գեղեցիկ կնիկներ եղած տեղը, պէտք է որ շատ տժգոհ ամուսիններ ալ ըլլան. վասն զի կնիկ մը գեղեցկութեան հետ խոհեմութիւն ալ որ չունենայ, զինքը վտանգի մէջ կը դնէ, էրիկն ալ մրտմըտուքի ։ Կը գրես որ Հռոմ տեղը վհուկ կնիկներ ալ կան՝ որ տղաքը կ'առողջացընեն ։ Երանի թէ տղաքը չառողջանային, ու աս կնիկներն ալ չըլլային. վասն զի ըրած օգուտնին բան մը չէ ըրած վնասնուն առջին ։ Տորկուատոս Լայերտիոս մօրեղբայրս դստրիկ մը ունէր փափուկ ու սիրուն, մէկ հատիկ ժառանգ իր ստացուածոցը. օր մը մանկիկը լալէն դադրեցընելու համար՝ ծիծմայրը դիւթեր էր զինքը, ու անանկ քնացուցեր՝ որ ալ չարթընցաւ մեռաւ. անմեղ մանկանը արցունքը դադրեցաւ, բայց ցաւագին մօրը արցունքը սկսաւ ։ Կալիգուլա, որ բարուց Գերմանոսին որդին էր, Հռոմայ չորրորդ ինքնակալը ու առաջին բռնաւորը, սովորութիւն ըլլալով 'ի Հռոմ ջերմը անցընելու ու տղաքը բուժեցընելու համար կախարդական դիրեր տալ, հրովարտակ հանեց որ էրիկ կամ կնիկ մարդ ասանկ բան մը որ ընէ սպաննուի. իսկ ով որ գնէ կամ Հռոմ խօթէ, ծեծ ուտելէն ետքը աքսորուի ալ Հռոմ քաղքէն ։ Փրոնտոն քու ձեռասունդ պատմեց որ սիրուն ու աղուոր զաւակ մը ունեցեր ես, ատոր վըրայ կ'ուրախանամ. բայց սամեցի ծիծմայր մը բռներ ես զաւկիդ, որ անուանի վհուկ մըն է եղեր ։ Անմահ դից համար ըլլայ, Տեռտալէ, կ'աղաչեմ զքեզ այն սիրոյն համար որ ունիմ վրադ, հանէ ատ կնիկը տնէդ, մի թողուր որ ատ անզգամ կնիկը օր մը տանդ մէջ հաց ուտէ. վասն զի դիւթութեամբ սնած զաւակ մը կամ քիչ կ'ապրի, կամ դըժբախտ կ'ըլլայ ։ Հռոմայեցիներէն ոմանց վրայ շատ կը զարմանամ որ կը թողուն, մանաւանդ թէ կ'ուզեն որ զաւկընին դիւթութեամբ բժշկուի. վասն զի ես չեմ տարակուսիր որ աստուածներուն կամքը հիւընդցած մարդը՝ դիւթութեամբ չկրնար բուժտնալ ։ Կամ՝ անկէ կազմուածք ունենալնէն է տղոց հիւանդութիւնը, և կամ աստուածներուն ուզելէն որ չապրին. թէ որ իրենց անկէ կազմուածքէն է, պէտք է որ հայրերնին բժիշկ կանչէ՝ որ բնական դեղերով բուժտցընեն. իսկ թէ որ աստուածներուն անանկ ուզելէն է, պէտք է որ հայրերնին զոհերով հաշտեցընէ իրեն հետ աստուածները. թէ չէ, դեղերով բուժտնալու բան չէ անոնց հիւանդութիւնը ։ Աս բանիս վրայ երկան խօսելուս չզարմանաս, վասն զի կ'ուզեմ հասկցընել զքեզ՝ որ զաւկըներդ պահես վըհուկներէն. աղէկ կաթը այնչափ չօգտեր տղու մը, որչափ որ դիւթութիւնը կը վնասէ իրեն ։

Աստնք գրեցի քեզի, նախ՝ 'ի սիրոյ շարժեալ, որ ունիմ վրադ. և երկրորդ՝ յիշելով որ ինչպէս ծերակուտին խորհրդարանը շատ անգամ կ'ըսէիր ինծի խիստ փափաքելդ որ զաւակ մը ունենաս ։ Հիմայ որ այնչափ քու փափաքանօքդ ու Փետուսա կնկանդ արցունքովը ունեցար ատ զաւակը, չեմ ուզեր որ դիւթութիւններով աստուածները սըրդողցընես, ու զաւկընիդ կորսընցընես ։ Փառուոյս վրայ կ'երդնում՝ որ երբոր հայրերը աստուածոց հետ աղէկ ըլլան, զաւկընին վհուկներու կարօտ չեն ։ Շատ բաներ ունէի քեզի գրելու, որոնց մէկ քանին քու ձեռասուն Փրոնտոնին յանձնեցի որ ըսէ քեզի, անոր համար չեմ գրեր թղթիս մէջը ։ Չզարմանաս ատոր վրայ, վասն զի թուղթ ըսածդ անանկ վտանգաւոր բան է՝ որ խոհեմ մարդը ինչ որ Հռոմայ հրապարակին մէջ կրնայ զրուցել, անկէց աւելին չըգրեր թղթի մէջ, որչափ ալ ամրափակ կնքած ըլլայ ։ Ներէ ինծի, Տեռտալէ, որ ուզածիդ պէս չեմ գրեր. վասն զի շատ բան պէտք էր քեզի որ գիտնայիր, բայց ես չեմ վստահիր թղթի վրայ դընելու ։

Ինծի համար ինչ գրեմ, չեմ գիտեր. ոտնացաւս մինչև կը տանջէ զիս. ու դէմը ան է որ որչափ տարիքս առնեմ

այնչափ առողջութիւնս կը քիչնայ. Հին անէծք մըն է մարդուս վրայ՝ որ մենք զմեզ աւելի ապահով կարծած ատեննիս, աւելի ծանր նեղութիւն կ'ունենանք։ Թուղթակն որ ինծի խրկեր էիր, փաւստինեաս յափշտակեց իրեն առաւ. ինչպէս ալ աղէկ կը խօսի։ Կնիկները զմարդը կը լսեցընեն, անտառններուն խօսիլ կու տան։ Թէ՛ վրադ ունեցած սիրոյս, թէ՛ քեզի ունեցած պարտըկանութեանս, և թէ՛ իմ սովորութեանս նայելով, քեզի խրկածս քիչ է, վասն զի երկու ձի միայն կը խրկեմ Մաւրիտանիայէն եկած, տասնըերկու ալ Թուր Աղեքսանդրիա չինած։ Քու ձեռասուն փրոնտոնիդ ալ, ինծի աղէկ լուր բերելուն համար, պաշտօն մը տուի 'ի Նիկոմիկիա, ուր որ իրեն կը պտղաբերէ քըսան հազար սեստերտ։ Փաւստինեան ըսաւ որ Պետրոսա կնոջդ իր կողմանէ մանեակ մը լեցուն Պաղեստինու հոտաւէտ խունկերէն խրկեմ, մանեակ մըն ալ հագուստ։ Ինծի կ'երևնայ որ քիչ բան չէ, որովհետև կանայք իրենց քսակէն դժուարաւ ծախք կ'ընեն, ուրիշի քսակէն կ'ուզեն սատարաձեռնել։ Հզօր դիք զքեզ պահպանեն, զիս ալ դժբախտութենէ պահեն. կը խնդրեմ իրենցմէ որ քեզի, ինծի, փաւստինեայիս ու Պետրոսայիդ շնորհեն որ մէկտեղ ողջ առողջ ապրինք 'ի Հռոմ. վասն զի մարդուս սիրտը գոհ չէ, երբոր իր բարեկամը չտեսնար։ Մարկոս 'ի Մոնթէչէլիոյ իր ձեռքովը կը գրէ քեզի։

---

## Ս Ա Ր Դ Ի Ք

(Տես երես 53։)

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

### ԱՐԱՔՆԷ

*Շիրիմք. — Անբաժան բարեկամ մը.*

### Ա

Նստէ՞ր ես երբէք գերեզմանի մը ցուրտ քարին վրայ.... Հոն աշխարհքին երևոյթը տարբեր երանգ մը կ'առնու մտացդ գաղափարներուն մէջ։

Անցիր գերեզմանոցի մը ցանկապատորմոց մէջ. Թող աղմկալից քաղաքը անոր սեմոցը վրայ, և մխրճէ աչքդ այս ընդարձակ միջոցին տանիլ, ուր ոչ այլ ինչ կը նշմարես՝ բայց եթէ ցաւոց ու խանդաղատանաց լռելեայն հառաչանքները։

Կամաց կամաց կը կոխես այն գետինը՝ որ բազմաթիւ ազգաց իրարու պաղած ոսկերոտիքը կ'ամփոփէ։

Նուիրական գետին է։

Անանկ մը կ'երևակայես՝ որ իւրաքանչիւր ոտնափոխիդ ցաւոց հառաչանք մը սրտիդ կը խօսի. կարծես թէ երկիրը ոտիցդ ներքև ձայն կ'արձակէ. կարծես թէ սգաւոր ստուեր մը քեզնէ աղօթք կը խնդրէ, կրօնական յուսով մը զքեզ միջնորդ կը դնէ Աստուծոյ գթութեանը առջին։

Այն խորհրդաւոր լռութեանը մէջէն կը զարթնու երևակայութիւնդ կրօնական տխրութեամբ մը լցուած։ Միտքդ՝ հանգուցեալքը յիշատակելով՝ հաւատքով առ Աստուած կը վերանայ, ու սրտիդ մէջէն արտասուախառն աղօթք մը կը բղխէ անոնց համար։

Այսպէս հետզհետէ քայլ առ քայլ անշուշտ լռութեան ասպարէզի մը մէջ կը յառաջես... մեռելոց ապաստանարան...։

Տխուր տեսարան... որ սիրտդ թեթև վախով մը կ'այլայլէ, ու մտացդ մէջ այն անհանդուրժելի գաղափարը կ'արթընցնէ, նշանացի ակնարկելով այն տեղը՝ ուր հուսկ ուրեմն պաղած ոսկերքդ պիտոր ամփոփուին։

Անախորժ մտածութիւն, որուն առջին՝ կքում մը սրտիդ կը տիրէ, ու սարսափով մը՝ զգածեալ երևակայութիւնդ աւելի կը ջերմացնէ։ Չորս կողմդ մեռելոց ստուերներ կը սկըսիս երևակայել որ քեզի ընդ առաջ կու գան, և զարհուրած՝ տեղի կու տաս, ու խռովեալ աչք մը չորս դին պտըտցնելով՝ մահուան ասպարիզին մէջ շունչ մը, կեանք մը կը փնտռես։

Այն տագնապին մէջ՝ ինչպէս անուշ կու գան ականջիդ այն քաղցրալուր աւետեաց հեռի աղաղակները, որ բազմօրինակ քաղաքի մը աղմկալից չփոթներէն կը բղխեն, և կը նմանին ծովու ալեաց՝ որ հեռուանց մռնչելով՝ ծովափունքը կը մարին։

Այն աղաղակները երեւակայութեանդ կը խօսին ու սրտիդ խրախոյս կու տան. քաջալերութեամբ կը զօրացնեն՝ կենդանեաց աշխարհը դեռ ես քեզմէ՝ քայլ մը անդին ցուցընելով։

Բայց դու կենդանիկդ՝ որ մահուան շիրմին վրայ կը նայիս, ինչպէս այդպէս երկիւղալի կ'երեւնայ քեզի անոր բնակարանը՝ ուր հանգիստ է 'ի Տէր, և ուր ցաւք չունին դադար....։

Դաս մեծ և անխաբ յիրաւի է մարդկութեան շիրմի մը այցելութիւնը։ Հոն յայտ յանդիման կը տեսնէ մարդ ուր կը դիմէ կարճատեւ ժամանակի սնոտի ամբարտաւանութեամբ։

Բ

Որչափ տխրութիւն ազդող նոյնչափ ալ ախորժ կը զգամ այց ելլել գերեզմանոցի մը, տեսնել այն տեղին՝ ուր կը լռէ ամենայն ձայն, և ուր ննջեցեալ հոգւոց անտես բազմութիւնը մի միայն ձայն կ'արձակէ լռելեայն. աստուածային ողորմութեան անունը։

Այսպիսի այցելութեան առիթ մը երբ մտացս խօսի, անոր չեմ համարիր փութով հեռանալու։ Դեռ ևս տպաւորուած է մտացս մէջ այն գեղեցիկ առիթը որ 1865ին աշնան տեղի ունեցաւ, ու մինչև ցայսօր յիշատակներուս քաղցրագոյններէն է։

Հրաւէրք մը եկաւ ինծի գիւղական դպրոցաց, որոց առաջին խոստմունքը ախորժելի զարմանք մըն էր, կէս ճամբուն հրաւիրողին դիմաւորուելով յանկարծուստ։

Այդ կ'ըլլար 'ի վեր.... ուր դպրոցանաց նախաքայլը ճամբուն թմրութենէն զիս ցնցեց։ Ցորեկուան դէմ թողուցինք քաղաքը գեղը փութալու համար։

Օրն որ պայծառ արեւով մը խայտացեր էր, նոյն ժամանակը մութ ամպերով պղտորեցաւ։ Բայց շատ փոյթ ընելու չէր տար. դէպ 'ի գիւղեր կը դիմէինք, և երկրորդ օրը կրնար նորէն արեւուն երեսը ցուցընել մեզի։

Կառքը նստած հազիւ թէ քաղքէն դուրս առաջին ճամբուն գլուխը հասանք՝ որ անկէց անդին կը խոտորէր, սև ներկեալ դուռ մը առջևնիս ելաւ։ Մուտք մեռելոց ապաստանարանին։

Բարի է միշտ մեռեալքը յիշել. և երբ անոնց բնակարանին առջևէն կ'անցնիս՝ մի մոռնար հայեցուածք մը տալ, ու պաղատանաց հառաչանք մը վերցընել առ Աստուած անոնց համար։

Կենդանեաց քաղաքը զուարճութ̃ պտըտեր էինք, թողեր էինք զայն ետևնիս իր յիշատակներովը. հիմա առջևնիս նորակերպ քաղաք մը կար այլազան յիշատակարաններով։ Իջանք դիտելու այն մահուան հանգստարանը, ուր շատ հանճարներ կը ննջէին յաւիտենական քնով մը։ Մեզի ընկերակից ունէինք նաև պատանեկաց բազմութիւն մը, որ իրենց զուարթ աղաղակներովը տեղւոյն տարբեր երևոյթ մը կու տային։

Գ

Տեսնել և կարդալ մարմարեայ քարի մը վրայ դրոշմուած սիրոյ և հառաչանաց արտայայտութիւնները, հանգչեցնել տեսութիւնը քիչ մը այն մարմարաշէն մահարձանաց վրայ՝ ուր կ'ամփոփուին շատ սիրելեաց խաղաղ պաղեալ մոխիրները, և անոնց հոգւոյը վրայ կարդալ աստուածային ողորմութիւնը, զգացմունք մի է որ անզգայացեալ սրտի մը մէջ ալ կը թափանցէ։

Քարի մը դիմացը կանգ առի ուր գորովագութ մայր մը տարաժամ կորուսած զաւկը խանդաղատանօք կը կանչէր. «Ե՛րբ զիս, թշուառ մայրդ, քեզի պիտոր կանչես»։

Նոյնանման քար մը քիչ մը անդին նշմարելով, սրտիս մէջէն պատասխան

տուն անոր. «Թշուառացեալ մայր, ըսի, չես միայն այդ ցաւոց մէջ. Նայէ անդին ու մխիթար եղիր վշտովդ այն անձկաւ կարօտ ձայնին որ քեզի նման կը գոչէ. — Ես քու սուգերացեալ մայրդ եմ. զիս շուտով քեզի կանչէ»: Սակայն այն սրտաշարժ ձայնին առջին ցուրտ քար մը կար. ցուրտ քար մըն էր անջրպետ 'ի մէջ մօր և որդւոյն:

Աչքս անդին դարձուցի և ահա որձանացեալ կար ուրիշ ցաւոց ձայն մը, ձայն ծնողական գորովագութ սիրոյ, որ որդւոյն անխօս ոսկերաց առջին ինկած կ'արտասուէին. «Ո՜վ սիրեցեալ որդեակ, գոնէ աչքերդ գոցելու մխիթարութիւնն ունեցած ըլլայինք»:

Չկրցայ ներքին զգածման մը լալ. դարձայ մէկդի, և աչուըներս երկինքը վերցընելով՝ ցուրտ քարի մը լռելեայն ձայնակից եղայ. «Երանեալ հոգիք, հանգերուք 'ի խաղաղութեան»:

Ես շտապաւ խաչապսակ դաշտի մը մէջէն կտրելով՝ դէպ 'ի ուրիշ կամարակապ սրահ մը առաջարեցի:

Դ

Առաջին առարկայն որ աչուըներս վերցնելով պատին վրայ տեսայ՝ տապանաձև Կարրարայի մարմարիոն մըն էր, որուն վրայ սրտաշարժ արձանագիր մը կար դրոշմուած. ինձ այնպէս մը երեցաւ՝ ինչպէս թէ ընդհանուր մարդկութիւնը միաբերան ձայն կ'արձակէր. «Ո՜հ, որչափ արտասուք և որչափ կարօտ թողուց»:

Այս ձայնին չկրցայ և ես ձայնակցութիւնս զլանել. կանգ առի հոն ուր որմը անկիւն մը կը կազմէր, և ուր մերձ իսկ կը կարդայի. — «Ո՜վ ծաղիկ պատանեկաց, անչափ սիրեցեալ»:

— Եւ սակայն, ըսի, և դուք հարեալք քաղեցայք մահուընէն, իբր կարկտահար տերևք աշնային. և արդ հոս միայնակ կը հանգչիք, հեռի յիրաւի աշխարհքիս սնոտի աղմուկներէն՝ այլ ըստուերք մենացեալք, հեռի անոնցմէ՝ որոնց մէջ կարօտնիդ ձգեցիք. ոյք լացին զձեզ դառնագին. այլ հիմա՝ հազիւ թէ երբեմն երբեմն այցելութեամբ մը զձեզ կը յիշեն:

. . . . . . . . . . . . . .

Լռութիւն էր չորս դիս. հեռուանց միայն պատանեկաց աղաղակը կը լըսուէր, որ մասնաւոր հետաքրքրութեամբ մը մահարձանաց արձանագրութիւնքը կը կարդային: Տխուր տեսարան մը կ'ընծայէր տեղը. չորս դին՝ որմոց վրայ՝ մեռելոց անուանքը. ոտիցդ տակ՝ անոնց ոսկրոտիքը որ քար մը միայն անոնց տեսութիւնը կը խափանէր. և անկէց անդին ընդարձակ դաշտ մը՝ որուն գըլխաւոր զարդը՝ հողին վրայ տնկուած պսակազարդ խաչեր էին:

Չկար դաշտին վրայ ուրիշ շնչաւոր էակ բայց եթէ քանի մը աստանդական թռչունք, որ ճռուողելով կ'իջնէին, ու ելլելով՝ օդուն մէջէն աներևոյթ կ'ըլլային: Կարծես այն մահաշշուկ լռութեան, այն ուրիշ աշխարհքի բնակչաց նշխարքներուն բնակակցութենէն կը խորշէր նաև անհոգի էակը:

Լքեալ մնացեալ են ուրեմն, ըսի, հանգուցեալքն, և իբր խիթալի զօրաստարաք խուսելիք 'ի շնչականաց:

Չէ. չպերճախօսինք ընդդէմ խնամակալ բնութեան...

Այն լռութեան, այն միայնութեան, այն ընդհանուր մոռացութեան ու լըքման մէջ, մէկ մը միայն գտայ էակ բարերար. իբր արթուն պահապան, իբր հաւատարիմ բարեկամ՝ մէկ շունչ մը միայն կը շնչէր անշարժ այն անշնչութեան անապատին վրայ:

Պատին վերը, մահարձանին կողին մօտ՝ փոփոխակի պատը և մահարձանը իր վախճանին ծառայեցնելով՝ սարդ մը իր բնակարանին հիմունքը ձգած էր: Իբր հսկող պահապան՝ գիշեր ու ցորեկ անմեկին էր անկէ, և այն տխուր մահարձանին գեղեցկագոյն բնական զարդը ձևացուցած էր՝ կեանքը:

— «Խեղճ մարդկութիւն, ըսի, ահաւասիկ դու մոռացեալ անոնցմէ՝ որ սրտիդ մէկ հատիկ սիրելի էին, և յիշեալ անկէ՝ որ իբր թշնամի քեզմէ կը

հալածուէր ։ Մէկը բարութեանդ ապերախտ, միւսը չարութեանդ անոխակալ՝ երբ ընկեր հաւատարմութեամբ ետևէդ կու գայ․ գերեզմանէն անդին ալ քեզի հաւատարիմ կը մնայ ։ Շիրմիդ եզերքը, պաղած ոսկերացդ մօտ՝ բնակարանը կը հաստատէ․ ինչպէս թէ ուզենար գիշեր ցորեկ միայնութեանդ մխիթար ըլլալ» ։ —

Թէպէտ մահարձանաց գեղեցկութիւնը դիտելու ելեր էի, նուաստ չսեպեցի անոր ճարտար ոստայնէն ալ հայեցուածք մը տալ․ մօտեցայ զգուշութեամբ անոր, որ կարծես թէ տարակուսեալ գլխ կը դիտէր․ ինչպէս թէ ուզենար ըսել․ «Միթէ այս մահուան ծոցէն ալ գլխս հալածել կ'ուզես» ։

— Մի վախնար, ըսի, թշուառ էակ․ իբր բարեկամ քեզի կը մերձենամ ։ «Ցեռոյ անոր համբերութեան բոյնը գիտելով», Ո՜ գիտէ, ըսի, որչափ հալածանքներէ ետքը՝ իբր մէկ հատիկ ապաստանարան ընտրեր ես այդ տեղը՝ ուր կեանքը կը դադրի ու մահուան գիշերը կը սկսի ։ Արդեօք ճանչցա՞ր զայն որ այդ ախուր քարին տակ ժամանակ մը յառաջ ամփոփուեցաւ ։

Նշմարեցի կարծես թէ սրտիս կը խօսէր․ «Ես ողջոյն իսկ մարդկութիւն տեսայ այդ սև հողուն տակը ամփոփուած․ դեռ այս ոստայնիս հիւսքը չկատարած՝ բազմութիւն մը անշնչացելոց այդ հողը համբուրեցին․ ու հոս կանկ առի դիտելու այն շրջանը՝ որ զմարդ կը բերէ և զմահ կը տանի ։ Այս մահուան հովանիին տակը, մի զարմանար, սակաւապէտ կեանքի մը դառնութիւնները անուշցնելու ապահովութիւնը կը փընտըռեմ․ վասն զի կեանքը՝ կենացս թշնամի է և մահը բարեկամ ։ Երբ յուղարկաւոր ձայնեց՝ մահու լռութիւն նորէն կը տիրէ, ես զայն չնչովս կ'օգևորեմ» ։

. . . . . . . . . . . . . .

Եթէ հնար էր մեռելոյն այն անշունչ քարին ետևէն գլուխը երկնցնել, և այն միայնութեան մէջ 'ի զուր սիրելեաց անունները կանչել, որչափ մխիթարութեան առարկայ պիտոր ըլլար այն սարդը՝ որ այն մահուան դաշտին վրայ մէկ հատիկ կենդանի էակը կ'երևնար ։

## Զ

Այսպէս երբեմն ալ կենդանի թաղելոյ մը մխիթարութիւնը սարդ մըն էր ։ Սիլվիոյ Բելլիգոյ երբ կապարապատ արգելանոցի մը մէջ բանտարկեալ, զուրկ էր ամենայն մխիթարութենէ, մէկ մը միայն մնացեր էր իրեն մխիթարութիւն և միանգամայն զբօսանք անպատմելի ։

Այդ մխիթարութիւնը սարդ մըն էր որ բանտարկելոյն խցիկը ապաստանարան ընտրեր էր, իբր թշուառ՝ որ թըշուառի մը քովը մխիթարութիւնը կը փնտռէ ։

Գիտէ՞ր արդեօք որ այն տեղն ընտրելով կենդանի թաղելոյ մը մէկ հատիկ բարեկամը պիտոր ըլլար ։ Անշուշտ չէր կանխագգած եղած․ բայց յետոյ իր զգայուն իմացական շառաւիղովը, ըզգաց թէ ինչ յարգի ընկեր և մխիթար կրնար ըլլալ ։

Որչափ ալ վախով լի և տարակուսեալ սարսափով եղան առաջին տեսութիւնքը, կամաց կամաց ընտելացաւ թշուառացելոյն երևոյթին, որ ժամերով քովը նստած լռելեայն սրտին մէջէն հետը կը խօսէր ։ Եւ երբ ստատանդական միջատը քերթողին աշխոյժ ձեռքը բռնուած՝ ոստայնին կը մերձեցուէր, կը տեղափոխէր աներկիւղ, կը վազէր ոստայնին ծայրը և մինչև քերթողին ձեռքը կը դիմէր՝ որսը առնելու համար ։ Կը զգա՞ր արդեօք բարեկամութեան յարգը․ գիտէ՞ր արդեօք որչափ սիրելի ու մխիթար էր այն վառվառուն ոգւոյն՝ զոր երկաթապատ դուռ մը բոլոր աշխարհքէ ու սիրելեաց խմբէն կը զրկէր ։

## Է

Խաղաղութիւն ուրեմն այն էակին որ առ հասարակ մեռելոց ու կենդանեաց հաւատարիմ և անբաժանելի բարեկամ է ։

փոխանակ հալածանաց՝ անխռովութիւն, փոխանակ վշտաց՝ սէր կը պատրաստէ մեզի։ Բնակարանէ բնակարան, վիճակէ վիճակ՝ միշտ ետեւնէս կու գայ, և հուսկ ուրեմն մեր գերեզմանին մօտ զինքը կը գտնենք։

Մարդ կ'անցնի, հայեցուածք մը կու տայ այն գերեզմանին ուր մեր ոսկերքը լռութեամբ կը հանգչին։ Կ'անցնի մէկ դի ու կը մոռնայ։

Այսպէս մենք ալ շրջեցանք այն մահուան շրջափակը, հայեցուածք մը տուինք այն մահարձան չիրմաց. յիշեցինք հանգուցեալքը, աղօթեցինք ու ելանք հեռացանք։...

Իսկ սէրը՞։

Մնաց տապանին վրայ հաւատարիմ. Մնաց իբր անբաժանելի բարեկամ հանգուցելոց տառապանքներուն։

Կը շարունակուի։

Հ. Ց. Վ. ԽՍԱՎԵՐՅԱՆՑ

---

# ՔԵՐԹՈՒԱԾ ԾԱՌՈՑ

—

Առ ծառ մի մեծ.

Ոգի անդորր է դիւցային ի տունկս անդ.
Վաշ ծառոյն այն տաղարդապուարճ մեծայաղթ,
Ուր հոյզք խաղաղ յանդամըն գնան լայն ու անախտ.
Այլ յերակունս հրակէզ ծախի արեան խանդ։

Ի ծագ լերին արքայապերճ դու բազմիս,
Նախանձելի սիրունդ ինձ յայդ գահ ամուր.
Իբրեւ ըղձերդ դող կամէի մըտադիւր,
Հաշտ եւ ըղձօն կանգնել ուղղորդ ի կայիս։

Ըղձեւ ուր կամս՝ ոչ ըղծաղկունս հողմք խամրեն.
Մըրրիկք օդոց քեզ ըստնանել զօրեն ոչ.
Եւ յերկնաբերձ ստեղունս սառոցըդ գողգոջ,
Ջերդ յամր հոսանս՝ հազիւ տերեւք քո հեծեն։

Փարի զնոքօք ծիրանէմասն արշալոյս,
Ջհերովքդ հիւսկէն հեղեալ շառայլս անաղօտ.
Ոստ ի յաստոյ սանտու լուսին արծաթոտն,
Եւ միջօրէ տեղայ ի քեզ զարփին լոյս։

Խաղաղապատեալ զոտիւքդ յածի Նխուբելէ
Ցաւերժականն՝ յայտնելով քեզ գաղտնիս գիւր.
Իսկ դու հանուրցն ի ծորանաց ըմպես լուռ,
Պընդեալ ի գիրկս՝ ուստ բողբոջեաց ծիլ ծագէ։

Ողջո՜յն քեզ ով պաշտօն մարդոյն նորածին.
Այլ մեք զարդիս ի մոլեռանդն ի պայքար,
Մեռեալ զանձեամբ համարեցաք իբր խոպառ,
Եւ ուրացաք ըղձիւրընկալդ երկնային:

Ո՜հ իմանամ զ' ի ներքս ի քեզ է հոգի.
Զեն քո մեր կիրք եւ հրահոսան տենչք ըղձից,
Այլ կաս խորհիս խոր եւ պայծառ հանդոյն դէց,
Կար զօրութեանդ յանշարժութիւնդ առակի:

Ողջո՜յն քեզ ծառ. կամք ըղձմայլեալ իրերաց.
Զպարծիմ ինչ ես ընդ մարդկայինս այս գոյակ,
Զի 'նդ կեղեւով կանաչազգեստ իմն ոգեակ
Հանգոյն մերոյս հզօր ինձ թըւի եւ ամոք:

Հեղ ի ճակատս զանդորրաւէտդ հովանի.
Ո՜ տայր զի յիս նուաղէր արիւն եւ մարմին.
Իցէ՜ւ վայր մի կամք եւ խորհուրդք իմ լռէին.
Կամք վարանեն, եւ միտք տանջել հընարի:

Տագնապէ զիս ներքոյ մըրրիկ տենչանաց.
Քեզ անծանօթ տարակուսանք են եւ յոյս,
Եւ ծանրագնի զի ըմբոշխնեմք ըղձաճոյս.
Չեղեն երբէք քեզ այնպիսիկ գինք մըշտաց:

Մինչ դու առնուն պէտք ընդ տիւ գեղանի,
Զմոռացութիւն չարժեն խոստմունքն երկնային.
Էն իսկ չկարէ առնել զ' անցեալն ինչ բնաւին.
Անցնորական ձիգ քուն է նիրհ հանգըստի:

Կաղնի զանդայր եւ մարդ ունի կամս ազատ...
Աւ իմ չիցէ ձըգել արմատս ինձ տառէն.
Զի որ անխորհ ազդմանց երկնից ոք լըսէն՝
Աստուածանայ՝ ոչ ի հեշտից ինչ ընդհատ:

Ո՜հ հեղ յիս, հեղ ըղձովութիւն գարնային,
Ըղձայն անոյշ մեղուաց հաւուց քաղցր երգոց,
Եւ ըղթըռւիչս անթիւ անհուն երազոց.
Պայծառ գեղովդ ես ինձ եղբայր սիրային:

Թէ լեառն եւ ինձ էր ի նեցուկ ամրութեան,

Եւ մխէին ոտք իմ յաղբիւրս անդ էից ,
Թէ թանայր հերքս այգուն վարդիւք ցօղալից ,
Եւ իբր ըղձեղ սիրոս էր անեղի հանգըստեան .

Թ՝ ամբիծ ի հոյղ էի կաղնի վերամբարձ ,
Ճոխ եւ ազնիւ , հանուրց եւ քեզ վանատու ,
Պատըսպարան միշտ լինէի ընդ մեղու
Հաւուցն ընդել ի ճակատուք մընջողաց :

Շիթ տերեւոցս ըղձար պըրբէր ի յուշս .
Ընդ անոտիւք մամուռք ըղքուն ալփաէին .
Եւ վտարանդիքն ի քաղաքէ անդ գային
Ի լըռութեան լըսել իմաստս հանճարոյ :

Ճակատագրին եւ հրամանաց համակամ
Ի մըտայոյզ խորհուրդս ոգւոց արբեալ լուռ ,
Կայի միայն անդրիմաղարձ ա՛ անապատ .
Հարկանելոյ մայրեւարին աստուածեան :

Մասի կաղնոյ .

Ա

Մինչ մահացուն հար վատըշըւէրն ի տապար
Ջարդայդ լերինըն մեծապանծ պեւ յերէկ ,
Սուդ մեծ գուժեաց սըրբանըւէրն ընդ անտառ ,
Եւ ես ցասեայ ընդ նախն հարուած ահարեկ :

Մըռընչեցին անդորր ըստուերք հովանեաց ,
Հառաչախառն բաղառանալիք հընչեցին .
Վարատեցան եւ անտես հիւրքն անտառաց ,
Այլ ժհ անզօրք կալ հակառակ մահացուին :

Ազդ մի ողջոյն ահիւ ի քէն մեկնեցան ,
Եւ երգեցիկ բիւր հաւք ի ուխտարըն յուղեւալք ,
Ամպ տըխրերանգ՝ ի ճակատուդ յածեցան ,
Սրաձայն ճըչիւք ի խուլ հեծիւնդ ընդխառնեալք :

Եկաց տարտամ յաղբերց սափոր ուղխ ներսեմ .
Ընդ երերուն շոճիւք սարսռեաց սար լերին .
Եւ հիւսիսակ թաւալ յափունս տարադէմ

Արձագանգովք կողից հեծեաց դառնագին ։

Որոտընդոստ զինչ շանթ անկար ահօսեալ
Ողջ արտասուաւոր մի է դետինն հայրենի .
Եւ մինչ զմարմինդ էառ ի ծոց իւր ճըմլեալ՝
Ահեղ մռընչեաց երկիր ի ձայն հանդիսի ։

Զի նկուղեալ է որ էր զկաղնեաց անդրանիկ ,
Ձերդ մայրենի որդեակ նախածին սիրասուն .
Եւ յերակունսըդ ծաւալէր հոյզ քաղցրիկ ,
Հովանացեալ քեզ ի բարձանց ճակատուն ։

Սըփռեաց զոտիւքդ օթոց երկայն լռաւէտ ,
Ուր հոյլ ի հոյլ ցանդ փթըթէին գարնային
Մանիշ բուրեան եւ անթառամ հոտաւէտ ,
Զի սիրատարփ ւ՝ արդոյ ըստուեր քո լիցի ։

Մըրմընջաձայն նման հովանի առնելով ,
Ո՛հ լռնուիր դու ըղձարտիս ծնելաւէր .
Եւ միշտ աշուն բընակառնունդ ըղբըլով ,
Լօդիկ ձմերան՝ զհասուն տերեւսըդ ցանէր ։

Զմայլէր երկիր ի քոյդ ծաւալ նուագաց ձայն .
Ի թեւս հողմոց խօսել ըստեղծ նա զմայլիս .
Եւ մինչ կամին լուծանել յողբս անսահման
Ցոտոց խարշափ մընչէ ընդ շեծս եւ կաղնիս ։

Տայր նկուղեալ քեզ ազգատոհմ մի անհուն .
Ի մէն մ՚ ուղէշ բոյն ինչ կրելով կամ փեթակ ,
Մեղու , թըռչուն , միջատ , սողուն եւ զեռուն
Ի ծոցդ անքոյթ կային ի նիրհ ւ՝ ի ճարակ ։

Ցանկանել քոյ ազգն այն հըռչուն ցըրուեցաւ .
Անկան ընդ քեզ եւ բիւր էակք ոդեապառ .
Եւ առ տեղեաւըդ թեւածեն ընդ երկնաւ
Դեռ հաւք ողորմ առ գիւտ ձագուցըն թափառ ։

Թաւալ զ՚ոստովք քով փըշըրեցան բունք հըզօրք .
Հունձ մեծ գործեաց շուրջանակի ըղձքեւ մահ .
Ներքոյ քոյ կան կաղնիկք եւ թուփք բիւրաւորք .
Վարդք քո կանաչ թառամեցան ընդ մի պահ ։

Եւ սակայն դու յաւերժական ինձ թուէիր.
Քեզ պարագայս պահէր երկիր շատ ամաց։...
Յահեղ վիրէն տակաւին հոյզ վաղէ ցիր.
Ցամաքեցաւ անջատ յարմէն բունն ի բաց։

Ո՛հ մի՛ շռայլեր հոյզ այլ յարմատան այն՝ ով մայր,
Մի՛ զքոյ արիւն հեղուր յորդելդ կենդաղբաւ.
Լիցի պահեստ տնկոյն առ քեւ այդ յամբայր.
Չիցէ կաղնւոյն այլ եւս ըմպել ի քէն բնաւ։

Տուր հուսկ ողջոյն կաղնիդ որբեալ առ դարուն,
Գըճնեալդ երէկ ի ծիլ նորոգ տերեւոց.
Ա՛յլ չիք քեզ բաստ վերածնանել կեանս ի նոյն.
Առ սիրոյ բոյնան ողջոյն զոստովքդ հոլելոց։

Ողջոյն առ սեաւ բըզզող գընդակըս մեղուաց,
Եւ առ տերեւն հողմածածան խարշափուն.
Առ սիրաւէտ օթոցս ընդ զով բաղեղանց
Ուր բերկրէին զքեզ համբուրից ձայնք գեղուն։

Առնում ի միտ կաղնի զմահու քո տագնապ.
Դառն է օրհասս յառոյգ ի կեանս հեղասահ.
Եւ գուշակել տայ ինձ ըզկըրեցըդ խուճապ
Գլուխ քո կործան զարնանազուարճս յայս ի պահ։

Այսպէս առ տաս արկ ըզքեզ մարդ մահացու,
Մանրեալ յերկաթ ըզբուն եւ զոստըս քոյին.
Ի ծուխ՝ յածիւն դարձցիս էակ նուաղածու,
Ցերկիր ի հողմ բաժանելով անդըրդային։

Այլ միթէ չիք քո տեւական ինչ մնայուն.
Ո՛ւր թագուցեալքն ընդ կեղեւով գնան ոգիք.
Չիցէ բնութիւն մի ՚սա բոլորին եւ անհուն,
Այլ բիւր տեսլեամբ պըճնեալ պայծառ ըզգեցիկ։

Որ զինչ եւ էն. այլ ես կարդամ քեզ օրհնիս,
Զաստուածանուէրն ըզքեւ հանդիսաւ վայելեալ.
Եւ ՚նդ տիեզերս այլուր նորոգ թէ ծընցիս,
Մաղթեմ լինել յոյժ եւ ի գեղ առլցեալ։

Ծէր հարազատ զի ես սիրեմ ըզմայրիս,

Հովանազգեաց խորհրդածու պուէտս յանդորր
կեամ յամբրընթաց՝ խաղաղ, տըրտում ի յոգիս,
Եւ բարձրագլուխ Նուագեմ առ մեղմ ինչ զեփիւռ ։

Ինձ անհասից ներքուս հաւատս ընծայեմ.
Ակընկալեմ՝ այլ ոչ առ բասս մարդկային.
Ցերգանըւագ հանդիսա՝ կաղնի զինչ անձեմ,
Մնամ տէրանձեան վաղիւ ծագման սանձենին ։

Ցանձն իմ ըղձամ զանդորր հանգիստ անտառին.
Ընդ հովանեաւ թաղեալ ծառոց սըրբազգեաց,
Զանխուլ մարդկան զհամբերութիւն ուսանիմ,
Եւ խաղաղիկ կեայ սիրտս յուսով ի մոռաց ։

Այլ ընդ անտառս հանդըստասէր մարդ մըրցի.
Աւուրց յաւուրս ըստուերք կարճին ի լերինս ։
Ի խորհրդեան մնացէ վայրացն եւ ոչ մի,
Ուր սէր՝ իմաստ հոգի քաղէ կաթոգինս ։

Սիրտ իմ սլացիր. չեն այլ երկրի հովանիք.
Եւ հաւք երկնից, եւ ցնորք անհուն երազոց,
Ուրուք ճերմակք՝ ոյց հեշտ մըթին են տեղիք,
Լիցին ընդ հուպ զիրկ ձագախառն ի ծառոց ։

Կապոյտ երկիր ի սըրբավայր դաբիրայց.
Ցարամերժին աջանշեղահրաշ հեւքըն հովտից.
Քաղցր էին դից դարուց տաճարք պուրակաց,
Կործան յերկիր սատապար զկամընիս արկ ընդ դէպ ։

Չեք այլ սեղան, ըստուեր և՝ անդորր ապաւէն.
Ոչ այլ հանդէսք ընդ զըմբեթօքըն գալարք.
Թողումք որդւոց զերկիր կործան եւ անշէն.
Մեզ ամայի աւանդեցին զերկինս հարք ։

Բ

Հեծէիր այսպէս պուետ սիրտըդ կաղնեաց,
Աւանդապահ դու հինաւուրց պաշտաման,
Առ կիրս մարդոյն զըրկեալ յաղբերց՝ յըստուերաց ...
Այլ ո՛ն զի միշտ է կիւրեղէ ծնընդական ։

Ամբարձ ի վեր․ շատ է ողբդ այդ ղանկելով․
Հարկ է քնարի գոլ ըսփոփումն եւ գուշակ ։
Մինչ առ եզերբ շիրմի վարիս դու ողւով,
Զկենաց խօսել է եւ զգալոցն անդ համակ ։

Ցամաքեսցի՞ կարծես ինչ հոգին ընդ հանուր
վախճանելով հըսկայաբերձ մէն կաղնոյ․
Ցոր սէր հոսէ պըւեր հոգւոյ բոցահուր,
Գործի կենաց, առ յոչընչէ եղէ քո ։

Օ՜ն․ զի անկն այն ջերուցանող ծագէ դեռ․
Մեծ սերմնահանն ունի սերմանս յոյժ ի ցան․
Զեւ է բնութիւն վատառակ յերկանցն յոգնաբեր․
Զի չէ, գիտես, դեռ յոգնեալ սէրն աստուածեան ։

Մինչ դու ըղձաւդ ողբաս կործան եւ աւեր,
Բիւր այլ բողբոջք նորքոյ զետեղք ի ծածուկ,
Ընդ ակամբ Տեառն հըսկեն բըլրոցս առընթեր,
Ցանտառանալ կազմք կենդանի սաղարդուք ։

Սիրել ցնորել լցէ որդւոցս ընդ նոքօք,
Եւ քերթողին պաշտել երգել ըղձութիւն․
Ի հովանուստ բաւիղ անուլեանցդ առ աչօք,
Խորհուրդք վըճիռք եւս եկեսցեն յայց նոցուն ։

Առ նըշխարիւք մեր աճեցէք անտառք նոր․
Ի մատաղ ծիլըդ հեղցուք հոսանս արտասուաց ։
Աստուստ դիտեմ ըղձեղ ուժեղ՝ գեղաւոր,
Զի տայք ըստուերս անոյշ՝ աղխիւ այցողաց ։

Հովանաւորք ոչ այլ արեան ըսպանողից․
Հալածեն զայլք ըղձիս սոխս հանդգնածի․
Դիպող են վայրքդ երգոց խաղուց սուրբ տօնից․
Լինի մամռագ անկողին թանձր եւ հեշտի ։

Մի այլ զճակատդ յերս ինչ կըքեր մահացու․
Զաչս յարեւելս եւ զսիրտ դարձո յապագայն ։
Անկան մայրիք՝ այլ կան բողբոջք կենսատու․
Ցերկնեալս ի ծնունդ զաջըդ կարկառ օրհնութեան ։

Փութով հեռաստես, ընդ հանդերձեալ բիւր տոհմից

Ցես ըղձուբանկըդ հիահրաշ լուսափթիթ .
Դիր ունկն ի ծոցըդ տեսանող մըրմընջից ,
Լուր . զ՚երկաթոյ ձայնից հեծմանց խիտ առ խիտ ,

Լուսակարկաչ ընդ բըլրոց չեպս արփային ,
Ուր զուարթալից թըւին հանդչել տոհմք ազանց ,
Ընդ խանդակաթ կաղնեաք կընձնեաք կաթոգին ,
Գողցես պաշտի համբոյր մ՚ անհուն եւ անանց ։

ՏԸ ԼԱՐՐԱՏ[1]

ԹԱՐԳՄ. Հ. Դ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ.

---

## Գ. Կուստավոս Լամպէրի հիւսիսային բեւեռը ձանապարհորդելու առաջարկութիւնը .

*Ասիոյ հիւսիսակողմէն Ամերիկա անցնելու յառաջագոյն եղած փորձեր . — Նոր ուղեւորութեան բուն նպատակը . — Հաւանականութիւն Արջային բեւեռին շրջապատը ազատ ծով մը գտնելու . — Առաջարկեալ ուղեւորութիւնը 'ի գործ դնելու միջոցներ :*

Ոչ երբէք այնքան 'ի պատուի եղած է աշխարհագրական ուսումը՝ որքան այս դարուս մէջ . ոչ երբէք այսպիսի փառաւոր խրախոյսներով քաջալերուած են այն յանդուգն ճանապարհորդները՝ զորոնք ուղեւորութեան տենչը, անծանօթին ծարաւը , և իրենց անունը անմահամեծ գիւտի մը հետ միացնելու իղձը , կը մղէ վտանգաւոր գործողութեանց մէջ . և կ՚առնէ կը տանի այնպիսի երկիրներ՝ որոնք դեռ եւս չեն քըննուած և այցելու մը դեռ չեն ունեցած . դարձեալ ոչ երբէք նուազած է հասարակաց զարմանքը այս գիտութեան և քաղաքականութեան ճամբայ բացողներուն վրայէն , զորոնք ոչ վտանգաց երկիւղը յետս կասեցուցեր է իրենց միտացը մէջ հաստատութեամբ դրածէն , և ոչ՝ տարաշխարհիկ եղած անապըրնջական երկրի մը վրայ՝ իրենց թշուառ և աղետալի կենաց պատկերը ։ Այսպիսի զգացմանց կենդանութեանը վկայ ըլլան անոնք , որոնք մէկ սիրտ և մէկ հոգի ընդունեցան Գ. Կուստավոս Լամպէրի Արջային բեւեռը ճանապարհորդելու առաջարկութիւնը ։

Արջային ծովերը երթալու և զանոնք քննելու միտածութիւնը արդէն իսկ հընացած և անոր համար վերջատասներորդ դարուն սկիզբէն անթիւ նաւարկուներ այն սառուցեալ միայնութեանց մէջ իրենց օգտակար հետազօտութեանը և գիտութեանը սիրոյն զոհ եղեր են . և դարձեալ քանիներ թէպէտ և մահուընէ ազատեր են , բայց քան զմահն աւելի ահաւոր վայրկեաններէ անցնելով . առաջնոց դասէն է Ֆրանքլին նաւապետը իր 138 ընկերներովը . երկրորդներէն ալ շատերը կրնայինք յիշել՝ ուրիշ բանի համար չէ՝ բայց եթէ գիտութեան պսակով ուրիշ անգամ մ՚ ալ պսակելու համար զանոնք ։

Բայց առանցմէ և անցեալ դարերէն աւելի՝ մեր դարուս և իր անձանցը պար-

---

1 Վիկտոր Տը Լարրաս Գաղղիոյ ներկայ ժամանակիս անուանի բանաստեղծներէն մէկն է և Փարիզոյ կաճառայն անդամ: Գլխաւոր երկասիրութիւնքն են Փսիշէ, Օտ է Փօէմ. Փօէմ էվանժէլիք. Սէնֆօնի. Իտիլ էրօիք. որոնց ամէնուն մէջ ալ լեզուի յստակութեան հետ խմաստից նորութիւն և շատ քերթողական խանդ ու թռիչ կ՚երեւնէ. առակոյն անժխտելի է և այս որ երբեմն զաղափարները սատակ լայնելով՝ գրեթէ անոնց նիւթապաշտութեան կամ համայնաստուածեան երեւոյթ մը կու տայ , մինչդեռ կրնան քիչ շատ խորհրդածել նոյնը բանաւէր ընթերցողք առաջինկայ քերթուածոնս մէջ ալ, զորոնք առակ հեղինակին իր նիւթոյն վրայ ունեցած ամբողջ մտածութեանը հաւատարիմ կենալու գիտմամբ հարկ սեպեցինք առանց զեղչման թարգմանելու ։

տըկան ենք. վասն զի արջային կողմանց աշխարհագրական ստուգագոյն տեղեկութիւնները դարուս պտուղներն են։ Մինչև 1818ը, որ Ցովհաննէս Ռօս, և Եդուարդ Բարրի, անգղիացի նաւապետաց՝ առաջին ճանապարհորդութեան թուականն է, բաւական սեպուած էր միայն այն կողմանց նաւահանգիստները ճանչնալ, և հիւսիսին խորագոյն ծովերը մտնելով՝ անոնց մեծամեծ ծոցերը և նեղուցները նշանակել։ Բայց այս թուականէս ետքը կանոնաւոր ճամբորդութիւններն իրարու յաջորդեցին, և ամէն մէկը երկրագընտիս մութ և ամենամութ մասը լուսաւորեցին։

Անգղիացին, առաջինը ծովուն վըրայ, և Հնդկաստանի մէջ անբաւ երկիրներ ստացողը՝ ասոր նման ուղևորութիւն մը փորձել ուզելով նշանաւոր եղաւ։ Կանխաւ ետևէ էր որ հիւսիսային ծովերուն մէջէն Ատլանդականը Մեծ ովկիանոսին հետ միացնելու ուղիղ անցք մը գտնայ, որով հարկ չըլլայ Հոռն գլխէն անցնելով Ամերիկան ամբողջ պտըտիլ։ Այս նպատակիս հասնելու համար երկու ճամբայ կը տեսնար՝ մէյմը Ամերիկոյ հիւսիսային ափունքէն քերելով երթալ, մէյմ'ալ երթալ ընդ երկայնութիւն Եւրոպիոյ հիւսիսակողման ափանց, և առաջին ճամբով գալ հասնիլ Պէհրինկի նեղուցը՝ որ Մեծ ովկիանոսին հիւսիսային դուռն է։ Անգղիացին երկու ճամբաներէն առաջինը ընտրեց որ կարճագոյնն էր, և իրեն բովանդակ ուժը և ջանքը այն կողմը թափեց. բայց դժբաղդաբար երեակայեալ բանի մը ետևէ ընկած էր. վասն զի այսօրուան օրս անհերքելի կերպով հաստատուած է որ այս ճամբով և միայն մէկ նաւով մը՝ մէկ ովկիանոսէն միւսը անցնիլը անկարելի է, եթէ կարգէ դուրս յաջողութիւն դիպած չըլլայ։ Միայն Մագ-Լիւր հրամանատարը 1850ին Պէհրինկի նեղուցով բևեռային ծովերը մտաւ, Ատլանդականով Անգղիա ոտք կոխեց, բայց երեք տարի սառերու վրայ ձմեռելէն և իր խոշ-զարկուն նաւը սառնակոյտներուն մէջ ձգելէն ետքը։

Դարուս սկիզբէն մինչև հիմա Եւրոպիոյ և Ամերիկայի նաւավարաց թափած ճիգը՝ որպէս զի մեր կիսագնտին հիւսիսային կողմէն Ատլանդականը խաղաղականին հետ միացնեն ուղիղ գըծով, և դարձեալ արջային ծովերուն մէջ եղած մանրակրկիտ քննութեանց վախճանը ուրիշ բան չէր, բայց եթէ ճամբաները համառօտելով ազգաց իրարու հետ ունեցած վերաբերութիւնները դիւրացնել, և յաճախել զանոնք։ Իսկ Կուստավոս Լամպէրին նպատակը այս չէ. ինքը և իրեն հետ ուրիշ գիտնական անձինք և աշխարհածանօթ աշխարհագիրներ, որոնցմէ են Օգոստոս Բէդըրման աշխարհագիրը, ժամանակիս և Գերմանիոյ պարծանքը, Պէշըր և Օմմանէյ նաւապետները, Սապին զօրավարը և Էնկլֆիլտ գնդապետը, կը կարծեն որ հիւսիսային 90դ լայնութեան աստիճանէն մինչև 80դ աստիճանը սառոյցներէ ազատ ծով մը ըլլայ։ Արդ Կուստավոս Լամպէր կ'ուզէ այս ծովս մտնալ՝ իրեն պէս արիասիրտ գիտնականաց հետ՝ ուսումնական վախճանաւ. որպէս զի ամենայն ճշդութեամբ նշանակէ բևեռային ովկիանոսին շրջակայքը, որպէս զի դնտիս այն ծայրն ալ ծանրութեան, ջերմութեան, լուսոյ, ելեքտրականութեան և երկրային մագնիսականութեան օրինաց վրայ գիտողութիւններ ընէ. առանց զանց առնելու այն կողմերուն կենդանաբանութիւնը, բուսաբանութիւնը, և երկրաբանութիւնը։ Բայց կը մնայ ցուցընել թէ յիրաւի կա՞յ այս ազատ ծովը։

Կուստավոս Լամպէր յիշատակարան մը հանած է, յորում ամփոփած է 'ի հաստատութիւն այս կարծեաց որչափ որ ապացոյցներ գտած է. որոնցմէ մէկ քանին յիշենք։

1826ին Բարրի անգղիացի նաւապետը փորձեր էր Սբիցպէրկի հիւսիսային արևմտակողմէն բալխիրով արջային բևեռը երթալ։ Կը կարծէր, ինչպէս բոլոր իր ատենի աշխարհագիրները, որ

արշային գօտւոյն երեսը միապաղաղ սառոյցքի խաւ մը պատած ըլլայ. և աստով կ'ուրախանար որ առանց նաւու կարօտութեան պիտի կարենար Ամերիկա անցնիլ։ Արդեօք խարուած ըլլալուն վրայ կը կասկածէր։ 120 փարսախ տեղ կ'ընէ, չյիշենք կրած նեղութիւնները, և ետքը կ'իմանայ որ 50էն աւելի դէպ 'ի հիւսիս չէ յառաջած. վասն զի սառերուն անզգալապէս դէպ 'ի հարաւ դառնալովը, ինքն ալ ընթանալու տեղ կամ առեն, ետ էր դարձեր. քալած էր՝ բայց առանց և կամ շատ քիչ տեղափոխութեան. Նման այն աշխատաւորաց որոնք մեծամեծ քարեր բարձրացնելու համար սահմանուած անիւներուն մէջ օրը տասը փարսախ կ'ընեն, բայց քայլ մ' ալ առաջ չեն երթար։ Ուրեմն եղածէն գուշակեցին որ այն կողմերս հոսանք մը կար որ հիւսիսէն հարաւ կ'ընթանար և որուն վրայ սառերն ալ կը ծածանէին, և թէ այն հոսանքը ուրիշ բան չէր կրնար ըլլալ եթէ ոչ ազատ ծով մը ամենահաւանական կարծեօք։

Դարձեալ 1853ին ամերիկացի Էլիշա Քէն նաւաստին որ և բժիշկ էր, կը մըտնայ Սմիթ նեղուցը, և անընդհատ երկու ձմեռ Ռայսլէր նաւահանգիստը կ'անցընէ՝ որ Բիպօտի ծոցին հարաւակողմը կ'իյնայ։ Այս երկար ժամանակիս մէջ Մորդոն տեղակալը, Էլիշա Քէնի ընկերներէն մէկը՝ Գրէնլանտիացի մը հետը առած բալխիրով կը սկսի դէպ 'ի հիւսիս երթալ։ Երբ կ'անցնի 80դ լայնութեան աստիճանը Մորդոն դիմացը ազատ ծով մը կը գտնէ. կը տեսնէ հոն բազմաթիւ թռչուններ՝ որոնք կը զբօսնուին, և փոկեր՝ որոնք շարժուն սառերու վրայ կը խաղային։ Անկէց բարձրաւանդակի մը վրայ կ'ելլէ և ծաղկած տունկեր կը գտնէ։ Իսկ 1854ին յունիսի 24ին Սահմանադրութեան գլխոյն վրայ՝ որ լայնութեան 81դ աստիճանին տակ կ'իյնայ՝ կը կանգնէ Ամերիկեան նաւուն դրօշը։ Կը տեսնայ որ հիւսիսին կողմը ազատ ծովը աչքէ աներևոյթ կ'ըլլար, և այնպէս կը թուէր որ ձախակողմը, Քէնէտիի արևմտեան ափունքը, լերանց գօտիով մը կը վերջանար, որուն գլխաւոր գագաթը որ գրեթէ 3000 մէտր բարձրութիւն ունէր՝ Մոն-Բարրի ըսուեցաւ։ Քէն ճամբորդութիւնը դէպ 'ի հարաւ կ'ուղղէ, ուժէ ընկած և անօթութենէ կիսամեռ՝ կը հասնի Ուբերնավիք նաւահանգիստը, ուր ամերիկացի նաւ մը զինքը կ'ընդունի. իսկ 1857ին, այս նեղութիւններէն առողջութիւնը խախտուած ըլլալով, կը կնքէ իր կեանքը։

Հիմա լսենք թէ Պ. Լամպէր բևեռային ազատ ծովը մտնելու համար ինչ ճամբայ կ'ուզէ բռնել։ Մի միայն կը համարի Պէհրինկի նեղուցը ինչպէս ուրիշ ծովագիրներ և օտարազգի գիտնականներ ալ։ Պէտք է գիտնանք որ Պ. Լամպէր նաւաստութիւնը սենեկին մէջ սորված չէ, այլ ծովու վրայ իր փորձերովը, և տեսնալէն ետքը իր կարծիքներն ունեցած է։ 1865ին գաղղիական ծովային զօրութեան պաշտօնէին առանձին հրամանաւը մեծ ձկնորսութեան մը համար Հավր պատրաստուած նաւով ճամբայ ելած է, յուլիսի անցած է Պէհրինկի նեղուցը, և 72դ լայնութեան աստիճանէն ալ անդին, և իրեք ամիս այն սառուցեալ ծովափանց մէջ անցնելէն ետքը, իմացած է որ այն կողմէն բևեռին ազատ ծովը մտնելը յուսալի է։ Բայց ո՞ր բանն եղած է իր յուսոյն հաստատութիւն տուողը։ — Երբ ծովափունքի մը դիրքը յարմար է սառոյցներ ձևացնելու, այս սառոյցները ժամանակ անցնելէ ետքը կը սահին իրենց խարսխին վրայէն, և իրենց բնական ծանրութեամբը ջուրին մէջ կ'արձըկուին, ինչպէս նաւ մը թէ որ իր կայանքին բարձրութենէն ծով արձըկուի։ Այս է ահաւասիկ հիւսիսային Եւրոպիոյ և Գրէնլանտիոյ ափանցը վրայ եղած մեծամեծ սառոյցներուն պատճառը։ Թէ որ այս սառոյցները չգտնան բաւական խորութեամբ ջուր որ կարենան լողալ, կեցած տեղերնին կը փակչին և կ'ըլլան մնայուն, ինչպէս շատ անգամ կը պատահի։ Սա-

ռոյցքի մը ջուրի մէջ ընկղմած մասը, ջուրէն դուրս եղածին կրկինն է. բայց մեծամեծ սառոյցներու համար՝ որոնք աւազով խառնուած են՝ այս համեմատութիւնս զգալապէս կ'աւելնայ. ընկղմածին և չընկղմածին բարձրութիւնները այն ատեն այնպէս կը համեմատին իրարու ինչպէս 1 առ 6. այնպէս որ եթէ մեծ սառոյցք մը 100 մէտր ջուրէն դուրս միայ, կրնանք հաստատել որ բոլոր սառոյցքին բարձրութիւնը 600–700 մէտր բարձրութենէ պակաս չէ. և որովհետև ծովափունք մը դըժուար է որ այսչափ խորութիւն ունենայ, անոր համար մեծամեծ և հաստատուն սառոյցներու ներկայութիւնը՝ իրենց մօտերը սառնակոյտ ցամաքներ դուշակել կու տան: Ընդհակառակն երբոր սառոյցքը մի և նոյն տեղը կը ձեւանայ և ծովուն երեսը՝ ան ատեն շատ բարձրութիւն չկրնար ունենալ այն սառոյցքը, և ընդ հակառակն մակերևոյթով կ'ընդարձակի. ուրեմն տարածեալ մակերևոյթ ունեցող սառոյցներուն ներկայութիւնը՝ առանց շատ բարձրութեան, նշան է ընդարձակ մակերևոյթով ազատ ծովու:

« Արդ, կ'ըսէ Պ. Լամպէր, արջային ծովուն մէջ Պէհրինկի նեղուցէն անդին տեսնուած սառոյցները հազիւ մէկ կամ երկու մէտր ջուրէն դուրս բարձրութիւն ունին. իսկ մակերևոյթնին երբեմն ինչուան քանի մը հազարամէտր կ'ըլլայ. այս բանս կը հաստատէ որ կայ ընդարձակ ազատ ծով մը, առանց ցամաքներու, և որ, ըստ ինծ, Պէհրինկի նեղուցէն կը սկսի. և ուրիշ բան չյօժանդակեր՝ բայց եթէ տաներղէն կղզիացեալ ալիքներ և Հեբարտի և Բլէվէրի պէս մանեկաւոր բևեռներ, որոնք բևեռային ծովուն մէջ ամենէն վերջը գտնուած գազաթներն են. մանեկաւոր բևեռ ըսելը ամենաճիշդ է, վասն զի 'ի մօտոյ տեսեր եմ »:

Դառնալով առջի խօսքերնուս, այսինքն Պէհրինկի նեղուցով հիւսիսային բևեռը երթալու մտածութեանը, երկայնութեան 180դ աստիճանէն դէպ 'ի հիւսիս դառնելով, Պ. Լամպէրին առջև ելած դժուարութիւններէն մէկն այս է որ կրնայ ծանծաղուտներու հանդիպիլ, որով նաւերն ալ չկարենան անցնիլ. բայց յետոյ կ'աւելցնէ թէ դժուարին է որ ընդարձակ տարածութեամբ հանդիպին այս ծանծաղուտները. և թէ դարձեալ մեծամեծ սառերը և մշտնջենաւոր սառոյցները, որոնք տարուայն եղանակին համեմատ զանազան կողմեր կը գտնուին՝ կրնան դիմացը արգելք մը դնել. սակայն ան արգելքներն ալ վերցնելու ուրիշ հնարք չգտնար, բայց եթէ վառօդը, որուն գործադրութիւնը և յաջող հետևանքները շատ անգամ տեսնուած են: Պ. Լամպէր այս և ուրիշ նման արգելքները համրելէն և անոնց առջևը առնելէն ետքը, կը համրէ նաև Պէհրինկի նեղուցով հիւսիսային բևեռը երթալու օգուտները. և ատոնցմէ ալ զատ թէ ճամբորդութեան սահմանել նաւը ինչ մասնաւորութիւններ և ինչ յատկութիւններ պիտի ունենայ, որոնց մէ մէկ քանին յիշելը կարևոր կը համարինք:

Հիւսիսայինը (որ է նաւուն անունը) պէտք է որ 600–700 տակառաչափի մեծութիւն ունենայ, ըլլայ լայն կողերով, համեմատութեամբ կարճ, տեղափոխելու յարմար, ջրասոյզ մասը քիչ, ձևը ամուր, գործուածքը ոչ շատ բարակ, կայմերը կարճ և թանձր, առաջքն ալ հաստատուն, որպէս զի կարենայ սառոյցներուն բաղխմանը դիմանալ՝ առանց նաւուն յառաջակողման ողնայարին եղջիւրը խորտակելու: Մետաղէ զրահ մը պէտք է որ ծածկէ բոլոր առջևի մասը, որ ջուրի մէջ պիտի ընկղմի: Պատեանին մէջը պէտք է որ 4 կամ 5 խորշ բաժնուած ըլլայ միջնորմով՝ ընդ երկայնութիւն ձգուած. այս նախազգուշութիւնը անոր համար է որ եթէ պատեանը սառոյցքի հարուածէ ծակուի, և խորշերէն մէկը բոլորովին ջրով գեղանի, դարձեալ նաւը չընկղմի. վասն զի մէկալ խորշերը բաւական են նաւը ջուրին երեսը բռնելու, մինչև որ եղած պատառուածքը գոցուի:

Ասոնցմէ զատ Հիւսիսայինը պէտք է որ նաւաստեաց առողջութեանը ամենէն կարեւոր պայմանները ունենայ։ Բնակարաններին պէտք է որ ըլլայ հովասուն, ընդարձակ եւ ամենայն կերպով մաքուր։ Անձանց առողջութիւնը ապահովցնելու համար ճանապարհորդութեան առաջնորդները ամենամեծ արթնութեամբ պիտի հսկեն իրենց ստորակարգելոց վրայ. եւ ամենայն ջանք 'ի գործ պիտի դնեն, որպէս զի անոնց սէրը եւ վստահութիւնը գրաւեն. այս կէտս, որ քան զամեն բան աւելի կարեւոր է գիտել, շատ անգամ ամենաքիչ մտադրութեան արժանի կ'ըլլայ։

Բայց թէ Հիւսիսայինը ինչպէս պիտի քալէ, քամիին զօրութեամբը՝ թէ շոգւոյն. — Հարցմանս պատասխանելէն առաջ, նշանակելու է որ այս պարագայիս մէջ երագութիւնը երկրորդաբար կարեւոր է. այնպէս որ թէ որ հարկ ըլլայ շոգիի գործածութիւնը թողուլ, ասիկայ մեծ դիւրութիւն եւ մեծ մխիթարութիւն է. իսկ արդ շոգւոյն շարժիչ գործիները որո՞նք են. անիւը եւ պտուտակը. արդ այս շարժիչները՝ որ դըսէն կը գործածուին, սառոյցներուն բաղխմանը ենթակայ ըլլալով ամեն վայրկեան խորտակելու վտանգի մէջ են. ուրեմն զասոնք չենք կրնար գործածել եւ որոնց վրայ մտածելն անգամ աւելորդ է, կը մնայ միայն առագաստը։ Գ. Լամպէր այս հնարքէն զատ նաւը քալեցնելու համար ուրիշ միջոցներ ալ առաջարկելէն ետքը, որոնց վրայ հոս չենք ուզեր քննութիւն ընել՝ ինքն ալ հոն վախճան կու տայ իր խօսքին, որ միայն առագաստով ամենայն վստահութեամբ կրնայ ճամբայ ելլել՝ եւ լուծել այն առեղծուածը որ հիւսիսային բեւեռը հասնելու վրայ է։

Ինքը դարձեալ յետ առաջարկեալ ճամբորդութիւնը դործադրելու համար գործածական միջոցները կարգի վրայ առնելու, կը մտածէ նաեւ միջոցներ՝ գործոյն ծախքը հանելու համար, որոնցմէ առաջինն է Ցէրուրեան ձեռքն տուուրքիւնք. — երկրորդը առանձնականաց ստորագրութիւնք՝ կորուստեամբ գլխոյն. — երրորդը համարակաց ստորագրութիւնք, համոզուցանելով ստորագրելոց իրենց գլուխք ձամբորդութեանն եւ ք, ձամբան արհեստով եւ ձարտարութեամբ ժողովեալ դրամն։

Գ. Լամպէր՝ եթէ չըսենք անկարելի՝ բայց գոնէ շատ դժուարին համարելով առջի երկու միջոցներուն գործադրութիւնը, հասարակաց ստորագրութիւնը կ'ընտրէ իր գործոյն կարեւոր դրամը ժողվելու համար, եւ յուսալի է որ իրեն հասարակաց տուած հրաւէրքը լսելի ըլլայ, եւ թէ Գաղղիա կարենայ պարծիլ որ ընդունայն տեղ իր յոյսը չէ դրած Գ. Լամպէրին վրայ։ Կայսրը իր կառավարեալ հաւանութիւնը տուած է այս առաջարկութեանս եւ 50,000 ֆրանքի ստորագրութիւն մը։

Հասարակաց ստորագրութեան տեղն է Աշխարհագրական ընկերութեան սենեակը։ Բովանդակ ժողվուելու գումարն է 600,000 ֆր. հաւաքուելէն ետքը, Գ. Կուստավոս Լամպէրին խնամոցը տակ, մասնաժողովի մը քննութեամբ, եւ նաւակազմի մը արհեստական գործակցութեամբ՝ զոր նոյն մասնաժողովը պիտի ընտրէ, նաւ մը պիտի պատրաստուի։ Եթէ 1869ին յուլիսի 1ին չըրաւէ ստորագրութեանց բովանդակ գումարը՝ ամենայն ստորագրութիւն անթերի ետ պիտի դարձուի։

Բայց թէ ինչպէս Գարոն Լամպէր 600,000 ֆրանգ պիտի հաւաքէ ճամբան եւ իր ստորագրեալներուն դարձընէ իրենց գումարը. կամ թէ ինչ հանք պիտի պեղէ այն ծովերուն մէջ. թողունք որ նոյն ինքն հեղինակը պատմէ։

«Նաւը սեպտեմբերի ճամբայ կ'ելլայ. Ատլանդականը ծայրէ 'ի ծայր կը կտրէ. ճամբուն վրան կը հանդիպի վիշապաձկան եւ կէտերու բոյներու. ճարտարութեամբ, կամօք եւ յաջողակութեամբ կրնայ Հոռն գլուխք չհասած՝ նաւահանգիստ մը հանդիպիլ եւ մեծ գումար մը աւանդ թողուլ նաւակազմի մը հաշուին, որ պէտք է ձեռնարկութեան ըն-

կեր ըլլայ և դրամագլխոյն տէրերէն որոշեալ։

Հոռն գլխին մօտերը իւղաբեր կենդանին կը սկսի առատանալ։ Նաւը առանց կանգ առնելու դէպ ուղիղ Բոսին նշանեալ ծովափունքը կ'երթայ, ընդ մէջ հարաւային 72 և 78 լայնութեան աստիճաններուն։ Ինքը միայն հոն գացած և տեսած է կէտերուն ըզբօսնուլը։ Իրեն պէս պէտք է սառոյցները բռնագատել և յառաջել դէպ 'ի հարաւ։ Մէկ երկու ամենէն ետքը պէտք է Օքլանտ կամ Սիտնէյ դառնալ 4–500,000 ֆրանքով. երկուքն ալ նորաշէն և մեծամեծ կեդրոնատեղիներ են 100,000 բնակչօք, և այն գումարը հոն 'ի պահեստի դնել»։

Անկէ մտնալ խաղաղական, և բոլոր քիչ քննուած արշիպեղագոսներէն անցնիլ. կարևոր քննութիւններ ընել, արևով նկարել ամեն մոռագրութեան արժանի բաները. դարձեալ միշտապաձուկն որսալ՝ որ բուն այրեցած գօտւոյն կենդանիներէն է և յունիսի Պէհրինկի ծովը մտնալ, և յուլիսի սկիզբներն ալ նեղուցը մտնալ փորձել։

Արթուն առաջնորդ մը պէտք չէ որ Արջային ծովէն դուրս ելլէ առանց 300,000 ֆրանքի շահ ունենալու. ամերիկացի քաջ նաւապետները 12–1500 տակառ եղը կիտին մօրուքն ալ (fanon) մէկտեղ առած, պզտի շահ մը կը համարին. ոմանք ինչուան 20 կէտ կը բռնեն, որոնցմէ եղած վաստակն է գրեթէ 500,000 ֆրանք։ Իսկ բևեռին ազատ ծովը առաջին մտնողը կրկին յաջողութիւն կ'ունենայ՝ վասն զի մինչև հիմայ մարդ գացած չէ հոն։

«Առագաստաւոր նաւու մը ճամբայ բռնալ աւելի դժուարին է, և աւելի յանդգնութիւն քան թէ շոգենաւու մը. կ'ըսէ Պ. Լամպէր. բայց ես կամ պիտի անցնիմ, և կամ հոն պիտի մնամ. ընկերներս ինծի պէս աներկիւղ են այս մտաւորական և երևակայեալ վտանգէն։ Այս բանս քաջութեան և կամաց խնդիր մ'է և ոչ ուրիշ բան»։

Հոն ձմեռելը պիտի հակառակի դրամական վախճանին. որովհետև հազարին 995 հաւանականութիւն կայ որ Հիւսիսայինը ամիս մը միայն բևեռին ազատ ծովուն մէջ կենալէն ետքը անբաւ բարեօք պիտի լեցուի. այն ատեն յետ իր ուսումնական աշխատանքը լմնցնելու կրնայ փորձել Նոր Զելանտայի անցքը, և դեկտեմբերի սկիզբները Գաղղիա դառնալ Պէհրինկի նեղուցը անցնելէն չորս կամ հինգ ամիս՝ և իր բուն նպատակին հասնելէն ետքը, որ են ուսումնական քննութիւններ և դիտողութիւններ. վասն զի շահը ուրիշ բանի համար չէ բայց եթէ անով դրամագլխոյն տէրերուն վնասը հատուցանել։

Հ. Ս. ՀԷՔԻՄԵԱՆ

---

## Վեսուվի վերջին բորբոքումն.

Իտալիա մինչդեռ անցեալ տարւոյն վերջին քառորդին, ինչպէս ուրիշ տեղեր ալ, մարդիկ շարժման մէջ էին, շատ անգամ անհիմն բանի համար, Վեսուվ լեռն ալ կարծես թէ առանց օրինակին հետևիլ ուզելով, որպէս զի իրեն անունն ալ չմոռցուի, բացաւ չորս կամ հինգ բերան և իմացուց ամենայն աշխարհի որ բոլորովին լռիկ դիտող չէ, ինչպէս կ'ենթադրուէր, իր հայրենակցացը մէջ պատահած դէպքերուն։

Անցեալ Նոյեմբերի գիշեր մը Վեսուվի վրայ նոր խառնարան մ'ալ բացուեցաւ, նախընթաց տարւոյն ձևացած երկու կոներուն աջակողմը. նմանապէս ուրիշ խառնարան մ'ալ լաւա դուրս տալով բացուեցաւ մեծ կոնին ներքին կողմէն։ Նոյն ուղղութեամբ և ճիշդ նախընթաց տարւոյն լաւայի դաշտին վրայ ուրիշ երկու փոքրիկ նոր բաժակներ ալ բացուեցան որ բազմաթիւ քար կ'արձակէին օդուն մէջ։ Կոնը ներքին դղրդմանէ մը շատ տեղերէ պատռուած կը կարծուի։

Նոյեմբերի տասնըվեցին և տասնըեօթին գիշերները բորբոքումը հետզհե֊

տէ անձրեւ, խառնարանը լեցուած էր եռացեալ լաւայով. հինգ կոն բազմութիւն քարերու վեր կը նետէին: Լաւայի հեղեղներէն մէկը կը վազէր 1855ի հեղեղին ուղղութեամբ, և գրեթէ չորս հարիւր տասը ոտք բարձրութենէ վար կը թափէր հովտի մը մէջ ամենասքանչելի տեսարան մը ձևացընելով:

Կոնին գագաթէն սկսելով, խառնարանին շրջապատն էր գրեթէ երկու հարիւր մեթր անցեալ յունիսի չափուց նայելով, և եզերքները այլ և այլ պատառուածներ եղած են: իսկ խորութիւնը անկարելի է ճշդութեամբ ըսել, բայց հարկ է որ նշանաւոր ըլլայ, որովհետև կ'ըսեն որ բորբոքման ատեն գագաթէն քսան կամ երեսուն ոտք խորութեան մէջ լաւան կ'եռար: Ուրիշ անգամ խառնարանին կեդրոնը ծակ մը միայն կար՝ որ ծծմբային շոգի կ'արտաշնչէր, և կարելի էր ինչուան ծակին բերանը իջնալ. իսկ հիմա ամեն բան փոխուեր է, տեղւոյն տեսքն ալ, և հոն դարձեալ իջնելու դիւրութիւնն ալ:

Նոյն կեդրոնին վրայ ալ ուրիշ կոն մը ձևացած է, որուն գագաթը հեռուէն դիտելով մեծ կոնը կը կարծուի, որ խարտակեցաւ և լաւա դուրս կը ժայթքէր, և որուն իւրաքանչիւր բացուածքը և իւրաքանչիւր ծակը նոր խառնարան ձևացան: Այս պատառուածներուն թիւը ամեն ժամ կը փոխուի, վասն զի լերան հրաբղխային զօրութիւնը անդադար նոր ճեղք կը բանայ, այլ և այլ նիւթեր դուրս տալով:

Քանի մը օրուան մէջ բոլոր կեդրոնական կոնին և չորս քովի եղած փոքր խառնարաններուն դուրս տուած նիւթերը վազեցին մեծ խառնարանին մէջ մինչև լեցուցին զայն, և կրակէ լիճ մը փոխեցին: Տեղ տեղ լաւան ափունքներէն դուրս յորդելով՝ քանիէն ինչուան երեսուն քայլ երկայնութեամբ պատառուած մը բացաւ Օդդայանոյի կողմը, որ սովորական դիտակով կը տեսնուի Պոմպէյայէն:

Աւերմունք հասցընելու երկիւղ մը չկար այս անգամ. ընդհանրապէս գագաթէն սկսող հրաշնչութիւնը մեծամեծ աղէտք չպատճառեր. հեղեղը նոյն երկրին բնակեալ մասին և միջակեալ դաշտերուն հասնելու համար շատ երկար միջոց կ'ուզէ որ կարէ անցնի. Նոյն իսկ այն հեղեղէն դիզուած մեծամեծ արգելքները չեն թողուր իրեն երագ ու երկայն ընթացք մը առնելու: Բայց սակայն ան ատեն վտանգաւոր է, երբ հրաբղխային ուժը կոնին ստորոտը պատառուածք կը բանայ, որով այգիները կ'այրին և տուները կը կործանին. և այն ատեն կը տեսնուին ահագին տեսարաններն որ շատ անգամ ստորագրուած են պատմութեանց մէջ: Լաւային ժայթքումները լերան գագաթէն, ինչպէս այս անգամ, պարզ ճիգն մըն է զոր կ'ընէ լեռը վրայի նիւթերը թեթևցընելու համար, որոնցմով ինչուան բերանը լեցուեր է:

Լաւայէն զատ մանր քարեր, զոր փրփուր (schiuma) կը կոչեն, հով չեղած ժամանակ մինչև հարիւր մեթր բարձրութեամբ օդուն մէջ կը նետուին, դուրս ելլալու ատեն բոլորովին կարմիր կրակ են, բայց օդուն հաղորդութեամբ մէկէն կը սևնան: Բոցը, որչափ որ հեռուանց կարելի է դատել, քսան մեթրի չափ կը բարձրանայ:

Այս հրաշնչութեան կարապետ քիչ նշաններ երևցան Ռէզինա գեղը այս անգամ, վասն զի այնչափ սաստիկ չէր: Կ'ըսեն որ երկու տարուընէ 'ի վեր սաստիկ ցամաքութիւն եղած էր այս տեղ: Դարձեալ գիտեր են որ բորբոքման նախընթաց գիշերը Ռէզինայի հաւերը իրար անցեր են, և իրենց թառերէն վար ցատկեր են, որ ըստ տեղացւոց ապահով նշան մըն է մերձաւոր պատահարաց: Նաբոլիի մէջ շատ տուն կարասիներն իրենց տեղերնէն շարժեր են:

Շատ տարիներու փորձերուն նայելով կը կարծուի թէ այս անգամ հրաշնչութիւնը երկայն պիտի տևէ, թէ որ լեռը մէկէն չդադրի իր մեծ, ահաւոր և աւերիչ պատառուածներէն մէկուն մէջ առնելով բոլոր շրջակայ եր-

կերը ։ Բայց հաւանականաբար այսպիսի դժբաղդութիւն պիտի չպատահի, որով ճանապարհորդք մեծ առիթ պիտի ունենան այս սքանչելի ու ահաւոր տեսարանը դիտելու ։

Ամբողջ առաջին շաբաթը լեռն այնպիսի հետաքրքրական տեսարան մը կ'ընծայէր մարդկան, որ անկարելի էր Նաբոլի պատուհանի առջեւէն հեռանալ երբ կէս գիշեր կը մօտենար ։ Հրաբուղխը կ'ուռէր, և յանկարծակի հրահալեցեալ և մոխրի հեղեղ մը յերևան կու գար, որ բոցավառ վար կը թափէր ։ Գիշեր մը ամենէն գեղեցիկն էր, երբ լաւան ափունքներէն դուրս զեղլով կ'իջնար դէպ 'ի ձախ, որ տեսանելի էր Նաբոլիէն ։ Յաջորդ գիշերը թանձր ամպերով պատած էր լեռն և գագաթան վրայ որոտմունք և փայլատակմունք կ'ըլլային, բայց երբեմն երբեմն կը տեսնուէին աղօտ լուսոյ պայծառութեամբ թուխ ամպերուն ծայրերը, ինչպէս նաև երկինքն՝ որ հրաբղխային կրակէն մութ կարմիր գոյն մը առած էին ։

Վերջին օրերն ընկերութիւն մը միացաւ լերան վրայ ելլալու. արժան կը համարինք իրենց վեր ելլալուն նկարագրութիւնը հոս դնելու ։ « Մեծ կոնէն վեր ելլել սկսելու ժամանակնիս, կ'ըսէ անոնցմէ մէկը, լեռը կը դողար ու կը շարժէր, և նոյն ատենը որոտմունք մը լսեցինք, հրագինուց արձակման նըման, և անոր ետևէն խուռն բազմութեամբ քարեր և լաւան վեր նետուեցան ։ Քարերէն ոմանք՝ եթէ չեմ սխալիր, կը կշռէին հինգ հարիւր հազարակրամ, և ատոնք բարձրանալէն վերջը՝ դարձեալ կ'իյնային և լերան զառ 'ի վայրէն վար կը գլորէին ։ Իսկ այլ փոքրագոյնները լաւայով հանդերձ մոխրով և հրով հազար ոտքի չափ վեր ձգուելէն ետև կ'ընկնէին մեր չորսդին վտանգաւոր մերձաւորութեամբ ։ Երակէ ծով մ'էր գագաթան վրայ՝ որուն մօտենալն անկարելի էր, Օտտայանոյի կողմանէ դուրս զեղլով՝ կ'իջնէր լերան ստորոտը ։ Երևակայեցէք եռացող ու մռնչող զանգուած մը՝ եօթանասուն ոտք տրամագծով, ըստ ոմանց աւելի ևս, որ վեր կը բարձրանայ մակընթացութեամբ առանց տեղատուութեան, և միշտ նոր կործանմունքներ յառաջ բերելով ։

« Քիչ մը վերջը պարզեցաւ երկինքը և հիւսիսային արևելեան զով քամիով մը թանձր ծուխը սկսաւ պտուտկելով վեր բարձրանալ ու դէպ 'ի հեռուն ձգուիլ ։ Մխոյ այս երկայն սիւնը չեմ գիտեր քանի ձիոյ ուժով շոգենաւու մը զօրութիւն ունէր, որ արագ արագ անցնելով Նաբոլիի խորշին վրայէն, և ծովեզերաց վրայ եղած ամեն գիւղերուն և հիւղերուն իմաց կու տար իրենց լերան բորբոքումն ։

« Շատ հետաքրքիր մարդիկ ընկերութեամբ ամէն գիշեր լեռ կ'ելլէին, և հեռուանց կը տեսնուէին իրենց ջահերը փոսաւաններու նման փայլելով. բայց հարիւրաւոր և հազարաւոր մարդիկ ալ անհիմն վախերով հեռու կը կենային ։ Այս ընկերութիւններէն մէկը գիշեր մը նորէն լեռն ելաւ առանց միտք դնելու յորդ անձրևին, և ըստ կարի գագաթին մօտեցաւ. լաւայի մեծ հեղեղն ահագին կերպով ուռած դէպ 'ի Օտտայանոյ կ'իջնար, քառասունէն ինչուան յիսուն ոտք լայնութեամբ, և տասնըհինգէն մինչև քսան ոտք խորութեամբ ։ Այն հեղեղէն հինգ կամ վեց հրեղէն գետակներ կը բաժնուէին, ձեռաց հինգ մատներուն նման տարածուելով ։ Մէկէն ինչուան հինգ մանրերկրորդ միջոց լեռը կը դողար ու կ'որոտար, և բորբոքեալ հրեղէն զանգուածներ դէպ 'ի վեր կը ժայթքէր մինչև հազար ոտք բարձրութեամբ ։

« Նաբոլիէն դիտելով այս տեսարանը հրեղէն սահանքի մը կը նմանէր ու հրախաղութեանց մէջ կը ներկայացուի, բայց այսպիսի սահանք մը ոչ երբէք մարդկային ձեռքը կարողացած է յօրինել ։ Կարծես թէ բիւրաւոր աստղք վար կը թափէին. բայց աւելի մօտենալով կը տեսնուէին որ այն անհամար մանր աստղերն ուրիշ բան չէին, բայց եթէ քարեր կամ ժայռի կտո-

րուակք էին հինգ հարիւր հազարակրամ ծանրութեամբ ։

« Գիշերանց Նաբոլիի կողմանէ այս բորբոքման գեղեցկութիւնը երթալով կ'աճէր. վասն զի լուսան Միայնոցին ետեւէն խառնարանը պատռեր էր, անոր համար աւելի պայծառ կը տեսնուէր անոր հրեղէն օձապտոյտ ընթացքը ։ Սքանչելի տեսարան մ'էր, և հազարաւորք վկայ եղան անոր ։ »

---

## Ալպեանց գետնափոր երկաթուղին ։

Դարուս նշանաւոր ձեռնարկութեանց մէկն ալ է Ալպեանց գետնափոր երկաթուղին, որով Իտալիա պիտի միանայ Գաղղիոյ հետ, և որուն յաջողութեանը բազմաթիւ դժուարութիւնք ընդառաջ կ'ելլէին, որոնց յաղթելն ապահով չէր, եթէ ճնշուած օդոյն գործածութիւնը չըլլար ։ Երկու կողմանէ միանգամայն ձեռք զարնուեցաւ լերան հողը պատռելու ջրաբաշխական մեքենայի մը զօրութեամբն, որ շտեմարանելով ճնշուած օդը ամէն դի կը բաշխէ զայն առատապէս ուր օդոյ անբաւականութիւնն զգալի է ։

Մօտանէն սկսեալ մինչև ցՊարտոնէշ գետնափոր ուղին կը կտրէ կ'անցնի բարձրածայր լեռ մը, որ կից է Սընի լերան, և որուն խարխուխը Գաղղիոյ կողմանէ 104 մէդր բարձր է հասարակաց ճամբուն երեսէն, իսկ Իտալիոյ կողմանէ միայն 50 մէդր գետոյն երեսէն ։ Մէկ կողմանէ հինգ հազարորդամէդր զառ 'ի վայր է, և միւս կողմանէ քսանուերեք հազարորդամէդր ։ Բացուածքն է երեսուն մէդր, կրկին երկաթուղի ունի. և կրկին անցուդարձի ճամբայ, և երկայնութիւնն 12,220 մէդր ։

Այս անցքը բացողը պատռաւարիչ (perforateur) գործի մըն է, որ երկաթէ երկայն վանդակի մը նմանութիւն ունի, ուսկէ դուրս կը յարձակին ութ տէգ, որոնք իրենց սուր ծայրերովը կը վիրաւորեն զժայռը. ետևնէն ջրբուղխ մը կ'երթայ, որ ժայռին հարուածքը կը լուանայ ։ Եթէ տէգերէն մէկն յանկարծ կոտրի, աշխատութեանն ամենևին արգելք չըբերէր, միւս եօթն անդադար կը շարունակեն իրենց պաշտօնն. առ իւրաքանչիւր ժամ մէդր մը տեղ ծակելով, և այսպէս ականին ծակերը բանալէն ետև, վառօդ կը լեցունեն մէջն, ու մեքենայն ետ քաշելով՝ կրակ կու տան վառօդին ։ Այս կերպով ականը ճաթեցունելէն ետև, աւերակները կը մաքրեն, և զանոնք շոգեկառօք լերան զառ 'ի վայրէն դուրս կը թափեն ։ Անկէ վերջը տախտակամած կը կանգնեն կամարը կոփելու համար՝ եթէ կարծր ժայռ է, կամ որմով պատելու՝ եթէ փխրուն թերթաքարէ կազմուած է ։ Այս ետքի պարագայիս մէջ գործը կ'երկարի ։

Ութ ժամ պէտք են բոլոր այս գործողութիւնները կատարելու համար, որով ամէն ութ ժամը մէյմը, այսինքն գործաւորաց իւրաքանչիւր փոխուելուն, լերան երկու կողմէն պէտք է 75 հարիւրորդամէդր առաջ քալել, որ է ըսել օր ըստ օրէ 4 մէդր և 50 հարիւրորդամէդր ։ Եւ իրօք 1867 տարւոյն ընթացիցը մէջ ճիշդ 1511 մէդր ծակուած է, իսկ 1868 տարւոյս յունուարի վերջը Պարտոնէշի կողմանէ 4778 մէդր առաջ գնացած էր, և Մօտանի կողմանէ 3174 մէդր. որով երկուքը միանգամայն կ'ընեն 7952 մէդր ։ Բոլորական երկայնութիւնն ըլլալով 12,220 մէդր, կայ դեռ ևս ծակելու 4268 մէդր ։

Երեք տարուան մէջ ճշդիւ 'ի գլուխ պիտի հանուի այս գործը, տարին 1511 մէդր հաշուելով, ինչպէս եղաւ անցեալ տարի (1867) ։ Մինչև հիմա լերան մէջ ամենևին չեն հանդիպած անյաղթելի արգելներու կամ վտանգաց, որոնց վրայ 'ի սկզբան կը կասկածէին. ոչ անդունդք, ոչ հրաբուղխք, ոչ ջրաշեղջք, և ոչ իսկ կործանմունք մինչև հիմա ընդառաջ ելան ։ Սընի լերան լիճն ալ 40 հազարամէդր հեռու է ։

Ըսինք թէ պատառիչ գործին ճնշուած օդոյ մեքենայով կը շարժի։ Այս մեքենային հեղեղատի մը ջրէն կ'առնու իր շարժումը, ճնշուած օդը կը պատրաստէ, կը բարձրացունէ զայն և Մօտանի կողմէն կը հանէ մինչև 104 մէտր բարձրութիւն, և կը տանի 4000 մէտր հեռաւորութիւն։ Այս ճնշուած օդը կը ծառայէ միանգամայն թէ իբր սնունդ, և թէ իբր շարժիչ։ Մխոցի մը վրայ կ'ազդէ շոգւոյ նման, և ամէն հեռաւորութեամբ կրնայ երթալ ու բաշխուիլ ըստ պատշաճի յարմարցուցած խողովակներով։

Լերան փորն աշխատող գործաւորաց կացութիւնը շատ առողջական չէ, անոր համար ամենայն կարելի զգուշութիւնք կ'ըլլուին արուեստական մթնոլորտի ճնշառութենէն առաջ եկած հիւանդութեանց դէմը առնելու համար։ Այս դիտմամբ օդահան գործի մըն ալ հնարուած է, որ ականաց բռնկելէն ետև առաջ եկած անշնչելի կազերը, ինչպէս նաև կանթեղաց ծուխն, հետզհետէ դուրս կը քաշէ. և վերն յիշուած ճնշող մեքենային միջնորդութեամբը մթնոլորտին մաքուր օդը ներս գալով՝ ոգի կու տայ անդադար աշխատաւորաց։

Գործը մեծ փութով առաջ կ'երթայ, ձմերային խիստ եղանակին ժամանակ եղած յետամնացութիւնքն ալ շուտով կը լեցուին գարնան անուշ եղանակին եռանդուն աշխատութեամբքն։ Գարտոնէշի կողմանէ ստորերկրեայ անցքին բացումն աւելի հեշտ է քան զՄօտանի կողմանէ, հետևաբար այն դիէն, այսինքն Իտալիոյ կողման երեսէն եղած գործը աւելի շուտ կը յառաջէ, բայց և այնպէս Գաղղիոյ կողմէն եղած դժուարութիւնքը դետնափոր երկաթուղւոյն կատարումը սահմանեալ ժամանակէն անդին չեն անցուներ. ուստի առ առաւելն ասկէ երեք տարիէն կ'աւարտի այս մեծագործ ձեռնարկութիւնը։

## ԻՄ ՎԱՆՔՍ

Դրաբեանի մը անտիպ յիշատակագիրք։

(Տես երես 55)

### Գ.

Սովորութիւն ունէի ամէն երեկոյ մօրս և կարոլինայի հետ եկեղեցին երթալու։ Այն իրիկունը մայրս չկրցաւ տունէն ելլել, որովհետև այն խաթունին հետ գործվանոց կը հսկէր աղջկան օրօրոցին քով, որ կենաց վերջերն հասեր էր։ Բայց ինծի ըսաւ որ ժողովրդապետին երթամ՝ այս դժբաղդութիւնը իմացնեմ և աղաչեմ որ ողորմութիւն մը ընէ և գայ խեղճ կարոլինան օրհնէ։

Երկու անգամ զուրցել չտուի. և շիտակ դէպ 'ի ժամատուն վազեցի։ Դռնեկին առջևէն անցնելու ժամանակս՝ ձիով մարդ մը կը տեսնեմ որ ճամբուն վրայ վեր վար կ'երթայ կու գայ։ Թէպէտ երկինքն սկսեր էր մթննալ, բայց կանկ առի որ տեսնեմ թէ ով է։ Ան ինչ զարմանք ունեցայ, երբ տեսայ թէ այն անձն է որ զխեղճ կարոլինան այնչափ չարչարեց, և ուսկից քանի մը վայրկեան առաջ երդուընցեր էի վրէժս հանելու։ Այն որ տեսայ, արիւնը երակացս մէջ խառնուեցաւ. բարկացայտ և կրակոտ աչքերս վրան տնկելով, ըսի մտքէս. Տես ահա, ինքնիրեն դիմացս կ'ելլէ. առիթը պէտք չէ փախցընել. ով գիտէ մէյմ'ալ երբ ասկէ աւելի վրէժխնդրելու յարմար ատեն պիտի հանդիպի։ Բայց սակայն, հարցուցի ինքնիրենս, արդեօք ինչ պէտք է, կամ ինչ կրնամ ընել իրեն, այս վրէժխընդրութեան կատաղութիւնս յագեցնելու համար։ Վարանեալ և տարակուսեալ մնացի. իրաւ կիրքն իմ մատաղ սրտիս տակն ու վրայ կ'ընէր և կը տիրապետէր, բայց կրնամ ըսել որ չարութիւն և ոճրագործութիւն՝ զայն 'ի գործ դնելու միջոցները դեռ չէին ազդած։

Աչքերս չորս կողմս դարձուցի, որ տեսնամ թէ ինչ կայ որ իմ վրէժխնդրութեանս գործի կարենայ ըլլալ. բան մը չգտայ. միայն անդադար գլխս վրէժ խնդրելու գրգռող ներքին ձայն մը կը լսէի, առանց այս խորհուրդս 'ի գործ դնելու կերպ մը ցուցընելու ինծի։ Անիկայ ինծմէ քիչ հեռու՝ անտարբերութեամբ ու ապահովութեամբ առջևէս կ'անցնէր ու կը դառնար. կարծես թէ կը սպասէր որ վրան յարձըկիմ ու վրէժս հանեմ։

Չեմ կրնար խօսքով բացատրել իմ կրիցս արծարծման և զայն յագեցնելու միջոցներուն բացարձակ պակասութեանց մէջ եղած կռիւը։ Անոր դէմ ատելութիւնս ու բարկութիւնս կը սաստկանար. և միանգամայն մահուան դուռն հասած կարոլինայի պատկերը կը խռովէր գլխս և կը կատղեցնէր. կրիցս պատճառը աչքիս դիմացն էր. մինակ էինք, դաշտի մը մէջ, և գրեթէ գիշերուան մութ խաւարին ներքևը։ Ամեն բան մէկ տեղ եկած էր իմ սոսկալի և պատրաստ վրէժխնդրութիւնս դիւրընցնելու. ես միայն կերպով մը գործադրութենէն կը պակսէի. ամէն բան ինծի կ'օգնէր և կը նպաստէր, բայց ես անգործ և անտարբեր կեցեր էի։ Չէի գիտեր ինչ ընելիքս. բայց և չէի ուզեր իմ գժնդակ խորհուրդս մէկդի թողուլ. կրկնակի նեղուած էի՝ կրից գրգռմունքէն, և այնչափ նպաստաւոր և անակընկալ պարագայից մէջ վրէժ խնդրել չկարենալուս կատաղութենէն։

Այսպիսի վարանմանց մէջ յանկարծ միտքս եկաւ մօրս յանձնած գործը. որով անձկութեան և անստուգութեան վրայ ուրիշ նոր պատճառ մ'ալ աւելցաւ, իմ տարտամութիւնս և դառնութիւնս սաստկացնելու։ Այս մտածութիւնս ինծի ազդեց և որոշել տալու որ ուրիշ վայրկենի թողում իմ վրէժխնդրութեանս կատարումը։ Կը դառնամ դէպ 'ի եկեղեցին երթալու. և դառնալուս ժամանակը՝ խոշոր քարերու կոյտի մը կը հանդիպիմ։ Նոյն վայրկենին ալ ձիուն քալելու ձայնը կը լսեմ, որ ինծի կը մօտենար։ Կը կենամ, և նիւթական թերևամբ մը կ'առնում ան քարերէն մէկը և ճամբուն դարձուածքին վրայ բուսած թփի մը ետև կը պահուըտիմ։ Քանի մը վայրկենէ ետև անիկայ դիմացս էր։ Ինչպիսի սոսկալի փորձութիւն։ Ո՛չ. չեմ կրնար դիմանալ. ձեռքս կը վերցնեմ և բոլոր ուժովս քարը ետևէն կը նետեմ. վերջը երկրորդ մ'ալ կ'առնում, և նոյն սաստկութեամբ վրան կ'արձըկեմ. վերջը երրորդ մը և չորրորդ մը, և այնպիսի բարկութեամբ և կատաղութեամբ որ աղէկ չէի իմանար թէ արդեօք ճիշդ կը զարնէի։ Այս ընելէս ետև, սկսայ փախչիլ արագութեամբ, առանց գիտնալու թէ ուր կ'երթամ։ Ցատկտելով և վեր վար, շիտակ և ծուռ կ'երթայի, մերթ քարի և մերթ ծառի զարնուելով, փոսեր ցատկելով, ճիւղեր խլելով, և ծաղկըներ ու ակօսամէջներ կոխելով։ Արդէն գիշերուան մութը պատեր էր. չորս կողմս եղած բաները հազիւ կը տեսնէի, և խենթի պէս կը վազէի առանց նայելու թէ ուր կը գնեմ ոտուըներս և ուր կ'երթամ։ Ինծի անանկ կու գար որ մէկու մը ետևէ վազողի աղաղակելու պէս հեռաւոր և խառնակ ձայներ կը լսէի. և երբեմն անանկ կ'երևար որ ետևէս վազող արագընթաց ձիու մը քայլերուն ձայնը կ'առնէի. և միշտ գլխս իմ թշնամիէս և ուրիշ իրեն օգնութեան կանչածներէն հալածուած և փնտրուած կը կարծէի։ Ճակտէս պաղ քրտինքի կաթիլներ կ'իջնային. վախէս ու յոգնութենէս կը նուաղէի. ալ ծնկուըներս զիս չէին բռներ, և երկու անգամ բոլորովին թուլցած և տկարացած՝ երեսի վրայ գետինն ինկայ։

Չեմ կրնար ըսել որչափ ատեն այդ կերպով վազելով անցուցի. կամաց կամաց վազելս դադրեցուցի, և ալ չկարենալով ոտքի վրայ կենալ, ինկայ գետնին վրայ, կռնակս խոշոր ծառի մը կռթնցուցած։ Ականջս կ'երկընցնէի որ լսեմ թէ ինծի մօտ մէկ մը կա՞յ. բայց այն ահաւոր միայնութեան մէջ՝ խորին

լուսութիւն մը կը սփռէր ։ Ես ուր եմ, կը հարցրնէի ինքնիրենս ։ Ամենայն կողմ կը նայէի, բայց հազիւ ինծմէ քանի մը քայլ հեռու կրնայի տեսնալ ։ Ինծի կ՚երեւնար որ անտառի մը մէջ եմ. բայց ոչ ուր ըլլալս, և ոչ ուր երթալիքս գիտէի ։ Երկայն վազելէս՝ գժուարութեամբ շունչս կ՚առնէի կու տայի. սիրտս սաստիկ կը զարնէր, և ընդհանուր ուժաթափութիւն մը զիս գրեթէ կեցած տեղս անշարժ կը թողուր ։ Տըխուր մտածութիւններ վախով պատեցին զիս, և դառն անձկութեամբ պաշարեցայ ։ Կը մտածէի մօրս ցաւը՝ իմ տուն չդառնալս տեսնելով, և զիս աւելի տրտմեցնողը ա՛լ զկարոլինա չկարենալ տեսնելս էր ։ Թերեւս, կ՚ըսէի մտքէս, այս վայրկեանիս ինքը կը մեռնի, և մէկ մ՚ալ պիտի չտեսնեմ զինքը ։ Ո՛վ գիտէ խեղճը ինչպէս զիս կը փնտրէ, և ինչպէս ցաւած պիտի ըլլայ՝ զիս օրօրոցին մօտ չտեսնելու ։ Եւ այսպէս ըսելով սաստիկ արցունք կը թափէի ։

Գիշերուան ցուրտը, յոգնածութիւնն ու անձկութիւնը սկսան սաստիկ տագնապել զիս. չէի գիտեր ինչ ընեմ ։ Չէի կրնար որոշել որ մնամ, և ոչ կըրնայի հաստատել միտքս՝ որ անկից երթամ, ուր դառնալիքս լաւ չգիտնալով ։ Երկինքէն անձրեւի խոշոր կաթիլներ իյնալ սկսելով, որոշեցի որ տեղէս շարժիմ և ապաստանարան մը փնտռեմ. անձրեւէն ազատելու համար ։ Կամաց կամաց ելայ վեր, և այն մթութեան մէջ քալելով ապաւէն մը կը փնտռէի, որ կարենայ պաշտպանել զիս անձրեւէն որ հեղեղի պէս կը թափէր ։ Երկայն շրջաններէ ետև, ցրտէն բոլորովին սառած և անձրեւէն ջուր կտրած, ժայռի մէջ փորուած քարայրի պէս բան մը զարկաւ աչքիս ։ Կը մօտենամ, և իրաւցնէ մթին մէջ հազիւ կը տեսնեմ կամարաձև խոռոչի պէս բան մը. այնպէս ցած, որ կարճահասակ մարդ մ՚ալ ոտքի վրայ չէր կրնար կենալ մէջը ։ Արդէօք այս ինչ պիտի ըլլայ, կ՚ըսէի ինքնիրենս ։ Խարխափելով ան մութ կամարին տակը առաջ գացի, և տեսայ որ քիչ մը դէպ ՚ի խոր կ՚երթար ։ Հոս ասոր տակը չանձրեւէր իրաւ, ըսի մտքէս, բայց այս բաւական չէ ։ Կրնայ անձրեւէն աւելի չար բան մ՚ ըլլալ. Թերեւս գայլու կամ ուրիշ գազանի խշտի է, որ ինչպէս ինծի զուրցուած էր, մեր գեղին մօտիկ անտառներուն մէջ կը թափառէին ։ Ինչպիսի սոսկումն բերաւ ինծի այս մտածութիւնը ։ Բայց այնու հանդերձ հոն տակը կեցայ, և ամէն կողմ ականջս դնելով որ լսեմ թէ արդեօք հոն որջացեալ կենդանի մը կայ, ինծի կ՚երեւար որ բոլորովին մինակ ըլլամ ։ Բայց ուզեցի դեռ աւելի ներս մտնել, վասն զի անձրեւին ցայտերը քարայրին ինչուան բերանը կը հասնէին ու կը թրջէին ։ Բայց հազիւ քանի մը քայլ ըրի, կարծես թէ նոյն քարայրին մօտերը և նոյն ուղղութեան վրայ մարդու քայլերու շշնկոց մը լսեցի ։ Երկու ոտքի վրայ կանգ կ՚առնում և ականջ կը դնեմ որ մտիկ ընեմ թէ արդեօք իրաւ բան՝ թէ չէ իմ երևակայութիւնս էր ։ Այժ իրաւ էր. շշնջիւնը երթալով զգալի կ՚ըլլար և կը մօտենար. մանաւանդ թէ ինծի մարդու ձայն ալ լսելու պէս եկաւ ։

Ո՛վ Տէր, կանչեցի մտքէս, յայտնուեցայ ։ Ո՛ւր պիտոր պահուըտիմ, թէ որ ասոնք յանկարծ այս քարայրին մէջ մտնեն ։ Այս ըսելով՝ մէկ կողմ քաշուեցայ, ինչուան որ կրցայ ձեռքովս այն մութ տեղւոյն մէկ պատին դպչիլ ։ Որչափ որ կրցայ դէպ ՚ի վար վար խոթուեցայ, և գրեթէ շունչս բռներ էի որ, չըլլայ թէ, չըսեմ տեսնուիմ, հապա ձայնս իմացուի և յայտնուիմ ։ Մէյմ՚ ալ քանի մը վայրկեանէ վերջը երկու մարդ, խոշոր և մթնագոյն վերարկուի մէջ փաթթուած, ձեռքերնին ալ փառած լապտեր մը, քարայրին բերանը կ՚երևան ։ Երբ հոն կը հասնին, կանգ կ՚առնուն. լապտերը բռնողը՝ գետինը կը դնէ զայն, և գրեթէ բոլորովին կը գոցէ, միայն պզտի լոյսի ծակ մը թողլով որ այն խոր մթութիւնը քիչ մը լուսաւորէ ։ Իմացայ որ արդէն սկսած խօսակցութիւն մը առաջ կը տանէին.

երկուքն ալ սաստիկ բռնկած էին, բայց խօսածնին չէի հասկընար, որովհետև ցած ձայնով կը խօսէին աւելի։ Բայց ինծի բոլորովին անծանօթ և խորհրդաւոր բառեր կրկնելնին առէպ կը լսէի. երբեմն երբեմն մէյմը մէկալին բերնէն Աստուծոյ և Քրիստոսի դէմ կատաղութեամբ ելած հայհոյութիւնք և անէծք կը լսուէին։ Ասոնք ծով պիտի ըլլան, կ'ըսէի մտքէս, և ինչ կ'ուզեն։ Արդեօք ինծի պէս անձրևէն պաշտպանուելու համար հոս ապաւիներ են։ Ան ատեն կրնամ խնդրել իրենցմէ որ օգնութիւն մը ընեն ու զիս տուն տանին։ Բայց ներքին ձայն մը ինծի կ'ըսէր որ անոնց չվստահիմ, և թէ անոնցմէ ամենևին բարիք մը չեմ կրնար գտնալ, հապա բոլորովին չարիք։ Շիտակն ըսելով անանկ երկու երեսներ էին, որ ինծի քիչ վստահութիւն կ'ազդէին. հազիւ կրցայ մէկուն դէմքը վայրկեան մը դիտել, մէյմ'ալ լապտերը վար դրաւ. մօրուքը սև ու երկայն էր, երկու խոռոչացեալ և սոսկալի աչքերով. լայն ու սև գլխարկ մը գրեթէ բոլոր ճակատը կը ծածկէր։ Երբեմն սրիկաներու և մարդասպաններու վրայ պատմուած զարհուրելի դէպքեր լսեր էի. մտքիս մէջ արթընցան այն վախ ձգող տպաւորութիւններն որ սովորաբար այս տեսակ պատմութիւններն վրաս կ'ազդէին. և մէկէն ինծի վախ եկաւ որ անոնք աւազակներ ըլլան, և այն քարայրը իրենց պահուըտելու տեղն ըլլայ։

Այս վախս բիւրապատիկ կերպով սաստկացաւ, երբ քիչ մը վերջը տեսայ որ ուրիշ երկուք մը անոնց վրայ աւելցան։ Գրեթէ նոյն կերպ հագուած էին. և իրենք ալ կիսափակ լապտեր մը ունէին։ — Կէս գիշեր է, ըսաւ վերջէն հասնողներէն մէկը. մեր ժողովուելուն սահմանեալ ժամն է. եղբարք, երթանք։ — Աս ըսելով՝ դարձան իմ եղած տեղս, և լապտերները քիչ մը աւելի բանալով, սկսան մէկիկ մէկիկ քալել։ Ես տերևի մը պէս կը դողայի, վասն զի վայրկենէ վայրկեան յայտնուելուս կը սպասէի։ Բայց չորսն ալ ինծի ամենամօտ անցան, առանց մէկու մ'ալ զիս տեսնելուն։ Երբոր անցան գացին, հետաքրքրութեամբ ետևնէն նայեցայ որ տեսնեմ թէ ուր կ'երթան։ Ան ատեն տեսայ որ քարայրը երկայն դէպ 'ի ներս կ'երկըննար, և աւելի ալ դէպ 'ի վար կ'երթար։ Պէտք էր որ այն մարդիկները ծռած երթային, ապա թէ ոչ գլուխնին քարայրին քարոտ և կարծր կամարին կը զարնուէր։ Լսեցի որ երեք անգամ չափով մը և իրարու քիչ մը միջոց տալով զարկին. քիչ մը վերջը տեսայ դրան մը բացուիլը, ուսկից սաստիկ պայծառ լոյս մը դուրս ծագեց. անոնք մտնելնուն պէս, ետևնէն դուռը գոցուեցաւ։

Այն մտածութիւնը թէ այս քարայրը աւազակաց որջն ու բնակութիւնն ըլլայ, երթալով մտքիս մէջ հաստատուեցաւ. անոր համար որոշեցի որ ինչ ըլլայ՝ անկից երթամ, թէպէտ անձրևէն պիտի թրջէի։ Շարժելու վրայ էի, մէյմ'ալ ուրիշ երկու մարդ ալ կը մըտնան քարայրը, անոնց ետևէն ուրիշ երեք կամ չորս մ'ալ։ Բնականապէս կանուխ առի և տեսայ որ իրենք ալ լապտեր ունէին, և նոյն վերարկուներով փաթթուած. երեք անգամ զարկին նոյն տեղը ուր որ առջինները զարկեր էին։ Նոյն դուռը բացուեցաւ, և հազիւ բոլորն ալ մտան, մէկէն գոցուեցաւ։ Իմ մեծ բախտէս՝ մէկն ալ չտեսաւ զիս։

Անձրևը յորդութեամբ կը շարունակէր. քարայրին մուտքը մօտեցայ որ դուրս ելլեմ, բայց գիշերը անանկ մութ և անձրևը անանկ սաստիկ էր, որ սիրտ չըրի առաջ երթալու։ Դարձայ իմ պահուըտած տեղս, որոշելով որ հոն մնամ ինչուան որ առաւօտ ըլլայ։ Արդէն, կ'ըսէի մտքէս, ոչ ոք կրնայ տեսնել զիս։ Պառկեցայ գետնին վրայ, որ թաց ու աւազուտ էր. բայց այնու հանդերձ ինծի կակուղ անկողին մը կ'երևար. այնչափ յոգնածութենէ տկարացած էի։ Հազիւ տարածուեր էի, մէյմ'ալ դեռ ուրիշ անձինք ալ կը մտնեն քարայրը, նոյն դուռը կը զարնեն և նոյն

կերպով կ'ընդունուին։ Բայց ո՞վ են ատոնք, և ներսը ի՞նչ ընելու կ'երթան, կը հարցընէի ինծի, առանց կարենալու ուրիշ պատասխան տալ, բայց եթէ ենթադրել որ ասոնք աքսորուած կամ մարդասպան պիտի ըլլան։ Հետաքրքրութիւնը մէկ կողմանէ, իրենցմէ յայտնուելու վախը մէկալ կողմանէ թող չէին տար որ քուն ըլլամ. ուստի ոտք ելայ, ցրտէն ու թացութենէն բոլորովին կարկամած ու սարսռած։ Քիչ մը վերջը սովորական դրան բացուիլը կը տեսնեմ, և երկու մարդ մէկուն գլուխը լայնաձև գլխարկ մը, և կռնակը երկայն վերարկու մը և մէկալին գլուխը բաց, քարայրին բերանը կու գան։ — Գիտե՞ս քեզի եղած պատուէրը, ըսաւ երկրորդը առջինին։ Ան ալ պատասխան տուաւ. Ամենայն կերպով գիտեմ։ — Շատ աղէկ. և աս ըսելով, գոցեց դուռը, և դուրս թողուց այն փաթթուած և լայնաձև գլխարկով մարդը։ Ասիկայ ինծմէ քանի մը քայլ հեռու նստաւ. գետինը դրաւ լապտերը, զոր բոլորովին գոցեց, և վերարկուին մէջ փաթթուելով, անշարժ և լուռ կեցաւ։

Ինչպիսի՜ դժբաղդութիւն, ըսի մտքէս. հիմայ ա՛լ չեմ կրնար շարժիլ. անդադար աչքի տակ եմ. և վա՜յ ինծի թէ որ ասիկայ իմանայ իմ հոս ըլլալս։ — Բայց ի՞նչ կ'ընէ ասիկայ, ի՞նչ է այս կատարելիք պատուէրը. չըլլայ թէ ինքն ալ մարդասպան մը ըլլայ։ Ո՛հ, վա՜յ ինծի, աս ի՞նչ տեղ ինկայ։ Աւելի լաւ էր որ ինչուան ոսկրներս թրջէի, քան թէ այնչափ վտանգով ու անձկութեամբ հոս ներսը գայի։ — Ցեղս անշարժ և հաստատուն կեցեր էի. մէկալն ալ կարծես թէ ամենևին չէր շարժեր։ Երկայն ատեն այս փոխադարձ և գերեզմանական լռութեան մէջ, և այս փոփոխակի և բացարձակ անշարժութեան մէջ մնացինք։ Վերջապէս սովորական դուռը նորէն բացուեցաւ, և նոյնը որ քիչ մը առաջ դրսի մարդուն հետ խօսեր էր, հարցուց իրեն. Ո՞չ ոք։ — Ո՛չ ոք, պատասխանեց անիկայ։ — Մտի՛ր, ըսաւ առաջինը. աղօթքի ժամանակն է։ — Ասիկայ առանց ուրիշ բանի ելաւ գետնէն, լապտերը առաւ, և դռնէն ներս մտաւ, որ մէկէն ետևէն գոցուեցաւ։ — Աղօթքի ժամանակն է, կրկնեցի մտքէս. ուրեմն ասոնք աղօթք ընող մարդիկ են. ուրեմն՝ հետևցուցի՝ ասոնք բարի մարդիկ են։ — Այս որոշողութիւնը ինծի քիչ մը հոգի տուաւ, և յայտնուելուս վախը բաւական նուազեցուց։ Միայն չէի կրնար ըմբռնել թէ ինչպէս այն տեղը և այն ժամուն այնչափ հոգի կը ժողվուին աղօթք ընելու։ Գիտէի որ եկեղեցին կ'աղօթուի. բայց չէի կրնար համոզուիլ որ այն դռնէն ներս եկեղեցի մը կարենայ ըլլալ։ Մէջ մըն ալ ցած և ղանազան ձայներու խառն շշնկոց մը ամեն տարակոյս վերցուց. ինծի անանկ կու գար որ բուն աղօթք ընելու ձայներ կը լսէի։ Ոտքիս մատուըներուն վրայ և մեծաւ շրջահայեցութեամբ քիչ շատ դրան ուղղութիւնը կը բռնեմ, որ իմ պահուըտած տեղէս շատ հեռու չէր. ձեռքերովս ամենայն զգուշութեամբ շօշափելով կ'իմանամ որ հասեր եմ. ականջս կ'երկընցնեմ ու կը սկըսիմ մտիկ ընել։ Իրաւցընէ կ'աղօթէին, բայց ի՞նչ ըսածնին չեմ կրնար ղուրցել։

Մինչդեռ մտադրութեամբ կեցեր էի որ բան մը լսեմ, կը տեսնեմ որ լուսոյ գիծ մը դրան մէջէն կը թափանցէ. վըրան ճեղքուածք մը կար, այնչափ լայն որ ներսը կը տեսնուէր։ Հետաքրքրութեամբ մէկ աչքս կը մօտեցընեմ, և ի՜նչ զարմանալիք էր տեսածս. ընդարձակ սրահ մը՝ շատ աղէկ լուսաւորուած. չորս կողմը սևով ծածկուած աթոռներ շարուած էին, որոնց վրայ ինծի համար նորատեսակ ձևով զգեստներ հագած շատ մը մարդիկ նստած էին։ Անանկ կ'երևար որ կռնակնին մթնադոյն և քանի մը արաբական ճերմակ զարդերով տեսակ մը շուրջառ ունէին, որոնց նշանակութիւնը չէի կրնար հասկընալ։ Սրահին գլուխը բարձրադոյն աթոռի վրայ ծեր մը նստած էր, մէկալնոնց պէս հագած, միայն թէ իր

շուրջառը մէկալնոնցմէ աւելի երկայն ու ճոխ էր, և գօտւոյն վրայ լայն ղենջակ մը ունէր։ Սենեկին մէջ տեղը խորանի պէս բան մը կար՝ վառուած ճրագներով, և վրան քանի մը գործիքներ, որոնց ինչ ըլլալը չէի գիտեր։ Դիւրին է երևակայել ինչ ափշութիւն ու զարմանք որ ունեցայ այն մարդիկն ու այն բաները տեսնելով։ կարծես թէ ուրիշ աշխարհ մ՚ էի. ինչ որ հոն ներսը կար, ամենն ալ ինծի նոր և կարգէ դուրս կ՚երևար։

Յանկարծ աղօթքը դադրեցաւ։ Մէջ տեղի մարդուն մէկ ակնարկութեամբը, զոր կը կարծէի այն ժողովոյն գլուխն ըլլայ, երկու հոգի սրահին չորս կողմը եղած ճրագները մարեցին. և խորանին քով եղողները ամենքն ալ խոր մթութեան մէջ մնացին. բնականապէս անկէ ետքը բան մը չկրցայ տեսնել։ Միայն քանի մը վայրկեանէ ետև խուլ և խորին ձայն մը կը լսեմ, որ քանի մը ինծի համար անհասկնալի խօսքեր կը զուրցէր, որոնց երբեմն երբեմն բոլոր մէկալնոնք դասովին կը պատասխանէին։ Վերջը լսեցի որ նոյն ձայնը ըսաւ. Պատրաստ ես ամեն զոհի։ Եւ ուրիշ աւելի հաստատուն և պայծառ ձայն մը կը պատասխանէր. Այո։ — Նաև դաշոյն մը խոթելու հօրդ սիրտը։ Եւ նոյն ձայնը նոյնպէս պատասխանեց. Այո։ — Երդումդ ըրէ, պոռաց ուժով մը առաջինը։ — Կ՚երդնում, կրկնեց երկրորդը նոյն սաստկութեամբ։ — Փորձոյ մէջ պիտի տեսնենք զքեզ, աւելցուց միւսը։ — Քիչ մը վերջը ճրագները նորէն վառուեցան, և սրահը առջինին պէս լուսաւորուեցաւ։ — Ան ատեն մարդ մը տեսայ, աչքերը կապուած, չորս սովորական շուրջառը հագուածներու մէջ, և գօտիներնուն վրայ մէյմէկ ղենջակ։ Մէկէն կապուած մարդուն ձեռքը ատրճանակ մը տրուեցաւ։ Մէջ տեղը եղողը պոռաց այնպիսի ձայնով մը որ զիս գլխէս ինչուան ոտք սարսեցուց. Այդ ատրճանակին բերանը գլխուդ կոթընցուր ու կրակ ըրէ։ Անիկայ հնազանդեցաւ. ատրճանակը պայթուեցաւ, բայց հարուածը չգնաց։ — Ան ատեն փաթթոցը վերցուեցաւ իրմէն, և մէկալնոնց պէս հագուած երկու անձինք ուրիշ մարդ մը բերին սրահը։ Գլխաւորը աչքերը գոցուած մարդուն ձեռքը երկայն դանակ մը տուաւ, ու իշխանական ձայնով մը ըսաւ. Զարկ այդ մարդուն մահացու կերպով. պէտք է որ մեռնի։ — Մէկալը ձեռքն առաւ դանակը, և ցուցուած եղկելոյն սաստիկ հարուած մը տուաւ, որ նոյն վայրկենին գետինն ինկաւ։ — Տէր Աստուած, պոռացի մտքէս. ինչպիսի սոսկում. իրաւցընէ մարդասպան են։ — Անկէ ետև նորէն փաթթոցը դրուեցաւ. և մարդը իրեն հարցուց. Պատրաստ ես դեռ հիմա սպաննուած մարդուդ արիւնէն գաւաթ մը խմելու։ — Այո, պատասխանեց միւսը։ Իրեն գաւաթ մը բերուեցաւ, և փաթթոցը վերցընելով՝ մէկ շնչով խմեց զայն։

Չեմ կրնար այն վայրկեանին զգացածս ըսել. անձամբ տեսեր էի այն մարդուն սպաննուիլը, և վերջը սպաննողին այնպէս պաղ կերպով անոր արիւնը խմելը։ Բայց ասոնք մարդիկ չեն, ըսի ինքնիրենս, հապա սատանաներ են։ Այն տեսարանը բնաւ մտքէս չջնջուեցաւ. վերջէն իմացայ թէ ինչ էր և ինչ կը նշանակէր։

Բայց սակայն մեծ հետաքրքրութեամբ և մեծ քստմունքով կեցեր հոն ներսը եղածը կը դիտէի։ Այս սոսկալի տեսարանէն ետև, ոմանք խորանին քով մօտեցան, և վրան քանի մը բաներ դրին որոնց ինչ ըլլալը չկրցայ որոշել։ Վերջը այն կապուած մարդուն ծունր դնել տալով, ամենքն ալ ոտք ելան։ Նորէն ճրագները մարեցան, և նորէն ամեն բան կատարեալ մթութեան մէջ մնաց։ Այս միջոցին մէկ աղաղակ մը և մէկ թնդիւն մը լսեցի որ չեմ կրնար բացատրել, և որ սարսափէս գլխուս մազերը տնկել տուաւ։ Սաստիկ և երկայն ձայներու, կանչերներու ու ոռնալներու շփոթ շշնկոց մըն էր, իբրև շարժող շղթաներու և պարապ ու հնչող բանի մը զարնուող երկաթներու անդադար

գռնչմանը հետ խառնուած․ կարծես թէ ամեն բան գետնին տակէն կու գար։ Ես միշտ աչքովս դրան ճեղքուածքին քովն էի որ այս սոսկալի տեսարանին կատարածը տեսնեմ։ Մէկ վայրկենի մէջ սրահը կարմրագոյն և թանձր լուսով մը փայլեցաւ, որ սոսկալի երևոյթ մը կու տար։ Վերէն չէր գար, հապա բուն կարծես թէ գետնէն կը բղխէր։ Ամենքը անշարժ և լուռ և գրեթէ անտարբեր կեցեր էին, իբրև թէ բան չըլլար։ Ասոնց պէս զարհուրելի դէմքեր բնաւ տեսած չունէի. երկայն մօրուքներով, կնճռած ու խառնափնդոր մազերով, ձեռքերնին կուրծքներնուն վրայ դրած, և ան տխուր փայլէն լուսաւորուած, լուռ և անշարժ գետին կը նայէին։

Կամաց կամաց աղաղակը սաստկացաւ, և լոյսը երթալով մութ և սոսկալի երևոյթ մը կ՚առնէր. լսեցի յատակին ճռնչելը, վերջը բանի մը իյնալու պէս սաստիկ թնդիւն մը, և մէկ ակնթարթի մէջ տեսայ որ յատակը և խորանը և դիմացը ծունր դնողը աներևոյթ եղան։ Անկէց ետև թանձր մթութիւն մը չորս կողմը տիրեց։ — Աս ի՞նչ պիտի ըլլայ, անձկանօք մը ես ինծի կը հարցնէի։ — Զիս դժոխքին դռները կը կարծէի. և կը վախնայի որ սատանաներու ժողով մը ըլլայ անիկայ։ Քանի մը վայրկենէ վերջը՝ նոյն սովորական ձայնը լսուեցաւ, որ ես սրահին մէջ տեղը կեցող մարդունը ըլլալն իմացայ։ Այս անգամ ձայնը աւելի որոտացող և ուժով էր։ — Կ՚երդնո՞ւս, կը պոռար, կ՚երդնո՞ւս հարուստներու և ազնուականներու դէմ ատելութիւն։ — Գետնի տակէն եկողի պէս ուրիշ սուր և խոր ձայնի մը Կ՚երդնում պատասխանելը լսեցի։ — Կ՚երդնուս աշխարհի բոլոր թագաւորաց դէմ անհաշտ ատելութիւն, հարցուց առաջին ձայնը։ — Կ՚երդնում, պատասխանեց միւսը։ — Կ՚երդնո՞ւս բոլոր քահանայից և եպիսկոպոսաց և Պապին դէմ յաւիտենական ատելութիւն։ — Կ՚երդնում։ — Կ՚երդնո՞ւս որչափ ձեռքէդ գայ՝ ջանալ որ կրօնքը տկարանայ և աշխարհի լիովին և բացարձակ ազատութիւն շնորհուի։ — Կ՚երդնում։ — Կ՚երդնո՞ւս երկրիս բոլոր բռնաւորաց դէմ պատերազմ ՚ի մահ և ՚ի կոտորած։ — Կ՚երդնում։

Վերջը խոր լռութիւն մը եղաւ։ Վրան շատ չանցաւ, ճրագները նորէն վառուեցան։ Անհնարին զարմացմամբ յատակը իրեն առջի տեղը տեսայ, խորանը մէջ տեղը, և ան մարդը դեռ հոն ծունր դրած, իբրև թէ բան մը խախտած չըլլար։ Ինծի երազելու պէս կու գար, և չէի գիտեր ինչ մեկնութիւն տամ այս նորանշան և կարգէ դուրս բաներուն։ Բայց բուն իմ աչքերովս ամեն բանի դէպ ՚ի խոր իջնալը տեսեր էի, և իմ ականջներովս այն անկման սաստիկ թնդիւնը լսեր էի։ Բայց և այնպէս ամեն բան նոյն վիճակին մէջ կը գտնուէր. ոչ ոք տեղէն շարժեր էր և կարծես թէ ամեն բան և ամենքը բացարձակ անշարժութեան մէջ եղած ըլլային։ — Ոտք ելիր, ըսաւ մէջտեղի մարդը. և անիկայ շիտակ ոտքի ելաւ և այն կողմը դարձաւ։ Մէկ ուրիշ փորձ մ՚ալ, և վերջը մեր ամենէն եղբայրակցութեան գործակատարութիւնը կ՚ընդունիս։ — Խաչ մը բերուեցաւ. Ա՛ռ, ըսաւ առջինը, և վրան կոխէ։ Կոխկռտեց զայն ամբարիշտը։ Վերջը պնակ մը բերուեցաւ. Ա՛ռ ասիկայ և կտոր կտոր ըրէ. և այն խելայեղը խորտակեց զայն։ Վերջը ձեռքը դաշոյն մը տրուեցաւ, Ա՛ռ զայդ և համբուրէ, օդուն մէջ շարժէ և երկրիս չորս կողմը հարուածէ։ Անիկայ անվրէպ հնազանդեցաւ։

Վերջը տեսայ որ կռնակը շուրջառ մը տրուեցաւ, գրեթէ մէկալնոնց ունեցածին նման, բայց աւելի պզտիկ և բացագոյն։ Իրեն այն ամբարիշտ հրամանները տուողին դիմացը տարուեցաւ, որ զինքը համբուրեց, և վերջը գնաց բոլոր մէկալնոնք ալ մէկիկ մէկիկ համբուրելու։ Ես բարկութեամբ ու անձկանօք աչքովս միշտ անոր հետն էի. Ո՞վ պիտի ըլլայ ասիկայ, կ՚ըսէի մտքէս, որ այսպիսի սոսկալի հայհոյութիւններ հանեց բերնէն։ Այս խօսքերը

հագիւ ըսեր էի, մէյ մ' ալ ալ ան Թըշուառականը դէպ 'ի դուռը կը դարձընէ երեսը։ Խորանին վրայ վառած ճրագներուն լոյսը յստակ և պայծառ կերպով անոր բոլոր մարմնոյն վրայ կը զարնէր։ Ուշադրութեամբ երեսը նայեցայ, և ակռաներս կրճտելով և ձեռքերս սխմելով չկրցայ զիս բռնել ու լի բարկութեամբ և զարմացմամբ պոռացի. Ա՛յ Թշուառ. զո՛վ կը տեսնեմ։

Կը շարունակուի:

---

# ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

(Տես երես 63։)

## Ա. ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

### Դ. Լերինք.

55 Ի՞նչ են Լերինք։ — Այն մեծամեծ դիզուած և կուտուած հանքաց նիւթերն են, որ երբեմն մեկնակ և զատ կ'ամբառնան, երբեմն իրարու կպած երկրիս երեսը երկայն շղթաներ կամ զօտիներ կը ձևացընեն, որ և պարք լերանց կ'ըսուին։

56 Ի՞նչպէս ձևացեր են Լերինք։ — Ասոնց պատճառն ալ երկրիս կեդրոնական ջերմութիւնն է, ինչպէս նաև հրաբըղխից, սասանութեանց և վերամբարձմանց. հալած նիւթէն ելլելով՝ անոր պաղելով և խառնալովը կազեր արձըկուած են երկրիս կեղևին մէջ, և ընդդիմութիւն գտնելով հոն՝ մղեր ամբարձեր են զայն քիչ կամ շատ բարձրութեամբ։ (Բարձրութիւն մը լեռ ըսուելու համար՝ գոնէ 300 մեդրի չափ պէտք է ըլլայ. Հնդկաստանի Հիմալայեանց մէջ ինչուան 8840 մէդր բարձր լեռ չափուած է։)

57 Ինչո՞ւ համար լերանց մէջ նաև քիչ խորութեամբ կը գտնուին այնպիսի նիւթեր՝ որ շիտակ գետնի աւելի խորերն ալ չեն գտնուիր։ — Անոր համար որ լերինք երկրիս ծոցերէն վեր ելած են, և ելլելու ատեն հետերնին հանած են 'ի խորքը գըտնուած նիւթերը։

58 Ինչո՞ւ լերանց գագաթներու վրայ կը գտնուին քարացեալ ժժմակք և ձկունք։ — Որ լերանց վրայ որ կը գտնուին այն նիւթերը՝ այն լերինք ծովուն մէջէն բարձրացեր են, և անոր յատակը եղածն է վրանին։

59 Ինչո՞ւ այն ժժմակքն և ձկունք չեն ապականած և փտտած, այլ քարացեր մընացեր են։ — Վասն զի ստործովեայ ժաժից և հրաբըղխի ցայտմանց ատեն՝ անոնք աւազի կամ ուրիշ հրաբղխային նիւթոց մէջ արգիլուեր և ծածկուեր են. և լերանց ամբառնալուն ատեն ալ՝ օդէն պաշտպանուած և անվնաս մնացեր են։

60 Ի՞նչ կերպով եղած է անոնց քարացումը։ — Ջուրն մտնելով զանոնք շրջապատող նիւթոյն մէջ՝ հանքային լուծուած տարրըքներով տոգորուած հասեր է անոնց. և կամաց կամաց անոնց ծակտեաց մէջ ծորելով՝ այն լուծուած տարրըքն հոն մըտուցեր է, անով երկար ատենէ վերջը անոնք ալ քար դարձեր են։

61 Ինչո՞ւ համար լերանց վրայ ծովու յատակին աւազն չի գտնուիր։ — Վասն զի հովեր, ջուրեր և ուրիշ քայքայիչ ազդողք կամ ներգործողք զանիկայ մղեր վար թափեր են, և լերանց ժայռերը լերկ ու մերկ թողեր են։

62 Քայքայիչ ազդող ըսելով ի՞նչ կ'իմացուի։ — Որ և է արտաքին զօրութիւն մը՝ որ կ'ազդէ երկրիս մակերևութին վրայ և կը յեղափոխէ. այսպիսի են օդն ի շարժման, մեքենական և քիմաբանական ներգործութիւնն ջրոց, սառոյցք, ծովուց մակընթացութիւնք, ելեկտրութիւն, և այլն։

63 Ամենէն գլխաւորն ո՞րն է ասոնց մէջ։ — Ջուրն, որ երբեմն մինակ, երբեմն ուրիշներու հետ ալ կ'ազդէ։

64 Ցանց մէջ գետին մաքրելու ատեն գործածուած ջուրն ի՞նչ զօրութիւն ունի։ — Նոյնը՝ ինչ որ հիմայ ըսինք. իր մանրամասունքն շատ պզտիկ ըլլալով՝ կը մըտնեն ծակոտկէն մարմնոց մէջ, և հոն եղած լուծանուտ նիւթերը կը քայքայեն, և իրենց մեքենական զօրութեամբը դուրս կը հանեն. գետինն կը մաքրուի։

Կը շարունակուի:

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՅԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ԱՊՐԻԼ

## ԲԱՐՈՅԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ

(Տես երես 33)

### Գ

### Անխոհեմութեան մը հետևանքը.

Լուդուիկ Մորան՝ Միրըպուի հին տղաքներէն մէկը՝ տասնըութը տարի առաջ ամուսնացեր էր այրի կնկան մը աղջկան հետ, որ բաց 'ի առաքինութիւններէն պզտիկ տուն մը օժիտ բերեր էր պարտիզով հանդերձ, որուն մէջ կը բնակէր ինք իր ձեռքով մշակելով հօրենական ժառանգութեամբ ունեցած չափաւոր կալուածը. և գործունէութեամբ՝ որուն մասնակից էր նաև խնայող ու աշխատասէր տնարար կնիկը, երկուքը մէկէն առատապէս կը լեցընէին իրենց գերդաստանին պիտոյքը, որ վեց անձով կը բաղկանար, և էին՝ ինքն ու կնիկը, զոքանչը ու իրեք զաւկըները. որոնցմէ մէկը մանչ զաւակ էր ու պատանեկութեան հասակի մէջ, և միւս երկուքը տարուըք քան զինքը պզտիկ աղջիկ զաւկըներ։

Տասը տարի անցեր էր քանի որ կարգուեր էին և բնաւ դիպուած մը զինքը չէր խռոված։ Լուդուիկ Մորան արդէն կանխաւ խնայողութիւններ ըրեր էր երբ անխոհեմ գտնուելով անդրանիկ եղբօրն հետ ընկերացեր էր, որ գործունեայ մէկն էր, սակայն դժբաղդաբար առանց բաւական գումար ունենալու պզտիկ վաճառականութեան մը ձեռք զարկեր էր ընդ ջուր, որ 'ի սկզբան բաւական յաջող գնաց. բայց քիչ մը ետքը ուրիշները մեծագոյն դրամագլուխներով նախանձախնդիր ելլելով զինքը վար ձգեցին. շատ չանցաւ ողողմունք մը վրայ գալով եղբայրը

խղդուեցաւ ու նաւակն ալ կորսուեցաւ։

Պէտք եղաւ որ եղբօրը ստացուածքը ծախէ, որպէս զի պարտատէրներուն կարենայ վճարել. ամէն բան աճուրդի հանելով հանդերձ՝ դեռ քիչ մը պարտք մնաց. Մորան ուզեց զանոնք ալ գոցել, թէպէտ իրաւ է որ կրնար վրայէն թօթուել, վասն զի երբեք անուամբ ընկերացած չէր եղբօրը հետ և բնաւ տոմսակի մը ստորագրութիւն տուած չէր. բայց այն պարտքերը վաճառականութեան մը համար պատճառեալ էին, ուսկից նաև ինքն ալ շահ պիտի քաղէր. 'ի խղճէ ինքզինքը պարտաւորեալ կը սեպէր և եղբօրը յիշատակին պատիւ մ' ընել կը համարէր։ Շատ չանցաւ եղբօրը կնիկն ալ ցաւէն գերեզման իջաւ, իրենց օրուան հացին կարօտ երկու զաւակ թողլով։ Լուդուիկ Մորան առանց տարակուսելու երկու որբերը իր տունը առաւ, մտածելով թէ քիչ մը աւելի աշխատելով կրնար զանոնք ալ իրեն տղոցն հետ մեծցնել։

Լուդուիկ Մորան այսպէս ազնուութեամբ շարժեր էր, որով ինչպէս որ մարդկանց մեծարելի եղեր էր՝ բարեգործութեանը համար Աստուծոյ օրհնութեանն ալ արժանի պիտի ըլլար. և յայտնի է թէ խոհականութեամբը, ազնիւ բնաւորութեամբը և անխոնջելի գործունէութեամբը՝ որով միշտ ուրիշներուն ալ ծառայութիւն ընելու ժամանակ կը գտնէր, յարատև յաջողութեամբ պիտի ապրէր, եթէ ուրիշ ծանր անխոհեմութեան մը մէջ ալ ինկած չըլլար։

Եղբօրը ստացուածքը ծախելուն ժամանակ տեսաւ որ քանի մը կտոր երկիր իրեններուն ամենամօտ էին, և չկրնալով փորձութեանը յաղթել գնեց զանոնք ու կալուածը ամբողջացուց. բայց ունեցած ստակը չբաւելով՝ սխալեցաւ ու գեղացւոց նմանելով փոխ ստակ առաւ, որոնք երկիր ստանալու սիրով կուրցած չեն ըմբռներ թէ ինչպէս արդեամբ վնասակար է իրենց համար հարիւրին վեցով ըրած փոխառութիւններն, մինչդեռ գնել ուզած երկիրնին իրեք՝ կամ առ առաւելն չորս շահ կը բերէ։ Այս մոլութիւնը հարուած է գեղերու, որով կալուածատէրները փոխառուաց և անզգամներու ձեռք կը մատնուին. Լուդ. Մորանի համար ալ ոչ ինչ նուազ այսպիսի ձախորդ հետևանք պիտի ունենար ըրածը։

Արդէն եղբօրը մնացած պարտքը վճարելու համար քանի մը կտոր երկիր ծախելու տեղ՝ պարտատէրացն հետ պարտաւորութեան դաշինք դրեր էր. բայց մտածեց որ չափաւոր խնայողութիւն ընելով կրնար իր փոխառութեան շահը վճարել, և նաև քիչ ժամանակի մէջ դրամագլուխն ալ հատուցանել։ Ուստի իրեն դիւրին կ'երևար պարտքը կարենալ վճարելը, ինչպէս որ միշտ նոյնպէս կ'երևայ ասանկ փորձութեան մէջ ելնողներուն. սակայն վախճանը իրեն ակնկալութիւնները պիտի խաբէր։

Իսկզբան իրարու ետև երկու անյաջող տարիներու պատճառաւ անհնարին եղաւ որ պարտքին շահը կարենայ վճարել։ Եղբօրորդիքն ալ որդեգրելուն ծախքը աւելցեր էր, և ներկայապէս ութ հոգւոյ ապրուստը պէտք էր հոգար. ծանր պայմաններով շահերը դրամագլխոյն վրայ աւելցնելու շնորհքը ստացաւ պարտատէրներէն ու յաջող տարիներու յուսով ջանքը կրկնապատկեց. Միրլոզոյի մէջ աշխատասէր երկրագործներէն մէկը սեպուած էր. համբերութիւնն աւելցաւ անդադար աշխատելով, որով միշտ առաջինն էր դաշտ եկողներուն մէջ ու վերջին անկէ հեռացողը։ Շատ չանցաւ չափազանց յոգնածութիւնը, առողջութիւնը խանգարեց. հիւանդութեան մը նշաններ վրան երևցան. որուն 'ի սկզբան առջևն առնելու անհոգացաւ. եաքը եաքը մահուան վտանգի մէջ ինկաւ. և թէպէտ կազմուածքին ուժովը զոր բնաւ անբարեխառնութեամբ մը վնասուած չէր՝ ազատեցաւ, բայց ստիպուեցաւ որ վեց ամիս առանց աշխատելու անցընէ։

Հիւանդութեանը ժամանակ հարկ

եղաւ որ գործաւորաց վճարել տալով իրեն սկսած աշխատութիւնները առանց տանի. սակայն անդաստանները նոյն մնացին խնամքը չունենալնուն քիչ պտղաբերեցին նոյն տարին. Ի լրումն աղետից՝ հունձքէն քիչ առաջ կարկուտ մը զարկաւ ու ամենայն ինչ փճացուց։ Սակայն Լուդուիկ Մորան եթէ պարապ չունենար այս ձախորդութեանց մէջ կրնար յաղթող հանդիսանալ. նաև պարապ ունենալովն հանդերձ կրնար դարձեալ բաղդը շինել եթէ նոր գնած փոքրիկ կալուածը և հօրենական ստացուածոց մէկ պզտիկ մասը ծախելու ըլլար. բայց անձնատիրութիւնը՝ որով երկրագործք մէյմը գնած երկիրնին չեն կրնար ուրիշի ձեռք անցած տեսնել, ուրիշներուն նման զինքն ալ կապկըպեց. չկրցաւ և ոչ իսկ բժշկին տուած խորհրդին հաւանիլ, որով տարաժամելի պարտաւորութեանց տարի տարուան վրայ պարտքերը սկսան աճիլ։

Երբ պարտքերը վճարելու ժամանակը կը հասնէր՝ կը ջանար ատենը երկընցընել, և որչափ անգամ որ այս բանս կ՚ընդունէր՝ նորանոր ծանր պայմաններ վրան կ՚աւելնային։ Վերջապէս հասաւ այն ժամանակը յորում ծախքերն ու շահերը այնպէս դիզուեցան նախկին պարտքերուն վրայ որ ալ անկարելի էր աշխատութեամբն ու կալուածներուն եկամտովը զանոնք հատուցանել։

Միայն տունն ու պարտէզը իրեն մնաց, որով գոնեա ընտանիքը օթեւան մ՚ունէր և պատուաւ մեռնելերնին չէր սոտդռած իր բովանդակ կենաց տղաւէնը թողլու։

Լուդ. Մորան աշխատութիւն փնտռելու ստիպուելով գնաց մանտորպանին մէջ ուղեց մտնել, յուսալով որ հոն կարենայ մտցընել նաև զաւակը՝ որ այն ժամանակ տասնըվեցեկ տարուան էր, զոր հայրը սաստիկ քաշած նեղութեամբն հանդերձ կենացը ինչուան տասնըչորրորդ տարին դպրոց խաւրեր էր, մտածելով որ բարեկարգութեան ու աշխատութեան վարժելով տղայն բարի կրթութիւնը քան ամենայն ինչ աւելի ապահով ժառանգութիւն էր որ կրնար իրեն թողուլ։ փորձով յայտնի եղաւ թէ ինչպէս յայսմ իրաւունք ունէր։

Լուդ. Մորան բովանդակ աւանին մէջ ամենուն սիրելի ու մեծարելի էր. ամենքը զինքը աշխատասէր ու համճարեղ կը ճանչնային, և դժբաղդութեանցը վրայ կը կարեկցէին։ Ամենայն սիրով զինքը գործատան մէջ ընդունեցան. իսկոյն եղած աշխատութեանց ձեռք զարկաւ և քիչ ժամանակի մէջ բաւական գումար մը սկսաւ ձեռք բերել։ Զաւակն ալ մէկտեղ ընդունեցան որ գիտութեամբն ու գործունէութեամբը յայտնի ըրաւ թէ քիչ ատենէն քաջ գործաւոր մը պիտի ըլլար. և թէպէտ ի սկզբան շահածը ոչինչ էր՝ սակայն ծնողացը համար բաւական օգտակար եղաւ։ Նաև մայրն ալ ներքին տնական աշխատութիւնները լմնցնելէն ետև բաւական ժամանակ կը գտնար դուրսերն ալ ծառայութիւններ ընելու, և գերդաստանց յատկութեանցն ու խնամքատար կերպին համար՝ որով որ կը կատարէր ամենայն ինչ, ինչպէս ոչինչ ընդհատ նաև վրան եկած ձախորդութեանցն համար, ամենքը իրենց ընտանեացը ծառայեցնել կը փափաքէին։

Այսպէս ուրեմն Մորանի ազգատոհմը իրաւ է թէ աղքատօրէն կ՚ապրէր, բայց տունն պարտք ընելու և սաստիկ նեղութենէն կրնար ազատել այն ատենին որ միւս զաւակներն ալ իրենց ապրուստը ճարելու կարող ըլլային։ Լուդ. Մորան վրայ գնելով դարձեալ իր առօրեական զուարթութիւնն ստացեր էր, և իր ազգատոհմը քիչ ատենէն ստանալիք լաւագոյն ապագայ մը կը նախատեսէր. սակայն անակնկալ դէպք մը այս ամեն ակնկալութիւնները փճացուց։

Լուդ. Մորան իրիկուն մը գործատունէն կը դառնար սովորականէն արագ քալուածքովը տնական աշխատութեանցը համար ժամանակ շահելու դիտմամբ, յանկարծ մէյմ՚ ալ պոռալու կանչելու ձայն մը կը լսէ. տղայոց խումբի մը

կանչուըռտիւնն էր, որոնցմէ մէկը գետակին եզերքը խաղալուն ժամանակ մէջը ինկեր էր։ Լուգ. Մորան այս աղաղակին պատճառը ենթադրելով խուկոյն կը վազէ, զգեստը վրայէն մէկդի կը թօթուէ և ջուրը կը նետուի, այն տեղը ուր որ տղան աներևութացեր էր։ Քանի մը վայրկեան փնտռելէն ետքը բարեբաղդաբար կը գտնէ և կը բերէ ցամաք կը հանէ, և ձեռքէն եկած խընամքը կը փութայ անոր ընելու։

Բաղդ եղաւ նաև որ ջուր ինկող տղան քիչ ժամանակ ջրոյն տակ մնացեր էր որով բոլորովին անզգայացած չէր. ազատարարին ուշիմ խնամքովը և միանգամայն աղաղակին ձայնէն հոն խըռնուող բազմութեան մէջէն ոմանց օգնութեամբը շատ չանցաւ ուշաբերեցաւ, և մէկէն ճանչցաւ զմամը որ հանդիպածն իմանալով իսկոյն հոն վազեր էր։

Լուգ. Մորան զաւակը ձեռքը կը յանձնէ. տունը տանելու համար քանի մը ընելիք զգուշութիւնները կը սորվեցնէ, և տղոցմէ մէկուն հրաման կուտայ որ երթայ ըստ կարելւոյն շուտով բժիշկը իրեն կանչէ. իսկ ինքը գոհ սրտով իր նմաններէն մէկը ազատած ըլլալուն համար՝ շտապաւ տուն կ'երթայ որպէս զի զգեստները փոխէ։

Տղան բոլորովին ազատեցաւ բայց ազատարարին տուժիւքը, որ իրեն համար այնպէս քաջութեամբ վտանգը աչք առեր էր։ Լուգ. Մորան քրտնած էր գետակը նետուած ժամանակը, որով պաղ ջուրէն վնասուեցաւ. սակայն վտանգը անցողական կրնար ըլլալ եթէ տղուն համար պէտք եղած նախնական խնամքը ընելէն վերջը՝ քիչ մը ատեն ալ գեռ այն թրջած ու մարմնոյն վրայ պաղած զգեստներովը չկենար։ Տուն որ հասաւ դող մը զգաց վրան ու ջերմով անկողին ինկաւ. հիւթերը կուրծքը զարկին և ազնիւ բժշկին ամենայն խընամքին հանդերձ իրեք օրէն ընտանիքը զինքը կորսնցուց։

Այս պատահարը սուգի մէջ ընկղմեց բովանդակ աւանը, ուր առ հասարակ ամենուն սիրելի էր, վասն զի բարեկեցիկ եղած ժամանակ դուռը միշտ բաց էր թշուառաց համար։ Իրաւ է թէ տօնախմբութեանց և հասարակաց ժողովոց մէջ չէր տեսնուեր, զինետուն երթալու ամենևին ժամանակ չունէր, բայց եկեղեցի երթալու և ուրիշներուն բարիք ընելու միշտ ատեն կը գտնէր, երբեմն նաև անձին վնասովը։ Հիւանդութեանը պատճառը մահուան ցաւը աւելի սաստկացուց. որով գրեթէ ամբողջ աւանը պարտք սեպեր էր անոր յուղարկաւորութեանը մասնակից ըլլալ, յորում ներկայ էին նաև վաչքուր և իր քարտուղարը, ինչպէս նաև գործատան ամէն գործաւորները իրենց գլխաւորներովը։

Միրըպոյի բնակիչքը, ինչպէս կը յիշեն անշուշտ ընթերցողք, գերեզմանատունէն դառնալով մէկմէկէ բաժնուեր էին. միայն քանի մը հոգւոյ խումբ մը Տիւբըրէի չորս կողմը եկեղեցւոյն առջևն էին. բայց այս անգամուս իրենց սովորական հաւաքմանց զուարթութիւնը չէր երևնար դէմքերնուն վրայ. եղած դիպուածին պատճառած տխրութեանն հետ ընդհանուր անհանգստութիւն մը տիրած էր ամենուն սրտին մէջ։

Յայտնի է թէ 1845ին հունձքը անյաջող գնաց և աւելի ևս յաջորդ տարւոյն 1846ինը. և որովհետև ցորենատանց մէջ եղած պահծու ցորենները սպառեր էին՝ մտածութիւնն առեր էր զիրենք թէ ինչպէս ինչուան նորահաս հունձքը ցորեն պիտի բաւեցընէին. իրաւացի վախ մը ինկեր էր նաև գործաւորաց ժողովոյն մէջ, ինչպէս նաև երկրագործաց մէջ ալ որոնք ապրուստ կը մատակարարէին։ Գործառնութիւնք հետզհետէ կը նուազէին. շտեմարանաց լեցուն ըլլալուն և վաճառականական անյաջողութեանց վրայ կը խօսուէր. գործատանց գործունէութիւնը ամէն տեղ կը մարէր և Միրըպոյի մէջ արդէն հաւանօրէն ռոճիկները պիտի նուազէին, աշխատութեան օրերը պիտի քիչնային և նաև գործաւորաց մէկ մասը ետ պիտի ճամբուէր։

Տխրութեան ամպ մը պատած էր ուրեմն Տիւրրէի ընթերակայ եղողները, և ինքնին Տիւրրէ՝ որ հասարակօրէն միշտ զուարթ էր, մտմտուքի մէջ կ'երևար։ Լուռ մունջ բազմոցի վրայ նըստեր էր այն գալարագեղ հովտին առջև զոր կ'ախորժէր դիտել, բայց որուն տեսքը ան ատեն տխուր նախազգացութիւններ կ'արթընցնէր սրտին մէջ. կը վախնար որ չըլլայ թէ փոխանակ ուրագաց և մեքենայից շառաչման, շարժման արուեստից՝ որոնցմով աւանը կենդանութեան և բարեկեցութեան մէջ էր, լռութիւն ու հանդարտութիւն յաջորդէ, որոնք նեղութեան և կարօտանաց յառաջընթաց կարապետներն են. ապագային վրայ էր մտածութիւնը, և քովը եղողները մտածութեանը արգելք չըլլալու համար յարգանօք լուռ կեցեր էին։

Անդրէաս Գոնդըֆուա անուանով երիտասարդի մը բացագանչութեամբը լըռութիւնն ընդհատեցաւ, որ գործատան մէջ գործունեայ, տաք, վառվռուն երևակայութեամբ և խօսուն աշխատաւոր մ' էր։ Քանի մը տարիէ 'ի վեր աւանին մէջ հաստատուած էր և խելքովը՝ ինչպէս նաև առարկութիւններ ընելու հակամիտութեամբը, որ միանգամայն սորվելու փափաք և քննադատելու մոլութիւն էր իր վրան, շատ նշանաւոր եղեր էր։ Դիւրաւ աղէկ պատճառաբանութեանց կը հաւանէր, և այս նկատմամբ կրած Գոնդըֆուա՝ որ է Բաբեմիա՝ մականուանն արժանի էր։

— Արդ ուրեմն, ըսաւ Անդրէաս՝ նախատօքին լռութիւնն ընդհատելով որ դէմ էր իր բնութեանը. — Ինչ բանի եկաւ խեղճ Մորանի գործունէութիւնն, անձնանուիրութիւնն ու զգօնութիւնը. բոլոր կենօքը ցուկանաւի դատապարտեալ մը պէս աշխատեցաւ, և ահաւասիկ հիմա որ մեռաւ՝ ազգատոհմը մշտնջենաւորապէս խեղճութեան մատնուած է։

— Անդրէաս, պատասխանեց իսկոյն ազնիւ բժիշկը՝ մտածութենէ արթըննալով, գիտես որ շատ բան կը բովանդակուի խնդրոյդ մէջ, թերևս այնչափ՝ որչափ որ չես կարծեր։

— Ո՛հ, ըսաւ Անդրէաս, իմ ըսել ուզածէս աւելի մ' ենթադրեր։ Բացէ 'ի բաց կը հրաժարիմ անխելքութիւն սեպելէ Մորանի ըրածը որ Գոննէի թօռը ազատելու համար ինքզինքը ջուրը նետեց. ըրաւ ինչ որ ուրիշ մը կրնար ընել եթէ հոն հանդիպելու ըլլար. սիրտ ունեցող մարդը եթէ կրնայ իր նմանոյն կեանքը ազատել՝ ամենևին չտարակուսիր։

— Անդրէաս, աւելորդ է ըսելդ թէ չես ուզեր մեղադրել Լուդուիկ Մորանի անձնանուիրութիւնը. ըստ բաւականի զքեզ կը ճանչնամ որով կըրնամ հաւատալ եթէ դու ալ նոյնը կ'ընէիր. սակայն շատ ուրախ եմ ատանկ խօսիլդ լսելուս վրայ. ըսածներդ ազնիւ խօսքեր են որոնք միշտ հաճութիւն կը պատճառեն. բայց անշուշտ կ'ուզէիր ըսել թէ կրնայ մեղադրութեան տակ իյնալ եղբօրը պարտքերը վճարած ըլլալուն համար։

— Այնպէս է, ըսաւ Անդրէաս Գոնդըֆուա։

— Բայց գիտես, Անդրէաս, որ այս մեղադրանացդ համեմատ ըստ մեր ըրած գործոց պատճառած հետևանաց կը դատուի անոնց աղէկութիւնը կամ գէշութիւնը. ըստ այսմ մեզի օգտակարը միշտ բարի պիտի սեպուի, և չար՝ ինչ որ մեզի կրնայ վնասակար ըլլալ։

— Այս չէ ըսածը, — վրայ բերաւ անդիէն երկրագործ մը՝ որ այս կարծեաց գործադրութեանը յարմար ճանչցուած էր. — բայց ինչ որ ալ ըլլայ՝ եթէ Լուդ. Մորան եղբօրը պարտքերը վճարած չըլլար՝ չէր կործաներ, և ընտանիքը մուրացկանութեամբ ապրելու վիճակի մէջ չէր իյնար։

— Բան մ' է, Ցրարէն, որ ամեն օր կը ղուրցուի՝ սակայն առանց ապացուցութեան, և այսպէս լսելով հասարակաց կարծիքն ու բարոյականը կը ձևանայ. բայց ազատ խօսինք և ոչ անանկ որ բան մը ըսած ժամանակնիս ուրիշ բան մը ուզենանք հասկըցնել. մեկնենք

իր մը որուն վրայ շատ տարիներէ 'ի վեր կը խօսուի, այսինքն թէ Լուդուիկ Մորանի վճարած պարտքերը արդեօք իրեն ալ կը վերաբերէին՝ եթէ սուտ եղբօրն էին։

— Եղբօրն էին, ըսին միաձայն Ցրաբէն, Գուլիէլմոս Ճարլեան երկրագործը, Վլիէոլէն՝ որ երկաթեղէն և պղնձեղէն կահուց մանրավաճառ էր, Բասսըմար սրճապետը, Մոքոր գործավարը և այլք։

— Իրենն էին, ըսին Անդրէաս Պոննըֆուա, Լէոնարտոս Տիւպուա՝ մանարանին մեքենագործ աշխատաւորը, Թովմաս Ռավըյ երկրագործը, Պերդըրան մշակը, Սոժոն հիւսնը և քանի մը ուրիշ գործաւորք ալ, որոնք սովորաբար Անդրէասին և Լէոնարտոսին արձագանգն էին։

— Ա՛հ, ա՛հ, ըսաւ Տիւբրէ, կը տեսնեմ որ միախոհ չենք. ջանանք իրարու միտքն հասկընալ։ Լուդուիկ Մորան եղբօրը վաճառականութեանը համար սուտ պատկերացուցի՞ր էր։

— Յայտնի է, ըսին ամենքը միաբերան։

— Եթէ ձեռնարկութիւնը յաջողեր ըլլար ինքն ալ բարեաց մասնակից պիտի ըլլա՞ր։

— Ինչ ըսել է, կրկնեցին դարձեալ միաձայն։

— Լուդուիկ Մորան ուրեմն եղբօրը ընկերագիրն եղեր էր. և որովհետև բարեացն հաղորդ պիտի ըլլար՝ պէտք չէր որ նաև պարտքերն ալ կրէր։

— Բայց, առարկեց Մոքոր գործավարը, Լուդ. Մորան պարտականութեան ստորագրութիւն տուած չէր եղբօրը։

— Է՛հ, որչափ ատենէ 'ի վեր է, ըսաւ Տիւբրէ, որ համեստ մարդ մը պարտական կը սեպուի երբ թղթի մը կտորի վրայ ստորագրութիւն տուած ըլլայ։ Ձէ, չէ, աւելի անկեղծ ըլլանք. ընդունինք, Մոքոր, որ Լուդ. Մորանի պարտքն էր։

— Իրաւ է, խօսքն որ քննելու ըլլանք պարտքն էր, բայց կրնար վճարումներէն ազատ ըլլալ, վասն զի օրինաւորապէս պարտական չէր։

— Ստոյգ է, ըսաւ Տիւբրէ, թէ դատաստանարանը չէր կրնար ստիպել որ վճարէ. բայց ասով յայտնի կ'ըլլայ թէ ինչ որ ըստ իրաւանց է ոչ միշտ օրինաւոր է, և շատ բաներ կան օրինաց հրամայածներէն դուրս՝ զորս համեստութիւնն ու բարոյականը կ'արգելուն։

— Ըստ ամենայնի կը հաւանիմ, պատասխանեց Անդրէաս. կ'ընդունիմ թէ Լուդուիկ Մորան համեստութեամբ չարժեցաւ. և շատ կը ցաւէի անուանը վրայ եթէ ուրիշ կերպ շարժած ըլլալը գիտնայի. սակայն տխուր բան մ'է մըտածելը թէ համեստութիւնը կործանմանը պատճառ եղաւ։

— Որովհետև կը տեսնեմ, Անդրէաս, թէ այս մտածութիւնը զքեզ կը տանջէ, բարեբաղդ կը սեպեմ զիս եթէ կարենամ միտքդ փոխել, և ներկայ առթիւ ինծի պատեհ կը սեպեմ երկայն ատենէ 'ի վեր հոս տիրած սխալ կարծիք մը 'ի մէջ բառնալու համար։ Հիմա որ խեղճ Մորանը մեռած է՝ կրնանք պարզ խօսիլ առանց վախնալու որ ճըշմարտութիւնը անունը արատաւորէ։ Լուդուիկ Մորան, բարեկամք, ըստ ամենայնի համեստ մարդ մ'էր, բայց կանխաւ մեծ անխոհեմութեան մը մէջ ինկած էր։

— Ի՞նչ անխոհեմութեան, հարցուցին ամենքը մէկ բերան։

— Երբոր առանց վճարել կարենալու փոխարէի կապուածը զնեց, որ վեց հազար ֆրանք կ'արժէր և ինքը կէսը միայն ունէր այն ժամանակ, ահաւասիկ այս եղաւ իրեն մեծ սխալմունքը. առանց առաջ եղբօրը գործառնութեանց հաշիւները լուծելէն վերջը՝ երբ երկու հազար ֆրանգ պարտք ունէր, կրնար դանոնք արժած ատենով վճարել և խնայողութեամբ կրնար հազար ֆրանք ձեռքը ձգել, մինչդեռ հինգ հազար ֆրանքի պարտքի տակ ինկաւ։

— Բայց, — ըսաւ Ճարլեան երկրագործը, որ Լուդ. Մորանի անխոհեմու-

Թեանը ուղղուած մեղադրանքը իրեն ալ կը համարէր, որովհետև առանց վըճարելու կարենալու կ'ուզէր ինքն ալ կալուած մը գնել, — պէտք էր առիթը կորսնցընել ու չգնել այն երկիրները որոնք իր ստացուածոցը մասն էին։

— Տարակոյս չկայ որ պարտք ընելէն աւելի աղէկ էր չգնելը։

— Այո, բայց հոն եղողներէն ոմանք, հինգ հազար ֆրանք պարտք առնելովը վեց հազար ֆրանք աժող կալուած մ'ալ կ'աւելցնէր իր երկիրներուն վրայ, և եկամուտը բաւականէն ալ աւելի էր շահը վճարելու։

— Բայց, ինչպէս չէք ըմբռներ, ըսաւ Ցիւբրիէ, որ պարտք ունեցած հինգ հազար ֆրանքին համար հարիւրին վեց շահ վճարելով գրեթէ անկարելի էր որ կարենար գլուխ ելլել։ Երկիրները առաւելն հարիւրին իրեք շահ բերելնուն ամբողջ կալուածին եկամուտով կրնար կէսին շահը վճարել և բան մը չէր աւելնար դրամագլուխը վճարելու համար։ Այս ստոյգ է թէ Լուդովիկ Մորան անձամբ կալուածը կը մշակէր, որով երկիրները քիչ մ'աւելի եկամուտ կը բերէին։ Շատ շատ մեծամեծ խնայողութիւններ ընելով երկայն ժամանակէ վերջը պիտի կարենար այս բեռը վըրայէն թօթուել։

— Անշուշտ միտքը դրածը կը յաջողցնէր եթէ շատ մը աղետից զոհ եղած չըլլար, ըսաւ Ժարլան՝ որ Լուդովիկ Մորանը արդարացնելով ինքզինքը կ'ուզէր անմեղադիր ընել։

— Բայց արդեօք կարկուտ, անձրև, չորութիւն, հիւանդութիւն միշտ չեն պատահիր, և պէտք չէ որ խելացի մարդիկ իրենց հաշուին մէջ զասոնք ալ անցընեն։ Լուդովիկ Մորան այն կալուածը գնելովը անխոհեմութիւն ըրաւ. ահաւասիկ առաջին յանցանքը. ուրիշ անխոհեմութիւն մ'ալ ըրաւ երբ երկու հազար ֆրանք պարտք ունենալով եղբօրը հաշիւները լուծանելէն վերջը՝ չկրցաւ սիրտ ընել ու իսկոյն երկիրներէն մաս մը ծախել պարտքերը վճարելու համար։ Անձնասիրութիւնը՝ որ զինք շատ սխալանաց մէջ կը ձգէ, չթողուց որ այս բանս ընէ, և գիտէք թէ ինչպէս յետոյ չարաչար հատոյց։

— Այո արդարև գիտենք, ըսաւ Անդրէաս. ընտանիքը խեղճութեան մէջ է. իսկ իրեն դառնալով՝ դարձեալ կը կրկնեմ, ինչ բանի ծառայեց իր կզօնութիւնը. սև գերիի մը պէս աշխատեցաւ ամենայն զբօսանքէ հրաժարելով, ինչուան անհրաժեշտ կարևորէն ալ ինքզինքը զրկելով. արդ հիմա որ մեռաւ առանց ամենևին կենաց վայելք ունենալու, չկրցաւ այնչափ քաշած նեղութեամբքն հանդերձ իր պառաւ մօրն ու որդւոցը հացը ապահովցնել։

— Եթէ սխալմունք մ'էր ըրածը, կցեց Լէոնարտոս Ցիւպուա, որ բուռն բնաւորութեամբ մարդասէր և արդար մէկն էր և այն խեղճութեան նկարագրին վրայ բռնկեր էր, — եթէ սխալմունք էր ըրածը՝ շատ սուղի նստաւ իրեն նենգաւոր վաշխառուաց ընել տուած վճարմունքը։ Եթէ տէրութիւնը համեստ մարդկանց ըրած շահին քիչ մ'աւելի մտադրութիւն ընելու ըլլար՝ այն անզգամներուն իրենց պարտքը կը սորվեցնէր և կ'արգելուր որ աղքատները չճնշեն. բայց կրնայ ըսուիլ թէ ինքը անոնց հետ խօսքը մէկ ըրած է։

— Աղէ, Լէոնարտ, վրայ բերաւ Ցիւբրէ համարձակութեամբ՝ որով առաջնոյն բռնկածութիւնը աւելի դուրս կը ցայտէր, ինչու համար կը սրտնիս։

— Ինչպէս չսրտնիմ տեսնելով, գոչեցին միաբերան գործաւորներէն մէկ քանին ու երկրագործներէն շատը՝ ժամանակին դժուարութեանցը վրայ դառնացած։

— Բայց, բարեկամք, ինչու համար միշտ տէրութեան դէմ կը հերձոտիք՝ իբրև թէ ինքն ըլլար անձրև ու աղէկ օդեր, տաք ու ցուրտ մատակարարողը, ու մէկուն հարստանալուն և մէկալին աղքատանալուն պատճառ. իբրև թէ կարելի ըլլար զամենքը հաւասար ու աղնիւ ընելը. ինչու ամեն բանի մէջ ու ամեն տեղ տէրութիւնը մէջ կը բերէք. կարծէք թէ տէրութիւնը ձեռուընին կը կայէ

որ բաներնիդ գործերնիդ ուղածնուդ պէս չկարենանք ընել։ փորձեցի նաև Լուդուիկ Մորանի հետ որ իրաւցնէ խելացի մարդ էր, բայց մտիկ չըրաւ, և խորհրդիս դէմ այն մարդկանց դիմեց զորոնք Լէոնարտոս նենգաւոր վաշխառուներ կ՚անուանէ, զորոնք ես ալ չեմ կրնար գովել, որովհետև չեմ ուզեր իրենց նմանիլ։

— Ո՛հ, յայտնի է։

— Բայց բանն այս է որ ինքը անոնց դիմեց և ան ատեն ոչ նենգաւոր և ոչ ալ անզգամ կը սեպէր. միայն դէմ կը խօսէր եթէ ստակ փոխ տալ չուզենային. և երբ վերջապէս ծանր պայմաններով յանձն կ՚առնուին, ուրախութեամբ տուն կը դառնար իբրև փրկիչ և ազատարար սեպելով իրեն այն անձինքը՝ որոնք սաստիկ շահով իրեն փոխ ստակ վճարելով քիչ մը ժամանակ կործանումը կ՚ուշացնէին։ Այսպէս է ամենայն փոխառուաց պատմութիւնը։

— Իրաւ է, ըսին հոն եղող շատերը որոնք փոխառութիւն ըրած էին։ — Բայց, վրայ բերաւ Լէոնարտոս, պէտք չէ՞ որ տէրութիւնը օգնութիւն ընէ անոնց որ ստակի կարօտութիւն ունին, որպէս զի փոխատուաց ձեռքը չմատնուին։

— Այս բանս չեմ ժխտեր, Լէոնարտոս, բայց մեծ դժուարութիւնը ինչ ճամբայ բռնել կարենալուն վրայ է. տէրութինը փոխ չկրնար տալ, վասն զի ազգին պէտք եղած գործոցը համար մեզմէ առածէն դուրս ուրիշ ստակ չունի. չկրնար ստիպել ունեւորները որ կարօտներուն փոխ տան, վասն զի իւրաքանչիւր ոք տէր է ունեցածը ուզածին պէս բանեցնելու. այսչափ միայն կրնայ արգելուլ որ որոշեալ չափէն աւելի շահով ստակ փոխ չտան. բայց ան ատեն առանց երաշխաւորութեան չէին կրնար փոխ տուող գտնալ. յայտնի է թէ ամենքը ստակնին կորսնցնելու վտանգի մէջ դնելէն աւելի կ՚ախորժին պահել կամ ծախքերու գործածել։

— Ըսել է թէ, պատասխանեց Լէոնարտոս, որ աղքատները պէտք է աղքատ մնան և հարստահարեալ հարուստներէն։

— Քաւ լիցի, Լէոնարտոս, բոլորովին օտար բան է ըսածդ. ոչ հարստահարող կ՚ուզեմ և ոչ հարստահարեալ. ոչ մէկ կողմանէ և ոչ միւս կողմանէ. կ՚ուզեմ որ եթէ ամեն աղքատներն ալ հարուստ չեն կրնար ըլլալ՝ գոնէ բարեկեցիկ ըլլան. և այս վախճանիս հասնելու համար քիչ մը բան ըրի Միրըգոյի մէջ։

— Շնորհակալ ենք հրամանքիդ, կրկնեցին ամենքը մէկէն։

— Շնորհակալ եմ, բարեկամք, թէպէտ և անոր համար չըսի որ զիս գովէք. միայն կ՚ուզէի իմացնել թէ մենք մեզմէ ալ շատ բան կրնանք ընել առանց տէրութեան սպասելու, որ և ոչ կրնայ մեզի պէս աղէկ գործել. վասն զի ինչ որ ըրինք հոս՝ մենք մեզմէ ըրինք։ Բայց այս բանս աղէկ կերպով ձեզի ապացուցանելու համար պէտք է ըսել, թէ ինչպէս մարդկանց վերաբերութիւնները իրարու հետ կանոնաւորեալ են, և միանգամայն հասկըցնել թէ աշխարհիս գործերը անանկ կանոններու տակ չեն որ ըստ հաճոյս կարենան փոխուիլ. մանաւանդ թէ պէտք է ձեզի բացատրել որ եթէ գործոց բնական ընթացքին դէմ կենալ փորձենք՝ չար ևս կ՚ըլլայ, մինչդեռ բնական կարգին հետևելով շատ աւելի կրնանք աղէկցնել մեր վիճակը։

— Ո՛հ, մեծ հաճոյք ըրած կ՚ըլլաս եթէ այս բանս մեզի բացատրես։

— Ես ալ աս կը փափաքիմ, բայց շատ երկայն կը տևէ։

— Ի՞նչ կ՚ըլլայ եղեր։

— Բայց շատ երկայն կ՚ըլլայ որ կ՚ըսեմ՝ միայն քանի մը ժամ չեմ հասկընար. խօսքը շատ հեռուէն պէտք է սկըսիմ, շատ խնդրոց մէջ մտնամ, ուստի այլ և այլ անգամ հարկ պիտի ըլլայ որ այս խօսակցութիւնը սկսիմ, որ անշուշտ կը ձանձրանաք։

— Ապահով եղիր որ չէ, պոռաց միայն մէկը. գիտես թէ ինչպէս ուրախութեամբ միշտ մենք մտիկ կ՚ընենք հրամանքիդ։

— Գիտեմ և շնորհակալ եմ այն սիրալիր զգացման համար որով ատէպ ատէպ չորս կողմս կը գեղուլիք ինծի մտիկ ընելու համար. կարելի է թէ երբեմն զեղծեր եմ ալ զձեզ ձանձրացընելով ։

— Բոլորովին հակառակ, ըսին ամէնքը միաբարբառ և անանկ ձայնով մը որ յայտնի կ'ըլլար թէ պարզ մարդավարութեան համար չէր զուրցածնին ։

— Շնորհակալ եմ, բարեկամքս իմ. ասով կը ստիպէք որ շարունակեմ. պատրաստ եմ ուրեմն աշխարհիս իրաց կարգաւորութեանը վրայ ունեցած տարակոյսներդ լուծելու. բայց այսօր ժամանակը կարճ է. Մորանի յուղարկաւորութեանը պատճառաւ շատ ատենէ 'ի վեր տուներնէդ հեռացած էք. նաև ես ալ պէտք է որ երթամ իրեն այրի կնիկը տեսնամ ու մխիթարեմ. չգիտեր որ իրեն վիճակին սփոփանք մը պատճառելու համար մէջերնիդ որոշեցիք որ ասկէ վերջը ձրի փոխ առ փոխ դուք մշակէք իր պարտէզը. այս մտածութիւնը ձեզի պատիւ կ'ընէ, և ես յանուն իրեն գերդաստանին ձեզի շնորհակալ կ'ըլլամ ։

Բայց բաժնուելնէս առաջ ներեցէք որ հարցընեմ, որով մասամբ մը Անգրէտոին ըրած խնդրոյն պատասխանը տուած կ'ըլլամ. արդեօք սուտ կարեկցութիւնը շարժեց ձեզ առ այս գովելի մտածութիւն. միթէ այս պարագայիս մէջ յարգանաց զգացմունք մ' ալ չյուզեց ձեր սիրտը Լուդուիկ Մորանի պէս մեծարոյ մարդու մը յիշատակին և մահուամբ չափ ինքզինքը նուիրելուն երախտագէտ ըլլալու համար ։

Պատասխան չէք տար, բայց ես ձեր սրտին մէջ կը կարդամ որ այս զանազան զգացմունքները եղան ձեզի յորդոր առ այն ։ Ոչ արդեօք և այս պատճառաւ խոստացաք որ Մորանի այրին նախամեծար սեպէք ձեռքէն եկած ամենայն աշխատութեանց համար. ոչ արդեօք այս վախճանաւ Պերգրան (կը խնդրեմ որ ներէ իրեն առջև այսպէս խօսելուս վրայ) յայտնեց թէ մէկէն պատրաստ էր իր քովը առնելու և աշխատցնելու Մորանի Լուիզա մատաղ աղջիկը որ դեռ նոր դպրոց երթալէ դադրած է. միթէ նոյնպէս այս պատճառաւ չէ՞ որ Լըրնուար յայտնեց ինծի որ մօրը իմացնեմ թէ այսօրուընէ ինքը Ցովսէփիկին Թոշակը կ'աւելցնէ և ուրիշ գործ մը պիտի յանձնէ մանարանին մէջ, ինչուան որ կամաց կամաց հօրը պաշտօնին հասցընէ ։

Բարեբաղդ կը համարիմ ինքզինքս այս լուրերն ալ ձեզի տալով՝ որով յայտնի կ'ըլլայ թէ ինչ աղէկ զգացմունք կայ Միրըպոյ աւանին մէջ, և կ'իմացնեմ որ Վալքուր յաջողցուց Լուդուիկ Մորանի եղբօրորդւոյն Բարեբար—Օգնութեան գաղթականութեան մէջ մտնալը, ինչպէս նաև պզտիկ Պոնէին զոր մամը ունեցածովը կարող չէ խնամելու ։ Ինքնին պառաւն ալ հասակին ու աղքատութեանը չնայելով Մորանի գերդաստանին օգնութիւն մ' ընելու միջոցը գտաւ. և չգիտնալով թէ ինչ կերպով յայտնէ իր երախտագիտութիւնն առ այն որ անձնանուիրութեամբ իր թոռն ազատեց, որոշեց որ անկէ վերջը ամեն օր այրւոյն այցելութեան երթայ, և իրեն պառաւ մայրը ու տղաքը խնամէ, որպէս զի կարենայ ինքը երթալու ամբողջ օրը աշխատելու ։

Այս լուրերը ծանուցանելու ժամանակ բարի բժիշկը չիմացուց եթէ ինքն էր այս մտածութեանց շատին հեղինակը, բայց բնակիչք անանկ փութով ընդունած էին որ պատիւ կ'ընէր Միրըպոյ աւանին ։ Այս դէպքս առիթ աւեր էր ցուցընելու համար թէ ինչպէս մարդիկ կրնան իրարու օգնել, և թէ որչափ կերպ կայ սէր և գթութիւն բանեցնելու ան ատենն ալ երբ մարդ տալու բան մը չունենար ։

— Արդ, բարեկամք, շարունակեց Տիւբրէ այս լուրերը հաղորդելէն վերջը, ըսէք ինծի եթէ Լուդուիկ Մորանի զգօնութեան և վեհանձն ինքնանուիրութեան յիշատակը այս ամենայն բա֊

րի մտածութեանց շարժիչ չեղան ։ Եւ դու, Անդրէաս, կը կարծես՝ ինչպէս որ քիչ մը առաջ կ'ըսէիր, թէ իր առաքինութիւնները ամենևին իր ազգատոհմին համար օգուտ մը չունեցան ։

— Ո՛հ չէ, ա՛լ ասկէ վերջը անանկ չեմ համարիր. սխալմունք մ'' ըրաւ ու պատիժը կրեց. բայց իրեն պատուովը չարժեցաւ և հիմա ընտանիքը անոր փոխարէնը կը վայելէ ։ Սակայն բարեգործ եղաւ և կարգէ դուրս համեստ, և փոխարէն ինչ ունեցաւ՝ բայց եթէ ապերախտութիւն և մահ. ուրեմն դեռ խնդիրս լուծուած չէ ։

— Իրաւ է, Անդրէաս. բայց չուզեցի անոր պատասխանը տալ. ինչպէս որ քեզի ըսի՝ պէտք է որ վիճաբանութիւն մը սկսիմ մեր այլ և այլ անգամ ընելիք խօսակցութեամբը. բայց որովհետև այս նիւթը հետաքրքրական է քեզի համար՝ գալ կիրակի եթէ կ'ուզես սկըսինք անոր վրայ խօսիլ, հանդերձ իրեն յարակից ամենայն խնդիրներովը. եթէ օգը ներելու ըլլայ՝ մեր սովորութեանը համեմատ կու գանք այս բազմոցներուն վրայ կը նստինք, ապա թէ ոչ հարկ կ'ըլլայ որ դըպրոց ժողվուինք. Հայրմինաս՝ աւանդապետին հրամանաւը սիրով զմեզ ներս կ'ընդունի ։

— Ամենայն հաճութեամբ, ըսաւ փութով Հայրմինաս՝ որ միշտ բժշկին եռանդուն ունկնդիրներէն մէկն էր, վասն զի գիտէր թէ որչափ խելք կըրնար սորվիլ անոր խօսակցութիւնը մըտիկ ընելով ։

— Շատ աղէկ, ըսին իրեն հետ մէկտեղ նաև ամենայն հանդիսականք ։

— Ուրեմն գալ կիրակի, ըսաւ Տիւրբէ բարևելով զիրենք ։

— Գալ կիրակի, պատասխանեցին իրենք ալ փոխադարձ բարև տալով. ու Տիւրբէ փութաց Մորանի այրի կնկանը դնաց ունեցած մխիթարական լուրերը հաղորդելու համար ։

ՌԱՖԷ

Կը շարունակուի ։

---

## ՔԵՐԹՈՒԱԾ ԾԱՌՈՑ

*Մայրեւորն .*

### Ա.

Ընդ գալարիս կաղնին բազմոստ մեռեալ կայ,
Բայց ճիգն յետին մայրեւորին հինօրեայ.
Որ ի տապարն դ' երկայն մեղեխն յենու զանթ,
Հառաչակուլ ոտըն զոստով կըքեալ անդ.
Եւ ըզվազուեան չահեալ զկոտոր սեաւ հացին՝
Ըզճակատուն քիրտըն օըրբէ զառնագին ։

« Արուեստ դըժնեայ տապարակիրըն լինել.
Որ դ'ինք կընքեաց զիս յայս վաստակ մահառիթ.
Ես ըզպայծառ մանկունսդ հարի անարգել,
Այլ ուր ծընայս՝ սիրեմ ըզքեզ դեռ մայրեդ ։

« Քոյդ հովանի աշխարհ է իմ ուր հնացայ.
Գթանեմ դհասակ չուրջ ըզզարիւս յաղթ կաղնեաց .

Երբեք ի նիրհ զ' որմովք չինի ոչ հանգեայ .
Ոչ քաղեցի զերկրս անդոց կամ այգեաց ։

« Զիս որորեաց մայրս ի մամուռ ՚ւ ի կեղեւ .
Հանգոյն ի բոյն առեալ նընջել զորդեակս իմ,
Որ իբրեւ զիս վըստահք յիւրեանց ոյժ թեթեւ՝
Ընդ ծառս ի վեր զոր հատանեմ՝ առղայքն ։

« Եղեն եւ իմ սուսերք բարեաց, ահ եւ սեաւք,
Զոր գիտեն մայրքս հաղորդք չարեաց կամ վրկայք .
Կրեցի սատէն ըզգոլ, ըզվիշտս եւ ըզցաւք,
Են, են այժ եւ մարմինք խիստ հոդւոյ կայք ։

« Վարանի նա կապեալ յիս բուռն ընդ լըծով .
Իսկ ծառն յոդւոց ելեալ զ' հարուածս յար ընդ նոյն,
Իբր առ տըմոյն ցնորեալս յարասյս առ սեզով՝
Խօսի առ սեաւն այն պատառող զախրտ կաղնայն ։

« Առ ձեռք եւ իմ դարուն, երապք եւ ցընորք
Անցին, ով ծառք՝ որ ամրքէք զցուրտ եւ ջեր .
Զոտորդ թացի զառնահոսան արտասուօք,
Սակայն վասն իմ կաթեաց յաճախ մեղրը ձեր ։

« Դամու դամու յունկն իմ հընչեն ձայնք չինից,
Գոչիւնք ցաւոց խուռն ամբարձեալք ի յերկին .
Հեշտ է ինձ յոյժ խարշափ դողդոջ տաղարդից,
Ուստ քաղցը հոսէ քուն ի հոգի ՚ւ ի մարմին ։

« Բայց սուր սօսիւն սուլեալ ընդ սօս ընդ հացի,
Զայն տղբակին սարոյն մեղմիկ ի շըշունջ՝
Խոր եւ անճառ յիս արձագանգս իմն ունի,
Զոյր ամենուստ լըսեմ զանվերջն ըզմըրմունջ ։

« Են իմ բաղումք ձեր սստազդուարք եւ փարաք պինդ.,
Երգոց ասայք եւ նըւագք լուրջք ՚ւ անուշիկք,
Եւ ընդ կընճռեալ ճակատս ընդ ձերն իբր ի թինդ
Հողմ մենութեանց սահի, եղբայրք իմ կաղնիք ։

« Այլ զերդ սոսկ յաղաղս փառեալ ըզերինս,
Ցաղպար յաչռամ զաարքնեմականս իմ սերտանս
Հարեալ համայն կապեմ խոլընանալս ձինջիւս
Ըստ ուխտ հարկին, եւ չեռջեմ զառա եւ ըզբառնս ։

« Տրտմում է արդ հոգիս եւ աչք մըթագնեաց .
Քանդիչ մայրեացս ես ատելի եմ անձին .
Վտաւանս հարիւր մերկեալ նոցուն յըստուերոց ,
Բացի տեղի մարդկան . Ներեսցեն աստուածքդ իմ :

« Ա՛ռ տնանկութեան ամբարըշտիմ ի ձեր ծոց
Ո՛վ սըրբազանք մայրեաց , ներումքդ ինձ ընդ վայր .
Վասըն մանկանցս յաղորմ հիւղքս սովելոց ,
Կոտոր ինչ է հացի անկեալ մէն մի ծառ :

« Տընանկութիւն՝ ընդ ում երկաթս ոգորի ,
Եւ զոր գիտեմ՝ տալ մոռանալ ինձ բնաւին .
Նա թաւալէ , լացեալ զանկեալն ի յերկրի ,
Ի պէտս աւուր հարիւրեմեան ըղկաղնին :

« Ո՛հ երանի , — Թ՝ երանութիւն է ճոխից
Ցաստուածախօս հին ծըմակաց բացական , —
Վա՜յ մըշակին , վա՜յ սերմնացան բոլորից
Որք ի հաւուց ձըլեալ ըղդաշան ընկալան :

« Ջամբարըշտին նոքա առ գիւտ ինչ հացի .
Ի ճիգն անհող , անփորձք կարեացս իմ գոլով ,
Ջարկին թաւալ գյարկն ապաւէն ընտանի ,
Ըղծանօթս հին՝ զորս հատանեմ գողալով :

« Ողջ լերուք բունք՝ անհուն ազգաց դուք սուրբ յարկք ,
Մեղուաց , մարդկան եւ թըռչնեկաց եթերին ,
Ճօճեալքդ ի ճեմ հողմածածան աշտարակք ,
Ցերգս եւ ի մեղր դոյց կողք խայտան զովագին :

« Մի այլ մընայ զառըն կընքով գըրոշմեալ արդ . . .
Հարից ընդ փոյթ ըղձիրալիրս յիշատակ . . .
Ջառպընջակմնս՝ զհայր անաառխս եւ ըղղարդ .
Անկցի եւ նա . . . յետոյ եւ ես նոյնգունակ » :

Բ

Մայրեւորդ հին՝ հար կործանեա անբարբառ ,
Էն հինաւուրց անտառք գիպոդք առ տապար .
Դու զերդ մըրրիկ ես բարեգործ ը՝ ահարկու ,
Դառն է պաշտօնդ եւ ծանր երկաթ քո հատու .

*Զի սրբամուէր են քեզ չերմօք անտառքս այս*
*Եւ աղաւնեացդ ի բոյն ուղէջք եռուն կայս ։*
*Կաղնեին ինքնին պաշտեալ ի կրօնս Հայրադութ ,*
*Ջօնեալ սէզ խիտ վասն հարսանեաց անկողնոյդ .*
*Ի հեշտ ի քուն ընդ հովանեաւ անդ Նորին*
*Արքուն տիոցդ երազք ի ցնորս երկայնեին ։*
*Խիստ է խոլել , ծախել ի բոց անխղճայ*
*Զաստուածընկալ տաճարի սիւնս հինօրեայ .*
*Բայց այսակիր հովտաց ձորոց անարեւ*
*Հարկ է պարզել զգլմբեթս ի լոյս տակեթեւ ,*
*Զի բեղնաւոր յարփւոյն ծագել կըշռակի ,*
*Ցերկրէն Նամէտ փախիցեն դեւք խաւարի ,*
*Եւ պատրաստեալ նովաւ ի հունձ դաշտք անդէն*
*Արքայապատանծ կաղնեաց մարգիկ իշխեսցեն ։*
*Աստուած կամի , կանգնեին ոստանք ընդ մայրեաց*
*Ի՛ ամայք յաճախ չեն ի շինեց ինչ ի բաց ։*
*Զերդ ծառ 'ստ ասուրց թափէ տերեւս և՛ ընձիւղէ*
*Եւ ոչ ըղկանս եւ զգործ մեղուաց ինչ խըսրէ ,*
*Սոյնէս աշխարհ հըլու ի շունչ փոթորկի ։*
*Նորոգանալ միշտ ի պարտըս իւր պարտի ։*

*Զի անճեցին ազգք ընդ բըլրոցն հովանեաւ*
*Արքուն տոհմիդ պարզեա տեղիս տապարաւ .*
*Ընդ կեռասիքն անդ պըտղաւէտ կարմրերփեան*
*Բիւր ոեաւ արտունձք աւցեն ընթրիս մեծաձայն .*
*Ցոյր գեղանի մանկունք 'ղ երեկս յիւրեանց դարձ*
*Երգովքն ընդոստ ելցեն ի սայլս վերամբարձ ,*
*Եւ խըմբեսցին ի ճաշ ղրացիք ղուարթադոյն*
*Բեկեալ զճերմակն հաց առ ոտիւք ձիթենւոյն .*
*Եւ ժողովուրդս այս համօրէն ցիր դաշտաց ,*
*Ընկերացեալք սիրով ի գործըս ձեռաց ,*
*Լըցցեն երգովք ըղնահայեան այն արի՝*
*Մըրըրկալից տեառղ աուրցն երկաթի ,*
*Որ յարդարեաց զամայս ի վար մարդկային ,*
*Եւ առ գործել ազատ որդւոցն ըղբաժին ,*
*Առ ոտն եհար կոծովք զպաշտեալն հովանի*
*Ըղսէր եւ զահ բազմադարեանն անտառի ։*

ՏԸ ԼԱԲՐԱՏ

ԹԱՐԳՄ. Հ. Դ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ.

# ՍԱՐԴՔ

(Տես երես 53)

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

### Ը. Արաքնէ.

Այն դարուց շարքին մէջ որ քան զմեր ժամանակը շատ յառաջ կանխեցին, ժամանակ մ՚ ալ կար որ մեր առջին կը դնէ մարդկային երևակայութեան ծննդոց ընդարձակ ասպարիզի մը պատմութիւնը։

Պատմութիւն քերթողական դարուց, ուր մարդ կարծես թէ մանկական պարզութեամբ մը կը փայլի, իր դիւրահաւատութեան հակամիտութեամբը. և իր ախորժակին հետևելով՝ երևակայեալ աստուածներ կը ստեղծէ բարեբար և չարարար միանգամայն. և չէ թէ միայն միմեանց նախանձորդք, այլ և դիւրախաբ մարդկութեան, ուստի է երբեք որ և նկուն ալ կ՚ըլլան։

Եւ չէ զարմանք։ Այն երևակայութիւնը որ ըստ հաճոյից կիրքէ մը աստուած մը կը ստեղծէ, կրնայ նոյն երևակայեալ էակին քմացը համեմատ երանգներ տալ. կրնայ մերթ գից հաւասարեցնել զայն, մերթ ալ մարդկան։ Մերթ աստուածային ստորոգելեաց արժանի սեպել, մերթ ալ մարդկայնոյն թիւրեալ բնութեան ախտակից։ Այս ամենայն հնարաւոր է. վասն զի ջերմացեալ դիւրահաւատ երևակայութեան մը ասպարէզը մեծ է։

Այսպիսի երևակայութեան մը ծնունդ է նաև Արաքնէն որուն պատմութեան արձագանգ մը հոս կը նշանակենք, ինչպէս որ նախնիք մեզի աւանդեցին։ Տեսնենք այն ոգւոյն զբօսանքը՝ որ յանակնկալս թելի մը վրայէն զայն կախեց։

Կրնա՞նք արդեօք ժխտել որ միշտ վրիպելու ենթակայ ենք։ Իբր մարդ միշտ դիւրախաբ ենք և անձնասէրք, և պարծանքը միշտ շրթունքներնուս ծայրն է։ Մեր անձնական յարգը մենք գիտենք. մերձաւորինն ալ գիտե՞նք. բայց մենք քիչ մը աւելի յարգի ենք քան զմեր մերձաւորը. չէ՞ ճշմարիտ։

Արտաքին ցոյցը՝ մեր զգացած անձնական յարգին նշան մըն է. և ասիկայ ապացոյց մը ըլլայ։ Ահա հանդիսատեսք կան. դերձակ մ՚ է որ կը գործէ. բայց ինչպէս հպարտութեամբ ասեղին ծայրը կը շարժէ. անոր ծայրին վրայ կախուած է բոլոր արուեստին ճարտարութիւնը։ Դիտէ կօշկակարը. ոչ երբեք մինակութեան ժամանակ անանկ հպարտ աշխուժով շաղամաթը ձգել կը տեսնես։ Անդիէն կովպանը, ինչպէս թէ թագաւորական աթոռ մը նստած, կովը կը կթէ, և զքեզ հայեցուածքի մը իսկ արժանի չսեպեր. և դռնապանը ձևացեալ վարպետութեամբ մը բանալիքը կը շարժէ։ Այսպիսի ժամանակ ամենէն ստորին արուեստաւորն ալ իր գործւոյն ծայրը կը դնէ բոլոր իր պարծանքը։ Ինչպէս լեզուանին ալ բոլոր խելքը և իմաստութիւնը լեզուին ծայրը։

Եթէ ջրկիրն իսկ իր դոյլին ճօճմամբը կը պարծի, ո՞րչափ ևս առաւել այն արուեստաւորը որ իր արուեստին մէջ հրաշալիք կը գործէ։

Բայց ափսոս. փոքր ճարտարութեան մը համար փոխանակ մարդ նախախնամութեան ձրիատուր պարգևաց երախտագէտ ըլլալու, կ՚ապերախտի՝ անձին գրելով։

### Թ

Այսպիսի մոլորական պարծանքի մը ծնունդ է Արաքնէն։ Այն աս արդ թեթևոան բայց գծագրելով կը զրուցուի, և երբ ճշաակակար և կենաց իսկ անարժան՝ կը համարուէր, երբեմն ժամանակ այս մարդկային անդամակոյտ մարմինը ունէր զգեստաւորեալ։

Թէպէտ ծննդեամբ՝ ռամիկ, սակայն իր հրաշալի արուեստովը գիտցեր էր իրեն անուն ու փառք ժառանգել. և իր համբաւոյն ետևէն ձգել խուռն ընթացողաց բազմութիւն մը որ իր ճարտար

երկուքն իսկ մըցակցան աշխուժութեամբ գործելու ինկան ։

Հոն տեսնուեցաւ ճարտարութեան սքանչելիք ։ Երկուքն ալ նիւթ առին հնաւանդ պատմութիւնը, ուր կը փայլէին դից քաջագործութիւնքն ։ Բայց վրիպեցաւ Արաքնէն իր ընտրութեանը մէջ. անանկ դիպուածներ առաւ ներկայացնելու՝ որ դից պատիւը կը բեկէին ։

Եթէ այս պարագայն չըլլար, Թերեւս ներէր իրեն դիցուհին որ անարգ չէր սեպած անոր գործածը ։ Բայց չկրցաւ համբերել դից նախատանաց, ու նախանձին տեղիք տալով՝ բզքտեց յաղթող Արաքնէին բանուածքը, ու ձեռքին կկոցովը իրեք չորս անգամ ճակտին զարկաւ ։

Նախատինք մեծ այն հպարտութեամբ վառուած անխոհեմ սրտին. չկրցաւ համբերել վշտին, և աներկիւղ յուսահատութեամբ լարը վիզն անցուց ու կախուեցաւ ։

Այն Թշուառ տեսարանին առջին Աթենասայ գութը շարժեցաւ ։ Առաջ անցաւ մեռնելու կախուածին վիշտը ։ «Զմեռնիս, կանչեց, ով անիրաւ. այլ Մնացիր կախուած» ։

Մօտեցաւ ինքը ու խոտի մը հիւթը վրան Թափեց ։ Իսկոյն մազերը Թօթափեցան, անհետացան ունքունք և ականջք. պզտիկցաւ գլուխը, փոքրկացաւ մարմինը. գարշապարաց տեղ սրածայր մատուըներ ձևացան նուրբ երկայն բազուկներու վրայ. Մնացածը բոլոր փոր ձևացաւ նիւթով մը լի ։

Այսպէս Արաքնէն այլակերպեալ եղաւ Սարդ կատարեալ. իր տկճորակերպ փորէն նիւթը անդադար Թելանման դուրս կը քաշէ ոստայն մը հիւսելու համար, որոգայթ սատանդական պանդխտաց ։

Արդ Մնացիր 'ի կախ տեղդ, դժբաղդդ Արաքնէ. Մնացիր ընտիր հաւատարիմ Թշուառաց ։ Եթէ մէկ մը անիրաւ ալաքէ մը վիրաւորած իր դառն բաղդին դէմ բողքելով՝ ձայնը վերցնէ, Թող տեսնայ զքեզ. յիշէ պարծանացդ օրերը, տեսնայ արդի Թշուառութիւնդ, դառնայ ինքն իր վրայ ու քեզմով մխիթարուի ։ Վշտացեալ մը միայն կարող է վշտացելոյ մը ճշմարտապէս մխիթար ըլլալ ։

Ժ

## Թեապատմականն Արաքնէ ։

Ինկաւ Արաքնէն իր փառաց ապագայէն. իր մեծահռչակ ճարտարութեանը հետ մերկացաւ մարդավայել կերպարանքը և զգեցաւ այն՝ որ երկիւղ կը բերէ և գարշանք անփոյթ աչաց ։

Հալածեալ 'ի մարդկանէ, գլխապարտ, վտարապարտ, աքսորուեցաւ այն էակաց հետ՝ որոնց մտածութիւնն անգամ մարդ տանիլ չկրնար ։ Վասն զի ով է որ կարճի մը ներկայութեան ձայնին Թեթև սարսուռ մը չզգայ ։ Ոստայնանկն Արաքնէն կարճաց ազգակից դասուեցաւ ։

Տրուեցաւ իրեն սիրտ մը՝ սիրտ զգայուն, այլ այլակերպ անկէ որ մարդկապէս ունէր ։ Աքսորուեցաւ մարդկային ընկերութենէն, դատապարտեցաւ ինչպէս վրիժագործ՝ առանձնական կենաց, ինչպէս անիծեալ՝ մենաւոր Թափառելու ։

Արդեօք պահեց իրեն այն ընկերական կենաց ախորժակները ։ Այս ստոյգ է որ որչափ հալածեալ է միշտ 'ի մարդկանէ՝ նոյնչափ միշտ անոնց քովը կը Թափառի, կարծես Թէ անոնց ընկերութիւնը կը փնտռէ. և անանկ մը կը ցուցընէ՝ ինչպէս Թէ զանոնք տեսնելով երջանիկ անցելոյն կորստեանը վրայ կը մխիթարի ։

Մարդասէր, մարդամօտի, տնասէր, միշտ ուր մարդ կայ՝ հոն կը յաճախէ, հոն կը բազմանայ, և անոր քովը ապրիլ քաղցր է իրեն ։ Բայց և կը խիթայ անկէ. կը սիրէ մարդկային տեսութիւնը, կ'ախորժի անոր հետ բնակակից ըլլալ, բայց անոր հպաւոր մերձաւորութենէն կը խորշի ։

ժամանակը, թէ դէպքը, թէ ծագումը՝ զինք անեցուցին. անուամբ յազգս, 'ի սեռս և 'ի տեսակս։ Բազմացաւ տեսակ տեսակ. փոքրկացաւ, մեծցաւ, ուղցաւ, սպիտակցաւ, կերպ կերպ գոյնզգոյն ներկեցաւ։ Ո՞րն է կ'ըսես նախատիպը. ո՞րն է կ'ըսես այն նախամայրը ուստի սերեցան բոլոր այս տեսակները։

Բնապատումին է ձայն տալ այս հարցմանը. սակայն և ինքը կը լռէ։

ԺԱ

Այն ընդհանուր կենդանաբանական ցուցակին մէջ, որ մարդ իր յիշողութիւնը օժանդակելու դիտմամբ հնարեր է, շարադասելով հետզհետէ կենդանեաց բազմութիւնը մէկ մէկու ետեւէ ըստ նմանութեանց կամ ըստ այլայլանութեանց, կայ մասնաւոր տեղ մ'ալ Արաքսէին ցեղին պահուած։

Ի ստոր քան զողնաւորաց խմբաւորութիւնը, որոնց նախատիպ են կաթընտուք, և լրացնող՝ ձկունք, կու գայ ուրիշ խմբաւորութիւն մը Օղակաւորաց անուամբ։ Խումբ մը ստորնագոյն էակաց, զուրկ 'ի ներքին ոստագձական կմախքէ՝ որուն վրայ կը յենու վերնագանից մարմնոյն ողջոյն շինուածքը։

Խեցի վիժածք բնութեան աշխուժին, արտաքին պատեան մը ունին եղջերեայ, բազմաթիւ օղաց շարքէն ձևացած, որ խողովակակերպ իրենց ամենէական գործարանները ամփոփելով կը պաշտպանէ, և ներքին կմախքի մը պակասութիւնը կը լեցնէ։

Թէպէտ զուրկ ոսկրուտ գանկէ մը որ 'ի վերնագոյնս ջղային դրութեան կեդրոնը կը պատսպարէ, ունին իրենց յատուկ ջղային դրութիւն մը որ կծիկաւոր կը կոչուի, և կը բաղկանայ ջղային կծիկներու շարքէ մը, որ զոյգ զոյգ՝ մարմնոյն երկայնութեանը վրայ ձգած է։

Այս կծիկներէն ջղային լարեր կ'ելլեն, և անոնց ամեն գործարանաց մէջ բաշխուելով կը ցրուին։

Մարմիններին՝ կամ ունի ատեղափոխիչ գործարան և կամ զուրկ է։

Շնչառութիւններն կամ օդային է, ու խուչակներով կամ թոքային քսակներով կը գործադրուի. կամ ջրային է, և փողակներով կամ մորթով կը կատարուի։

ԺԲ

Այսպիսի խմբի կենդանեաց է որ ուսումնական կարգաւորութիւնը արժանի դասեր է Արաքնէն դասելու։ Իրմէն վեր կան միջատք և բազմոտունք, իրմէն վար խեցեմորթք, օղակայինք և այլք։

Բայց ընդհանուր մարդկութենէն քաշած հալածանքը կ'երեւայ թէ բաւական չէր եղած Արաքնէին. հարկ էր ուրիշ տեսակ հալածանք մ'ալ կրեր մասնաւոր ցեղի մարդիկներէ որ բնապատումք կը կոչուին. այս՝ անուան հալածանքն է։

Ցեռան որ անունը ականջին աղէկ կը հնչէ, և մասնաւոր դիտման մ'ալ ծառայելու յարմար է, վերցուցին զայն իրմէն և ըրին անուն մը ընդհանուր, մասնաւոր դասու էակաց, որ կը բովանդակէ հինգ կարգ կենդանեաց արաքնեայք ձայնով։ Առաջին կարգը կը բռնեն կարճայինք, յետոյ կու գայ Արաքնէն որ ըստ մեզ իր ազգայնոց անունը պիտոր կոչուի Սարդայինք։ Ապա կու գան այլ երեք կարգ։

Այսպէս Արաքնէն թէպէտ ինկաւ խոնարհեցաւ իր բարձրութենէն, թէպէտ չկրցաւ արգիլել որ իր անունն իսկ չկրճատեն, բայց գոնէ կրնայ անձին պարծանք մը սեպել որ իր անունը տուաւ մեծ ազգ մը հաստատելու համար, որուն ինքն իսկ իր տեսակաց բազմութեամբը էականագոյն մասը կը կազմէ. և կը պարծի այն ազգին մէջ իր ճարտար ոստայնանկութեամբը և իր արուեստովը՝ որ է խորամանկ աւազակութիւն։ Միով բանիւ պատիւ մ'է իրեն այն՝ որ մայր կը ճանչցուի այն էակաց որ վնասակարը և օգտակարը միանգամայն կը պարունակեն։

Արդ սարդայնոց ընդհանուր տեսութիւնն այս է։

Թռչաւորք կը կոչուին, ըստ որում նման քասկներ ունին շնչառութեան որոշուած։ Աչքերնին՝ վեցէն մինչև ութ։ Ծնօտիկնին եղջերեայ շարժուն կեռով մը կը վերջանայ որ միշտ վրանին կը ծալուի, և ծայրին մօտ նուրբ ճեղք մը ունի, ուսկից թոյնը կը վազէ։ Որովայննին կակուղ և առանց մասնաւոր բաժանման, որուն ծայրը չորս ցցուած պտկունք կան, մաղտկերպ ծակծկած, ուսկից մետաքսեայ թելեր կ'ելլեն։ Շօշափուկնին ոտնանման, հինգ յօդուածով, առանց սրածայր կեռի. միայն երբեմն ետքի յօդուածին վրայ սրածայր ուռեցք մը կ'ունենան, նշան արու սարդայնոց։ Չորս զոյգ ոտք, վեց վեց յօդուածով։

Այս՝ ընդհանուր տեսութիւն։

Հ. Յ. Վ. ԻՍԱՎԵՐՏԵՆՑ

Կը շարունակուի։

---

## ՃԱՆԱՊԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ
### ՋՈՒԱՐ ՃԻՑԷՐՃԻ ՕՂԼՈՒ ՔԱՀԱՆԱՅԻ

(Տես ԻԵ տարի երես 370)

Ապա գնացք սուրբ յարութեան դըռան աջ կողմն, որ ասացի թէ երեք երեք սիւն կայ երկու կողմն. այս կողմի երեք սեանն մէջ տեղի սիւնն պատառեր է բիրիգի նման մէկ և կէս արշուն կայ. պատճառն սորա պատմեմք. ոմանք կ'ասեն թէ բազում աղքատ մնացեր դուրս և ոչ էն առեալ ներս, նորա համար պատառեր է սիւնն այն, և անոր ելեր լոյսն. — ոչ այսպէս. այլ առաջի ժամանակն՝ միւթէվէլլի քով եաղըճին հրեայ է եղեր. տեսեր որ այնպէս հրաշք կու լինայ՝ նախանձ կ'անէ կ'ասէ թէ գալու տարի բան ինչ խորհիմ, և միւթէվէլլուն միտքն կու դողանայ մինչև հազար ղուրուշ կու տայ թէ խթման օրըն մի բանար, որքայ որ կայ՝ սուտ էն, ասելով. և նայ կու հաւանի նորա խօսացն և կ'անէ զհազար ղուրուշն. և խթման օր ըխտաւորք կու ժողովին 'ի մի տեղ, թէ մրտնունք ներս որպէս սովոր է։ Այս միւթէվէլլին չի բանար դղուռն, հայք ֆռանկք և յոյնք, վէքիլք և թէրճիմանք 'ի մի տեղ կու գան, թէ ընդէր չես բանար, այսչափ տարի չէ եղեր ընդէր այսպէս կ'անես. և նայ պատասխանեալ թէ այսօր չեմ բանար բայց վաղն կու բանամ. և անիծեալ հրեայն այն իբր չգիտելով անմռունչ կանկներ է անդ. և յորժամ եղև օրն հասարակ, դեռևս կու վիճեն թէ բաց դղուռն. և ըխտաւորք զմոմերն 'ի ձեռին իւրեանց ունելով լաց և հառաչանք անելով, եկն ժամանակ լուսոյն. յանկարծակի որոտմունք իբրև ամպ գոռաց. և ձայնէն ամենեքեան զարհուրէին. և միւթէվէլլին այն խեղճ մոլորեալն և հրեայն ընդ նմա կու հայէին այս կոյս և այն կոյս. և որոտմունքն սաստկանայ քան զչափին ուժի. և խակոյն սիւնն այն պատառեալ և լուսն անոր ճառագայթեալ, որ ըխտաւորք անոր կու լուսաւորին, և միւթէվէլլին խալքն կու լինա հանդերձ հրէով։ Եւ յորժամ այսպէս կու տեսանեն աչկերև հանեալ զսուրն և թափին վերան, զհրէայն կտոր կտոր կ'անեն։ Այն տարին այսպէս հրաշք է եղեր. յետ նորա դուռն առաջև խոշոր գամեր զարկած 'ի դեանի, թէ այն օրն ով որ կարողութիւն ունի մէկ կամ երկու աղքատ ներս տանէ. վերջն մնացածն թագաւորին և միւթէվէլլուն գլխուն սատարդաներս լնու, եթէ որ անդգնի կամ պատճառ լինա՝ այն գամերն իւրեան աչկցն մէջն մխէ. և յետոյ պայման եդեալ քաղաքացիք, թէ գաւառուրք այս երկու դռան արալըխն հրէայ տեսնէք՝ խակոյն սպանէք զնայ առանց յապաղելոյ. և կայ այս պայման մինչև ցայսօր, որ այն տեղացն հրէայ չի կարնար անցնիլ։ Եւ այս է սոյդ պատճառն, եղբայր, և Քրիստոսի փառք։

Եւ այս պատառած սեանն կից է զանկակատունն փառաւոր և գեղեցիկ

բարձրաչէն, եօթը տապատա, և գլուխն թաղանձման, և ունի երեսունըմէկ լուսամուտ. 'ի բոլոր լուսամուտներուն՝ հարիւրերեսուներչորս բարակ մէրմէր սիւն. և կէս տեղն Հոռմոց վանից զգեստն է, և ունի չորապան[1]. և նէրքևն Յունաց ազգին փոքրիկ եկեղեցի Յօհաննու աւետարանչի: Եւ 'ի այս մէյտանն Հարցանես եղբայր, երկայնութիւնն երեսուներչորս ատրմ և լայնութիւնն քսանուիրեք ատրմ. բակին ճակատն երեք ղապէմէ. այլ և կին ծեր և տղայ այնչափ կու լցվին որ ասեղ ձգելու տեղ չկայ. սախըն կեցիր եանըքէսիճիէն, մարդոյ աչքէց ծարուրն կու գողանան: Անդ նըստեալ սարաֆներ ոմն մանղըր դիզեալ, ոմն զօլօթայ կու աւրեն, և ոմն ոսկի. իչալլահ, այնպէս հարուստ են՝ որ մէկ ոսկի մի աւըրես առաջևն բան չմնար: Աստ եւս նստին պիլէզիկըճիք, խուենկ ծախող, միպք, սապոն, հալղաճի. տասնըչորս ղապէմէ է մինչև 'ի փոքր դուռն. աստ նստին աղքատք: Լաւ իմացի թէ ինչ կ'ասեն. հալղաճին կ'ասէ, թէ մըղի՝ հալվայ, ֆախիր ֆուխարէ՝ մըլսի. միւսն թէ, քօր միսկն միպքին մըլսի. մէկն այլ թէ, Աստուած ողորմած, մըլսի. այլ և միւսն կ'ասէ, թէ իչալլահ մերհամէթ մըսի. կէսն հայրէն կէս արապերէն ջարգելով. իմացիր որ մըլսի ասելն քէչէլին կ'ասեն:

Այս փոքր դուռն նեղ հազիւ դուրս կու ելանես ղալապալըխէն. ձախ կողմն խանութ մի՝ որ ղօլանճի է, Հոռոմ խէննէ անուն, որ Յոհաննէս թարքմանի. քովն դուռ մի չէխ Մուստաֆային տունն է, և է սորայ կից սափրիչի խանութ. մի այլ 'ի վեր հելվաճու խանութ, պատրուճճի ղանութ. այլ 'ի վեր պիլէզիկըճու խանութ որ աստ նստին կանայք[2] առնելով՝ ստանմիչ չեն լինար, և նոյ ծախելով: Ապայ այլ 'ի վեր գաս աջ կողմն քօշէին գլուխն Հոռմոց վանից դուռն է. այս կողմն կու գնայ դէպ 'ի Յուանկաց վանքն. ձախ կողմն խըղտոց և Հոռմոց խանութներ. երբ ձուկ գայ Եաֆայու՝ աստ ծախեն: Սորայ սըրան կայ բաղանիս. սուրբ Յօհաննու փոքր վանքն Հոռմոց ձեռքն է, դիմացն խանութներ, ճէմճի, չիլինկիր, սանտըխճի, պէրպէր, ղահվէղանա. մի կողմն կու հայի պիւրքէին վերայ. այն դիմաց բաղանիսն այս պիւրքէին կ'երթայ ջուրն քէմէրին վերայով: Ե՛կ քօշէն՝ որ յէնկիչէրիք կու նստին որ է ղահվէյղանա. ապա ելանես 'ի վեր մեծ մէյտան, և բերդի առաջևոմն գնաս 'ի վանքն:

Յետ դառնամք սուրբ Յարութեան միւս փոքր դռնէն դուրս ելնես. աջ կողմն մեծ պաղչայ մի որ դառնապիտի մէքան է. աստ են թապախներն. առաջ գնա սուրբ Ստեփաննոսի եկեղեցին. որ այժմուս բանդ է. ով որ պարտատիրաց այս բանդն դնեն, առանց փակի առաջևն մեծ բակ, չուրջ կու գայ դուռն բայ, ոչ որ չի կարենար դուրս ելանել. ամէն մարդոյ իւր պարտատէր գայ առնէ զպարտական և հանէ դուրս: Գնաս առաջ որ շուկան պիտի երթաս. ձախ կողմն սուրբ Աստուածածնայ գերեզմանին ճանապարհն է. և շատ տեղ կու գնայ. և աջ կողմն մուտ դռնէն ներս, Հայք ղազանճիք, իփլիքճիք, պօյեայճիք, ղասապք, պախալ, չախըլ պիտէճիք, աչճիք, քէպապճիք, ղունտախճիք, սառանք, ղազէզ, ճիզմէճիք, ղաւախճիք, պազըրկեանք. մինչև 'ի վայր դռան գեղեցիկ տաճարին. և աջ կողմն մէհքէմէն մտանես ներս. մէջ տեղն շատրուան, որ վեց տեղաց կու վազէ ջուրն. և ելանես դուրս, դիմացն աղբիւր մի. մի ասեր թէ յներուսաղէմ աղբիւր չկայ. սորայ ջուրն հայր Աբրահամու այլ հեռուէն կու գայ. սայ աղբիւրին քով գերձկի խանութ մի. ով մօլլա լինայ՝ գերձակն աստ նստի. և ես անդ շատ մուհաաէրէ քաշեցի. և էր դերձագն էնկիւրցի Պետրոս անուն կտրիճ մի. մինչև 'ի գոտիկ կեցայ և գնացայ:

1 Զգեստի, լաթի վերակեցու:
2 Բառ մը կը պակսի:

*Այսուհետեւ զսուրբ Ծննդեանն որ է Պէթղէհէմ, զնա զովեմք և պատմեմք ձեզ եղեալն մի ըստ միոջէ։*

Սուրբ Ծնունդն է բարձր տեղ և է 'ի ձեռս երեք ազգին Ֆրանկաց, Հոռոմոց և Հայոց. և 'ի գնալն մեր անդ տեսաք զարմանալի իրս, և օկտանեմք փոքր 'ի շատէ ծաղկաքաղ պատմեմ ձեզ: Դրսի գին կայ մեծ մէյտան մի և աջ կողմն երկու մեծ խան. Ծննընդեան դուռն փոքր և ցած. եթէ կամիս մըտանել ներս՝ փարան տուր ֆէլլահին, մուտ ներս. 'ի մըտանելն 'ի բաց մութ է, կայ չամչարսը մէյտան մի. և աջ կողմն երեք ոտք ղատէմէ մէկ դուռ մի այլ, որ մեր վանից դուռն է. ունի երկու կողմն խոշոր սէթ. անդ եւ կայ փոքր դուռ մի. կու ելանես դուրս, աջ կողմն 'ի վեր ել քսան ոտք մէրտիվէն է. և կայ երկու կողմն երկու օտայ խօշոր և գնա ուղիղ և այս տեղս մեծ մէյտան մի է վերան բաց. կայ աստ փոքր մութվախ մի և մութվախին քով աշճուն օտան. և օտային ներքև գինետունն. տասներհինգ ոտք վար իջանես, և այս մութվախին դիմաց քէմէր դուռ մի. 'ի մտանելն ներս ձախ կողմն դուռ մի պաղչային. քսան ոտք մէրտիւէն վայր իջանես, և ձախ կողմն է դուռն պարտիզին, մեծ և սիրուն չէն, որ ոչ նըմանի սուրբ Յակոբայ պարտէզն. սիրուն քօշքօվ և շատռվանն առաջեն, վարդենիք և նռնենիք, զաւզան կերպիւ կերպիւ. ել պարտիզէն, դիմաց գնա. կայ անդ խանի նման երեք երեք կողմն քէմէրով դռներ. հորերն մէջն և ել վեր կայ անդ սրայով երեք օտայ. եւ կայ աստ փոքր դուռ մի. ձախ կողմն կայ սիրուն հոր մի և է կից սորայ դուռն եկեղեցուն. աջ կողմն փոքր սէթ մի. անդ է ջուխտակ կոչնակ երկաթ և փայտ. ներս մուտ վերան ծածկած մեծ տեղ, և ապա ներսի դուռն եկեղեցուն ձախ կողմն կու ճկիս. մէկ ղատէմէ կու իջանես սիրուն գեղեցիկ եկեղեցի, որ անունն սուրբ Կատարինէ անուանեալ. և ունի լայն արձակ խորան. ունի երկու կողմն դուռ, և դրան երեսն պատկեր անհարկու, մինն Պետրոսի առաքելոյն, և միուսն Պօղոսի, աջ գիհն աւանդատունն է: Եւ յորժամ գնան ըխտաւորք և առնեն զմոմն և մտանեն ներս. 'ի ժամանակին մեծաւորն ով իցէ ելանէ խորանն. և դնեն աւետարան, և կարդայ. և յետ կարդալուն բանան մեծ կոնտակ մի ընթեռնուն. հարեւր ոսկիէն մինչև 'ի ժամանակն կու իջանէ. և յետոյ երեք պօլիչկ կ'անէ. ամէն մարդ իւր կարեացն կօրէ կու տայ. շատն այլ զօռով կ'առնեն. կու տան մէկ մէկ մոմ ձեռքերին մինչև 'ի յաւարտն. ելանեն 'ի դուրս, վարդապետք առաջև է և ժողովուրդք յետեւէ. գնան դուրս բարձր տեղոջ միոյ, և առեն շաբական, և առեն ոթիւ, աւետարան Ղուկասու՝ Եւ հովիւքն էին 'ի տեղւոջն յայնմիկ բացօթեայ. նոյն տեղացն կու երեւի հովուաց տեղն. իրաւի բացօթեայ է. և առեն փառք 'ի բարձունս. և աւարտման պատմեն զտեղին այն և տան զաշապուրն[1]: Եւ յետ դառնալն կայ անդ փոքր դուռ մի զարապա, որ սուրբ Աստուածածին զքառասունքն անդ է պահեալ։

Գամք վանքն. կոչնակին դիմաց մեծ մութվախն. և սորայ մէջն հացի փուռն է. միուս կողմն սեղանատունն է որ ըխտաւորք նստին և ճաշակեն զկերակուրն. ապա եղբայր, պատն ծակ է մեծ, որ անտի տան զպահանջներն խոշոր. և ունի այս հողէտունն երկու դուռ. ընդ ամէնն քանըրչորս օտայ է, եղբայր, իջանեմք 'ի վայր, որ Ծընունդ պիտի մտնունք. մեծ և բարձր դուռ մի. և գրեալ կայ դրան վերոյն հայրէն գրած մէկ ղանաատն. և միւսն արապի. ներս մտանելն մեծ մէյտան. ունի երկու կողմն քսանական խոշոր սիւն, որ քառասուն սիւն կանէ. և կայ անդ սիւն մի որ սուրբ Լուսաւորիչ հինգ

[1] Աջահամբոյր։

մատան զարկեալ, և կայ նշան մինչև ցայսօր։ Ի ներս մտանելն՝ ձախ կողմն Հայոց խորան սուրբ Աստուածածնայ, և կայ առաջևն փոքր մէյտան. յետոյն Ֆռանկաց վանիցն դուռն։ Այս կողմէն կամիս իջանել 'ի սուրբ Ծընունդ. տասնըվեց ոտք է միւտէպէր մէրտիվէնն զարմանալի. 'ի յատակ մէրտիվէնին ձախ կողմն ծննդեան տեղն է զարմանալեան. մէջ տեղն կլօր էշիմ սումախի, և բոլորն արծաթապատ ճաճանչ ակնեղով. և 'ի վերան սեղան կազմեալ։ Եթէ հարցանես զարդարանքն՝ ոչ կարեմ պատմել մինչև որ տեսանես. և 'ի դիմաց սորայ Մսուրն անքանից. երկու կողմն երեք երեքական զատէմէ. մէջ տեղն սուս մէրմէր. երկայնութիւնն միջի վեց թիզ. չորս թիզ լայնութիւնն թէլղաֆէս հիւսած. և բազում արծաթ կանթեղ. և 'ի դիմաց սորայ սեղան որ անդ պատարագեն. ներս գնալու ճանապարհն այլ սորայ հետ է. կամարն զէրպապով զարդարեալ է, որ երկի է դոյնզդոյն։ կայ նեղ դուռ մի, մտանելն 'ի բաց աջ կողմն Եւայի գերեզմանն է։...

Գնաս ներս՝ որ մանկանց կոտորած տեղն. և ունի սեղան և ներքև սեղանոյն մեծ պատուհան մի. կայ անդ փէնճէրէ մի. վայր հայիս որ մեծ մաղարայ մի. որ անդ է մասունք սրբոց մանկանց ժողովեալ 'ի մի տեղ. և կայ աստ կանթեղ մի հանապազ վառի։ Եւ անտի ներս գնաս աջ կողմն գերեզմանն դպրապետին, որ քրիստոնէից ժամանակն կայր դատաւոր. որ է արտաքոյ դըռան, անդ տղաք կարդացներ. և է անունն[1]։ — Մէկ քիչ յառաջ գնաս գերեզման կուսանաց. և կայ սեղան և պատկերներն 'ի վերան. և դիմաց սորայ կայ գերեզման մի Ճերանիմոսին[2]. սա ունի սեղան ևս։ Գնաս ներս մէյտան տեղ մի, և է անդ գերեզման մի Սիմէոնի ծերունոյն, և սեղան և 'ի վերոյն

1 Չէ դրուած անունը։
2 Ս. Հերոնիմոս։

բողն ահարկու պատկերն իւր. և 'ի ձեռին գրիչն ունելով։

Ապա գնամք ծննդեան միւս կողմն. և աջ դիհու 'ի վեր ելանելն՝ տասուերկու ոտք մէրտիվէն. սա ևս միւտէպէր է. այս կողմն Յունաց վանից փէնճէրէ մի կայ. որ թափօր ելանելն մեր անտի կու հային. և կայ առաջևն մէյտան մի, լայնքն տասնըութը ատըմ. և երկայնութիւնն քսանուերեք ատըմ. նոյնպէս միւս կողմն ունի երկու մէրտիվէն երեքական ոտք կլոր միւտէպէր. և կայ աստ եօթը լուսամուտ. և ամէն լուսամուտ քսանըութնական ճամ. դուանէն մինչև 'ի սէթ աւագ խորանին՝ տասնը հինգ ատըմ՝ երկայնքն և լայնքն չամչարսը. և այս սէթիս առաջևն երեք խոշոր ջահ, և երկու չէմտան. և երկու էյրէթի երգէհոն. և քով չէմտանին երեք կանթեղ. և ճակատ խորանին ծննդեան պատկեր մեծ և զարմանալի. երկու կողմն նոյնպէս, այլ և կանթեղ չորս. երկու կողմն զէրպապով կարգարած. անդ կայ ևս երկու խոշոր չէմտան, և 'ի միջի վանից քանըլէց օտայ. և Ծննդեան դուռն աջ կողմն Հոռոմոց վանից դուռն է. և ներքն մեր խորանին դիմաց դուռն Ֆռանկաց. 'ի մտանելն ներս՝ յառաջ գնաս եկեղեցին Ֆռանկաց, որ ճանապարհ ունի Ծնունդ կու իջանէ տասնըութը ոտք մէրտիվէն. սորայ վերայ երգեհոն մեծ երկայն և սիրուն. և կայ փոքր դուռ մի որ աւանդատունն է. անդ կայ չորս խոշոր սընդուկ չորս չորս չէքմէով ամէն աչք կերպ կերպ զգեստ. և լուսարարն բացեալ եցոյց մեզ։ Եւ անտի յառաջ կ'երթաս կայ դուռ մի եօթը ոտք մէրտիվէն. կայ անդ դպրատուն մի որ Ֆէլլահի տղայքն լցեալ. թէպէտ աւանդութեամբ Ֆրէնկ են բայց լեզունին չի համեմատիր. և կայ դպրատան առաջև փոքր մէյտան մի. և ելանեմք 'ի վեր տանիսն, երեսունըհինգ ոտք մէրտիվէն. ունի պաղչայ մի մեծ, բովանդակ թուրունճի ծառ. հինն 'ի վերան և ծաղիկն նոր բացվեր. և ունի երեք շուն պահապան որ ցորեկն շխթայիւք կա-

պեն և գիշերն արձակեն. ձմ՛ կարող է անդ մտանել: Գամք միւս կողմն. պաղչայ մի այլ կայ հարուստ և ծաղկունք. սա ևս գեղեցիկ և մեծ. սորայ հորերն չիֆտէ չիֆտէ մէջն. և կայ մէկ պաղչայ մ' այլ որ բոլանդակ ղաւզայ է. և Ծննդեան վրայ ղուրշին ղափը. և սորայ մէջ տեղն սիւն մի, և 'ի գլուխ սեանն մեծ աստղ մի շինած. որ 'ի գալն մոգուց թագաւորաց աստղն անդ դադարեր է, նորա համար նշան պայն եդեալ են. և վերայ 'ի ղուրշինն յիսուսն եափրախ է: Եւ գնա յառաջ. կայ դուռ մի, 'ի մտանելն 'ի ներս՝ Ֆռանկաց հարեղաթաղն է, երկանքն քսանըվեց ատըմ և լանքն չորս ատըմ. երկու կողմն հարեղից օտայ, լոյս պայծառ նորաշէն. ամէն օտայի վերայ պատկեր. և սորայ ճակատն մեծ լայն ճամ փէնճէրէ մի. և անդ կախեալ երեք աշխարհացոյց մեծ:

Եղ երթանք մեր վանքն յորժամ գընամք սուրբ Ծնունդ, խթման օրն՝ սուրբ կատարինէ կու ժողվեն ղաջամպուրն. և յետ լըմննալուն գան սեղանատունն բազմին կարգով, և տան զկերակուրն. և մարդ գլուխ երկու հաց. յետ ճաշակելուն երթան ոմանք հանգստունն. ոմանք օտաններն. ամէն մարդ իւր պարխաճայով[1] մէկ քիչ քընանան. սահաթն վեց իքէն ջուխտակ կոչնակն կու զարկնեն. կու ելանեն միաբանք և ուխտաւորք գնան վայր, և սկսանեն զժամն ձայնիւ եթէ պաս և եթէ ուտիս. անդ կայ խորան մի այլ, որ խըլպտոց է. երթայ ժամարարն անդ զգեստաւորի: Այս կողմի մէրտիւէնին գըլուխն որ է դուռ Ծննդեան՝ երկու խոշոր կերոն կու վառեն. խորհուրդ խորհրին սկսանին. ժամարարին առաջին ջուխտակ բուրվառով գայ ատեանն և ասայ զմեղան. և իրկին երթայ անդ լուղման գնելու. մեղեդիկ կամ Յայս արկ նուէրանաց. գնայ աւագ խորանն. յորժամ աղօթս ասացէքն ասեն՝ չորս կերոն և մեծ խաչ առաջնէ. քահանայ կամ սարկաւագ սկիհն վերացընէ, և ջուխտակ սարկաւագ առաջնէ. գալերք և ձայնաւոր իջանեն տասնըվեց ոտք մերտիվէն 'ի վայր, Ծննդեան առաջևումն. և ելանեն միւս մէրտիվէնէն 'ի վեր, որ է տասնուիրեք ոտք. պտըտեն Ֆռանկաց աւագ խորանն. և գայ մեր խորանին դիմաց. ապա առնէ ժամարարն: Եւ աւարտման ժամուն գնան սեղանատունն և անդ նստին դաս դաս. և տան ամէն մարդու երկու հաց և ճաշակեն: Ելանելն 'ի բաց ամէն մարդ բէտարիքն կու տեսնու. ուռուպան կու ժողվեն. հեծնող հեծնողին կու լինա. ճանապարհ կու ելանեն. Բեթլէհեմի գիւղի եղեալ ֆէլլահներն այր և կին մեծ և փոքր՝ պատերուն վերայ նստեալ սէյիր թամաշա կ'անեն ըխտաւորքն. մինչև գիւղին գլուխն կ'երթան կու կանգնին որ յետքն գան. առջևէ յետևէ ֆէլլահներն փէլէսէնիկ կու տան. և եէնիկէչէրիք հետ: Ի ճանապարհին է Հռաքելի գերեզմանն, որ անդ ծնաւ Բենիամին. և անտի քիչ մի վայր սուրբ Եղիեայի վանքն. որ 'ի ձեռաց Աքաբաւու փախեաւ և եկեալ աստ ննջեաց, և հրեշտակ զարթոյց ասելով. Զարթիր կեր և արբ, քանզի հեռու ճանապարհ գնալոց ես. և զարթեաւ և գնաց յայն կոյս Յորդանանու. և յարոյց այրի կնոջ որդեակն, և լցոյց զտուն նորա իւղով և ալիւրիւ: Եւ ըխտաւորք կու մտանեն ներս ուխտ կ'անեն և շուտով կու դառնան: Մօտաւ մի յառաջ գամք. հեռաստանէ կու երևայ քաղաքն. և քաղաքացիքն ելանեն սուրբ Փրկչի ըռաան, որ Դաւթայ մարգարէին հաւուզն և կարմունճն կու հայի. անդ չարտուին, և ըխտաւորքն գալն 'ի բաց՝ թամաշա կ'անեն. և ոմն իշուն վրայէ գլորի, և ոմն ձի թող կու տայ, ոմն ուղտին վերայ սէլամլամիշ կ'անէ. հազիւ կու հասանեն փրկչայ դուռնէն 'ի ներս. գան վանքն: Ե՛կ ընտի, ֆէլլահին գքիրան հախլաշմիշ եղիր. հազիւ ձեռացնուն կու ազատի: Եթէ կամենաս ըճանապարհին հեռութիւնն հարցանես. յորժամ ելաք Բէյթլէհեմէ՝ ձիուն վերայ սահաթն

1 ,Քուրձ, զգեստ:

նայեցայ. մինչեւ 'ի սուրբ Յակոբ երկու սահաթ և կէս, կէսն այլ ճանապարհէն կանգնելն կամ սուրբ Եղիեայ մատանեյն սեպէ, թուամամ երկու սահաթուան ճամբայ է։

Կը շարունակուի:

---

# ԴԱՆԻԷԼ ՄԱՆԻՆԻ

## ՈՍԿՐՈՏԵԱՑ

## ՓՈԽԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Անցեալ ամսոյն 21–22ին Ադրիոյ հիապանծ թագուհւոյն՝ դարէ մը ու կէսէ 'ի վեր մեզի սովանջական եղող վենետիկոյ մէջ ազգային—կրօնական հանդէս մը կատարուեցաւ, որ համօրէն քաղաքացւոց սրտին մէջ հին հայրենասէր պարծանաց յիշատակներն արթնցուց, վասնզի բոլորքեց իրենց երբեմնեան մեծահոգի երեւակայութիւնը և գոգցես տեսնել տուաւ իրենց յաւէժարգին և անմահանուն քաջազանց Բիզանիններու, Մոչենիկոներու, Ցանտոլններու և այլն, ուրուականերպ ստուերները յողջոյն իրենց նման առաքինւոյ մը աճիւնացեալ ոսկրոտեաց բոլորը կայտառել. որ մեծ գործոյ մը հիմն ձգելով, և թէ ոչ 'ի կենդանութեան՝ այլ 'ի մահու յարդիւնս հասած տեսնելով իտալական ազգութեան թագաւորական միութիւնը, իրեն անժխտելի իրաւունքը կը պահանջէր գալու դիւցազուն հարցը նոյարաններուն մէջ հանգչելու։ Այս ազգային—կրօնական հանդէս մըն էր կատարուածը, որուն արձագանգը կարծենք թէ արդէն ոչինչ ընդհատ Արեւելք ալ հնչեցին. վասն զի երբ Կրօնք և Ազգութիւն ձեռք ձեռքի տուած կը գործեն, կարելի բա՞ն է որ սահմանի մէջ փակուին սրտից իրաւացի զգացմունքն, և հաղորդականութեան ամենայն արգելք բանալով՝ ծովէ 'ի ծով, աշխարհէ աշխարհ., սրտէ 'ի սիրտ չտարածուին անոնց պարմանալիքն ու զովեստը հաչակելու։

Սրտաշարժ և նախանձելի տեսարան մըն էր արդարեւ յինքեան, և առանձինն մեզի ներկայ գտնուողաց համար, — և մեծ չափ ցանկալի ազգային յիշատակաց զարթուցիչ — տեսնելը դեռ նոր իր երկայնժամանակեայ գերութիւնը թօթափող ժողովուրդ մը իր անշահաւէր և զգօնամիտ Ազատարարին դագաղին չորս կողմը խռնեալ անոր առաքինութեանց մեծ յաղթանակը կատարել, և իբրև թերափ և անգին գրաւական նորանոր յաջողութեանց անոր բազմամեայ համբուրեալ ոսկրոտիքը իր ծոցն ընդունիլը։ Նորօրինակ և սկզբնատիպ տեսարան մըն էր, կ'ըսենք, յորում փոխ առ փոխ տրամութիւն և ուրախութիւն, զարմանք և ափշութիւն, եռանդն և յուզմունք մէկմէկու կը յաջորդէին, մանաւանդ թէ ըսել յիրար հիւսեալ մէկ և բոլորովին նորերեւոյթ ամախառնութիւն մը կը ձեւացնէին, ինչպէս հետագայ մանրամասն նկարագրութիւններէս յայտնի կ'ըլլայ։

Մարտի 21ին երեկոյեան դէմ՝ յետ ընթացքը վրայ ողջունելու խուալինոյ նոր անկախ եղած ամենայն գլխաւոր քաղաքներէ, և անոնց մեծարանքն ու պաշտամունքը փոխադարձ ընդունելու՝ հասաւ վենետիկոյ մեծ դիկտատորին աճիւնը կառակցին և զատերը ոսկերացն հետ մէկտեղ իր հայրենական քաղաքին կայարանը, և մեծաւ ընդունելութեամբ առ վայր մի յատուկ իրեն համար կանգնուած մատրան մէջ ամփոփուեցաւ։ Երեկոյեան 6ն էր հանդիսաւոր փոխադրութեան կամ ընդունելութեան համար որոշուած ժամը, որպէս զի յուղարկաւորութիւնը գիշերային մթութեամբ և ջահափայլ պայծառութեամբ խառն՝ աւելի վսեմաշուք կերպարանք մը առնու, և մահու և անմահութեան զգացմունքները աւելի խորհրդաւոր կերպով սրտից մէջ տպաւորէ։ Շոգեկառաց կայարանին ծովեզերեայ սանդուղներուն առջև, որուն երկու կողմանէ տողեալ այլ և այլ տե-

տակ զօրաց բազմաթիւ գնդեր շարուած էին, ուրիշ անթիւ սեւազգեցիկ թաւշապատ և մետաքսապատ կոնտոլաներու հետ, և յատկապէս պաշտօնակալաց, երեսփոխանաց, պաշտօնէից և նուագածուաց համար պատրաստեալ տխրատեսիլ և փառաւոր նաւակաց հետ՝ առանձինն կը սպասէր պաճուճազարդ և մեռելական նաւանման կուր մը, որուն 26 մեթր երկայնութեամբ երկու կողերը վրայ իտալիոյ հարիւր քաղաքաց կնքանշանները (stemmi) թափանցիկ ենթակայից վրայ նկարուած կը փայլէին։ Առաջին կողմը որ հռովմէական գալարածոյ ցուկաձեւով կ'աւարտէր՝ ծնրադիր առիւծ մը կար 1848ին դրօշակը թաթիցը մէջ բռնած. իսկ խելաց կողմը զոյգ մը արծաթազօծ կանգուն արձաններ՝ որոնցմէ մէկը զմնեռնիկ կը ներկայացնէր, որ իբրև իտալիոյ մնամանիչ կը ցուցընէր Մանինի դագաղը՝ որուն վրայ կը ծածանէր մահագուշակ դրօշը, այնպիսի ինքնանուէր անձինք փափաքելով հայրենեաց։ Զորս պղնձանման մեծամեծ աշտանակներ հռովմէական ջահերով սկըսեր էին արդէն իսկ լուսաւորել զնաւակը, մինչդեռ նուիրական լամբարներ ալ դագաղին վրայ մեռելական աղօտ նշոյլներ կը թափէին, և ամեն կողմանէ ոսկեպատ և արծաթի շուայլեալ զարդերը կ'անդրադարձնէին։ Արդէն իսկ՝ զոգցես առաւօտեան առջի ժամերէն խռնեալ անթիւ բազմութիւն ժողովրդեան ամենայն ծովեզերաց և ամենայն պատուհանաց առջև, որոնցմէ ամենէն ալ սգանշան օթոցներ ու դրօշներ կախուած էին, և յորս բիւրաւոր շողշողուն նիզակաց վրայ ազգային դոյնզգոյն և միանգամայն սեւապատ դրօշներ երեկոյեան անուշ սոլոսով կը ծածանէին, անհամբերաբար մեծահանդէս յուղարկաւորութեան կը սպասէին, իրարու մէջ շշնջելով դիւցազին հազար ու մէկ յիշատակի գործերը, և նոյն ժամանակի դարագլխին և պատմութեան փառաւոր դրուագները, անակնկալ դէպքերը, առաքինական նահատակութիւնները և ողբերգական պատահարները։

Վերջապէս եկաւ հասաւ պայմանեալ ժամը և սկսաւ յուղարկաւորութիւնն ու մահանշան տողմիղը վեհութեամբ մը սահիլ այն ալեծուփ ջրանցքին վրայէն, որ բառ մեծ հանճարեղ մը խօսքին՝ աշխարհքիս առաջին հոյակապ փողոցն է։ Հոս անկարելի է նկարագրել այս գիշերային տեսարանին գեղեցկութիւնը, երկու կողմանէ ժամանակին ամենայն արկածիցը դէմ յաղթող հանդիսացող հսկայաբերձ պալատանց ներքին լուսաւորութեամբ հանդիսին չքեղութեանը վրայ պատճառած ազդեցութիւնը, այն տխուր ներդաշնակութեանց հեռաւոր և բիւրակերպ արձագանգները, երկնքին աստեղազարդ կամարին վսեմախօս լռութիւնը, որ արդարև իսկ հրաշանուագ բանաստեղծին բոածին համեմատ՝ իբրև Աստուծոյ ժպիտը ամենափճիտ պայծառութիւնը այնպէս կը փայլէր և կը հովանանար իրաւապէս պարծեցող և դագաղի մը չորս կողմը մխիթարեալ ժողովրդեան մը վրայ. և բիւրաւոր կանթեղաց և ջահից դողդոջուն նշուլից ոսկեպատ զորդոց և ծովուն սարսռսներ ալեաց վրայ բեկբեկիլը, և բովանդակ հանդիսին միաչունչ և անշփոթ յարմարութիւնը։

Այսպէս եկաւ հասաւ յուղարկաւորութիւնը Սլաւոնաց ծովափունքը, Ս. Զաքարիա եկեղեցւոյն մօտ. հոն թաղական խորհրդոյ յանձնաժողովը հանդերձ ուրիշ պատուաւոր անձինքներով ընդ առաջ ելան դագաղին և տարին զայն յեկեղեցին որ մշտավառ մատուռ մը դարձած էր, ուր բոլոր գիշերը քաղաքական զօրաց սպաներ պահպանութիւն պիտի ընէին 'ի պատիւ։ Իսկ Սլաւոնաց ծովափանց երկայնութեամբը կրկին առաջքով շարուած էին բանակի հետեւակ զօրաց և Ազգային պահանորդաց վաշտեր։

Երկրորդ օրը առաւօտանց կանուխ ամբոխիւ լի էին փողոցները, մանաւանդ Ս. Մարկոսայ մեծ ու պզտիկ

Հրապարակները և բովանդակ Սլաւոնաց ծովափունքը ուսկից որ պիտի անցնէր յաղթական յուղարկաւորութիւնը։ Ս. Մարկոսայ հրապարակին մէջտեղը բարձր կայարան մը շինուած էր դագաղը հանգչեցնելու համար, երկու կողմանէ առանձինն բեմերով ատենախօսից համար։ Արքունական դրնգերը և Քաղաքական պաշտօնորդները քառակուսի ձևով կեցած էին մեծ և փոքր հրապարակներուն մէջ, ընդարձակ ասպարէզ մը բանալով յուղարկաւորաց, և միայար գծով կ'երկննային նաև ինչուան Ս. Զաքարիա եկեղեցւոյն նախադրունքը. ասոնց հետ գնդեալ էին նաև բազմութիւն նաւաստեաց և Ս. Բոլոյ ու Ս. Ֆոսքարինի Լիկէոններու և Արուեստական վարժարանին աշակերտք, որոնք իրենց թեթև ու բարեձև հագուստներովը ու ծանրակացութեամբը հանդէսը աւելի ախորժելի կ'ընէին։

Գարնանային պայծառ արև մը լոյս ու ջերմութիւն հոսելով ծովակին ալեացը վրայ երկնային կապուտերանգ գեղեցիկ գոյնով կը լնուր զայն, և անոր ապակեղէն մածուածին վրայ ճառագայթեցնելով հեռաւոր կղզեակները, տապաստները և նաւուց կայմերը, աքանչելի բնութեան նկար մը կը ձևացնէր։

Առաւօտեան ժամը 10 ½ին հրանօթոց առաջին թնդիւնները յուղարկաւորութեան Ս. Զաքարիա եկեղեցւոյն նեղ անցքէն դուրս ելլելը ծանուցին. որոնցմէ ետքը մէկէն սկսան լսուիլ թմբկաց և տխրական պարուց հնչիւնները։ Զինուորական երաժշտութեան ետևէն կը սկսէր թափօրը յորում առաջին էր Եդուարդ Զէն (Zen) 1848ին մարտի 18ին Ս. Մարկոսայ հրապարակին մէջ առաջին մեռնողին որդին, և անոր քովը Վինկենտիոս Բրեդինճիանի անունով սոսկական մը, որ առաջիններէն մէկը եղեր էր զՄանինն բանտէ ազատողներուն մէջ. ասոնց ետևէն կու գային ներկայացուցիչք 1848–49ի զինուորական գնդից, ինչպէս նաև Յացորդք նոյն ժամանակի Քաղաքական պաշտօնորդաց, Քաղաքական խնամակալուաց, Հսկողութեան ընկերութեան, երկուց Ժողովոց, և քաղքին անձնատուր ըլլալէն ետքը 40 աքսորելոց. և յուղարկաւորութեան այս առաջին մասը կը վերջանար նոյն ժամանակի քանի մը դրօշներով որոնք փառաւոր յիշատակներ էին Մարկէրայի և Նամիջամիջոյն։

Ասոնց ետևէն ծանրաքայլ յառաջ կ'ընթանար դագաղը բարձեալ քանի մը զինուորական գնդից ներկայացուցիչներէն որ միաժամանակ եղած էին Վենետկոյ պաշտպանութեանը, որոնց անմիջապէս մօտէն կ'երթար քահանայ մը խաչով և կղերիկոսով մը հանդերձ. առընթեր էին Հասարակապետութեան առժամանակեայ կառավարութեան անդամները և Ջրհանից 24 գործաւորներ, որոնք վառ ջահեր կը կրէին ձեռուընին։ Դագաղին անմիջապէս ետևէն կու գային քանի մը սևեր հագած տիկնայք ամէնքն ալ ազգականք մեծանուն հանգուցելոյն. յետոյ օտար բարեկամք Մանինի. յետոյ Վենետկոյ և Վիչէնցայի դրօշակները ոսկեղէն միտալով պսակեալ, իրենց անկախութեան փափաքով ցուցուցած քաջութեանցն համար. յետոյ Արք. քաղաքապետը, երկուց ժողովարանաց ներկայացուցիչները, բազմութիւն ծերակուտի և երեսփոխանաց ժողովոյն, Արք. Դատաստանարանին նախագահը, Զինուորական հրամանատարք, Քաղաքական խնամակալք, Դեսպանք, Գաւառական և Թաղական խորհրդարանք, Վենետկոյ՝ Ճենովայէն ու Միլանէն ընծայ ընդունած դրօշները կրելով. յետոյ Վաճառականութեան խորհրդարանը և հետղհետէ քաղաքացւոց զանազան խումբեր, գրեթէ ամենայն իտալական գաւառաց քաղաքապետք. յետոյ ամենայն ուսումնական ժողովոց ինչպէս Արք. Համալսարանին Բատուայի և Վենետկոյ Ակադեմիային և այլ ուսումնարանաց և այլն, անդամները, ամենայն արհեստաւորաց և գործավորաց ընկերու-

թիւնները, ամենքն ալ իրենց նորաձև և ճարտարահիւս դրօշակներովը, որոնց շատին վրայ իրենց ընկերութեան անուանակոչութիւնէն դուրս այլ և այլ իմաստալից վերտառութիւններ ալ տակեգիր կը փայլէին. յետոյ Արք. ամենայն Թանգարանաց, փարթեարաց և գործատանց տեսուչք, յետոյ Իտալիոյ Թագաւորութեան շատ քաղաքներէն ժողվուած Ազգային պահանորդաց պերճաշուք սպաները և այլն և այլն։

Ցուղարկաւորք հասնելով Ս. Մարկոսայ հրապարակը մեծ Ազգային պահանորդական գնդէն բացած քառակուսւոյն մէջ, և դագաղը դրուեցաւ բարձր հանգստարանին վրայ, ուր ելան արձանացան նաև Արք. Քաղաքապետը, Քաղաքական իշխանապետը իրեն օգնական գլխաւոր անձինքներովը, Վենետկոյ առ ժամանակեայ կառավարութեան անդամները, և Բարիզէն Մանինի դագաղին ընկերացող անուանի գաղղիացիներ, և այլն և այլն։ Այն ատեն հրաման տրուեցաւ ճարտասանից որ խօսին և երկու ժամէ աւելի տևեցին ճառախօսութիւնք։ Խօսեցաւ նախ Ան. տր Լա Ֆորժ, յետոյ Ռուֆֆինի փաստաբանը, Հէրոլտ, Քալուչչի փաստաբանը, Լըկուվէ, Ռէնավիչ փաստաբանը, տր Ֆորքատ[1], Բրիարիոյ փաստաբանը, Պարպիրոլլի, Վարէ, Մինոդդոյ։ Այս ամենայն ճառախօսութիւնք բազմաձեռն ծափահարութիւնք կը հընչեցնէին զհրապարակը, թէպէտ և տեղւոյն ընդարձակութեանը պատճառաւ անկարելի կ'ըլլար՝ ճառախօսաց լսելի ըլլալու ամենայն ջանիւքն հանդերձ՝ որ ձայներնին չափաւոր սահմանէ մը աւելի անդին հասնի։

Ժամը 2էն վերջը դագաղը փոխադրուեցաւ Ս. Մարկոսայ եկեղեցին և հանգչեցուցին եկեղեցւոյն մէջտեղը բարձրացուած պանծալակերտ մեռելակիր կազմածին վրայ, որուն չորս կողմանէ 200է աւելի ջահեր վառուած էին, և գիշերն 'ի գլուխ ալ անշէջ պիտի մնային։

Հոն հանգստեան պաշտամունքը հանդիսիւ կատարեց անձամբ քաղաքիս ծիրանաւոր Պատրիարքը, ուր երգեցուեցաւ նաև մասնաւորապէս այս հանդիսին համար քաղաքիս երևելի Պուցցոլա երգահանին շարադրած եղանակաւոր հանգստեան սաղմոսը։

«Այսպէս լմնցան, կ'ըսէ քաղաքիս պաշտօնական լրագրապետը, այս երկու աւուրց հանդիսական արարողութիւնները։ Ընդունայն է ըսել թէ ինչ խանդաղատանք և ինչ յիշատակներ զարթուցին ժողովրդեան սրտին մէջ։ Պատմական դարապլուխ ու շրջան մըն էր որ բովանդակ ժողովրդեան մը աչքին առջևէն կ'անցնէր, որ մասնակից եղաւ նոյն ժամանակին մէջ այնչափ աղետից, անգրդուելի հաստատամտութեան և արիասիրտ անձնանուիրութեան։ Շատոնց ակնկալեալ գաղափարի մը յաղթանակն էր, որ 20 տարի առաջ զգացեալ մտաց և ջերմ երևակայութեանց երազ կը սեպուէր։

«Վենետիկ իրեն հասարակապետութեան վերջին եղծեալ տարիներուն մէջ փառաւորապէս իրեն նաւահանգիստը մտնալը տեսաւ այն ցականաւուն՝ որ Ափրիկեան ափունքներէ իր վերջին ծովապետին և Ս. Մարկոսայ Առիւծը պատկառելի ընողին դիակը կը բերէր։ Անձէլոյ Էմոյի մեծաշուք յուղարկաւորութեամբ պատուեալ ոսկորները բովանդակ Իտալիայէն յաջորդ մը կ'ակնկալէին՝ որ Թերակղզւոյն ծովային հին փառաց աւանդութիւնները շարունակէ։ Այս օրուան օրս այնչափ կրից ծփանաց մէջ, զհայրենիս բաժնող հեր-

[1] Տր Ֆորքատ՝ ՀԱՆԴԷՍ ԵՐԿՈՒՑ ԱՇԽԱՐՀԱՑ ուսումնական օրագրին անուանի անդամակիցներէն մէկն է և երկար ժամանակէ 'ի վեր հեղինակ Հնգէտասնօրէայ ժամանակագրական փէտութեան յօդուածոց. որոնց մէջ ըրած խորհուրդներն, ազատ և հեռատես խորհրդածութիւններովը պատգամախօս կը սեպուի քաղաքագէտն Եւրոպիոյ, զորոնք նաև՝ ինչպէս կ'ըսեն, ամեն անգամ Նաբոլէոն Գ, կայսրն ալ մեծաւ մտադրութեամբ կը կարդայ։ Սակայն դժբաղդաբար կը լսենք թէ աղետաւոր դիպուածը՝ Մանինի պատճառաւ Իտալիա ըրած ճամբորդութեան սաստիկ խանգարմա յուզմունքէն մտաց հիւանդութիւն ունեցած է ու կը յիմարաբանէ։

ձուածոց պատկառաւոր իմաստութեան ժամանակ, որոնք արդեն խափանաբար են իրեն կատարեալ կանոնաւորութեանը, երանի թէ Դանիէլ Մանինի անմեղապարտ հայրենասիրին անճինացեալ ոսկրոտիքը՝ որ Քավուրի 'ի գլուխ հանած միութեան շարժումը կը դաշակէր, հաշտութեան նոր նիւթ մը և խաղաղութեան առ հաւատչեայ ըլլայ իտալացւոց համար:»

Մենք ալ վերջապէս յօդուածնիս աւարտենք կրկնելով դարձեալ թէ իբրև ազգային-կրօնական հանդէս մը այնպէս դիտեցինք եղածը և սքանչացանք. և անշուշտ ենք որ եթէ մաս մը ազատամիտ և ազատակրօն անձինք՝ տեղացիք և եկւորք՝ իրենց յատուկ գաղափարներովը կ'ուրախանային, սակայն բազմութեան առ հասարակ կարծիքն ու զգացմունքն էր մեզի պէս Ազգասիրութեան հետ կրօնասիրութեան յաղթանակը կատարել 'ի պատիւ Դանիէլ Մանինի ջերմ սրտին, 'ի ներկայութեան իրեն ցրտացեալ ոսկերացը:

Հ. Գ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ

---

## ՏԱՂՔ ՅԱՐՈՒԹԵԱՆ

փառըք Քրիստոսի ամենազօր յարութեան:
Սայլն այն իջանէր ի լեռնէն ի Մասեաց,
եւ ի վերայ նորա աթոռք են կարգեալ,
եւ ի վերայ նորա գահոյք ոսկեղէնք,
եւ ի վերայ նորա բեհեզք ծիրանիք,
եւ ի վերայ նորա որդի արքայի,
եւ յաջմէ նորա վեցթեւեան սերովբէքն,
յահեկէ նորա բազմաչեայ քերովբէքն,
առաջի նորա մանկունք գեղեցիկ,
ի գիրկս նոցա խաչն տէրունական,
ի ձեռին նոցա սաղմոսարան եւ քնար,
որք երգէին եւ ասէին,
փառըք Քրիստոսի ամենազօր յարութեան:
Ածեալ են ածեալ զսայլիկն,
ածեալ են կացուցեալ.
եւ ահա չշարժէր սայլիկն այն՝
եւ ահա չխաղայր անիւն այն:
Եթէ հարիւր բարդ խոլորձան, վեց կորընկան,
մին մանուշակ խրձադիզեալ.
ի Մասեաց յաջ կողմանէն
սայլիկն ածեալ են կացուցեալ.
եւ ահա չշարժէր սայլիկն այն,
եւ ահա չխաղայր անիւն այն:
Եթէ սամիքն են արծաթի, լուծն էր ոսկի,
եւ սամոտիքն ապրիշիմի.
փոկեր շարած շարանման հոյլ մարգարիտ.

Եւ ահա չշարժէր սայլիկն այն ,
Եւ ահա չխաղայր անիւն այն ։
Այն ճորան ճոճ էր եւ ճապուկ
ուռամիջակ հաստաբազուկ ,
լայնաթիկունք խարտիշագեղ ահեղագոչ ,
Նա ձայն ածէր եզն ամոլին
կանչիւն առնէր աթոռակին ։
Եթէ եզինքն են սաթ ու սպիտակ
ծաղկախայտուցք արագաքայլք ընթացականք ,
եղջերըն ամէն խաչանման ,
եւ մազն ամէն հոյլ մարգարիտ ․
եւ ահա շարժէր սայլիկն այն ,
եւ ահա խաղայր անիւն այն ։
Ի յառեղէն առեալ շարժումն կուրծն սայլին
Նա ձայն ածէր եզն ամոլին ։
Սայլն ի Սինեայ երկրորդ օրէնքն էր Մովսէսի ․
Եւ այն հարիւր բարդ խոլորձանն՝
այն Նահապետքն են մարգարէք ․
Եւ այն վեց բարդ կորընկանն՝
վեցօրեայ գործքն Աստուծոյ ․
Եւ այն մին մանուշակ՝
միաւորեալ Երրորդութիւնն ։
Եւ այն մանուկ խարտիշագեղն՝
այն Յովաննէսն էր մկրտիչն ․
Եւ այն չորս կուրծքն սայլին՝
աւետարանն էր Քրիստոսին ։
Ի գիւղ գայր ի գիւղ սայլիկն ի գիւղ
ի Մասեաց յաջ կողմանէն՝
սայլիկն ի գիւղ գայր ի գիւղ
եւ ճռընչալով գայր մտանէր յԵրուսաղէմ,
եւ որդիք Նոր Սիոնի Նոր երգէին զայս ասելով,
փառք Քրիստոսի ․ Այսօր արձակեցաք ։



Անուն անեղին Հին Աստուած է ․
է միշտ յէութեան յանհասութեան Նոյն ։
Նոյն ինքն է Նըման Նոյն մի եւ Նոյն մի ․
մի ոմն ի յէից անդըրէն ի Նոյն Թիւ ։
Թիւ միշտ եռակի եղեռակի փառք ․
փառք իմ գիմաուից էից գոյէից գունդ ։
Գունդ տրամք երամից կայք յանուրեք վայր ․

վայր համբից բուրից որ սահմանեալ գետ ։
Գետ քառանիւթեայք պարգպաշ երկնի փայլ փայլ.
փայլք փաղփինատար Աստուած անծայրենի լոյս ։
Լոյս գերազանցիկ երկնաշաւիղ ռահ.
ռահ արքունաճեմ վերայ ծովու քայլ ։
Քայլ վէմ շարժելով տեղիարան Նիստ.
Նիստ արքունաճեմ անապատի տօթ ։
Տօթ ի ծարաւուտ երկրի երկրին կոյս.
կոյս արդիւնալուր սիրայխնունդ սէր ։
Սէր հարկաւորեալ կամից կատար կամ.
կամ ժամին հասեալ պատերազմի օր ։
Օր պարզ եւ թերի օր մի յայտնի տեառն.
տեառնագիր հրաման եւ բարձրանամ գէտ ։
Դիտեմ դիտանոց գէմ հարաւոյ ճեմ.
ճեմ պատմուճանի բոսորայնոյ գոյն ։
Գոյն ներկեալ արեամբ աղբիւր բղխեալ կող.
կողիմեապատիր պարտեաց յաւաշ ձայն.
Ձայն տուք դըստերացըդ սիոնի զի լայք.
զի լայք ու աւաղէք պըսակ ի գըլուխ իմ ։
Իմ վարսս անձրեւով քաղցրիկ ցօղով լի.
լի ու լրումնօրէն զիս պըսակեաց մայր իմ ։
Մայր իմ հետեւող ժամադրողին օր.
օր երիցօրեայ եւ տապանի գընիմ ։
Գնիմ գէմ դըժոխոց աւարողին բուռն.
բուռըն զօրութեամբ զօրեղինին զօր ։
Զօր զօրեղինին զօրինահաս գունդ.
գունդ նըւաստախումբ աւետաբեր յոյս ։
Յոյս յուսաբերին ժամոյն հասէք լեառն,
լեառըն Գալիլեա անդ տեսանէք ըզտէր ։
Տէր յարեաւ կանայք գան ի հանգէս փոյթ,
փոյթ պատուէր տուք խոյ պետրոսեան երամին ։
Երամք երամից ձեզ երանեան միշտ,
միշտ ձեզ երանեն զի տէր յարեաւ այսօր ։
Այսօր տէր յարեաւ, փառք յարութեանըն տեառն.
տեառն գոհութիւն փառք եւ պատիւ միշտ յաւիտեան ։

Ս. ԳՐ. ՆԱՐԵԿԱՑԻ

Ատեն մը Հայաստանեայց եկեղեցւոյ աւելի հոգեւանդն հանդիսից ժամանակ՝ անշուշտ է որ այսպիսի ամենայն տաղից եղանակները ոչ միայն Անւոյ կաթողիկէին պարանոցատանը կամարներուն տակ՝ այլ նաեւ ամենայն եկեղեցեաց մէջ ալ կը հնչէին և զմրուս կը գորովէին. սակայն եթէ լսեցին անոնց փափկահնչիւն ոլորակըն, աղէկ է գոնէ ըստ աւուր պատշաճից յիշել ըն-

Թերգմամբ մեր հրաշարան Նախնեաց այսպիսի իմաստալից և չքնաղ գրութիւնքը, որոնք յարգի են իրենց հնաւանդ յիշատակաւն և միանգամայն իրեւ մատենագրական երկասիրութիւն։

---

### Միայնակեաց կեանք գեղի մէջ։

Ահաւասիկ վերջապէս աղուոր գեղի մը մէջ եմ ուր շատ կը փափաքէի ըլլալ։ Բլուրներ ու անտառներ, մարգագետինք և առուակք, բնակարան հանդարտութեան ու խաղաղութեան, վերջապէս կրնամ քու գրկիդ մէջ ապրիլ, և կրնամ յագեցնել իմ ծարաւս որ երկայն ժամանակէ 'ի վեր բորբոքած և ոչ երբեք գոհ եղած էր։ Այս գիւղային առանձնութիւնը որ երևակայութիւնս իմ առջիս կը բանար, գտայ ես. իմ երազներուս ամենէն սիրելին՝ ալ երազ չէ։

Ինչ օդ է առիկայ զոր ես հոս կը շնչեմ։ Ինչ բուրմունք, ինչ զովութիւն, ինչ քաղցրութիւն։ Ինչպէս հոգին կը բարձրանայ ու կ'ընդարձակի այս բաց օդուն և գեղեցիկ երկնքին մէջ։ Նաև ինձ կ'երևնայ որ գեղը մեր մտաւոր զօրութիւնները ու կարողութիւնները աւելի կը զօրացնէ և աւելի կարևոր կ'ընէ մտածելու հաճոյքը։ Ինչ ամբոխ զգացմանց ու գաղափարաց, յափշտակմանց և գորովոյ։ Որչափ բան՝ որ բոլորովին մոռցած կը կարծէի, հիմա դարձեալ կ'երևնան, և կը մտաբանին և մտքիս մէջ կը նորոգուին, որ կը զարմանայ տեսնելով։

Ոչ, չկայ մարդ՝ որ բնութեան գեղեցկութիւնները գէթ երբեմն զմայլեցուցած չըլլան զինքը։ Կ'ուզեմ որ ինքն ալ մտնայ թանձր անտառի մը տարընջենային գիշերուան մէջ եթէ կրնամ այսպէս ըսել, և չզգայ այն աստուածանուէր ու քաղցր սոսկումը որ կ'ազդէ. կ'ուզեմ որ զիտէ անտարբերութեամբ անհուն և անչափ մարգերը, ուրոնց մէջ մարդուն աչքը երբև կանաչ ովկիանոսի մը մէջ կը կորսուի զուարթութեամբ. Թող ընդդիմանայ բիւրաւոր ստորնագոյն առարկայից. անշուշտ չկրնար հակառակիլ այն արդեանց, որ ամէն մարդիկ կը զգան քիչ շատ բարձր լերանց վրայ, որով մեզի կ'երևայ թէ յայլ կը փոխուինք, ամեն զգացմունքներս ազնուանալով ու բարձրանալով, և աւելի երագ և աւելի ուժեղ սահելով կեանքը մեր անդամներուն վրայէն։ Բայց գեղի մէջ աղէկ զուարճանալու համար՝ պէտք է միայն ու ազատ ըլլալ։ Հոն չէ՝ չգտնուիր ոչ քաղաքական աղաղակ, ոչ խաղ, ոչ խնջոյք, ոչ կառքով շրջագայութիւն, ոչ գիշերային հանդէսներ, ոչ արշալոյսի ժամանակ քնանալներ, ոչ մնոտի պատմութիւններ, ոչ տափական բարկութիւնք, և ոչ ալ բամբասանք. չպատշաճիր, ինչպէս ըսաւ մէկը՝ քաղաքը գեղին մէջ փոխադրել։

Այն ձորերն ու լեռները, այն անտառներն ու ընդարձակ մարգագետինները, այն հովանին ու այն արեգակը, այն դէմ ընդդէմ վայրենի բաները, զուարճալիներն ու սարսափելիները, այն դաշտերուն խարտեաշութիւնը այնչափ կանաչութեան աստիճանաւորութեանց մէջ տեղը, կապոյտ ու մեծ կամ ճոխաբար ամպերով նկարուած երկնքի մը տակ, երբեմն նաև պայծառ ալեաց մէջ անդրադարձեալ. ու թռչուններն ու երամակները և մշակները որ շարժմունք կու տան այս աղուոր մեծ ու զանազան տեսարանիս... ահ, ով կրնայ նկարագրել։ Ով կրնայ խօսիլ այն նոր էակներուն վրայ, որով բազմացեալ կ'երևնայ ինծի, այն էակներուն վրայ որոնք իմ սրտիս համեմատ եղած են։ Իսկ ինչ փոյթ է երևակայական ըլլալնին, երբ իրենց ընկերութիւնը ինծի սիրալի կու գայ՝ և գլխս ամենաքաղցր ցնորից մէջ կը ձգէ։ Այս սէրը առ այնս՝ թող տեսնենք անոնք որ իբրև մարդատեցութիւն կը սեպեն, եթէ ոչ արդեաք մանաւանդ շատ աւելի գորովալից և փափուկ սիրտ մը կը ցուցնէ, որ իրական աշխարհքով գոհ չըլլալով, կը

դիմէ առ մարդասէրն երեւակայութիւն, որն որ կը նկարագրէ մտացածին աշխարհք մը այո՛ բայց համազգի ճարակով մը ըստ տեսակին, բայց ամբոխական օչարակաւ և նսեմարիւ ազնուութեան կողմանէ։

Ո՛վ գեղ, ո՛հ բնակարան լիուլի հանգստեան և փարդապետութեան, սուրբ հեշտութեան ու ներհուն գատարկութեան, շնորհէ որ ես ալ քու հանգստաւէտ և ապահով ծոցիդ մէջ այն առողջութիւնը կրկին ստանամ, զոր բաւական ժամանակ առաջ կորուսի։ Միայն քեզմէ կը յուսամ այս բանս, վասն զի քուկդ է զով և մաքուր մթնոլորտը, որուն մէջ ես կը ճեմեմ. քուկդ են ջուրերը, որոնց մէջ ամեն օր կը մտնամ. այն կաթը քու արջառներէդ է, զոր ես կը խմեմ, և նոյն իսկ դու կը հրաւիրես զիս այն պիւթագորեան ու քեզի նման կանաչ կերակուրին. նաև հոս իմ կեանքս խաղաղաւէտ ու անշարժ լճակի նման, եթէ կրնամ այսպէս ըսել, չխորշոմի պիտի դժնդակ մտածութեամբ։ Բայց աւելի բան մ՚ ալ քեզմէ կը յուսամ. սակայն կայ ուրիշ առողջութիւն մ՚ ալ աւելի կարեւոր ու աւելի գեղեցիկ։ Քեզի պէտք է շնորհակալ ըլլամ՝ եթէ բնութեանս նիւթերը սրբելով սրտի հակամիտութիւններս ալ ուղղեմ՝ եթէ ինչպէս գեղացին ճիւղերը կը կտրէ և դաշտը փըշերէ կը մաքրէ, այսպէս ես ալ կտրեմ անօգուտ փափագները, և բոլորովին արմատաքի հանեմ 'ի հոգւոյս վնասակար հոգերը, երկնքի պէս զուարթ ու պայծառ հոգիէս. վասն զի հոգին ընդլայննալէն վերջը քու զանազան անհունութեանդ վրայ, կը դառնայ ու կ՚ամփոփի 'ի մեզ աւելի ուժեղ ու աւելի գործունեայ. վերջապէս վասն զի մարդկանց վրայ մտածելով, լուծեալ շատ կապերէ, և լիովին առանձնացեալ դէտարանի մէջ կրնամ լաւագոյն տեսնալ. կը սորվիմ ճանչնալ աղէկ զուրիշները, և զիս ինքնին։

ԻԲԲ. ԲԻՆՑԷՄՈՆԴԷ

# ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

(Տես երես 96։)

### Ա. ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

65 Ինչո՞ւ հին շինուածք աւելի շուտով կ՚ապականին քան թէ նորերն։ — Վասն զի երդիքներու և պատերու ճեղքերէն ջուրն ներս կը մտնէ, և հոն մնալով ատեն մը՝ կը կակղացընէ կիրը, ծեփը, և ինչուան քարն ալ. նոր շինուածք աղէկ պատսպարած ըլլալով՝ ջուրը վրաններէն կը սահեցընեն և անվնաս կը մնան։

66 Լերանց վրայ ի՞նչ ազդեցութիւն ունի ջուրն։ — Անոնց պանգուածներուն միջոցները կը մտնէ, և բաւական ծեփերը կամ մածոյցները կը քակտէ. որով զանգուածք կը փրթին լեռներէն և վար կ՚իջնան՝ ճամբու վրայ գտածնին հետերնին թաւալելով։

67 Ծովուն և գետոց յատակին աւազն ուսկի՞ց է։ — Աւազն մանր անկիւնաձև կամ կլորիկ հատիկներ է, քայքայիչ ներգործութեամբք ձևացած գայլախազէ և որձաքարէ։

68 Լերանց գագաթը և երբեմն խորերն ալ գտուած քարացեալ ժժմակք և ձկունք ի՞նչ կ՚ըսուին։ — Սովորաբար Բրածոյ կամ հանքային կ՚ըսուին, ինչպէս նաև ածուխ կտրած բոյսերն՝ որ երկրիս խորը կը գըտուին։

69 Ի՞նչ բան է Հանքածոյ կամ Գետնածոյ ըսուածն։ — Ծառոց մեծամեծ կոճեղներու միացորդք են, որ գետնին տակ թաղուելով՝ կրակի և ջրոյ ազդեցութիւն կըրած են։

70 Ի՞նչ կերպով այդ ծառերն թաղուեր են գետնին տակ։ — Քանի որ երկրիս երեսն բաւական թանձրացած չէր՝ իր ներքին հալած նիւթին և կազերուն դէմ դընելու համար, այդ նիւթն ճամբաներ բացեր է, և դուրս թափուելով՝ այն բոյսերը ածուխ դարձուցեր է իր տաքութեամբը. և յետոյ այլ և այլ նիւթոց խաւով մը ծածկեր է, անանկ որ անոնց բուսական աճման նշան մը չէ մնացած դուրսը։

71 Գետնածուղն մեր սովորական ածուղէն շատ չտարբերիր դրսուանց, բայց ինչո՞ւ կրակ դառնալով տարբեր երևոյթներ կ՚ունենայ և տարբեր բաներ կ՚արտադրէ։ — Ասոր համար որ ջուրն անոնց միջէն անցնելով կենդանական գոյացութիւններ

թափանցիկ է, որք լուծուելով՝ անգոյն կազ և ամմոնիակ աղեր տուած են. գործեալ, ածուղն աղէկ ծծող ըլլալով կազերու՝ երկրիս ծոցը ցնդած կազերը իրեն քաշեր լեցուեր է։

72 Լերանց քիչ կամ շատ բարձրութեան պատճառն ի՞նչ է։ — Երկրիս կեղևին քիչ կամ շատ ընդդիմանալէն է կազին և ծաւալական հրեղէն նիւթերուն. որչափ որ ընդդիմութիւնն աւելի եղած է՝ այնչափ աւելի է վերամբարձումն. վասն զի ուր որ քիչ ընդդիմութիւն ըրած է՝ ներքին նիւթերն դիւրաւ ճամբայ բանալով կրցեր են զեղուլ չորս դի ծաւալիլ, և բնականապէս քիչ բարձրացընել երկրին կեղևը։

73 Ինչո՞ւ համար երբ քիչ չոր փայտի մը վրայ հալած կապար թափուի՝ անիկայ պաղելով ողորկ չերևար, այլ խորտուբորտ, կամ՝ ցած ու բարձր։ — Վասն զի կապարին տաքութիւնն կ՚ածխացընէ զփայտը, և կը յուզէ կազերը, որոնք թանձրանալու վրայ եղող զանգուածին մէջ ճամբայ կը բանան, չորս դի մետաղը ցաքեցընելով. կամ թէ անոր երեսը կ՚ուռեցընեն երբոր այն շուտով թանձրանալու ըլլայ և զիրենք մէջը ամփոփէ։

## Երկիր. — Ա. Ձգողութիւն.

74 Ինչո՞ւ կակուղ կաւի կտոր մը բարձր տեղէ մը նետուած ատեն՝ առջևի մասը որ զօդը կը ճեղքէ՝ կը կլորնայ։ — Անոր համար որ օդը ճնշելով առջևին և կակուղ անկիւններուն վրայ՝ կը կատարէ զանոնք ՚ի ձևն շփման. ինչպէս որ կրնայ ընել հաստատուն մարմին մը ուրիշ հաստատուն մարմնոյ մը վրայ։

75 Ի՞նչ պատճառաւ բարձրէն ընկած ջրոյ կաթիլ մը կը կլորնայ։ — Որովհետև իր հիւլէներուն ձգողութեան ուժը կ՚ազդէ մասնաւորապէս կեդրոնին վրայ, և ամենքն ալ հաւասարապէս ազդեցութիւնը ընդունելով կը դիմեն մօտենալու այն կեդրոնին. անոր համար չորս կողմը կը պատեն, և անկէ առաջ կու գայ գնտային ձև մը։

76 Ինչո՞ւ հրաշէկ երկաթի մը վրայ նետուած ջրոյ կաթիլ մը մնալով կը ձևանայ պզտի գնտակիկ մը և տարածուած չի կենար։ — Վասն զի կաթիլն շոգիէն բռնուած՝ իբրև կղզիացեալ կը մնայ. և կեդրոնին մէջ գտնուած ձգողութեան ուժը՝ հաւասարապէս իր չորս կողմը, և բոլոր իր կէտերուն վրայ կը ժողվէ հեղուկին բոլոր հիւլէները՝ որոնցմով կաթիլն ձևացած է։

77 Ինչո՞ւ համար երբոր ջրոյ կամ սնդիկի երկու կաթիլներ անհաւասար մեծութեամբ՝ մէկզմէկու մօտ գտնուին, պզտի կաթիլը կ՚երկըննայ և կը վազէ դէպ ՚ի մեծը, և հետը կը միանայ։ — Վասն զի պզտի և թեթև մարմինները ընդհանրապէս կը քաշուին իրենց աւելի մօտ եղած մեծագոյն մարմիններուն զանգուածէն։

78 Ինչո՞ւ համար մեծ կաթիլն պզտիկը կը քաշէ։ — Որովհետև մեծ կաթիլին ձգողութեան ուժը՝ կը ներգործէ իր ազդեցութիւնը նաև իր յատուկ զանգուածին շրջապատէն անդին, և երբոր թեթև մարմին մը (մանաւորապէս եթէ հաստատուն չըլլայ,) մտնայ իր ներգործութեան սահմանին մէջ, այն ատեն կը քաշուի անկէ։

79 Ինչո՞ւ սրածայր բարձր լերան մը գագաթէն կամ ամենաբարձր շէնքի մը վրայէն եթէ քարի կամ մետաղի կտոր մը նետուի, փոխանակ ուղիղ գծով կամ ուղղահայեաց վար իյնալու, ընդհակառակն կ՚իյնայ լերան կամ շէնքին մօտենալով։ — Որովհետև ձգուած քարը կը զգայ լերան կամ շէնքին ձգողութեան ուժը, և անոնց կը մօտենայ։

80 Ի՞նչ է պատճառը որ քար մը, երկաթի կտոր մը, որ և իցէ հաստատուն բան մը կամ հեղուկ մը, երբոր ինքն իրեն թողուի գետին կ՚իյնայ։ — Որովհետև երկրիս կեդրոնը ունի մեծ ոյժ մը ձգողութեան, որ իրեն կը քաշէ բոլոր իր մակերևութին վրայ գտնուած մարմինները։

81 Ամեն մարմին ալ ենթակայ է ձգողութեան օրինաց։ — Այո, ամենքն ալ բաց ՚ի ջերմութենէ, լոյսէ, ելեկտրութենէ և մագնիսութենէ։

Կը շարունակուի։

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ




# ԲԱԶՄԱՎԷՊ

ՌՅԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՄԱՅԻՍ


## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏՕՆԻՆ ՀԱՆԴԷՍԸ ՄՈՒՇ ԳԱՒԱՌԻՆ ՄԷՋ

Հայաստանի ախորժելի և միանգամայն անախորժ կլիմայից մէկուն հնազանդած է Մշոյ գաւառն, որ իւր հողոյն առ բնակիչս ընծայած արդիւնքներէն յայտնապէս կը տեսնուի թէ երկինք այս գաւառիս վրայ մերթ քաղցրախնամ և մերթ վայրագ աչօք կը նկատէ։ Այս ճշմարտութիւնը այսպէս բացատրուեցաւ, որովհետև մէկը որ և իցէ եղանակի մը (բաց 'ի գարնանէն) հոն գտնուելով՝ չի կրնար ատոր հաւատալ, բայց եթէ տարի մը լման հոն բոլորէ։ Քանզի ամառն իւր ձմեռուան համեմատութեամբ սաստիկ շոգ է՝ թէ և ոչ այնչափ անտանելի. աշնան երկրորդ մասն կ. Պոլսոյ կը պատասխանէ. իսկ ձմեռը սովորաբար հինգ ու վեց ամիսներ անընդհատ ծածկուած է բոլոր երկիրը մէկ մետր ու աւելի թանձրութեամբ ձիւնով, և ցուրտն ալ ոչ անհամեմատ։

Մինչդեռ այս դժնդակ ձմեռուան ներկայ գտնուող օտարականը կ'ափսոսայ թէ աշունը ցանուած ու մէկ բթաչափ երկնցած սերմանիքն ու ինքնեկ բոյսերը՝ այդ սոսկալի եղանակին տուած տառապանքներէն անշուշտ ճզմուած ու ոչինչ դարձած են, անոնք ընդհակառակն կարծես թէ երկայն գիշեր մը այն ճերմակ ու թանձր վերմակին տակը հանգիստ քնանալով՝ աճեցողութեան վերջի աստիճանի ոյժ ժողված պահած են իրենց նկնաձև հասակին մէջ. և յանկարծ եթէ մէյմը գարնան առաջին օր՝ ու մէյմ'ալ երկրորդ օր դաշտը ելնես՝ անտարակոյս վերջին յարութիւնը կը յիշես. վասն զի այն մնացած արարածներն առջի օրը որ արևուն օգ-

նութեամբ ձեան բռնութենէն ազատած՝ թալկացեալ աչքերնին դէպ 'ի իրենց բարերարը կը դարձընեն, կենսատուի զօրութեամբ մը ցնցուելով՝ բոլորովին դունատ երեսնին կը գունագեղի, ջղերնին կ'ընդարձակի, և վեց ամիս անգործ կենդանութիւն փոխարէնը քիչ ատենուան մէջ կը հատուցանեն. և այսպէս այդ բուսական կենդանիք կենաց գեղեցկագոյն մասը տարւոյն գեղեցկագունին հետ միացունելով՝ կը սփռեն դիմացդ ծաղկազարդ ու անուշօդ գարուն մը՝ որուն նկարագրութիւնը բանաստեղծից գործ է։ Մշոյ գաւառը միշտ ջանացած է ու կը ջանայ Համբարձման օր այն գեղեցիկ գարունով պճնեալ գտնուիլ։

Նախընթաց չորեքշաբթի կէսօրէն վերջ ա՛լ բոլորն ալ Համբարձման պատրաստութիւն տեսնելու հետ են. շատ տուն երկանքի ձայն կայ. վասն զի Համբարձման սամիրցու[1] կը սանեն[2]. աղջըկտիք մէկը հարս ըրած ու պսակի տանելու հարսի պէս հագուեցուցած, ձեռքերնին ծաղիկներով զարդարուած բղուկ մը՝ գեղին բոլորտիքը շրջագայելով եօթն աղբիւրէ մէյմէկ քիչ ջուր ու մէյմէկ քար կը գողնան, որ թէ և ջուր ու քար առնելու զիրենք արգելող մը չկայ, բայց իրենք կը համարին թէ գողութիւն կ'ընեն. վերջապէս արարողութիւն մըն է, նշանակութիւնը անյայտ։ Իսկ հօտաղներն բազմութեամբ դաշտերէն կերպ կերպ ծաղիկներ կը հաւաքեն. պէտք ալ է, վասն զի Համբարձման տօնին հանդէսը աւելի շքեղ երևցնելու գլխաւոր կէտերը իրենց ընկերութիւնքն են։

Յաջորդ օրը՝ որ է Համբարձումն, մինչդեռ ժամը եկեղեցական պաշտամունք ու հանդէսք կը կատարուին, վաղայարոյց հօտաղներն՝ որոց պաշտօնը բնականապէս ժամ երթալու չներեր իրենց, դաշտ ժողվուած՝ գեղ մտնալու կը պատրաստուին. և ատոնց ընկերութիւնքն ըստ թուոյ թաղուց գեղին է։ Իրենց նախրաց մէջէն սև ու ճերմակ խայծերով խայտաբղէտ ու ընտանի եզ մը կ'ընտրեն, որ նոյն օրը գեղի ռէսէն շատ աւելի պատուաւոր է, և վրան ծոպերով լեցուն գորգէ բաճկոն մը հագցընելով՝ կը սկսին տեսակ տեսակ ծաղկըներով զարդարել, այնպէս որ աչաց խոշոր բիբերը պիտոր տեսնես՝ որ իմանաս թէ եզ է։ Ինչուան ժամէն կ'ելլեն՝ արևը բաւական բարձրացած կ'ըլլայ, և ահա երկրորդ արև մը հանդերձ իւր արբանեկօք կը շարժի դէպ 'ի գեղ գալու։ Ետևէն, առջևէն ու երկու քովէն կը ճեմէ բազմութիւն մը կտրիճ հօտաղաց, ահարկու նայուածքներով, զուապ զգեստիւք, մէյմէկ լախտ ուսերնուն, սօթթուած ու պատրաստականք ամենայն սիրով կեանքերնին անգամ ծախել՝ քան թէ թողուլ որ իրենց փառքն ու պատիւը քիչ մը խոռի։

Երբոր քիչ մը հեռուէն կը տեսնուի զարդարուն եզը՝ արևու ճառագայթից ցոլմունքներէն ու ցինկ ծաղկին յաղթող գունոց դեղնութենէն մարդուս միտքը մէկէն յԱհարոնեան ոսկեձոյլը կ'ընդոստնու։ Այն տեսարանին նկարագիրը աղէկ առնելու, կամ ճիշդ գաղափարը ստանալու համար՝ չկրնար մէկը վարպետ գտնալ՝ բայց եթէ զիւր աչքերը. վարոցներէ դեռ պալարած կռնակն ու կողերը ոսկեճամուկ ծիրանեաց մէջէն չտեսնուիր. այն վիզը որ երէկ տաժանելի լծին տակը կը կոթանար, կարգէ դուրս գեղեցիկ բաշերով զարդարուած է. իսկ պոչը գոյնըզգոյն չուլերով պճնեալ, որուն համար կարծես թէ աւելի պարծենալ կամ բերկրիլ մը կը ցուցընեն անոր չորս կողմանէ պարելով կայտռելով գնացող և կերպ կերպ հագուստներով զարդարուած կրակուրոց պահակները։ Այդ է ահա Համբարձման եզը. զոր թէ հին եգիպտացիներէն մէկը տեսնալու ըլլար,

1 Սամիրը կերակուր մ'է աղցուկ գաւաթով, կարագէ ու կաթէ բաղադրուած, զոր Համբարձման օր ամէն տուն պէտք է որ եփէ, որ և խորհրդական մըն է Համբարձման ամիր ըսելը։

2 Սանէլ, խոշոր աղալ, այնպէս որ մէկ հատը երկու կամ երեք կտոր ըլլայ։

Աստուածոց Աստուածը գտանք, պիտի աղաղակէր։ վերջապէս նոյն համգերձանաց յառաջ խաղալով գեղ կը մտնեն. բոլոր գեղը կը դղրդի, և «Համբարձման եզն եկաւ» ըսելով՝ խուռն բազմութեամբ ՚ի տես կ'ընթանան։ Հօտաղներուն ոմանց ձեռքը սոպաս, ոմանց ալ բղուկ կայ, որոնց մէջ տուներէն առած հաւկըթներն ու կարագը կը դնեն. ու կը սկսին դրանէ ՚ի դուռ ճեմեցունել այդ փառացի եզը. իւրաքանչիւր տունէ թիւ մը հաւկիթներու ու կարագի քանակ մը ընդունելէ ետև, իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն, միատեղ ամենքը բարձրաձայն նոյն տանը համար «Շէն մնա, շէն մնա» մաղթելով. և կ'անցնին ուրիշ դուռ մը. ու այսպէս հետզհետէ։ Այս միջոցիս եթէ այլ և այլ թաղի հօտաղք փողոցին մէջ իրարու հանդիպին՝ մէկ բիրտ ծէս մըն ալ կը կատարուի։ Մէկը միւս խումբին «Բարեկամ էք, թէ թշնամի» կը կանչէ, որուն ըսածը եթէ սերտ բարեկամութիւն մ' ալ ըլլայ՝ պտուղները կերպէն մեծ յիշոցքի մը տեղ կը բանէ. և հակառակ կողմէն խիստ քիչ կը պատահի որ «Բարեկամ» պատասխանուի, բայց եթէ ամենատըկար ըլլան, վասն զի պարտութիւն խոստովանել է. ուստի այն ձայնը իբրև պատերազմական փող սեպուելով, անոնք ալ «Թշնամի ենք» ըսել, ու նախ մէկմէկու խօսքէ նետեր նետելէ ետև յետոյ յարձակիլը՝ մէկ կ'ըլլեն։ Ահաւասիկ քաղաքական պատերազմի մը աղաղակ մըն է կը փրթի. ամբողջ տեսարանն է զուարթանաց ու վարոցաց խիտ եղէնջք, որ կը տևէ ինչուան մրջնաղներ զալով իրարմէ բաժնեն ու վերջացնեն իրենց սոսկալի կռիւը։

Տարակոյս չկայ որ այդպիսի կռիւ մը իւր արդիւնքն ալ պիտոր ունենայ, որովհետև գործնական պատերազմ մը անարիւն չկրնար ենթադրուիլ. մեռնալ չկայ՝ վիրաւոր կայ, բայց դեղափանաց ու բժիշկներ թող չուրախանան, շահ մը չունին։ Ցանաք ծեծ ուտողները անանք են որոց Մարմնոց վերայ ուռեցքներ ու պալարներ անկուած են. ինչ է արդեօք տոտր դեղը. ամենադիւրին բան. իւր զօտւոյն չղթայակապ կարոցին տափակ կողմը իրեք վայրկենի չափ վրան սեղմել և ուռեցքը իջեցունել։ Բայց ոմանց ալ գլուխը պատռած է. հոգ չէ. բաւական է որ աւելն դէպ ՚ի սարդոստայնով լեցուած առաստաղը երկնցուի, միշտ ուզածէդ աւելի կը բերէ. անկէ քիչ մը վէրքին վրայ կը դրուի, ու բժշկութիւնը կատարեալ է։

Գլուխնուն կոտրուիլը այնչափ ցաւ չէ իրենց՝ որչափ հաւկիթներուն. վասն զի իրենց մեծ անպատուութիւն կը սեպուի՝ թէ չկրցան պաշտպանել, որուն թշնամիքը նոյն միջոցին խիստ շատ են։ Ու և իցէ հանդէսներու մէջ եթէ կռիւ մը հանդիպի, բնական է որ հանդիսին զէթ մասամբ ընդհատութիւն ու անհամութիւն մը կ'ըլլայ. ամենուն ալ չէ՝ գոնէ ոմանց սրտին մէջ ուրախութեան տեղ փոխանակելով տրտմութիւն, բարկութիւն, վրէժխնդրութեան ցանկութիւն, և այլն. բայց հոն այդ օրէնքը տեղիք չունի, մանաւանդ թէ ընդհակառակն է. մէկմէկէ բաժնուեցան՝ հաշտուեցան. և այն առտնէն սկսեալ աւելի աշխուժութեամբ կը խմբեն իրենց հանդէսը՝ որպէս թէ ամենայն յաջողութեամբ բոլոր արարողութիւնները անպակաս կը կատարուին։ Այն հանդիսաւոր շրջագայութիւնը լմննալէ ետև եզն նոյն փառքերէն կողոպտուելով՝ եզի կերպարանք կ'առնու. և կը սկսի ընդհանուր տապկոցը [1]։

Դաշտ մը այն առտն իւր վերջին աստիճանի գեղեցկութեան կերպարանքը կ'առնու, երբ մշակը տուջի անգամ կը խնծղի՝ տեսնելով որ իր նախկին ցանած ցորենի արտը՝ ալ սկսեր է անդրանիկ հասկաց ճապուկ քիտերը յղի թփիկներէն դուրս հանել ու թեթև քամիներէ ծուլու ալեաց գաղափարներ տալ. վասն զի այն առենը թէ-

1 Զուարճութեան համար դաշտերու մէջ կերակուրներ եփելուն տապկոց կ'ըսեն։

պէտ և կան խոտեր որ քաղուելու դեղքի մէջ են, բայց ընդհանրապէս ուրիշ շատ բուսոց ու ծաղկանց մեծ մասը իրենց գեղեցկութեան վերջին կէտը հասած կ՚ըլլան։ Համբարձման օր Ցարօնն ալ հոն հասած է։ Ամենահարթ ու ընդարձակ դաշտ մըն է, ամէն կողմերէ լեռներով պարսպեալ. դէպ 'ի հարաւը Մշոյ այգեւէտ ու գաղպէ հանող Սարն է. հիւսիսային լեռը բոլորովին գօշ է, որուն պատճառը չգիտցուիր։ Գրգուռը այնպիսի տեղ մը կեցած է որ ամեն առաւօտ արևուն նախկին ճառագայթները իւր ուսերէն ցոլացնելով՝ դաշտին վրայ կը սփռէ, որոյ վերջին շառաւիղները Գլակայ վանաց մեծ գըմբեթին ծայրէն կ՚անհետանան՝ մտնելով այն լերին ետևը՝ ուր մտաւ Արձան քուրմը իւր կենաց վերջի օրը։

Բայց լեռներէն վար իջնանք. անոնք Քիւրտերուն թող մնան, վասն զի Քիւրտերն ալ ահա զօզանն[1] ելած են. այսօր Համբարձում է, բոլոր չափահաս տղք իրենց ձիերուն հեծած ու դաշտ ելած են պուարճանալու. ահա խորօնք գեղը կը տեսնուի, հոն իջեր ու ձի մը ուզէ. ահա Մարտօն մարդասէր է, Գեղվրայ[2] ձին ինչուան իրիկուն քեզի չպլանար. վրան նստէ, ու ել 'ի դաշտ. և եթէ թեթև նախաճաշ մը ըրած ես՝ ակրատ մի ուտեր, վասն զի շրջագայութեանց միջոց Համբարձման սամիր ու ձուածեղ ուտելու պիտի պարտաւորուիս. բայց ուտելէդ վերջը չմոռնաս ըսելու «Աստուած օրհնէ, չէն պահէ», ապա թէ ոչ՝ սովորութեան դէմ կ՚ընես։ Կը տեսնե՞ս սա գեղեցիկ ու անսահման պարտէզը. զայդ մըշակողը բարերար ձեռք մըն է՝ որ չտեսնուիր. զարմանք չէ որ շատ զմայլեցար. դէպ յարևելեան հիւսիսը մէյմը նայէ, տես ինչպէս ծեր Մասիս ալ այնչափ լերանց կոյտերու ետևէ ճերմակ գլուխը վեր վերուցած հետաքրքրութեամբ մը կը նայի։ Ահա դալարագեղ դաշտերներէն, Արածանւոյ ափունքներէն ու Մեղրագետի եզերքներէն խիտ խիտ ծուխեր կը բարձրանան. չվախնանք, Լէնկ-Թիմուրի հրդեհներն չեն. տանցմէ որը ձուազեղ, որը սամիր կ՚եփէ, որը գառներ և ուլեր կը խորովէ։ Անոնք ընդհանրապէս դաս դաս խումբեր բաժնուած են, աղջիկներ ու կանայք դատ, երիտասարդները դատ. և տեղ տեղ ալ մեծանիստ ծառերու տակ կը տեսնուի տղայոց ճըւճըւացող ժողովք մը, որ տապակը կրակին դրած տապկոց կ՚ընեն, տասը վայրկենի մէջ զանէ չորս կուիւ ու հաշտութիւն ընելով։ Իսկ խորխտ հօտաղաց խոհակերոցը ընդարձակ մարգ մըն է, ուր մէջերնէն հանդարտ գլուխները (չեմ կարծեր թէ գտնուի) եփող ընտրուած են։ Բայց այլուստ խոշոր կաղնեաց և ուռենեաց ճարճատիւնը ամեներին չլսուիր, որովհետև իրենց ուրախութիւնն այնչափ է՝ որ իրարու հետ խօսելու ատենը ամենէն ընտանի խօսքն ալ բարկ բարկ ծիծաղելով կը յօդեն, և այնպիսի ձայնով՝ որ եթէ մէջերնին մղոն մը անջըրպետ ալ ըլլար՝ բաւական կ՚ըլլար պայծառ լսուելու։ Վերջապէս կ՚եփեն ու կ՚ուտեն որչափ որ կրնան, բայց լմնալը անկարելի է. շատ անցորդներ ու աղքատներ ալ իրենց նոյն օրուան կերակուրը առատապէս անոնցմէ կը գըտնան։ Արդ՝ թէ որ հում հաւկիթ շատ աւելնայ՝ այն ատենը հօտաղներն իրենց քաղաքավարութիւնը քիչ մը կը վերաւորեն, մէկմէկու ետևէ վազելով ու զանոնք իրարու նետելով. բայց շատ չմեղադրենք, վասն զի այս բանս ընողները աւելի քիչ կրթուածներէն են. զի իրենց մէջ երեք աստիճան կրթութիւն առնողներ կան. առաջինը սաղմոսին կէսը հասնողներն են՝ որ տէրտէր ըլլալու ամենապատրաստ կը համարուին, միայն թէ կարդալը մոռցեր են. վասն զի այնչափ ատեն է դպրոց չեն գացած որ վարժապետի տուած

1 Քիւրտեր գարունը գեղեցիկ լեռներ կը քաշուին բնակելու, զոր կը կոչեն զօզան, այսինքն դրախտ։

2 Ամէն գեղ հասարակաց բաներու գործածելու համար ձի մը կայ, որուն տէրն է բոլոր գեղը, ուրով և կ՚ըսուի Գեղվրայ։

հարուածոց ապինները մարմիններէն ան-հետանալու վրայ են ։ Երկրորդ կարգինները այն աստիճանի գիտութեան հասած են՝ որ եթէ ու գիրը տեսնելու ըլլան՝ մէկէն կը գուշակեն թէ ետեւէն ք պիտոր գայ ։ իսկ երրորդ կարգի ու վերջինները անոնք են որոնք արտերէն ձմերուկ գողնալնուն համար՝ քանի մը անգամ դպրոցին մօտ տեղ մը բանտուեր են ։

Երբոր տեսնուած բոլոր ծուխերը կը նուազին՝ ըսել է թէ կերակուրը լմըննալու վրայ է , ու խաղալ պիտոր սկըսին . գնա Մեղրագետին քովերը քալէ . կ'ուզես գլուխդ կախած՝ միայն ջուրին նայէ , այնպէս վճիտ ու կամկար է որ իր ափանց վրայ եղած բոլոր խաղուց ու պարուց պատկերքը ամենայն հանգամանօք դիմացդ կը դնէ . բայց նոյն բանը Եփրատէն մի յուսար , վասն զի թէպէտ և աւելի յստակ է , բայց զրից ( տատրիկ վազուկ ) ու խոխոջող ըլլալով՝ տեսարանը կը չփոթէ ։

Այսպիսի միջոցներ հօտաղաց անդգուշութեամբն երբեմն կը պատահի նաև գոմշոց կռիւ , որ զարհուրելի կերպով մը հօտաղներէն մասնաւորապէս սրած կոտոշներով կը սկսին զիրար բըղըքտել . կանայք ու տղայք բարձր տեղերու կ'ապաւինին՝ որ չըլլայ թէ մէկը յաղթուելու ժամանակ անոնց ոտքին տակ մնան . վասն զի յաղթականը տատրիկ արագութեամբ երկայն ատեն զմիւսն կը հալածէ . երիտասարդները բոլոր հոն կը լեցուին , դաշտը աղաղակներով կը լեցուի , ու հօտաղներ ալ իւրաքանչիւրը իրեններին քաջալերական ձայներ կու տայ վրան ջուր լեցունելով ու չփելով , ինչուան որ մէկն յաղթուի ու փախչի՝ զոմանս 'ի սուգ , զոմանս յուրախութեան թողլով ։

Արեւն մարը կը մտնայ . չուելու խլրտումն մէջերնին կ'իյնայ . ձիաւորներուն վերջի արշաւն է որ դէպ 'ի գեղ կ'ըլլուի . հետաւորները խումբ խումբ՝ կամաց կամաց նոյնպէս դէպ 'ի գեղ կը սկսին քաշուիլ , որոց խօսելու ու խընդալու ձայները արդէն իսկ զօրաւոր , ու իրիկուան զովութիւնն ալ նպաստ ատնլով՝ մղոններ կը կտրեն ։ Ամենէն վերջը երիտասարդաց բազմութիւնն է , որոնք թև թևի տուած մեծաւ ցընծութեամբ մը ճեմելով պարելով յառաջ կ'երթան՝ երգելով այն երգն որոյ սկիզբն է

« Համբարձըման երկուշաբթին ,
« Առէք ըզփոցըն ու զգերընդին » ։

---

Մարկոս Աւրելիոս իճքճակալիճ առ կիճկիճճատոս իր բարեկամը գըրած թուղթը , որ առաջ հռոմայեցի ասպետ ըլլալով՝ ետքը վաճառակաճ եղաճ էր ։

Մարկոս Աւրելիոս Հռոմայ ինքնակալ , զահակից Աննիոսի Վերոսի իր եղբօրը , առ քեզ Կինկիննատոս զօրավար ողջոյն , ու ձախորդ բախտին դէմ զօրութիւն ։

Պերեկինթայ մօրը մեծահանդէս տօնէն 'ի վեր մէկը չտեսայ տնէդ , և ոչ մէկ գիրդ առի . կը կասկածիմ որ կամ առողջութեանդ վտանգ մը հասած ըլլայ , և կամ մեր բարեկամութիւնը մոռցեր ես ։ Վասն զի մտերիմ բարեկամութիւնը՝ անընդհատ թղթակցութիւն ու այցելութիւն կ'ուզէ . ասկէց ետքը ծոյլ մի ըլլար , ու աստանկ զմեզ մի մոռնար . եկուր որ տեսնաս զմեզ , կամ գոնէ ստէպ գրէ ։ Վասն զի բարեկամաց սիրալիր թղթակցութիւնը իրար տեսնելու բաղձանքը թէ բոլորովին ալ չիլեցընէր՝ գէթ յոյսերնին կը զօրացընէ ։ Ըսես պիտոր որ Կապուայի հասարակապետութեան այնչափ գործքերը ատեն չեն թողուր թուղթ գրելու . բայց ես ալ կ'ըսեմ որ ոչ երբեք այնչափ զբաղած կրնաս ըլլալ՝ որ զբաղմունքդ օրինաւոր արգելք ըլլան բարեկամիդ հետ թըղթակցելու ։ Վասն զի ան ատենը միայն կրնանք ըսել որ կ'ապրինք , երբոր աստուածոց ծառայելու ու բարեկամաց հետ կենցաղավարելու կ'անցընենք ատենները . ուրիշ ամեն ատեն որ կ'անցը-,

նենք խօսակցութեան, առաւօտուն, աշխատանաց, քնանալու, հանգչելու, կենաց գրքին մէջը չգրուիր, այլ մահուան. վասն զի ասանկ բաներու մէջ թէ և մարմինը հանգչի, բայց հոգին չհանգչիր։ Ստոյգ գիտցիր, ով բարեկամ, որ անկարելի է մարդս գո՛հ ըլլայ, երբոր սիրտը անհանգիստ է. վասն զի մեր մխիթարութիւնը ոսկորներնուս վրայ չէ, մարմնոյ ջիղերուն վրայ չէ, այլ հոգւոյն կարողութեանցը վրայ։

Յատոնց է որ ես զքեզ կը ճանչնամ, դուն ալ զիս. շատ տարինէ 'ի վեր է որ զքեզ կը սիրեմ, դուն ալ զիս. ուրեմն իրարու հին բարեկամ ըլլալով, իրաւացի է որ բարի գործքերով նորոգենք մեր բարեկամութիւնը. վասն զի անիրաւարար բարեկամ կ'ըսուին, որոնք որ իրարու հետ օտարներէն աւելի հաղորդակցութիւն մը չունին։ Մէկը որ հետս չխօսակցիր, ինծի թուղթ չգրեր, զիս չտեսներ, այցելութեան չգար, բան մը չտար ինծի, և ոչ ես իրեն, կրնայ թշնամիս ալ ըլլալ. բայց զինքը ինծի բարեկամ քարոզելու ալ որ ըլլայ՝ հոգս չէ, վասն զի մտերիմ բարեկամութիւնը ուրիշ բանի վրայ կեցած չէ, բայց բարեկամներուն իրարու սրտերնին բանալու, ու մէկմէկու հետ հաղորդակցութիւն ունենալու։ Թերևս ըսես, ով Կինկիննատոս, որ խիստ հեռաւորութիւնը՝ Հռոմայէն ինչուան աստեղ՝ պատճառ ըլլայ պաղեցընելու մեր բարեկամութիւնը. վասն զի փափուկ սիրտը իր սիրելւոյն մօտ կը վառուի, հեռուանց կը մարի։ Աս խօսքիդ կը պատասխանեմ որ՝ աղէկ գինին, որչափ որ իր տեղացը հեռու տարուի, այնչափ աւելի կ'ուժովնայ. ըսել կ'ուզեմ որ՝ ճշմարիտ բարեկամները իրարմէ հեռու ալ ըլլան, սրտով մօտ են մէկմէկու։ Ըսէ ինծի, ով Կինկիննատոս. թէ որ զիս հաւատարիմ գտեր ես քեզի միշտ, ինչո՞ւ իմ սրտիս վրայ կը կասկածիս. կանանչ տերևները նշան են որ ծառը ներսանց չորցած չէ. ըսել կ'ուզեմ որ բարերարութիւններն ալ նշան են որ մարդուս սիրտը աղէկ է։ Թէ որ դուն զքեզ ճըշմարիտ բարեկամ կը սեպես քու բարեկամիդ, գիտցիր բարեկամութեան սա կանոնը որ կատարեալ սէր չըլլար՝ ուր որ պակսած է բարերարութիւնը. ընդհակառակն՝ ով որ կատարեալ սէր ունի, միշտ կը բարերարէ։ Ես միշտ եղած եմ, եմ, ու պիտոր ըլլամ քուկդ. կ'անիրաւիս ինծի, թէ որ դուն ալ իմս չըլլաս բոլորովին։

Առջի տարիները, երբոր ես դեռ պատանի էի ու դուն ծեր, ես քեզի սորվելով կ'օգնէի, դու ինծի բարի խրատներով։ Բայց հիմա որ ուրիշ աշխարհք մըն է, հիմայ որ ճերմակ մազերէդ կը ճանչցուիս որ ծեր ես, ու գործքերդ զքեզ կ'ամբաստանեն որ պատանի ես, պէտք է ոճերնիս փոխենք, ես քեզի օգնեմ բարի խրատներով, դուն ինծի օգնես սորվելով։ Թէպէտ գիտեմ որ դուն ունեցածդ մարդու չես տար. անանկ ագահ ես որ՝ սեստերտի մը չես փոխեր Հռոմայ ամեն խորհրդականները իրենց ամեն բարի խրատներովը։ Բայց իմ մեծ սիրոյս համար, որով զքեզ կը սիրեմ, ու քու բարեկամութեանդ պարտական ըլլալուս համար կ'ուզեմ խորհուրդ մը տալ քեզի՝ որով կրնաս ճանչնալ լաւ մարդ մը ինչ պարտական է ընելու՝ որ դից սիրելի ըլլայ, ու մարդիկ ալ զինքը սիրեն ու մեծարեն։ Թէ որ կ'ուզես, ով Կինկիննատոս, աշխարհքիս վրայ խաղաղ կեանք ունենալ՝ միտքդ պահէ ինչ որ քեզի կը գրեմ։

Ա. Յիշէ ինչ բարիք որ ընդուներ ես, ու ջանա մոռնալ ուրիշներուն քեզի ըրած անիրաւութիւնները։

Բ. Քու քիչ ունեցածդ շատ սեպէ, ուրիշին շատ ունեցածը քիչ։

Գ. Լաւ մարդկանց հետ եղիր միշտ, գէշերէն խորշէ։

Դ. Մեծերու հետ ծանր վարուէ, ստորնագունից հետ ընտանի։

Ե. Մօտ եղողներուն բարիք ըրէ, հեռու եղողներուն վրայ բարիք խօսէ։

Զ. Ինչ մեծ կորուստ ալ ունենաս ստացուածոցդ, միշտ պզտիկ սեպէ.

ինչ պզտի կորուստ ալ որ ունենաս պատուոյդ, մեծ սէրդ միշտ։

Է. Շատ բան վտանգի մի՛ դներ բան մը ստանալու համար, և ոչ անստոյգ բաներու համար՝ ստոյգ բան մը։ Ու կ'աղաչեմ զքեզ՝ որ մէկէն աւելի բարեկամ չունենաս, իսկ թշնամի և ոչ մէկ մը ունենաս։

Ով որ կ'ուզէ լաւ մարդկանց կարգը անցնիլ, աս բաներս պէտք է պահէ։ Գիտեմ որ ախորժիս պիտի աս գրածներէս. բայց ես աւելի կ'ախորժէի, թէ որ պահէիր զասոնք. վասն զի դիւրին բան է խորհուրդ տալը, դիւրին է խրատներ գրելը. բայց դժուարը՝ 'ի գործ դնելն է զանոնք։ Քեզի հետ մտերիմ բարեկամ ըլլալովս, ու գիտնալով քու մեծ ընդունակութիւնդ, հոգացի պատուաւոր պաշտօններ տալու միշտ քեզի 'ի Հռոմ. իմ միջնորդութեամբս եղար հոս շինուածապետ, տրիբուն, ռոճիկ բաժնող, հեծելոց վարժիչ, ու անանկ խոհեմաբար ըրիր աս պաշտօններն որ՝ ծերակոյտը շնորհակալ եղաւ ինծի աս պաշտօնները քեզի հոգալուս համար, ու դուն ալ անմահ յիշատակ կը վաստըկէիր անոնցմով։ Իսկ հիմա բան մը լսեցի վրադ՝ զոր չէի ուզեր գիտնալ, և ոչ կ'ուզէի որ մաքէդ անցած ըլլար։ Այսինքն զօրաց հազարապետութիւնը թողուցեր, ու վաճառականութիւն կ'ընես եղեր ընդ ծով և ընդ ցամաք. անանկ որ՝ զքեզ 'ի Հռոմ տապետ ճանչցողները, հիմա վաճառական կը տեսնեն կապուայի մէջ։

Աս թուղթը գրելու ատենս, գրիչը ձեռքս առած՝ շատ մը կեցայ, մտածելով որ քեզի ընելու մեղադրութիւնս ուսկից սկսիմ. ձգած պաշտօնիդ փառաւորութենէն, թէ ձեռք զարկած գործիդ անարգութենէն։ Եթէ զքեզ մոռցար, քու առջիններդ պէտք էր յիշէիր որ աշխատանաց մէջ մեռան՝ զաւակնին ու թոռներնին սպառազէն ասպետ ձգելու համար. իսկ դուն հիմա այն ազատութիւնն որ անոնք արիւննին պատերազմի մէջ թափելով ստացան, կը կորսնցընես ստրկի ագահութեամբ։ կ'երեւակայեմ, ու չեմ սխալիր որ, եթէ նախնիքդ գերեզմանէն ելլէին, անոնք որ այնչափ աշխատեցան աս փառքը վաստըկելու, զքեզ ողջ ողջ կը կլլէին։ վասն զի որդիք, որոնք որ իրենց հօրը պատիւը կը կորսնցընեն, կենաց արժանի չեն։ Գեղեր, տուներ, լեռներ, ջրանցքներ, անտառներ, անասուններ, ծառաներ, գոհարներ, ոսկի ու արծաթ, որ մեր առջինները մեզի թողուցին, ետքը ետքը կը կորսուին. ուրիշ բան չկայ՝ որ միշտ կարենանք ունենալ, բայց ազնուական համբաւն որ իրենց վարքովը մեզի թողուցին։ Անոր համար զաւակ մը՝ որուն վրայ իր նախնեաց համբաւը կը դադրի, մեծ նախատինք է իր ազգականներուն՝ զինքը թողուլ որ ապրի երկրիս վրայ։ Կիկերոն իմաստունը երբոր բարեբախտութեան մէջ էր, ու բոլոր հասարակապետութիւնը անոր խորհրդովը կը կառավարուէր, մէկը զինքը անարգեց՝ նուաստ ցեղէ ըլլալուն համար։ Ինքն ալ պատասխանեց անոր. փառք կուտամ դից որ քու ազնուական ցեղդ քեզմով կը լմըննայ, ու իմ նուաստ ցեղս ինծմէ կը սկսի ազնուանալ։ Խիստ ցաւելու բան է տեսնել որ ցեղի մը մէջ այնչափ լաւ ու քաջ մարդիկ ելած ըլլան, ու հիմա զաւկըննին վատ ու անպատուաւոր մարդիկ ըլլան. անանկ որ՝ որչափ իրենց առջինները անուանի էին, այնչափ անուանարկ են իրենք։

Իրաւցընէ ապշեցուցիր զիս, ով Կինկիննատոս, որ մէկզի ձգելով թշնամիներդ զէնքով նուաճելը՝ խեղճ ռամկի մը պէս առուտուր կ'ընես։ Կ'ուզես ընտանեացդ չարիք ընել, ու օտարներուն բարիք. կ'ուզես մեռցընել զանոնք՝ որ մեզի կեանք տուեր են, ու կեանք տալ անոնց՝ որ զմեզ մեռցընել կ'ուզեն. կ'ուզես խռովարարներուն խաղաղութիւն տալ, ու խաղաղասէրներուն հանգիստը վերցընել. կ'ուզես տալ անոնց՝ որոնք մերը կը յափշտակեն, ու յափշտակել անոնցմէ՝ որոնք իրենցը մեզի կուտան. կ'ուզես ազատել մեղաւորները, ու անմեղները դատապարտել;

կ'ուզես բռնաւոր ըլլալ քու հասարակապետութեանդ, ու չպաշտպանել քու հայրենիքդ։ Ան ամէն չարիքը կ'ընէ, ով որ զէնքը ձգելով՝ առուտուրի ձեռք կը զարնէ։ Մտածեցի որ ինչէն շարժած պիտոր ըլլաս ասպետութիւնդ ձըգելու՝ որով այնչափ կը փառաւորուէիր, ու անանկ գործքի մը ձեռք զարնելդ՝ որ գիտես որչափ վատանունութիւն կը բերէ քեզի։ Քեզի որ պատերազմի մէջ զէնք կը շարժէիր՝ աւելի անարգանք է քան թէ անոնց՝ որ վաճառականութեան մէջ ծնած՝ իրենց պատուովը արուեստնին հասարակապետութեան մէջ կ'ընեն։ Չեմ ուզեր ասով վաճառականութիւնը պարսաւել, և ոչ վաճառականներն ու վաճառք պատրաստողները. վասն զի ինչպէս որ առանց հեծելոց աղէկ պատերազմ չըլլար, անանկ ալ առանց առուտուրի չկրնար ապրիլ հասարակապետութիւնը։ Ուրիշ պատճառ չեմ գտնար ասպետութիւնը ձգելուդ ու վաճառականութեան ձեռք զարնելուդ, բայց եթէ ծերացած ըլլալովդ՝ ինչպէս որ կը տեսնեմ, չկըրնալով լեռները ասպատակել՝ շուկայի մէջ ասպատակութիւն կ'ուզես ընել։ Խեղճ Կինկիննատոս, առուտուր ընողները՝ վաճառքը սուղ կ'ուզեն տալ. ուրիշ չափով կը գնեն, ուրիշ չափով կը ծախեն. աչքդ բաց որ զքեզ չխաբեն. արթուն կեցիր, վասն զի առուտուր ընողներուն սովորութիւնը աս է. ու ստոյգ գիտցիր որ ինչ չափով որ դիք քու կեանքդ կը չափեն, աւելի արդար է քան թէ քու խանութիդ չափը։ Դուն գործքի մը ձեռք զարկեր, որ ուրիշ քու ընկերներուդ շատ օրուան մէջ գողցածը կրնաս մէկ ժամու մէջ յափշտակել. բայց ատեն կու գայ որ բոլոր աղէկ ու գէշ վաստըկածդ կը կորսնցընես, չէ թէ ժամու մը մէջ, այլ վայրկենի մը։ Որչափ ալ շատ ունենանք, որչափ ալ շատ վաստըկինք, որչափ ալ շատ կարենանք վաստըկիլ, դիք անանկ արդար են՝ որ ամէն գէշ գործքերնուս պատիժը պիտոր քաշենք, ու ամէն բարի գործքերնուս վարձքը պիտոր առնենք։

Եթէ գիտնայի որ աշխարհքիս բաները ու թեթեւութիւնները կ'արհամարհես, ինչպէս որ աշխարհք կ'արհամարհէ զքեզ ու քու տարիքդ՝ որ ճերմակ մազերդ կը մատնեն, կ'ազատէի զքեզ համոզելու աշխատութենէս, ու քեզի ձանձրութիւն տալէն՝ որ գրածներս կարդաս։ Շատ անգամ իմաստուն մարդիկ ալ կը սխալին, չէ թէ սխալիլ ուզելով՝ այլ առջևի գործքերնին անանկ դժուարամարս ըլլալով, որ իրենց իմաստութիւնը չհասնիր անոնք մարսելու. ուստի հարկ կ'ըլլայ որ կամքերնին կրթեն, միտքերնին սրեն, յիշողութիւննին արթընցընեն, և մանաւանդ ատեն ատեն ուրիշի խորհուրդը լսեն։ Ով որ մեծ ու հոյակապ շինուածք մը կ'ուզէ կանգնել, կը նայի որ հիմը խորունկ ըլլայ, վասն զի հիմը հաստատուն որ չըլլայ, տունը վտանգի մէջ կ'ըլլայ։ Աշխարհքիս աշտարակները, այսինքն երջանիկ վիճակներն՝ որ ունայնութեան որդիքս աւազի վրայ կը կանգնենք, որչափ ալ ամուր ըլլան՝ պզտի հովէ մը կը շարժին, ամէն անձրևէ կը քայքային, ու չկարծած ատեննիս՝ մահը բոլորովին կը կործանէ զանոնք։ Մարդիկ գիտնալով որ մշտնջենաւոր չեն իրենք, կը ջանան մեծամեծ ու հոյակապ շէնքերով, ու զաւկըներնուն մեծութիւն ձգելով, մշտնջենաւոր ըլլալ. բայց ասով ալ, ինչպէս ուրիշ շատ բաներով, իրենց անմտութիւնը կը ցուցընեն։ Աստուածները ամէն բան հաղորդեր են մարդկանց՝ իրենց անմահութենէն 'ի զատ. անոր համար անմահ կը կոչուին իրենք, վասն զի չեն մեռնիր ամենևին. իսկ մենք մահկանացու ենք, ամէն օր կը մեռնինք. որչափ աշխատանօք կ'ըլլայ մեր սնունդը, որչափ ծախքով մեր կեանքը. ու ամենևին չկարծած ատեննիս՝ բոլորը կը կորսուին, հետքերնիս չմնար։ Ո՛վ Կինկիննատոս, իրարու վըրայ ունեցած մեր սիրոյն համար ըլլայ, անմահ դից համար ըլլայ, մի հաւտար աշխարհքիս՝ որ կտոր մը ոսկիի տակ այնչափ ժանգ կը ծածկէ, ճշմարտութեան գունով այնչափ սուտեր կը գու-

նաւորէ, կարճ հեշտութեան մը հետ հազար վիշտ կը խառնէ. որոնց որ աւելի սէր կը ցուցընէ՝ զանոնք աւելի կը խաբէ, ու որոնց որ աւելի կը ցուցընէ՝ անոնց աւելի վնաս կու տայ. կամ կը ճանչնաս դուն իր պատիր խաբէութիւնները, կամ չես ճանչնար. թէ որ չես ճանչնար, ինչո՞ւ չճանչցած տիրոջ կը ծառայես. իսկ թէ որ կը ճանչնաս, ինչպէս ետեւէն կ'երթաս։ Ըսէ ինծի. խենթ չե՞ս սեպեր գողը՝ որ ուրիշներուն զինքը խեղդելու չուանը կը գնէ, մարդասպանը՝ որ իր գլխատման դանակը կը սրէ, աւազակը՝ որ զինքը ձգելու հորը կը ցուցընէ, մատնիչը՝ որ պատժուելու տեղը կը վազէ կ'երթայ, ու դաւաճանը՝ որ ինքիրեն իր դաւաճանութիւնը կը յայտնէ որ քարկոծուի։ Աստոյգ գիտցիր որ դուն անոնցմէ խենթ կ'ըլլաս, թէ որ ճանչնալով աշխարհքս՝ իրեն հետեւիս։

Բան մը ըսեմ քեզի անանկ խորունկ՝ որ պէտք չէ մոռնաս ամենեւին. մենք մարդիկս աւելի հաւատքի կարօտ ենք տեսած ունայնութիւններնուս չհաւատալու համար, քան թէ մեծամեծ հրաշքներու՝ որ կը լսենք։ Նորէն կարդա աս խօսքս որ ըսի, ու վրան աղէկ մտածէ, վասն զի խիստ խորունկ վճիռ մըն է։ Կը կարծե՞ս որ հարուստները շատ ստակ դիզելու համար՝ քիչ նեղութիւն կը քաշեն. գիտցիր, բարեկամ, որ խեղճ մարդ մը ինչուան որ բիւր սեստերտ մէկդի դնելու ըլլայ, բիւր վիշտ ու նեղութիւն սիրտը կը մաշեն։ Մեր առջինները փորձեր են, մենք ալ կը փորձենք միշտ, ու փորձեն պիտոր ետքը եկողներն ալ, որ ստակն որ կը վաստըկինք՝ կը մընայ, բայց հոգը, նեղութիւնը, վէճերը, որ ստակին հետ կու գան, չեն մընար։ Քիչ տուն տեսայ 'ի Հռոմ, որ մեծնալէն քիչ ետքը՝ ծանր թշնամութիւններ չունենայ դրացիներէն, չարաչար նախանձ իր ժառանգներէն, անխնայ նեղութիւն իր բարեկամներէն, վտանգաւոր չարութիւն իր թշնամիներէն, մանաւանդ վէճ ու դատաստան ծերակուտին առջեւը, ուր երբեմն քիչ մը ստակ չկորսնցընելու համար՝ անուննին կը կորսնցընեն։ Քանիներ ճանչցայ 'ի Հռոմ, որոնք ինչ եկամուտ որ պատրաստեր էին սիրելի զաւկըներնուն ձգելու՝ չէին կարծեր որ ուրիշները պիտոր վայելէին զանոնք։ Մեծ խենթութիւն կերեւնայ ինծի՝ որ գիտնալով թէ լալով ծներ ենք ու հառաչելով պիտոր մեռնինք, այսու ամենայնիւ խնտալով կ'ապրինք։ Կ'ուզէի հարցընել աշխարհքիս ու իր հետեւողներուն. որովհետեւ լալով կու գանք աշխարհք, ու հառաչելով կ'ելլենք աշխարհքէս, ինչո՞ւ խնտալով կ'ապրինք։ Վասն զի բանի մը ամեն կողմն ալ չափելու կանոնը նոյն պիտոր ըլլայ։ Ո՛վ Կինկիննատոս, ո՜վ խաբեց դքեզ որ դաւաթ մը ջուրի պէտք ունենալուդ համար ձեռացդ մորթը պատըռտես չուանով՝ ծովու մը չափ ջուր քաշելու համար. այսինքն աշխարհքիս ստակը վաստըկելու համար՝ հոգիդ հանես, ու անունդ ալ վտանգի դնես։ Աստոյգ գիտցած ըլլաս, որ ոչ ծով մը ունենալով՝ աւելի պիտոր խմես, և ոչ աշխարհքիս ստակը ունենալով՝ աւելի պիտոր վայելես, քան ինչ որ աղքատութեանդ ատեն կը վայելէիր։ Թէ որ ինծի խորհուրդ կը հարցընես, գիտնալով քու տարիքդ՝ պէտք էր խնդրէիր աստուածներէն որ խոհեմ ծերու մը պէս հանգիստ կեանք մը անցընես, չէ թէ հարստութիւն՝ որ անմիտ պատանեաց պէս չարաչար կեանք մը ունենաս։ Լացի տեսնալով անոնց աշխարհքէս ելլելը, ու դքեզ կ'ողբամ, ո՜վ Կինկիննատոս, ու արեան արցունք կը թափեմ՝ տեսնելով քու աշխարհք դառնալդ։ Անունն որ ունէիր ծերակուտին առջին, քու առջիններուդ թափած արիւնը, իմ բարեկամութիւնս, քու իշխանութիւնդ, խնամութեանդ պատիւը, ու հասարակապետութեան վրադ դայթակղիլը, պէտք էր որ սանձէին քու այդչափ ագահութիւնդ։ Խե՜ղճ Կինկիննատոս, մտածէ որ պատուով ճերմըկցած մազերդ՝ որ թափելու վրայ են, պէտք է որ ազնուական գործքերու մէջ թափես։

Խրատ մը տամ՝ քեզի, թէ որ անով գոհ չըլլաս՝ զիս այսուհետև բարեկամի տեղ մի դներ։ Կենացդ պատրոյգը քիչ է, հարստութեան եղ շատ մի փնտըռեր. վասն զի լոյս տալու տեղ՝ կը հալիս։ Մի վստահիր ամենեին աշխարհքիս յաջողութեանը, վասն զի միշտ կարապետ է ձախորդութեան։ Խենթութիւն ըրեր, դժուարին լերան մը փրայ սկսար ելլել. ինծի կ'երևնայ որ խելացութիւն կ'ընես ետ դառնալ. վասն զի ան ատեն ամենքը կ'ըսեն որ Կինկիննատոսը ինջաւ, չեն ըսեր որ ինկաւ։ Կը լմընցընեմ թուղթս, աղէկ դիտէ ըսելիքս. անիծած ըլլայ ատ գործքը՝ որուն ձեռք զարկեր, որուն ետևէ եղողները աղքատ կ'ապրին՝ որ հարուստ մեռնին։ Փաւստինոս բարև կ'ընէ քեզի. քիչ միշտ չեղաւ իրեն քու վաճառականութեան ձեռք զարնելդ, ու կապուայի մէջ խանութ բանալդ։ Ջի մը կը ղրկեմ քեզի՝ որ հեծնիս, Տրիպոլսի եղէգ՝ քեզի գաւազան. մատնի մըն ալ մեծագին, ու Աղեքսանդրիա շինած երախակալ մը. ասոնք չեմ ղրկեր կարօտութիւն ունենալուդ համար, այլ տալու բարի սովորութիւնս չկորսնցընելու համար։ Պամփիլիա հօրաքոյրդ՝ իմ դրացիս մեռաւ. կրնամ ըսել որ շատոնց Հռոմայ մէջ մեռած չէր կնիկ մը՝ որ ատանկ անուն թողու. վասն զի թշնամիները իրարու հետ կը հաշտեցընէր, աղքատներուն կ'օգնէր, աքսորելոց այցելութիւն կ'ընէր, թշնամի մը չունէր, բարեկամ շատ ունէր. լսեցի ալ որ բոլոր մեհեաններուն լոյսն իրմէն էր։ Պրեսիլլա հօրաքրոջդ աղջիկը աղէկ է, թէ և իր մօրը մահուան վրայ շատ տխուր. իրաւունք ալ ունի, վասն զի մինակ այն ցաւերուն՝ որ մայրերը զաւակ բերելու համար կը քաշեն, արիւն արցունք ալ որ թափէինք՝ չէինք կրնար հատուցում ընել։ Դիք պահապան ըլլան քեզի. ու քեզ ալ, զիս ալ, Փաւստինոս ալ ամեն դժբաղդութենէ պահեն։ — Մարկոս 'ի Մոնթէչելլիոյ իր ձեռքովը կը գրէ։

## ՍԱՐԴԻՔ

( Տես երես 110 )

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

### ՅԻՇԱՏԱԿԱՑ ԲԱՆՔ

Բանտարկեալ մարդ մը.

### Ա

Յետ ցերեկի ոգեսպառ վաստակոց՝ երբ մխիթար և սփոփիչ կը մատչի գիշերային մեռելակերպ դադարութեան հանգստութիւնը։

Խորին և անշունչ լռութիւն, որ այնպէս մը կ'երևցնէ, ինչպէս թէ տուընջեան կենսատու ջահը անհետանալով՝ ամենայն շունչ, ամեն էութիւն՝ հետը անցուցեր տարեր է։

Թէպէտ անզգայ մոռացութեան մէջ կ'երևնան ընչաւոր շարժուն էակք, դեռ ևս զօրութեան մը ներգործութեան ենթակայ են. զօրութիւն դրդուեալ ջղաց, որ առանց իրենց մեռելակերպ դադարութիւնը այլայլելու, զիրենք կ'առնու կը յածեցնէ երկինք ու երկիր։ Կը յածի մարդ այն երանելեաց աշխարհքը, այն երազոց ընդարձակ ասպարէզը, որ լի է ցնորական զբօսանքներով։

Թողունք որ զբօսնու այս կենաց պատկերով, մինչև զգայարանաց ակնարկութիւն մը թմրութիւնը ցրուէ. երազական զբօսանքը այն ատեն իբր շամանդաղ պիտոր ցնդի։

### Բ

Բայց այս լռութեան ժամը բնութիւնը իր գիշերային զուարճութեանց կը գործածէ։ Երկարաձիգ դանդաղութենէ կը խորշի՝ ինչպէս ձանձրալի միակերպութենէ։ Ուստի և բաժնած է իր զբօսանաց առարկաները. են որ ցերեկը զինքը կը զբօսեցնեն, և են որ գիշերը։

Հանգիստը ամէն ընչաւորաց էապէս կարևոր ըլլալով, այն ընչողը որ ցորեկուան ծանրութեամբը կը տառապի, գիշերային անգործութեամբ սպառած ուժը վերստին կը ստանայ. և այն էակք որ գիշերային միակերպութիւնը կոտրելու որոշեալ են իրենց գործունեայ աշխուժութեամբը, ցորեկը անշարժ կը դադարին։

Եւ անկականք իսկ այս օրինաց կը հպատակին, ըստ որում գործարանաւոր էակք։ Իրենց սակաւազուարճ բընութիւնը անհամբերութեամբ արևուն ակնարկութեանը կը սպասէ։

Հազիւ թէ արեգը իրենց ակնարկէ, իսկոյն տերևնին կ՚ընդարձակեն, բաժակնին անյապ կը բանան որ ընչեն կենաց աղբիւրէն։ Սակաւատև սփոփանք։

Հազիւ թէ ընչել կը սկսին, հազիւ թէ կենաց վայելքը իրենց էութիւնը կը թափանցէ, և ահա ամփոփելու, հանգիստ մտնելու հրաման կ՚առնուն։

Հլու հպատակք, որոնց հնազանդութեան պարկեշտ ընթացքէն՝ բուսական բնական ժամանչափը կը յառաջագայի։

Երևոյթ զբօսանաց հետաքննին դիտողի մը, որ նորօրինակ զուարճութեան ախորժ կը զգայ, դիտելով ինչպէս այն համեստ բուսականք մէկմէկու ետևէ արևուն անցքը խայտալով կը բարևեն, և անմիջապէս ինչպէս անոր ակնարկութեանը հպատակելով՝ պարկեշտաբար կ՚ամփոփուին։

Բայց հազիւ թէ արևը կ՚անհետանայ և մութը կը կոխէ, և ամենայն աղմկալից ձայն կը դադրի, լուսինը՝ գրեթէ լրացեալ իբր լուսազգեստ հարս մը հորիզոնէն կը բարձրանայ, որուն երևելուն կը սպասէ կարծես թէ գիշերային բուսականը, որ բաժակը անոր փայլից ցօղին բանալով՝ արշաւանքը ողջունէ։

Մերձեցիր որ զգաս անոր լռելեայն գոհութիւնը։

Ահա իբր բուրվառ անուշաբոյր իր էութեան երախայրիքը դէպ 'ի անոր կ՚արձակէ, ուստի կ՚ելլէ առ այն՝ որմէ ամենայն կը բղխէ։

Նշան առատաւոր, որուն անուշահոտ ձայնին կը հնազանդի գիշերային շարժուն էակն ալ, ու կը փութայ անոր անշարժ միայնութիւնը մխիթարելու։

Գեղեցիկ օրինաց ներդաշնակութիւն, որ գիշեր ու ցորեկ առ հասարակ և՛ այլապէս զուարճութեամբք կը լիացնեն։

Գ

Աշնանային զովութիւնը գիշերուան երկնից յստակ պայծառութիւն մը կուտայ, որուն զուարթ փայլունութիւնը ախորժելի երևոյթ մը կը սփռէ ստուերացեալ առարկայից վրայ։ Այսպիսի գիշերուան մը (1862) գեղեցկութեանց հանդիսատես եղեր էի. բայց բազմատանջ ցորեկուան մը աշխատութիւնը զիս 'ի հանգիստ կը հրաւիրէր։

Լռելեայն՝ ընթացքս դէպ 'ի սենեակս կ՚ուղղէի, երբ լուսաւորեալ սրահէ մը անցնելով՝ ճերմակ որմին վրայ սևադէմ շարժուն էակ մը նշմարեցի։

Արդէն խոնջ մարմինս թմրութեան կ՚իյնար, և անանկ մը կ՚երևնար ինծի, ինչպէս թէ ամենայն շարժուն ընչաւոր՝ անշարժութեամբ կը լռէր։

Սուտ պատրանք։

Այն սևադէմ էակին վրայ ուշադրութիւնս արթնցաւ. մօտեցայ զգուշութեամբ որ այն էակին ինչ ըլլալը տեսնեմ։ Կը վախնայի չըլլայ թէ մերձաւորութիւնս զինքը խրտեցնէ. ուստի և ամենայն զգուշութեամբ կարճատես աչքս մերձեցուցի այնչափ՝ որչափ կարող էի աղէկ տեսնել։

Զգա՞ց արդեօք էակը. հասկըցա՞ւ որ մերձեցողը թշնամի մը չէր. իրականը չեմ գիտեր։ Սակայն այս ստոյգ է որ առանց փախստեան շարժմունք մը ընելու՝ թաթիկները ամփոփելով՝ անշարժ կեցաւ։ Անանկ մը կ՚երևնար որ զիս կը դիտէր. և վարանեալ մտօք ինքնիրեն կը հարցնէր. «Է՞, չէ՞ արդեօք թշնամի մը»։ Այդ տարակուսանաց զգուշութիւնը բնական է ամեն էակի. հազիւ թէ խիթալի էակ մը դիմացը ներկայանայ, իսկոյն նոյն այս հարցու-

մը ինքնիրեն կ'ընէ. և աչքը անոր վրայ անկած՝ շարժմունքները կը դիտէ, որ եթէ կասկածելի հարուած մը գուշակէ, կարող ըլլայ ժամանակին դարմանը տանելու։

Այսպէս իմ էակս ալ. տարակուսանաց դիտողութեան մէջ՝ կեցաւ անշարժ, և ինծի ժամանակ տուաւ զինքը դիտելու։

Դիտեցի, տեսայ սարդ մը սևադէմ, վայրենի երևոյթով, երկայնաբազուկ, բազմոտանի, անգլուխ կամ թէ բոլորովին գլուխ և որովայն, խոշոր՝ որչափ հարիւրորդամեդր։ փոխադարձաբար մէկզմէկ կը դիտէինք. բայց ինչ տարբեր զգացմանց թարգման էր սրտերնիս. իմ զննութեանս դիտմունքը հետաքրքրութեան մը յագուրդ տալն էր. բայց անորը՝ ով կրնայ զուրցել ինչ ահուդողով պատած էր։

Դ.

Դիտելու գրօսանքը բաւական չսեպեցի. նոր մտածութիւն մը միտքս ինկաւ. կրնայի զայն մասնաւոր գրօսանք մը ընել ինծի. կրնայի երկայն երկայն և առանձին դիտողութեամբ անոր բընաւորութիւնն ու կեանքը դիտել։ Կրնար աղէկ գրօսանք մը ըլլալ ինծի քըննելը՝ թէ ինչու համար գիշերային հանգիստը արհամարհելով՝ մթին մէջ աստանդական թափառելու ելեր էր։

Այդ մտածութիւնը ախորժելի կուգար ինծի. բայց ինչպէս կրնայի անանկ վայրենի էակ մը ձեռք բերել, որուն երևոյթը միայն խորշումն կը բերէ, և որուն թոյնին և վնասիչ հակամիտութեանցը վրայօք, կերպ կերպ երկիւղալի պատմութիւններ կարդացեր էի։

Գաւաթ մը՝ մէկ հատիկ ապահով միջոց մըն էր. բայց այն ալ հեռու տեղ փնտռելու էր. կը վախնայի չըլլայ թէ հեռացած ժամանակս այն սևամորթ արարածը միւս կողմէն թաթիկներուն արագութեամբը ինքզինքը յանձնէր։ Զայն կորանցնելու մտածութիւնը ինձ ծանր կուգար և սիրտս թեթև մը կը նեղէր։

Բայց ճար չկար. հարկ էր վերջապէս աճապարել գաւաթը բերելու. բարեբաղդաբար անձնամատոյց պահապան մը ինծի թիկունք հասաւ անոր շարժմանց դիտող ըլլալու։

Գնացի, մանաւանդ թէ թռայ. և երբ գաւաթիկով դարձայ՝ ուրախութեամբ տեսայ որ սարդը տեղէն չէր շարժած։

Գաւաթիկով ծածկեցի և անոր շըրթունքը պատին վրայէն քաշելով՝ թեթև մը թաթերուն դպայ։

Այն շօշափման զգացմանը խեղճին էութիւնը գլխովին խառնվեցաւ. թաթիկները թուլացան, ինկաւ ողջոյն ծանրութեամբը գաւաթիկին մէջ. մեռածի դիակ մըն է կ'ըսէիր։

Սուտ խաբէութիւն. քանի մը մանրերկրորդ անց այն դիակի երևոյթը։ Շարժեցաւ յանկարծակի. բազուկները երկնցուց, սկսաւ քալել, սկսաւ շտապաւ շարժիլ. խիթալի փորձանքէ մը անձը ճողոպրելու հնարքը գտնալ կ'աշխատէր. ծակ մը, անցք մը կը փնտռէր՝ ուսկից ելլէ փախչի։

Անօգուտ ջանք. սպիտակ թուղթ մը՝ պատշաճապէս գաւաթիկին շրթունքները շօշափելով՝ ամենայն անցք արգիլած էր։ Բայց որովհետև ամեն գին թափանցիկ կը տեսնէր, կը յարձկէր դէպ 'ի գաւաթիկին կողերը, յուսալով ելլալ անցնիլ երթալ։

Անշուշտ իր պզտի մտածութեանը մէջ այն ամփոփ ասպարէզը կախարդական թակարդ մը կ'երևնար. կը տեսնէր միջոց ընդարձակ. դէպ այն կ'արշաւէր. այլ գաւաթիկին թափանցիկ կողերը՝ իբր անծանօթ զօրութիւն մը՝ զինքը մի և նոյն միջոցի մէջ արգելական կը բռնէին։

Որչափ զիղջ զգաց արդեօք այն վայրկեանը իր բոյնը թողուցած ըլլալուն։ Իր տխրադէմ կերպարանքին վրայ կարծես թէ նոյնը կը կարդայի. կարծես թէ կ'անիծէր այն ժամանակը՝ որ անխորհրդաբար դիպուածական գրօսանաց հետամուտ ըլլալու ելեր էր։

Անոր տագնապը տեսնելով՝ չկրցայ վշտակցութիւնս բանել։ — «Մի վախնար, ըսի, էակ յողդողդ. քեզի վնաս մը չեմ հասցներ. մանաւանդ թէ քեզի ընկեր կ'ըլլամ ու բարեկամ։ Հանգիստ հանդարտէ. կերակրիկդ ժամանակին կը հասնի. ալ մի վախնար անօթութեան տառապանքէն. երկիւղ մ'ունենար թշնամեացդ ձեռքը իյնալու. ես պաշտպան ու թիկունք եմ քեզի»։

Ես հակիւ թէ խօսքս լմնցուցի ու կերպարանքը նայեցայ որ հանդարտած՝ խաժոռ դիմօք ինծի կը նայէր, այսպէս իմաստասիրեցի իր պատասխանը։

— «Ինծի հանգիստ կը խոստանաս, ինծի ապահովութիւն. իմ ազատութիւնս ինծի դարձուր. այն գանձը ինծի բաւական է. բիւր բարեաց հետ չեմ փոխեր. քեզի հանգիստը, քեզի պահէ անյագ վայելքը. բայց միայն ազատութիւնս ինծի դարձուր. թող առվարեկ տանջուիմ, քաղցրագոյն է քան զգարարտ ստրկութիւնը. վտանգեալ մեռնիմ, բայց ազատ ինքնիշխանութեանս մէջ»։

Ասանկ արդար ձայնի մը թերևս իրաւունք ընէի եթէ մասնաւոր ախորժելի հետաքրքրութեան մը խայթը՝ արդարութեան մը զգացմունքը չխաւարեցներ։ — «Անիրաւութիւնը, ըսի մըտքովս, ողորմելի էակի մը կ'ընեմ, որ արհամարհ սեպուած է և վնասաբեր. այս չարիքս ալ ազատութիւն մը խափանելու վրայ կայացեալ է։ Միւս կողմանէ որո՞ւն պիտոր բողոքէ. իրաւունքը միշտ իմս է, ըստ որում աւելի զօրաւոր»։...

Ըսի, և առանց միտքս ուրիշ մտածութեան զբաղեցնելու, բերի զայն սենեակս, ու գրասեղանիս պատուականագոյն տեղը իրեն սեփականեցի։ Հոն պիտոր անցնէր իր սակաւատև կենաց մնացած օրերը. արդեօք որչափ ժամանակ պիտոր երկարաձգէր իր կենաց թելը։ Անոր պատասխանը ժամանակը պիտոր տար։

## Ե

Չեմ գիտեր ինչպէս յանկարծակի ինքզինքս երազոց աշխարհքը գտայ. և երբ աչուըններս սենեակս բացի, լռութիւնը տիրած էր չորս դիս. միայն դրսէն թռչնոց զուարթ ձայները կը լսէի։ Միտքս սարդը ինկաւ ու հետաքրքրութեամբ մօտեցայ տեսնելու թէ ինչ կ'ընէ։ Խեղճը խռովեալ գիշեր մը անցուցեր էր, ինչպէս գուշակել կուտար ինծի գերութեան առջի ժամանակին կրած տագնապը. յետ ամեն դին գլուխը զարնելէն, հասկցեր էր որ ազատութիւնը վերցուած էր իրմէն. ուստի և իբր յուսահատ մէկդի քաշուած հանդարտած էր՝ ամփոփ թաթիկներով։ Շարժեցի՝ որ կերպարանքը տեսնեմ. ելաւ, սկսաւ մեծաքայլ արշաւել, նորէն փախուստ մը փնտռելով։

Գլուխը կը փնտռէի. դժուարին խնդիր։ Այս էակներս միջատաց չեն նմանիր որ ըսես, ահա գլուխը, ահա լանջքը և ահա որովայնը։ Բոլոր բոլոր երկու մաս կը բաժնուի իրենց մարմինը. մէկը լանջք կամ գլուխ ըսէ, միւսը որովայն, որ է մեծագոյն մասն մարմնոյն։ Բայց ոչ թէ ամենևին գլուխ չունին, այլ այնպէս միացած է կրծոց հետ, որ կարելի չէ դրսէն մէկ հայեցուածքով ըսել, ահա այս է այն կէտը որ գլուխը լանջքէն կը բաժնէ։

Եթէ կ'ուզես գլուխը գտնալ, աչուըները գտիր. այն քեզի անսխալ առաջնորդ կ'ըլլայ։

Կը գիտէի ես ալ որ աչուըները գտնեմ. դժուարին բան. այն սևադէմ էակին վրայ քանի մը սև կէտեր տեսնել, և այն ալ գաւաթի մը տակէն և առանց գործիքի, դիւրին բան չէր. մանաւանդ որ սարդն ալ անհանդարտ՝ տագնապեալ շարժմունքներով՝ աստին անդին կը տատանէր։ — «Առ ժամս այս խընդիրը լաւագոյն առթի մը թողում, ըսի միտքովս, և գլխաւորը հոգամ, որ է էակիս նախաճաշը»։ —

Անմիջապէս ճանճ մը գաւաթիկին

Գաղտնիք են մեծ՝ լայնել ըղմիտս, ընկճել զիղձ,
Զոր խաժամուժն անգիտանայ զըլխովին։
Դու գիտես զայն. որ զերջանիկդ այդ անկիւն
Դընես պատուար սիրոյդ, թերմանց, վայելից։
Զեղանեն իղձքդ անդր ըստ գեղջուկ քո սահման,
Սակայն քո միտք լայնածաւալ եւս պարզին.
Բովանդակեալ զաշխարհ համայն,
Ջահն իմաստից տայ լոյս մըտացըդ բանին։

Առ Տիբերի եւ Նիլոսի, Գանգիսի
Նկատես զի յար, ընդ բնաւս, ի դէմս այլազան,
Մարդն է միշտ մարդ. ընդ տիեզերս՝ ամենայն
Գընայ յանշարժ օրէնս, ոչինչ փոփոխի.
Նկատես զի ազգք՝ մի առ միով պակասին,
Որպէս զաստեղս յերկնից կայան.
Զեռւաց ի ձեռս փոխի մական.
Ազգք զիւրեանց դար, մարդիկ զիւրեանց օր ունին։

Ընդ օրինօքըս գերունակ
Վարին ի թեւս ժամանակին
Գիտութիւն, փառք, ազատութիւն.
Զաստուածս ինքնին եղծ ժամանակ
Դիւրահաւան նախնի ազանց.
Եւ զոր ըստ չափն հըպարտացեալ մարդկան ազգ,
Ճըշմարտութիւն կարդալ իշխեաց։

Ի մեծատարր այս մէգ ամպոյ,
Զինչ ինչ առնել է իմաստոյ,
Ցար տատանեալ ընդ տարակոյս եւ պատիր.
Շատ են նըմա յանցս անդ քաղեալ աւուրք խուն,
Զորս յիւրն ի բաստ եւ յուղղութիւն
Փութայ ածել նա ի կիր։

Զայդ երջանիկ եւ զիմաստուն ես տեսի,
Եւ հիւր իւրոյն եղէ յարկաց.
Ի հովանիս նա ձեռատունկ բուսակաց
Դիւրէր ըղժամս յանոյշ գաշնակ քընարի,
Նըւագելով զիւր բաստ կենաց։

Գութ քեզ արկցեն, Տէր, ձայնք սըրտին երախտեաց։
Ըզքեզ չառնէ աշխատ յաղերս սընոտի.
Միայն պահեա նըմին զանչուքն ըստացուած.

Ո՛ւմ նուագ խընդրէն՝ տուր զամենայն լիուլի ։

Իւր սիրելեացն անոյշ դասակ
Ցանդ առեալ պար զիւրեւ ի յարկսն հըրճուանաց ,
Հարսն եւ մանկունք զալեօքն հիւսեն Թող պըսակ ,
Ձերդ ծառ հասուն պըտղովքն համայն փառազգեաց .
Բլուրք իւր հասկօք խարտիշագեղ պըճնեցին .
Որ տու ժայռին իւրով լըճակ՝ լեցի վճիտ .
Սիրուն յասմիկք խիտ հովանեօք Թանձրացին .
Արեւ իւր հեշտ , երկին կապոյտ պարզեալ միշտ .
Ծորանք գինեացն հասունացին վասն եկին ։

Իսկ ես հեռի յայս երջանիկ դադարաց ,
Ո՛հ , դիմագրաւ դեռ մըրըրկաց եւ ալեաց ,
Ցարըռուն տիոց գընամ վարեալ , ի յուսոյ .
Սակայն ծըփեալ յալիս եւ խոնջ ի հողմոց ,
Գամ , բարեկամ , ցանգ յերեկոյ ,
Առ ոտս անկոխ ժայռիցըդ քոց
Ձիմ ըղձաւակն առ ի կապել յափունս քոյ ։

ԼԱՄԱՐԴԻՆ

ԹԱՐԳՄ. Հ. Ս. ԿԵՍԱՐԵԱՆ.



## ՃԱՆԱՊԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

### ԶՈՒԻԱՐ ՃԻՒՑԷՐՃԻ ՕՂԼՈՒ ՔԱՀԱՆԱՅԻ

(Տես երես 114)

**Այսուհետեւ պատմութիւնք Ս. Յ. Մկրտչի անապատն և փիլիպպոսի աղբիւրն ։**

Թվին հազար հարիւր վաթսունը մէկ, ապրիլ ամսոյ մէկ, պատկեր աւուր երեքշաբթի, ժողովեալ բազում ընտանեօք, և գնալ կամիլք 'ի յանապատ, մինչև երեք հարիւր հոգի. հեծաք ձի և ջորի և աւանակ. եկաք 'ի հայր Աբրահամու դռնէն, դէպ 'ի պիւրքէն. անդ միաբանեցաք. մինչև ընտաւորաց յետքն առաք և կարօղութեամբն Աստուծոյ ուղի անկեալ գնացաք. յուսալով Աստուած և 'ի սուրբ կնքահայրն նորա Յովհաննէս Մկրտիչ ։ Ձախ կողմն Սիմէոնի ծերունիին տունն. որ բլուր մ'է նման Ղըզզըլէին. և աստ ննջեաց Աբիմելեք[1] տարի ։ Եւ անտի շատ յառաջ գնաս՝ աջ կողմն բարձր գիւղ մի Միլքիէ անուն. որ աղն անդ ելանէ, չէն գիւղ մի. շատ յառաջ գնաս դար և փոս. և 'ի ճանապարհին երկու կողմն ցորեան. և 'ի յատակ լեառն պուհուրմէյրէմ, իբրև նման խոտոյ է բուսեալ. որ այնչափ ուխտաւորքն փունջ փունջ 'ի ձեռին ունելով, ոմանք 'ի գլուխն և ոմանք 'ի կուրծքն. տես Թէ որչափ շատ կու բուսնի. այլ յառաջ գնալն մեր տեսաք որ երկու կողմն կեւլլիւկ, այգու նման վարդենիք սիրուն, և 'ի միջէն ճանապարհ ։ Ի յաւարտ վարդենեաց կայ աղբիւր մի որ Հայոց աղբիւր կոչի. պատճառ ունի. զի ժամա-

1 Քանէն՝ պակաս ։

նակաւ տեղն այն և վարդենիքն՝ Հայոց ձեռքն է եղեր, թողլ տալով յետոյ Ֆէլլահն զապտ կ'անէ. նորա համար Հայոց աղբիւր կոչի. և կայ անդ մեծ մերմէր սիւն մի. և սորայ ջուրն այնչափ շահու չէ։ Անցանես գնա, գնաս ուղիղ մինչև 'ի փիլիպպոս առաքելոյն աղբիւրն. բարձր տեղ. երկու կողմն խոշոր քար և մէջ պեղ փոս. և 'ի վերոյն սէթ. երկու կողմն մէկմէկ մարդ նստի. մէջ տեղն տափակ լայն որ կու գայ ջուրն քարին տըկէն. և բազում եղբայրք մկրտեցի անուշահամ ջրով. զիրա առաքեալն փիլիպպոս զներքինին աստ մկրտեաց. խմելով չես զովանար. և չորս կողմն սիրուն ծառեր. առաջևն նեղ ճանապարհ մի առու, որ անդէն երթայ ջուրն ուր և կամի. բայց երկու կողմն բարձր և մէյտան սէթ, որ հոն ցանեն զտոխն և զամենայն զաւզան այն ջրովն է՝ որ այն կողմն շինէ։ Եւ իջանէս ջրին գնացքով 'ի ծար ելնես. ձախ կողմն ճըկես դարն 'ի վեր, դիմացն գիւղ մի կայ որ անունն Պէճելէ կոչի։ Է՛յ եղբայր, 'ի մեր անցանելն անտի Ֆէլլահնի մեծ և փոքր այր և կին ծեր և տղայ՝ տանիսներ շարուեր զմեզ թամաշա կ'անեն. և գիւղին մէջն կայ եւս մեծ ջուր մի որ անով կու պարծենան. իրաւի որ անկէ շէն գիւղ չի տեսանք։ Եւ ըխտաւորք զաթար զաթար կու ելանեն 'ի վեր որ գնալոց եմք անապատ. դուր տեղ մի, անդ մէկ քիչ նստաք որ ժողովուրդն ամենքեան հաւաքին. յետ նորա գնացաք շատ յառաջ և իջաք 'ի ձորացն. զիրա մարդ դժուար կու իջանէ դարի վայր. մէկ չէյրէկի չափ դէպ 'ի վայր իջաք, պէլքի կէս սահաթ. յետ նորա հեծաք ահա կու գնամք։ Ցեսանես զՖէլլահներն մէկ մէկ փարայ ղաֆարի համար զլուխ կու տան. մէկն կ'առնէ միւսն եւս կ'ուզէ. հազիւ տոցա ձեռացն ազատեցաք, և տուաք զձիերն 'ի տէրն իւր, և մեք եայեան ուղի անկեալ գնացաք 'ի յանապատ. որ անդ ճգնեալ [1] քանոնիկը տարի. և կայ անդ ջուր մի որ լեռան մէջէն կու գայ. և կայ առաջևն հավուզ մի քարէ. նա այլ 'ի միջի լեռանն է. եղբայրք, անչափ ծարվեր են որ մէկ մէկի նօպէթ չեն 'ի տար. հազիւ թէ թաս մի ջուր խմեցի։ Եւ սորայ կից է լեռն, երեսն քար ապառաժ, նեղ բարձր, ելանողն միւսին ձեռքն պիտի բռնէ. և փոքր ծակ մի, անտի մտանեն ներս. և վառեն մոմ և խունկ ծխեն. և ասեն շարական Արեգականն արդարութեան. թէ կամի վերի մարդն վար իջնի՝ և վարինն 'ի վեր ելանէ՝ ոչ կարէ, քանզի նեղ է։ Իշտէ, այն տեղն տես զշամաթայն. որ ուժով է՝ կու ելանէ, և որն տկար է՝ կու աղերսէ. և կ'առնէ մէջն ութսուն հոգի սըխ որ լինայ։ Եւ աջ կողմն ունի մեծ պատուհան մի, առաջևն բաց. և կայ սորայ դէմ գիւղ մի որ կոչի Յուպա. և ժողովեն զաջամ պուրն. և գնան շուտով ուր զտավարնին թողին. և հեծնող հեծնողին կու լինայ, գնան դէպ 'ի Յօհաննու ծընունդն։ Աջ կողմն մօտ է Ծննդեան, բարձր տեղ, անդ է պատառեալ վէմն՝ որ Եղիսաբեթ առեալ զՅօհաննէս և փախեալ, և դահիճքն մօտ եղեն և կամէին հասանել, և վէմն այն պատառեցաւ և էառ զմայրն և զմանուկն 'ի ներս։ Կայ այժմուս փոքր մատուռայ մի և սեղան, և 'ի միջէն կայ ճանապարհ. վարէն մտաք և անտի 'ի վեր ելաք քըսանըրեօթը ոտք մէրտիվէն. այս տեղս Հայոց ձեռքն է. և իջաք անտի 'ի վայր. կայ աղբիւր և սիրուն չայիրըլըխ մի, և ծառեր բազում. և գնաս դէպ 'ի Ծընունդ. և տեսանես զբուռն ժողովեալ Ֆէլլահներն, որ ինչ զատեր է մարդ անցանէ առանց ղաֆարի. եօթն եօթն փարան տուր և մուտ 'ի ներս. վանքոյ միաբանքն չի տար, և մէկայլ կարգաւորք չեն իտար. շատ մարդ եօթն փարայի համար միաբան եղև այսօր. հէլէ հազիւ ներս մտաք։ Կայ անդ հինգ զատէմէ մէրտիվէն. կու ելանես 'ի վեր. կայ փոքր դուռ մի և ներս մտանես. աջ կողմն մեծ օտայ մի մէյտան, որ անդ եղեալ են ուֆտիա տէֆթէս. և ձախ

1 Յովհաննէս Մկրտիչն։

կողմն դուռ մի, փոքր օտայ, և քովն ես կայ դուռ մի որ Հարեղաթայն կու ելանէ և վերնատունն: Եւ աստ կայ եկեղեցնայ փոքր դուռն. մտանես ներս եկեղեցին. չէն և պայծառ. սակաւ մի պատմեմք զաս եղեալն: Երկայնութիւնն երեսունըմէկ ատըմ և լայնութիւնն քսանուիրեք ատըմ. և ունի քէմէր ինը. և կայ չորս սիւն նման սուրբ Յակոբայ, և մեծ զուպպէ մի. և բոլորն ութը խաչոր փէնճէրէ ճամով, ամէն փէնճէրէին մէջ երկերկու կապուտ ճամ. և զուպպէին մէջ տեղն մեծ ջահ մի կախեալ. և աւագ խորանին առջևն չորս դատէմէ. երկայնութիւնն քսանուիրեք ոտք, լայնութիւնն տասուերկու ոտք. 'ի ձախ կողմն խորան մի և դուրս երկու կողմն երկու խորան փոքր. և աջ կողմն ծնունդն սուրբ Յօհաննու է, եօթը աստիճան, երկայնութիւնն տաս ոտք լայնութիւնն քսան ոտք. իջանես 'ի վարի զէմինն[1], եօթը ատըմ միւտէպէր. և զուպպէն զէրպապով զարդարեալ. և երկու կանդեղ աստ կու վառի. և Ծննդեան տեղն առաջևն կայ ինը թիզ և ճակատն վեց թիզ. և մէջ տեղն կարմիր սումախի միւտէպէր երկու ռուպի, և սորայ բոլորն մէրմէր ճաճանչ ցածով բարձով, չորս թիզ միւտէպէր. և կայ բոլորն հինգ պատկեր. հինգ խան է, մէկն Մկրտութեանն, միւսն Զաքարիայ քահանայապետին համր լինելն. միւսն սուրբ Աստուածածին յորժամ գնաց առ Եղիսաբեթ ողջոյն ետ, և յորժամ լուաւ զողջոյնն՝ խաղաց ցնծալով մանուկն յորովայնին. չորրորդումն ծնունդն Յօհաննու, հինգումն տէվրիշութիւնն[2]. և այս պատկերներուն վերայ մէկ մէկ սերովբէ ճերմակ մէրմէրէն. և մէկ մէկ կանդեղ կախեալ կայ 'ի շրթանցն սերովբէից. և ծնած տեղացն վերայ ճաճանչ մի այլ կայ կախեալ. և ունի վերան սեղան մի ոսկէզօծ և տիպակով զարդարեալ. և կայ մէկ կանդեղ մի կախեալ հիւսիսային կողմն.

1 Գետին:
2 Ճգնիլն յանապատի:

մէջ տեղն կայ խորան մի և վերան ունի պատկեր մի, գլխոյն Հեղինէ որ գլխաչափայտն մի կողմն ըմբռնեալ և թագն 'ի գլուխն, և ամենայն խորհուրդն ընդ նմա: Եւ յետոյն եկեղեցւոյն կայ փոս տեղ մի երեք քօշէ երեք դատէմէ, և դուռ մի փակեալ և երեք պատուհան. և հարաւային կողմն կայ դուռ մի, սաես կու ելանէ հարեղաթայն և վերնատունն. և կայ կախեալ 'ի մէջն զանազան գոյնզգոյն պատկեր երեսուն հատ, բարակ բան. և տօշէմէն անչափ փաք, ոչ մէրմէր է և ոչ քիւֆէքէ է, ոչ կանանչ է և ոչ դեղին է, նմանի մխլատրղ քար որ փայլէ: Եւ այպքան առայս սուրբ Յօհաննու:

Եւ յետ նորա հեծաք 'ի ձիանն և դարձաք 'ի մեր ճանապարհն և եկեալ հասաք 'ի խաչավանքն. և տուաք ըղձիեանին 'ի տէրն, և մտանք ներս: Բարձր հռչակաւոր, Կիւռճի թագաւորին շէնքն է, որ այժմուս Հոռմոց ձեռքն է. պատկերք կերպիւ կերպիւ, և գետնի տօշէմէն մանտր չորս քօշէ քարէն շինեալ գոյնզգոյն. ոմանց վերայ արադիլ է շինած և ոմանց վերայ արծիւ և ոմանց վերայ սիրամարգ. երկու կողմն աթոռ շարեալ. և աւագ խորանին առաջև երեք տեղ, երեք երեքական դատէմէ բոլոր մէրմէր: Եղբայր, թէ հարցանես, մէրմէր այլ չէ, թիւրլի մի քար է՝ որ իսկի Ստամպօլ չեմք տեսեր. և յետոյն խորան կազմեալ մեծ. և խորանին յետոյն ունի լայն տեղ մի և անդ կայ պատուհան մի. որ սուրբ խաչն անդ են եդեալ, և վերան կղպեալ. և յորժամ յառաջն գնացաք, որ գիշեր մի անդ մնացաք՝ նոյն ժամանակն հանեալ տուաք. և խաչահանգիստ արարաք. ապա այժմուս խիստ ղալապալըխ էր: Ունի վերնատունն տանիս մեծ և բարձր. օտաներ կերպիւ կերպիւ, մեզի արած ըռայէթն իսկի չէ եղեր. զիրա ըռէիզն չէհիր օղլանի է, զուռումճի էր Ստամպօլ. Սամաթեացի չէլէպուն հետ կու նստէր. 'ի տեսանելն զմեզ յոյժ ուրախացաւ. բազում ուրախութիւն արարաք. և տնտեսն

Ըլանկայ[1] պալատ եղբայր ունի. նա ևս տեսանելն զմեզ յոյժ ուրախացաւ. և է անուն տնտեսին Եօրկոյ. և ընկերին անունն[2]։ Գիշեր մի պառկեցաք, երկու գառ կերանք. և առաւօտն տօշկին մէջն եբեր զըախին[3] և հանդերձ մէզէով. իջաք 'ի վայր ուխտ արաք. և անտի կամեցանք գնալ 'ի վանքն։ Նա տեսանելով էջ մի պատրաստեալ և հեծայ. մի կողմն վանից Եռաախճին. և միւս կողմն վանից Ցէյլահն մինչև 'ի պիւրքէն բերին. և ես նոցա փարայ ետու պախշիշ. նոքա ուրախութեամբ գնացին իւրեանց վանքն. և մեք նստաք Անարծաթի քով զէյթունի ծառի մի ներքոյ. ունէաք խուչան ըմպիլթ, զայն ևս հոն խմեցաք. և ապա բերկրութեամբ եկաք 'ի սուրբ Յակոբ, որ այս օրս ըխտաւորք 'ի Բեթանիայ գնացեալ էին։ Այսքան։

Կը շարունակուի։

---

## Անցեալ տարուան Աշխարհահանդէսը

Եթէ ներկայ դարս ալ իր հանդէսներն ու յիշատակներն ունի որոնք յազգաց յազգս պիտի չմոռցուին՝ իրենց իբրև կոթող և արձան մնայ ձգած կառուցմունքներովը, անշուշտ ենք որ ասոնց մէջ գլխաւորներէն մէկն ալ է անցեալ տարուան Աշխարհահանդէսը, որուն վրայ իբրև նոր և զարմանալի բան մը միշտ կրնայ խօսուիլ ու պիտի խօսուի։ Եւ եթէ մենք հիմա հնոց բաւիղներուն, բուրգերուն և կոլոսէոններուն վրայ կը սքանչանանք, ոչ արդեօք մեր ապագայիցը մեծաց զարմանաց հետ



Ընդհանուր յատակագիծ Աշխարհահանդիսին։

մեծագոյն գովեստից և շնորհակալութեանց նիւթ պիտի ըլլան, ինչպէս դարուս հսկայաքերձ գրահապատ շոգեշարժ նաւերը, և շոգեկառաց մեծաշէն և հոյակապ կայարանները, և ուռկանաձև աշխարհածիր երկաթեայ ուղիները, — որովք հին և նոր աշխարհքները գրեթէ անանջրպետ իրարու հետ միացած կը սեպուին, և օրըստօրէ հաղորդականութեան դիւրութեամբ բանուէ բանա նոր երկիրք և ժողովուրդք՝ նոր ստացուածք կ'ըլլան մարդկութեան և

1 Վլանկա։
2 Գրուած չէ։
3 Րագը, օղի։



Նախադրունք Աշխարհահանդիսին[1] ։

իրեն քաղաքակրթութեանը .— Նոյնպէս նաև հաւասարապէս աշխարհահանդիսից ամբարտակ պալատներն ալ, բովանդակ մարդկութեան արուեստից և ճարտարութեանց դարագլխին ներկայ-

1 Երրորդ և չորրորդ պատկերներուն տակ միջոց չմնալով ներկայացուցած տեսարաններին գրով ծանօթացնելու, կ'իմացնենք հոս որ անոնցմէ առաջինն է ծաղկանց պարտէզին կամ Բուրաստանին մէկ մասը, և երկրորդը՝ Աւազան ձկանց և անկոց նոյն Բուրաստանին մէջ։

ացուցիչն ու յիշեցուցիչն ըլլալով. այնպիսի խրախուսանաց և օգտակարագոյն միջոցի մը՝ որով հանճարք և տաղանդք իրենց կապանաց ամենայն սանձերը թօթափելով, յառաջադիմութեան ընթացից քայլերնին կարծես թէ իրենց մեքենայից շարժմանցն համեմատ կ'երագեն։

Իրաւցնէ՝ բովանդակ աշխարհս ըստ էական ամենայն յատկութեանցը կեդրոնացնել 'ի Բարիզ, ներկայ և հին դարուց ամենայն ճարտարութեանց ու արուեստից արդիւնքը 'ի տեսիլ ածել, ամենայն ազգաց և ժողովրդոց բարուցն ու սովորութիւցը ճշգրիտ գաղափարը տալ, ըստ տանց կահ կարասեաց և բընակութեան կերպի, ըստ հանդերձեղինաց, կերակրեղինաց[1] և այլն և այլն, ամենայն տեղեաց բնութիւնն իսկ կերպարանել. և համառօտ՝ զաշխարհ փոքրկացնել գոգցես իմն 'ի միջոցի, կամ թէ միայն անոր գիտութեան և տեսութեան արժանաւոր և գեղեցիկ մասերը 'ի մի վայր բերել կուտել մեծաւ կարգաւորութեամբ և ախորժով՝ ամենամեծ և ամենաօգտակար գործ մի էր, և միանգամայն այնպիսի հրաշալի մտածութիւն մը՝ որ քիչ ատենի մէջ գըլուխ հանուելով՝ թերևս միայն գաղղիական ազգին և Նաբոլէոն Գ կայսեր գահակալութեան ժամանակին վերապահեալ։

Մենք՝ ինչպէս նաև ազգային այլ և այլ օրագիրք ու լրագիրք, ըստ արժան բաւականին խօսած ըլլալով այսպիսի վեհ և շահաւէտ ձեռնարկութեան մը սկզբնաւորութեանը ու յաջողութեանը վրայ, և չուզելով կրկնաբանութեամբ մեր ընթերցողները ձանձրացունել, մըտածեցինք այս անգամ մէկ քանի այսպիսի սուղ տեսութեամբք այն մեծակերտ շինուածոյն քանի մը գլխաւոր կտորներուն պատկերները օրագրիս մէջ դնել, վերջին անգամ ազդու տպաւորութեամբ մը յիշեցնելու համար այն աշխարհահանդիսին զարմանալիքը, որ անհամեմատ առաւելութեամբ գերազանցեց և դրեթէ մոռցընել ալ տուաւ իրեն ամենայն նախընթացները. և մանաւանդ կրկնապատիկ յիշատակաց իրաւունք ունեցաւ, Եւրոպայի գրեթէ ամենայն առաջին կարգի կայսերաց և թագաւորաց գլխաւորապէս այս վախճանաւ Գաղղիոյ մայրաքաղաքը ըրած այցելութեամբը. որոնցմէ ոմանց վրայ մեծամեծ օգտակար ազդեցութիւններ ալ եղան, ինչպէս վեհափառ Սուլդանին վերջերս շնորհած փափաքելի ազատութիւններէն կամ արտօնութիւններէն ալ կրնայ տեսնուիլ, որուն համար պէտք է շնորհակալ ըլլանք մեծապէս Սուլդան Ապտիւլ Ազիզի՝ իր հպատակաց կացութիւնը լաւցնելու համար ունեցած արթնամիտ և վեհանձն վարչութեանը հետ, նաև այնմ շարժիչ և առիթ եղողին։

Այս առթիւ կ'իմացնենք նաև ոչ 'ի պարծանս ինչ անձանց՝ այլ 'ի մեծ շընորհակալութիւն գաղղիական ազգին, որ ինչպէս մեր ազգէն գլխաւորապէս ՊՊ. Ապտուլլահեանց և ՊՊ. Տէոտէեանց գործատունները առանձինն առաջին կարգի միտալներով պսակեց, նոյնպէս նաև մեր տպագրատունն ալ՝ Նաբոլէոնի գործոյն Յուլիոս կեսարու վարուց թարգմանութեանն ու մաքուր տպագրութեանը համար՝ արժան դատեցաւ առաջին աստիճանի արծաթեայ միտալով վարձատրելու, անշուշտ խրախուսելու համար զկիսակենդան Արևելեայքս 'ի գործունէութիւն և 'ի կիրթ ընտիր ախորժակաց։

Փափաքելի էր մեզի նաև 'ի վերջէ գիտնալ ծանօթացնել եթէ քանի հազարաւոր կամ լաւ ևս միլիոնաւոր անձինք այցելուք եղան այս ճարտարութեան և գործունէութեան մեծահանճար ամբարանոցին, բայց կը ցաւինք որ մեզի ծանօթ օրագրաց ու լրագրաց մէջ այս նկատմամբ վիճակա-

1 Ըսածնուս ստուգութիւնը հաւաստելու համար թէ ինչպէս ամենայն ազգաց սովորութիւնքը մանր դիտողութեամբ բովանդակուած էին, յիշենք հոս որ Ցաճկաստանի ասիական մէկ մասին մէջ մշեցի հայ խոհարար մըն ալ կար, որ անդադար Բիլաֆ կ'եփէր և այցելուաց կը հրամցընէր։

դրական տեղեկութեան մը բնաւ չհանդիպեցանք, որ անշուշտ շատ հետաքրքրական կրնար ըլլալ նաև մեր ընթերցողաց։

---

Բա-տը-Քալէի վրայ կամուրջ մը։

Գիտի գայ ժամանակ, յորում մարդկային յանդգնութիւնը վախնալով մը կանգ առնէ. և կամ մեծագործութեան ոգին պիտի մարի արդեօք մարդուս սրտին մէջ։

Գիտութիւնը իր այս եռքի յիսնամեայ շրջանին մէջ այնպիսի հրաշալիքներ գործեց և այնպիսի անմահական հրաշակերտներ բարձրացուց, որոնք՝ կրնանք ըսել թէ անկարելւոյն գաղափարը ստարացուցին մեր մտաց առջևէն, և գրեթէ գրեթէ զմարդ ամենային կարող կ՚ուզեն կարծեցնել տալ։

Ամէկ եռքն ամէն տեսակ մտածութիւն, և ամէն տեսակ առաջարկութիւն կրնայ մարդս յղանալ և առաջարկել, առանց հասարակաց ծիծաղը շարժելու. և եթէ յետ մտադիր և գիտնական քննողութեանց անտեղի ալ համարուի՝ բայց ինկըրան ոչ ոք կը համարձակի չենք կրնար ըսել։ Դարը՝ որ երկաթուղին հնարեց, ելեքտրական հեռագրութիւն և լուսանկարը գտաւ, ինչու ատոնցմէ աւելի զարմանալիները և օգտակարները պիտի չստեղծէ։

Ներկայ մարդկութեան արարքը իր կարողութեան և հանճարոյն ապացոյցը և հաւաստիքն են։ Օրինակի համար կը տեսնէ Ափրիկիոյ և Ասիոյ մէջ ցամաքալեզու մը, և զանիկայ իւր շահուն և յառաջադիմութեան խափանիչ ճանչնալով, հրաման մը կը հանէ որ մէջտեղէն անհետ ըլլայ. և ահա մէկէն 'ի մէկ 3000 գործաւորք գործիները ձեռուըներնին առած կը պատռեն կը փլցնեն ցամաքալեզուն, և Միջերկրականին ջուրերը կ՚երթան կը խառնուին կարմիր ծովուն հետ։ Նոյն մարդկութիւնը կ՚ըսէ դարձեալ. Մինչև երբ Ալպերը Գաղղիան Իտալիայէն պիտի բաժնեն. ինչու ժայռերու լեռնակուտակ դէզ մը երկու ազգաց մէջ պատուար պիտի արձանանայ, որոնք կ՚ուզեն իրարու մերձենալ և իրարու ձեռք տալ. շատ ժամանակ չանցնիր և Մոն-Սընիի անդունդները կը սկսին սաստկակոծ ծեծուիլ, և քիչ ատենէն Թուրին շոգեկառքը Իտալիան Գաղղիոյ ստորոտը պիտի տանի։ Ասոնք ամենքը և ասոնցմէ շատ ուրիշներ ալ մարդկութեան զարմանալի մեծագործութիւններ են, որոնց մեծութեան, վսեմութեան և օգտակարութեան յիշատակները պիտի չեղծանին և պիտի չմոռցուին, մինչև որ ուրիշ գործեր՝ քան զառաջիններն աւելի վեհ և վսեմ, աւելի ճարտար, և աւելի օգտակար մարդկային ընկերութեան՝ առաջնոց վրայ քող մը չձգեն։

Կը թուի որ մարդիկ ալ իրենց բովանդակ կարողութեամբը այս բանս ճշգրտել կը ջանան. մոռնալ և մոռցնել տալ առաջինները, անոնց տեղ նորեր հնարելով, և հասարակաց զարմանքը և մտադրութիւնը ատոնց վրայ դարձընել տալով։ Այսպիսի մտածութեան մը արգասիք կրնանք համարիլ Գաղղիան Անգղիոյ հետ միացնելու առաջարկութիւնը. բայց թէ կրնա՞յ բաղդատուիլ այս՝ հեռագրութեան և երկաթուղային գիւտերուն հետ. — այնչափ՝ որչափ որ առաջնոց ստուգութիւնը և երկրորդին անստուգութիւնը կը թողու ընել այս բաղդատութիւնս. վասն զի բաղդատութեամբ առջի գիւտերուն կարևորագոյն ըլլալը ճանչնալու ատեն, երկրորդին ալ քան զանոնք մեծագործութեամբ գերազանցելը պէտք է ճանչնալ։

Ամենքը գիտեն որ Գաղղիան Անգղիոյ հետ միացնելու մտածութիւնը և նոյն իսկ առաջարկութիւնը նոր բան չէ, այլ յայնմ է նորութիւնը, որ հիմա առաջարկութեան կերպը փոխուած է։

Առաջին անգամ Գաղղիան Անգղիոյ հետ (Բա-տը-Քալէի նեղուցով) միացընելու մտածութիւնը հասարակաց ներկայացուց՝ իմաստնոց քննութեան տակ ձգելով զայն, Գ. Թոմէ Կամոն դաղ-

զիացի զինուորական ճարտարապետը 1857ին. և մտածութիւնն էր դըննել մը բանալ Բա–տը–Քալէի տակէն։ Ամեն մարդ կրնայ գուշակել, թէ որչափ խօսակցութեան նիւթ տուած պիտի ըլլայ այս առաջարկութիւնս ժողովրդեան ամեն աստիճանի մարդկանց, որչափ միտքերը բանեցուցած, և որչափ սիրտերը յուսոյ և տարակուսի մէջ ալէկոծած։

Ճարտարապետը վստահ իրեն մանրաքննին դիտողութեանցը և առաջարկութեան յաջողելուն վրայ, առաջարկեց նաև գործոյն գործադրութեան կարևոր դրամը, որ էր 70 միլիոն ֆրանգ։ Ան ատեն Գաղղիա խնդրոյն յարգ մը և արժէք մը տալով, մասնաժողով մը կազմեց, յանձնելով անոր որ Պ. Թոմէ կամոնի առաջարկութիւնը վերստին քննէ ըստ ամենայն մասանց, և յետոյ դըննելին կարելիութեան վրայ իր կարծիքները գրի վրայ առած իրեն ներկայացընէ։ Մասնաժողովը սկսաւ իր քննութիւնները, և ժամանակ անցնելէ ետքը 500,000 ֆրանք փոխ ուզեց՝ իրեն յանձնուած պաշտօնը լրացնելու համար. կամ այն էր որ խնդրեալ գումարը չափազանց երևցաւ և կամ ուրիշ պատճառաւ՝ ամենայն ինչ լռութեան մէջ մնաց։ Բայց սակայն ոչ առաջարկութիւնն իր յարգը կորսնցուց, և ոչ միտքերն իրենց դիտողութեան առարկայն փոխեցին, այն որ մէկ մը զարմանալի, մեծագործ և օգտակար ճանչցուած էր ամենէն, մինչ նոյնպէս մնաց. սոյն պատճառաւ է որ ուրիշ զինուորական ճարտարապետ մը Պ. Պուդէ անուամբ՝ սոյն մտածութիւնը կ'առաջարկէ տէրութեան, միայն անոր գործադրութեան կերպը փոխելով։

Պ. Թոմէ կամոն Ովկիանոսին տակէն դըննել մը կ'ուզէր բանալ, թողլով որ ահագին ծովը իր շինութեան ծածկոյթն ըլլայ, աներկիւղ անոր ամենէն սաստիկ բռնութիւններէն ալ. իսկ ասիկայ քան զիւր առաջնորդն յանդգնագոյն՝ կ'ուզէ Հռոդոսի նաւահանգստին արձանին պէս ոտքին մէկը Գաղղիա դնել և միւսը Անգղիա, փոխանակ կամոնի պէս, Ովկիանոսին տակէն լողալու, կ'ուզէ անոր վրայէն թևատարած թռչելով անցնիլ. պարզ ըսենք, փոխանակ դընէլով մը Գաղղիան Անգղիոյ հետ միացընելու, երկնայարկ և միակամար կամուրջով մը կ'ուզէ միացընել։ Փառաւոր մտածութիւն, ահեղ մտածութիւն, կրնանք ըսել նաև խելացի մտածութիւն. թէ որ մտածութիւնը գործադրութեան ատեն չոչնչանայ։

Թերևս շատերը ըսեն որ այսպիսի առաջարկութեան մը գործադրութիւնը դժուարին է որ դիւրաւ յաջողի Գաղղիացւոց ձեռքը. վասն զի Գաղղիացիք անգամ խոստովանած են և կը խոստովանին կամրջաշինութեան արհեստին մէջ իրենց յետամնացութիւնը, և միանգամայն Անգղիացւոց և Ամերիկացւոց այս բանիս մէջ անհամեմատ կերպով զիրենք յառաջելը։ Գաղղիոյ կամուրջները յԱմերիկա շինուածներուն և ոչ իսկ չնչին գաղափարներն են, ոչ մեծութեամբ և ոչ մեծագործութեամբ. օրինակի համար յիշենք Գոլումպիոյ կամուրջը՝ Ուաքհաննահի վրայ, և Ուօշինկդընինը՝ Բոդոմաքի վրայ, ուրաքանչիւրը երկու հազարամետր երկայնութեամբ. դարձեալ խողովակաւոր կամուրջը՝ որ զՄան կղզին Մեծ Բրիտանիոյ հետ կը միացընէ Ս. Գէորգայ անցքին վրայէն, առաջնոց պէս ընդարձակ և քան զանոնք աւելի մեծաշէն և մեծագործ։ Բայց սակայն այս գործս, որ մինչև հիմա իր տեսակին մէջինները պիտի գերազանցէ թէ մեծութեամբ և թէ կարևորութեամբ, կը թուի որ Պ. Պուդէի ձեռքն յաջողի. որով այս մասիս մէջ ալ Գաղղիացիք առաջիններէն ըլլան, և Պ. Պուդէի հանճարովը, որ պարագայիս մէջ յաջողելու համար մինչև հիմա գտնուած հնարքները բաւական չսեպելով, ուրիշ գիւտեր և ուրիշ տեսակ տեսակ միջոցներ գտած է, կամրջաշինութեան արհեստին վրայ մեծ փոփոխութիւն մը բերեն։

Պ. Պուդէ երկու առաջարկութիւն ներկայացուցած է գաղղիական տէրու-

թեան Գաղղիան Անգղիոյ հետ միացընելու համար. մէկն է, ինչպէս առաջ ալ ըսինք, միակամար կամուրջով մը միացընել, միւսն ալ ինը կամարի վրայէն ձգուած կամուրջով մը։ Բայց առաջարկութեանց երկուքն ալ ըլլալուն պատճառը վերջը թողլով, նախ ըսենք թէ այս երկու առաջարկութիւնները ինչ հնարքներով 'ի գործ պիտի դրուին։

Միակամար կամուրջը ձգելու համար, Պ. Պուդէ նախ և առաջ հիւսկէն գործուած մը պիտի ընկղմէ Բա–տը–Քալէի նեղուցին մէջ Գլան–Նէ հրուանդանէն մինչև Տուվրի ամրոցը. և այս հիւսկէն գործուածը ամեն գործողութեանց հիմը և խարիսխը պիտի ըլլայ, որովհետև ծովուն յատակը՝ որ անկանոն է և միշտ փոփոխական, անկարելի է հաստատուն յատակի տեղ ծառայեցընել։

Պ. Պուդէի նեղուցին մէջ ընկղմած հիւսկէն գործուածը ուրիշ բան չէ՝ բայց եթէ վաթսուն երկաթէ տապաւանդակներ, որոնք իրարու զուգահեռական և իրարմէ ըստ կամս հեռաւորութեամբ դրուած՝ ուրիշ աւելի բարակ անթիւ տապաւանդակներով իրարու հետ հիւսուած են. այս հիւսկէն գործուածը պիտի ըլլայ ամենամուր, և ոչ առաձգական. և ընկղմելէն ետքը, դատարկ երկաթէ տակառներ՝ որոնց թիւը հիւսկէն գործուածին ծանրութենէն պէտք է հաշուել, զանիկայ ջուրին վրայ պիտի բռնեն 16 մեթր խորութեամբ։ Այսպէս այս հիւսկէն գործուածը նեղուցին մէջ հաստատելէն ետքը, անոր վրայ երկաթէ դատարկ և վանդակաձև սիւներ պիտի կանգնէ, որոնք իրենց խարիսխ պիտի ունենան մեծամեծ երկաթի հատորներ։ Սիւներն ալ և երկաթի հատորներն ալ առաջուց գործատանց մէջ պիտի շինուին, և կամուրջին խելաց քով իրարու վրայ պիտի ագուցուին. իսկ զանոնք հիւսկէն գործուածին վրայ զետեղելու համար՝ ջուրին տեղատուութեան ատեն ծովեզերք պիտի տանին, և սիւներուն խարսխէն մեծամեծ տակառներ պիտի կապեն. որոնք ծովուն մակընթացութեան ատեն, երբ սկսին ջուրին երեսը ծածանիլ, այն ատեն շոգենաւ մը բոլորը մէկտեղ պիտի քաշէ և պիտի տանի հիւսկէն գործուածին քով. յետոյ Պ. Պուդէի հնարած հանճարեղ գործիքովը տակառները կարգաւ վեր պիտի քաշուին, և ամենայն դիւրութեամբ սիւները պիտի իջնան հիւսկէն գործուածքին վրայ և հոն անշարժ պիտի մնան։

Սիւները կարգաւ հաստատելէն ետքը, անոնց վրայէն առջի հիւսկէն գործուածին նման, ուրիշ մ' ալ պիտի ձգէ, և վրան տախտակով պիտի պատէ, որուն վրայ ետքը աշխատաւորաց աշխատութեան համար տախտակամածը[1] պիտի շինուի։

Մինչև հիմա եղածները բոլոր պատրաստութիւն էին կամրջաշինութեան, ասկէ ետքը պիտի սկսի բուն կամրջին շինութիւնը։

Ցանըմէկ հիւսկէն գործուած պիտի շինուի, առջի երկուքին նման, անոնց պէս տապաւանդակներէ հիւսուած, և ապա զանոնք փոխանակ իրենց երեսին վրայ հանգչեցնելու, իրենց եզերացը վրայ պիտի հանգչեցընեն, բոլորն ալ իրարու զուգահեռական, և ամուր գօտիներով իրարու հետ պիտի կապուին. ասոնց վրայ ալ պիտի դրուի տախտակէ յատակը որ 104 մեթր լայնութիւն պիտի ունենայ։ Ամենայն ինչ ձեռքով պիտի աշխատուի, և հոն պիտի շինուի, և երբ ամենայն բան լմըննայ՝ ան ատեն տախտակամածն ալ սիւներն ալ, ծովուն մէջ ընկղմած հիւսկէն գործուածն ալ պիտի վերցուին, և օդուն մէջ միայն միակամար կամուրջը պիտի մնայ։

Առաջարկութիւնս թէպէտ և յանդուգն՝ բայց միանգամայն յանկուցիչ և մոլորեցուցիչ ըլլալով՝ շատ կուսակիցներ և շատ համախոհներ ունեցաւ։ Բայց տէրութիւնը չուզելով այսպիսի գործոյ մը համար, որ թէպէտ և կարևոր է՝ բայց ոչ ամենակարևոր, 100

1 Échafaudage.

միլիոն ֆրանգ զոհել, չհաւանեցաւ. ան ատեն Գ. Գուդէ թողլով ասիկայ՝ ուրիշ առաջարկութիւն մը ըրաւ։

Ըստ երկրորդ առաջարկութեան՝ կամուրջը փոխանակ մէկ միջոցի վրայ երկննալու՝ ինը միջոցի վրայ պիտի երկննայ։ Հիւսկէն գործուածին տեղ՝ ծովուն յատակը բանի պիտի բերէ, և սիւները փոխանակ առ ժամանակեայ ընելու, մշտամնայ պիտի ըլլան։

Համարինք թէ կամուրջը այս կերպով յաջողութեամբ շինուի, արդեօք պիտի ունենայ՞ բաւական ամրութիւն, և կամ այն ընդարձակութեան մէջ կարելի չէ՞ որ կամուրջը տեղիք տայ։

Կամուրջին ընդարձակութիւնը, կ՚ըսէ Գ. Գուդէ, իր հաստատութեանը վրայ ամենևին վախ պէտք չէ որ ձգէ. և դարձեալ թէ կամուրջը պիտի զգայ տըկարութիւն մը, բայց ոչ արտաքին ազդեցութիւններէ պատճառեալ. և այս տկարութիւնը մէկ անգամ մը միայն և ան ալ իսկզբան. այսինքն ամեն մէկ միջոց՝ իսկզբան 11 մեդր տեղիք տալէն ետքը, կամուրջը իբրև մէկ ժայռ մը անշարժ պիտի մնայ. երկրորդ առաջարկութեան ծախքն է 150 միլիոն ֆր։

Գ. Գուդէի փափագն է ընկերութիւն մը հաստատել 100,000 ֆրանգի գլխով մը, և յանձնել անոր որ իրեն դրութեանը հետևելով այս կամ այն դետին վրայ մէկ միջոցով կամուրջ մը ձգէ. որուն յաջողիլը կամ չյաջողիլը հաստատէ և կամ մերժէ իր դրութիւնը։

Ինչպէս առաջ ալ ըսինք՝ Գլան-Նէ հրուանդանը պիտի ըլլայ Գաղղիոյ մէջ կամրջախելքին տեղը, որ ծովէն 135 մեդր բարձր է. առաջ Կրի-Նէ հրուանդանը որոշուած էր և այս որոշմունքը ա՛ւելի բնական էր, վասն զի նեղուցին ամենէն կարճագոյն տեղը (29 հազարամեդր) ճիշդ Կրի-Նէի և Շէքսպիր-Քլիֆի կամ Տուվրի ամրոցին մէջտեղը կ՚իյնայ։ Բայց ետքը մտածելով որ այսպէս Քալէի նաւահանգիստը գրեթէ կ՚ոչնչանայ, վասն զի Քալէն հրուանդանէն քսան հազարամեդր հեռու կը մնայ, Գ. Գուդէ որոշեց որ Գլան-Նէ ըլլայ կամրջախելքը, վասն զի ան ատեն Քալէէն 8 հազարամեդր հեռու կ՚իյնայ։ Գրեթէ հրուանդանին առջևն է Սանկաթ աւանը, Քալէէն 5½ հազարամեդր հեռու. կարևոր է և միանգամայն դիւրին այս երկու կէտերուն, այսինքն Քալէի և Սանկաթին մէջ մեծամեծ աւազաններ փորել, և նաւահանգիստ մը շինել բոլոր ազգաց նաւերուն համար, և ամբարանոցներ շինել. աւանն ալ քաղաքին հետ միացընել մէկ մեծ ալեկով մը, որ նաև նաւահանգիստն ալ շրջապատէ. և վերջապէս Քալէէն մինչև Գլան-Նէ հրուանդանը՝ վաճառականութեան կեդրոն ընել։ Այս կերպով, Գաղղիայէն Անգղիա ձգուած կամրջին պատճառաւ, անցուդարձք անհամեմատ կերպով յաճախելով՝ Քալէն մեծ յարգ և մեծ անուն կը ստանայ. և մի և նոյն ատեն մօտակայ քաղաքաց վրայ ալ իր ազդեցութիւնը պիտի ընէ։

Ահաւասիկ փոքրիկ գաղափար մը Գ. Գուդէի Գաղղիան Անգղիոյ հետ միացընելու մտածութեանը։ Բայց թէ առաջարկութիւնս մտադրութեան արժանի է՞ թէ ոչ, և կամ թէ լոկ ցնորք մ՚է, մենք այս նոր դրութեանս հիմունքը ըստ բաւականի բացատրելէն ետքը՝ կը թողունք որ ժամանակը այս հարցմանց պատասխանները տայ։

---

Ամեն օր անսխալ և ազնուութեամբ լի գըլուխ-գործոցներ տեսնելով՝ անշնորհ և անհամեմատ միտքերն ալ անոնց մէջ կը կրթուին, ու գեղեցկին՝ վայելչութին և շնորհալիոյն ախորժը կը ստանան. կը վարժին ըմբռնել թէ արուեստի և բնութեան գործերուն մէջ ո՛րն է գեղեցիկն ու ո՛րն է պակասաւորը, և այս ցանկալի իրաւախոհ դատմունքը սովորական կ՚ըլլայ իրենց հոգւոյն։

ՊԼԱՏՈՆ

Մասնաւորաց շահը միշտ հասարակաց շահուն մէջն է. անկից զատուիլ ուզելը՝ կորսնցնել ուզել է. ուրիշի համար արդարութիւն եղածը մեզի համար բարերարութիւն է։

ՄՈՆԴԷՍՔԻԷՕ

## ՀԱՅ ՀԱՆՃԱՐ

Ո՛ւր ես Հայ հանճար . — անցեր ես անցեր ...
Հին եւ երկայն դարք այլեւայլ բաղդով
Մեր Հայ հայրենեաց վրայէն սահելով՝
Սեւ ու սըպիտակ քօղերով պատեր
Զաղուորն այն ծաղկեր ,
Անցեր են անցեր ։

Այն աշխարհ՝ որ շատ աշխարհաց մայր էր ,
Որ սփռեց ազգեր մինչ ի ծայր երկրի ,
Արդեամբք իր հողուն մտամբք ճարտարի՝
Լեցուն գրքերով տանէր ու բերէր
Զանազան բերքեր ,
Անցեր է անցեր ։

Այն որ զառաջին շինուածն է կանգներ ,
Սարերըն ծակեր հանց փտտած տախտակ ,
Պատերով պատեր ըղծովուն յատակ ,
Բերդի տակ , լերան գըլուխ գետ քաշէր ,
Զանդունդ կամըրջէր ,
Անցեր է անցեր ։

Հայրենեաց պաշտպան՝ զէնքով զէնք քըշէր ,
Հիւսսի հարաւոյ դէմ դընէր վահան .
Վաղէր յարեւմուտս , յԱթէնս հռոմական ,
Հելլէն հանճարոյն դէմ ըղՀայն հանէր՝
Անյաղթ հռչակէր ,
Անցեր է անցեր ....

Թո՛ղ ... լըսէք Թմբկին ... Թո՛ղ . Թնտան սրտեր .
Հայրենեաց է տօն , հայրենեաց համբաւ .
Ո՛վ լաւք , ո՛վ քաջք , ձեզ վարձք հռչակեցաւ .
Արիւն եւ քրտինք , ձեզ կապուին Թագեր ...
Հա՛յք , ո՞ւր արդիւնք ձեր . —
Անցեր են անցեր ։

Պարեն պատանիք , ծիծաղին ծերեր .
Կուսանք ամօթխածք վարդերով վառուան ,
Պարկեշտ երախտեաց գովեստք բարձրացան .
Առաքինութիւնք , ահա պատիւ ձեր ...
Հա՛յք , դո՞ւք լոկ անտէր
Անցեր էք անցեր ...

Անցա՜ն մարեցա՜ն ուրեմն հայ լուսեր...
Ա՛հ, Հայաստան, ո՞ւր քո փառքըն փայլուն.
Ո՞ւր քո ճարտարաց աշխատանքըն անհուն.
Ո՞ւր քաջ եւ գիտուն որդւոցդ արդիւնքներ.
Ո՞նց քո բիւր փառքեր.
Անցե՜ր են անցեր....

Անցէք դուք այլ սեւ սրտիս սեւ ամպեր,
Անկէք հայ հողուն սեւ քարին վըրայն...
Ո՛հ, քանի՜ հազար կանգուն լայն ու երկայն.
Ո՛հ, ո՞նց ցեղուցեղ անձինք հոն եկեր,
Եկեր ու անկեր՝
Անցե՜ր են անցեր։

Ըղսեւ գիրն Հայոց՝ կարդացէք ազգեր.
«Կարկառ հանդըստեան տոհմի տան Հայկայ,
Համարի ՚նդ մեռեալս եւ ինքն ի քուն կայ»։ —
Մեռեալ չե՜ն ուրեմն Հայ հայրենիք մեր.
Հայաստան անկեր՝
Բայց ո՛չ է անցեր։

Հա՛յ ազգ, հա՛յ հանճար, քունն է զքեզ բռներ.
Քո՛ւն թանձր եւ երկայն, բայց ոչ մահ անյոյս.
Ո՞վ արթընցընէ զազգն իմ ի նոր լոյս. —
Ես հազարներ տամ այնոր, տամ բիւրեր,
Որ զաչքըն բացնէր,
Ու չըլլա՛ր անցեր։

Ո՞վ բանայ զՀայկայ աշխոյժ աչուկներ.
Ո՛հ, ո՞վ կանգնէ զքեզ հանճար հայրենի...
Ե՛լ, կանգնէ՛ դու զքեզ, զաւակ ես երկնի.
Լոյս ծագէ մըթէդ, ե՛լ կանգնիր ի վեր.
Հերիք քընացեր.
Գիշերն է անցեր....

Կ'երդնու Նահապետ, կանչէ ձեզ Հայե՛ր,
Հանճարն է մեզ կեանք. ըզնա վառեցէք,
Մեծ պզտիկ՝ այնոր սիրով վառուեցէք....
Ծագէ՛ Հայ հանճար, փայլէ՛ բիւր բոցեր,
Իմանան ազգեր՝
Թէ Հայք չե՜ն անցեր։

ՆԱՀԱՊԵՏ

# ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՅԹԻՑ

(Տես երես 127)

### Ա. ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

82 Ի՞նչպէս կը կոչուին այն մարմինները՝ որ երկրիս ձգողութեանը ենթակայ չեն։ — Անկշռելի մարմինք կ'ըսուին։

83. Կա՞ն անկշռելի կազեր ալ։ — Ոչ, այլ բոլոր կազերն ալ կշռելի են, այսինքն ծանր։

84 Հապա ինչո՞ւ համար ծուխն, շոգին, ցրտծին կազն եւ ուրիշ այնչափ կազեր օդուն մէջ կը բարձրանան եւ մթնոլորտին բարձրերը կ'ելլեն, փոխանակ երկրիս վրայ իյնալու։ — Ասոնք ալ երկրիս վրայ կ'իյնային ամենէն ծանր մարմնոց պէս, եթէ օդը իրենց արգելք չըլլար։

85 Ինչո՞ւ օդը արգելք կ'ըլլայ շոգիին, ծուխին, եւ կազին վար իյնալուն։ — Որովհետեւ օդը այս մարմիններէն աւելի խիտ է, իրենց վար իյնալուն անանկ ընդդիմութիւն մը կ'ընէ՝ որ աւելի զօրաւոր է քան երկրիս ձգողութեան ուժը անոնց վրայ, եւ հետեւաբար վեր կը մղուին նոյն իսկ օդին ծանրութեամբը՝ որ անոնցմէ աւելի դէպ 'ի կեդրոնը կը դիմէ։

86 Ի՞նչ կը կոչուի այն ուժը՝ որ դէպ 'ի երկիր կը քաշէ անոր վրայ գտնուող բոլոր մարմինները։ — Ձգողութիւն կամ կեդրոնաբեր զօրութիւն կը կոչուի։

87 Ինչո՞ւ ջրով լեցուն աման մը մէջ նետուած երկաթի կտոր մը՝ անոր տակը կ'իջնայ։ — Որովհետեւ երկաթին հիւլէները աւելի շատ սեղմ եւ մօտ են իրարու, որ է ըսել թէ երկաթը ջուրէն աւելի խիտ է։

88 Ինչո՞ւ փայտի կտոր մը ջուրին երեսը կը տատանի փոխանակ անոր տակը երթալու։ — Որովհետեւ փայտին հիւլէները միջմէկէ տարակաց են, եւ ատով փայտին խտութիւնը ջրէն նուազ է։

89 Ի՞նչ պատճառաւ ջրէն աւելի խիտ մարմինները անոր տակը կ'իջնան, իսկ թեթեւները երեսը կը տատանին։ — Որովհետեւ կեդրոնական ձգողութիւնը այնքան աւելի ուժով կ'ըլլայ՝ որչափ որ մարմինք աւելի խիտ ըլլան. ուստի թէ որ մարմին մը ջրէն աւելի նուազ խիտ է, ձգողութեան ուժը նախ զջուրը իրեն կը քաշէ, վերջը այն մարմինը. ընդհակառակն եթէ մարմինը աւելի խիտ ըլլայ, զանիկայ աւելի կը քաշէ։

90 Ինչո՞ւ քիչ ուժով ալ կը վերցուի ջրի մէջ ընկղմած ծանր մարմինն ալ, մինչդեռ նոյն ծանրութիւնը չենք կրնար վերցընել եթէ օդուն մէջ գտնուի։ — Որովհետեւ ջուրը օդէն աւելի խիտ է, կ'ընդդիմանայ ձգողութեան ուժին՝ որ կը ներգործէ երկրիս կեդրոնէն, եւ մարմինները ջրին մէջ աւելի նուազ ուժով քաշուելով քան թէ օդու մէջ նուազ ծանր կ'ըլլան առջինին մէջ քան երկրորդին։

91 Երբոր ջրհորէն ջուր հանենք ինչո՞ւ ջրով լեցուն դոյլը քանի որ ջրին մէջ ընկղմած է՝ զգալի ծանրութիւն մը չունար։ բայց երբոր դուրս ելլայ շատ կը ծանրանայ։ — Որովհետեւ ջրին խտութենէն ձգողութեան ուժին դէմ դրուած ընդդիմութիւնը այնչափ է՝ որ իր մէջը ընկղմած մարմին մը կը կորսնցընէ իր ծանրութենէն այնչափ՝ որչափ որ կը մղէ իր քանակութեամբը։

92 Օրինակ մը տուր ասոր։ — Եթէ փայտէ դոյլ մը ջրով լեցուն օդուն մէջ քսան լիպրէ կշռէ՝ ջրին մէջ ընկղմած այնչափ ծանրութիւնը կը կորսնցընէ, որչափ որ իր քանակութեամբը ջուր դուրս կը մղէ. ենթադրելով որ դոյլը լեցուն է նոյն հեղուկով՝ բնականապէս դուրս պիտի մղէ քսան լիպրէի հաւասար ջրոյ զանգուած մը, որով ընկղմած դոյլն ալ կը կորսնցընէ քսան լիպրէ ծանրութիւն եւ թեթեւ կ'երեւայ, իսկ դոյլին փայտը որովհետեւ ջրէն նուազ խիտ է, անոր երեսը կը մնայ, վասն զի ջրին խտութիւնը կ'ազդէ ընդդիմութիւն մը՝ հաւասար ուժոյ ձգողութեան՝ զոր երկիրս կ'ազդէ փայտին վրայ։

93 Ի՞նչ կը կոչուի ջրոյ մէջ կշռուող մարմնոյ մը ծանրութիւնը։ — Տեսակարար ծանրութիւն կը կոչուի։

94 Ինչո՞ւ մէկ խորանարդ տասնորդամետր կապարը տասնըմէկ եւ $^{3}/_{4}$ անգամ աւելի կը կշռէ քան իրեն հաւասար ջրոյ զանգուած մը։ — Որովհետեւ կապարը $11\,^{3}/_{4}$ անգամ աւելի խիտ է քան զջուրը. այսինքն այնքան կապարին զանգուածը կազմելու համար, $11\,^{3}/_{4}$ նոյնքան զանգուածով ջուրի հիւլէներ պէտք են։ Որչափ որ մարմինները խիտ են այնչափ ալ աւելի դէպ 'ի կեդրոն կը դիմեն, վասն զի ձգողութեան ուժը աւելի կ'ազդէ անոնց վրայ. ուստի կապարին վրայ ձգողութեան ուժը $11\,^{3}/_{4}$ անգամ աւելի զօրաւոր է քան թէ ջրին վրայ։

95 Ինչո՞ւ նաւուն վրայ ելած նաւաստիք չափաւոր հեռուանց ցամաքին եզերքը չեն տեսներ, բայց դեռ կրնան տեսնել եթէ նաւուն կայմերուն վրայ ելլեն։ — Որովհետեւ ծովուն մակերեւոյթը կորնթարդ է,

ուստի ջրերուն նոյն իսկ հարթութիւնը արգելք մը կ'ըլլայ՝ որ անդիի կողմը եղած առարկաները չտեսնուին. բայց այս առարկաները դեռ կրնան տեսնուիլ դիտողին՝ երբոր ինքը ելլայ նաւուն կայմերուն վրայ, որոնք ջրերուն կուտակութենէն աւելի վեր են։

96 Ինչու համար ծովուն երեսը կորնթարդ է։ — Որովհետեւ երկրիս մակերեւոյթն կորնթարդ է իր ամեն կէտերուն ալ. ջուրն ալ իր յատակին ձեւին հետեւելով՝ նոյն ձեւը կու տայ իր մակերեւութին ալ։

97 Երկիրս հաւասարապէս կորնթարդ է իր ամեն կէտերուն։ — Այո, եւ ասկէ յայտնի է որ երկիրս պէտք է կլոր ըլլայ։ (Միայն քիչ մը ճնշած է երկու դիմացէ դիմաց կողմերն՝ որք բեւեռք կ'ըսուին, եւ անոնց միջոցն որ երկրիս առանցք կ'ըսուի՝ կարճագոյն է քան ուրիշ դիմացէ դիմաց կէտերու տրամագիծը։)

98 Ինչու համար երկիրս կլոր է եւ տափարակ չէ։ — Քանի որ դեռ հալած եւ կըղզիացեալ էր երկիրս՝ պէտք էր որ ընդունէր այն ձեւը՝ զոր կ'ընդունին ինքն իրեն թողուած ջրոյ կաթիլ մը, կամ օդուն մէջ նետուած կակուղ կաւի կտոր մը, կամ բարձրէն ձգուած հալած կապարն։ (Ձգողական զօրութիւնն կեդրոնէն դէպ ամեն կողմ ներգործելով՝ ստիպեց երկրիս տարերքները որ իրենց խտութեան կարգաւ մօտենան հոն. ասով՝ մետաղք որ ամենէն ծանր են՝ ամենէն խորը կը գտուին, ջուրն որ թեթեւ է՝ երկրիս երեսը կը կենայ, իսկ օդն որ աւելի թեթեւ է՝ ալ աւելի վեր կամ հեռու։)

99 Եթէ երկիրս գնտաձեւ է, միայն վերի կողմը պիտի բնակուած ըլլար։ — Այնպէս չէ, այլ ամեն կողմն ալ բնակուած է. եւ մենք իսկ այս ընդարձակ գունտին երբեմն վրան կը գտնուինք՝ երբեմն ալ տակը։

100 Ի՞նչպէս կարելի բան է որ տեղերնիս փոխենք առանց զգալու։ — Երկրիս նըկատմամբ տեղերնիս չենք փոխեր, որովհետեւ միշտ նոյն պայմանին մէջ կը գըտուինք. հապա երկիրս է որ կը պտըտի շարունակ ինքն իրեն վրայ, ուստի մենք ալ իրեն հետ մէկտեղ կը շրջինք։ (Եւ վար չենք իյնար, որովհետեւ ձգողութեան ուժը զմեզ կը բռնէ երկրիս մակերեւութին վրայ, եւ կը քաշէ դէպ 'ի կեդրոն։)

101 Ե՞րբ երկրիս ստորին կողմը կը գըտուինք։ — Գիշերուան ընթացքին մէջ։

102 Ինչու համար գիշերը մութ է եւ ցորեկը լոյս։ — Վասն զի գիշերը կը գտուինք երկրիս շուքին տակը. մինչդեռ ցորեկը, արեւուն ճառագայթները մեզի կը հասնին՝ առանց խափանուելու ստուերաձիգ կամ դիմահար մարմնէ մը։ (Դիմահար կ'ըսուի մարմին մը որուն մէջէն կողմէ կողմ ճառագայթ չանցնիր։)

103 Ինչու գիշերը երկրիս շուքը զմեզ կ'ընկղմէ մթութեան մէջ։ — Որովհետեւ երկիրս կը դառնայ ինքն իր վրայ եւ այս շրջանը կ'ընէ 24 ժամուան մէջ, տասներկու ժամ իր կէսը արեւէն կը լուսաւորուի. մնացած տասներկու ժամն ալ կը լուսաւորէ մէկալ կէսը որ առաջ մթութեան մէջ կը մնայ։

104 Ուրեմն ինչու համար ամեն օր հաւասար տասներկու ժամ ցորեկ եւ 12 ժամ գիշեր չըլլար։ — Որովհետեւ երկիրս միշտ մի եւ նոյն դիրքով արեւուն չներկայանար անոր ճառագայթները ընդունելու համար. հապա կամաց կամաց կը հակի իր առանցքին վրայ, այնպէս որ արեւը երբեմն մէկ մասը աւելի երկայն կը լուսաւորէ եւ երբեմն մէկալը. ուստի որչափ որ արեւուն լուսոյ տեւողութիւնը երկայն ըլլայ կէտի մը վրայ՝ նոյնչափ ալ ցորեկը հոն երկայն է։

105 Ինչու համար ձմեռը ցուրտ կ'ընէ եւ ամառը տաք։ — Այս բանս կը կախուի արեւուն հորիզոնին վրայ մնալու ժամանակէն։ Արեւուն ջեռուցիչ ճառագայթները կը տաքցընեն երկրիս մակերեւոյթը, բայց ինչպէս որ մարմնէ մը ծծուած ճառագայթեալ ջերմութեան քանակութիւնը՝ կը կախուի գլխաւորապէս իր վրայ հասած ճառագայթներուն քանակութենէն, այսպէս ալ երկիրս այնչափ աւելի կը տաքնայ՝ որչափ երկայն ատեն ունենայ աւելի բազմաթիւ ճառագայթներ ընդունելու արեւէն. ուստի եղանակներն ալ օրերուն երկայնութեանը հետ կապուած են։ (Ձմեռուան երկայն գիշերները երկրիս տաքութիւնը ճառագայթելով կը ցնդի. երկրորդ օրը արեւուն նոր ճառագայթները զանիկայ պակսած կը գտնեն. ընդհակառակն ամառը գիշերները կարճ ըլլալով՝ հազիւ թէ երկրիս տաքութեան մէկ մասը կը ցրուի՝ նորէն շատ տաքութիւն կ'առնու երկայն ցորեկով։)

Կը շարունակուի:

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՅԺԷ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՅՈՒՆԻՍ

## ՊԵՆՏԵԿՈՍՏԷ

Ո՛վ դու ծընող մայր սըրբոց ,
Պատկեր վերնոյ քաղաքին ,
Անապական սուրբ Արեան
Աւանդապահ յաւէտ հին .
Որ ընդ յոլով շարս ամաց
Կըրես , մըրցիս եւ հայցես ,
Եւ ըզխորանըդ լայնես
Ծովէ մինչեւ անդր ի ծով .

Հանդիսարան յուսաղաց՝
Տուն Աստուծոյ կենդանւոյ
Ուր էիր բնաւ , ո՞ր եղեւ
Նորածնեդ վայր օթելոյ ,
Յանօրինաց մինչ ի մահ
Վարեալ քոյին Թագաւոր ,
Ներկեաց ըզլեառն ի բոսոր ,
Իւր գերահրաշ սեղանով :

Եւ մինչ ի մութ խաւարէն
Ելեալ մարմնովն աստուածեան ,
Շընչեաց երկրորդ այլ կենաց
Ըզշունչ հըզօր զօրութեան .
Եւ մինչ կալեալ ի ձեռին
Ըզքաւութեան փըրկանակ ,
Աստի առ Հայր վերելեալ
Յերկնից գահոյն համբարձաւ :

Հաղորդ կարեացն հեծութեանց ,
Քաջածանօթ գաղտնեացն իւր ,
Յաղթանակին դու նորա
Ծընունդ անմահ՝ գոյիր ուր .
Հըսկող արթուն երկիւղիւ ,
Յանյուշութեան լոկ անքոյթ ,
Գըտեալ զորմունս ի ծածկոյթ
Կայիր ցըսուրբ օրն անձկաւ :

Մինչեւ հանգեաւ քոյդ վերայ
Նոր նորոգող սուրբ Հոգին,
Եւ զանբաւպատ բոց հրոյն
Վառեաց քոյումդ ի ձեռին.
Մինչեւ նշան բարձր ի լեառն
Եդ զքեզ ազգաց եւ ազանց,
Եւ ի շրթանց քոց հոսեաց
Բարբառելոյ յորդ աղբիւր։

Հանգոյն լուսոյ սրբութեան
Անձրեւելոյ ընդ հանուր,
Որ յամ ուրեք թէ հանգչի
Երփըն ծնանի բիւրուց բիւր.
Այսպէս եղեւ լըսելի
Բազմապատիկ ձայն Հոգւոյն.
Հայն, Արուայիկ դ՚ Ասորւոյն
Լուան ի լեզուս բընատուր։

Երկըրպագողըդ կըռոց,
Սըփռեալ համայն ընդ ափունս,
Դարձ եւ հայեաց ի Սալէմ,
Ըզարըրբաձայն լուր գոչիւնս.
Վաստակ յանարգ պաշտամանց
Դարձցի առ Նա ինքն երկիր։
Եւ դուք հարսունք՝ բերկրալիր
Բացողք կենաց ըզշըրջան.

Որ ընդ յանկարծ ընդոստմնուլ
Զարթնուք թաքուն ձեր բեռին.
Որ փոքր միւս եւս եւ բանալք
Զարգանդ երկանց ցաւագին.
Առ սուտանունմն հարսնաւէր
Մի երգեսջիք օրհնութիւն.
Նըւիրական է Սըրբոյն
Որ ի ծոցիդ ձերում կայն։

Հէմ անապատն հեծէ դեռ
Պաշտեալ հնաձոյր որդեկաց,
Եւ նախանձու շարժէ զակն
Առ ծընող ծոցն ազատաց.
Զըգիտիցէ՞ զ՚ տաճարն Տէր
Յարքայութիւն զհէքս ընդ իւր.
Զի խորհեցաւ ի ցաւս իւր
Յողջոյն որդւոց Եւայի։

Ազատութիւն նոր երկինք
Եւ նոր ազինս աւետեն,
Նորոգ բաժինս, ընկճեալ փառք
Ի չքեղ հանդէսս յոքնադէմ.
Եւ անդոյր նոր անվըրդով,
Հրապուրանաց անըլսող,
Ում է աշխարհ պապանող,
Բայց զոր կապեալ չըմարթի։

Ալերսաւորք, ով Հոգիդ,
Առ քոյ պայծառ սեղանովք,
Ընդ մացառուտս ամայիս,
Դ՚ անմարդի ծովս յածելով,
Ի ցուրտ Անդեանց ցըլիրան,
Յիպեռնեայ ցըթաւն հայիդի,
Ցըրուեալք 'ղ համայն կողմն երկրի,
Միախորհուրդք կամաց քոց.

Հայցեմք ի քէն. էջ Հոգիդ,
Խաղաղաւէտ հաշտօրէն,
Ցերկըրպագողըս քոյին
Եւ ոյց գիտակ քեզ չիցեն.
Էջ վերածնող եւ վառեա
Ըզսիրտս յերկրայս շիջամեռ,
Եւ հատուցումն երկնանուէր
Ցաղթողն իցէ պարտելոց։

Էջ Սէր հանգիր ի հոգիս,
Զըրրտմըրութիւն ցածո՛ դու.
Անփոփելի տուր խորհուրդս
Ի հուսկն աւուր ահաւոր։
Քոյդ զօրութիւն բարերար
Սընուսցէ զտուրըս քոյին.
Հանգոյն փըթթող արեգին
Զծաղիկ ի յամի ընձիւղէն.

Որ եւ մեռցի յամի տոգա
Ի դալարիս անտառաց՝
Եւ անյարիր վառ գունովք
Վերջաւորայըն լուծեալ,
Թէ ոչ առ ինքըն դարձցի
Եթերային ձոյլ օդովք
Կենդանարար լոյսն ամբք,
Այն որ անխոնջ մըշտ հասանէն։

Հայցեմք ի քէն մաղթելով,
Ընդ աղօտ միտս եղկելւոյ
Է՛ղ իբրեւ շունչ ցանկալի
Եւ մըխիթար սիւք օդոյ.
Է՛ղ յոխորտ միտս ուռուցիկ
Իբրեւ մրրրիկ ահաւոր,
Եւ պակուցումն ազդեա խոր
Զի դէպ երկիւղդ ուսուսցէ ։

Ա՛ռ քեզ, յերկինս՝ որ իւրն է,
Ձայն ի վեր հէքըն կայցի.
Զօղբալըն լուծցէ ի բերկրանս
Խորհեալ թէ ում նըմանի.
Ո՜ւմ շատ տըւաւ ի պարգեւ,
Ցացէ փոխան հաշտ ակամբ,
Ամօթխածիկն այն լռութեամբ,
Որով քեզ տուրն հաճոյ է ։

Ցանձաւեալըն ի ժըմիտ
Շընչեա մանկանց մեր տղայոց.
Զերփըն պարկեշտ ծիրանի
Օրիորդիկ տուր գեղոց.
Տուր սուրբ հըրճուանս հոգեկիր
Միայնասէր կուսանաց.
Եւ սուրբ արա ըղձարսանց
Զամօթխած սէր եւ գորով ։

Զանփ դիր յոխորտ պատանեաց
Ցոգիան՝ ի սիրտ խանդավառ.
Ուղղեա ի կէտն անվրրէպ
Կորովամիտն ըղձանձար.
Գըձնազարդեա պալեւոյթ
Ամբիծ ըղձիւք հըրճուարար,
Եւ փայլեա յակըն թափառ
Վախճանելոյն լի յուսով ։

ԱԼ. ՄԱՆՑՈՆԻ

ԹԱՐԳ. Հ. Դ. ՆԱԶԱՐԵԹԵԱՆ

*Բարոյական և քաղաքական տնտեսութիւն ։*

(Տես երես 97)

## ԱՌԱՋԻՆ ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ

*Աստուած, մարդ և աշխարհ.*

Տիւրբէ ճամբան երթալու ժամանակ բացատրել խոստացած խնդիրներուն վրայ կը մտածէր. անկարելի կու գար իրեն այս վիճաբանութեան գաղափարը, և կ'ուրախանար այս առթով աւանին բնակչաց հետ խօսել կարենալուն վրայ ։

Միրըպոյի գործատան գործունէութեանը պատճառաւ շատ մը գործաւորներ հոն թափեր էին, որոնք գրեթէ ամենքն ալ երիտասարդ էին և օտար բնաւորութեանց ու սովորութեանց տէր. ասոնք գէշ նախազգացութիւն մը կ'ազդէին բժշկին, որովհետև աւանին դպրոցէն անցած չէին. տեղափոխիկ ժողովրդեան մը հետը բերած պակասութիւններէն կը կասկածէր, և կը վախնար որ աւանին մէջ վնասակար սկըզբունքներ չտարածեն ։ Միւս կողմանէ ալ ապագայն չարագուշակ կ'երևար ։ Աւանը շէնցնելու գործոյն ձեռք զարնելէն 'ի վեր քանի տարի եղեր էր և ոչ երբեք հունձք այնպէս անյաջող գացեր էին. գործատանց աշխատութիւնները կը դանդաղէին և ամեն կողմանէ վախ կար որ ուտելեաց սղութեանը պատճառաւ բոլորովին դադրին ։

Բժիշկը ժողովրդեան մէկ մասին հետ խօսակցելու առիթը ձեռք բերեր էր. և այս բանս պատեհ առնելով միտքը դրած էր ժամանակին պարագայից համեմատ խորհուրդներ տալ իրենց, և կը մտածէր թէ այս միջոցով կրնայ օգնել որ աւանը անվնաս կերպով այս մօտալուտ տագնապողական ժամանակն անցընէ ։

Անդրէաս Փոնըրֆուա ու իր բարեկամները իրենք ալ իրենց կողմանէ հաճութեամբ ընդուներ էին այս խօսակ-

ցութեանց ծանուցմունքը և մեծաւ հետաքրքրութեամբ կը սպասէին։ Այս բանիս լուրը շուտով աւանին մէջ տարածուեցաւ, ուստի յաջորդ կիրակին ժամերգութենէն ետքը անբաւ բազմութիւն ժողվուած էր. գործատանց բանուորները լեցուն էին, կային նաև տեղացի երկրագործներ ու տուրևառութիւն ընողներ. ամենքն ալ կ'ախորժէին բժշկին խօսածը լսել. միշտ բան մը կը սորվէին իրմէ։

Նոյն օրը երկինքն ամպամած էր և անձրևի նշան կար. Տիւբբէ այս բանիս չնեղացաւ. բացօթեայ տեղ ժողովուրդը հաւաքելը բանին շատ ձեռք չէր տար, վասն զի դժուար էր ամենուն ձայն հասցընել. և իրաւունք ունէր միտածելու թէ անգամ մը դպրոց ժողվուելէն ետքը՝ հետևեալ կիրակիներն ալ հոն կու գային, ինչպէս որ եղաւ ալ։ Աւանապետը հրաման տուաւ որ հոն կարենան ժողվուիլ. Հուայմինտոս ամեն բան խնամքով հոգացեր էր, և երկու կողմանէ այնչափ բազմոցներ շարած էր որ ամենքն ալ կրնային նստիլ։

— Բարեկամք իմ, ըսաւ Տիւբբէ՝ երբ ամեն մարդ իր տեղը նստաւ. դուք ինծի շատ հարցմունքներ ըրիք որոնց պատասխանը չեմ կրնար տալ առանց ուրիշ խնդիրներ ալ յարուցանելու. ասով կ'իմացնեմ կանխաւ որ շատ հեռուէն պիտի սկսիմ և կը վախնամ որ ձեզ ձանձրացնեմ։

— Մի՛ վախնար, պոռացին հանդիսականները ամենքը միաբերան։

— Բարի է. որովհետև կ'ուզէք՝ փափաքնիդ կը կատարեմ. բայց սկսելէս առաջ ան ալ մտիկ ըրէք։ Ձեզմէ շատերը աղաչեցին որ այսօրուան պէս ամեն կիրակի խօսակցելու ժողվուինք. այս խնդրուածքը գիս շատ ուրախացուց, բայց չեմ ուզեր կուրօրէն յանձն առնուլ։ Ամեն կիրակի հոս գալնիդ՝ կրնայ ըլլալ որ երբեմն ձեր գործերէն ետ մնաք, կամ մեր խօսակցութիւններէն մէկ քանիին պակսիք՝ որով յաջորդութիւնը չէք կրնար հասկընալ և որով ալ անկէ ետքը եռանդնիդ կը մարի։ Ամեն բան յարմարցնելու համար որոշենք ուրեմն որ տասնըհինգ օր մէյմը ժողվուինք. այսպէս՝ փափաքողները միշտ կրնան գալ՝ առանց իրենց գործերէն արգիլուելու. և այս ժողվուելնիս ալ աւելի հաճոյական կ'ըլլայ ձեզի՝ երբ առանց կապկըպուելու ու նեղուելու գալու ըլլաք։

— Իրաւացի է, ըսին շատը մէկէն։

— Ուրեմն որոշեցինք, ըսաւ Տիւբբէ, արդ հիմա խօսակցինք։

— Ըսէ ինծի, Անդրէաս, դու որ առաջին հարցմունքը ինծի ընողը եղար՝ որուն համար հոս ժողվուեր ենք. կը կարծես որ Լուդուիկ Մորան բոլորովին մեռած ըլլայ.

Այս հարցման վրայ մեծ զարմացում կալաւ ունկնդիրները. ամենքը լուռ կեցան, մանաւանդ Անդրէաս։ Բժիշկը հարցմունքը կրկնեց։

— Յայտնի է, պատասխանեց ան ատեն Անդրէաս. միթէ անցեալ կիրակի գերեզմաննոց չտարի՞նք զինքը։

— Այո՛, թաղեցինք իրեն մարմինը. բայց արդեօք անիկա բովանդակ Լուդուիկ Մորա՞նն էր. միթէ ամենայն ինչ մարմնոյն հետ կը մեռնի՞։

— Կ'ըսեն թէ չէ, պարոն, որովհետև մարդս հոգի և մարմին ունի. և մարմնոյն մեռնելէն ետքն ալ՝ հոգին դեռ ապրիլը կը շարունակէ։ Այս տեսութեամբ՝ Լուդուիկ Մորան ամբողջապէս մեռած չէ, և կ'իմանամ թէ ինչ կ'ուզես ըսել։

— Շատ ուրախ եմ որ կ'իմանաս, վասն զի չեմ ուզեր յանկարծակիի բերել զձեզ։ Իրաւցնէ՝ եթէ Լուդուիկ Մորան ամբողջապէս մեռած չէ՝ մարմնէն աւելի մեծագին բան մը կայ. որովհետև մնայունը քան անցողականն աւելի յարգի է։ Այս մէկ բանը՝ որ հոգի կը կոչուի, պէտք է որ մեր աշխարհքիս վրայ ապրելու կերպէն մեծապէս կախում ունենայ. վասն զի եթէ հոգին անմահ է՝ յայտնի է թէ վախճանումըն է։

— Կը հաւանիմ, ըսաւ Վիկտորէն ման-

բազմաճառն ու ճարտասանը, որ աւանին խելացիներէն մէկն էր, և իրեն խանութը ժողվուելու տեղ մըն էր Միրբոյի բնակչաց ոմանց համար։ — Կ'ընդունիմ, ըսաւ, Անդրէասին տեղ խօսելով. բայց գլխաւոր բանն է գիտնալը թէ հոգին կայ. վասն զի շատ դժուար է անըմբռնելի ու անտեսանելի բանին հաւտալ։

— Դժուար ըլլալը չեմ ժխտեր. սակայն ուրիշներուն վկայութեանը նայելով անբաւ չտեսած բաներուդ կը հաւտաս, որոնք քեզի համար մարմնոյ և հոգւոյ կապակցութենէն աւելի անըմբռնելի են։ Օրինակի համար՝ կը հաւտաս թէ կաղին պտուղը կաղնի ծառ կը դառնայ, առանց ըմբռնելու թէ ինչպէս երկրէն ծծած սնունդէն ցօղուն և ճիւղեր, տերևներ ու փայտեր կ'ըլլան։ Առանց ըմբռնելու կը հաւտաս թէ քիչ մը շոգին՝ ինչպէս քու կաթսայէդ ելածը, կրնայ երկաթուղեաց մեծամեծ կառքերը շարժել։ Կը հաւտաս դարձեալ՝ առանց ամենևին հասկընալու, որ ելեքտրական հոսանքը վայրկենի մը մէջ խօսքերնիս Բարիզէն Մարսիլիա կը տանի։ Ասոնց և դեռ ուրիշ շատ բաներու ալ կը հաւտաս՝ առանց մեկնութիւն մը տալ կարենալու. ինչու ուրեմն հոգւոյ չես ուզեր հաւտալ՝ ըմբռնել չկարենալուդ համար։

— Ի՞նչ տարբեր բան, Պարոն, անոնց ամենուն կը հաւտամ՝ վասն զի կը տեսնեմ. կամ գոնէ եթէ չեմ ալ տեսներ, արդիւնքնին կը տեսնեմ. բայց ոչ հոգին կը տեսնեմ, և ոչ ալ իրեն արդիւնքը։

— Միակ տարբերութիւնն որ կայ սա է, Վիէոլէն, որ մարդիկ շահ մը չունին բնական երևոյթներուն վրայ տարակուսելուն մէջ, երբ գրեթէ ան ամէնքը որ հոգւոյ էութիւնը կ'ուրանան՝ շահ ունին այնմ չհաւտալնուն մէջ. վասն զի եթէ հաւտային՝ հարկ կ'ըլլար որ իրենց վարուց ընթացքն ալ հաւատացածնուն համեմատ ըլլայ։

— Ի՞նչպէս կ'ըլլայ, կցեց Վիէոլէն։

— Ինչպէս կ'ըլլայ. հիմա քեզի կը ցուցընեմ։ Եթէ մենք հոգի չունենանք՝ կրնաս ըմբռնել զմարդ. կ'ըմբռնես թէ ինչպէս մարմինը կը մտածէ, կը խօսի և կը պատճառաբանէ։ Ուրեմն ոսկորներդ, մարմինդ կամ արիւնդ կ'ընեն այս ամեն բանը քեզի համար։ Եթէ մենք հոգի չունինք՝ ըսել է թէ մարդս բոլորովին նիւթեղէն է, ինչպէս որ է սա փայտէ ստոլը, գիրքը, այս քարէ դահլիճը, ապակեղէն պատուհաններն ու երկաթեայ դռներն ու ծխնիները։ Եթէ այդպէս է՝ ինչու համար նիւթը ինչ կարողութիւն որ ունի մարդուս վրայ՝ չունի նոյնը փայտին, քարին, մետաղաց, հողոյն, օդոյն և ջրոյն վրայ։ — Վասն զի մարդուսը կենդանի նիւթ է, ըսաւ Լէոնարտոս Տիւպուա՝ որ գործատան մէջ բանիրուն գլուխներէն մէկը կը սեպուէր։ Մարդս կ'ապրի, մինչդեռ քարն ու երկաթը չեն ապրիր։

— Նայէ, բարեկամ, պատասխանեց Տիւբրէ. չի շփոթես բան մը որ չես գիտեր բառի մը հետ որ նոյնպէս անհասկանալի է քեզի համար։ Կարծես թէ մարդուս և իրեն չորս կողմը եղած նիւթոց զանազանութիւնը բաժնած կ'ըլլաս ըսելով թէ մարդս կ'ապրի և թէ իրք չեն ապրիր։ Բայց ասիկա բառ բառի տեղ դնել է. արդ պէտք չէ որ այս բանս ընենք՝ եթէ չենք ուզեր զեղծանիլ իրական համարելով այնպիսի բառեր զորոնք առանց հասկընալու կը կրկնենք։ Եթէ այդպէս է, ըսէ ինծի Լէոնարտոս, ի՞նչ է կեանքը։ —

Այս հարցմունքին վրայ Տիւբրէ լռեց, պատասխանի մը սպասելով։ Լէոնարտոս՝ ինչպէս նաև ուրիշներն ալ տալիք պատասխան մը կը փնտռէին. ոչ ոք կրնար գտնալ։ Տիւբրէ դարձեալ սկսաւ խօսիլ։

— Պատասխան չես տար, բայց չեմ զարմանար. ինծի համար ալ դժուարին է կարենալ ըսել թէ ի՞նչ է կեանքը. հաւանօրէն շատ մէջէմէջ բացատրութիւն մը պիտի տամ, որուն շատ դժուարաւ կրնաս մտադրութիւն ընել, և վերջը վերջը՝ որոշ բան մը չբացատրեր. խել մը ուրիշ բառերով միտքդ

կը լեցուի։ Ասով՝ ինչպէս որ շատերը կ'ընեն, գքեզ խաբած կ'ըլլամ, անանկ մը հաւատացնելով իբրև թէ քեզի բան մը սորվեցուցած ըլլամ։ Բայց սակայն եթէ չենք կրնար բացատրել կեանքին ինչ ըլլալը, կրնանք որոշել երկրիս վրայ կեանք ունեցողներն ու ապրողները։ Միայն մարդիկ չէ՛ն որ կ'ապրին։—

Այս հարցման վրայ ամենքը անասուններն յիշել սկսան. ոմանք բոյսերն ալ աւելցուցին։

— Իրաւունք ունիք. կենդանիք և տունկք կը ծնանին, կ'աճին, կը սնանին և կը մեռնին մարդու պէս. ասոր վրայ կը կայանայ կեանքը։ Բայց եթէ բաւական էր ինչ որ կեանք կը կոչուի բացատրելու համար թէ ինչպէս նիւթը կրնայ կատարել մարդուս ըրածը, կը հարցընեմ ձեզի թէ ինչո՛ւ համար ամեն կեանք ունեցողները նոյն կերպով չեն ապրիր. ինչո՛ւ համար տունկք որ կը ծնանին, կ'աճին ու կը մեռնին՝ անասնոց չեն նմանիր, որոնք նաև կը շարժին և հաճոյք ու ցաւ կը զգան։ Կը հարցընեմ ձեզի թէ ինչո՛ւ համար անասունք մարդէս այնչափ կը զանազանուին, որ աւելի քան զիրենք բանականութիւն ունի, և լեզուախօսութիւն՝ որով կրնայ իր նմանեացն հետ վերաբերութիւն ունենալ։

Կը տեսնէք ուրեմն, բարեկամք, թէ կեանքը բառ մըն է որ ամեն բան չբացատրեր. նաև չբացատրեր թէ ինչպէս նիւթը կարող կրնայ ըլլալ քանի մը հանգամանաց մէջ ծնանելու, աճելու ու մեռնելու. ինչպէս կերածնիս արիւն, միս ու ոսկոր կը դառնայ. ինչպէս մեր կերակուրները տեղ մը կռճիկ կ'ըլլան և ուրիշ տեղ մորթ, գլխու վրայ մազ և անդամոց ծայրերն՝ ըղունգ, մէկ գործարանի մը մէջ անուշ կաթ, ուրիշի մը մէջ լեղի մաղձ։ Աւելի ևս չկրնար բացատրել թէ ինչպէս նիւթը, զոր մենք զգացման ու շարժման անկարող կը տեսնենք, ըմբռնողութեան ու բանականութեան ընդունակ եղող մարդուն վրայ կարող կ'ըլլայ ուզելու և կամենալու։ Շիտակն ըսելով ես ամենևին աս բանս չեմ կրնար բացատրել։

Գիտէք արուեստս կը բերէ որ մարդուս մարմնոյն վրայ շատ դիտողութիւն ըրած ըլլամ. նաև անասնոց մարմնոց վրայ ալ նոյն մտադրութիւնն ըրեր եմ, որպէս զի անոնց վրայ սորվիմ ինչ որ մարդուս օգտակար կամ վնասակար կրնայ ըլլալ։ Գիտէք նաև թէ որչափ տնկոց վրայ ալ զբաղած եմ. իսկ արդ ոչ մարդուս, ոչ անասնոց և ոչ տնկոց վրայ կրցեր եմ ըմբռնել ինչ որ 'ի նիւթն կը կայացնէ կենաց ծագումը, և ոչ ոք ինծմէ առաջ կրցեր է ըմբռնել։ Կը խոստովանիմ, բարեկամք, այս տգիտութիւնս միայն կը խոնարհեցնէ, և կը սորվեցնէ ինծի որ անձիս վրայ վստահութիւն չունենամ։ Ստիպեալ եմ ճանչնալու թէ այս աշխարհքիս վրայ մեր աչքով տեսածէն աւելի բան կայ, թէ մարդուս մարմնոյն վրայ մեր տեսածէն ու դպածէն դուրս ուրիշ բան մ' ալ կայ։ Իբրև կենդանի էակ՝ իր վրայ աւելի ինչ քան զնիւթը կը տեսնեմ, և իբրև իմացական, զգայուն, կամեցող, խոհուն և խօսուն էակ՝ կը տեսնեմ յինքեան գերագոյն ինչ քան զմարմինն։ Այս գերագոյն ինչն ըստ բոլոր աշխարհի հոգի կը կոչուի։

Ամենայն իմացական մարդու համար յայտնի է թէ խորհողն ու խորհրդածողը կամ ուզողն 'ի մեզ ոչ է մարմինը, կամ որ և իցէ մասն մարմնոյ։ Ուշ դրէք ինչ որ կ'ըլլայ 'ի ներքս 'ի ձեզ երբ կը մտածէք, երբ բան մը կ'ուզէք, և ըսէք թէ ձեր մարմնոյն մէկ մասն է որ մտածեց, ուզեց, փափաք մը զգաց։ Դարձեալ եթէ մեր մարմնոյն մէկ մասը կարող ըլլար կամք և մտածութիւն ունենալու, ամեն մասերն ալ նոյն կարողութիւնը պիտի ունենային. ապա մազս գլխուս նման ինքն ալ պիտի մտածէր, նմանապէս ոտքս ու ձեռքս. սրունքներս ու բազուկներս փափաքներ պիտի ունենային. իրաւ է որ այս պարագայիս մէջ եթէ մէկը ուզենար աջ կողմը երթալ ու միւսը դէպ 'ի ձախ, չեմ գիտեր ինչ պիտի կարենայի ընել։—

Այս խօսքիս վրայ բարձրաձայն ծիծաղ մ'է փրթաւ հանդիսականաց մէջ։

— Մի՛ խնդաք, ըսաւ Տիւբրէ. ըսածիս պէս կ'ըլլար՝ եթէ նիւթը մտածելու կարողութիւն ունենար. վասն զի տարրաբանութիւնը յայտնի կը ցուցնէ որ մեր մարմնոյն ամեն մասերը նոյն նիւթական սկզբունքն ունին. սակայն մէջերնէդ մէկը կրնա՞յ ինծի ըսել թէ երբեք մատուըներովը, ոտուըներովը, ուսերովը կամ ստամոքսովը մտածած ըլլայ։ —

Այս հարցման վրայ դարձեալ ժողովականաց խնտալը բռնեց. բայց Վիկտօրին խնտալնին դադրեցուց ըսելով թէ ամենքը գիտէին որ ըղեղն է մտածողը։

— Վայրկեան մը, ըսաւ Տիւբրէ. առանց շուտով խնդիրները շլուծենք. վասն զի եթէ նիւթը կարող է մտածելու, չեմ հասկընար թէ ինչու համար իմ բազուկներս ու սրունքներս պիտի չկարենան խորհիլ ըղեղիս պէս։ Սակայն սեպենք թէ այսպէս ըլլայ. բայց երբև բըժիշկ ըղեղին ինչ ըլլալը սորվեր եմ, և արդ խղճմտանքովս կրնամ ապահովցընել զձեզ թէ անկարելի է որ մաքէս իսկ կարենամ անցընել՝ թէ ինքը կարողութիւն ունենայ մտածելու։ Եթէ դու գիտես, Պարոն Վիկտօր, մեծ աղէկութիւն մ'ըրած կ'ըլլաս եթէ մեզի ալ բացատրես։ — Բան մը չես ըսեր. ուրեմն պէտք է հետևցնեմ որ ուրիշներէն աւելի բան մը չես գիտեր, և թէ ըղեղը առաջ կը բերուի հոգւոյ էութիւնը ժխտելու համար, որով մարդուս մտածելիքն ալ քիչ կ'ըլլայ։ Բայց տեսնենք թէ ինչպէս այս կարծիքը ոմանց ընդունելի եղաւ։

Հոգին՝ որ 'ի մեզ խոհուն և կամեցող էակ է, գործարանի մը պէտք ունի մարմնոյ այլ և այլ մասանց շարժմունք ազդելու համար. այս գործարանն է ըղեղը. ինքն է որ իրմէ մեկնող ջղաց օգնութեամբը՝ որոնք մարմնոյ ամենայն մասերը կը հասնին, իրաւցնէ հրաշալի արագութեամբ մը այս մասանց շարժմունք կու տայ։ Այսպէս ահա հազիւ թէ հոգիս կը մտածէ որ այս գիրքը կարդամ՝ թէև կ'երկըննայ որ գիրքն առնեմ։ Կ'ուզեմ տեսնել թէ ինչ կ'ըլլայ եւս, ու իսկոյն գլուխս ու մարմինս եւս կը դառնան, նոյն իսկ փափաքիս վրայ խորհրդածութիւն ընելէն առաջ։ Բայց որովհետև անհրաժեշտ միջնորդ մ'է շարժման ու զգացմանց, ոմանք հաստատեցին որ զգացողն և ուզողն ալ ինքն ըլլայ. որով իրեն շնորհեցին այն գործը որ միայն հոգւոյ կրնայ վերաբերիլ. վասն զի ըղեղը՝ նիւթական գործարան մ'ըլլալով, չէր կրնար կատարել այսպիսի աննիւթական գործ մը՝ ինչպէս որ է մտածելը։

Հոգին ուրեմն աննիւթ էակ մ'է իր գործոցը պէս, և որովհետև չէր կրնար մարմնոյ կամ ինքնին ըղեղի մէկ մասն ըլլալ, առանց անոր բնութեանը հաղորդակից ըլլալու, պէտք է որ անկախ ըլլայ 'ի մարմնոյ. իսկ արդ եթէ անկախ է՝ մարմնոյ հետ մէկտեղ չկորսուիր. հետևաբար՝ ամենայն ինչ մարմնոյ հետ չմեռնիր։

Արդէն մեզի համար մեծ բան մ'է հոգւոյ անմահ ըլլալը. բայց եթէ անմահ է՝ անոր պատճառը կայ, վասն զի ամենայն ինչ իրեն մէկ պատճառն ունի, և Անդրէաս նոյնը մեզի հասկըցուց ըսելով թէ կ'իմանար ուր կ'ուզէի խօսքս հանգչեցնել։ Ի՞նչ պատճառաւ է ուրեմն որ Աստուած դրեր է 'ի մեզ աննիւթական տարր մը բոլորովին տարբեր մեր մարմնէն, մսի և ոսկորաց այն բաղադրութենէն՝ որ ենթակայ է եղծանելու, որ կը ծնանի, կ'ուտէ, կը խմէ, ժամանակ մը կ'ապրի և խոտոյ կամ անասնոյ պէս կը մեռնի։ Ինչու համար հաստատեր է 'ի մեզ այս ազնուականագոյն տարրը, որ կարող է հաճոյք ու ցաւ զգալու, ճանչնալու ու սիրելու, մաքովը վերանալու ինչուան 'ի խոկումն աշխարհիս, և ըմբռնելու յայնժամ տիրող կարգաւորութիւնն ու գեղեցկութիւնները, և հետևաբար մինչև 'ի ծանօթութիւն և 'ի սէր այնչափ հրաշալեաց արարչին, որ և բացարձակ բաշխող է այնչափ բարութեանց։

— Խնդրեմ, ըսաւ Անդրէաս. բայց ետեւէ ըլլալէն առաջ թէ ինչու Աստուած հոգին ստեղծեր է, ապահով պէտք է ըլլալ թէ Աստուած կայ։

— Ի՞նչպէս. թէ Աստուած կայ, գոչեց Տիւբրէ։ Գիտէի, Անդրէաս, թէ քու առաջին հարցմունքդ զմեզ շատ հեռուները պիտի պտըտցնէր. բայց ամենեւին չէի կրնար ենթադրել որ ինչուան զմեզ հոս բերէ որ պարտաւորինք Աստուծոյ էութիւնը ապացուցանելու։ Շատ ապերջանիկ կ'ըլլաս եթէ այսմ չհաւատաս. և ինչպէս ան ատեն պիտի ցաւիմ վրադ։

— Ո՛հ չէ, Պարոն, այն տեղերը չեմ բարեբաղդաբար։ Բայց շիտակն ըսելով՝ տղայութենէս 'ի վեր լսեր եմ մեր ժողովրդապետին քրիստոնէականի ժամանակ այս բանիս վրայ խօսիլը, անկէ ետքը ամենեւին միտքս այս նիւթոյս վրայ բանեցուցած չեմ։ Հիմա որ խընդրոյն մէջն ենք՝ շատ կ'ախորժէի լուսաւորուիլ և հաստատուիլ համոզմունքի մը մէջ, զոր՝ ինչպէս կը տեսնես, չեմ ուզեր փոխել։ Մէջերնիս շատերը նոյն հանգամանաց մէջ են, և անշուշտ եմ որ ամենքը մեծաւ գոհութեամբ մտիկ կ'ընեն այս նիւթոյս նկատմամբ հրամանքիդ ըսելիքները։

— Ուրախակից եմ, Անդրէաս, այսպէս անկեղծ խօսելուդ համար. շնորհակալ եմ նաև որ ինծի առանց առիթ մը կու տաս Աստուծոյ ամենակարողութեանը, մեծութեանն ու բարութեանը վրայ խօսելու, զոր ապացուցանելու համար բաւական է իր գործերը ցուցընել։ Չեմ կրնար ոչ քեզի՝ և ոչ ալ ունկնդիրներէս մէկուն այս նախատինքն ընել, իբրև թէ վայրկեան մ'ալ կարող ըլլաք մտածելու թէ այս աշխարհքս ըստ պատահման շինուած ըլլայ։ Պատահումը կամ բաղդը ոչինչ մի է. այն անիմաստ բառերէն մէկն է որ կը գործածենք բացատրելու համար ինչ որ չենք հասկընար։ Չկրնար ըլլալ, Լէոնարտոս, որ դուն՝ ճարտարդ յարուեստի ոստայնանկութեան, հաւատաս թէ բաղդը՝ որ անկարող է թելերուն զանազան մասերը ամփոփելու, կարող եղած ըլլայ այսպիսի մէջէմէջ գործ մը առաջ բերելու, ինչպէս որ են ախգերը։

— Յայտնի է թէ չէ, պատասխանեց Լէոնարտոս. բայց կ'ըսեն թէ աշխարհքս ստեղծուած չէ՝ այլ միշտ եղած է։

— Եւ ով են այս ըսողները. տգէտներ՝ որոնք բան մը սորված չեն, և որոնք հին ծթռած և ամենուն աչքէն ինկած մոլորութիւններ կ'երկնեն։ Ընդհակառակն ըստ ամենայն հետաքննութեան իմաստնոց յայտնի եղած է մեր օրերը որ աշխարհքս միշտ եղած չէ։ Միայն Ս. Գիրքը չէ որ անոր ստեղծման պատմութիւնը կ'ընէ. նոյնը կը կարդանք բնութեան գրքին ամեն երեսին վրայ, հողագնտոյս խաւերուն մէջ, ինչպէս 'ի ծագս լերանց՝ նոյնպէս յընդերս երկրի։ Այս պատմութիւնն անջնջելի տառերով գրուած է մեր թանգարաններուն հաւաքմանցը մէջ։

Գալով մարդուս՝ նոյնպէս միայն Ս. Գիրքը չէ մեզի սորվեցնողը իր էութեան աշխարհիս վրայ ամենահին չըլլալը. ընսոյն հաստատեցին նաև ուսմունք իրենց զարգացմամբը. որով միայն տգէտներն են մարդուս աշխարհիս վրայ երևնալը յանհունս հինցընողները։ Այս կողմանէ ալ ուրեմն ստիպեալ ենք ճանչնալու որ ինչպէս աշխարհս նոյնպէս նաև մարդս ալ միշտ եղած չէ։

Ո՛ւր մնաց որ եթէ մարդուս բնութիւնը քննելու ըլլանք՝ չենք կրնար չըհաւատալ որ ատեն մը արարչի մը ձեռքով ձևացած չըլլայ։ Յազգէ յազգ վեր ելլալով կը տեսնենք որ ամեն մարդ իր հօրէն ու մօրէն ծնած ու կրթուած է, որոնք իրենք ալ իրենց ծնողքէն, և այսպէս յաջորդաբար։ Բայց վերջապէս կը հասնինք առաջին մարդուն, առաջին կնկան որոնք հայր ու մայր ունեցած չեն. արդ կրնա՞նք ըսել թէ ասոնք իրենք իրենցմէ ծնած են. այս բանս այլանդակ մտածութիւն մը կ'ըլլար որ չկրնար բնաւ մէկու մը միտքէն անցնիլ, վասն զի ան որ չկայ ու չէ՝ չկրնար ինքիրմէ ըլլալ։ Ենթադրենք որ մարդս

բնութեան մէջ գտնուող չեմ գիտեր ինչ սերմնիկէ մը ծնած ըլլայ. բայց դուք աղէկ գիտէք թէ տղայութիւնը ինչ պէտքեր ունի. ըստ այսմ մտածեցէք դեռածին էակ մը որ ինքիրեն պարտաւորեալ ըլլայ ապրելու և մեծնալու՝ առանց ծնողացն օգնութեանը, որոնք խնամքով ամենայն տկարութեանցը ձեռնտու կ'ուզեն ըլլալ։

— Յիմարական բան է, գոչեց Ռոսվոյ՝ որ իբրև ընտանեացը վրայ սաստիկ սէր ունեցող ծանօթ էր ամենուն. տղայ մը առանց ծնողացը խնամքին չկրնար ոչ թէ մէկ օր մը՝ այլ և ոչ մէկ ժամ մը ապրիլ։

— Ինծի համար՝ որ բժիշկ եմ, շարունակեց Տիւբրէ, ուրիշ խորհրդածութիւն պէտք չէ համոզուելու համար թէ մարդս ստեղծուած է և կազմուած է ամենայն գործարաններովն ու յատկութիւններովը, և արդէն իսկ բանականութեամբ և զօրութեամբ ճոխացած։ Արդ կը հասկընաք ուրեմն թէ ինչ հրաշալի հանճար պէտք եղած է զմարդ ստեղծելու համար. խորհրդածեր էք երբեք դուք ձեր վրայ. մտածեր էք երբեք մանաւանդ այն զարմանալի ամբողջութեանը վրայ, որոնք կատարեալ ներդաշնակութեամբ իր վախճանին յատուկ միութիւն մը կը բաղկացնեն։ Քններ ու սորվեր էք այս մարմնոյն կազմուածքը որ կատարելութեամբը կը գերազանցէ նաև մեր ամենէն ճարտարաշէն մեքենաները. Քեզի կը հարցընեմ դարձեալ, Լէոնարտոս, որ կրնաս այս բաղդատութիւնն ընել։

— Ո՛հ, Պարոն, ըսաւ Լէոնարտոս, շատ անգամ մտածեր եմ և կը խոստովանիմ որ ամենէն հանճարեղ արուեստներն ալ մարդկային մարմնոյն համեմատութեամբ բան մը ըսել չեն։

— Դիտեր ես, խօսքը առաջ տարաւ Տիւբրէ, մեր անդամները կայացնող լծակաց խաղը և մկանանց անըմբռնելի կերպով կծկելը՝ որով կը շարժինք։ Կ'ըմբռնես գործարանաց գերազանց տրամադրութիւնը որով կերածնիս արիւն կը փոխուի, և տարածուելով մարմնոյ ամեն մասանց մէջ առողջութիւն և կեանք կը պատճառէ։ Կ'ըմբռնես մեր զգայարանաց կազմութիւնը որ զարմանալի ևս է. ականջին՝ որ օդէն պատճառեալ տկար թաղանթի մը ծածանմամբը զանազան հեռաւորութեամբ եղող մարմնոց հնչիւնները կը լսեցնէ մեզի, և հաւասարապէս զգալ կու տայ որոտման վեհ դղրդումը որ կը թաւալի 'ի բարձունս օդոց, և առ ոստս թևածող միջատին նրբաձայն բզզիւնը. աչքին՝ որ բիւր անգամ աւելի զարմանալի է, որ քանի մը գծերով պզտիկ միջոցի մը վրայ նկարեալ պատկերի մը օգնութեամբ՝ մէկ նայուածքով շատ փարսախներու գիւղային տեսարանը իր մէջը կը բովանդակէ։

Խորհրդածեր ես երբեք, կը հարցընեմ քեզի, մարդուս վրայ՝ որ արարչագործութեան գլուխ գործոցն է. և եթէ խորհրդածեր ես, կրցեր ես ուրիշ բան ընել՝ բայց եթէ մտքովդ վերանալ 'ի խոկումն յանհունս մեծ էակին, որ կրցեր է այսպիսի հրաշալիք մը ստեղծել։

Բայց թողունք մարդկային մարմինը և աչքերնիս դարձընենք այն բիւրաւոր էակաց վրայ որոնցմով լի են երկիրս, օդն ու ջուրը, և որոնց կազմուածքին զարմանալի զանազանութիւնը երևակայութեան սահմաններէն դուրս է։ Ձեռք առնենք այն միջատներէն մէկը որ իրենց փոքրկութեամբը գրեթէ մեր աչքին չեն երևար։ Այն մարմնոյն վրայ իրան, գլուխ, թևեր և անդամներ կան. գլխոյն վրայ աչքեր կան, և աչաց մէջ թաղանթք՝ հիւթք՝ ցանցատեսակ՝ ջիղք և գնդերը. իրանին վրայ կենսական անհրաժեշտ գործարանները, շատ մը առուներով ամենայն կողմ կը բաժնուին. ամեն անդամոց մէջ բաժանեալ մասեր կան, յօդակապեր՝ որոնք ճկունութիւն կու տան իրեն, և մկանունք՝ որոնցմով կը շարժի. յետոյ աւելի ներսով զանազան բնութեամբ և իրարմէ տարբեր գործածութեան համար անօթներ, և այս անօթոց ներսը մնուցիչ հեղանիւթ մը որ կը շրջագայի։ Ո՞ր ձեռ-

քը կարող ըլլար է առանց փափկաշնորհ վայելուչ գործուած մը կազմելու։

Հիմա աչքերնիս երկրիս վրայ յառենք. ինչ մեծահրաշ և գեղեցիկ տեսարան մեր աչացն առջև կը բացուի։ Հոս՝ ճոխ արօտով ծածկեալ ընդարձակ դաշտեր կամ դալարագեղ պայծառութեամբ պճնեալ ծիծաղուէտ մարգեր. հոն՝ այգիներու բարեձև դրասանգներով զարդարուած բլրոց կողեր, որոնց բարունակները աշնան գոյնզգոյն կը փայփըլին, կամ մայրիներով ծածկուած բլուրներ՝ որոնց թանձրախիտ տերևները կը հրաւիրեն զմեզ գալու իրենց ներքև հովանի և զովութիւն գտնելու. ալ հեռուն՝ բարձր լեռներ, որոնք դէպ 'ի երկինք կ'ամբառնան իրենց հսկայաբերձ ձիւնապատ և սառնապատ գագաթունքը, որոնք մեր աղբերացն յաւերժական պահպանարաններն են։ Տեսէք առուակներուն իրենց կողերէն դար 'ի վար իջնալը, որոնք դգջելով զով հովիտներուն մէջ կը ղեռան. տեսէք իրենց հաւաքուիլը վեհընթաց գետեր ձևացնելու համար, որոնք ամենայն կողմ հարստութիւն և կենդանութիւն կը սփռեն, և վերջապէս կ'երթան իրենց աղբերակնէն շատ հեռու՝ իրենց ջրոց հարկը տալու ծովուն։ Տեսէք ծովերն ու ովկիանոսները զորոնք ազգութիւնը երբեմն իբրև արգելք կը համարէր մերձաւորութեան ազգաց, և մարդուս լուսափայլ հանճարովը ամենէն աւելի երագ հաղորդականութեան միջոցն եղան ժողովրդոց։ Տեսէք ընդհանուր թէ ինչպէս ճարտարութիւնն ու վաճառականութիւնը, խելաց օգնութեամբ՝ որ Աստուծոյ մէկ պարգևն է, կը կենդանացնէ, կը մշակէ, կերպարանափոխ կ'ընէ այս հողագունդը, դիւրութիւն և բարեկեցութիւն կը պարգևէ այն երկիրներուն ալ որոնք տրտաքսապէս անբեղուն կը սեպուին, ամենայն կլիմայից բերքերն ու հանգստութիւնը հոն ալ փոխադրելով։

Զարմանանք արդ գիշերուան և ցորեկուան յարատև իրարու յաջորդելուն վրայ՝ պարբերաբար ճօճելով իրենց աճեցող և պակսող տևողութեանը մէջ. եղանակաց հաստատուն յաջորդութեանը վրայ, որոնք ըստ ժամանակին ծաղիկ և պտուղ կը հասցընեն. ջերմութեան վրայ՝ որ կ'արգասաւորէ երկիրը, և եղեմանց վրայ՝ որ կը հանգչեցնեն զայն։ Դիտենք արեգական ընթացքը որ առաւօտը ոսկեղինիկ ալեաց մէջէն կը ծագի, որ կէսօրը չեշտակի կ'արձըկէ ճառագայթները մեր դաշտերուն վրայ, որպէս զի մեր պտուղներն հասունցընէ և անդաստանները ճոխացնէ, և իրիկունները կը հանգչի ծիրանեփառ ամպերու մէջ. տեսնենք մերթ ընդ մերթ բացուիլը այն ամպոց եռանէն՝ որոնցմէ բարեբար անձրևներ կը հոսին։ Վերջապէս՝ երբ հորիզոնին մէջ աներևութանայ, աղուոր գիշերներուն հանդարտութեանը վրայ զարմանանք, երբ ամենայն ինչ կը լռէ երկրիս վրայ, որպէս զի մարդս իր հանգիստը վայելէ, կամ թէ որպէս զի բնութեան լռութեան մէջ խորհի և խոկայ։ Սքանչանանք անտառն աստեղազարդ երկնքին մեծվայելչութեանը վրայ, որ լուսաճաճանչ կամարի մը պէս գլխընուս վրայ կախուած է, և ուր բիւրաւոր աշխարհներ անհուն միջոցին մէջ կը շարժին։

Դիտենք իրենց ընթացիցը մէջ աստղերը, որոնք հրաշալի կանոնաւորութեամբ իրենց թաւալումը կը կատարեն. ամեն տարի, ամեն օր կու գան այն տեղը ուր որ պէտք է ըլլան, միջոցի մէջ շատ մը հարիւրաւոր միլիոն փարսախաց շրջաններ ընելէն ետքը։ Սլանանք մտքով երկնից անչափելի անհունութեանը մէջ, ուր աշխարհները այնպէս ցանուած են՝ ինչպէս թէ աւազը մեր ծովեզերաց վրայ, և ուր յաւիտենականութիւնը կը տեսնէ արևներուն փայլիլն ու անհետանալը. որոնց լոյսը՝ ամեն մանրերկրորդ եօթանասուն հազար փարսախ կտրելու արագութեամբ՝ չկրնար ինչուան մեզի հասնիլ մարդու մը ամբողջ կենացը ժամանակ։ Այս անհունութեան գաղափարին առջև երևակայութիւննիս կ'ընկճուի, և

այնչափ մեծվայելչութիւն և հրաշալիք տեսնելով, այսչափ բարերարութեանց վրայ մտածելով՝ ի՞նչպէս կարելի է չճանչնալ Աստուծոյ կարողութիւնն ու բարութիւնը. Ինչպէս մեծարանաց ըղձացմամբ լուռ մունջ չխոնարհիլ 'ի պաշտել զինքն և 'ի սիրել: —

Տիւքրէ կանկ առաւ նկարագրութեանը պատճառած յուղմանը տեղիք տալով, և ժողովականք զմայլած առջևնին բացած նկարին մեծութեանը վրայ՝ քիչ մը ժամանակ զարմանօք լուռ կեցան: Վիքթոլէն նախ և առաջ այս լռութիւնն ընդհատեց դիտողութիւն ընել տալով՝ թէ այս ամեն բանին պատճառը կրնայինք տալ այնպիսի իմացականութիւն մը ըմբռնելով՝ որ թափանցէ և կենդանացնէ նիւթոյն ամենայն մասերը:

— Գիտեմ որ աներկիւղ այս բանս ըսողներ եղած են, վրայ բերաւ Տիւքրէ, և ասոր պատասխանը տուի արդէն, նիւթոյն խորհելու և խորհրդածելու անկարելիութեանը վրայ խօսելով: Ի՞նչ կրնայ ըլլալ նիւթոյն ամեն կողմը թափանցող իմացականութիւնը՝ եթէ ոչ Աստուած. միայն թէ նիւթոյն իւրաքանչիւր մասունքը ոչ միայն Աստուծոյ մէկ կտորը չէր ըլլար, այլ Աստուած ինքնին: Ան ատեն Աստուած կ'ըլլար այս փայտին կտորը, խոտին շիւղը, սա գամը, տերևը, կոպիճը. նոյնպէս նաև դուք, ես, ձեռքերս, ոտքերս, ըղունգներս, կերածս ու դուրս ձգածս և կոխած տիղմս: Ամենայն ինչ Աստուած կ'ըլլար՝ բաց 'ի յԱստուծոյ: Մարդուս սրտին դէմ կու գայ այսպիսի հրէշ մըտածութիւն մը:

Մարդկային մտաց այս զառանցմանը մէջ ինչպէս կարելի չէ տեսնել վախճան և կնիք ամբարտաւանութիւնը, որ սխալելով ամենայն էականաց սկիզբ մը ճանչնալու, լաւ կը համարի բաց յԱստուծոյ ամեն ուրիշ պատճառի ընծայել զայն, վասն զի հարկ կ'ըլլայ որ այս գերագոյն էակէն ունեցած կախումը խոստովանի, հնազանդի, պաշտէ և ծառայէ. լաւ եւս է իրեն համար հալածել զԱստուած յերկնից, որպէս զի խունկ և աղօթք չմատուցանէ:

Բայց տեսէք, սիրելիք իմ, ինչպէս մարդուս միտքը կը մոլորի երբ ուղղութեան ճամբաներէն դուրս կ'ելլայ: Իբրև միամիտ կը յանդիմանեն զմեզ յաճախ, զմեզ որ կը հաւատանք Աստուծոյ, իր նախախնամութեանն ու բարութեանը. բայց ինչ աւելի մեծ միամտութիւն եղած է, քան այն մարդկանցը որոնք առանց այլանդակ մտածութիւնները կ'ընդունին: Չեն ուզեր հաւատալ Աստուծոյ մը որ զաշխարհս ստեղծեր է, և բաղդի կարգաւորիչ զօրութեանը հաւատք կ'ընծայեն: Աստուծոյ և իրեն գերագոյն իմացականութեանը չեն հաւատար, որ աշխարհքիս օրէնքներ տուած է և մարդկային մարմնոյն հրաշալիքը կառուցած է, և նիւթոյ իմացականութիւնը կ'ընդունին: Զօրեղերս կառավարող նախախնամութեան չեն հաւատար, և նիւթոյն կարողութիւն կու տան աստեղաց ընթացքը կանոնաւորելու, զանոնք իրենց շրջանին մէջ բռնելու, եղանակաց ցորեկուան և գիշերուան յաջորդութիւնը պահպանելու, և երկրիս կարգ կանոն, շարժմունք և կեանք տալու: Ո՛վ յիմար ամբարտաւանութիւն. ով կուրութիւն մարդկային մտաց:

Բարեկամք իմ, ոչ ումեք այսպիսի մոլորութեան տեսարան մը ընծայենք: Ուզելով ռամիկ ժողովրդենէ վեր ըլլալ, ուրանալով ինչ որ ամենայն ժամանակի մեծամեծ հանճարներն ալ հաւատացեր են, և ընդունելով այնպիսի դրութիւններ՝ որոնց անխելք միամիտները միայն կրնան հաւանիլ, վախնանք որ չըլլայ թէ քան զանմիտ անասուններն աւելի նուաստանանք: Այս խորհրդածութեանց վրայ կը թողում որ խորհիք ինչուան մեր յաջորդ խօսակցութիւնը: —

Ազնիւ բժիշկը այս խօսքերն ըսելով քաշուեցաւ, և ժողովքը ցրուեցաւ՝ իրեն խօսակցութեան ազդեցութեամբը յուզեալ:

ՌԱԲԷ

Կը շարունակուի:

# ՍՊԱՆԻՈՅ

## Աշխարհագրական, քաղաքական և պատմական հին և նոր վիճակը։

Սպանիա՝ զոր նախնիք Իբերիա, Եսպերիա կ'անուանէին, Եւրոպայի հարաւային տէրութիւններէն մէկը, իբերական կամ սպանիական ցամաքակղզւոյն մեծ մասը բռնած է, ընդ մէջ 36° 0' 30" – 43° 46' հիւսիսային լայնութեան աստիճաններուն, ընդ մէջ 1° արեւելեան աստիճանին և 'ի միջոց արեւմտեան 11° 36' արեւմտեան աստիճաններուն։ Հիւսիսային կողմանէ պատած են Պիւրենեանք, Գիտասսոա և Գիսգայայ կամ Կասգոնիոյ ծոցը. արեւմտեան կողմանէ Ատլանտեան ովկիանոսը և Բորդուկալ. 'ի հարաւոյ Ատլանտեան ովկիանոսը, Ճիպիլդէրայի նեղուցն ու Միջերկրականը, ու յարեւելից՝ Միջերկրականը։ Մայրաքաղաքն է Մատրիտ։



Մատրիտ.

Բովանդակ Սպանիոյ երկրին մակերեւոյթն է՝ մէկտեղ առնելով նաև Պալէարեան և Գանարեան կղզիները 507,036 քառակուսի հազարամետր։ Բնակիչն էր 1723ին 7,625,000. — 1768ին 9,307,803-1787ին 10,409,879 — 1826ին 14,154,341. — 1842ին 12,054,008 և 1860ին 15,673,536։ Զարմանալի է բնակչաց բաժանմունքը Սպանիոյ երկիրներուն մէջ. կան գաւառներ որոնք Ռուսաստանի մէջ եղածներուն նման գրեթէ բոլորովին ամայի են. ինչպէս է օրինակի համար Էստրէմատուրա գաւառը. կան ուրիշներ ալ որոնք սաստիկ բազմամարդ են իրենց դրացի տէրութեանց նման։ Հռովմայեցւոց իշխանութեան ներքև եղած ժամանակ Սպանիոյ բնակչաց թիւը 40 միլիոն կը համարուի. իսկ Վիսիգոթաց ու Մաւրիտանացւոց ժամանակ 30 միլիոն։ Վերջին դարերուս զարհուրելի կերպով նուազեցաւ ժողովուրդը. 1778ի պաշտօնական հրովարտակաց համեմատ նոյն ատեն Սպանիոյ մէջ երեւէ ձգուած 1,511 փոքրիկ քաղաքք և աւանք կը համրուէին։ Ըստ ներկայ վիճակագրութեան կը գիտցուի որ 148 գլխաւոր քաղաքք կամ ոստանք կան, 4,716 փոքրիկ քաղաքք, 6,627 մեծ աւանք, 14,375 գիւղք կամ աւանք, 2,251 հանգրուանք կամ ագարակք (fermes ou métairies), 837 ախոռք կամ փակարանք կենդանեաց (enclos) 1;930,824 տունք։

Սպանիա բարձր ու ընդարձակ սարահարթ մըն է, ու շատ մը մերկ ու անմայրի լերանց պարեր ունի. այս պարերն են. Ա. Պիւրենեանք՝ որ հիւսիս-արեւելեան կողմանէ զինքը Գաղղիայէն կը բաժնեն և կ'երկըննան դէպ 'ի արեւմուտք Գիսգայայ ծոցին երկայնութեամբ, ընդ մէջ Կալիցիոյ և Աստուրիոյ, և կը կոչուին Կանդաբրեան լերինք։ Բ. Իբերեան լերինք՝ որոնք 'ի հիւսիսոյ դէպ 'ի հարաւ կ'երկըննան, և երկիրը երկու զառ 'ի թափ կը բաժ-



Բիքատոր .

նեն, մէկը արեւելեան կամ Միջերկրական ծովուն կողմը, միւսը արեւմտեան կամ Ատլանտեան ովկիանոսին կողմը ։ Իբերեան լեռները արեւմտեան կողմանէ շատ մը պզտիկ գօտիներու կը բաժնուին. այսպէս է Թարբեդեան–Վեգդոնեան գօտին՝ ընդ մէջ Տուրոյի և Դակոյի, մէջերնին բովանդակելով Էյլոնի (Aylon), Կուատարրամայի, Աւիլայի, Կրըտոսի, Ֆրանցհիայի և Կաթայի պարերը ։ Լուսիտանեան կամ Օրէդօ-Հէրմինեան գօտին, ընդ մէջ Դակոյի և Կուատիանայի, ձևացեալ 'ի լերանց Դոլետոյի և Կուատալուբայի ու Էսդրամատուրայի պարերէն. Մորենայ պտոր՝ ընդ մէջ Կուատիանայի և Կուատալքիվիրի՝ որոնք Ատլանտեան ովկիանոսը կը թափին. Գեդիկեան կամ Նեվա-

տեան պարն՝ ընդ մէջ կուատալքիվիրի և Միջերկրեան ծովուն եզերաց։ Հըրուանդաններու մէջ նշանաւորներն են Ատլանտեան ովկիանոսին վրայ Օրդեկալ, Ֆինիսդէր, Դրաֆալկար և Դարիֆա սարերը. Միջերկրական ծովուն վըրայ Եւրոպայի սրածայրը՝ կադա, Բալոս, Ս. Մարտինոս, Ս. Սեբաստիանոս և Քրէոզ սարերը։

Սպանիան առոգանող գետերն են Պիտասաոա, Նալոն, Մինոյ, Տուրոյ, Դակոյ, կուատիանա և կուատալքիվիր, որոնք Ատլանտեան ովկիանոսը կը վազեն. Սեկուրա, Խուգար, կուատալավիար, Էպրոյ, Լոպրէկադ, Դերա, որոնք Միջերկրական ծովը կը թափին։ Այս ջրոց ընթացքն ընդհանրապէս քիչ տեղ նաւարկելիք են, շատ խոր չըլլալնուն և սաստիկ յորդութիւն ունենալնուն պատճառաւ, և հաղորդակցութեան քիչ օգուտ կ՚ընեն։ Սպանիոյ մէջ մէկ մեծ ձկնաւէտ լճէ մը որ Ալպուֆերա կը կոչուի՝ և մէկ մ՚ալ ջրի մածուածէ մը՝ 'ի հիւս—արևելից կարթագինէի, զոր փոքրիկ ծով կ՚անուանեն, ուրիշ նշանաւոր լիճ չկայ։ Գլխաւոր ջրանցքն են Արագոնի կամ կայսերականը, Գասդիլիայինը, Մանզանարէսինը՝ Մատրիտէն մինչև Խարամա. Մուրցհիոյ ջրանցքը՝ կուարտալէն ինչուան կարթագինէ. Ալպացհեդէինը՝ Ալպացհեգէէն ինչուան Խուգար։

Բնութիւնը կարծես թէ ամենայն ինչ ըրած է Սպանիոյ համար։ Եթէ կլիմայն սաստիկ տաք է 'ի հարաւոյ, ուրիշ ամեն տեղ բարեխառն է. օդը ամենալաւ և երկինքը գերազանց գեղեցկութիւն ունի. միայն երկու քամի ունի որոնք հիւանդութիւններ կը պատճառեն. կալլէկոյ ցուրտ և խայթող հովը որ հիւսիսէն կը փչէ, և սոլանոյ հարաւային քամին։ Երկիրը որ ընդհանրապէս արգաւանդ է, արուեստական ոռոգութեան զանցառութեամբ ալ անմշակ մասեր ունի։ Բերքն է ցորեն, բրինձ, ձիթապտուղ, թուզ, նուռ, կիտրոն, նարինջ, խաղող, դափնի, թութ. մշակելի են նաև արմաւենի, պանանա, շաքարի եղէգ, բամբակ, կանեփ, կտաւ և գունաւորիչ տունկեր։ Լերանց մէջ շատ հանքեր ունի. և եթէ ոսկին ու արծաթը առատ էր հին ատեն և հիմա սպառած կ՚երևան, սակայն կան երկաթ, անագ, կապար, ծարրաքար, սնդիկ, զառկաքար[1], աղբորակ, պաղլեղ, արջասպ, ծծումբ, խրուկ[2], նաւթ, քարածուխ, ամենագեղեցիկ մարմարիոններ, ալապաստր, կրանիդ, ակունք և այլն։ Ամենայն եւրոպական անասունք կ՚ապրին 'ի Սպանիա, և ձիոց, ջորեաց, այծից, և մէրինոս ոչխարներուն ցեղերը շատ անուանի են։ Մեղուաց և շերամի որդան մշակութիւնն ալ շատ է։

Գալով քաղաքական կառավարութեան, Սպանիա սահմանադրական միապետութիւն է, և ժառանգական՝ թէ արական և թէ իգական գծով։ Կառավարութիւնը յանձնուած է թագաւորի կամ թագուհւոյ մը և Գորդէս ժողովոյն։ Թագաւորը անբռնաբարելի է և անպատասխանատու. օրէնք կը հաստատէ, կը հրատարակէ և կատարել կուտայ. պատերազմ և խաղաղութիւն կը հրատարակէ, քաղաքագիտական յարաբերութեանց տեսչութիւնը կ՚ընէ, պաշտօնատէրներ կ՚անուանէ, վարձք և պատուանուն կըբաշխէ. կը ժողվէ, կ՚ընդհատէ և կը լուծանէ Գորդէս ժողովը, բայց պարտաւորութեամբ իրեք ամսուան միջոցի մէջ դարձեալ զիրենք հաւաքելու. արդարութիւնն ալ իր անուամբը կը կատարուի։ Զկրնար առանց Գորդէս ժողովոյն թոյլտուութեան երկրին մէկ մասը թողուլ կամ զրաւի տալ, օտարազգի զօրքեր ընդունիլ թագաւորութեան մէջ, օտար ազգի մը տուրք տալ, յարձակողական պատերազմի համար ուրիշ ազգաց դաշնակից ըլլալ, թագաւորութենէն հրաժարիլ, և ամուսնանալ. այս վերջին պայմանը անմիջապէս իրեն յաջորդողին վրայ ալ է։ Հիմա թագուհին կ՚ըն-

1 Գղ. Cobalt. Տճ. [illegible]։
2 Գղ. Cinabre. Տճ. [illegible]։



Բնակիչ Մուրցիոյ.



Սպանիացի օրիորդ.

գանի 'ի Գորդէս ժողովոյն 34,000,000 րէալ, (հազիւ 9 միլիոն Ֆր.) փեսան՝ 2,400,000, մայր Թագուհին՝ 3,000,000, ինֆանդը 550,000, և իբրև ժառանգ 2,450,000։ Գորդէս ժողովը կը կազմուի 'ի Ծերակուտէն և Երեսփոխանաց խորհրդարանէն. Ծերակուտին թիւը որոշեալ չէ, զորոնք կ'ընտրէ Թագուհին երեք անգամ երեսփոխան եղածներուն մէջէն, և որոնք 80,000 'րէալ եկամուտ պէտք է որ ունենան, նոյնպէս 8,000 րէալ հարկ վճարող կալուածատեարց մէջէն. եկեղեցական, դատաստանական, վարչական և բանակի առաջին կարգի պաշտօնէից մէջէն, և իրենց իշխանութիւնը ձրի ու ցկեանս է։ Թագաւորին որդիքն և որոշեալ ժառանգը ծերակուտի անդամ են ըստ իրաւանց։ Ծերակոյտը օրէնսդրական պարտքերէն դուրս՝ կը դատէ սահմանադրութիւնը փճացնել

ուղղող ամբաստանեալ պաշտօնեաները, Թագաւորին անձին և տէրութեան ապահովութեանը դէմ եղած դաւաճանութիւնները, և այն ոճիրներուն մէջ որ իր անդամները տագնապեալ են։ Խորհրդարանը 349 երեսփոխաններէ բաղկացեալ է, 35,000 մարդու մէկ անձն առնելով, և ուղղակի կ'անուանուին իւրաքանչիւր գաւառաց ընտրողներէն. իշխանութիւնին ձրի է և 3 տարի կը տևէ. ելևմտական օրինաց վըրայ կը խորհին։ Երեսփոխանք, ինչպէս նաև ծերակուտի անդամք՝ անբռնաբարելի են։ Պաշտօնեայք պատասխանատու գործավարք են ընդ մէջ Թագաւորին և օրէնսդրական իշխանութեան. Թուով հիմա ինն են, և են սոքա. Խորհրդոյ նախագահը, պաշտօնեայք արտաքին գործոց (del Estado), ելևմտից, Թողութեան և արդարութեան, պատերազմի, ծովային, ներքին գործոց, կալուածոց, հրամանատարութեան, կրթութեան և հասարակաց աշխատութեանց (del Fomento)։

ԺԵդ դարէն ինչուան 1833 Սպանիա քաղաքագիտական և տեսչութեան աչքով նայելով, այս հետագայ բաժանմունքս ունեցաւ.

| | Նահանգք | Գլ. տեղիք |
|---|---|---|
| Թագ. Արակոնի | Գադալոնիա | Պարցելոնա |
| | Արակոնա | Սարակոսհա |
| | Վալենցա | Վալենցա |
| Թագ. Նաւարրայի | | Բամբլոնա |
| Թագ. Մուրցիոյ | | Մուրցհիա |
| Հին Գասդիլիա | Պուրկոս | Պուրկոս |
| | Սորիա | Սորիա |
| | Սեկովիա | Սեկովիա |
| | Ա'վիլա | Ա'վիլա |
| Գասգեան նահանգք | Վիզգայա | Վիլվայ |
| | Կիբուսգոա | Ս. Սեբաստիանոս |
| | Ալաւա | Վիդորիա |
| Նոր Գասդիլիա | Կուատալախարա | Կուատալախարա |
| | Մատրիտ | Մատրիտ |
| | Դոլէտոյ | Դոլէտոյ |
| | Գուէնգա | Գուէնգա |
| | Մանչ | Սհիուտատ–Րէալ |
| Անտալուսիա | Խաէն | Խաէն |
| | Գորտովա | Գորտովա |
| | Սեւիլեա | Սեւիլեա |
| | Կրանատա | Կրանատա |
| Թագ. Մայորգայ | | Բալմա |
| Թագ. Կալիցհիոյ | | Սանդիակոյ |
| Թագ. Լէոնի | Աստուրիա | Ովիէտոյ |
| | Լէոն | Լէոն |
| | Պալենցհիա | Պալենցհիա |
| | Պալեատոլիտ | Պալեատոլիտ |
| | Դորոյ | Դորոյ |
| | Սհամորա | Սհամորա |
| | Սալամանգա | Սալամանգա |
| Թագ. Էսդրամատուրայ | | Պատախոսհ |

Սպանիոյ երկիրը սահմանակից կըղզիներովը հանդերձ 1833ին Նոյեմբերի 30ին Թագաւորական հրովարտակաւ ըստ զինուորական տեսութեան 12 գըլխաւոր կուսակալութիւն բաժնուեցաւ և 5 փոքր վիճակ. հիմակուան ժամանակս է 13 գլխ. կուսակալութիւն և 3 փոքրիկ վիճակ։ Իսկ ելեւմտական և մատակարարական տեսութեան համեմատ 48 նահանգ կամ քաղաքական ոստիկանութիւն, որոնց վարչութիւնը ներքին պաշտօնէին գործակալաց ձեռքովը կը կատարուի։ Ահաւասիկ կուսակալութեանց և ոստիկանութեանց պատկերը ըստ 1865 տարւոյն։

| Կուսակալութիւնք | Ոստիկանութիւնք |
|---|---|
| Նոր Գասդիլիա | Մատրիտ |
| | Կուատալախարա |
| | Դոլետօ |
| | Գուենգա |
| | Սհիուտատ-Րէալ |
| | Սեկօվիա |
| Պուրկոս | Պուրկոս |
| | Լօկրօնեօ |
| | Սանդանտէր |
| | Սօրիա |
| Հին Գասդիլիա և Լէօն | Օվիեդօ |
| | Աւիլա |
| | Լէօն |
| | Բալենցհիա |
| | Պալեատոլիտ |
| | Սալամանգա |
| | Սհամօրա |
| Կալիցիա | Գօրունեա |
| | Լուկօ |
| | Օրենսէ |
| | Բօնդէվետրա |
| Էսդրէմատուրա | Պատախօս |
| | Գասէրէս |
| Անտալուսիա | Սեւիլեա |
| | Հուելվա |
| | Գատիս |
| | Գօրտովա |
| Կրանատա | Խաէն |
| | Կրանատա |
| | Ալմերիա |
| | Մալակա |
| Վալենցա և Մուրցհիա | Վալենցա |
| | Ալիգանդէս |
| | Գասդելլօնա-տէ-լա-Բլանա |
| | Մուրցհիա |
| | Ալպացհէդէ |
| Գադալօնիա | Պարցհելօնա |
| | Դարրակօնա |
| | Լէրիտա |
| | Խերօնա |



Մալակա։

| | |
|---|---|
| Արակօնա | Սհարակոսհա |
| | Հուեսքա |
| | Դերուէլ |
| Նաւարրա | Բամբլօնա |
| Բասքեան նահանգք | Վիդօրիա |
| | Վիլվաօ |
| | Ս. Սեբաստիանոս |
| Պալէարեանք | Բալմա |

Փոքրիկ կառավարութիւնքն են Մահօն, Իվիցհա՝ Պալէարեանց կուսակալութեան մէջ. Ճիպրալդար՝ Գատիսհի ոստիկանութեան մէջ. Սէուդա՝ Ափրիկէի ծովեզերաց վրայ և Գանարեան կղզիները։ Սպանիոյ քաղաքական բաժանմանցը մէջ կը զանազանուին 1.

Նոյնակերպ Սպանիա (España uniforme), որ է ըսել՝ Սպանիա պարզ սահմանադրական, բովանդակելով իր մէջը Գասդիլլիոյ և Լէոնի թագաւորութեանց հին նահանգները, որք յամենայնի մի և նոյն կերպն ունին 'ի մատակարարութեան մասին, 'ի տուրս, 'ի դատաստանական, քաղաքական և զինուորական վարչութիւնս: 2. Նմանակերպ Սպանիա (España assimilada), որ է ըսել՝ Սպանիա ոչ նոյնակերպ, բովանդակելով յինքեան Արագոնի թագաւորութեան նահանգները, որոնք կը զանազանուին իրարմէ ըստ տուրց և ըստ քանի մը մասնական իրաւանց: 3. Ֆուէրալ Սպանիա (España foreal) որ կը պարունակէ իր մէջը Պասգեան նահանգներն ու Նաւարրայինը, որոնք զինուորական ծառայութենէ և արքունական սակերու իրաւունքէն ազատ են, և իրենց հին նահանգական իրաւունքը պահած են:

Ըստ ծովային տեսութեան Սպանիա 3 բաժնուած է և իւրաքանչիւր մասը ծովակալի մը ձեռքով կը մատակարարուի: Լէոնի կղզւոյն կամ Գատիսի մասը կը բովանդակէ յինքեան Կրանատայի, Անտալուսիայի, Էսդրէմատուրայի, Նոր Գասդիլլիոյ թագաւորութիւնները և Գանարեանքը: Ֆերրոլի մասին մէջ կը բովանդակուին Կալիցիա, Հին Գասդիլլիա, Նաւարրա և Պասգեան նահանգք. իսկ կարթագինէի մէջ Արագոնա, Գադալոնիա, Պալենցհիայի թագաւորութիւնը և Պալէարեան կղզիք: Իւրաքանչիւր ծովակալ ձեռքին տակ հրամանատարներ ունի՝ որոնք շատ նաւահանգիստներու կը հսկեն, և իւրաքանչիւր նաւահանգստի մէջ ստորին սպայ մը կայ կամ ծովակալի օգնական:

Դատաստանական 12 բարձրագոյն ատեան ունի Սպանիա, և քաղաքներն են Բալմա, Պարցհելոնա, Պուրկոս, Գասէրէս, Ալպացհէդէ, Կրանատա, Մատրիտ, Գորունեա, Բամբլոնա, Ովիետոյ, Սարակոսհա, Սեւիլեա, Պալենցհիա և Պալեատոլիտհ. և 484 ստորին ատեան:

Սպանիոյ ելեմտական մատակարարութիւնը մեծ խառնակութեան մէջ է և միշտ անստուգութիւն կայ թուոց նկատմամբ: 1864ին հաշուէտումարը (budget) ելքը 680 միլիոնի կը հանէր, և մուտքը 681 միլիոնի: Հասարակաց պարտքը 4 միլիար 123 միլիոն կը համարուի, որուն շահը ամենայն ճշդութեամբ կը վճարուի միշտ:

Սպանիոյ բանակը այսպէս կազմուած է. Թիկնապահք թագուհւոյն 283 անձինք. մշտամնայ հետևակազօր՝ պահեստի գունդն ալ մէջը սեպելով 169,972. Թնդանօթաձիգք 12,369. ճարտարապետական գունդ 4,016. հեծելազօր 16,824. քաղաքական պահանորդք 10,911. տեղական զինուորք 19,629. համագումար 234,004 անձինք, որոնցմէ 9,203ը սպայք են. և 21,600 երիվարք կամ ջորիք:

Զինուորական նաւատորմիղը՝ որ Փերդինանտոս Է-ի ատեն գրեթէ բոլորովին ոչնչացաւ, հիմա զգալի ուժ մը ստացաւ, մասնաւորապէս իր շոգեշարժ նաւերուն շատնալովը. 1845ին միայն 680 ձիու ուժ ունէր. այսօրուան օրս 18,000 ձիու ուժ ունի: Նաւատորմիղը կը բաղկանայ 2 առաջին կարգի նաւերէ, 19 Ֆրէկատէ, 13 քորվէտէ, 18 թնդանօթաձիգէ, 29 կէօլէդէ, 16 բեռնաբարձէ, 43 ֆըլոտգէ, և այլն. ընդ ամենը 123 նաւ (26 առագաստաւոր, 97 շոգեշարժ), կրելով 1285 թնդանօթ, 1,121 սպայ, 14,680 նաւաստի, և 7,980 ծովային զինուոր:

Սպանիա որ երբեմն գրեթէ բովանդակ Նոր-Աշխարհին տէրն էր, ներկայապէս ամենաքիչ կալուած ունի. Ովկիանիոյ մէջ Փիլիպպեանք, Մարիանեանք և Գարոլինեանք. Ափրիկէի մէջ Սէուդա, Բենոն տէ Վէլէզ, Մելիլեա, Ալուսհեմաս, Անապոն և Գանարեան կղզիները. Ամերիկայի մէջ Գուպա, Բուէրդոյ-Ռիգոյ, և փոքր Անտիլեանց մէջ Աստուածածնայ կղզիները: 1788ին կալուածներէն 110 միլիոն ֆր. վաճառք կ'ընդունէր. 1829ին այս վաճառաբերութիւնը 19 միլիոն ֆր. կը հանէր:



Կին շինական 'ի շրջակայս Վալեատոլիտոյի։

Սպանիոյ կրօնքն ուղղափառութիւն է. ինն արքեպիսկոպոսութիւն կը համբուէր 1865ին բովանդակ Սպանիոյ մէջ կայուածներն ալ մէկտեղ առնելով, (Սանդիակոյ, Պուրկոս, Սարակոսա, Դարրակոնա, Վալենցիա, Կրանատա, Սեւիլեա, Վալեատոլիտ (1857) և Դոլետոյ՝ որ Սպանիոյ նախագահ աթոռն է). 53 եպիսկոպոսութիւն, 65 կաթողիկէք, 100 կանոնիկոսական եկեղեցի, և 20,462 ժողովրդապետութիւնք։ Բովանդակ եկեղեցականաց թիւն էր 1830ին 152,305 հոգի. իսկ հիմա գրեթէ 70,000։ Սպանիոյ մէջ 1834ին 1940 վանք կար, որոնց մէջ 30,905 կրօնաւորք և 24,700 միանձնուհիք կային։ Կրօնաւորաց վանքերը 1835ին ցրուեցան և հիմա միայն դէպ 'ի Ասիա առաքելութեան տուներ կան 'ի Վալեատոլիտ, Ոքանիա և Մոնդէակուտոյ. բայց հիմա ալ 600 կուսաստան կայ 19,000 մայրապետով, և 14,000

կրօնաւորք առանց մենաստանի, որոնք տէրութենէն թոշակ կ'ընդունին իրենց ստացուածքը յափշտակած ըլլալուն համար։

Նախնական կրթութիւնը շատ ետ մնացած է 'ի Սպանիա. 1852ին մինչ տղոց 17,009 դպրոց կար, և 5,021 աղջկանց. 1860ին աշակերտաց թիւն էր 1,100,000, և միայն 3,129,000 անձինք կային կարդալ գիտցող, և հազիւ թէ 1,200,000 հոգի, կարդալ և գրել մէկտեղ գիտցող։ Բարձրագոյն կրթութեան աւելի խնամք տարուած է. 774 լատինուսումն դպրոց և 8 թագաւորական մարզատունք կը պատրաստեն ընդպատանիս՝ եթէ ըլլայ կղերանոց (թուով 50) մտնելու համար, և եթէ ըլլայ համալսարաններու մէջ ուսմունքներին լրացնելու համար. 10 համալսարանաց քաղաքներն են Մատրիտ, Պարցհելոնա, Կրանատա, Ովիետօ, Սալամանգա, Սեւիլեա, Սանդիակօ, Վալենցհիա, Պալեատոլիտ և Սարակօսա։

Երկրագործութիւնը շատ զարգացած չէ 'ի Սպանիա. աշխատողաց քիչութիւնը, եկեղեցականաց կալուածներուն անժառանգելի ըլլալու իրաւունքը, ազնուականաց անդրանկի մասին ժառանգութեան իրաւունքը, ամենայն կողմ քալող հօտից արածուելու իրաւունքը, Սպանիացւոց անհոգութիւնը, որոնք Ամերիկայի հանքերովն հարստանալով՝ սովորեցան դրացի ազգերէն խնդրելու ինչ որ իրենց երկիրը կրնար արդիւնաբերել, և մուրացկանութեան արմատացած ախտը, վերջապէս ամենայն ինչ ձեռնտու եղաւ շատ մը բեղնաւոր երկիրներ՝ ամայի մարգեր և ճըշմարիտ անապատներ դարձընելու։ Երկիրներուն հազիւ թէ կէսը մշակուած է։

Ճարտարութիւնք և արուեստք ատենօք շատ զարգացած էին։ Միջին դարու մէջ արժանապէս մեծ համբաւ ունէին Սեւիլլիոյ, Կրանատայի և Պաէսհայի բրդեղէն և մետաքսեղէն գործուածները, Մուրցհիոյ ասուիները և Դոլետոյի զէնքերը։ Մաւրիտանացւոց և Հրէից արտաքսումը, քաղաքական և կրօնական հալածանքն, արքունական ձեռագործաց սեպհական մենավաճառութիւնը, առանձինն արուեստից վըրայ եղած ծանրաբեռն իրաւունքը՝ զոր և տէրութեան անյագ գործավարները աւելի ևս կը ծանրացնէին, ըստ ամենայնի ձեռագործաց խնալուն պատճառ եղան։ Սեւիլլիոյ մէջ 1519ին 16,000 մետաքսեղինաց արուեստանոցք կային 130,000 գործաւորով. իսկ 1673ին հազիւ թէ 405 մետաքսի գործարանք։ Սեկովիոյ գործարանները՝ ուր 34,000 գործաւորք տարին 25,000 կտոր բան կը շինէին, 1788ին միայն 400 կտորի վերածուեր էր։ Մեր օրերուն ճարտարութիւնք և արուեստք քիչ մը շարժմունք առած են, բայց արտաքին մղմամբ. այսպէս՝ Գադալոնիոյ մէջ գաղղիացի կամ անգղիացի են գործատանց ամեն գլխաւորքն ու տեսուչք։ Եկեղեցականաց հին ստացուածոց շատը արուեստագիտաց ձեռքն անցած են, և վանքերն արուեստանոցք և մանարանք դարձած են։ Մետաղագործական արուեստք զարգացած են 'ի Կիբուսգոա, Պիսգայա, Արագոնա, Գադալոնիա և Կրանատայի նահանգին մէջ։ Մետաքսի գործարաններ կան 'ի Պարցհելոնա, Մանրէզա, Գարրակոնա, Դոլետոյ, Սեւիլեա և Պալենցհիա. բրդեղէն դիպակք 'ի Սեկովիա, Արեվալոյ, Քոլմինար, Ալսհոա. կտաւեղէնք՝ 'ի Կալիցիա և 'ի Գադալոնիա. սեկք՝ 'ի Պարցհելոնա, Գորտովա, Պուրկոս, Դոլետոյ,



Գորտովա։

Կրանատա և Մատրիտ. ապակեղէնք 'ի Պարցհելոնա. բիւրեղք՝ 'ի Ս. Իլտեփոնս կղզին. խեցեղէն անօթք՝ յԱնտուխար. թուղթ՝ 'ի Գադալոնիա և Պալենցհիայի նահանգին մէջ։ Հրացան գլնուց ձե-

ռազմորմիներ կամ Գասգեան նահանգաց մէջ, 'ի Գազալոնիա և 'ի Մեկոմիա․ կարող զէնքեր 'ի Դոլետոյ և 'ի Կիբուագոա․ Հրանօթոց ձուլարանք 'ի Սեւիլեա, Լիէէրկան, Դրուպիա և Պարցհելոնա, և այլն։

Սպանիոյ վաճառականութիւնը շատ վնասուեցաւ այն խռովութիւններէն որոնք պատճառ եղան Ամերիկայի կալուածները կորսնցնելու։ Առեւտուրի համար մեծամեծ դժուարութիւններ են գետակաց և ջրանցից քիչ նաւարկելի ըլլալը, աղէկ ճամբաներ չըլլալը, ապահով չըլլալու վախը, ներքին մաքսատուները։ Շոգեկառաց ճամբաները նորերս յառաջադիմելու և շատնալու հետ են։ 1861 տարւոյն ընդհանուր վաճառականութենէ թիւը կ'ելլէր 888,325,000 ֆրանք, որոնցմէ 545,000,000ը ներս մտած վաճառուց համար և 342,000,000 դուրս հանուածներուն համար էր։ Ներս մտած վաճառքն են ցորեն, բամբակէ, մանած և մետաքսի գործուածներ, ոսկերչական ապրանք, պճինք, պղնձեղէն և երկաթեղէն ապրանք, նորելուկ բաներ, պողվատ, շինութեան փայտ, Գաղղիոյ՝ Անգղիոյ և Գերմանիոյ հոտաւէտ նիւթեր։ Իսկ դուրս ելածներն են գինի, չոր պտուղ, բուրդ, սնդիկ, կապար, սունկ, սեկ, օղի, ձէթ, կալաքար, մետաքս և ծխախոտ։

Սպանիոյ վաճառական նաւահանգիստները գրեթէ 6,000 նաւ կը զինեն, որոնցմէ 1,500ը 'ի Գատիս, 1,500 'ի Մալակա, 800 Պալէարեան կղզեաց մէջ, 700 'ի Պարցհելոնա, 600 'ի Կարթագինէ։

Կը շարունակուի։

---

Պէտք է անպատշաճութեան մը համբերել, երբ կարելի չէ այնմ դարման ընել՝ բայց եթէ մեծագոյն վնասու։

Ո՛վ զքեզ այնպէս յաճախ խաբեր է՝ ինչպէս դու քեզ։

Փախիր 'ի հաճոյից, անոնք քու ետեւէդ կու գան։

ԲԵՆԻԱՄԻՆ ՖՐԱՆՔԼԻՆ

## ՍԱՐԴՔ

(Տես երես 138)

### ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

### ՑԻՇԱՏԱԿԱՑ ԲԱՆՔ

### Է

Բայց ամեն զբօսանք իր վերջն ունի․ և ստէպ այս վերջը անախորժ կ'ըլլայ։ Այսպէս եղաւ մեր ընտանութեան զուարճութիւնն ալ։

Ձմեռն հասաւ իր մառախլապատ քօղովը․ դառն հովերը սկսան շնչել․ աւլեցին տարին որչափ առջեւնին գտան միջատային որսական․ նուազեցաւ կերակուրը․ հետզհետէ պակսեցաւ որսիկը, և հազիւ երբեք փնտռելով կարելի կ'ըլլար ջերմ տեղուանք գտնել․ այն ալ վատոյժ, անհամ և կիսամեռ սառոյցքէն․ զոր հազիւ թէ ակռան դպցընելու արժանի կը սեպէր։

Կը ցաւէի խեղճ էակին վրայ․ մանաւանդ քանի որ միտքս կու գար այն զոհը որ ամենօրեայ հրով ինծի համար կը ճենճերէր, սիրտս կը խշխշար յիշելով այն տագնապը որուն մէջ կը գտնուէր սարդիս որովայնը։ Կը մտածէի ճար մ'ընել, ճար չէի գտնար․ վասն զի ցուրտը քանի գնաց սաստկացաւ, և անոր բռնութեանը առջին ամենայն ճանճական շունչ անհետացաւ․ անանկ որ ամենայն մանրախոյզ ապաստակութիւն՝ արեւելք կամ արեւմուտք, անօգուտ ելք կ'ունենար։

Լքայ փնտռելէն․ ձանձրացայ այլոց որսորդաց յանձնելէն․ և այս լքմանս մէջ՝ ամեն օր, ամեն ժամ սարդիս անշընչանալը տեսնել կը սպասէի։ Այդ կորստեան մտածութիւնը ինծի ծանր կ'երեւնար, յետ այնչափ ատեն սարդը՝ խնամքով պահելէս։

Ը

Բայց խօսքը սարդի մը վրայ ըլլալով՝ մտքերնուս անցածը պարզութեամբ զուրցելու ենք, կարծեմ։

— Ի՛նչ մտածութիւն, պիտոր ըսեն ինծի, ի՛նչ այլանդակ ախորժ. սարդ մը գրօսանաց նիւթ առնուլ։

Արդար զարմացումն, չեմ ժխտեր. որուն խորհրդակցութիւնը անշուշտ գեղեցկագունին 'ի գրօսանաց ընտրութեանը մէջ կը փայլի։

Բայց որովհետև սրտերնուս անօթին շէնքը, թէպէտ և նիւթական կազմութեամբ նման, այլ բերմամբք տարբեր, զմեզ այս կամ այն առարկային կապուիլ կը յորդորէ, չենք կրնար ժխտել որ անմեղադրելի ենք ամենքնիս այս ընտրութեանց մէջ, մեր սրտին բերմանը հետևելով. որով այն որ ինծի ախորժելի է, ուրիշի ատելի է. և նոյնպէս ասոր հակառակը։

Սրտերնուս բերմունքը մըն է ուրեմն որ 'ի մեզ ախորժի մը քաղցրութիւնը արթնցնելով՝ այս կամ այն բանին սըրտերնիս կապել կու տայ։

Այսպէս ոմն թռչնոյ մը ախորժ կը ձգէ ձայնեղ ըլլալուն համար՝ թէպէտ և գեղեցկութենէ զուրկ է, կամ գեղեցկութիւն ունի և ձայնեղ չէ, և կամ ոչ մէկն ունի և ոչ մէկալ ձիրքը. և սակայն կը խնամէ, կը սիրէ, կը հոգայ, վրան կը գուրգուրայ, և ամեն վտանգէ ազատ պահելու կը հսկէ։

Ասոր հակառակ այլ ոմն այսպիսի ախորժ մը տեսնելով՝ կը ծիծաղի և կ'արհամարհէ։ Նուազ չար։

Բայց ահա ուրիշ մը անդիէն որ աւելի տարօրինակ ախորժով՝ հաւու մը կը յարուի, կամ բադի մը, կամ ծովային անշահ թռչնոյ մը, և կամ մանր չորքոտանւոյ մը որ շատ նման է մկան, և որք առ հասարակ անօգուտ են իր պիտոյից, չըսեմ վնասաբերք։

Այս ամենայն ընտրութեանց մէջ ուրեմն մարդ բնական ախորժի մը բըղգացմանը կը հետևի, առանց զանազանելու գեղեցիկը տգեղէն, կամ օգտակարը վնասակարէն. և ըստ այսմ կը տեսնես որ մէկ մըն ալ անշահ այծու մը կը յարուի, փոխանակ ուրիշ աւելի պատուական էակի մը վրայ սիրտը կապելու։

Ուրեմն զուարճութեան առարկայ են. եթէ օգտակար չեն, բայց գոնէ ըզբօսանք մը կ'ազդեն, և անոր համար շահաւոր են։

Իմ սարդս ալ այս կարգը դասելու է։ Բարով վայելեն սիրողք՝ թռչունը, հաւը, մուկը կամ այծը. չեմ նախանձիր անոնց գրօսանաց. բայց չարհամարհեն ախորժս սարդի մը նկատմամբ. աչացս առջին բարձրագոյն յարգ մը ունի. վնաս մը չունենալէն զատ՝ օգուտ մ'ունի, ձանձրացուցիչ հիւրերէ զիս ազատելու կ'աշխատի։

Թ

Արդ ամեն անգամուն որ անզբաղ աչքս սարդիս վրայ կը հանգչէր, չէի կրնար ցաւակցութեան հառաչանք մը լռել։ — «Խեղճ էակ, կ'ըսէի, ինչ մեծ համբերութեան պէտք ունի այս դառն եղանակին վշտաց համբերելու»։ Եւ առանց մտածելու այն խնամքը, որով կը հսկէ բնութիւնը այս մանր էակաց վրայ ձմեռուան խստութեանց մէջ, — «Ո՛ գիտէ, կ'ըսէի լռելեայն անոր. ո՛ գիտէ քանի՜ քանի նեղութեամբ գիշեր ցորեկ կը տագնապիս անօթութեան խայթէն. գոնէ կարող ըլլայիր թմբրութեան քնոյ մը սփոփանքը վայելել, կը թեթևնային անշուշտ վշտերդ։ Բայց այն ձմեռնային թմբրութենէն ալ կը զրկէ զքեզ այս սենեկին փոքր ջերմութիւնը, և չներեր քեզի այն մխիթարութիւնը որ կը վայելեն ազգակիցքդ և այլ շատ էակներ, ծանր քնոյ թըմբրութեամբ մը մոռնալով աշխարհքը և սովուն վշտերը։

«Եթէ լեզու ունենայիր, եթէ կարենայիր բարբառ յօդել, ո՛ գիտէ որչափ տրտունջ վերցնէիր պիտի ինծի դէմ որ բոլոր թշուառութեանդ պատճառ եմ»։

Եօթնեակները կ'անցնէին։ Ամիս մը անցաւ, յետոյ երկու, սարդը դեռ եւս ծամ, անսուաղ կ'ապրէր։ Թէպէտ եւ շարժմունքները ծանրացեր էին, բայց երբեմն երբեմն բոյնէն կ'ելլէր շըրջան մը կ'ընէր, ու դէպ ինծի գաւաթիկին կողերուն կռթնելով՝ կարծես թէ հետս խօսիլ կ'ուզէր։

Որչափ փափագ կը զգայի այն ժամանակը անոր ներքին զգացմունքը գիտնալու, անոր մտածութեան շառաւիղը ըմբռնելու։ «Անշուշտ, կ'ըսէի միտքովս, հիմա բոլոր մտածութիւնը այն որսիկը պիտոր ըլլայ որ ազատած գլխքը կրնայ զօրացնել։ Ո՞ գիտէ ինչպէս սիրտը թունդ կ'ելլէ մտածելով վազուանը, այն վազը՝ որմէն կը կախուի թերեւս իր էութեան գեղեցկագոյն մասը»։

Այս կերպով անցան գառնագոյն օրերը։

Ծագեցաւ վերջապէս գեղեցկագոյն լոյս մը. Ջերմացաւ երկիրը. ծլեցան ծառերը, զարդարուեցաւ կանաչը դաշտական ծաղիկներով, եւ անոնց հետ որսական ազգն ալ արթնցաւ։ Այնուհետեւ բարեկենդանութեան օրերը սկսան խրախոյս հետէ հետ յաջորդել. ալ վըտանգ չկար սովի, եւ ուրախութեամբ կանչեցի — «Ուրեմն սարդս պիտոր ապրի»։

Սկսաւ գաւաթիկը որսով լեցուիլ. եւ այն ակնկալեալ հիւրոց անմեկնելի այցելութիւնը՝ պարարտացուցին խեղճ սովելոյն որովայնը։ Գիրացաւ, մեծցաւ ուռեցաւ։ Առաջ մէկ էր մեծութեամբ. անկէ ետքը կէս մ'ալ վրան աւելցուց։

Այնչափ գիրութեան՝ տունը անձկացաւ. հարկ էր նոր տուն մը շինել կամ նոյնը վերածել, աւելի հեշտին հանգչելու համար։ Երկրորդը դիւրագոյն էր, ծախքն ալ նուազ, բնակարանը վերածել որոշեց։

Կտրեց դէպ երկայնքը բնակարանին խողովակը, ու լայն բանալով՝ մէջ տեղի պարապը նոր հիւսուածքով մը գոցեց։ Հանգստացաւ։

Զբօսանքս սկսաւ. մեծ զուարճութիւն էր ինծի անանկ՝ ինչպէս այն սեւամորթ հսկայն բնակարանը թողլով՝ մէջ տեղը կ'ելլէր եւ իր երկայն բարակ սրունքները արձըկելով՝ ոստայնով ծածկած դիականց վրայ կ'արշաւէր զօռօզաբար, իբր յաղթական մը որ պատերազմէն ետքը՝ դաշտին վրայ ժուռ գալով՝ դիականց կոյտերով կը զուարճանայ։

## Ժ

Եւ այսպէս այնպէս կ'անցնէին օրերը. սարդս հանգիստ կեանք մը կը վարէր. ես զինքը դիտելով կը զուարճանայի. եւ անկեղծ սիրոյ կապ մը մեր բարեկամութեան քաղցրութիւնը կը յօրինէր։

Բայց իր ճանճորսութեան պատմութիւնը ամբողջացնելու համար հարկ է այս ալ զուրցենք։ Ինչպէս տեսանք, մինչեւ այս ատեն զոհ կ'ըլլար հասարակ ճանճերու որսորդութեամբ։ Օր մըն ալ, չեմ գիտեր ինչէն շարժած, մեծ ճանճ մը բռնեցի ու գաւաթիկին տակը փակեցի, եւ անցայ սարդիս ընելիքը դիտելու։

Առջի բերան վախնալ մը ցուցուց. չէր համարձակեր անոր մօտենալու։ Ամեն անգամուն որ ճանճը քովէն կ'անցնէր, կամ անզգուշութեամբ իրեն կը դպչէր, միշտ ետ ետ կը քաշուէր. երբեմն թաթերը վրան կ'երկնցնէր. բայց ճանճը ցնցուելուն պէս, մէկէն սարսափած մէկդի կ'ամփոփուէր։

Այս դիրքիս մէջ քանի մը ժամ անցաւ. ճանճը՝ ինչպէս է իր սովորութիւնը՝ շարունակ իրեն զարնուելով անհանգիստ կ'ընէր։ Տեսաւ որ ճար չկար, հարկ էր սիրտ ընել անանկ ձանձրալի հիւրէ մը ազատելու համար։

Կիրքէ շարժած՝ կարծեմ, երբ ճանճը մէյ մըն ալ գինովի պէս քովէն կը քերէր, շարժեցաւ, արձըկեց յանկարծ սրունքները, ճանկեց ճանճը եւ իրեն քաշեց։

Ծռիմ, տեսնամ որ արիւնք կը ծծէր։ Կը շարժէր, կը ցնցուէր ճանճը, բայց

անօգուտ։ Կամաց կամաց թուլցան անդամները, անշարժութիւնը տիրեց. միայն անանկ մը կ՚երևար որ երկուքն ալ ականջէն 'ի վար էական խօսակցութեան մը զբաղած էին։ Բայց քիչ մը ետքը տեսնեմ ճանճը մէկդի նետուած՝ կմախք անհիւթ և անկենդան։

Այն օրէն ետքը արհամարհեց հասարակ ճանճերը. անշուշտ մեծին համը չունէին, որուն յիշատակը կոկորդին ծայրը մնացած էր. բայց երբ իրենց ձանձրալի շարժմունքներովը զինքը շատ նեղացնէին, կը յարձկէր, կը մեռցնէր մէկդի կը նետէր, իբր անշահ էակներ։

Անկէ ետքը հարկ եղաւ փոխել որսորդութեան նպատակը. քիչ մը դըժուարին բան. նոյն տեսակ ճանճ շատ դիւրաւ չէր գտնուէր։

## ԺԱ

### Գերութեան կեանքի վերջ.

Երկու տարին լրացեր էր այն օրէն որ սարդս բանտեր էի. մէկ քանի ամիս ալ վրան անցեր էր։

Մինչև այս ժամանակը չէի կրցած սարդիս բուն տեսակը ստուգել. վասն զի կը վախնայի անհանգիստ ընելէն, և մէյ մ՚ ալ որ բոյնէն շատ քիչ սկսաւ դուրս ելլել։

Իր մութ գոյնը՝ շատ լոյս կը պահանջէր աղէկ դիտուելու համար։ Ի՞նչ ընէի։

Առի արևուն մէջ սկսայ դիտել։ Սաստիկ լոյսէն կենդանին սկսաւ խռովիլ, տագնապիլ, դէպ 'ի դաւաթիկին կողերը յարձկիլ աղաչանաց ցոյց տալով՝ զինքը այն նեղութենէն ազատելու։ Անօգուտ աշխատանք. կամ չէի հասկընար, և կամ չէի ուզեր հասկընալ։

Խեղճ էակը սաստիկ լոյսէն նեղուած, ինքզինքը ծածկել կ՚աշխատէր. բոյնը կը մտնէր. բայց արևը հոն ալ կը թափանցէր. կ՚անցնէր գետնայարկը, և դարձեալ արևուն լոյսը զինքը կը խայթէր։ Ցաւահարած կ՚ելլէր վերնայարկը, դէպ ինծի կու գար. կարծես թէ կ՚աղաչէր։ Պարապ աշխատութիւն։

Անոր տագնապողական շարժմունքները հետաքրքրութիւնս կը շարժէին, ու չէի կրնար հասկընալ որ չարաչար նեղութեան հետևանք են։

Աղէկ մը դիտելէն ետքը առի մէկ դի և առջի տեղը դրի։ Հանդարտեցաւ։ Բայց երկրորդ օրը նորէն նոյն փորձը կրկնեցի. և նորէն նոյն տագնապի շարժմանց ականատես եղայ։ Երրորդ օրը դարձեալ նոյն փորձը և դարձեալ նոյն հետևանքը։

## ԺԲ

Չորրորդ օրը լուսցաւ։ Տեսնեմ դանդաղութիւն մը տիրեր էր սարդին վըրայ. կը շարժի, բայց ինչպէս դժկամակութեամբ. սնունդ առնելու՝ անզգայ, ճանճերուն ներկայութեան՝ անտարբեր։ Կը դրդուեմ. քիչ մը կը շարժի, բայց առջի աշխուժութեան հետք մըն է վրան մնացած։ Արևու կը ցուցընեմ. տագնապի ցոյց կու տայ, բայց առջինէն նուազ արագաշարժութեամբ։

Այս անսովոր դանդաղութեան վիճակը օր օրուան վրայ կը ծանրանայ. ինչ և իցէ գրգիռ ազդեցութիւն չունենար վրան։ Կամաց կամաց կը սկսիմ վախնալ որ չըլլայ թէ կորսնցնեմ. և մտածելով որ յանցանքը անզգոյշ հետաքրքրութիւնս էր՝ կը ցաւէի։

Վերջապէս օր մը խեղճ կենդանւոյն էութեանը անիւը բոլորովին կանգ առաւ. մնաց անշարժ։

Բացի դաւաթիկը, առի մէկ դի՝ ճերմակ թղթի մը վրայ. դրդուեցի ծայրով մը. շարժելու անզգայ էր։ Դարձուցի կռնըկին վրայ. մնաց անշարժ։ Թեթև մը բռնեցի երկնցուցի սրունքներէն մէկը. ծանր ծանր քաշուելով ամփոփուեցաւ։ Ա՛լ հասկըցայ որ կեանքը թողեր էր զայն բոլորովին։

Ի՞նչ կը մնար ընել։

## ԺԳ

Նստեցայ առջեւը և վշտացած եղածին վրայ՝ սկսայ մեղադրանք դնել այն հետաքրքրութեանը՝ որ տարաժամ մահուան մը պատճառ եղեր էր։

Այս ատենս եղաւ որ պատկառելի քերթող մը յանկարծ սենեակս մտաւ, ու զիս սարդին առջին տեսնալով խորհրդածող դիրքի մէջ, ժպտեցաւ։

— Կը հասկընամ, կանչեց. պիտոր ըսես որ նորէն մտածութեանցդ արգելք ըլլալու կու գամ։

— Կը վրիպիք, պատասխանեցի, ձեր այցելութիւնը միշտ իր քաղցրութիւնն ունի. բայց ես առաւել այս ատենս որ անխոհեմ գործողութեան մը չար հետեւանքը կը զբաղեցնէ զիս։

— Անխոհեմ գործողութիւն. ահա ծանր խօսք մը. բայց եթէ ներելի է, այդ զբաղման նպատակը կրնամ իմանալ։

— Ամենայն իրաւամբ, կանչեցի. մանաւանդ որ քերթողի մը աւելի վայել է այդ զբաղմունքը քան թէ բնապատմի մը։

— Ուրեմն ի՞նչ է։

— Ամենապարզ գործողութիւն մը. զղջմամբ ու ցաւով դամբանական մը կը հիւսեմ. դառն հետեւանքի մը փոխարէն։

— Մութ բացատրութիւն, կանչեց ծիծաղելով, թերեւս հանգուցելոյն անունը լոյս ծագելով՝ խրթնութիւնը պարզէ։

— Չեմ տարակուսիր, ըսի. և անշուշտ ինծի ցաւակից կ՚ըլլաք երբ իմանաք որ երկու տարուան բարեկամ մը կորանցուցի, երեք աշնան զբօսանք մը. զուարճութիւն մը, որուն միայն յիշատակը կը մնայ ինծի հիմայ։

Ուշադրութեամբ մը ինծի նայեցաւ քերթողը, ու քիչ մը լուռ կենալէն ետքը,

— Յիրաւի, կանչեց, խօսքերդ ցաւակցութիւնս կը յորդորեն. երեք աշնան զուարճութիւն մը կորսնցնել յանկարծակի, քիչ բան չէ. բայց երկու տարուան ճշմարիտ բարեկամի մը կորուստը ամենածանր է հիմակուան ժամանակս որ՝ բարեկամութեան կանոնաւորիչը ժամաչափն է։

— Ո՛վ սիրտ քերթողի, կանչեցի ձեռքը սեղմելով, որ ժամանակին ու դէպքին համեմատ երանգ մը կը զգենու. ուրեմն կը վկայէք որ արդար է ցաւս, և կը համաձայնիք անշուշտ ինծի որ արհամարհութիւն կը համարիմ անարժան սեպել թէեւ ուշադրութեան մը այդ բարեկամիս յիշատակը. և այդ՝ իր դիակնացեալ մարմնոյն առջին։

Ըսի և ձեռքովս սարդիս դիակնացեալ մարմինը ցուցուցի։

Ծռեցաւ քերթողը որ ակնարկածս դիտէ, և զզուելով մը երեսը մէկ դի դարձընելով,

— Գարշելի երեւոյթ, կանչեց. այդ ահռելի սարդ մըն է։

— Այո՛, ըսի, բայց անմեղ արարած մը որ համբերութեան ու ճարտարութեան օրինակ է։

— Ըսածներուդ վրայ չեմ տարակուսիր. բայց կը յուսամ որ ինծի կը ներես ըսելու որ ատոր դժոխադէմ երեւոյթը ամենեւին անախորժ է։

— Անտարակոյս ուրիշի ախորժը կամ կարծիքը բռնադատել չեմ կրնար։

— Բայց դու ի՞նչպէս կրնաս ախորժիլ այդպիսի արարածոց գարշ տեսութիւնը։

— Պարզ մտածութեամբ մը. ամեն արարած իր յատուկ գեղեցկութիւնն ունի. և միայն բաղդատութեամբ մ՚է որ գեղեցկութեան նկատմամբ մէկը քան զմէկալը կը վերադասենք։

— Բայց չես կրնար ժխտել որ այդ բաղդատեալ տգեղութիւնը անհանդուրժելի կ՚ըլլայ՝ երբ վնասիչ յատկութիւն մ՚ ալ հետը բովանդակէ։

— Կը հասկընամ ինչ կ՚ուզէք ակնարկել, ըսի. սարդը թունաւոր է կ՚ուզէք ըսել, և իր կասկածելի երեւութին պատճառաւ պէտք է որ աւելի խորշելի ըլլայ։ Բայց գիտէք որ այդ նկատմամբ

ամէն կենդանի պէտք է որ խիթալի ու խորշելի ըլլայ։

— Ի՞նչպէս.

— Երբ խնդիրը անձնական պաշտպանութեան վրայ է, չկայ էակ մը որ երկիւղալի երես մը չցուցնէ։

— Այդ արդար է։

— Արդ սարդը ուր իր պէտոյից նիւթ չտեսներ՝ չվնասեր. և ըստ պարագայից ալ վնաս մը հասցնելու ըլլայ՝ այդ վնասը ոչինչ է։ Սակայն գիտցէք որ աւելի մտաւոր երկիւղի մը նախապաշարմամբ է որ կը խորշինք այդ էակէն, քան թէ իրական չարութեան մը ծանր հետևանքէն։

— Չեմ զարմանար փիլիսոփայ մըտացդ, և ոչ կը մեղադրեմ ընտրութեան ճաշակդ. ահա այն կենդանին որոյ տեսութիւնը զզուելի է ինծի, ընդհակառակն քեզի գեղեցկութեան մը գաղափարը կու տայ։ Եթէ խօսակցութիւննիս քիչ մըն ալ դեռ երկընցընենք, պիտոր ջանաս համոզել զիս որ այդ սարդը վնասակար չըլլալէն զատ՝ նաև օգտակար է։

— Այո, ըսի, և շատ խօսքերու պէտք չունիմ այդ բանը ցուցունելու։ Նախ մեր անձնական օգտէն չափենք այդ էակին օգտակարութիւնը. ինչ դիւրագայթ քան զմարդկային առողջութիւնը. թեթև հովէ մը գլուխը կը ծռէ, կը թալկանայ, կ'այլայլի. և այս էակն է որ իբր բուժիչ կը մատչի, իբր հիւանդութեան զարման տալով զայն՝ որոյ անունը միայն մահ կը գուժէ։ Վասն զի իր թոյնը ճարտար բժշկի մը ձեռքը հիւանդութեանց բուժիչ է։

Ո՞ւր թողունք այն ոստայնը որ այնչափ դառնութեանց առիթ է մաքրասէր աղախնայց. ընդհակառակն բժշկութիւնը կարօտով կը փնտռէ։ Ի Սպանիա 'ի հնուց հետէ սովորած են հաս գործել զայն և իբր բուժիչ գործածել ջերմանց. բայց ոչ առանց խոհեմ չափոյ. վասն զի արեան վրայ սաստիկ գրգռիչ ազդեցութիւն ունի. ուստի և այն ընդհատ ջերմանց կը մատակարարեն՝ որ բժշկութեան ամենայն կանոնաւոր դարմանոց ապստամբ են։ Նոյն ոստայնը չարհամարհեր վիրաբուժն իսկ. գիտէ զայն օգտակարապէս մարդկային շահուն գործածել. անով վիրաւորեալ մարմինը կը պատէ արեան հոսումը դադրեցնելու համար։

— Բժշկներդ զարմանքս կը գրգռեն, չեմ ուրանար. տարբեր երևութով կը սկսին ներկայացնել ինծի այն որ մինչև ցարդ իբր անպիտան նկատեր էի։

— Մարդիկ չե՞նք, ըսի. մենք մեզի վկայ կրնանք ըլլալ ինչպէս անձնասիրութեան և ապերախտութեան ենթակայ ենք։ Այն բարիքը որ մեզմէ չգար՝ և ոչ ալ մերիններուս անցունել կ'ուզենք։ Այդ խեղճ, արհամարհ էակը որ իբր մահապարտ միշտ կը հալածուի, իր ծննդեան ժամէն սկսեալ անհուն բարիք կ'ընէ մարդկութեան. կարծես թէ իր բոլոր էութիւնը մարդուս անդորրութեանը զոհ ըրած է։

Աչուըները անկեց քերթողը, ու ժըպտելով,

— « Տեսնենք, կանչեց, ինչ նոր միջոց կը գործածէ այդ վախճանին հասնելու համար »։

— « Ամենապարզ միջոց մը, ըսի, որ ամենօրեայ փորձով կը տեսնենք »։

Այս ըսելով պատուհանիս անկիւնը սարդի ոստայն մը մատնանիշ ըրի։ Սարդը չկար. բայց իր յաղթական կործանութեան հետքը օդուն մէջ 'ի կախ կը ծփծփային. վայրենիի մը հիւղ կը նմանէր թշնամեաց գէսերով զարդարուած։

— « Մինչև հիմայ խօսքերդ զիս կը համոզցնէին » կանչեց քերթողը ծիծաղելով, « հիմա նիւթական փորձն ալ կը յաւելուս. որուն դէմ դնել խօսք չզօրեր »։

— Վասն զի ստուգագոյն միջոցն է համոզման, ըսի։ Ատկէ կրնաք գուշակել ինչ կ'ուզեմ ակնարկել։

— Դժուարին բան մը չէ, պատասխանեց. շատ կենդանիք կան որ միջատաց որսորդութեան կը զբաղին. բայց գլխաւորապէս ատոնք են կարծեմ որ

ճանճերը ու մժեղները ջնջելու կ'աշխատին։

— Ուրեմն, ըսի, առկեց գուշակեցէք ինչ բարիք կ'ըլլան մեզի, և ինչպէս մեր տառապանքը թեթևցնելու կ'աշխատին։ Բայց եթէ մենք անոնց յարգը չենք ճանչնար, կան ժողովուրդք որ անոնց երախտագիտութեան պարտքը կը հատուցանեն։

— Հէ. լսենք այդ նոր ապացոյցը։

— Ելլենք, ըսի, մեր հորիզոնէն, անցնինք Անգլիեան կղզիները. հոն սարդք՝ հռչակաւոր են մեծութեամբ. բայց մեծութենէն աւելի նշանաւոր է իրենց անխոնջ աշխատութեան արդիւնքը, որով անունին ալ անմահացած է։

— Նայինք ինչպէս։

— Այն կլիմային տակ՝ զազրոտ միջատաց խումբերը կը զեռան, և անոնց վնասուց դէմ մարդկային հնարագիտութիւնը չզօրեր. բայց բնութիւնը սարդն իրեն օժանդակ տուեր է։ Սարդը այն երկիրները մաքրասէր աղախին մը կը փոխուի. որուն արթուն խնամոց առջին, ամենայն եկամուտ անհանգիստ հիւր կը սպառի, կ'անհետանայ։ Ասոր համար է որ ժողովրդեան սէրն ու յարգը գրաւած են, այն աստիճանի՝ որ արծաթով կը ստանան՝ ինչպէս անհրաժեշտ աղախնայք. և մասնաւոր վաճառանոցք ալ կան ուր սարդից առուտուր կ'ըլլուի։

— Գեղեցիկ վաճառք, կանչեց քերթողը զուարթութեամբ. կը մաղթեմ որ մենք ամենևին չկարօտինք։

— Այո, այո, ըսի. թող արհամարհ սեպուի մեր աչաց այդ էակը, մինչդեռ յոյլոց արժանաւոր պատիւը կ'ընդունի։ Վասն զի միայն այդչափ չէ իր յարգութեան ասպարէզը։ Նաև 'ի Սիպերիա, յայն հիւսիսաբնակ աշխարհը, ուր կարճատև ամառը արգելք մը չէ մժեղաց յանթիւ բազմութիւն տեսլուն, մեծագոյն յարգութիւն մ'է որ կ'ազդէ սարդը այն մարդկութեան մասին երախտագէտ սրտին։ Վասն զի հոն ճշմարիտ բարերարը յառաջ կը մատչի՝ այն անտանելի միջատաց խումբերը ջնջելով, որով օգուտ ու դիւրութիւն կը մատակարարէ մարդկութեան։ Իր խոհեմութեամբը, իր ամենակիրթ ճարտարութեամբը և իր մթնոլորտի փոփոխութեանց կանխազգաց ծանօթութեամբը, անանկ յարգութեան գաղափար մը ազդեր է Սիպերիայի բնիկ ժողովրդոց, որ շատ ցեղերու մէջ աւանդութեամբ ինջած է՝ աշխարհքիս ստեղծումը մեծ սարդի մը ընծայել։

Այս խօսքիս աչուըները բացաւ քերթողը, և բարձրաձայն ծիծաղելով մը,

— «Կ'երևակայեմ, կանչեց, ինչ մեծ սարդ եղած պիտոր ըլլայ, որ այդպէս մեծ աշխարհք մը կրցեր է ստեղծել։ Բայց արդ շատ է, շատ է, կը տեսնեմ որ դամբանականը ըստ արժանւոյն հիւսուեցաւ. արդիւնաբեր բարեկամի արժանաւոր գովեստ, որուն հակառակ զուրցելու խօսք չունիմ։ Բայց որովհետև ունկնդրաց սակաւութիւնը անոր փառաց նուաղութիւն մ'է, այս խորհուրդը կու տամ որ անոր վարուց պատմութիւնը ըստ օրինի գրուի, որ անոր յիշատակն ալ անմահանայ, և իր յաջորդաց փառքը և ևս աճի։

— Որչափ և ծիծաղով է խօսքերնիդ, ըսի, չեմ ժխտեր որ իր արդար տեսութիւնն ունի. մանաւանդ որ այսչափ ատեն իր գործոց և շարժմանց ականատես եղած եմ։ Փորձեմ տեսնեմ ինչպէս առաջնորդ կրնամ ըլլալ ինծի ամբարած դիտողութիւններս առաջարկել վախճանին հասնելու համար. և նպատակը անարգ չսեպուիր անշուշտ։ Չկայ աշխարհքիս վրայ էակ մը այնչափ արհամարհ և անարգ որ մարդկային ուշադրութեանը անարժան ըլլայ։ Մի և նոյն սկզբունքն է որ ստեղծեր է ընդհանուր էութիւնը. և մարդս իսկ անոր մէկ փոքր մասն է, թէպէտ մնոք քան զամենայն գերագոյն»։

Հ. Ց. Վ. ԽՍԱՎԸՐՏԵԱՆՑ

Կը շարունակուի:

### Վիճակագրութիւն Գաղղիոյ ։

Օրէնսդրաց ժողովքը մայիսի 28 և 29 նիստերուն մէջ դուրս հանած է օրինաց առաջարկութիւն մը, 'ի կազմութիւն երկուց Արկեղաց ապահովագրութեան յօգուտ գործաւորաց խումբերուն. այս Արկեղաց մին պիտի վճարէ այս ինչ որոշեալ գումար մը իր ապահովագրեալ վախճանելոյն ժառանգաց կամ որոնց որ կ'իյնայ, միւս Արկղը ցկեանս թոշակով մը պիտի օգնէ այն ապահովադրեալ գործաւորաց, որք իրենց արհեստը ընելու միջոց այնպիսի վէրք մը ստանան, որով ալ չկարենան աշխատիլ. իսկ որոնք որ կեանքերնին կորսնցունեն նոյն արհեստին պատճառաւ, անոնց այրեացը և դեռահասակ որդւոցը օգնութիւն պիտի ընէ ։ Գործաւորը կրնայ ապահովագրիլ, կամ մի անգամով բոլոր պահանջեալ դրամը տալով, և կամ տարեկան գումար մը վճարելով ։

Գաղղիա 26 միլիոն գործաւոր ունի, որոնցմէ 20 միլիոնը երկրագործք են, և մնացածները արհեստաւոր ։

Պ. տը Ֆոլքատ լա Ռոքէթին, երկրագործութեան, վաճառականութեան և հասարակաց աշխատութեանց պաշտօնէին, սոյն բանին համար ըրած յայտարարութիւնէն կ'առնուք հետևեալ վիճակագրական յօդուածները ։

« Հանքերու կողմանէ, ահաւասիկ վերջի հինգ տարիներու վիճակագրութիւններէն առաջ եկածը ։ Այս հանքաց մէջ կը համրուին 226,000 գործաւորք ։ Տարեկան արկածք ընդ վիրաւոր և ընդ մեռեալ 1848ի կ'ելնեն. վիրաւորելոց թիւն է 1511, իսկ մեռնողներունը 337 ։

« Արքունի ելումուտից նկատմամբ պէտք է ծանուցանել, որ գործաւորներէն մեռնողները տէրութեան մեծ անպատուութիւն մը չեն բերեր. միայն՝ արդարութիւնը կը պահանջէ որ անոնց այրեացը և որդւոց օգնութիւն մը ըլլուի. ուստի ասոնց կը կապուի երկու եկամուտ այն թոշակէն զոր գործաւորը պիտի ընդունէր՝ թէ որ բոլորովին աշխատանքի անկարող ընող վէրքով մը վիրաւորուէր ։

« Կը մնան 1511 վիրաւորք ։ Հաշիւները կը հաստատեն որ ասոնց ալ մեծ մասին վէրքերը ժամանակաւոր են, որով բոլորովին անկարող չեն ըլլար աշխատանաց ։ Այսպէսով, 100,000 գործաւորաց մէջէն միայն 320 պիտի մասնակցին այս օրինաց օգուտներուն և կրկին թոշակաց ։

« Երկաթուղեաց արհեստը շատ աւելի նուազ վտանգաւոր է ։ Ասիկայ կը գործածէ գրեթէ 100,000 հոգի ։

« Կ'առնում 1862 և 1863 տարիները. առաջնոյն մէջ 600 հոգի եղած են մեռեալք և վիրաւորք. երկրորդին մէջ 636 ։

« Ուրեմն երկաթուղեաց արհեստին առթիւ եղած վտանգները հանքաց մէջ եղածներէն անհամեմատ աւելի քիչ են ։ 100,000 մէջէն միայն 200 կամ քիչ աւելի անձանց պէտք պիտի ըլլայ վճարել ։

« Ուրիշ արհեստից մէջ հանդիպած արկածները խիստ սակաւաթիւ են ։ Ասոնք չեն գործածեր այնպիսի զօրաւոր մեքենայներ որոնք կը սպառնան կենաց և գործաւորաց մեծ բազմութեան մը մահուան պատճառ կ'ըլլան ։

---

### Շոգեշարժ մեքենայ 'ի գրաւի ։

Հեննոսեան գաւառաց մէջ Ցուխապուրկի կալուածատէր մը 1862ին բողոքեց Քոլոնիա-Մինտընի երկաթուղւոյն ընկերութեան դէմ, և խնդրեց որ երկաթուղւոյն անցնելուն պատճառաւ իւր կալուածոց եղած վնասուց հատուցում մ'ըլլուի ։ Դատաստանէ մը ետքը որ հինգ տարի տևեց, վճռեցաւ որ 1,500 տալերի գումար մը տրուի, զոր թէպէտ շատ անգամ կալուածատէրն խնդրեց, սակայն դատապարտեալ ընկերութիւնը կը դանդաղէր վճարելու ։

Այս տարի մարտի 29ին, մինչդեռ կառախումբը՝ Քոլոնիայէն դէպ 'ի Պեռլին ուղղեալ՝ Ցուխպուրկի կայարանը կը մտնէր, պաշտօնական նուիրակ մը որ ըստ կանոնի ամեն թուղթերն ունէր, ներկայացաւ ու գրաւի դրաւ շոգեշարժ մեքենայն որ լծեալ էր կառախումբին։

Կայարանին գլխաւորը ափշեցաւ մնաց և բողոքեց գրաւին դէմ, բայց նուիրակն անայլայլակ կեցաւ։ Ցայնժամ կայարանին գլխաւորը խոստացաւ որ երեք օրէն պարտքը կը վճարէ. սակայն նուիրակն անդրդուելի կեցաւ, մէկ ձեռքով իւր միտալը բռնած, միւսովն վճիռն՝ որ կը հրամայէր իրեն գրաւի առնուլ։

Մինչդեռ հոն կայարանին գլխաւորն կ'աղաչէր նուիրակին, կ'անցնէր ժամանակը և ուղևորաց համբերութիւնն հատնելով կը գանգատէին։ իսկ Ցուխպուրկի կալուածատէրն որ շոգեշարժ մեքենայն գրաւի գնել տուած էր, ինքն իսկ այն հետաքրքրական տեսարանին ներկայ էր՝ քթին տակէն խնդալով. և երբ տեսաւ որ բաւականապէս վրէժն հանեց, ըսաւ նուիրակին որ գրաւը վերցունէ, և զիջաւ աղաչանաց կայարանապետին այն պայմանաւ որ երեք օրէն իւր առնելիքը վճարուի, և թող տուաւ որ կառախումբը կարենայ իւր ճանապարհը շարունակել։

---

## Մի հազարամեդր երկաթուղւոյ ծախքը։

Գաղղիոյ մէջ մի հազարամեդր երկայնութեամբ ջրանցքի մը շինութեան համար սովորական գնացած ծախքը միջին հաշուով 125,000 ֆր. է. իսկ մի հազարամեդր երկաթուղւոյ համար գընացածը 400,000 ֆր. կը հաշուի միջին հաշւով. այնպէս որ՝ ջրանցքի մը գնացած ծախքէն գրեթէ երեք անգամ աւելի կ'երթայ նոյն համեմատութիւնը ունեցող երկաթուղւոյ մը. և հետևաբար երկաթուղեաւ ճանապարհորդութեան վճարքը եռապատիկ աւելի է ջրանցքով եղածէն։

Անգլիոյ և Միացեալ Նահանգաց ցուցած հաշիւները խիստ շատ կը տարբերին մէկմէկէ։ Քանի մը անգլիական երկաթուղեաց համար մի հազարամեդրին գինն է 800,000 ֆր. և ուրիշ քանի մը հատին 600,000 ֆր։ Երբեմն նաև միլիոն մը ֆրանքէ աւելի գնացած է։ Ամերիկայի մէջ, գետնոյն և նիւթոց աժանութեան պատճառաւ գրեթէ նոյն գնով կարելի է թէ ջրանցք և թէ երկաթուղիք շինել, Եւրոպայիններէն շատ աւելի նուազ ծախիւք։ Միացեալ Նահանգաց մէջ նաւարկելի ջրանցից իւրաքանչիւր հազարամեդրին ծախքն է, միջին հաշուով 101,000 ֆր. մանաւանդ թէ երկաթուղեաց շատերուն մի հազարամեդրին ծախեցաւ 55,900 ֆր. որք մի զոյգ հետք ունէին նոյն ճանապարհին վրայ, թէպէտ երկու զոյգի համար շինուած էր։ Ուրեմն ըսել է թէ Ամերիկայի մէջ երկաթուղեաց և նաւարկելի ջրանցից ծախքը նոյն կրնայ համարուիլ. իսկ Գաղղիոյ և Անգլիոյ մէջ շատ տարբեր։

Ասկէ կ'երևի թէ ինչ աստիճան տարբերութեամբ իրարմէ կը զանազանուին այդ հասարակաց օգտին համար եղած երկաթուղեաց շինութեան ծախքերը։ Հմուտ անձինք կը հաշուեն որ ընդհանրապէս երկու զոյգ հետք ունեցող երկաթուղւոյ մը միջին ծախքն է 400,000 ֆր. առ իւրաքանչիւր հազարամեդր. իսկ թէ որ մի զոյգ ունենայ ճանապարհը, ծախքը կ'իջնէ 275,000ի։ Սակայն այս թիւը կրնայ 56,000 ֆր. իջնել, նմանապէս Ամերիկայի մէջ, և 800,000ի ելնել, նաև երբեմն մէկ միլիոնի, ինչպէս Անգլիոյ մէջ։

---

## Հեռագրութիւն անդրատլանդական։

Անդրատլանդական հեռագիր պարանը որ 'ի սկզբան մի վայրկենի մէջ

բառ և կէս կը հաղորդէր, այժմ դրե-թէ վեց բառ կը հաղորդէ: Եւ ամենօ-րեայ աշխատանքը կը տևէ քանի ժամ: Ուրեմն 'ի 20 ժամուց կամ 'ի 1200 վայրկենից բաղկացեալ օրուան մը մէջ կարելի է յղել 7200 բառ և 360 հե-ռագրական լուր: Բայց համարինք թէ ըլլայ 300 լուր: Հետևաբար երբ քանի բառիւք լրոյ մը գինն էր 500 ֆրանք, մի միայն հեռագրական պարան գոր-ծածելով՝ մուտքը կրնար ըլլալ օրը 150,000 ֆրանքի, և տարին 54 միլիո-նի: Հեռագրալրոյն գինն հիմայ կիսով չափ նուազած է. բայց որովհետև կը բանին երկու պարանք, անոր համար մուտքը նոյն կը մնայ: Ուրեմն, այս հսկայաձև գործոյս՝ իւր սկզբնաւորու-թենէն 'ի վեր՝ 12 միլիոն ծախք գնա-ցած ըլլալով առաջին անգամ, 15 մի-լիոն երկրորդ անգամ, և ուրիշ 15 մի-լիոն մ'ալ երրորդ անգամ, և բովան-դակութիւնը 42 միլիոն ֆրանք, միայն մէկ տարուան եկամուտը կրնայ բա-ւել բովանդակ ծախքը հանելու:

## Քանի մը հատուկտոր թարգմանութիւնք Բագրատունի քերթողահօր:

Առաջիկայ երկու բանաստեղծական հատուածոց թարգմանութիւնները իր կրտսերագոյն կրօնակիցներէն մէկուն աղաչանօքը թարգմանած է մեր Բագրատունի քերթողահայրը, իբրև օրինակ Գրականութեան ուսման ընթացքին մէջ: Հաճոյական գործ մը ըրած կը համարինք ազգային բանասիրաց հրատարակելով զանոնք, յորոց մանաւանդ առաջինը կրկին հետաքրքրական և ախորժելի պէտք է ըլլայ ստանաւորի չափոյն նորութեամբը, որով անշուշտ միտք ունէր հանճարեղ թարգմանիչը բովանդակ տաղաչափական քերթուածը հայացնելու՝ ըստ մեր աղաչանացը, ինչպէս որ պատրաստութենէն կը տեսնուէր, եթէ դժբաղդաբար մահը վրայ չհասնէր:

### Արձանագիր դրանցն դժոխոց.

Ընդ իս մուտք են ի քաղաքն աղետաւոր.
Ընդ իս մուտք են ի տանջանսն յաւիտենից.
Ընդ իս մուտք են առ ժողովուրդն կորուսեալ:
Զարարողն իմ վեհ՝ դրդեաց արդարութիւն.
Ած ի դոյ զիս զօրութիւնն աստուածեղէն.
Գերագոյնն իմաստութիւն, սէրն առաջին:
Արարածք յառաջ քան զիս չէացան այլք
Բայց յաւէրժք. եւ կամ մնամ ես յաւիտեան:
Ընկեցէք զամենայն յոյս՝ որ մտանէքդ:

ՏԱՆԴԷ. Դժոխք. Երգ Գ:

### Կամիլլեայ անիծանելն զՀռովմ[1].

Հռովմ՝ միայն արդարադատ քինու ցասմանըս պատճառ.
Հռովմ՝ ում քո ընենին ձեռք զանձին իմոյ զսիրելին.

1 Այս հատուածն ալ Գոռնէյլի Որատիոս ողբերգութենէն է. և է յատկապէս Կամիլլէ՝ Որատիոսի քրոջը, որ Կուրատեան ազնուեալ եղբարց մէկուն տարփաւորն էր, 'ի սաստիկ ցաւոց և 'ի կրից սրտին զՀռովմ անիծանելը, անոր յաղթանակին և փառացը զոհ եղած տեսնելով իրեն սի.

Հռովմ՝ որ զքոյդ ետես ծընունդ՝ եւ զոր քո սիրտըդ պաշտէ։
Իցէ՞ թէ համօրէն դրացիք ի դաշըն մըտեալ
Միահամուռ հասցեն բըրեսցեն զհիմունս իւր, չեւ ամրակուռս.
Եւ թէ ընաւ Իտալականս երկիր չէ յայդ բաւական,
Արեւելք ընդ արեւմուտս ի գլուխ նորա խըմբեսցին.
Ի ծագաց տիեզերաց աշխարհակոյտ ազինք եկիւր,
Խաղասցեն 'նդ լերինս ընդ ծովս՝ զարձուցանել զայն յաւեր։
Ինքնին իսկ ըզպարիսպս իւր հոսեսցէ յիւր վերայ.
Իւրովի ձեռօք իւրովք կոտորեսցէ զաղխս իւր.
Եւ հրացան բարկութիւնք երկնից լուցեալք անիծիւքս
Կայծականց տեղասցեն յորդահեղեղս ըզնովաւ։
Ո՛ տայր ինձ լինել շանթիցն ականատես հրօսելոյ,
Ցանիւն զյարկս իւր տեսանել եւ զքո դափնիսըդ մըղեղ.
Տեսանել զվերջինն Հռովմ ի վախճանին հառեալ շունչ.
Վրիժուցս հատուակ ինձ եւեթ կալ, եւ առ խընդիս մեռանել։

Որատիոս. Հանդ. Դ. Տես. Ե.

~

# ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

(Տես երես 159)

### Ա. ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

106 Ի՞նչ աստիճանի երագութիւն ունի երկիրս ինքն իր վրայ ըրած շարժման մէջ։ — Երկրիս ինքն իր վրայ դառնալուն երագութիւնը հաւասար է մէկ ռոպէի (կամ երկվայրկեանի) մէջ ութարսախի մը տասներորդ մասին. իսկ արեւուն չորսդին՝ տասը փարսախ՝ նոյնչափ ատենի մէջ։

107 Ուրեմն թռչուն մը որ կ'ելլայ իր բոյնէն, կամ օդապարիկ մը որ կը բարձրանայ օդուն մէջ, քանի մը վայրկեանէն շատ հեռու պիտի գտնուին այն կէտէն ուսկից որ ելան։ — Ոչ, վասն զի երկիրս կը շրջի. բայց իրեն հետ մէկտեղ կը շրջի նաեւ իր մըթնոլորտն ալ, այսինքն չորսդին պատած օդը. ասկէց զատ՝ այն մարմինը որ կը բարձրանայ օդուն մէջ նոյն իսկ երկրէս կ'ընդունի մղում մը որ զայն կը շարժէ. ուրեմն որպէս զի օդապարիկ մը բարձրանալով միշտ ուղիղ գծով կարենայ երկրէս դուրս գտուիլ կամ հեռանալ այն կէտէն ուսկից ելած է, պէտք է այնչափ շատ բարձրանայ որ ոչ միայն երկրէս ընդունած մղումը կորսնցընէ, այլ նաեւ երկրիս ձգողական զօրութեան շրջանակէն ալ դուրս գտուի, որ է անկարելի բան մը։

108 Ի՞նչ կերպով երկիրս կախուած կը կենայ միջոցին մէջ։ — Արեւը կը քաշէ զայն և կը պտըտցընէ իր վրայ, ինչպէս գերձանէ կախուած գնտիկ մը կը դառնայ զանիկայ դարձընող ձեռքին վրայօք։

109 Ինչո՞ւ երկիրս կը պտըտի արեւուն շուրջը և ոչ արեւը երկրիս բոլորտիքը։ — Որովհետեւ արեւը 1,385,000 անգամ աւելի մեծ է քան զերկիրը, և առաջ տեսանք որ մեծ մարմնոց ձգողական զօրութիւնը աւելի ուժով կ'ազդէ պզտի մարմիններուն զանգուածին վրայ։ (Այս բանիս պատճառն է կեդրոնաբեր և կեդրոնախոյս զօրութիւնն։)

110 Ի՞նչ բան է կեդրոնախոյս զօրութիւնն։ — Այն ոյժը զոր կ'առնուն մարմինք երբոր արագաբար կը դառնան կեդրոնի մը բոլորտիքը, և որ անկէ հեռանալու կը դիմէ։

111 Երկրիս երեսը հաւասարապէ՞ս տաք է։ — Ոչ. երկրիս ամէն կողմը չունի հաւասար բարեխառնութիւն։

112 Ինչո՞ւ հասարակ տեղ մը աւելի տաք կ'ըլլայ քան ուրիշ տեղ։ — Որովհետեւ երկիրս միշտ հաւասար դիրքով չի ներկայա-

բականը։ Ինչպէս մարդկային մոլեգնութեան, նոյնպէս նաեւ Գոռնէյլի հանճարոյն վերջին ճիգն են այս ահաւոր տողերը, կ'ըսեն քննադատք։

նար արեւուն, այլ իր բեւեռներէն երբեմն մէկուն երբեմն ալ միւսին վերայ կը հակի, հետեւաբար ինչպէս որ տեսանք (104) ամեն տեղ ամեն եղանակներ և օրեր հաւասար չեն. բայց այս տարբերութիւնը՝ որ շատ զգալի է երկրիս ծայրերը, այսինքն բեւեռներուն կողմը, ընդհակառակն իր մեծագոյն շրջանակին վրայ, որ է Հասարակածն, հազիւ զգալի կ'ըլլայ հոն և իր կողմնական մասերուն վրայ՝ ուր շարունակ ուղղակի կը զարնուին արեւուն ճառագայթներն, և բարեխառնութիւնը շատ բարձր է, այսինքն շատ տաք։ (Երկրիս այս մասը կ'ըսուի Այրեցեալ գօտի։)

113 Ինչպէս որ մեր երկիրներէն աւելի տաք երկիրներ կան, նոյնպէս ալ աւելի ցուրտեր կա՞ն։ — Այո, և հարկաւ այնպէս պիտի ըլլայ, վասն զի եթէ այրեցեալ գօտւոյն մէջ արեւն ուղղահայեաց կ'իջեցընէ իր ճառագայթները, պէտք է որ (երկիրս գնտաձեւ ըլլալուն համար) կողմնակի գան ճառագայթները այն մասերուն վրայ՝ որ երթալով կը հեռանան այրեցեալ գօտիէն, և երկու գօտի ալ կ'ըլլայ, բարեխառն և ցրտային. այս ետքի գօտւոյս մէջ եղած երկիրներն շատ ցուրտ են, որովհետեւ գիշերներն ալ շատ երկայն կ'ըլլան, երկուքէն ինչուան վեց ամիս։

### Բ. — Աղբիւրք.

114 Ի՞նչ բան է ծակոտկէնութիւն։ — Ծակոտկէնութիւն մարմնոց կ'ըսուի իրենց զանգուածին մէջ պզտի պարապ տեղեր ունենալը՝ որով հիւլէները իրարմէ կը զատուին։

115 Ի՞նչպէս կը կոչուին այն մարմինք որ այս յատկութիւնս ունին։ — Ամեն մարմինք ալ ունին այս մանրիկ ծակերը, ուստի կերպով մը ամենքն ալ ծակոտկէն կրնան ըսուիլ, բայց սովորաբար ծակոտկէն կը կոչուին այն մարմիններն միայն՝ որոնց ծակտիքն կրնան աչքով ալ տեսնուիլ։ (Ինչպէս են փայտը, շաքարը, ըսպունգը, և ընդհանրապէս բոլոր բուսեղէնք ծակոտկէն են։)

116 Ինչու համար եթէ չորցած[1] հողէ ամանի մը մէջ ջուր դրուի՝ քիչ ատենէն ամանը բոլորովին ցամքած կը մնայ և ջուրն աներեւոյթ կ'ըլլայ։ — Վասն զի չորցած հողէ ամանը շատ ծակոտկէն է, ուստի մէջի ջուրն իր ծակերէն դուրս կ'ելլայ կը թափի։

117 Ինչու համար եթէ այդ ամանը դրուի ուրիշ բռուած ամանի մը վրայ՝ ջուրն վարինին մէջ կ'անցնի։ — Որովհետեւ չի բռուած ամանն ծակոտկէն ըլլալով կը թողու ջուրը որ դուրս ելլայ, տակի ամանը որ բռուած է՝ այնքան ծակոտ չէ որ թողտայ ջուրը իր ծակերէն դուրս անցնելու։

118 Ինչու համար մարմիններէն ոմանք թող կու տան կազերուն և հեղուկներուն որ իրենց զանգուածին մէջէն անցնին, և ոմանք ընդհակառակն չեն թողուր ոչ հեղուկներու և ոչ կազերու՝ որ անցնին։ — Որովհետեւ այս վերջի մարմնոց ծակտիքը շատ նեղ են՝ անոր համար հեղուկներն և կազերն չեն կրնար անցնիլ անոնց մէջէն։ (Այն մարմինները որ առ այս ծակոտկէն չեն անթաթաւուչք կ'ըսուին։)

119 Ապակին ալ ծակոտկէ՞ն է։ — Ապակին ալ ծակոտկէն է ուրիշ մարմնոց պէս, բայց անթաթաւուչ է։

120 Ինչու համար եթէ գետնին վրայ անձրեւ գայ՝ երեսը չկենար հապա ներս կը թափանցէ և կ'աներեւութանայ։ — Որովհետեւ երկիրս շատ ծակոտկէն է, երբոր ջուրը իր վրան իյնայ՝ կը ծծուի և ծակերուն մէջէն կ'անցնի։

121 Ինչու համար երբոր շատ օր վրայէ վրայ անձրեւ գալու ըլլայ՝ գետինն ալ ջուր չընդունիր, հապա երեսին վրայ կը բռնէ։ — Անոր համար որ ան ատեն գետինը յագեալ (կուշտ) կ'ըլլայ, այսինքն բոլոր ծակտիքը լեցուած կ'ըլլան հեղուկով, և մնացածը երեսը կը կենայ ինչպէս թէ անթաթաւ մարմնոյ մը վրայ դրուած ըլլար։

1 Առանց վէռնիքի։

Կը շարունակուի։

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՑԺէ · 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՅՈՒԼԻՍ

## ՕԳՈՒՏ ԵՒ ՎՆԱՍ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

*Տպագրութեան արհեստը թէ որչափ օգտակար եղած է գիտութեանց և քաղաքականութեան յառաջանալուն, աւելորդ է երկայն բացատրել. միայն այսչափ կ'ըսենք, թէ որչափ գործ մը կը դիւրանայ և կ'ըլլայ բազմաց ստանալի, նոյնչափ և անոր յարգը կ'աւելնայ ։ Բայց ափսոս որ ինչպէս աշխարհիս վերայ շատ բարի բաներ մարդս 'ի չարն կը գործածէ, ինչպէս գիտութիւն և ազատութիւն, որ Աստուծոյ մի մի մեծամեծ պարգևներն են, չարաչար գործածելով կը բերէ վնաս անձին և այլոց, այսպէս և տպագրութեան արհեստը չարաչար գործածելով կ'ըլլայ վնասակար ընկերութեան ։ Եղան շատերը որ տպագրութենէ առաջ եկած վնասները միայն տեսնելով, լաւ էր ըսին որ կութթեմպէրկ գտած իսկ չըլլար տպագրութեան արհեստը, քան թէ գտնելով զայն՝ ապագայից զեղծման պատճառ ըլլար ։ Բայց ես այսպէս չեմ ըսեր. կութթեմպէրկ միշտ անմահ պիտի մնայ իր հրաշալի գիւտովն, և ոյք 'ի չարն կը գործածեն զայն, նոքա միայն պախարակելի պիտի ըլլան ։ Բան մը որ ըստ ինքեան բարի է և 'ի բարին սահմանեալ՝ չկրնար պախարակելի ըլլալ, եթէ ոմանք անով զեղծանին ։*

*Ամերիկոյ Միացեալ Նահանգներն, որ դեռ դար մը չեղաւ որ իրենց ազատութիւնը ձեռք ձգեցին, ահա կը մաքառին Եւրոպիոյ հետ, և շատ բանի մէջ զնա ևս անցած են. և քաղաքականութիւնն ու գիտութիւնը այնչափ զարգացած են հոն, որ անկէ աւելին թերևս կարելի չըլլայ յուսալու ։ Այս յեղափոխութեան պատճառ միթէ տը-*

պագրութեան արհեստը չէ։ Հոն տպագրած մատենից, օրագրաց և լրագրաց թիւը հաշուի տակ չանկանիր, միայն այսչափ ըսեմ, թէ Գաղղիոյ և Անգղիոյ մէջ տարին այնչափ գիրք չտպագրէր, որչափ Միացեալ Նահանգաց մէջ. գի տարուէ տարի Գաղղիոյ գործարաններէն կ'ելնէ 80 միլիոն հազարագրամ թուղթ, և Անգղիոյ գործարաններէն 100 միլիոն հազարագրամ, և բաւական կ'ըլլայ 68 միլիոն բնակչաց։ իսկ Միացեալ Նահանգներուն մէջ, որ 31 միլիոն ժողովուրդ ունին, կ'ելնէ 200 միլիոն հազարագրամ թուղթ։ Անհուն են հոն տպագրած բարձրագոյն գիտութեանց և արհեստից մատեանները, անհուն են և բազմատեսակ ռամիկ ժողովուրդը կրթելու և ուսուցանելու մատեանները։ Արք և կանայք, աղջկունք և տղայք կարդալով կը զուարճանան։ Կը տեսնես հոն հասարակ արհեստաւոր մը, ինչպէս կառավար, որմնադիր, կօշկակար, և այլն, որ մի ձեռքով արհեստին վերաբերեալ գործին բռնած, միւս ձեռքը օգտակար մատեան մը կամ լրագիր առած կը պարարէ իր միտքը։

Հին ժամանակ ալ յառաջ քան ըզտպագրութիւնն կային երևելի գիտնական անձինք և քաղաքակիրթ մարդիկ, բայց սակաւ էին և թուով. և ռամիկ ժողովուրդը խոր տգիտութեան մէջ թաղուած էր, պատճառաւ որ գրչագիր մատեաններն դժուարաստանալի էին։ իսկ տպագրութեան արհեստն դիւրացոյց ամեն բան, անմերձենալի գիտութիւններն մերձաւոր ըրաւ առհասարակ և ռամիկ ժողովրդեան, և հիմա չկայ մէկը որ կարող ըլլայ ըսել, թէ զայս ինչ կամ զայն կամիմ ուսանել, բայց չունիմ հարկաւոր միջոցներն։ Ահա և մեր ազգին մէջ նախնեաց անխոնջ վաստակներն, չորրորդ դարէ մինչև ցերեքտասաներորդ դար, որք են աւանդապահք հայկաբանեան լեզուի, և յորոց ոմանք հազիւ թէ մի կամ երկու օրինակք մնացած են մենաստանի մը անկեան մէջ, ինչով է որ հիմա ամենուն ձեռքը կը քալեն. ոչ ապաքէն տպագրութեան արդեամբ։ Ու միթէ սա չեղաւ պատճառ հայկական լեզուին այժմեան կենդանութեան, մինչդեռ վերջին դարերուս մէջ գրեթէ բոլորովին խանգարեալ էր և անխնամ նայի եղած։ Տպագրութեան արդեամբ նախնեաց գեղեցիկ իմաստներով մըտքերնիս ճոխացան, անոնց յստակ և զարդարուն գրուածքով լեզունիս կոկեցաւ։

Ահաւասիկ այս և այսպիսիք են տպագրութեան արհեստին օգտակարութիւններն. բայց նա ունի ևս իր մեծամեծ վնասներն։ Միթէ ամէն օր ականջնիս չհնչեր Լուսաւորեալ դար, քաղաքակրթութիւն բառերուն հետ, նաև ապականեալ դար, անկրօնութիւն բառերը։ Ըսինք վերը թէ դարուս լուսաւորութեան և քաղաքակրթութեան պատճառ տպագրութեան արհեստն եղած է. կ'ըսենք դարձեալ, թէ տպագրութեան արհեստն է դարուս ապականութեան և անկրօնութեան պատճառ. ուստի և սա երկսայրի սուսեր մի է, կամ թէ նման է դրախտին մէջի աստուածատունկ ծառոյն գիտութեան բարւոյ և չարի, որ կրնար նախամարդոյն Ադամայ ըլլալ պատճառ անմահութեան կամ մահու։

Դարուս ապականութեան սերմանքը, թէպէտ շատ ազգաց մատենից մէջ կրնան տեսնուիլ, բայց ամենէն աւելին է Գաղղիոյ մէջ հրատարակուած մատեաններէն. ուր թէպէտ կան շատ օգտակար գրեանք, բայց անոնց դէմ ալ կան նոյնպէս անթիւ վնասակար և թունաւոր մատեանք. և գաղղիական լեզուն ալ աշխարհածանօթ լեզու մի ըլլալով, անկէ ապականութիւն կը տարածուի յարդահօս անձրևի պէս բոլոր աշխարհս, և կ'ապականէ ամէն ազգերը։

Ուրախութեան մեծ առիթ է մեզ տեսնելը որ ազգիս աշխարհական մասին մէջ ալ օր ըստ օրէ գրականութիւնը կը ծաղկի. և յայսմ հետէ մենավաճառ մը չհամարուիր ազգիս մէջ միայն եկեղեցական մասին, այլ նաև

աշխարհականաց ալ դիւրամատոյց կ'ըլլայ, որով կ'աւելնայ մեզ ազգերնուս յառաջադիմութիւնը: Զի ցորչափ գրականութիւնը միայն եկեղեցականաց ձեռք է, երբեք ազգ մը չկրնար կատարեալ յառաջադիմել, զի եկեղեցականը ազգին ամենափոքր մասը միայն կը կազմէ, և ամբողջութիւնը աշխարհական դասէն է. ուստի երբ գիտութիւնը և գրականութիւնը կը ծաւալի նաև աշխարհականաց մէջ, ըսել է թէ ազգը շուտով առաջ կ'երթայ, և ապագայ բարեաց ակնկալիք մը կը բերէ: Բայց ինչպէս նորածին տղայ մը որ ոտք ելնէ, գայթ 'ի գայթ կը քայլէ և անկման վտանգի մէջ է, եթէ մայրենի ձեռքը չբռնէ չկեցունէ զնա. այսպէս մեր ազգին աշխարհական երիտասարդք, որ նոր սկսան գրիչ շարժել, եթէ ընտրութիւնը և խոհեմութիւնը իրենց առաջնորդ չառնուն, կ'ըլլան ոչ միայն իրենց անձանց մեծ վնասու պատճառ, այլ և այլոց, դեղի տեղ գուցէ թոյն մը հաղորդելով օտարաց:

Մեր ազգայնոց դեռ ականջները բաւական մաքուր են, և սիրտերը սուրբ, և անով է որ մեր ազգը գովելի եղած է նոյն իսկ Եւրոպացւոց, իբր հեռի յապականութենէ: Արդ եթէ բացուին ազգայնոց միտքերը այն պիղծ գիրքերով՝ որ մարդկային կրից սլաքներով զարդարուած են, և մոլորին սիրտերը այն անկրօն գրուածներով՝ որ ընդդէմ աւետարանի և սրբոց հարց կը քարոզեն, ո՛ւր պիտի մնայ ազգին պարզութիւնը, ո՛ւր իր անխարդախ գործունէութիւնը: Այս ըսելով կը ծանուցանենք մեր սրտին ցաւը քանի մը նորանոր հրատարակութեանց որ եղան և կ'ըլլան մեր ազգին մէջ, թարգմանելով այնպիսի մատեաններ, որք Եւրոպիոյ մէջ մեծամեծ վնասուց պատճառ եղած են, և արդարամիտ և ճշմարտասէր անձինքներէ արհամարհուած են. ինչպէս են Հաւատաքննութեան պատմութիւնը, Էօժէն–Սիւի Թափառական հրեայն, Շիլլէրի վիպասանական ողբերգութիւնը, Վէրթէր վիպասանութիւնը, Մոնթէ Քրիսթօ, Վիկտոր Հիւկոյի Թշուառները, Էօժէն–Սիւի Փարիզու գաղտնիքը, և այլն:

Ցիրաւի այս գրողներուն շատերը մեծ հեղինակներ են, և իրենց գրուածոց մէջ կան գեղեցիկ և վառվռուն իմաստներ, բայց քօղարկեալ ունին և իրենց թոյնը և ապականութիւնը: Այս գրուածներէն ոմանք թերևս ոչ այնչափ վնասակար ըլլան, ինչպէս Վիկտոր Հիւկոյի Թշուառները, բայց մեր ազգին համար վաղաժաման են և տարաժամ:

Այս ըսելով ոչ զոք արհամարհել է մտքերնիս և ոչ յաչաց հանել. այլ փափաքելի էր մեզ, որ մեր ազգին նորաշարժ գրիչները, աւելի օգտակար գիրքեր իրենց առաջնորդ առնուն և թարգմանեն, որով կրկին օգուտ ըրած կ'ըլլան, մի՝ ազգին գրականութիւնը ծաղկեցունելով, միւս՝ ազգին բարոյականը անարատ պահելով:

Կրնայ մէկը ըսել թէ այսպիսի մատեանք աւելի ընթեռնլի կ'ըլլան ազգին մէջ, քան թէ ծանր և վարդապետական գիրքեր: — Եթէ մէկը իր հրատարակութեանց մէջ միայն շահասիրութիւնը իրեն նպատակ առնու, և ոչ ազգին բարոյական օգուտը, այնպիսին 'ի զուր կ'աշխատի բարեբար ազգին կոչուելու: Թող որ կան անթիւ զուարճալի և օգտակար գիրքեր, որք նոյնպէս կրնան ազգէն ընդունելութիւն գտնել, առանց բարոյականին վնաս մը հասցունելու: Հարկաւ աշխարհական գրիչներու աւելի ազատութիւն տրուած է քան թէ եկեղեցական գրչի մը, բայց այդ ազատութիւնն ալ սահմանի մէջ բռնելու է, մանաւանդ այն ազգաց նըկատմամբ որ դեռ նոր կը զարգանան: Եւ արդարև ցաւալի բան է այսպիսի ազգաց մէջ աստանկ շուտով տեսնել այն գիրքերը, որ օտարաց մէջ հարիւրաւոր տարիներու գրականութենէն ետև երևցեր են, և երևնալուն պէս իրենց համբաւն ու վատանունութիւնը մէկտեղ առած են:

Ուստի յօդուածնիս վերջացունելով կ'ըսենք, թէ փափագելի է մեզ որ ազ-

գինՆորանոր մատենագիրները, կամ թէ լաւ եւս ըսել, թարգմանիչներն և հրատարակիչներն, իրենց հրատարակութեանց մէջ լաւագոյն ընտրութիւն մը ընեն, և չխաբուին հեղինակին անունէն և գրութեան ոճէն, այլ օգտակարութիւնը միայն իրենց նպատակ առնուն և ազգին բարոյականութիւնը, որով տպագրութեան արհեստը օգտակարի գործածուած կ'ըլլայ մեր մէջ ալ և ոչ վնասակարի։ Ազատութիւն կարծեաց և ազատութիւն գրչի որչափ փափագելի եղած են դարուս մէջ, եթէ պարուրեալ չըլլան 'ի սահմանի, ունին իրենց մեծամեծ վնասներն ալ, ուսկից կը փափագիմք զգուշացունել մեր ազգայինները։

---

## ՍԱՐԴՔ

(Տես երես 181)

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## ՑԻՇԱՏԱԿԱՑ ԲԱՆՔ

### ԺԴ

Այս խօսքերէս ետքը քերթողը լռեց. և ինչպէս խորին մտածութեան մը մէջ ընկղմած, սկսաւ սենեկին մէջ վեր վար քալել։ Կանգ առաւ պատուհանին առջևը դիտելու այն զուարթ բնութիւնը՝ որ ծովակի մը հայելի երեսէն կ'անդրադառնար. և իբր թէ յափըշտակուած այն գեղեցկութենէն կարծես թէ մոռցեր էր զիս, ինչպէս ես ալ զինքը։ Բայց մէյ մըն ալ ցընցուելով՝ դարձաւ նայեցաւ ինծի, ու տեսնելով որ նորէն սարդին առջին նստած ուշադրութեամբ կը դիտէի, ծիծաղելով մօտեցաւ, — «Կը զարմանամ, կանչեց, համբերութեանդ վրայ. կը դիտես առանց յագենալու, ինչպէս թէ երբեք սարդ մը տեսած չըլլայիր։ Թող տեսնեմ ես ալ ի՞նչ է որ այդպէս զարմանքդ կը գրաւէ։»

Առանց խօսք մը զուրցելու, իսկոյն սարդը աչացը առջին քշեցի։

— «Վա՜հ, վա՜հ, կանչեց քերթողական ծիծաղով, աս ի՞նչ այլանդակ կերպարանքի զմայլեր ես։ Բայց կեցիր. այդ էակը կերպարանք չունի. ողջոյն փոր է, եթէ 'ի բաց առնուս քանի մը զոյգ երկայնաբազուկ թաթիկներ։ Իր խոշոր որովայնին մէջ ընկղմած՝ կէտ մը կայ՝ ըսեմ, որ գլուխը կարծեմ պիտոր ըլլայ։ Ինծի իրաւունք տուր. գիտես որ փորը ուտելեաց ընդունարան է. ուրեմն այդ էակն ալ, անգէտ այն բարւոյն որ ակամայ մեզի կ'ընէ, միայն փորու ծառայութիւնը կը հոգայ։ Կը վրիպիմ արդեօք։

— Չեմ ժխտեր, պատասխանեցի. և չեմ զարմանար հետևանքին ճշմարտութեանը, որ ամենօրեայ փորձով կը ստուգուի այն ոմանց վրայ, որոնց երևութին ձևը ոչինչ կը տարբերի այդ սարդէն։ Այս կը խոստովանիմ որ այդ էակին հոգը՝ մտածութիւնը ուտել է. ուտել ապրելու համար, և ապրիլ ուտելու համար։ Բայց որչափ ալ անձնասիրութեան գաղափար ազդէ իր այս կեանքը՝ չէ զուրկ յարդեանց. վասն զի այդ վախճանին հասնիլ չկրնար առանց աշխատելու. իր կերակրիկը վայելելու համար պէտք է արդիւնաւորի. չկայ անանկ բարերար մը որ պատրաստական բերանը դնէ զայն։ Որով անդադար այս է իր մէկ հատիկ մտածութիւնը. «Եթէ աշխատիմ՝ անտարակոյս է որ կ'ուտեմ. բայց եթէ չուտեմ՝ ի՞նչպէս պիտոր աշխատիմ։»

— Գեղեցիկ առաջադրութիւն, կանչեց քերթողը, որուն մէջ մարդկային հաւատարմութիւնն ալ կը պակսի։

— Սուտ չէ, ըսի, խորհրդածութիւնդ. բայց հիմայ այս ամենը մէկդի թողլով, եթէ քերթողի մը համբերութեան ցուպը կը ներէ, քննենք առանձին առանձին այդ էակին մարմնոյն արտաքին մասերը։ Կը յուսամ որ վերջապէս տարբեր գաղափար մը կը ստանաք վրան. և այն որովայնը որ միայն ուտելեաց համբարանոց կը կոչէք, կըր-

նաք տեսնել որ մի և նոյն ժամանակ ճարտարութեան խանութ մըն է. որ կը բովանդակէ ոչ միայն արուեստի մը ամենակատարեալ գործիները, այլ և աշխատութեան նիւթն ալ: »

Աչուըները խոշոր մը բացաւ քերթողը, ու երեսը ծիծաղով ինծի նայեցաւ.

— « Տեսնենք այդ նոր տեսարանն ալ, կանչեց. թէպէտ և համբերութեան օրինակ ըլլալէն շատ հեռի են քերթողք, 'ի վերայ այսր ամենայնի խոստովանելու է որ իրենց դեդ վայրկեաններն ալ ունին: Սեպենք թէ այս ըլլայ իմ այն վայրկեանս ալ, որ սարդի մը դիտողութեանը կը շնորհեմ: »

Նստեցանք երկուքս դիմացէ դիմաց. առինք առջևնիս սարդին գխակը: Անհամբերութիւնը քերթողին բերանը խօսք կը դնէր. բայց առանց ուշ դնելու, ես սկսայ զուրցել:

— « Տեսէք նախ, ըսի, այդ էակին արտաքին երևոյթը. բաղդատեցէք միջատին հետ որ հասկընաք տարբերութիւնը:

— Ցիրաւի, կանչեց քերթողը. ահա էական տարբերութիւն մը. միջատի մը մարմինը, եթէ չեմ վրիպիր, երեք մասն կը բաժնուի. նախ գլուխ մը, երկրորդ կուրծք մը, երրորդ որովայն մը: Իսկ այս սարդս ընդհակառակն, երկու մասն կը ներկայացնէ. գլուխ մը և որովայն մը:

— Այո, պատասխանեցի. արտաքին երևոյթը այդպէս խաբէական է. բայց ներքին քննութիւնը սխալանքը կ'ուղղէ: Այդ որ գլուխ զուրցեցիք, երկու մասանց խառնուրդէն բաղկացեալ է:

— Գլուխը և կուրծքը, ըսել կ'ուզես անշուշտ:

— Այո. և ատոր համար սարդապատումք Գլխակուրծք կոչած են զայն. վասն զի այդ երկու մասերը անանկ միացած են իրարու հետ, որ մէկ մասի մը պէս կ'երևան. և միայն աչքերն են որ գլխուն տեղը կը մատնեն:

— Իրաւցնէ. ուրեմն ո՛ւր են այդ աչքերը:

— Այդ աչքերը տեսնալը՝ ամեն անգամուն աչքերնիս չկօրեր. հարկ է որ միջնորդի մը վկայութեանը դիմենք. անանկ վկայի մը, որ հաւատարմութեամբ մեր աչաց պակասութիւնը լեցընէ:

— Ստուգիւ, այդ վկայն մանրադէտը պիտոր ըլլայ:

— Չէք վրիպիր. և ահաւասիկ առձեռն մէկ մը. դիտեցէք ասով սարդին ճակատը, հոն կրնաք գտնել իր աչուըները: »

Մանրադէտը ձեռքն առաւ քերթողը, ու սարդին ճակտին յարմարցնելով,

— « Ուռած կնտիկնիր կը տեսնեմ, կանչեց, սև կէտերու նման. և բազմաթիւ կ'երևնան:

— Այդ կնտիկներն են, ըսի, սարդին աչուըները. բայց իրենց բազմութեանը վրայ մի զարմանաք: Սարդք ալ, առանց միջատաց բաղադրեալ հազարաւոր աչքերն ունենալու, իրենց յատուկ վեց կամ ութ հատն ունին:

— Ես եթէ չեմ վրիպիր, կանչեց քերթողը, ատոնք ալ վեց հատ են.

— Ուղիղ է տեսածնիդ, պատասխանեցի. վասն զի այդ վեցաչեայ սարդն է, որուն ուսումնական անունն է Սէժէսդրի Սենեգաւոր:

— Մանաւանդ թէ անճոռնի սևամորթ, պէտք էր կոչուիլ, կանչեց ծիծաղելով. և ալ աւելի, պորտաբոյծ մեծափոր: Լանջագլուխը ինչ է այդ տոսկալի կերպով ուռած փորուն առջին. կարծես թէ կ'երկնէ չարունակ. կ'երկնէ և միշտ ամուլ է:

— Չեմ հակառակիր այդ քերթողական բացատրութեանց որ քերթող մըտաց ծնունդ են. բայց ակռայի նիւթ չեն մատակարարեր:

— Աղէկ զուրցեցիր. ո՛ւր է տեսնեմ այդ սարդին բերանը:

— Եթէ սարդի մը գլխուն վրայ քերթողի մը բերնին ձևը կը փնտռէք, պարապ տեղ կ'աշխատիք. և ոչ այն լեզուին հետքը կրնաք նշմարել որ անանկ գեղեցիկ ոտանաւորաց արտասանութիւնը կը կանոնաւորէ:

— Բայց գոնէ գործարան մը կա՞յ որ կերակրոյ գործողութեանը ծառայէ։

— Այո՛. կայ գործարան մը որ այդ գործողութեանը որոշեալ է։ Այդ երկու գլանիկները որ գլխէն ծնանելով առ 'ի շեղ դէպ 'ի վար կը խոտորին, կենդանւոյն ծնօտիկներն են. որոնց ծայրը եթէ ուշադրութեամբ դիտէք, շարժուն նուրբ հեռով մը կը վերջանայ, ծնօտիկին վրայ ծալլուած։

— Այո՛, կը տեսնեմ, ըսաւ քերթողը. նաև այդ ծնօտիկները իրենց անուանակոչութեանը համեմատ, եղջերեայ կարծր երևոյթ մը կը ցուցընեն։

— Այդպէս են բնութեամբ ալ. բայց դիտեցէք նաև զանոնք այն գծին վրայ որով մէկզմէկ կը շօշափեն։

— Այդ գծին մօտ կատարեալ խարտոցի մը կամ սանտրի մը երևոյթն ունին, նուրբ գծերով գծուած ըլլալնուն։ Բայց այն որ վայրենի կերպարանք մը կու տայ այս մասերուն, է այն սաւրի նման մազերը որ փշի պէս վրան տնկուած են։

— Եւ սակայն, ըսի, այդ վայրենի երևոյթը այնչափ երկիւղի առիթ պիտոր չըլլայ։ Բայց հիմայ դիտեցէք ծնօտիկներէն վար, ըսի, սարդը կռնըկին վրայ պառկեցնելով։

Ուշադրութեամբ դիտելէն ետքը, երբ հարցուցի ի՞նչ էր այն որ կը տեսնէր։

— Երկու թիթեղնակերպ տերևիկներ կը տեսնեմ, պատասխանեց, որ դէպ 'ի վեր երկըննալով՝ իւրաքանչիւր ծնօտիկին վրայ կը կաթընին, և նոյնպէս փշատեսակ սաևով ցցուած են. ի՞նչ կրնան ըլլալ արդեօք։

— Ատոնք ալ, ըսի, ուրիշ զոյգ մը ծնօտք են. որոնց քովէն, եթէ դիտելու ըլլաք, մէյմէկ բազուկ կ'երկըննայ, որ են շօշափուկները, և ընդհանրապէս ոտունից կը նմանին։ Տեսէք նաև այդ պզտի տերևիկը որ ծնօտներուն վրայ կ'երկըննայ. այդ սարդին շրթունքն է, որով կը լրանայ իր բերնին կազմարանը։

Սարդք մսակեր են, շարունակեցի խօսելով. իրենց որսը միջատք են, մանր և մեծ, ըստ որում իրենք ալ զօրաւոր կամ տկար են։ Մէյմը որ իրենց սրածայր թաթերովը զանոնք ճանկեն, ծնօտիկներուն ծայրի սլաքներովը կը վիրաւորեն. որոնք թունաւոր ըլլալնուն, միջատը գրեթէ անմիջապէս կը մեռնի։ Յետոյ ծամելու ձանձրութենէն ազատելու համար, գոհ կ'ըլլան պարզ անոնց արիւնը ծծելու. և միայն երբ պատշաճ կը սեպեն, իրենց ծնօտներով որսը կըտոր կտոր կ'ընեն։

— Այդ սովորութեանը հակառակելու բան մը չունիմ, կանչեց քերթողը. մէյմը որսին տիրելէն ետքը՝ ինչպէս կ'ուզէ ուտել տէրը ինքն է։ Բայց հիմայ կարծեմ կարգը որովայնին քննութեանը կու գայ. տեսնենք ի՞նչ զարմանալիք ներկայացնէ պիտի մեզի։

— Ատոր քննութիւնը, պատասխանեցի, ուրիշ ատենի թողլու պատշաճ կը սեպեմ։ Հիմայ, եթէ կը ներէք, ուրիշ տեսարանի դառնինք. դիտենք քիչ մը այդ սրունքները որ գլխալանջքին վրայ յարեալ են, և են կենդանւոյն տեղափոխիչ գործարանները։»

Այս ըսելով սկսայ տարածել այն ամփոփուած սրունքները, որոնք դեռ բոլորովին պաղած չըլլալնուն, առանց փրթելու դիւրաւ կը ճկէին։ Ի՞նչ զարմանք քերթողին համար տեսնել այն երկայնասրունք բազմայօդ թաթերը, որոնց երկայնութիւնը մարմնոյն մէկ և կէս երկայնութեամբն էին։ Բայց որպէս զի լաւագոյն տեսարան մը գտնեմ աչքին, առի մեծագոյն մանրադէտ մը գործածելու։ Բայց հարկ էր նաև խեղճ սարդը անդամատել։ Երեք մաս բաժնեցինք ծնօտիկները աչքերով, լանջքը սրունքներով և ձուաձև որովայնը։

Յետոյ սրունք մը փրցընելով, մանրադիտին վառարանը դրինք։ Հազիւ թէ աչքը աչամերձին մօտեցուց քերթողը,

— «Ի՜նչ զարհուրելի տեսարան, կանչեց. որո՞ւն մտքէն կ'անցնի որ այդ սրունքը, որ մերկ աչքով նուրբ ու հազիւ թէ մետաքսեայ մանր փափուկ աղուամազով ծածկած կ'երևնայ, այդ-

պիտի ահաւոր գործի մը ըլլայ. հաւատա որ գաղանի մը ճիրանքը լաւագոյն երեւոյթ մը ունին։ Սրունքին այլ եւ այլ յօդերը անանկ ստեւով մը ծածկած են՝ որ ողնիի սրածայր փշերը կը նմանի. եւ եթէ մարմնոյ մը վրայ հանգչին՝ կարծես թէ պատառտեն պիտի։ Ասկէ զատ իւրաքանչիւր յօդին վրայ եղջերեայ սրածայր հաստ փշեր կը տեսնեմ, որ իրենց արմատին մօտ ծռելով՝ սրունքին ուղղութեամբ դէպ 'ի վար կը խոտորին։ Անշուշտ իրենց առանձին վախճանն ունին. ո՞վ գիտէ ինչ բանի կը ծառայեն։

— Այլ եւ այլ վախճան կրնան ունենալ, պատասխանեցի. Նախ այն որ երբ ուղղահայեաց մարմնոյ մը՝ ինչպէս պատի մը վրայէն վար կ'իջնէ կամ կը հանգչի, այն փշերը մարմնոյն խորտուբորտութեանց վրայ կռուան մը կը գտնեն, որով իյնալու վտանգէ մը կը փրկեն կենդանին։

— Շատ հաւանական կ'երեւնայ ըսածդ, կանչեց քերթողը. բայց ուրիշ ինչ վախճանի կրնայ ծառայել արգէքը։

— Թերեւս, ըսի, արթուն պահպանութեան մը հեռու ալ չողկապեալ ըլլան։ Ըսել կ'ուզեմ որ, երբ խողովակաձեւ բոյնին մէջ ամփոփուած՝ չկրնար տեսնել դրսի աշխարհքը, այս փշերով իր մուշկատես բնակարանին պարիսպներուն վրայ կը կախուի։ Ցետոյ որովհետեւ դրսէն բնակարանին չորս կողմը այլ եւ այլ ուղղութեամբ թելեր ձգած է, եթէ թշնամի մը կամ որս մը անկէց անցնելով այս կամ այն թելին զարնուի, թրթռումը մէկէն կը հաղորդուի այն անդամին որ այն թելին կողմը յարեալ է. եւ սարդը արթննալով, պէտք եղած զարմանը 'ի գործ կը դնէ։

— Այդ մեկնութիւնը քիչ մը բռնազբօսեալ կ'երեւնայ, կանչեց քերթողը. բայց մեր այս թեթեւ քննութեանց մէջ հակաճառութիւն մոցընել չեմ ուզեր. սեպենք թէ երկրորդաբար անանկ վախճանի մ' ալ կրնան ծառայել։

— Ես ալ, պատասխանեցի, չեմ պնդեր կարծիքիս վրայ. եւ ոչ ալ հաստատել կ'ուզեմ զայն, որուն վրայ բաւական փաստ չունիմ։ Բայց ինչ որ զուրցեցի, պարզ իբր առանձին կարծիք մը ըրի։

— Ես ալ իբր այնպէս կ'ընդունիմ։ Բայց հիմայ շարունակենք մեր այս գործիքին հարցմունքները։»

Այս ըսելով նորէն աչքը աչամերձին մօտեցուց, ու քիչ մը դիտելէն ետքը,

— Ի՞նչ կը տեսնեմ, կանչեց. ճշմարիտ է տեսածս։

— Սուտ բան տեսնալ չէք կրնար, ըսի. հայելին որ կը նայի մէկ մը, չըտարակուիր որ առաջին առարկային իր անձին անսուտ պատկերն է։ Այդպէս այդ գործին ալ իր առջեւը դրուած առարկային պատկերը կու տայ առանց խաբելու։ Բայց ինչ է որ ձեր զարմանքը կը գրգռէ։

— Երեւակայէ ինչ կը դիտեմ։

— Թերեւս սրունքին ծայրը։

— Ատանկ է. Թաթը կը գտնեմ. ինչպէս կարծածէս տարբեր կը գտնեմ։ Անոր նուրբ ծայրը՝ մերկ աչքիս հազիւ փափուկ աղուամազով պատած կ'երեւնայ։ իսկ այս գործիքով, երեւակայէ։

— Ի՞նչ, լսենք։

— Եղջերեայ ճիրաններով ցցուած։ Դիրք մը կայ որ ամենեւին ոչխարի մը կճղակաւոր ոտքը կը նմանի։ կը դարձընես քիչ մը, եւ ահա նոյն կճղակները երկու կիսալուսնեայ սանտր կը փոխուին. իրենց կանոնաւոր ակռաներովը։ Քիչ մըն ալ կը դարձընես. ահա հաւու մը ոտքին նմանութիւն. որուն չորրորդ սկզբնական մատը, հոս փուշ մըն է, որ արմատէն քիչ մը ծռելով, հորիզոնական գիրք մը կ'առնու։ Դարձեալ սանտրերուն արմատին քովէն ուրիշ երկու եղջերեայ ճանկեր կը բուսնին կարծես, որ իրենց ակռաներուն բաժանմանը պատճառաւ, արմաւենիի ճիւղ կը նմանին։ Ասոնց վրայ աւելցուր փշակերպ աղուամազերուն խառնախառնը, որ այս մասանց չորսդին պատած են։ Միով բանիւ, տեսարան մ'ու-

նիմ աչքիս առջևը, որուն և ոչ գաղափարը կար մտացս մէջ ։

Ի հարկէ տանք ամենը բանի մը կը ծառայեցնէ կենդանին ։

— Ես այնպէս կը կարծեմ որ ամենը իրենց յատուկ վախճանը ունին ։ Անշուշտ այն կխալուննայ կոր սանտրելով դիւրութիւն մը կը ստանայ՝ ոտայնին ցանցառ թելերը գրկելով վըրայէն արագութեամբ սահելու. մինչդեռ փուշը, մարմնոյ մը վրայէն քալած ժամանակը՝ անոր ծակտեաց մէջ կը խոթէ, ինքզինքը առաջ ձգելու համար ։ Բայց բոլոր այս մասերը առ հասարակ այն ատեն կը զուգընթանան, երբ սարդը որս մը ըմբռնելու կ'ըլլայ ։ Սրածայր փուշը մարմնոյն մէջ կը խոթէ իրեն քաշելու համար, յետոյ իբր մատունք գործածելով միւս ատամնաւոր մասերը, անանկ մը կը գրկէ դըժբաղդ որսը, որ ազատում չունենար ։

— Ձեմ տարակուսիր, կանչեց քերթողը. մանաւանդ այս ահաւոր գործիներուն պատրաստութիւնը դիտելէս ետքը ։

— Բայց ճշմարիտն ըսէք. եթէ աւանց ականատես ըլլալու պարզապէս պատմէի, թերևս խօսքերուս հաւատք չտայիք ։

— Ձեմ կրնար ըսել որ ըսածներուդ հաւատք չտայի, բայց կարծեմ որ տըպաւորութիւնը անանկ սաստիկ չէր ըլլար ։ Ուստի կը խոստովանիմ որ այս տպնաձևից գիտութեան ըրած ծառայութիւնը մեծ է ։

— Այո՛, այնչափ մեծ, որչափ այն անծանօթ աշխարհը որուն գաղտնիքները կը բանան մեր առջին ։ Եւ սակայն շատ ժամանակ չկայ քանի որ այդ տպնաձևից զուգաչափ յարմարութիւնը հնարուեր է. բայց այս քիչ ատեննուան մէջ գիտութիւնը ինչպէս մեծաքայլ արշաւեր է անոր օժանդակութեամբը ։

— Բայց կեցիր, « կանչեց քերթողը ճակատը շփելով. ինչպէս թէ ուզենար յիշողութեանը մէջ բան մը փնտռել ». գիտես որ այդ գիւտին պատմութիւնը առասպելական մութ ծայր մ'ունի ։

— Ի՞նչպէս, հետաքրքրիր եմ լսելու, պատասխանեցի ։

— Մ'տիկ ըրէ, կարդացեր եմ կամ լսեր եմ, բայց ո՛ւր կամ ուսկից, չեմ գիտեր. իրն այս է ։ »

Այս ըսելով առաւ աթոռն և քիչ մը աւելի ինծի մօտենալով՝ նստաւ ։ Հարկ էր այնուհետև ամեն բան ծալել և իրեն ուշ դնել ։

Բնութեամբ շատ խօսիլ սիրող, միշտ վարդապետել կ'ախորժէր. և այնպիսի ժամանակ խօսքերուն չախորժիլ ցուցընելը, բարեկամութիւնը կորսնցնել ըսել էր ։ Այն անհատնում պարբերութեանց մէջ պարապ տեղ մարդ վերջակէտ մը կը փնտռէր, ուր ոչ միջակէտ կը նշմարուէր և ոչ ստորակէտ ։

Բայց որ զարմանալին էր, ամէն հարցմունք կ'ընէր հաւանութիւն ուզելու համար. և զոյգ ընդ հարցման պատասխանը ինքնիրեն կու տար, խօսքին թելը կտրել տալէն վախնալով ։ Անով թէպէտ խնդիրը դիւրաւ կը լուծուէր իրաւ, բայց խօսքն ալ վերջ մը չէր ցուցըներ ։ Եւ եթէ լմննար ալ, միշտ ստորակէտ էր, ուրիշ ժամանակ շարունակուելու դիտմամբ ։

Այսպիսի խօսակցութեանց մէջ, կ'ըլլար երբեմն որ ունկնդիրը հարցմունք մը կ'ընէր. պարապ աշխատութիւն. պատասխան մը չէր ընդունէր ։ Բայց փոխարէն երկրորդ օրը մեկնութիւնը կու գար չկարծած ժամանակը, նոր խօսակցութեան մը նիւթ բանալով. ինչպէս որ կը բղխէր քերթողին յիշողութեան այն գաւառէն, որուն մէջ թռեր պահուըտեր էր նոյն հարցմունքը ։

## ԺԵ

## Մտաւորականին գիւղը ։

Իսկոյն քերթողը այսպէս սկսաւ իր պատմութիւնը.

— « Կարծեմ գիտնալու ես հասարակ ժողովրդեան բերումը առ զարմանալին. որով առանց բանի մը պատ-

ճառը փնտռելու, միշտ նոյն բանին խորհրդաւոր մեկնութիւն մը կու տայ, գլխաւոր ներգործիչ կախարդութիւնը զուրցելով, որով և գրեթէ միշտ կը շարժի ողջոյն տեսարանը։ Ընդհանրապէս այդ է այն ամեն բանի պարզ պատճառը, որ անկիրթ մտքի մը ըմբռնողութենէ վեր է, և անհաս կ'երևնայ։ Ուշ դիր և դատէ։

«Զենք կրնար ըսել որ կորընթարդ ապակւոյ մեծցնող յատկութիւնը բոլորովին նորոց գիւտ ըլլայ. չէ, եթէ չենք ուզեր անիրաւել մեր նախնեաց դէմ։ Ի հնուց հետէ, և շատ յառաջ քան զմեր թուականը յիշատակուած կայ, որ առարկաներ մեծցնող ապակեայ գնտաձևք Եգիպտոսէն Եւրոպա բերուեր են. այս ստոյգ է 'ի պատմութեանց, և չենք կրնար ուրանալ։ Բայց խնդիրը մանրադիտին վրայ է։

Եթէ մանրադէտ ըսելով ուզենք հասկընալ այն ճարտար յարմարութիւնը՝ որ այլ և այլ կորընթարդ ապակիներ խողովակի մը մէջ հաստատուն համեմատութեամբ յարմարցնելով, մանր առարկայ մը միլիոն անգամ կը մեծցընէ, յստակ և որոշ ցուցընելով. այդ գիւտին սկիզբը, կ'ըսեմ, փնտռելու համար, շատ հին ժամանակներու երթալու չէ, ինչպէս դու ալ զուրցեցիր։ Բաւական է ելլել մինչև չորեքտասաներորդ դարուն կէսերը. կը հանդիպինք այն ժամանակներուն, որ գիտութիւնը իր ընթացից ազատութեան լծութիւնը չստացած, երբ մոլորամիտ և գիւազգեաց կը հալածուէին այն ոմանք, որ նորանոր գիւտից ետևէ կ'ըլլային։

«Այսպիսի ժամանակ մըն է որ տեսնուեցաւ ծեր ալքիմիստ մը, որ իր անունը կամ հայրենիքը՝ ոչ երբեք գիտցուց։ Լուռ, մունջ, անբարբառ, երբեք մարդու մը խօսք չէր ըներ. այլ լռելեայն Թիրոլի երկիրը քալելով, խիտ անտառներուն խորերը կը քաշուէր, մութ այրերը կը մտնէր, մենակեաց և ազատ՝ իր մտածութեանց հետ զբաղելու։

«Բայց իր այս լռութիւնը չկրցաւ փրկել զինքը աշխարհքիս չարագուշակ լեզուէն։

«Ինչո՞ւ համար այդ մենաւոր շրջանները։ Ի՞նչ էր 'փնտռածը այն տուփը լեցընելու համար՝ որ շարունակ հանդերձին տակը կը կրէր։ Ինչո՞վ ինքզինքը կը կերակրէր։ Այս ամենքը դաղտնիք էին, որոնց լուծումը ոչ ոք կարող էր տալ։ Անոր համար ալ ամենքը միաբերան, չար ոգւոյ մը համախոհ զինքը կը քարոզէին, ու հազար ու մէկ առասպելական դէպքեր վրան կը բարդէին։

«Անկէ կը հետևէր որ տղաք սարսափով իրմէն կը խորշէին, և կանայք՝ տեսածնուն պէս՝ երեսնին կը խաչակնքէին։ Եւ երբ խեղճ փիլիսոփայն երեկոյեան դէմ, յոգնած դադրած՝ անտառը թողլով գեղը կ'իջնէր, հազիւ և մեծ դժուարութեամբ կրնար ծակ մը գտնել խոկալու և գիշերը անցընելու համար։

«Այսպիսի տխուր և դառն էր այն ժամանակները այն մարդոց վիճակը, որ մինակ՝ տգէտ բազմութեան մը մէջ մեծ ու նոր մտածութեան մը ետևէ կ'ըլլային։

Հ. Յ. Վ. ԽՍԱՎԵՐՅԵՆՑ

Կը շարունակուի։

---

Ուսման ժամանակ լրջմտութեամբ մտածէ թէ ինչ կ'ընես. զբօսանաց ժամանակդ՝ ազատութեամբ զուարճացիր, բայց ոչ ընդունայն բաներով որ ժամանակ կորսնցնել ըսել է։ Թեթև ու ընդունայն բաներ սիրելու վարժութիւնը պզտիկ խելք ունեցողի յատուկ է, որ չմտածեր կամ չսիրեր մտածել։ Խելացի մարդու մը զբօսանքը՝ զգայարանքը կը պարարեն և բանականութիւնը կը կերպաւորեն։ Եւ ոչ վայրկեան մը առանց զբաղանաց պէտք է անցընել։ Պատանեկութեան և երիտասարդութեան մէջ դատարկութիւնն աններելի է։

ՇԷՍԴԸՐՖԻԼՏ

## ՄԱՀ ԻԼԴԵԳՈՆԴԱՅ

Անուանի փոքրիկ քերթուածի մը գեղեցիկ մասերէն մէկն է առաջիկայ ոտանաւորս, որուն սկզբնական դէպքն է Իլդեգոնդա անունով օրիորդին չուզելով հօրը առաջարկած անձին հետ ամուսնանալ, և Ռիկարդոս միլանցի կտրիճ ասպետին տարփաւորը ճանչցուելով՝ բռնի վանքի մը մէջ փակուիլն ու տառապիլը։ Հեղինակին՝ որ Ալ. Մանցոնիի արժանաւոր աշակերտներէն մէկն է, առաջին գրուածքը եղած է ասիկա և մեծ համբաւ ստանալու պատճառ. որուն մէջ գլխաւոր գովելի յատկութիւններն են, բովանդակ վէպին հանճարեղ գիւտերուն հետ խառնած, բնականութիւն 'ի գողտրիկ բացատրութիւնս և ճշմարտանմանութիւն 'ի նկարագրութիւնս, առանց ամենևին արուեստակութեան կամ չափազանցութեան։

Եւ վերացեալ յաչացն՝ երկնից յայտնութիւն,
Յոր ընկլուզեալ անձն էր արբմամբ լուսալիր,
Առ նա որ զմիտսն յափըշտակեաց անդրագոյն
Արտասուագին զբիբըն կաղեալ տըրտմալիր,
Ի՛ւ ինձ թափել, ասէ, զհանդերձ է մահուն
Լեալ տակաւին հօր երեսացն իմ զազիր.
Եւ մեռանել զիմրդ գըրոշմ ի ճակատ
Տարեալ զանէծս ի հանդերձեալ կեանս ինձ անդ։

Եւ զի՞նչ արդեօք մայրն իմ ամբիծ ասիցէ
Ի դրանցն երկնից եկաւորեալ ընդ առաջ,
Ըզմիածին երբ ըզդըստրիկ իւր տեսցէ
Մեռեալ խեռ հօրն, որպէս եկեացըն յառաջ.
Այն որ հըլու խոնարհակամ ի սըրտէ
Եկաց նըմին աղօթասէր ի կրից խաչ.
Եւ որ նըմին հարսն էր եւ կին յար հըսկող.
Մինչ ես որդի եւ իմ է նա հայր ծընող։

— Օ՛ն դարձ առ հայր, քաւիչն ասէ անդ յայնժամ.
Անմարթ իցէ զի խըստացեալ դեռ յոգի,
Ողջանաց եղուկ դըստերն ի մահուան
Դա ըզներումն իւր ըզվերջին զըլասցի.
Եւ քոյդ մաղթանք ի բանից Տեառն յաղթական,
Ազդողագոյն յոգիսն ինեւ դըրոշմեսցի։ —
Ի ճիգըն մեծ կաղեալ ի վեր ի մահճէ
Թափուր բնաւին զանդամն յուժոյ եւ զըրէ.

— « Արդ անհագին սըրտմըտութեան լըցաւ, հայր,
« Հեղեալ առ իս անիծից չափ եւ սահման։
« Թէ գիտէի՞ր ի փորձ քանի չարաչար
« Քըստմնասարսուռ ոգիքս տըղորմ փորձեցան.
« Ո՛հ զի կարի խոցիս ի վէրս ընդ երկար,
« Զանխուլ կացցէ այդ ի սըրտէդ հայրական։

« Երկնից եւ եթ իջէ գիտուն, եւ հաճոյ
« Ցաւք իմ եղեն ի պատարագս Աստուծոյ : —

« Կենացս իմ տիւ յառաւօտուն դեռ կանուխ
« Ընդ այգս այգուն զերկ ի լուսոյն մեռանիր .
« Եւ յետս ընդ կրունկ դարձեալ մահուն իմ ընդ ուղ՝
« Ցաւոց յաւէրժ դիմեմ ես հետս ի յերկրի :
« Այլ մօտալուտ ինձ հանդերձեալն յարաքուղխ,
« Եւ Յիսուսին է լոկ արդ տիւն առաջի .
« Որ նորընծայ առ ի հանդէս վրրիժուց,
« Եւ որ մընայն ի դատ վերջին իմ պարտուց :

— « Ներեա եւ թող, հայր իմ, ինձ դու, եւ օրհնեա
« Զդուստրըդ ցաւոց յայսմ ի պահուս օրհասին .
« Ո՛հ, մի՛ եւ մի՛, երդուեալ ի Տէր մեր ահա,
« Առ սէր եւ գութ Խղեգոնդայ կաթողին,
« Որ յոյժ ըզքեզ սիրեաց աստէն, եւ ապա
« Բերկրեալ անդէն բարեխօսէ Յիսուսին .
« Ո՛հ մի՛ աղէ ինձ խորասոյզ ի տապան
« Իջէ երթալ՝ յահեղ ծնողիդ ի ցասման : —

Եւ աւարտեալ, այն ինչ անդէն նա յուշիկ
Ըզգըլուխն ամբարձ, աչքն յարտասուս փայլակէր .
Ի ձեռն առեալ եւ համբուրէր ըզթըղթիկ,
Միտքն առ ծընող՝ առ որ ըզգիրն առաքէր :
Ծալեալ՝ փակեալ զայն հուսկ ուրեմըն լըռիկ
Հառաչախառն առ քահանայն կարկառէր .
Որ անբարբառ ամենեւին ընկալեալ,
Թուանի արտաքս ի սենեկէն, սիրտ յուզեալ :

Ըզգըլուխն անդուստ նըշանացի շարժելով՝
Մերձ ի մահիճս իւր զիդեալքէն կոչէր գալ .
Եւ առ գըլթածն յայտնէր սըրտիւ բոլորով
Զոր ինչ երէցն ըզհօրիկարդեայ էր ճառեալ .
Եւ զի մահու եւեթ մընայր ինքն յուսով,
Սըրտահաճոյ առ ցանկալին իւր դառնալ .
Զի եւ կարդայ ըզմահ անձկաւ իսկ բոլոր,
Եթէ երբեք դըրացէ ըզշնորհ նա ըզհօր :

Ապա — փութայ ճեպ ժամու, առէ, եւ վայրկեան
Տալ ըզվախճան երկարաձիգ իմ մարտիս .
Վաղ իսկ 'նդ յոգնեալ անդամս արդէն լըսեմ ձայն,
Որ հրաւիրէն հանդչել 'ի հող ինձ հկքիս :
Գուցէ վաղիւ զիս խընդրեսցես միւսանգամ,
Եւ զանձկալիդ չիջեալ գըտցես ըզչոքն ի յիս .

Եւ ոչ այլ ինչ անդէն հանդէպ քո լիցի՝
Քան դի լոկ ցուրտ՝ ըղձայապիրկ ի մարմնի։

Եւ առ ի քէն ես քոյր խնդրեմ անձկալւոյդ,
Զի դու լոկ հուպ լիցիս ձեռաքդ յիմ մարմին.
Զի յերկուրեալ յանչուքն ի ձեւ բարեդութ,
Զիս ի մահուն դիցես դագաղ դու ինքնին.
Եւ ինձ յաղօթս աղերսագին փոյթ ընդ փոյթ
Խնդրես զանդորր որ արդարոցն է բաժին։
Միւսն ի դարձուած մինչ մորմոքէր՝ անդ յանկարծ
Ընկճեալ առ դութ, լուծաւ ի չիթս արտասուաց։

— Մի՛ լար անդուստ, որ յանձն հաւմակ էր ի Տէր,
Մի՛ լար, ասէ, որ զի փութամս ի հանգիստ.
Զի՞նչ ինձ ընդ ծով կուտակադէզ առնել էր
Անմխիթար ի դառնաղէտ կեանըս խիստ.
Մինչդեռ յինէն մայրն իմ յաւէտ բարձաւ սէր,
Մինչ փոխեցաւ իմըս Հուիկարդ ի հանգիստ։
Եւ զի՞նչ ի ճահ ինձ ի հովտիս տըրտմութեան,
Քան զարտասուս՝ դոլով այսպէս այպն համայն։ —

Եւ զմրտերիմն այսպէս բանիւք գըգուեալ յար,
Զաչսըն սըրբէ եւ ընդ ճակատն համբուրէ.
Եւ — Ըղհայցուածս իմ լընուցո՛ւս դու յօժար.
Զառնե՛ս ապախտ, կընքե՛ս խոստումն ինձ աղէ։ —
Եւ աղերսէր այսպէս անդուլ անդադար.
Եւ մինչ ըղձլուխն ի խոստանալ նա կըրկնէ,
— Տացե՛ն երկինք քեզ, քոյր, ընդ այս տըրխուր.
Ո՛հ ինձ սիրոյդ, ասէր, եւ եւս յաւելոյր։

— Ինձ զըսպխտակն ըղձեցուացես ըղհանդերձ,
Զոր առղնագործ մայրն իմ գործեաց ի նանիր
Ցաւուրցն ի սուգ՝ մինչ ի վըշտաց իւր անզերծ,
Ակընկալեօք լայր ընդ փեսայն տարագիր։
Անդ յահեկէ զկուսին պըսակ ձեռնարերձ,
Եւ ընդ աջմէ ըղխաչ փըրկչին հայցեմ դիր։
Եւ կապեսցես ժապաւինաւն ըղհերս իմ,
Ցորում հիւսկէն իմս ընդ անուան կայ քոյին։

Եթէ բերայց ես ի վանացս արտաքոյ,
Զոր սըրտեռանդն աղերսանօքս արդ հայցեմ,
Ի հինաւուրց չիրիմ տոհմի ՚նդ մօրն իմոյ
Ի միասին զիս զետեղեալ հանգուսցեն.
Այլ թէ յինէն զլասցի և այս չնորհ հաճոյ,
Առ մօրաքեռն իմ թաղեցայց թող աստէն,

Դ՛ յարկաւ վիմին՝ հանգուցելոցն ի տաճար,
Զոր երրորդ անդ գլացեն՝ իջեալ ի խոնարհ ։

Եւ մինչ զանխուլ զանձն ի գրնդէ գողացեալ
Թշուառացելոց՝ ոյց արտասուեալ երբեք չիք,
Ի վայրն այն սուրբ ի ճեմս ոտից հապճեպեալ
- Գայցես ի մուտս երեկորին միայնիկ.
Անդ ի չիրմին ում զքեզ ուժգինս է սիրեալ
Կըրկնեա ըղձումըն՝ ի քոյդ մաղթանս երջանիկ.
Զգալուստ քոյին լուեալ ի խորոց տապանին
Եւ կայտառեացեն բերկրեալ ի թինդ ոսկերքն իմ։..

. . . . . . . . . .
. . . . . . . . . .
. . . . . . . . . .
. . . . . . . . . .

Տըխրաձայնիւ զանչեն զանգակք ի մըթան.
Զանխուլ մուընչիւն բազմամբոխից խուժանին,
Որ ծանրաքայլ հեռուստ յառաջ մեղմ խաղան,
Գամ քան ըզգամ յունկն ի մօտոյ բարբառին.
Ըղխորհըրդոցն Հաց բերելով հրաշական,
Ընդ Նըշուլից մոմեղինացն որ վառին ։
Անդ է ահա սուրբ պաշտօնեայն ջերմ յոգի,
Եւ առընթեր քորք ըղնովաւ ի կարգի ։

Երկնաճաճանչ յեղակարծումն ի Նըշոյլ
Լուսափայլեալ սեննակն ողորմ գոգ թըւէր,
Եւ զոգեվար սիրտ հիւանդին ընդ խիտան ուղ
Քաղցրութիւն իմն երկնանըման ըսփոփէր.
Եւ թըւէին այպք ի ժըմիտ անդ անդուլ,
Ի քաջալեր, յակընկալիս եւ ի սէր.
Մինչ պաշտօնեայն Նըմա զՍիրոյն ետ Նըշխար,
Մըրմընջելով երգս օրհնութեան անդադար ։

Մինչդեռ ապա ըղհամախումբ քերց զերամ
Խաչակընքէր նա Սըրբութիւնն ի ձեռին,
Նոք՝ ի կըրկին առաջս անձուկ մեկնեալ գնան
Եղանակեալ զերգըս փառաց Յիսուսին ։
Զիք ոք ընաւին որ ոչ աչօք դառնութեան
Անդըր ի սեամս՝ ոչ յետս ի Նա հայիցին.
Որ լըրջաղէմ՝ աչօքն եւ եթ՝ անբարբառ,
Ամենեցուն պաշտաէ ողջոյն սիրաբար ։

. . . . . . . . . .
. . . . . . . . . .

. . . . . . . . . . .

. . . . . . . . . . .

Մինչդեռ երեքն եռանդնառուք բարբառով,
Խրախոյս կարդայր նըմին ի մեծն անդ ի պահ,
Գայ հասանէ մի ոմն ի քերց փութալով
Թուղթ ի ձեռին, եւ տայ առ մայրն իւր վըստահ։
Պայծառացոյց զայտսըն տըխուր լի յուսով
Որ ի մահիճս անկեալ դընէր մերձ ի մահ։
Եւ ընկալեալ յարքայուհւոյն՝ ըստիպաւ
Ժողովեալ զոյժն եւ ի մահճին բազմեցաւ։

Եւ համբուրեալ ըզգիրն ի սիրտ իւր պընդէր,
Որ ընդ ձեռամբ իւր բարբառէր տրոփական.
Ապա ՚նթեռնուլ եւս անձկանօք զայն ճըգնէր
Բազում անգամ, բայց հեղու զուր ճիգն եւ ջան.
Զի մըռայլ իմն ասացուածոյն միտք թըւէր,
Եւ պատ ի պատ ոչ գիւր իմաստք ի վախճան.
Մինչ ուր ուրեմն առ պաշտօնեայն քաւիչ եւ,
Որ ընթերցաւ կականալիր եւ ընդ եւ։

« Սիրեցեալդ իմ դուստր, անագան արդ գրեմ
« Զի զիղջ համբուն՝ ապաշաւանք են նանիր.
« Եւ մի՛ ցասնուս, զի դու սիրես զիս գրեմ,
« Ընդ ակնարկելդ յետին մի նուազ յայս ի գիր։
« Թող ինձ ուրեմն, եւ զի մի՛ վըրէժ յԱնմահէն
« Հայցէ Հաւկարդ, դու արկ աղերս ի խընդիր։
« Ինձ ողորմ ըզքոյդ եղբայր գիտասցես
« Լեալ մատնատու, եւ զի օրհնեմ եւս ըզքեզ։ —

Գորովագին՝ որ մերձ առ դըրունս էր մահուն,
Զականողիս յերկինս յառեալ անդ եկաց.
Անդուստ ի խինդ սըրտին տըւեալ թաթաղուն,
Առատաբուղխ լայր ի ծորանս արտասուաց։
Գըլխակորեալ առ սընարօք անկողնոյն
Հաւատարիմն իւր ընդ նըմին կայր ի լաց.
Եւ արտասուէր, ծածկեալ զերեսն ընդ քօղով,
Նաեւ ինքնին աբբասուհին իսկ մեղմով։

Երկիւղածին առ գութ երեքըն յուզեալ,
Զմահահանդիստ աղօթսն ըստէպ կըրկնելով,
Եռանդագին մերթ ընդ մերթ դարձ արարեալ,
Օրհնէր ըզնա ըստէպ խաչիւըն սըրբով.
Զօրհասական մինչեւ զգանչիւնըն լըւեալ
Որ ընդ արթունս իմըն նիրհէր ընդ քընով,

Եկաց ընդոստ, եւ զաչսն յածեալ շուրջ զիւրեւ՝
Գիտել խընդրէր ծագեա՞ց տունջեան թէ արեւ։

Պատասխանի ետուն անդէն զ՚ էր գիշեր,
Սակայն անշուշտ ոչ յետ բազում ինչ ժամուց,
Արշալուսոյն ծագումն ՚նդ երկինըս փայլէր,
Զի՝ ՚նդ արեւելս աստեղք նուաղին իբր յայգուց։
Որ հոգեվար անդ ի մահճին անկեալն էր,
Սիրտ ի բորբոք զի դիտեսցէ զլոյսն այգուց,
Ըղլուսարգել փեղկսն եւ բանալ, և՝ անձկալից
Հայէր ՚նդ երկար լուռ ընդ ապօտ դէմս երկնից։

Ընդոստուցեալ տպա ըղձմամբ օրհնութեան
Խնկեա՝ նըմին որ առընթեր կայր վառեալ.
Եւ ՚նդ լըռելեան հընչեն մաղթանք հանդըստեան
Ի տաճարի անդ յերկիցուէն միշտ երգեալ.
Եւ ըզղօղանջն օրհասական իսկ յայնժամ
Ըզզանգակին ի նշան մահուն իւր լըսեալ,
Առ Իդելքէն զաչսըն կալեալ անուշիկ,
Եւ ընդ ժըմիտս աւէ մեղմով — Աւանիկ,

Աւանիկ ինձ վայրկեանն ի ցաւս ում բաղձում...
Այլ անձկութիւն զինքն յանկարծոյ աստ ընկճէ,
Եւ առ է տալ վայրիկ մի եւս դիւր շընչոյն,
Օգնեն նըմին զի նիստ առեալ հանգիցէ։
— Ինձ երանի, զի չեն անուրջք այս ի քուն —
Ասէ յայնժամ, զո՛ր ոյժն ոգել գեռ ներէ.
Զի մեռելոցն յիշէր ըզտիւ, մինչ յորժամ
Շընչել ըզշունչն յետին թըւէր ի նիրհման։

Եւ այսպէսիկ եղեն նորուն վերջին բանք։
Ըզգլուխն ումեք պարտասելոյ իմն հանգոյն
Ցամք եւ յուշիկ հակեաց ի վայր ուխտերանդ.
Իբրեւ ծաղիկ ծարաւահիւծ՝ փափկասուն։
Արեւ ՚նդ ճակատն իւր հարկանի լուսազանգ,
Եւ ըզպայծառ դէմսն բալխտակ քան ըզձիւն,
Ի շող նախկին ճառագայթեալ ի յերկնից
Գըճնազարդէ յամբիծն ի նշոյլ լուսալից։

ԹՈՎՄ. ԿՐՈՍՍԻ

ԹԱՐԳՄ. Հ. Գ. ՆԱԶԱՐԵԹԵԱՆ

---

# ԻՄ ՎԱՆՔՍ

## Դրաքեանի մը անտիպ յիշատակագիրք։

(Տես. երես. 89)

### Դ

Այս պտտալուս՝ զոր չկրցայ բռնել, այն գիւղական ժողովին մէջ սաստիկ շփոթութիւն մը ինկաւ։ Այն զարմանաց և կատաղութեան առաջին սաստկութիւնն անցնելով, և տեսնելով բոլոր ներսիններուն այն աղաղակը լռելովին՝ ինչպիսի խռովութեան ինկած ըլլալը, իրօք վախցայ որ յայտնուիմ։ Դիւրաւ կրնայի փախչիլ. բայց անդիմադրելի զօրութիւն մը կարծես թէ այն դրան քովը անշարժ և կաշկանդեալ կը բռնէր զիս։ Մէկէն ճրագները մարուեցան, և քանի մը փակաղակներով դրան գոցուիլը լսեցի։ Վերջը խառնակ շշնկոց մը, ոտքերու շփուիլ մը, և աստին անդին վազել մը ինծի կ'իմացնէին որ այն վայրկեանին մեծ շփոթութիւն մը ծագեր էր, և թէ ամեն մարդ փախչիլ ու պահուըտիլ կը նայէր։ Ես ըստ ինքեան այնչափ սարսափի պատճառ մը չէի տեսներ. բայց սակայն սկսայ կասկած մը ունենալ որ այդ ժողովը անօրէն ու ամբարիշտ գործ մը կը կատարէր, որ գիշերուան թանձր խաւարին և այն անծանօթ ու նեղ քարայրին մէջ ամենուն աչքէն կը ծածկուէր։ Թէպէտ տղայ մըն էի, բայց կարող եղայ այս ամեն խորհրդածութիւններս ընելու, որոնցմէ վերջը՝ շրթանցս վրայ, թէ ոչ ուրախութեան՝ գոնէ զարմանաց ծիծաղ մը ծագեցաւ, մտածելով թէ ես՝ որ այնչափ կը վախնայի անոնցմէ յայտնուելու, նոյն իսկ իրենց այնչափ սարսափին ու այնչափ շփոթութեան պատճառ եղեր էի։ Փոխանակ ուրեմն իմ իրենցմէ վախնալուս, իրենք ինծմէ կը վախնային։ Ո՛հ տես, կ'ըսէի մտքէս, տես բնութեան խաղը։ Այս կերպով այն սարսափի ու վախի տեսարաններուն մէջ մանկական զուարթութիւնը քիչ մը ոգևորեց զիս։

Երկայն ատեն կեցայ մտիկ ըրի թէ ներսը ինչ կ'ըլլար. բայց չորս կողմի խորին լռութիւն մը կը տիրէր։ Ան ատեն կարծեցի որ պահուըտած ըլլան, կամ ուրիշ դռնէ մը ամենքը ելած ըլլան։ Այս համոզմամբ միտքս դրի որ ալ ուրիշ բան չէի կրնար տեսնել և կրնայի երթալ։ Դէպ 'ի քարայրին մուտքը նայեցայ, և ինծի օրուան առաջին արշալուսոյն ծագել սկսելու պէս թեթև փայլ մը տեսնել երևցաւ։ Անձրևը գալէն դադրեր էր. և ամեն բան զիս այն տխուր յիշատակներով լեցուն տեղը թողլու կը յորդորէր։ Բայց կարծես թէ չէի կրնար որոշել երթալու, որովհետև ո՛ր կողմը դառնելիքս չէի գիտեր։ Կ'ուզէի սպասել որ քիչ մը առաջ երթայ օրը, որ կարենամ դիւրաւ ճամբայ ընել, և աւելի հաւանականօրէն մէկը գտնել որ ինծի իմ գեղս տանող ճամբան սորվեցնէ։ Մէկալ կողմանէ չէի ալ գիտեր՝ ինչուան լոյս հոնտեղը ինչ ընեմ, նաև մօտալուտ վտանգաւ՝ այն չարութեան որջէն ելլողէ մը յանկարծ վերջապէս բռնուելու։

Բայց մարդու քայլի պէս թեթև շշնկոց մը՝ որ սրահէն լսեցի, միտքս որոշել տուաւ. շարժեցայ և արտորնոք ելայ քարայրէն։ Հազիւ գրեթէ ոտքս քարայրէն դուրս դրեր էի, մէյմ՝ ալ մտնելու դրան փակաղակներուն՝ կամաց կամաց իրաւ, բայց զգալի կերպով վերցուիլը լսեցի. վերջը անոր նոյն դանդաղութեամբ ծխնեաց վրայ քալելը և կամաց կամաց բացուիլն իմացայ։ Ինծի երևցաւ որ մէկը անկից ելաւ և դէպ 'ի իմ գտնուած տեղս կու գար։ Թէպէտ միշտ տեսնուելու վախի մէջ էի, բայց ան ատեն կրկին վախնալու պատճառ ունենալով, շուտով մը քարայրէն քանի մը քայլ հեռու բարձրացած խոշոր ծառի մը ետև պահուըտեցայ։ Տեսայ իրաւցնէ որ երկու մարդ, սովորական վերարկուն.

բուն մէջ փաթթուած, կարգէ դուրս զգուշութեամբ ելան քարայրէն, և գըլուխնին ասդին անդին դարձընելով, լրտեսելու համար խաւրուած ըլլալնին կ'իմացընէին։ Չորս կողմը քիչ մը պըտըտեցան, ամեն կողմ մանրամասն դիտելով. ետքը նորէն քարայրը մըտան, և վերջը դիտեցի որ երեք կամ առ առաւելն չորս հոգւոյ պզտի խըմբեր դուրս կ'ելլային, առջիններուն պէս լայն վերարկուներու մէջ պլլուած։ Ան ատեն իմացայ որ մէկն ալ չէր գացած, և թէ քարայրը անկից զատ ուրիշ ելք չունէր։ Ամենքը լռութեամբ ցրուեցան և չուառ չուառ քալելով գնացին։ Միայն երկու հոգի իմ պահուըտած ծառէս քիչ հեռու կեցան. նայեցան չորս կողմերնին՝ մինակ ըլլալնին տեսնելու համար. վերջը ցած ձայնով մը, բայց այնպէս՝ որ իրենց ամեն խօսքը կրնար լըսուիլ, խիստ տաքցած խօսակցութիւն մը ըրին, որ ինծի համար այնչափ առեղծուածոց բանալին և այնչափ գաղտնեաց պարզութիւնն եղաւ, որոց մէջ իմ նախկին էութիւնս պատատեալ էր։

Թէպէտ և սաստիկ յոգնած ու նեղուած էի, թէպէտ սաստիկ այլայլութեան մէջ էի՝ լսելով որ այն ամբարիշտը զոր քանի մը ժամ առաջ իմ քարերուս հարուածներուն տակ ինկած կը կարծէի, ողջ առողջ և այնչափ լըրբութեամբ այն սոսկալի հայհոյութիւնները կ'արձըկէր, ինքզինքս բաւական հանդարտ ու խաղաղ բռնեցի որ այդ խօսակցութիւնն ինչուան վերջը մտիկ ընեմ։ Յայտնապէս Աստուծոյ նախախնամութիւնը անտարակոյս խորհրդաւոր և կարգէ դուրս կերպով մը իմ կենացս պատահարները կը պատրաստէր։ Կրնամ ըսել որ աշխարհքս իրեն սաստկագոյն կիրքերովը և նորանշան պատահարներովը սարսեց զիս և իմ թէ վրաս յարձակեցաւ դեռ այն մատաղ հասակէն, յորում ուրիշ մարդիկ հազիւ իրենց էութիւնը կը ճանչնան։ Այս սոսկալի և մահաբեր գիշերը կենացս մէջ նշանաւոր միջոցի հետք մը դըրոշմեց. և այս խօսակցութիւնը անոր խորին գաղտնիքներն ու ցաւագին պատահարները պարզեց։ Դեռ հազիւ տասը տարեկան հասակիս, թերևս բազմաթիւ տարիներու ընթացք մը ըրեր էի աշխարհիս մէջ, և ամեն անգամ որ մտածութիւնս մանկութեան օրերուս վրայ կը դառնայ, նաև զիս անգամ սաստիկ զարմանք մը կը պատէ, և գրեթէ կարծեմ որ ես ինծի չեմ կրնար հաւատալ։ Բայց առանց ուրիշ բանի՝ Աստուծոյ անհասանելի դատաստանաց առջևը խոնարհինք։

Այն երկուքն իրենց խօսակցութիւնը այսպէս սկսան.

— Ահաւասիկ, եղբայր, ըսաւ երկուքէն մէկը, ասկէ ետքը մեզմէ ես։

— Արդէն ձեզմէ էի, կրկնեց միւսը, շատոնց սրտով ձեզմէ էի։

— Գիտեմ. մեծ բան վաստըկեցանք. դու մեզի կարևոր ծառայութիւններ ընելու սահմանուած ես։

— Յուսամ թէ ինձմէ օժգոհ չէք ըլլար։ Թերևս ձեր իմ վրաս մտածելէն առաջ ես արդէն ձեզի համար և ձեր յանձն առած ազնուական և սուրբ նըպատակին համար կ'աշխատէի։

— Կը հաւատամ. քու ընկերական վիճակդ քեզի այնպիսի միջոցներ ու առիթներ կրնայ հայթայթել՝ որ յայտնի է թէ ուրիշները չեն կրնար ունենալ։ Դու ազնուական ես....

— Ազնուական եմ, ինչ կարծեցիր. և երկուքն ալ սաստիկ խնդալ մըն է փրցուցին։

— Իմ ազնուականութեանս մարհակը ես տուի ինծի. բայց և այնպէս ազնուական ճանչցուած եմ. և ոչ ոք իմ ազգատոհմիս կնիքը կը հարցընէ։

— Ազնուականաց ամբարիշտ ազգին դէմ ցմահ պատերազմելու համար ըզքեզ ազնուական ըրիր։

— Այո. այն գիրենք ջնջելու համար հիմայ ըրած երդումներս, արդէն շատ ժամանակէ 'ի վեր սրտիս մէջ ըրեր էի։

Այս խօսքերուս, արիւնս գլուխս զարկաւ. բարկութենէս ու զայրացմունքէս կրակ կտրեցայ, երկրորդ ան-

դամ մ՚ալ աչքիս առջևը տեսնելով զանիկայ, որ իբրև իմ անձինս չար սատանան և ժանտ ոգին էր։ Բայց և այնպէս մտադրութիւնս աւելցուցի, թէպէտ և հազիւ ոտքի վրայ կրնայի կենալ։

— Արդէն իմ գործիս գործադրութիւնն սկսայ, ըսաւ այս վերջինը։

— Իրաւ, պոռաց առաջինը։

— Այո․ կրցայ վերաբերութիւն հաստատել զօրաւոր և հարուստ ընտանիքի մը հետ, զոր դու, — աւելցուց բարձրաձայն ծիծաղելով, — շատ աղէկ կը ճանչնաս։ Կոմսը անանկ մարդ է որ մեծ համբաւ և համարում ունի, և իր պատուանուններուն և աստիճանին արժանութեանցը սաստիկ յարուած է։ Աղէկ կրթուած է և շատ հանճար ունի, և իրեն հետ վերաբերութիւն ունեցող անձանց վրայ շատ մեծ ազդեցութիւն ունի։ Այնպիսի մարդ մըն է ասիկայ որ մեզի մեծ չարիք կրնայ ընել․ ինչ կ՚ուզէ ըլլայ՝ որոշեցի զինքը մէջ տեղէն վերցընել։

— Շատ աղէկ։

— Փորձեցի զինքը իր համբաւէն և պատուէն վար ձգել․ բայց չյաջողեցայ։ Անունը շատ յարգի է, և համբաւը խիստ շատ տարածուած է։ Ան ատեն մտածեցի որ ստացուածոցը միջոցովը զինքը կործանեմ։ Քովը մէկ մը կայ որ քիչ ժամուան մէջ իր հարուստ ստացուածքէն շատ մը կը պակսեցնէ․ իսկ ես իրեն գործոյն կը նպաստեմ, զարհուրելի կերպով ապականող տարր մը ինծի օգնութեան կանչելով։

— Ըսածդ չեմ հասկընար։ Եւ ո՞րն է այս տարրը որ այդ ապականութեան սոսկալի խորհրդոյն օգնական կ՚առնուս։

— Չե՞ս հասկընար, խեղկատակ։

— Մէկալը աս հարցմունքին՝ չորս դին նայեցաւ, տեսնելու համար թէ մինակ է։ Վերջը ընկերոջը ձեռքէն բռնեց, ականջէն մօտեցաւ, և ցած ձայնով մը ըսաւ․ կրակն է։

— Ա՛հ կրակը, կրկնեց միւսը ժպտելով։

— Այո՛ կրակը։ Այս ժամուս որ քեզի հետ կը խօսիմ, և դու ինծմէ աղէկ գիտես զայն...

— Ո՛հ, ես բան մը չեմ գիտեր, պատասխանեց միւսը․ յայտնի չարասրտութեամբ։

— Հապա, արդէն յայտնի է որ դու բան մը չես գիտեր։ Բայց ան ալ իրաւ է որ իր գեղեցիկ կաթնարաններէն քանի մը հատը մէջմէկ մոխրոյ և աւերակաց կոյտեր դարձեր են։ Կը յուսամ որ դղեկին ալ նոյն բանն հանդիպի։ Բայց դժբաղդաբար շէնքին ամրութիւնը, և իր ծառայից հասուցած պատրաստ օգնութիւնը թող չտուին որ հրդեհը ծաւալի, և ինչպէս որ որոշած էինք՝ ամբողջ շէնքը հիմնայատակ ընէ։ Բայց կու գայ օր որ այդ ազնուապետութեան գարշելի բնակարանը անհետ ըլլայ երկրէս, և քար քարի վրայ չմնայ։ Ես ինծի երդուընցայ զայդ, և ես իմ երդմունքներէս պակսելու մարդ չեմ։

Այդչափ անօրէնութիւններ լսելով, ինծի երազել մը կու գար․ ինչ որ այն վայրկենին զգացի, աւելի դիւրին է երևակայել քան նկարագրել։ Ոչ միայն անոր վրայ անմեղ Կարոլինայի դահիճ մը կը տեսնէի, այլ և մեծաւ քաղաքանքով իմ հօրս ալ մարդասպանն ըլլալը կ՚իմանայի։ Զզուրցուելու բան է այն դժնդակ վայրկենին սրտիս մէջ արթնցած կրից շփոթն ու յուզմունքը։ Մեռած հօրս յիշատակը, հրդեհին ինծի պատճառած սարսափը, անօրէնի մը չարութեամբը անտերունչ և որբ մնալուս մտածութիւնը, այնպիսի խորին անձկութեան և սաստիկ ցաւոց մէջ ձգեցին զիս որ կարծես թէ վրաս խղդուկ մը կու գար։ Այն կէտին չկրցայ լալս բռնել․ սաստիկ արցունքով երեսս լեցուեցաւ․ գլխէս ինչուան ոտք կը դողայի, ատելութեամբ և սիրով, բարկութեամբ և կարեկցութեամբ լեցուած, որուն նմանը կենացս մէջ չեմ զգացած։

— Բայց դեռ ամբողջը չէ ասիկայ, վրայ բերաւ առաջին խօսողը։

— Ուրիշ ի՞նչ բան պատրաստած ես, խնամքով մը հարցուց մէկալը։

— Սատացուածքը փճացնելէ աւելի՝ ընտանիքը կ՚ուզեմ փճացնել։ Այսպէս ահա ազնուական ընտանիք մը պակաս կ՚ըլլայ երկրիս վրայէն։

— Կ՚ուզե՞ս թերևս անդամներն բաժանել, թէ սպաննել տալ։

— Ոչ. ես անդամներն չեմ կտրեր. գլխոյն կ՚երթամ։

— Հասկըցայ։

— Գլուխը որ խլուի, անդամները կը թառամին և կը մեռնին։ Արիւն չեմ ուզեր թափել. շատ վտանգաւոր բան է։ իմ նպատակիս հասնելու միջոց չպակսիր, և քիչ ատենէն կը հասնիմ։

— Ի՞նչպէս արդեօք։

— Քիչ մը շատ միամիտ կ՚երևաս ինծի։ իմ ընդունելութեանս ժամանակ ինծի դաշոյն մը յանձնեցիք, և ես երդուընցայ որ և իցէ ակնարկութեան պատրաստ ըլլալ խոթելու զայն որևէ սիրտը որ ինծի ցուցուի։ Բայց ես կարծեմ որ դաշոյնը լաւագոյն զէնքը չէ ազնուականաց և քահանայից ատենի ցեղը ջնջելու համար։ Ուրիշ ասկից լաւագոյն զէնք մը ունիմ, զոր յաջողութեամբ պիտոր գործածեմ. ամենևին մի՛ տարակուսիր։

— Անոնցմէ մէկը արդէն գիտեմ, թէպէտ և ինծի գիտնալու պէտք մը չըլլայ։ Իսկ միւսը։

— Միւսը, կրկնեց այն ամբարիշտը, միւսը աւելի սոսկալի է և քան զաշխինը նուազ վտանգաւոր ալ է։ Դեռ չկրցա՞ր գուշակել։

— Կարծեմ թէ այո... Թոյնը պիտի ըլլայ։

— Այո, թոյնը. հիմայ հարկաւ կ՚իմանաս ինչ ընելիքս։

— Կը զարմանամ վրադ, և կը տեսնեմ որ կատարեալ չարագործ մըն ես։

Ալ չէի կրնար դիմանալ. չեմ գիտեր ինչ կ՚ընէի որ այդ ժանտ և սոսկալի հրէշին աչքիս առջևէն վերցընէի։ Բայց ես խելքէ դուրս թուլցած և տկարացած էի. այնչափ տխուր տպաւորութիւններ, և այնչափ բուռն և դիւրագորով զգայմանցս կրած այլայլութիւնքն զիս իրրև թէ ջախջախեր և յոչինչ դարձուցեր էին։ Բայց սակայն կ՚օրհնէի զԱստուած որ այնպիսի բարեպատեհ առիթ մը տուաւ ինծի այս սատանայական մեքենաներն իմանալու. ժամանակին, կ՚ըսէի միտքս, ես ամենը պիտի յիշեմ. բայց լաւ կ՚ըլլայ միտիկ ընել դեռ, որ կարենամ դեռ աւելի բան մը իմանալ։

— Ցիշէ ինչ որ քեզի ըսի. սատացուածքը փճացնելէն աւելի, կ՚ուզեմ ընտանիքը փճացնել։

— Կը յիշեմ. և ան ատեն...

— Ան ատեն այն հարուստ սատացուածքը...

— Ի՞նչ...

— Իմս կ՚ըլլայ։

— Քօւկդ. այս անգամ իրաւցնէ ըսածդ չեմ հասկընար։

— Հարկաւ կը հասկընաս։ Այդ հայրենական ժառանգութիւնը կնկանս ձեռքով իմ գոգս պիտի լեցուի։

— Բայց խորհրդաւոր բան մի է ասիկայ։

— Այո, խորհրդաւոր բան մը, որ քանի մը տարիէն պիտի յայտնուի։

— Ես ալ պիտի իմանամ զայն։

— Պիտի իմանաս, ազնիւ բարեկամս, եթէ ինծի ձեռք տալու ըլլաս։

— Ամենայն կերպով պատրաստ եմ։

— Շատ աղէկ։ Բայց հիմա օր եղաւ, պէտք է որ բաժնուինք. շուտով կը տեսնուինք։ Ես հիմա կ՚երթամ իմ գործս առաջ տանելու։ Հիմա ալ քու եղբայրդ չեմ. Պաւոլի պարոն կոմսն եմ։

— Պարոն կոմս...

— Մնաս բարով, բարեկամ։

Եւ ուժով մը իրարու ձեռքը սեղմելով և բարձրաձայն ծիծաղ մը փրցընելով, զիրար թողուցին և այլ և այլ կողմէ գնացին։

Խօսակցութեան վերջը ինծի համար շատ մութ մնաց։ Բոլոր մնացածը սոսկալի կերպով պարզ էր ինծի. բայց ան անպիտանին վերջին խօսքերը իրաւցնէ խորհրդաւոր էին։ Որչափ ալ

մտածէի, չէի կրնար հասկընալ ինչ կ'ուզէր իմանալ երբ ըսաւ թէ իր ձեռքը մատնուածին հարուստ ժառանգութիւնը իր կնկանը ձեռքովը իր գոգը պիտի լեցուի: Բայց ամեն բան պարզելու և իւր անօրէն դաւը իմանալու չափ բաւական բան հասկըցեր էի:

Բոլորովին օր եղաւ. քունն ու անօթութիւնը սոսկալի կերպով կը նեղէին զիս. բայց ախորժ չէի զգար ոչ քնանալու և ոչ ուտելու: Ցաւագին մտածութիւններով չարչարուիլ կը զգայի: Միտքս եկաւ խեղճ կարոլինան. մայրս յիշեցի, և երևակայելով թէ իմ տունս չդառնալս տեսնելով ինչպիսի նեղութեան մէջ պիտի ըլլայ, որոշեցի որ վերջին ճիգն մ'ընեմ, և թէպէտ քայլ մ'ալ ընելու մեծ դժուարութիւն կը զգայի, ելայ իմ պահուըտած տեղէս, երբ ապահով եղայ որ այն երկուքը շատ մը հեռացած են, և առանց ուշ դնելու, աջ կողմէն՝ խիտ անտառակի մը մէջէն պտըտող քարուտ ճամբայ մը բռնեցի: Եւ ոչ մէկ կողմէ կրնայի բան մը նշմարել. ուրիշ բան չէի տեսներ բայց եթէ ծառեր, մացառներ ու վայրենի բոյսեր: Գրեթէ ժամու մը չափ քալեցի, առանց կենդանի արարած մը գտնելու և առանց բնակութիւն մը տեսնելու: Վերջապէս բաւական լայն ճամբայ մը կը հասնիմ, բայց այնպէս քարերով ծածկուած, որ առանց գայթելու դժուարաւ կրնայի ոտքս զետեղել: Այս անդնալի ճամբէն քիչ մը քալելով, տանիքը յարդով ծածկուած անշուք տնակի մը առջև կ'ելլեմ: Դրան առջևը պառաւուկ մը նստած էր, ծնգացը վրայ պզտի տղայ մը բռնած, զոր երբեմն երբեմն կը համբուրէր և գորովանօք կը գգուէր:

Մէկէն ըսի մտքէս. կրնայ այս բարի պառաւը իմ տունս տանող ճամբան սորվեցնել ինծի: Ուստի հաղիւ մօտ կը հասնիմ, տղայական միամտութեամբ մը կը հարցընեմ թէ տունս երթալու համար ինչ ճամբայ պէտք է բռնեմ:

— Բայց, աղնիւ տղաս, ուր է քու տունդ, սիրով մը հարցուց պառաւը:

— Դիոնեսիոսին և Թերեզիա մօրս տունն է իմ տունս:

Պառաւը այս անուններն որ լսեց, երկու աչքերն անանկ մը բացաւ, որ իրաւցնէ վրաս վախ եկաւ, և սաստիկ զարմացած հարցուց ինծի.

— Արդեօք Թերեզիայի, Դիոնեսիոսի աղնիւ այրուոյն տղա՞ն ես դու:

— Այո, պատասխանեցի մէկէն, անոր տղան եմ:

— Ի՞նչպէս հիմա հոս կը գտնուիս:

Այս հարցմունքը զիս քիչ մը նեղը ձգեց. իրաւցնէ չէի գիտեր ինչ պատասխանելիքս: Բայց պառաւը այնչափ այս հարցմանը վրայ յամառելով կեցաւ, որ լաւ սեպեցի գէթ կէս մը ճշմարտութիւնն ըսելու: Պատասխանեցի որ իրիկունը տուն դառնալու ատենս ճամբան սխալեցայ, անոր համար բոլոր գիշերը մօրմէս հեռու մնացեր էի:

— Ո՛հ խեղճ մայրդ, կանչեց պառաւը. ո՜վ գիտէ ո՛րչափ մտմտուքի մէջ եղած պիտի ըլլայ, և է դեռ հիմա, քու տունդ չհասնելովդ: Շուտ, շուտ, ժամանակ չկորսնցնենք. հիմա հետդ մէկ մը կը գտնեմ որ զքեզ մօրդ տանի:

Աս ըսելով, ելաւ նստած տեղէն, և սուր և զօրաւոր ձայնով մը գոռաց. Յակոբ, Յակոբ: Հնչող և ուժով ձայն մը տնակին ներսէն պատասխանեց. կու գամ, մայր իմ: — Հիմա, ըսաւ պառաւը, առ աւիկայ ու կեր, անօթի պիտի ըլլաս: — Պնակով կաթ և քանի մը հաց բերաւ: Մէկէն թաթխեցի զանոնք, և չափաւոր ախորժակով կերայ:

Ուտելու ատենս միտքս եկաւ այն իրիկունը որ աղնիւ Մարգարիտան զիս իմ տունս տարաւ, և խեղճ մայրս ինծի կաթնապուր կերցընել տուաւ: Այն յիշատակութիւնը կերպով մը բոլոր մէկալ անախորժ և աղետաւոր յիշատակներն արթնցուց: Ինչուան նոյն վայրկեանը տագնապն ու վախը և հետաքրքրութիւնը խելքս ցրուեր էին, և միտքս դժուարաւ անցելոյն մտածութեան մը վրայ կը հանգչէր: Բայց ան ըստ ինքեան անտարբեր պարագան, ամեն ցաւագին յիշատակ նորոգեց

մտքիս մէջ. մերթ ընդ մերթ յանկարծ կը կենայի, որովհետեւ երեւակայութեամբս այն պէս պէս սիրտ չդիմանալու տեսարաններն կը մտածէի, որոնց ներկայ ըլլալու հարկադրուեր էի։ Մայրս ու Կարոլինա բնականապէս աւելի կերպով մը կ'ազդէին. մէկը մահուան դուռն հասած կ'երեւնար, մէկալն իմ տան չդառնալս տեսնելուն՝ տրտմած եւ վշտացած։

Այս ցաւագին մտածութեանց մէջ՝ Յակոբը եկաւ, այն ազնիւ պատուին տղան, որ ինծի այնչափ խնամք կը ցուցնէր։ Բարձրահասակ եւ բարեկազմ, անոյշ դէմքով եւ իրեն քաշող երիտասարդ մըն էր։ Պատուը զինքը տեսնելուն պէս ըսաւ իրեն. Յակոբ, շուտ աս տղան խեղճ Դիոնեսիոսին կնկանը Թերեզիային տար։ Ըսէ իրեն որ կորսուեր էր եւ բարեբաղդաբար ինծի եկաւ։

Ուտելը լմնցնելուս պէս ոտք ելայ, եւ այն ազնիւ պատուին մնաս բարեւ ըսելով՝ Յակոբին հետ գնացի։ Ճամբայ ըլլալու ժամանակ՝ այն ընտիր երիտասարդը ինծի այնպիսի խօսքեր կը նետէր եւ այնպիսի հարցմունքներ կ'ընէր, որ գլխս սաստիկ շփոթութեան մէջ կը ձգէին։ Բայց սակայն բաւական վարպետութիւն ունեցայ իմ պատասխանս եւ առանց բանը դուրս ելլելուն՝ խալըսիլ անկէց։ Վերջը շատ մը ճամբայ քալեցինք առանց բան մը խօսելու։ Ճամբու մը դարձուածքին ծայրը, հին ծառերու ետեւէն գեղին աշտարակը եւ գեղիս եկեղեցւոյն զանգակատունը տեսնուեցաւ։ Այն որ տեսայ՝ ուրախութենէս սիրտս վեր վազեց, բայց միանգամայն սաստիկ կը բաբախէր, մտածելով որ քիչ մը վերջը մայրս պիտի տեսնեմ եւ գլխս չարաչար պիտի յանդիմանէ։ — Արդեօք ինչ պիտի ըսէ մայրս, կը հարցընէի մտքէս. Կարոլինան ողջ է թէ մեռած։ — Այս հարցմունքին պատասխանելու սիրտ չէի ըներ. կամ լաւ եւս՝ սիրտ չէի ըներ եւ ոչ պզտի ենթադրութիւն մ'ընել։ Ո՛հ Տէր, այն վայրկեաններն ինչպիսի անձկութիւն եւ ինչպիսի տագնապ տիրած էր վրաս։

Վերջապէս հեռուէն իմ տնակս կը տեսնեմ. հետաքրքրութեամբ մը կը դիտեմ որ տեսնեմ թէ մայրս, ինչպէս իր սովորութիւնն էր, արդեօք դռնէն դուրս է։ Բայց մէկ մը չեմ տեսներ։ Դուռը գոցած էր, եւ պատուհաններն ալ բոլորովին գոց էին։ — Արդեօք ինչ հանդիպած կրնայ ըլլալ, կ'ըսէի ինքնիրենս. ինչպէս կրնայ ըլլալ որ մայրս տունը չէ։ — Այս միջոցին տնակը կը հասնինք. Յակոբը դուռը կը զարնէ, պատասխան տուող չկայ։

Արիւնս երակներուս մէջ պաղել մը կը զգայի. եւ սկսայ մտքիս մէջ ահաւոր եւ տագնապող նախազգացմունքներ ձեւացնել։ Մէկէն մտածեցի որ Կարոլինա մեռած ըլլայ, եւ մայրս դղեակը քաշուած ըլլայ։ — Ո՞ւր կրնայ ըլլալ մայրդ, հարցուց ինծի Յակոբ։ — Թերեւս դղեակն ըլլայ, պատասխանեցի մէկէն։ — Երթանք տեսնալու ուրեմն, կրկնեց ազնիւ երիտասարդը, եւ աս ըսելով բռնեց ձեռքէս, եւ դէպ 'ի դղեակը գացինք։ Երբ դռան հասանք եւ շարժական կամուրջն անցանք, հարցուց Յակոբ թէ՝ Հո՞ն է Թերեզիան. ոչ ոք կրցաւ բան մը ըսել։ Իմ տագնապս բիւրապատիկ կ'աւելնար, որովհետեւ չէի կրնար մօրս այսպէս աներեւութանալուն պատճառ մը տալ։ Բայց Յակոբ սիրտ ըրաւ ու աւելի առաջ գնաց։ Սովորական դաւիթն անցանք եւ սանդուխներուն ոտքն հասանք։ Հոս ալ մէկու մը՝ որ կ'անցնէր՝ հարցուց թէ Հո՞ն էր մայրս. բայց ոչ ոք կրնար այո կամ ոչ բան մը ըսել։ — Հապա ուր կրնայ ըլլալ ուրեմն, կանչեց Յակոբ անհամբերութեամբ մը։ Երթանք վեր. աւելի բան մը կ'իմանանք։ — Ուստի վեր ելանք սանդուխներէն եւ հասանք բացուած մեծ դրան մը առջեւ, որ ընդարձակ սրահ մը կը հանէր։ Ճանչցայ որ նոյն սրահն էր, ուսկից մօրս հետ անցայ, երբոր Կարոլինայի մօրը գնացինք։ Մէկ ծեր ծառայ մը նստած էր, որ չեմ գիտեր ինչ կ'ընէր։ Յակոբ սովորական հարցմունքը իրեն ալ ըրաւ. ան ալ կէս մը մրմռալով պատասխա-

նեց թէ մայրս խաթունին հետ ներսն է։ Ան ատեն Յակոբ աղաչեց որ իմացընէ իրեն թէ տղան դարձեր է և իրեն կը սպասէ։ — Ա՛հ խաբեբայ, կանչեց ծերը կէս մը բարկացած. ասանկ փախուստ տալ կ'ըլլա՞յ։ Մայրդ բոլոր գիշերը լացաւ, և գէթ քսան հոգի անհանգիստ ըրիր, որ ամէն կողմ գացին զքեզ փնտռելու։ Ամօթ քեզի։ — Եւ աս ըսելով, ինծի խոժոռ նայուածք մը ըրաւ և մօտիկ խուցը գնաց։

Այս յանդիմանութիւնը ինծի շատ գէշ ազդեցութիւն ըրաւ։ Թէ որ ասիկայ այսչափ կը սրդողի, կ'ըսէի միտքէս, հապա մայրս ի՜նչ պիտի ըսէ և ի՜նչ պիտի չընէ։ Բայց սակայն ըսելուս չմնաց, մէյմ'ալ տեսայ մայրս որ առջևս վազեց, և աչքերը լալէն ուռած և թըրջած, զիս գիրկն առաւ, և ուժով մը սխմելով զիս, աւելի սիրալիր քան յանդիմանական ձայնով մը, ըսաւ. Բայց ի՜նչու, Հենրիկոս, այդչափ լացընել կու տաս մայրդ։ Բոլոր գիշերը ո՞ւր էիր։ Մի՛ յանդիմաներ խեղճը, անդիէն վրայ բերաւ Յակոբ. երէկ իրիկուն եկեղեցին երթալու ժամանակ՝ հետաքրքրութենէ շարժած փոխեր է ճամբան, և տուն դառնալու ճամբէն մոլորեր է։ Իմ մայրս Գերդա ինծի յանձնեց որ հրամանքիդ այս տեղեկութիւնը տամ։ — Յակոբ այս խօսքերով ինծի մեծ օգնութիւն ըրած եղաւ. տեսայ որ մայրս քիչ մը հանդարտեցաւ, և շնորհակալ ըլլալով Յակոբայ՝ զիս իրեն բերելուն համար, և յանձնելով իրեն որ Գերդայի ալ շընորհակալ ըլլայ, ինծի այնչափ ցուցըցած խնամքներուն համար, զիս հետն առաւ և խաթունին սենեակը տարաւ. ինքն ալ իմ դառնալուս շատ ուրախ եղաւ։ Զիս նստեցնել տուաւ և դիմացս քանի մը պատառ կողի ու հաց բերել տուաւ։ Մեծ ախորժակ մը չունէի իրաւ, բայց և այնպէս՝ կերայ։ — Յոգնած պիտի ըլլաս, հարցուց խաթունը, և անշուշտ քուն ունիս, վասն զի թերևս այս գիշեր քուն եղած չես։ — Եւ մէկէն մայրս հարցուց թէ ո՞ւր անցուցի գիշերը։ Ըսի որ քարայրի պէս բանի մը տակ անցուցի, որուն ուր ըլլալը չեմ կրնար ըսել։ Ուրիշ շատ մը հարցմունքներ ըրաւ, որոնց սանկ նանկ պատասխանեցի։

Մօրմէս ու խաթունէն ունեցած ընդունելութեանս վրայ շատ ուրախ էի։ Բայց միտքիս մէջ դեռ տարակոյս մը, դառն տարակոյս մը կը մնար։ Կը տեսնէի մայրս ու խաթունը, բայց Կարոլինան չէի տեսներ։ Գիտէի որ մայրս վայրկեան մը քովէն չէր զատուեր, և տեսնելով որ այնչափ ժամանակ առանց անոր կը մնար, կը վախնայի որ իրաւցնէ ձախորդ բան մը պատահած պիտի ըլլայ։ Բայց չէի համարձակեր անոր վրայօք տեղեկութիւններ հարցընել. և կարծէի որ վախեմ անախորժ պատասխան մը ընդունիմ, և որ աւելին է, դառն յանդիմանութիւններ. բայց իմ մեծ բախտէս՝ մայրս մէկէն զիս ամէն մտմտուքէ ու տագնապէ ազատեց։ — Իսկ Կարոլինայի վրայօք բան մը չե՞ս հարցըներ, ըսաւ, շրթանցը վրայ ժպիտ մը արձըկելով։ — Այն հարցմունքը և այն ժպիտը մէկէն ուրախացուցին զիս։ — Ո՞ւր է Կարոլինա, արտորնօք մը հարցուցի մէկէն։ — Քուն կ'ըլլայ, ըսաւ խաթունը յայտնի հաճութեամբ մը։ — Ի՞նչպէս է, աւելցուցի մեծագոյն եռանդեամբ մը։ — Շատ աղէկ է. բայց, խե՜ղճ պզտիկ. կը կարծէինք որ կորսնցընենք զինքը։

Այն վայրկենին ես երջանկութեան և ուրախութեան ծայրն էի։ Խաթունը ըսաւ մօրս որ զիս անկողին տանի որ քնանամ և հանգչիմ։ Երթալու վրայ էի, մէյմ'ալ Կարոլինայի լալը լսեցինք։ Այն պոռալներն՝ զիս ուրախութեամբ լեցուցին. մայրս վազեց առնելու զինքը, և շուտով մեր քովը եկաւ։ Կարոլինան զիս տեսնելուն, անհնարին ուրախութեամբ շարժեց թաթիկները, և սովորական զուարթութեամբն ու քաղցրութեամբը ծիծաղեցաւ։ Քովը մօտեցայ և ճշմարիտ խանդաղատանօք մը սկսայ փայփայել զինքը և համբուրել։ Խաթունը յայտնի գորովանօք մը այս մանկական տեսարանը կը դիտէր. մօրս

ալ սիրտը եղած էր և մեզմէ չէր բաժնէր աչքերը, ուսկից տեսայ որ արցունք մը կաթեց, բայց ոչ ևս ցաւոց, այլ մխիթարութեան։

Քիչ մը վերջը անկողին գնացի. քանի մը ժամ խորունկ քնացայ։ փառաւոր ճաշ և ընթրիք մը ունեցայ։ Մայրս և ես մեր տէրերուն ընտանիքէն եղեր էինք։

Այն գիւղին մէջ ուրախ և զուարթ օրեր անցուցինք. խաթունն ու իր էրիկը գիս իրենց որդւոյն պէս կը սիրէին, և իմ մայրս իբրև իրենց քուրերէն մէկը կը սեպէին։ Բայց օր եկաւ որ այն իմ ուրախութիւնս դառնապէս խռովեցաւ և ինծի համար անտանելի եղաւ այն բնակութիւնը։ Այն օրն էր որ գիւղակին մէջ դարձեալ տեսնուեցաւ այն մարդը, որ զինքը Գաւոլի կոմս կը կոչէր։ Եւ իր երևնալը՝ չարագուշակ մէտէորայի մը երևնալուն պէս եղաւ. և այն վայրկենէն և ուրախութեան տունը քիչ ատենէն արտասուաց և թշուառութեան բնակարանի մը փոխուեցաւ։

Մէկ յանկարծական և ցաւալի դիպուած մը այն երջանիկ ընտանեաց մէջ խեղճութիւն ձգեց, և ինծի համար սկսաւ նոր չար մը սոսկալի պատահարաց, որոնք գիս դժպհի ոճրագործութեան մը պիտի տանէին։

Կը շարունակուի։

---

Սերվիոյ անցեալն ու ներկայն։

Սերվիա կ'անուանի այն երկիրը՝ զոր կը պատեն Դանուբ, Սաւա, Տրինա և Դիմօք գետերն, և գրեթէ միլիոն մը բնակիչ ունի այս սահմաններուս մէջ։ Այլ հաշուէ տակ ձգելով և այն Սերվիացիքն որք կը բնակին 'ի Բոսնիա [1], Ռաշիա, Հերձեկովինա, Մոնդէնէկրօ, և անոնք որ կը բնակին Աւստրիոյ մէջ, 'ի Վոյվոտըսթօ [1], 'ի Սլաւոնիա և 'ի Դալմատիա, և այլն, գրեթէ բովանդակ չորս միլիոն վեց հարիւր հազար հոգւոյ կը հասնի, որք սերվեան մեծ ազգութեան մնացորդք են, 'ի բաց առնելով այն Սերվիացիքը որք կը բնակին Դալմատիոյ և Սլաւոնիոյ գաւառներուն մէջ, որք 'ի հնումն խռուաթատանի մասն էին։ վասն զի գիտեմք թէ զուգ-

1 Այս հաշուով Բոսնիան՝ Սերվիա կը համարի. բայց ունի իրեն առանձին վարչութիւն։ Աշխարհակալութեան ժամանակ, պատուական կալուածատէրերը իրենց վիճակը պահելու համար մահմետական օրէնքը ընդունեցան։ Այս ազնուականութիւնը մահմետական է, բայց ոչ տաճիկ. իւր լեզուն, իւր սովորութիւնքը և մինչև ընտանեաց անունները անգամ պահած է։

1 Սերվիացւոց գլխաւոր գաղթականութիւնները, սկսեալ Տաճկաց աւարառութենէն, սկսան ԺԵ դարուն։ 1690ին և 1740ին եղան երկու նոր գաղթականութիւնք։ Առաջինը առաջնորդ եղաւ Հռոմպարիոյ Թագաւորութեան 37,000 սերվիացի ընտանեաց։ Բայց երկրորդը, որուն Արսէն Դ պատրիարքը կ'առաջնորդէր, ճամբուն Օսմանեանցմէ բռնուեցաւ և գրեթէ 80,000 հոգի կորեան։ Այս Սերվիացիք կը բնակին Աւստրիոյ իշխանութեան տակ Վոյվոտըսթօ (Voïvodstvo) անուամբ երկիր մը, որոյ սահմանագլուխք են Սաւ ու Դանուբ գետերը։ Առաջինին՝ Լէոպոլտ կայսեր հետ հաստատած դաշանց զօրութեամբ գաղթականները իրաւունք ստացան գլուխ մը ընտրելու Վոյվոտ կամ Իշխանապետ անուամբ։ Բայց Վիեննայի կառավարութիւնը քիչ ժամանակէն այս արտօնութիւնը խափանեց. և երբոր ժողովուրդը պատրիարքէն հոգևոր իշխանութեանը վրայ աշխարհական իշխանութիւնն ալ աւելցուց, Աւստրիոյ խորհրդարանը, ժողովրդեան այս պահանջումը մեծ համարելով, բառ մը ուրիշ բառի փոխելով, որոշեց որ պատրիարքը Արքեպիսկոպոս ըսուի, և իւր աշխարհական իշխանութիւնն ալ վերցուց։ 1848ի խառնակութեանց ատենը, մայիսին առաջին օրը ժողովեցան Սերվիացիք 'ի Քարլովից, Դանուբին եզերքը փոքրիկ քաղաք մը, Բեթերվարատինի մօտ, և գումարման առաջին գործը եղաւ իրենց իրաւունքը նորէն առնելը՝ Շուբլիքացի զօրավարը իշխանապետ ընտրելով, և Ռաջաչիչ միտրապոլիտն ալ պատրիարք։ Խռովութիւնը լմննալէն ետև, այս պատուանունքը նորէն արգիլուեցան։ Բայց թէպէտ և այս անունները պաշտօնական գրութեանց մէջ ջնջուեցան, սակայն ժողովուրդը կը գործածէ զանոնք, զինուորական գլուխները որոշելու համար։

Վոյվոտըսթոյի սերվիացի գաղթականներէն զատ եղան ուրիշ տեղ ալ գաղթականութիւններ։ Կը գտնուին Սերվիացիք նաև Ալպանիոյ մէջ, Տրիեսի մօտ, և Բուլղարաց մէջ խառն կամ առանձին քանի մը գիւղեր։ Աթոս լերան վրայ Սերվիոյ Թագաւորներէն հիմնեալ վանորայք՝ կը ներկայացնեն հարաւային արևելեան վերջին կէտը ուր որ Սերվիացիք հասեր էին։ Վալաքիայի մէջ Մեհլոշ երկիրները ստացաւ, ուր փոքրիկ քանի մը ընտանիք փոխադրեց՝ որք հոն մնացին։

յաւնաւանց ձեռքով որոց առաջնորդքն էին ճուբանեանք, Սերվիոյ թագաւորութիւնը հզօր կայսերութեան մը փոխարկեցաւ, Նէմանկուա և Տուշէն կայսերաց տակ։

Վերջնոյս իշխանութեան ժամանակ, որ էր Տէջանսքիի որդի, և իններորդ իշխան Նէմանիչ ցեղին, Սերվիոյ կայսրութիւնը իւր մեծութեան բարձրագոյն կէտին հասաւ։

Ստեփաննոս Տուշէն գահակալեց 1336ին, և կայսր հռատարակեցաւ 1347ին։ Այն համաշխարհիկ բարգաւաճութեան դարուն մէջ, ընծայեց իւր ժողովրդեան օրինաց մատեան մը, 1349ին, և պատրիարքութեան պատուանունով ազգային եկեղեցւոյ հոգևոր գլուխ մը դրաւ։ Իսկ ինքը ջերմէ բռնուելով, 1356ին դեկտեմբերի 18ին, մեռաւ իր զօրաց մէջ, Ճավօլի գեղին մէջ, երբ կոստանդնուպօլիսը նուաճելու կ'երթար, ուսկից տասուերկու փարսախ միայն հեռի էր։

Ուրոշ Ե յաջորդ եղաւ Տուշէնի։ Այս իշխանը, բնութեամբ շատ տկար, սպանուաւ յափշտակող Վուքաշինին ձեռքով, բայց անոր տեղ յաջորդեց Լազար Կրէպլիանովիչ Ա։ Սա 1389ին յունիսի 15ին կորոյս Քոսովոյի ճակատամարտը, թէպէտ և դիւցազնական նահատակութիւններ ըրաւ Միլոշ Օպիլիչ՝ սերվիացի զօրավարաց մէկը, որ իր բարեկամներէն երկուքին հետ տաճկական բանակը մտնելով, հոն իր վրանին մէջ սպաննեց Սուլդան Մուրատ առաջինը։ Օպիլիչ և իւր ընկերքը առանց իրենց կողմանը յաղթութիւն մը տալու, իրենց կեանքը տուժեցին իրենց անձնկիւղ քաջութիւնը։ Իսկ Լազար գերի իյնալով գլխատեցաւ. կրնամք ըսել թէ Քոսովոյի աղէտալի անցքը Սերվիոյ կայսերութեան անկման նշանը եղաւ. և չունեցաւ անկէ ետքը փառաւորութիւն մը բաց 'ի քանի մը ամուսնական դաշնադրութիւններէ, զոր սուլդանները հաստատեցին երկրին թագաւորական ընտանեացը վերաբերող տիկնանց հետ, որ շատ անգամ յաջորդութեան վէճերու պատճառ եղաւ, յորոց մշտատև կռիւներ ծագեցան, որք մերթ յաջող և մերթ ձախորդ ելք ունենալով, արդէն իսկ տկարացած թագաւորութիւնը 1463ին կործանեցին, որ Տուշէնի ընդարձակ տէրութեան մնացորդներէն եղած էր։

Սակայն Հերձեկովին գաւառը մնաց տակաւին, և կորոյս իր ինքնօրէն իշխանութիւնը 1498ին։ Անոր հետ ինկաւ Սերվիոյ իշխանութեան յետին պատուարը, որ հինգ հարիւր տարիի չափ տեւած էր, և դարէ մը աւելի արևմտեան Եւրոպիոյ վահան եղած էր Օսմանեան պետութեան դէմ։

Միայն Մոնդէնէկրոյի քանի մը լեռնաբնակներն ազատ մնացին, իրենց անկախութեամբը և աշխարհին անմատչելի կիրճերովը պաշտպանուած։ Ուրիշ փոքրիկ տէրութիւն մ' ալ սերվեան սերնդէն, Ռակուզայի հասարակապետութիւնը, որ ազգային դպրութեան հարուստ գանձուց աւանդապահ եղած էր, կեցաւ մինչև վեննայի ընդհանուր ժողովքը, և յայնժամ Աւստրիոյ ձեռքը անցաւ։

Երեք ու կէս դար մնացին հանդարտ գերութեան լծոյն տակ, բայց միշտ հայրենեաց սէրը անարատ պահելով, զոր ազգային ռամկական երգերը կ'արծարծէին իրենց սրտին մէջ, որք կը պատմէին ազգային և հաւատոյ արի պատերազմները և վրիժառու Հայտուքներուն (Haïdouk)[1] յանդուգն քաջութիւնները։

1 Հայտուք բառած անձը սերվիացւոց ազգին պարծանքն մի է։ Սա աղաւաղումն մի է, որ շատ Տաճիկներէ իւր ընտանեաց և անձին դէմ եղած անիրաւութեանց և նախատանաց վրէժը առնելով ապաւինեցաւ լեռներու մէջ։ Ազատութեան պատերազմին ժամանակ, Հայտուքները հայրենեաց համար մեծ ծառայութիւններ ըրին։ Ոմանք զանոնք սեպել իբրև աւազակութեան առաջին պահապանքը. որք խումբ խումբ բաժնուած անտառներու մէջ կը բնակէին։ Իւրաքանչիւր խումբ ունէր իւր առաջնորդը որ էր իրեն ապաստանարան, ուր արշաւանքներէ ետև կ'ապաւինէին։ Սովորաբար ամեն տարի հոկտեմբերի 26ին կը բաժնուէին, ձմեռը ծածուկ անցնելու համար, և միւսանգամ գառներու համար ժամադրելով առաջ կու գային անտառներու մէջ, Հեորգայ տարւոյն 23ին։

1804ին գարնան մէջ անկախութեան համար ազգային առաջին ապստամբութիւնը ծագեցաւ։ Այլ և այլ խումբեր իրենց գլուխ անուանեցին Ցեանի-Գէորգը, Սեաւ-Գէորգը, որ առացաւ այս մականունը՝ թշնամեաց վրայ ձգած երկիւղին զօրութեամբ։ Ապստամբութիւնը ծաւալեցաւ և տասը տարի տևեց։ Ստուգիւ այս փոքրիկ աննուաճելի ժողովրդեան պատմութիւնը տարեգրութեանց գեղեցիկ և բանաստեղծական էջերէն մէկն է, որ միշտ զարմացուեցաւ, բայց ոչ երբեք տապալեցաւ, և բնաւ չյաղթուեցաւ այլազգիներէն։ Տասն տարի իւր կեանսենւոյ թնդանօթները թշնամւոյն պղնձէ թնդանօթները արգիլեցին որ առաջ չգան։ Տասն տարի բոլոր Եւրոպիոյ արձագանգները իւր երևելի արարքը կրկնեցին։

Շատ կռիւներէ ետքը, յորս Սերվիացիք յաճախ յաղթեցան, Ցեանի-Գէորգը իւր սակաւաթիւ զինուորներովը մաքրեց իր հայրենիքը թշնամւոյն զօրքերէն, և սկսաւ ծաղկեցունել իր տէրութիւնը, իրեն ձեռնտու առնլով սերվիացի գիտուն անձ մը Տոսիթէոս Օպրատովիչ, որ կառոյց նախկին դըպրոցները, հաստատութիւն ամենայն ազատութեանց։

Բայց չորս տարիէն վերջը, 1813ի աշնան սկիզբը, Տաճիկները նորէն եկան, և Ցեանի-Գէորգը, փոխանակ անոնց ուշ դնելու, հպատակացը անէծքներէն հալածեալ Աւստրիա փախաւ։ Շատ մը զօրավարք իրեն օրինակին հետևեցան, և աշխարհը՝ առաջնորդներէ զուրկ, որք վատութեամբ թողուցին զնա վտանգի վայրկեանին մէջ, մնաց հին հարստահարողաց ձեռք մինչև 1815, յորում դարձեալ գլուխ վերցուցին սերվիացիք։

1804ի ապստամբութեան ժամանակ Ռուտնիկէի քաղաքապետը, իւր անյաղթ քաջասրտութեամբը, հայրենակցացը վստահութիւնը և վարկը առացեր էր. որով զինքը հրամանատար ընտրեցին։ Ինքն կ'անուանուէր Միլոշ Օպրէնովիչ, և սպայ եղած էր ընդ իշխանութեամբ Ցեանի-Գէորգայ։ Նոր կռուազետը զարկաւ Տաճիկները, և իւր բազմաթիւ կոտորածներէն ետքը, 1830ին պարտաւորեցաւ Բարձրագոյն Դուռը ճանչնալու զՍերվիան իբրև անկախ նախարարութիւն, Օպրէնովիչներու ժառանգական իշխանութեանը տակ, բայց իբրև իւր հպատակ։

Միլոշ որ ընտիր կատարելութիւններ ունէր, իբրև հմուտ աշխարհագէտ՝ երազեց Սերվիոյ կայսերութեան նորոգութիւնը. բայց սխալեցաւ, և իր դիտաւորութեան հասնելու համար սկսաւ աշխարհին ամեն ինչքը ըստ կամս տնօրինել։ Այս վրիպակը սնափառութեան հետ միացած, իւր երազընթաց բախտին անհրաժեշտ հետևանք, բռնակալ ըրին զինքը այն աշխարհի մէջ որ բռնակալութեան չկրնար հանդուրժել. և իւր գահակալութեան իններորդ տարւոյն վերջը, 13 յունիս 1839, հարկադրեցաւ իշխանութենէ հրաժարելու, դրդուած խռովութենէն նկուն չըլլալու համար, զոր կը բորբոքէր իր Լուպիձա կինը, Եփրեմ եղբայրը, և կուսակցաց գլխաւորներն Վուչիչ և Ավրամ։ Իր անդրանիկ որդին Միլան, իւր տեղը յաջորդեց, բայց քանի օր միայն թագաւորելով թոքացաւէ մը մեռաւ։ Ծերակոյտը մէկէն ժողով գումարելով՝ առժամանակեայ կառավարութեան համար եռապետութիւն մը ընտրեց, զոր կը կազմէին Եփրեմ Օպրէնովիչ, Վուչիչ և Ավրամ, և 1840ին Միքայէլ Օպրէնովիչ, Միլանին եղբայրը, ՚ի գահ կոչեցաւ։

Պատանի իշխանը, հազիւ իր երկու տարի թագաւորութեան միջոցը, դանազան վարժոցներ հաստատեց, գիտնոց ընկերութիւն մը, Արկղ մը դպրոցաց համար, և այլն։ Բայց թուի թէ հօրենական մոլութեանց հետևող ըլլալով, սկսաւ ժողովրդեան ոգիները իրմէ օտարացնել։ Զի սկսաւ հետզհետէ առանց ազգային ժողովոյն հաստատութեան, տուրքեր սահմանել, հասարակաց բարեկարգութեան և արդարութեան պաշտօնէին Բատոլչեվիչի թայ

տալ որ Պեշքիրատի մօտ ճամբորդող գեղջուկները իրենց ինչքերէն մերկացնէ, ուր կ'ուզէր գործատուններ հաստատել. վայրի կաղնեաց անտառները սեփականել յանուն Տէրութեան[1], և այլն: Անոր համար, 1842ին օգոստոս ամսոյն մէջ, ինկաւ իշխանութենէն ապստամբութեամբ մը որ իշխանութեան հասուց Ցեռնի-Գէորգին երկրորդ որդին, Ալեքսանդր Քարաճորճեվիչը:

Նոր իշխանը Վրագչար դաշտին մէջ ցնծալից աղաղակաւ ընտրեցաւ 1842ի սեպտեմբերի 2ին: Եռապետութեան ռուժամանակեայ իշխանութեան ժամանակ հայրենիքը դարձած ըլլալով, Միքայէլ իշխանին քով զօրավարի օգնականի պաշտօնով մեծապէս ձեռնտու եղած էր վերջնոյս անկման, որուն տեղը ինքն անցաւ: 1844ին յունուարի և սեպտեմբերի մէջ, Օպրէնովիչներու նպաստաւոր երկու դաւակցութեանց դէմ իր անձը պաշտպանեց: Ասոնք ստակար ելք մը չունեցան, քանի մը հոգի մեռան, և ասկէ աւելի բան մը չեղաւ:

1848ին Տէրութիւնը կուսակից եղաւ իւր եղբարցը որք Վոյվոտընթոյ և Խըռուաթստան կը բնակէին, և պատրաստեց վեց հազար մարդ որք գնացին Մաճառաց բանութեանը դէմ ապստամբաց թիւերը բազմացնելու:

Տասը տարիէն ետքը Ալեքսանդր Քարաճորճեվիչ, իր անգործունէութեան պատճառաւ պարսաւելի ըլլալով ժողովրդեան, հալածեցաւ գահէն, և ժողովուրդը կոչեց նորէն ծեր Միլոշը, որ թէպէտ հասակը առած և տկարացած, սակայն չտարակուսեցաւ կառավարութեան սանձը ձեռքը առնելու. և պահեց զայն մինչև 1861, իւր մահուան ժամանակ. և իւր որդին Միքայէլ երկրորդ անգամ նորէն գահակալեց:

1 Խողագարմանը խիստ շատ է Սերվիոյ մէջ. այս կենդանեաց մորթը երկրին մեծ վաճառականութեան նիւթ եղած է: Անտառները բոլոր քաղաքացեաց հասարակաց ստացուածք մի են, ուստի վայրի կաղինները սեփականել ուզելը մեծ անիրաւութիւն էր ընդդէմ ժողովրդեան:

Միքայէլ իշխանը, աքսորանաց դըպրոցին մէջ կրթուած, իմացեր էր որ ազատական սահմանադրութիւնք քաղաքացւոց պիտոյից համեմատ, անհրաժեշտ կարևոր էին աղէկ կառավարութեան մը հաստատութեանը համար: Հօրը լայն և լուսաւոր հայրենասիրութեանը ժառանգ, խոհեմութեամբ և յաջողակութեամբ հետամուտ եղաւ ազգային և լուսաւորեալ քաղաքականութեան, որ կը դիմէ Սերվիոյ կատարեալ ազատութեան և 'ի վերականգնումն նորին: Այս քաղաքականութիւնը անմիջական արդիւնքներ ունեցաւ. վասն զի անով ժողովուրդը 1862ին յուլիս ամսոյն մէջ, ստիպեց Պելկրատի մահմետականքը որ քաղքին մէջ եղած ձմերոցնին թողուն և դղեակը ապաւինին:

Յայնժամ թշնամիք սկսան ռմբակոծել քաղաքը, որ բաց 'ի մեծ մզկըթին տասնատաղին կործանմանէն ուրիշ ծանր վնասներ չբերաւ: Այս ցոյցերը աւելի մեծահնչիւն քան վտանգաւորք, շուտով մը խափանեցան Գաղղիոյ և Ռուսիոյ հիւպատոսաց միջնորդութեամբ: Վերջապէս, 1867ի մայիսին, Սերվիոյ ամեն ամրոցաց պահապան զօրքերը պարտաւորեցան բնիկ գունդերու թողլու և տալու բոլոր այն դիրքերը՝ զորս գրաւեր էին Օսմանեանք: Այսպիսի կարևոր յաղթութիւն մը կատարեցաւ, առանց հրացան մը պարպելու, և երբոր իշխանը կոստանդնուպոլիս ճամբորդութիւն ըրաւ այս շնորհման նկատմամբ, յանձնարարական հրովարտակը առնելու, Սուլթանէն մեծ ընդունելութիւն գտաւ, և միանգամայն ընդունեց ադամանդներով զարդարուած առաջին աստիճանի Օսմանիէ պատուանշանը:

Միքայէլ իշխանը Կ. Պոլսէն դառնալէն ետև ջանաց ամենայն կերպով երկիրը զօրացնել զինուորական բարեկարգութեամբ, և իմաստուն կարգադրութեամբ երջանիկ բախտ մը պատրաստել Սերվիոյ. և ահա ոճիր մը, որուն պատճառը տակաւին անյայտ է, զրկեց 45 տարուան կեանք մը որ լի

էր մեծամեծ ակնկալութեամբք և տարակուսի մէջ ձգեց երկիրը ապագայ յառաջադիմութեանց համար։

Միքայէլ իշխանը ծնած էր 'ի Քրակուիէվաց 1823ին, և ամուսնացեր էր 1853ին Ցուլիա Հունեատի կոմսուհւոյն հետ, ուսկից իւր ամլութեանը համար բաժնուեցաւ։ Եւ այսպէս կը մարի իրմով Օպրէնովիչներու ուղիղ շառաւիղը։

Միքայելի մահուան վրայ ըստ սովորութեան առժամանակեայ կառավարութիւն մը հաստատեցաւ. որն որ ազգային ժողով մը գումարեց յուլիսի 2ին, որ հետամուտներէն մէկուն վրայ իր ընտրութեանը կարծիքը տայ։

Եւ ընտրեց Միլան Օպրէնովիչը՝ երքտասանամեայ պատանի, Միլոշի եղբօրորդին, որ Բարիզ իր ուսումը կը կատարէր, և իր անունը թէ 'ի զօրաց և թէ 'ի ժողովրդենէ մեծ ցնծութեամբ ընդունելի եղաւ, և կարգեցաւ իրեն առժամանակեայ խնամակալ մը մինչև հասնի իր առոյգ հասակին։

---

Բորդոգալի թագաւորութեան աշխարհագրութիւնը ու պատմական հին և նոր վիճակը։

Բորդոգալ՝ հարաւային Եւրոպիոյ թագաւորութիւնը, է 'ի յարևմտից Սպանիոյ. մայրաքաղաքն է Լիզպոնա։ Հիւսիսէն սահմանն է Կալիցիան, արևելքէն Լէոնի թագաւորութիւնը, Էսդրէմատուրա սպանիական և Անտալուսիա, 'ի հիւսիսոյ և յարևմտից Ատլանտեան ովկիանոսը. ընդ մէջ 36° 58' և 42° լայնութեան և 8° 30' և 11° 51' երկայնութեան աստիճանաց։ Երկրին մակերևոյթն է 100,031 քառակուսի հազարամետր. բնակիչն ալ է 3,923,410. ասոր վրայ պէտք է աւելցնել Ազորեան կղզիները, Ափրիկէի, Ասիոյ և Ովկիանիոյ մէջ ունեցած կալուածները, որով բովանդակն է 6,255,000 հոգի։

Բորդոգալ սպանիական ցամաքակղզւոյն արևմտեան զառ 'ի վայրին սարին աստիճանին վրայ է։ Սպանիայէն աւելի աղէկ է գէրքը և անոր իրեք մեծ գետերուն բերանը և նաւարկելի մասերը իրքը բռնած է. Կալիցիա և Անտալուսիա երկու ծայրից նահանգները իրարմէ կը բաժնէ. վերջապէս 'ի բնէ զօրաւոր սահմանագլուխ մ' ունի, որ ըստ ինքեան հակառակ է բնական աշխարհագրական օրինաց. վասն զի անոնք ոչ եթէ լերանց երկայնաձիգ դիծ մ'են, այլ սպանիական պարուց կոհակները իբրև երկայն և թանձր պարիսպ մը կը ձևացնեն, որոնց մէջէն հազիւ թէ քանի մը խրամատ բանալով հեղեղալից գետեր կ'անցնին։

Բորդոգալի բարեխառնութիւնը շատ աւելի բարձր է քան ինչ որ է 'ի Սպանիա. ամառուան տաքերը սաստիկ նեղացուցիչ են, և ձմեռները միայն լերանց ծայրերը ձիւն կու գայ։ Իսկ Բորդոգալի թագաւորութիւնը ակօսող լեռները շարունակութիւն են Սպանիոյ իրեք մեծ կեդրոնային պարերուն։ Գետերը բազմաթիւ են, որոնցմէ են Դակոյ, Տուէրոյ, որ իբրև սահմանագլուխ է Սպանիոյ և Բորդոգալի, 80 հազարամետր երկայնութեամբ. Մինհոյ, Մոնտեկոյ և Վուկա. այս երկու վերջիններուն ակունքը Բորդոգալի երկրին մէջն է։

Լեռները շագանակի ծառերով լի են. հովիտներն առատ և սքանչելի գինիներ կը մատակարարեն (Բորդոյ, Քարգավէլոս, Սէդուպայ և այլն. տարին 2,736,000 հարիւրալիտր). Նուռ, նարինջ (493,000 մոտուկ) ձիթապտուղ, թուզ գրեթէ 7 միլիոն հազարագրամ։ Տափարակ գետիններուն վրայ ալ աղէկ բեղնաւոր են արմտիք (Մինհոյ, Պէյրա, Դրաս-Լոս-Մոնդէս նահանգք). Նաև ամենաճոխ է մերինոս ոչխարի կողմանէ, որոնցմէ 2,500,000է աւելի գլուխ կը համրուի։ Արօտի սակաւութիւնը շատ չներեր մեծ որջառեղէններ գարմանել։ Անտառներու մէջ շատ կը գտնուին գայլ, այծեամն, եղջերու և կինճ. վայրենի այծերը ամայի կողմեր խումբ խումբ կը պտըտին. սակայն պզտիկ որսական կենդանիները սակա-



Լիզպոնա ։

ւագիւտ են ։ Երկիրը շատ մը տեսակ մետաղներու և քարերու հանքեր ունի, որոնք չեն բանեցուիր, բաց 'ի Էստրէմատուրայի երկաթի քանի մը հանքերէ ։ Երբեմն Դակոյ գետը ոսկեթաւալ էր, և Լուսիտանիոյ թագաւորաց գաւազանը գետին տղմէն հանուած ոսկիէն կը շինուէր ։

Բորդոգալ 17 վիճակ (district) կը բաժնուի, որոնք 7 նահանգի կը վերածուին, և են ՄԻՆՀՈՅ, գլ. քաղաք Բորդոյ. ԴՐԱՍ-ԼՈՍ-ՄՈՆԴԷՍ, գլ. քղ. Պրականսա. ԱԼԷՄԴԷՅՈՅ, գլ. քաղաք Էվորա. ՍՏՈՐԻՆ-ՊԷՅՐԱ, գլ. քաղաք Գոյիմպրա. ՎԵՐԻՆ-ՊԷՅՐԱ. գլ. քղ. Գաստէլլոյ-Պրանքոյ. ԷՍԴՐԱՄԱՏՈՒՐԱ, գլ. քղ. Լիզպոնա. ԱԼԿԱՐՎԱ, գլ. քղ. Ֆարոյ ։

Ճարտարութիւնք և արուեստք քիչ զարգացած են Բորդոգալի մէջ. Նախնական նիւթոց պակասութիւնը և ներքին հաղորդականութեան ճամբաներու նուազութիւնը վաճառականութեան ծաւալուն շատ պատճառ եղած են, որով միայն գետոց բերաններուն վրայ վաճառականութիւնը ծաղկած է. դուրս հանուած բերքերն են նարինջ, չոր թուզ և գինի և այլն ։

Բորթոգալցիք սթափ են, կայտառ, կորովի, հայրենասէր և հաստատուն 'ի սէր և յառաջելութեան. դժբաղդաբար նիւթական են. ուսմունք և կրթութիւն քիչ տարածուած է մէջերնին. երկրագործութեան մեծ հոգ չունին և ամենայն ճարտարութիւնք և արուեստք Անգղիացւոց ձեռքն են ։ Քաղաք քաղաքի հետ միութիւն, իրաւախոհութիւն և դաշնադրութիւն ամենևին չունին. և ոչ իսկ քաղաքագիտօրէն ։ Բորդոգալի ամենայն խռովութիւնք ծագած են 'ի Լիզպոնա կամ 'ի Բորդոյ, բայց ոչ երբեք հասարակաց հաւանութեան գործ մը եղեր են ։ Ժամանակէ մը 'ի վեր ջանք կայ երկրին նիւթական բարօրութիւնը վերածնանելու համար ։ Երկաթուղեաց և շոգեշարժ նաւուց ձեռնարկութիւնները կարգաւորուելու հետ են ։ Տարեկան ծախքն են 80,000,000 ֆր. մուտքը 73,800,000 ֆր ։ 1854ին յուլիսի 29ին օրէնքը ոսկւոյ և արծաթի դրամոց տասանորդական դրութիւնը սահմանեց ։

Բորդոգալի բանակը 24,500 անձէ կը բաղկանայ, առանց հնդկային բանակը մէջը սեպելու. մինչև 'ի 1855 զօրաժողովը բռնութեամբ էր. հիմա զինուորագրութիւնը ըստ Գաղղիոյ ոճոյն կանոնաւորեալ է ։ Ծովային զինուորութիւնն ունի 1 մեծ նաւ, 1 ֆրէկադ, 3 քորվէդ, 3 պրիք, 9 շոնէր, 18 բեռ֊



կին ձկնավաճառ 'ի Բարտուիլիոյ .



վաճառող թռչնոց 'ի Բարտուիլիոյ .

նաւարձ նաւ և 12 շոգեշարժ նաւ ։

Նաւատորմիղն ընդ ամենը 389 թընդանօթ ունի և 2,832 սպայ կամ նաւաստի ։ Կառավարութիւնը սահմանադրական միապետութիւն է . կալուածներն ալ երեսփոխաններ կը խաւրեն առ խորհրդարանն ։ Գրեթէ ամենայն Բորդոգալցիք ուղղափառ են՝ բայց նաև ամենայն կրօնք ներելի են ։ Հաւատաքննութիւնը ԺԸրդ դարուն վերջերը վերցուեցաւ ։ Տպագրութեան ազատութիւնը ամենևին սահման չունի ։

Սպանիա և Բորդոգալ թէպէտ և սահմանակից են իրարու՝ այլ բնակիչքը բոլորովին տարբեր կեանք կ'անցընեն և հազիւ կը ճանչցուին ։ Կրնայ ըսուիլ թէ չկայ այսպէս երկու տէրութիւն որոնք իրարու հետ այսչափ քիչ վերաբերութիւն ունենան , որով ոմանց ունեցած գաղափարը այս երկու աշխար-

հայց 'ի մի ձուլուելուն ըստ ազգութեան և ըստ քաղաքագիտութեան՝ մնացածին մեծ ցնորք մ'է և ոչ այլ ինչ։ Բորդոգալցւոց լեզուն գաստիլեան լեզուին գաւառական մէկ բարբառն է։

Բորդոգալ բազմաթիւ կարևոր կալուածներ ունի, Ազորեանց արշիպեղագոսը՝ Ատլանտեան ովկիանոսին մէջ. Ափրիկէի մէջ Մատէյրա և Բորդոյ-Սանդոյ կղզիները, Կանաչ-Սարին արշիպեղագոսը, Սենեկամպիոյ, Անկոլայի և Քոնկոյի ստացուածները, Ս. Թովմաս և Իշխանի կղզիները և Մոզամպիկք նահանգը. Ասիոյ մէջ Կոա, Տիու, Մագաոյ. Ովկիանիոյ մէջ Տէյլէ՝ Դիմոր կղզւոյն մէջ, և Քամպինկ՝ 'ի հիւսիսոյ Դիմորի։ Պրազիլ՝ որ 1821էն 'ի վեր անկախ է, ատենօք Բորդոգալցւոց կալուած էր։

Պատմութիւն։ Հին ժամանակ։ — Բորդոգալ կը համապատասխանէ մեծաւ մասամբ հռովմէական Լուսիտանիոյ նահանգին։ Բնակիչք՝ որ Կելտք (Celtes) էին իրենց սկզբնական ծագմամբը՝ ինչպէս կը հաւաստեն գրութեանց ժամանակէ մնացած յիշատակարանները, անկախութիւննին պաշտպանելու համար յաջորդաբար Կարքեդոնացւոց դէմ կռուեցան, Փունիկեան երկու առաջին պատերազմներուն ժամանակ, և երկրորդէն ետքը՝ Հռովմայեցւոց դէմ, որոնք իրենց վախճանին հասան նենգաւոր կոտորածներով և Վիրիաթը սպաննելով. Լուսիտանիացիք ուրեմն երկայն ժամանակ և յաջողութեամբ իրենց դէմ դրին։ Հռովմայեցւոց տիրապետութիւնը հինգ ու կէս դար տևեց, ինչուան այն ատենն որ Բարբարոսք սկսան անդամատել Արևմտից ինքնակալութիւնը։

Միջին դար, մինչուան Բորդոգալի թագաւորութեան ծագումը, 409-1139։ Արաբական և գերմանական կրկին ասպատակութիւնները հետզհետէ թերակղզւոյն աս մասին նոր տէրերու ձեռք իյնալուն պատճառ եղան։ Մինչդեռ 'ի Կալիցիա Սուեւք կ'իշխէին (409–585), Լուսիտանիա ալ անցաւ յաջորդաբար Ալանաց ձեռքը, որոնք 417ին յաղթուեցան 'ի Վիսիգոթաց, որ առժամանակ մը օգնականք էին Հռովմայ, և զԼուսիտանիա Հռովմայեցւոց կայսրութեանը ստացուած ըրին. յետոյ 467ին ատենները Վիսիգոթաց, որոնք գոհ չըլալով Սուեւները անկից հալածելնուն վրայ՝ որ հիւսիսային մասին տէրեր էին, ընկճեցին բովանդակապէս իրենց թագաւորութիւնը, 585ին. վերջապէս Արաբացւոց, որոնց ձեռքը մատնուեցաւ բովանդակ Սպանիա՝ Խերէսի մարտակռուովը 711ին։ Հետագայ իրեք դարերու ժամանակ Աստուրիոյ քրիստոնեայք զօրանալով հետզհետէ Մահմետականաց ձեռքէն յափշտակեցին և Ովիեդոյի և Լէոնի թագաւորութեան հետ միացուցին Գալիցիա և հին Լուսիտանիան, ինչուան Դակոյ. և 1094ին կամ 1095ին Ալփոնսոս Զ. Լէոնի և Գաստիլիոյ թագաւորն՝ ընդ մէջ Մինհոյի և Դակոյի եղած երկիրը բաժնեց իր տէրութենէն և Հենրիկոս Պուրկոյնի իր փեսին տուաւ։ Բորդոգալ՝ որ Բորդոյ քաղաքին անուամբը իրեն մերձակայ եղած նահանգները տարածուած էր, քիչ ատենէն մեծագոյն երկիր մը իրեն բաժին ըրաւ. Նախ որ Գաստիլիոյ հպատակ էր՝ յետոյ անկախ տէրութիւն եղաւ՝ երբ Ալփոնսոս Զ. Հենրիկոսի որդին գլուխ քաշեց հպատակութենէն և իրեն զինուորներէն թագաւոր անուանակոչեցաւ 1139ին։

Բուրկոյնի հարստութիւնը, ուղիղ գծով, 1139էն մինչուան 1383։ — Բորդոգալցիք այսպէս ձեւաւորուելնուն ժամանակ մեծապէս մասնակից եղան թերակղզւոյն մահմետականութեան դէմ յարուցած յարատև խաչակրութեանը. իրենք միայն էին Ալմոհատեանց դէմ Սանդարէմի յաղթութեանը ժամանակ։ 1184ին օգնեցին Դոլոզայի լաս Նավասի յաղթութեանը, 1340ին Սալատոյի, որով Մերինիտք հալածուեցան։ Ալփոնսոս Ա.ին ժամանակ Էսդրէմատուրան, Ալէմդէյոն և Լիզպոնեան ալ իր մէջն առնելով մեծցաւ, և Ալփոնսոս Գ.ի ժամանակ, 1249–53 ստացաւ

նաև Ալկարվեանքը, և նոյն ատենէն 'ի վեր է որ հիմակուան սահմանն ունի։ Մի և նոյն ժամանակ նաև իր սահմանադրութիւնն ալ ձևացաւ։ 1143էն ետքը Լամէկոյի Գորդէս ժողովը, որ բաղկացեալ է կղերէն, ազնուականներէն և քաղաքաց և աւանաց երեսփոխաններէն, շատ օրէնսդրութիւններ ընդունեցաւ այս առաջին ժամանակներուն մէջ, և Բորդոգալի անկախութիւնը հրատարակեցաւ, իբրև ժառանգական թագաւորութիւն մը նաև կանանց համար, պայմանաւ որ՝ Բորդոգալցի իշխանազունի հետ կարգուին, որ թագաւորի պատուանունն պիտի չունենար՝ ինչուան որ արու զաւակ մը չծնանէր։ Այս ժողովները անկանոնապէս հաւաքուելով շարունակեցին իրենց միջամուխ ըլլալը կառավարութեան մեծամեծ խնդիրներուն մէջ։

Աւիզի ձիւղը, 1385–1580։ Բորդոգալի ամենէն պայծառ ժամանակն աս է։ Արտաքոյ Ափրիկէի հիւսիսային ծովեզերաց վրայ շատ կարևոր կէտեր առացաւ պատերազմով (Սէւդա, Դանկէր և այլն)։ Ցիազ, կամա և կապրալ նաւորդներն ալ Ցոն Հենրիկոսէն, Ցովհաննէս Բ. էն, Էմմանուէլ Բաղդաւորէն յորդորուած՝ այն ընդարձակ կողման արևմտեան և արևելեան ծովափունքը գտան, որով նոր ճամբայ բացուեցաւ դէպ 'ի Հնդկաստան և դէպ 'ի Պրազիլ. ասոնց հետևելով Ալմէյիտեանք և Ալպուքէրք գնացին յԱփրիկէ և մանաւանդ յԱսիա՝ Բորդոգալեան ընդարձակ իշխանութիւն մը հիմնելու, և տարածուելով մինչև 'ի Պրազիլ՝ իրենց վաճառականութիւնը մեծապէս զարգացուցին և անհուն հարստութիւն դիզեցին։ Դժբաղդաբար Արևելքի ճոխութիւնը Բորդոգալի երկրինք մոռցընել տուաւ, որով երկրագործութիւնը՝ որ ԺԴ դարուն մէջ շատ ծաղկած էր, երեսէ ձգուեցաւ։ Իսկ ներքուստ թագաւորութիւնը Գորդէս ժողովոյն և ազնուականութեան ծախուքը մեծնալով՝ նոր փայլ մ'առաւ, և Նիլ–Վինկէնտի, Քամէնսի, Պարրոսի և Ոզորիոսի անուններովը մեծ մաս մը առացաւ ԺԶդ դարուն մատենագրական փառացը մէջ։



Բորդոյ։

Սպանիական տիրապետութիւն և Պրականցիայի ձիւղը, 1580էն ինչուան մեր օրերը։ — Բորդոգալ՝ Հենրիկոս Ծերունաւոր թագաւորին մահուընէն ետքը Սպանիայէն ընկճուելով՝ 60 տարի իբրև նահանգ մը սեպուեցաւ, և նաւատորմին հետ կալուածներն ալ կորսնցուց. և եթէ 1640ին դարձեալ անկախութիւնը ըստանալով Ափրիկէի և Պրազիլի կալուածները կրկին առացաւ, սակայն չկրցաւ ներքին և արտաքին մեծութիւնն ու յաջողութիւնն երկրորդ անգամ ունենալ։ 1660ին թողլով զՊոմպէյ ու Դանկէրն ու Սէւդան, ժամանակաւ Ասիոյ մէջ և Ափրիկէի արևելեան և արևմտեան ծովեզերաց վրայ քանի մը տեղ ունեցաւ։ Ներքապէս 1703էն

ետքը հետզհետէ երկրագործութեան և արուեստից մէջ անհոգանալով սաստիկ ինկաւ, և այս թշուառ վիճակէն զինքը բանի ազատել փորձեց Բոմպալ։ Յետոյ կրկին անգամ՝ 1801ին և 1806ին Անգղիացւոց համար իր նաւահանգիստները փակել ստիպուելով Գաղղիա Սպանիոյ հետ միաբանած գաղտնի դաշնադրութեամբ 'ի Ֆոնդէնըպլոյ՝ զԲորդոգալ իրեք մաս բաժնեցին, որ ոչ երբեք գործադրուեցաւ. և երբ Գաղղիացիք երկիրը գրաւեցին՝ 1808ին յունիս ամսոյն մէջ Սպանիոյ հետ խօսքը մէկ ընելով և ձեռնտու գտնալով զԱնգղիա զարձեալ անկախութիւնը ստացաւ, բայց Անգղիացւոց զօրաւոր ազդեցութեանը տակ իյնալուն համար, և ինչուան 1820ին յոգնելով այդ ծառայութենէն և սպանիական ժամանակին անդր—ազատական յեղափոխութենէն հրապուրուելով, բովանդակ Բորդոգալ ոտք ելաւ (24 օգոստ 1820)։ Այս շարժմանց ժամանակ Պրազիլ ալ բաժնուեցաւ, և թագաւորին որդին Տոն Բետրոյ հոն կայսր եղաւ։ Յովհաննէս Զ'ի մահը, Տոն Բետրոյի՝ իր յաջորդին՝ նոր ազատական հրովարտակ մը հանելը և Բորդոգալի գահը իր դստերը Տոնա Մարիամու թողուլը 1826ին նոր մաքառմանց պատճառ եղան. ոմանք նոր թագուհւոյն կողմը բռնեցին և ոմանք Տոն Միկէլի, որ 1824ին ինքզինքը թագաւոր անուանակոչեց, և գահը չթողուց՝ ինչուան որ Տոն Բետրոյ Պրազիլի թագէն հրաժարելով եկաւ իր աղջիկը թագաւորեցնելու. յետոյ Արմատականք կոչուածները Հրովարտակեանք կոչեալ ներուն հետ երկայն ատեն կռուելով, վերջապէս 1842ին Տոն Բետրոյի հրովարտակը հաստատեցին։ Ամենայն կարգք և կանոնք սկսեր էին իրենց նախնական վիճակն առնուլ և կը զարգանար տէրութիւնը Գոսդա—Գապրալ թոմար կոմսին հզօրաբարձութեանը ժամանակ, որ 1838էն 'ի վեր պաշտօնեայ էր և նախագահ խորհրդոյ 1849էն 'ի վեր, երբ 1851ին Սալտանհայ մարաջախտին գրգռութեամբը ծագած յեղափոխական խռովութիւն մը, 1826ին հրովարտակը բարեկարգելու պատրուակաւ որուն վրայ յաւելուած մը ըրած էր, ուզեց հին կուսակցութիւնները ոտք հանել. որոնցմէ թէ Արմատականք և թէ Հրովարտակեանք կոչուածները՝ հաւասարապէս մեծամեծ պաշտօններու վրայ ըլլալով, նեցուկ են և ամրութիւն ներկայ կառավարութեան։

---

Յիշողութեան տետրակ մը կայ զոր ժամանակաւ և սրտով կը սորվինք. յիշատակը սրտագրութեան հետ կապուած է։ Ինչպէս լեռնային երկիրներու մէջ սառոյցին ակղագիծները աչքէ կը խուսափին, և բարձունք և հովիտներ միայն աչքէ կը տեսնուին, այնպէս է նաև կենաց մէջ։

ԹԷՈՓԻԼՈՍ ՏԻՒՑՈՒՐ

Զարմանքն աւելի նրբամիտ է և նրբախոհ՝ քան զատելութիւն։

Կինանք մարդկանց վրայ լաւագոյն դատաստան ընել իրենց զարմանալի երեւցած նիւթերէն, քան թէ անախորժելի սեպածներէն։

Գերագոյն մարդը գիտէ իր հակառակորդաց խօսքերը, և հակառակորդք իրենները չեն գիտեր։

ՀԵՆՐԻԿՈՍ ԳՈՒՆԸ

Ո՛վ որ յաջողութեան կը փափաքի՝ պէտք է առաւօտուանց ժամը հինգէն ելլէ։

Ո՛վ որ արդէն յաջողութեան մէջ է՝ կրնայ միայն ինչուան ժամը եօթը քնանալ։

Առած Անգղիացւոց։

---

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՄՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՅԺԸ· 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ· — ՕԳՈՍՏՈՍ

## ՏՕՆԱԽՄԲՈՒԹԻՒՆ ՀԱՆԴԷՍ ՆԱՒԱՍԱՐԴԻ

*(Դրուագ 'ի Հայկեայ)*

*Ամանոր առաւօտ ըղձըրունս երկնից բանայր տարւոյն*
*Ի խընջոյս նաւաց, վարդի եւ ձիթենւոյ եւ աղաւնեաց,*
*Յիշատակ փրկութեան մարդոց ի ջուրցըն հեղեղէ։*
*Հընչեցին արուեստականք թըմբուկ ծընծղայ փող եւ տաւիղ,*
*Հանդէսն աշխարհախումբ ի զէն ի զարդ անկան յուղի։*
*Ցառաջոյ գունդ մի զօրուն դափնեպըսակ վառեալ ի չու,*
*Ի նուագ բերկրանաց հարեալ գործիս յորդորական,*
*Զօրավարք հեծեալ իշխանք եւ հոյլ ի հոյլ ատագորեար։*
*Ըզկըրնի հարիւր աղջկունք ի պարկեշտից կոյսք գեղեցիկք*
*Ի գանձէն Հայկայ զգեցեալ հարսանեաց շուք վարդապըսակ.*
*Ցան ըղհետ դըստերք ճոխից վայելչագոյնք ի զարդ պայծառ*
*Ըզվարսիցըն խոպոպիս պըճնեալ վարդից նոր բոլորիւք.*
*Նըւէրք եւ դահամունք յերկրին բերոց կողովք 'ի ձեռս,*
*Ի վերայ խայրեացըն մէն մի ձիւնաթոյր զոյգ աղաւնեակք։*
*Անդ Արուսեակ զարեհեան իբրեւ լուսին փայլէր յաստեղս,*
*Հայկանոյշ. արեւափառ զերկին գեղոյն դընէր յամպս։*

Յաջմէ Նոցին յահեկէ՝ մատաղ կուսից եւ մանկանց զաւք
Նուագարանք նուրբ ի մատունս, ձիթաստանեաց ոլորք ի հերս։
Այպաղէնք ըստ նոցանէ հարիւր հանգոյն երիտասարդք,
Եւ պատանեակք ապաստագունդ օրիորդացըն զուգաթիւք,
Ի փեսայս ընտրեալք կուսիցն եւ մրտենեօք պատեալ ճակատք.
Ցորս իբր որդիս Աստուծոյ ցոլայր վեհազնըն խոռ եւ Հրանտ։
Միահոյլ ընդ նոսին քաջին որդիք վառեալք ի զարդ,
Արմենակ, Մանաւազ, Հայկակ, Թոռնեակք Բազ, Արմայիս,
Արմայիս՝ պատանեկայ զերդ լուսաբերն ի գունդ շողեալ
Որ ի ծովուն ծըփանաց լուացեալ ծագէ յերկնից կաճառս.
Բանակ դիւցազանց՝ դիւցազին հօր կարապետեալք։
Ցետ նոցա հայրըն Հայոց սանձեալ զՑոլակն իւր ամեհարոտ,
Եւ Թորգոմայ զլուխ ալեւոր, յուռ ձիթենի պըսակազարդք.
Նահապետն եւ քահանայն ըզհետ ի կառսըն վերելեալք,
Տիկնայք եւ օրիորդք՝ որ ի դեսպակս հովանաւորս,
Որ ժանեաւ, որ յոպնակօք, վաշիւք, ի ձի ճոխ ճեմելով։
Այրուձի վաշտ ի Թիկանց ի նոյն Թաւ ոստ արտախուրեալ,
Փոխ ընդ փոխ ընդ պարագլուխ գընդին նըւագս յեղյեղելով.
Վարագեղ ի նոյն սազարթ փողէր ըզհետ ամբոխակոյտ։
Որպէս սօս գարնանազեղ յաղթ իրանաւն ի մէջ մայրեաց,
Կամ լերանց ի պար Մասիս արփիափայլ ամբառնայ գլուխ
Եւ ծածկէ զառըստորեւն ի լայնասփիւռ իւր հովանի,
Նոյն արի սկայն Թորգոմեան սիգայր ի խուռնն ամբարտակեալ։
Թընդէր գետինն ընդ ոտիւք ձիոց ւարի արանց ի տոփ,
Եւ Նըշոյլք շըւոյն ի ճեմս իբր ի ծովուն փայլս հարկանէր.
Ի գանգիւն արձանաց գուշեն լերինք անձաւախիտք,
Ջուրք հովիտք անդըբէն կըրկնեն ըղնոյն բարբառ ոլորապատոյ։
Հասանեն ի հովանոտ մարգ Նաւզուկայ լուռ ծովակին
Որ առ ստորս Այպահունեաց ծաւալեալ մերձ ի Հայկաշէն.
Ի միջին՝ ի սիզաւէտ գուղձըն հողոյ կանգնեալ սեղան,
Թաւ սօսովք ի վարդ ի մուրտ ի ձիթենի պըսակեալ շուրջ.
Ցանկինաըն չորեսին քառեակ ուխք հովանաւորք,
Ի ներքոյ նոցին աղբերք վըճիտ բըղխեալ քառավըտակ։
Հեծելազն ի մեծ պարոյր պատէր զսեղանըն շուրջ ըզստուար,
Ի ներքոյ բոլորէր զըրականին խումբ հետեւակ,
Ի մէջ սոցին ի մի կոյս կիսաբոլոր պատանեաց գունդ,
Ի միւս կէսն ի հանդիպոյն՝ օրիորդացն հարմանացու պար։
Առ բագնին յանկիւնսն ի չորս՝ Նոյ, Մանիտոն, Հայկ եւ Թորգոմ.
Մանիտոն՝ պատմուճան արկեալ զհիւրեւ պըճըղնաւոր,
Երկնագոյն աստեղազարդ ի վերջաւորս ոսկեթելուն,
Գօտի ածեալ կամար ընդ մէջ զարփիափնաց երկնից ուղին,

Երկվեցեակ աստեղատամբք՝ արեւն ի պորտ ոսկի ճարմանդ.
Ջուարթքն, աստի անտի, երփն երփն աղեղըն ծիածան
Ծիրանի տեղ նըկարէն ի ծուենկան ելեալ խորշ մէտ ի մէտ.
Վարսակալ ոսկեճամուկ եւ ապարօշ խոյր ի ճակատ,
Եւ ձիթենւոյն շուք հովանի շուրջ զերանեամբքըն տերեւեալ:
Կայր աստուածակերպ, աչք եւ բազուկք ի վեր յերկինս,
Եւ ի գլխոյ աշխարհին գովութիւն զայս մատուցանէր.
« Օրհնեալ Տէր անմահ, որ զմեզ ի տօնս հասոյց զայս ամ,
Տարեկան ընդունելի Բարձրելոյն սուրբ ի գոհութիւն,
Յիշատակ սքանչելեաց մեծ փրկութեան ազգի մարդկան
Եւ ուխտից աստուածեղէն գրելոյ յաղեղն երկնակամար,
Զէն արկեալ ըզգըլխովքս ապրել ի չար պատուհասէն,
Եւ մեր ուխտին պահելոյ բնատուր նորա սուրբ օրինաց:
Հանդիսիս տօնք եւ նուէրք կըրկին կըրկին ըղնոյն զաշխնս.
Ոչ ամպախոռխոռ ամբարտակ երկնից ընդդէմ աշտարակ զուր
կոթողել ամպարըշտի բաբելոնական անմըտութեամբ,
Այլ մահու կանգնել նըշանակ առ Թըշնամիս ստեաւն օրինաց.
Եթէ երկնից ընդ գըժոխս, ապա եւ մեր լիցի հաշտութիւն:
Յայդ ի դէմս զոհամատոյցքդ եղցին ի սուրբ վեհին բագին՝
Ընդ Նոյին զանձինս եւ զհէրս ուղերձելով ի պատարագ.
Եւ ընծայ հաճոյագոյն աչաց երկնից ունել պատրաստ,
Կարօտելոց բաշխել նուէրս, որբորդաց ածել փեսայս,
Եւ գթացողըս Թողութեան՝ զյաւէրժ բարեաց ընդունելոյն,
Ըղձամետս օծանել գըլխովս, ի հարմանութիւն տաղ արժանիս »:
Զայդ բանին երկու երկու մատուցեալ կայք ամօթագեղք
Հանեն զխայրխան ի եզանն եւ ապաներզըն զարձ առնեն.
Փողք եւ տաւիղքըն բարբառին, լուռ ամբոխին զօշատին աչք:
Անդուստ հայրըն Հայոց շարժեալ ըղձեան արձակէր ձայն.
« Յորդորագոյն, ով մանկունք, եւ քան զօրէն հասարակաց
Կատարեսջիք այս ամ ըղտօնս՝ յերկնից խընդրել Թիկունս ի մարտ
Յոր դէպ ուղիղ դիմեսցուք ամպարըշտաց ատտուսս ընդդէմ,
Որ զԱստուած, զազատութիւն եւ զհայրենիս կապանեն ի մէնջ:
Յայն աղաղս եւ ճոխագոյն են զահամանքդ եւ հարսանիք,
Ընդ որս եւ զկայան իմ Հայկանայշ խօսեսցի Հրանտայ փառնակեան,
Եւ զզարեհեանն Արտաւեանկ եմս քաջի որդւոյս խօսայ:
Գըսակաւէր զուգելոցս եւ մեր յայնժամ լըցցի անձուկ
Օրհնութեամբ աստուածայնոյն, նահապետաց հարց եւ մարանց,
Յորժամ զինու զօրութեամբ զործոյս մեծի հասցուք յամբողջ
Յաղթանակ զարձ արարեալ փառօք ի սուրբ պատերազմէս »:
Սոսափիւն ընթացաւ յամբոխն ուժգին ալեալէս հոգւով.
Որպէս յորժամ ընդ մըրրըկեալ օդոյն ոտիւք հեծեալն անտառք

Այր եւ անդր ազգի ազգի տարաբերել ճօճել մայրեաց.
Էնն էից Մասեացն ի դաշտ յոսկեճաճանչ ամպ փայլակեալ,
Ի հարաւ կոյս որոտաց, եւ հրախաղաց տեղաց չանդխս.
Եւ ըզգըլուխ իւր զահեղ եւ զկորովի ուսան կամար
Շարժեալ, դողացոյց զայրարատեան բարձըր բարձունս
Եւ զՄոկաց եւ զԿորդուաց դըղըրդեցոյց լերինս եւ բլուրս,
Եւ անդունդք բըղխունական զերդ կոնք մի ջուր տատանեցան.
Յայնժամ հայրն ի զուարթ հըմայս առեալ ասաց զնոա, զհայկանոյշ,
Եւ անտի փառնակ՝ Զարեհ զիւրըն ըղձրանս եւ զԱրուսեակ,
Մեղմաքայլ պարկեշտ նազիւք մատուցանեն առ սուրբ սեղանն,
Ընդ նոսին եւ զութեակն եւ զհարիւրեակն ուխտանըւէր
Զոյգ ի զոյգ սատի անտի կոյս մի առոյգ եւ պատանեակ
Ըստ հաճոյիցըն մըտաց եւ ցանկալի սըրտի տարփից
Սիրուհիս եւ ընկալուչս յաջ եւ յահեակ ածեն ծընօղք.
Կուսածաղիկ այտից վարդք արտեւանունք տան լուռ զայսն,
Աւետիս սեռըն սիրոյ եւ անմեկին մըտերմութեան,
Անբիծք յոգի եւ մարմին տարփատենչիկ դեղեցկութիւնք.
Զորս եւ աջ ի յաջ յեռեալ սուրբ հայրապետն եւ քահանայն,
Եւ զաջ իւրեանց ի ճակատըն ամբարձեալ մեղմ մըրմընջօք,
Խօսէին յամուսնութիւն եւ օրհնէին ըզհարսանիսն.
Յանուշակ ի կոյս սըրտից եւ կոյս մարմնոց սէր նորախայծ
Յայնմհետէ հոգի եւ միտք, սիրտ եւ մարմին ձուլեալք ի մի.
Երկնային նոյեանն Աստղիկ սուրբ զուգութեան վեհ խնամակալ,
Որ առ սէր կուսութեան աստուածարեալ թըռեաւ յԱդին
Դայր անդուստ ընդ ամպս երկնից՝ տեղայր վարդից տեղ զհանդխիւն,
Փունջ փունջ հիւսեալ անթարշամ ծիրանեփեան դըրախտի բոլըրս
Յերրախումբ կապեալ նարօտ՝ դընէր ի գլուխ նոցին պըսակ.
Ընդ տարափ ծաղկանցն ի վեր թռուցին անդէն կոյսք զաղաւնիսն,
Հոյլ սպիտակերամ ճախր ընդ ոլորտս յերկնից կապոյան
Խայտալով զկուսիւն անմահ՝ չուրջ բակ առեալ սաւառնաթեւ.
Ընդ նոցին զըւարթ պարուց կոյսն երկնային յամպըս ծըարէր.
Զաղաւնին Արուսեկի 'նդ երկինս տեսեալ եկաց Արբակ,
Զի 'նդ նըմին եւ օրիորդն ի քաղցր յուսոյն թըռեաւ պարկեշտ.
Անդ յայնժամ Մանիտոն ընդ նորապսակ կայտառ զընդէն
Պար դալով ըզսեղանովն երրեակ նըւագս հանէր օրհնից.
Գոհութիւն անմահին ընդ հեղեղաց ջուրց փըրկութեան,
Պըսակելոցն օրհնութիւն եւ դիւցազինն եւ ծընողաց,
Եւ մաղթանս աղերսալիս առաջիկայ պատերազմին.
Զայն ըզհետ կըցէին պատանիք, կոյսք եւ նուագարանք.
Ի բարբառ ցընծութեան հընչէր երկին, թընդայր երկիր,
Շուրջանակի 'նդդէմ գոչէին հովիտք եւ բլուրք եւ թաւ մայրիք.

Արձակեալ ի սըրբութեանց պըսակաւնուէր ամոլքըն կոյսք
Թեւ ի թեւ ջերմըն գըլթովք սիրայորդոր սուրբ ողջունի
Գան ի համբոյր, սիրտ ի թունդ, հընոց եւ Նոր հարանց եւ մարց։
Սըփռէ ապա հրապարակն ըստ երախանս ի ճաշ պայծառ,
Զոր մանկաբին այրապատեան շուրջ ի չինիցն էր հասուցեալ՝
Որթ փափուկ եւ ուղ մատաղ եւ պատրուճակըս խորովոյս,
Հաց գերմակ նըկան եւ չօթ ի տակառս դէզ բարդ ի բարդ։
Հայրապետն եւ քահանայն ցեղապետօք տանուտերամբք
Հրաւիրեալք յակումբ Հայկին՝ ընդ հովանեաւ բազմին սոճւոյն։
Կան ժիրաժիր պատանեակք մատըռուակեն զհամեղ գինիս,
Ճաշք ըղձաշըրս մըղէին, եւ ի մատռուակըն փըրփրադէզք
Առնուին տաշտք ըղտաշտս՝ յեռանդըն հարեալ պըղպըջալով
Հրակայլակ յանդըշ վիժակս ըղձօն մըտաց ուրախարար,
Զոր Գողթն այգեւէտ եւ Ակոռի բերին պարգեւս։
Ի կըշտապինդ ըղձայլիցըն զուարճացեալ ոգի եւ սիրտ,
Զայն առին արուեստականք եւ նուագաւոր մատանց կայտառք
Ցաշխոյժ թինդս յորդորելոյ զըւարթ կուսից եւ պատանեաց,
Ոյց յարուցեալ ի կաքաւ երկու ՚նդ երկուս անդ դէմ ընդ դէմ
Գիրգ ի վեր բազուկս հարեալ՝ ճօճեալ ճեմին նարմանազուկ,
Կամ վերատեալ եւ ձեռն ի ձեռն ի պար խառնեալ բոլորաքար՝
Կայթս հարեալ ոտըն տոփեն ի ծաղկաճեմ դաշտ դալարի։
Ալեւութիցն յայն տեսիլ հեշտանք ի սիրտսըն խըլըրտեն,
Զյոյս ազգին նըկատելով եւ զմանկութեանն յուշ ածեալ տիս։
Ի դառնալ ական տուընջեան յերկնից ի ծիր բոլորադունս,
Ալիք պատկառելիք, տիկնայք ի նաւս ընդ դիւցազին,
Զոյգ նոցին եւ այլ ժողովք ի կուրս ի լաստըս կուտակեալք,
Զուարթալիցք երաժըշտօք շողան յալիս ջուրց մըկանանց
Ցապակեղէն ծովակին բըլրովք մայրեօք հովանացեալ։
Նուագեն զահեղ սպառնալիս ջրոտող ուղխիցըն յորձանաց,
Ըղտապանն անդընդաահերձ եւ զարդարոյ տանըն զապրուստ,
Զազատնին շըլըղաբեր, ըղբոց զոհին եւ զաղեղն յամպս,
Եւ զ'ի նմայն ուխտ ընդ մարդոյն՝ զաստուածեղէն դաշըն բարբառ։
Իսկ անդուստ պարմանիք եւ պատանեակք զուարթածաղիկք,
Կոյս օրիորդք եւ աղջկունք չուշանափայլք եւ վարդափթիթք,
Մէն մի զաս մեկուսի առ ի միմեանց համեստ աչաց,
Զառոյգ ըզգեցըն հոլանեալ, զանմեղութիւն սփածեալ զանձամբք
Ցոսկեղինիկ անդ դարու թարգմանական ազին ծնընդոց,
Մըխիրճ հարեալ ի լոգարանս ականակիտ պարզեալ աղբերց,
Եւ ի ձիգս ոսկի ծըղեաց եւ ի շողշող բարձից դափին՝
Զոսկեթել խոպոպս հերաց ջրաթուրմ սըփռեալ զպայծառ ուսովք՝
Թինդս առեալ կայտառեն ընդ ուխս, եռան զեռան ի վեր ի վայր,

խաղս առնելով պէսպէս ջուրց, ցանել զմիմեանքս առատ վտակ,
Եւ զիրեարս ի մնկուկաց մըղել յանդունդս յալեաց ճողփիւն։
Մինչդեռ Հայկ ընդ հին ալիան ի ծովածաւալ իջեալ նաւուց
Բազմէին ի ծաղկաւէտ ափին՝ տօսոյն ընդ հովանեաւ.
Ի գըլխին խաղուց մանկտոյն եւ ձիարշաւ սպայիցն ի դաշտ,
Երեւէր ի հարաւոյ փոշի ՚նդ երկինս փոթորկեալ,
Եւ ի նմա բրբեւ ընդ ամպս խիտ առ խիտ փայլատակունք.
Նըշմարէր ի հեռաստանն այլազգի վաշտ հեծելազօր
Այլակերպ արանց ի պղինձ վառեալ՝ յերկաթ, հարիւրով չափ.
Իջանէին ի լերանց՝ երիտասարդ մի սկայ ի գլուխ.
Խաւսէր խուն մի ցընծութեանն, այլ ոչ երկիւղ եւ ոչ աղմուկ.
Առաքէր դիւցազն անդէն ընդդիմակերն արին նոռնակ,
Հասանել ձիաթափ, հարցանել զողջոյն բերել զորոյց.
Մանուկն Արմայիս ի ծըփական լուզիցն ելեալ
Կարմրայտ խարտեշագեղ եւ ի խաղուցըն քըրտնաթոր,
Արուսեկին նըմանեալ՝ որ ցօղագին ընդ առաւօտս
Արփիագեղ ծագելոյ յովկիանու լոգարանացն,
«Ըզքաջն Առանակ, ձայն եբարձ, տեսանեմ ես ընդ եկս ոմանս,
Այն որ հաւիկս հրամայեաց ի Հայկաշէն կալ ընդ պահնակս»։
Ընդ որդւոյն եւ ազնուտս հայրն ի վըրան իւր մըտանէ,
Ժողովէ եւ այլ ամբոխն, ըզխորանաւ պատեն ըսպայք,
Ի մօտոյ հետեւազօրք եւ ի բացէ հեծելազունդ,
Անցս ինչ թողեալ ի մէջն փողոցաձեւ, զինուք ցանկեալ։
Հաս նոռնակ տալով զորոյց, «Հրեշտակք Բելայ գան Առանակաւ»։

ՀԱՅԿ. Երգ. Ա.

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

Դրաքեանի մը անտիպ յիշատակագիրք։

### Ե

Առաւօտ մը կանուխ տանտիրոջը Լամբերտ անունով ծառայի մը հետ դաւթին մէջ կեցեր կը խաղայի։ Երիտասարդ մըն էր առոյգ, որ դեռ քսան տարեկան չկար. բարձր և վայելուչ հասակովը, երկայն և խիտ մազերովը, և երկու պզտի բայց աշխոյժ աչքերովը ամենուն զինքը կը սիրցընէր, և մանաւորապէս իր տիրոջը։ Ամենէն աւելի մտադիր էր աշխատութեան, իր մեծերուն հպատակ, և իր հաւատարմակցաց և առաքինակցաց հետ սիրով վարուող։ Թէպէտ և մեր երկուքին մէջ տարիքի զգալի տարբերութիւն կար. ինչու որ ես տղայ մը կրնայի ըսուիլ, և ինքը երիտասարդ մըն էր և կ՚արժէր ալ որ անանկ զուրցուի, այնու հանդերձ վրաս բարեկամի մը սէր և եղբօր մը գորով կը ցուցընէր։ Մանաւանդ թէ ինծի եղբօր անուն կու տար, և կերպով մը կրնար ալ ինծի այդ անունը տալ, որովհետև հայրս զինքը երկու ծնողքէն ալ որբացած և կրնայ

լսուիլ որ ճամբուն մէջ տեղը մնացած՝ քովս առաւ, և իբրև թէ իրեն որդին ըլլար՝ այնպէս մեծցուց և դաստիարակեց։ Անոր համար իրարու հետ սիրալիր ընտանութեամբ մը կը վարուէինք, և եթէ իր երիտասարդութեան հասակը մոռնալով՝ տղոց հետ խաղալէն հեռու կը կենար, բայց իմ տղայական խաղերուս մասնակից ըլլալէն չէր քաշուեր, և շատ անգամ նախ ինքը զիս կը հրաւիրէր գնտակ խաղալու, կամ չըլլանակով ու գաւազանով վազելու։ Այն առաւօտը Լամբերտ սովորականէն դուրս լուռ և մտաղձոտ էր։ Կանչեցի զինքը հետս խաղալու. յանձն առաւ, բայց ոչ այն սովորական պատրաստականութեամբ և զուարթութեամբը։ Երբեմն խրձի պէս կապուած ուռենիներէ և ուրիշ ճիւղերէ ձևացած պզտի ցանկի մը վրայէն կը ցատկէր, և զարմանալի ճարտարութեամբ կաղնիէ հաստ գաւազան մը կը խաղցընէր, զոր երկու ձեռքովը գլխուն վրայէն այնպիսի արագութեամբ կը դարձընէր, որ կարծես թէ օդուն մէջ բարակ և շոգեխառն շըրջանակ մը կը գծէր։

Աս իրեն սիրած խաղն ընելու վրայ էր, մէյմ՚ ալ կը տեսնամ որ յանկարծ կը կենայ, և գաւազանը բարձր անշարժ կը բռնէ, որ կարծես թէ Հերակլեայ արձան մըն էր, լախտը վերուցած՝ սոսկալի հարուած մը տալու դիրքի մէջ։ Աշխատութենէն կարմրցած երեսը, մէկ վայրկենի մէջ դիակի մը երեսին պէս դեղինցաւ և գունատեցաւ։ Շըրթունքները խածնել ուզելու պէս չարաչար կը սխմէր, և ինչպէս յանկարծական և ցաւագին մտածութենէ մը բռնուողը կ՚ընէ, աչքերը անշարժ դէպ 'ի գետին տնկած էր։ Ես այս տեսարանին յանկարծական փոխուելուն յափըշտակուած մնացի, և պատճառն հարցընելու սիրտ չընելով, սաստիկ ափշութեան մէջ լուռ իրեն կը նայէի։ Այս դիրքին մէջ երկայն ատեն այնպէս կեցաւ, վերջը գաւազանը ուժով մը գաւթին սալայատակին զարնելով, խղդուկ ձայնով մը կանչեց. Անէծք, անէծք։

Ան ատեն տեղէս շարժեցայ և վախով լեցուած հարցուցի իրեն. Լամբերտ, ինչ ունիս Լամբերտ, կ՚աղաչեմ զուրցէ ինծի։ Բայց Լամբերտ չէր պատասխաներ. միայն գլուխը շարժեց, նետեց գաւազանը գետինը, թեւերը իրարու վրայ դէպ 'ի կուրծքը ամփոփեց, և այն երկու աչքերովը՝ որ կարծես թէ տեղէն դուրս կ՚ուզէին ելլալ, անշարժ կեցած ինծի կը նայէր։

— Ի՛նչ ունիմ, պոռաց վայրկեան մը վերջը, ինչ ունիմ. հապա չտեսա՞ր։

— Բայց ի՞նչ բան, հարցուցի երկիւղալից անձկութեամբ մը։

— Ի՞նչ բան. չտեսա՞ր դեռ հիմայ ով անցաւ դղեկին դրան առջևէն։

— Ես չէ, պատասխանեցի մէկէն. չկրցայ մէկը տեսնել, որովհետև զարմացած քու կարգէ դուրս ճարտարութեանդ փորձերը կը դիտէի։

— Բայց ես աղէկ տեսայ. և թէպէտ ծպտեալ էր, բայց մէկէն զինքը ճանչցայ։

— Ո՞վ է ասիկայ։

— Պաւտիի կոմսն է։

— Ա՛հ, կանչեցի մէկէն, իմ հօրս մարդասպանը։

— Եւ մեր տիրոջը մարդասպանը։

— Ի՞նչ բան կ՚ըսես։

— Գիտեմ ինչ որ կ՚ըսեմ. դու տղայ ես և դեռ բան չես հասկընար. օր կու գայ որ դու ալ ամեն բան կ՚իմանաս, և սոսկումն կ՚ունենաս, ինչպէս ես կը զգամ։

— Թերևս քեզի չափ գիտեմ, ըսի մտքէս. հիմայ ամեն բան կատարեալ կը հասկընամ։

Այս համառօտ խօսակցութենէն ետև, երկուքնիս ալ իրարու երեսը նայելով՝ երկայն ատեն լուռ կեցանք։ Վերջապէս Լամբերտ սաստկութեամբ մը իր անշարժ կեցուածքը թողուց, և ուժով մը ձեռքս բռնելով ըսաւ. Եկուր, Հենրիկոս, դեռ ժամանակ ունինք մեր տէրը ազատելու։

Այս խօսքերս մթութեան և ցաւոց մէջ ձգեցին զիս. Մէկ կողմանէ կ՚ըմբռնէի որ տանտէրը ծանր վտանգի մը

մէջ է, մէկտը կողմանէ ինչ բան ըլլալը չէի գիտեր, և որ չարագոյնն է, ինչպէս կրնայինք մենք երկուքնիս դարման մը ընել: Բայց այս անստուգութիւնս շուտով վերցաւ; երբ Լամբերտ զիս մէկդի տանելով՝ ցած ձայնով մը ըսաւ. Հէնրիկոս, դու պզտիկ ես, բայց բաւական խելք ունիս ըսածս ընելու: Մանաւանդ թէ քու հասակդ զքեզ աւելի կարող կ'ընէ կատարելու ինչ որ հիմա պիտի զուրցեմ, առանց մէկու մը կասկած մը տալու, որ ուրիշ մը կրնար պատճառել: Մտիկ ըրէ. դու պէտք է խոհանոցը կենաս. ուշադրութեամբ ամեն սեղան բերուած սկաւառակներն ու կերակուրները դիտէ: Ես մնացածը կը դիտեմ: Տեսնելուդ պէս որ խոհարարը կամ ուրիշ մը պնակի կամ շիշի մը մէջ կապոյտ թղթի մէջ պլլած ճերմակ փոշի մը կը դնէ, մէկէն վազէ իմաց տուր ինծի. ես սեղանի սրահին մօտիկ խուցն եմ:

Այս խօսքերս՝ մութ և մրրկալից գիշերուան մէջ իբրև փայլակ մը եղան: Մէկէն ինծի այն նշանաւոր գիշերը՝ քարայրին մօտ լսած խօսակցութիւնս յիշեցուցին: Հասկըցայ մէկէն ինչ ըսել կ'ուզէր Լամբերտ, և խոստացայ որ ամենայն կերպով կը կատարեմ:

Զիրար թողուցինք, և ես խոհանոցը գնացի. և որովհետև ստէպ երթալու սովորութիւն ունէի, իմ հոն գտնուիլս մէկու մը աչքը չզարկաւ: Նախաճաշին ժամանակն եկաւ, և ես մեծաւ մտադրութեամբ կը դիտէի թէ խոհարարը պնակներուն և գաւաթներուն մէջ ինչ կը դնէր. բան մը չանդրադարձայ: Ցանձն առած գործոյս ուշադիր՝ ինչուան ճաշոյն ժամանակ հոն մնացի: Ամենայն կարգաւորութեամբ՝ համեմունքն և աղանդերք և խորտիկք և անուշունք կ'անցնէին. և բանի մը մէջ ճերմակ փոշւոյն դրուիլը չտեսայ, և ոչ մէկուն ձեռքը կապոյտ թուղթը տեսայ: Ճաշը լմնալէն ետև, դէպ 'ի Լամբերտին սպասած խուցը կ'երթայի որ իմ դիտողութեանցս վրայօք տեղեկութիւն տամ իրեն, մէյմ'ալ նեղ և մութ սրահի մը մօտէն անցնելու ժամանակ, աճապարանօք այս կարճ և չփոթ խօսակցութիւնս ընելը կը լսեմ:

— Ուրեմն:

— Գործը կատարուեցաւ:

— Ապահո՞վ ես:

— Ամենայն կերպով ապահով:

— Շատ աղէկ:

Վերջը տեսայ որ մէկը ոտուըներուն ծայրերուն վրայ քալելով՝ սրահէն մէկալ կողմէն հեռացաւ, և տանը ծառայ մը՝ ձեռքը քանի մը պնակներով դէպ 'ի խոհանոցը գնաց: Որմնակից տախտակի մը վրայ զանոնք դնելու ժամանակ, ձեռքէն անձեռոց մը ինկաւ. շուտով մը ծռեցաւ, առաւ զայն գետնէն և խոհանոցը մտաւ: Անձեռոցին ինկած տեղը տեսայ որ բան մը մնացեր էր: Մօտ կ'երթամ՝ կը դիտեմ. ծալած թղթի կտոր մըն էր: Նորէն և աւելի մանրամասն կը նայիմ, և կը տեսնեմ որ կապոյտ գունով է: Չեմ կրնար ըսել ինչ տպաւորութիւն որ ըրաւ վըրաս այն թուղթը և այն գոյնը: Դողալով առի զայն, և վազելով Լամբերտը փնտռելու գացի. և ճիշդ ինծի զուրցած խուցը գտայ զինքը, ուր սեղանին սպասները ընկուզէ գեղեցիկ դարանի մը մէջ կը դնէր:

— Լամբերտ, Լամբերտ, պոռացի, զինքը տեսած չտեսած:

— Հէնրիկ, դո՞ւ ես:

— Ես եմ: Մինա՞կ ես:

— Այո՛. Նոր բան մը ունի՞ս:

— Եւ ինչպէս. Նայէ մէյմը:

Աս ըսելով ցուցի իրեն գետնէն գըտած կապոյտ թո՛ւղթը:

— Վա՜յ մեզ, գոյնը նետած կանչեց Լամբերտ. կապոյտ թո՛ւղթ մը:

— Այո՛. և առանց ճերմակ փոշւոյն:

— Ո՞ւր գտար:

— Խոհանոցին դրան մօտ:

— Աստուած իմ, ըսաւ և սկսաւ առատիկ արցունք թափել: Իսկ անկէց մէկու մը անցնելը չտեսա՞ր:

— Այո՛. ծառայի մը ձեռքէն անձեռոց մը իյնալը տեսայ. այս անձեռոցին տակ թուղթը կար:

— Ո՞վ է սա ծառան։

— Փիլիպպոս։

— Փիլիպպո՜ս. ա՜հ տէրանենք գաւառեան։

Այն վայրկենին տէրերուն կեցած խուցը աղաղակ մը կը լսենք. վերջը նոյն խցին զանգակին սաստկութեամբ և ուժով զարնուիլ մը։ Վերջին յուսահատութեամբ «Օգնութի՜ւն, օգնութիւն, չկա՞յ օգնութիւն» պոռալ մը կը լսենք։ Խաթունին ձայնն էր։

Ամենայն արագութեամբ կը վազէ Լամբերտ, ես ալ ետևէն։ Հազիւ թէ կը մտնանք, մէյմ՛ ալ կը տեսնենք որ տանտէրը աթոռի մը վրայ տարածուած՝ կը գալարի և կը մոլեգնի, ցաւագին հեծութիւններ արձըկելով։ Խաթունը մազերը փետտելով և գրեթէ ինքիրմէ դուրս, կը ջանար զինքը բռնելու, երբեմն երբեմն իր թաշկինակովը անոր ճակտէն իջած քրտինքի խոշոր կաթիլներն սրբելով։

— Ո՜հ Տէր, կը մեռնիմ, կը կանչէր տանտէրը. շուտ ժողովրդապետը։

Ուրիշ ծառաներ ալ վազեր եկեր էին. նաև մայրս ալ եկեր էր, պզտիկ կարոլինան գիրկը բռնած։ Մէկ վայրկենի մէջ բոլոր տնեցիք այն խուցը թափեր էին. աչքս չորս կողմս դարձուցի, և տեսայ որ մէկ հոգի միայն պակաս էր. և Փիլիպպոսն էր։

Իսկ տանտէրը չարաչար ցաւերով կը տանջուէր։ Սրտաշարժ և ողորմելի տեսարան մըն էր. արձըկած աղաղակներն, և այն կատաղութիւնը որ զինքը աթոռին վրայ բիւր կերպով շարժել կու տար, բոլոր հոն եղողներուն աչքէն ցաւոց և կարեկցութեան առատ արցունք թափել տուին։ Քիչ մը վերջը եկաւ բժիշկն ու ժողովրդապետը. զինքը զննեցին և խաթունին զանազան հարցմունքներ ըրին։ Վերջը տեսայ որ բժիշկը մէկզի կանչեց ժողովրդապետը, և մէկտեղ քանի մը բան խօսեցան։ Ետքը ժողովրդապետը, երեսը արցունքով լեցուած, դրպանէն քսակ մը հանեց, ուսկից արծաթէ աման մը հանելով, ուրարը դրաւ, և ճրագ մը վառել տալով, ըսաւ ամենուս որ ծունր դնենք. և այն խեղճին վերջին օծումը տուաւ։ Այս վսեմ արարողութիւնն հազիւ լըմընցուց, մէյմ՛ ալ տանտէրը սոսկալի աղաղակ մը արձըկելով, և ուժով մը ոտքի ելլելով, նորէն աթոռին վրայ ինկաւ և հոգին աւանդեց։ Խաթունը այն տեսնելով՝ մարեցաւ, և գետին կը տարածուէր, թէ որ երկու ծառայ զինքը չբռնէին։ Բժիշկը զինքը անկողին տանել տուաւ, և մէկտեղ գնաց որ զինքը խնամէ։ Ժողովրդապետը հեծկլտալէն ընդհատեալ և խղդուած ձայնով 'ի խորոցն ըսաւ։

Ելլելու վրայ էինք, մէյմ՛ ալ բոլոր սև հագուած պարոն մը, հետն ալ երկու զինուոր, ներս մտաւ։

— Մէկը չշարժի աս տեղէն, պոռաց։ Բժիշկը կանչել տուաւ, որ մէկէն եկաւ հասաւ։ Իրեն երկու կամ երեք հարցմունք ըրաւ. վերջը ուրիշ երկու հոգի ալ ներս մտուց, և ըսաւ անոնց։ Դիակը մանրամասն հետազօտեցէք. և նախ ծառաները հետազօտելէն սկըսեցէք։

Այն երկուքը հնազանդեցան և հոն եղողներուն վրայ մէկիկ մէկիկ լաւ մը նայեցան։ Երբոր Լամբերտին կը հասնին, կը լսեմ որ անոնցմէ մէկը իրեն կը հարցընէ. Ի՞նչ բան է ան ձեռքիդ մէջ եղած թուղթը։ Կը նայիմ և կը տեսնեմ որ իմ իրեն տուած կապոյտ թղթիս կտորն է։ Սև հագուած մարդը, երբ լսեց այս հարցմունքը, կանչեց՝ Թուղթ մը. հոս ինծի որ տեսնեմ։ Մէկէն տրուեցաւ իրեն, և լաւ մը զննեց զայն։ Բանալու ատեն կը տեսնայ որ ամենապարզ փոշի մը դուրս կ'ելլէ։ Պարոն բժիշկ, ըսաւ մէկէն, պարոն բժիշկ, նայէ մէյմը. ի՞նչ կրնայ ըլլալ այս փոշին։ Բժիշկը ձեռքը կ'առնէ թուղթը, և պատուհանին մօտենալով, վասն զի գրեթէ իրիկուն եղեր էր, կը զննէ զայն, և դարձեալ կը դառնայ աւելի ուշադրութեամբ կը զննէ. վերջը այն պարոնին դառնալով, դայրագին ձայնով մը ըսաւ. Թոյն է։

— Թոյն, պոռացին ամենքը սոսկմամբ, թոյն։

մէջ է, մէկալ կողմանէ ինչ բան ըլլալը չէի գիտեր, և որ չարագոյնն է, ինչպէս կընայինք մենք երկուքնիս դարման մը ընել։ Բայց այս անստուգութիւնս շատով վերցաւ. երբ Լամբերտ զիս մէկդի տանելով՝ ցած ձայնով մը ըսաւ. Հէնրիկոս, դու պզտիկ ես, բայց բաւական խելք ունիս ըսածս ընելու։ Մանաւանդ թէ քու հասակդ զքեզ աւելի կարող կ'ընէ կատարելու ինչ որ հիմա պիտի զուրցեմ, առանց մէկու մը կասկած մը տալու, որ ուրիշ մը կրնար պատճառել։ Մտիկ ըրէ. դու պէտք է խոհանոցը կենաս. ուշադրութեամբ ամեն սեղան բերուած սկաւառակներն ու կերակուրները դիտէ։ Ես մնացածը կը դիտեմ։ Տեսնելուդ պէս որ խոհարարը կամ ուրիշ մը պնակի կամ շիշի մը մէջ կապոյտ թղթի մէջ պլլած ճերմակ փոշի մը կը դնէ, մէկէն վազէ իմաց տուր ինծի. ես սեղանի սրահին մօտիկ խուցն եմ։

Այս խօսքերս՝ մութ և մրրկալից գիշերուան մէջ իբրև փայլակ մը եղան։ Մէկէն ինծի այն նշանաւոր գիշերը՝ քարայրին մօտ լսած խօսակցութիւնս յիշեցուցին։ Հասկըցայ մէկէն ինչ ընել կ'ուզէր Լամբերտ, և խոստացայ որ ամենայն կերպով կը կատարեմ։

Զիրար թողուցինք, և ես խոհանոցը գնացի. և որովհետև ստէպ երթալու սովորութիւն ունէի, իմ հոն գտնուիլս մէկու մը աչքը չզարկաւ։ Նախաճաշին ժամանակն եկաւ, և ես մեծաւ մտադրութեամբ կը դիտէի թէ խոհարարը պնակներուն և գաւաթներուն մէջ ինչ կը դնէր. բան մը չանդրադարձայ։ Յանձն առած գործոյս ուշադիր՝ ինչուան ճաշուն ժամանակ հոն մնացի։ Ամենայն կարգաւորութեամբ՝ համեմունքն և աղանդերք և խորտիկք և անուշունք կ'անցնէին. և բանի մը մէջ ճերմակ փոշւոյն գտնուիլը չտեսայ, և ոչ մէկուն ձեռքը կապոյտ թուղթը տեսայ։ Ճաշը լմննալէն ետև, դէպ 'ի Լամբերտին սպասած խուցը կ'երթայի որ իմ դիտողութեանցս վրայօք տեղեկութիւն տամ իրեն, մէյմ'ալ նեղ և մութ սրահի մը մօտէն անցնելու ժամանակ, անճապարանօք այս կարճ և շփոթ խօսակցութիւնս ընելը կը լսեմ։

— Ուրեմն։

— Գործը կատարուեցաւ։

— Ապահո՞վ ես։

— Ամենայն կերպով ապահով։

— Շատ աղէկ։

Վերջը տեսայ որ մէկը ոտուըներուն ծայրերուն վրայ քալելով՝ սրահին մէկալ կողմէն հեռացաւ, և տանը ծառայ մը՝ ձեռքը քանի մը պնակներով դէպ 'ի խոհանոցը գնաց։ Որմակից տախտակի մը վրայ զանոնք դնելու ժամանակ, ձեռքէն անձեռոց մը ինկաւ. շուտով մը ծռեցաւ, առաւ զայն գետնէն և խոհանոցը մտաւ։ Անձեռոցին ինկած տեղը տեսայ որ բան մը մնացեր էր։ Մօտ կ'երթամ՝ կը դիտեմ. ծալլած թղթի կտոր մըն էր։ Նորէն և աւելի մանրամասն կը նայիմ, և կը տեսնեմ որ կապոյտ գունով է։ Չեմ կրնար ըսել ինչ տպաւորութիւն որ ըրաւ վրաս այն թուղթը և այն գոյնը։ Դողալով առի զայն, և վազելով Լամբերտը փնտրելու գացի. և ճիշդ ինծի զուրցած խուցը գտայ զինքը, ուր սեղանին սպասները ընկուզէ գեղեցիկ դարանի մը մէջ կը դնէր։

— Լամբերտ, Լամբերտ, պոռացի, զինքը տեսած չտեսած։

— Հէնրիկ, դո՞ւ ես։

— Ես եմ։ Մինա՞կ ես։

— Այո՛. նոր բան մը ունիս։

— Եւ ինչպէս. նայէ մէյմը։

Աս ըսելով ցցուցի իրեն գետնէն գըտած կապոյտ թուղթը։

— Վա՜յ մեզ, գոյնը նետած կանչեց Լամբերտ. կապոյտ թո՛ւղթ մը։

— Այո՛. և առանց ճերմակ փոշւոյն։

— Ո՞ւր գտար։

— Խոհանոցին դրան մօտ։

— Աստուա՛ծ իմ, ըսաւ և սկսաւ սաստիկ արցունք թափել։ Իսկ անկէց մէկու մը անցնելը չտեսա՞ր։

— Այո՛. ծառայի մը ձեռքէն անձեռոց մը իյնալը տեսայ. այս անձեռոցին տակ թուղթը կար։

— Ո՞վ է աս ծառան։

— Փիլիպպոս։

— Փիլիպպո՜ս. ա՜հ տիրանենգ դաւաճան։

Այն վայրկենին տէրերուն կեցած խուցը աղաղակ մը կը լսենք. վերջը նոյն խցին զանգակին սաստկութեամբ և ուժով զարնուիլ մը։ Վերջին յուսահատութեամբ «Օգնութիւն, օգնութիւն, շուտ օգնութիւն» պոռալ մը կը լսենք։ Խաթունին ձայնն էր։

Ամենայն արագութեամբ կը վազէ Լամբերտ, ես ալ ետևէն։ Հազիւ թէ կը մտանք, մէյմ՚ ալ կը տեսնենք որ տանտէրը աթոռի մը վրայ տարածուած՝ կը գալարի և կը մռլեգնի, ցաւագին հեծութիւններ արձըկելով։ Խաթունը մազերը փետտելով և գրեթէ ինքնիրմէ դուրս, կը ջանար զինքը բռնելու, երբեմն երբեմն իր թաշկինակովը անոր ճակտէն իջած քրտինքի խոշոր կաթիլներն սրբելով։

— Ո՛հ Տէր, կը մեռնիմ, կը կանչէր տանտէրը. շուտ ժողովրդապետը։

Ուրիշ ծառաներ ալ վազեր եկեր էին. նաև մայրս ալ եկեր էր, պզտիկ կարոլինան գիրկը բռնած։ Մէկ վայրկենի մէջ բոլոր տնեցիք այն խուցը թափեր էին. աչքս չորս կողմս դարձուցի, և տեսայ որ մէկ հոգի միայն պակաս էր. և Փիլիպպոսն էր։

Իսկ տանտէրը չարաչար ցաւերով կը տանջուէր։ Սրտաշարժ և ողորմելի տեսարան մըն էր. արձըկած աղաղակներն, և այն կատաղութիւնը որ զինքը աթոռին վրայ բուր կերպով շարժել կու տար, բոլոր հոն եղողներուն աչքէն ցաւոց և կարեկցութեան տաւատ արցունք թափել տուին։ Քիչ մը վերջը եկաւ բժիշկն ու ժողովրդապետը. զինքը զննեցին և խաթունին զանազան հարցմունքներ ըրին։ Վերջը տեսայ որ բժիշկը մէկզի կանչեց ժողովրդապետը, և մէկտեղ քանի մը բան խօսեցան։ Ետքը ժողովրդապետը, երեսը արցունքով լեցուած, գրպանէն քսակ մը հանեց, ոսկեց արծաթէ աման մը հանելով, սուրբը դրաւ, և ճրագ մը վառել տալով, ըսաւ ամենուս որ ծունր դնենք. և այն խեղճին վերջին օծումը տուաւ։ Այս վսեմ արարողութիւնն հազիւ լըմընցուց, մէյմ՚ ալ տանտէրը սոսկալի աղաղակ մը արձըկելով, և ուժով մը ոտքի ելլելով, նորէն աթոռին վրայ ինկաւ և հոգին աւանդեց։ Խաթունը այն տեսնելով՝ մարեցաւ, և գետին կը տարածուէր, թէ որ երկու ծառայ զինքը չբռնէին։ Բժիշկը զինքը անկողին տանել տուաւ, և մէկտեղ գնաց որ զինքը խնամէ։ Ժողովրդապետը հեծկլտալէն ընդհատեալ և խղդուած ձայնով 'ի խորոցն ըսաւ։

Ելլելու վրայ էինք, մէյմ՚ ալ բոլոր սև հագուած պարոն մը, հետն ալ երկու զինուոր, ներս մտաւ։

— Մէկը չշարժի աս տեղէն, պոռաց։ Բժիշկը կանչել տուաւ, որ մէկէն եկաւ հասաւ։ Իրեն երկու կամ երեք հարցմունք ըրաւ. վերջը ուրիշ երկու հոգի ալ ներս մտուց, և ըսաւ անոնց։ Դիակը մանրամասն հետազօտեցէք. և նախ ծառաները հետազօտելէն սկըսեցէք։

Այն երկուքը հնազանդեցան և հոն եղողներուն վրայ մէկիկ մէկիկ լաւ մը նայեցան։ Երբոր Լամբերտին կը հասնին, կը լսեմ որ անոնցմէ մէկը իրեն կը հարցընէ. Ի՞նչ բան է ան ձեռքիդ մէջ եղած թուղթը։ Կը նայիմ և կը տեսնեմ որ իմ իրեն տուած կապոյտ թղթիս կտորն է։ Սև հագուած մարդը, երբ լսեց այս հարցմունքը, կանչեց՝ թուղթ մը. հոս ինծի որ տեսնեմ։ Մէկէն տրուեցաւ իրեն, և լաւ մը զննեց զայն։ Բանալու ատեն կը տեսնայ որ ամենաբարակ փոշի մը դուրս կ'ելլէ։ Պարոն բժիշկ, ըսաւ մէկէն, պարոն բժիշկ, նայէ մէյմը. ի՞նչ կրնայ ըլլալ այս փոշին։ Բժիշկը ձեռքը կ'առնէ թուղթը, և պատուհանին մօտենալով, վասն զի գրեթէ իրիկուն եղեր էր, կը զննէ զայն, և դարձեալ կը դառնայ աւելի ուշադրութեամբ կը զննէ. վերջը այն պարոնին դառնալով, դողդոջին ձայնով մը ըսաւ. Թոյն է։

— Թոյն, պոռացին ամենքը սոսկմամբ, թոյն։

— Այո՛ Թոյն։

Խեղճ Լամբերտը սա որ լսեց՝ պաղ կտրեցաւ։ Գլխէն ինչուան ոտք կը դողար, և դարձաւ ինծի նայեցաւ, կարծես թէ ըսել ուզելով. Տես հիմայ ինչ բան փրթաւ գլուխս։

Ու հագուած պարոնը Լամբերտին դառնալով՝ հարցուց իրեն։

— Ի՞նչպէս այս թուղթը ձեռքդ անցաւ։

— Չեմ գիտեր, կակազելով մը պատասխանեց Լամբերտ։

— Չես գիտեր։ Ստուգութիւն է ասիկայ։ Շիտակը զրուցէ. ուսկից առիր և քեզի ո՞վ տուաւ ասիկայ։

— Ոչ ոք։

— Ուրիշ առտ մ՚ ալ։

— Ես իրեն տուի, պոռացի գրեթէ ինքնաբերաբար։

— Դո՛ւն, հարցուց պարոնը զարմանքով. ուսկից և ի՞նչպէս ունեցար։

— Խոհանոցէն քիչ հեռու՝ գետինը գտայ։

— Պարոն բժիշկ, մտիկ ըրէ, ըսաւ անիկայ. խոհանոցէն քիչ հեռու։

— Իրաւցնէ կասկածս ճշմարտեցաւ, ըսաւ բժիշկը հառաչելով։

— Երկուքնիդ ալ բռնուած էք, ըսաւ այն պարոնը, ինծի և Լամբերտին դառնալով. զօրականք, հսկեցէք ատոնց վրայ։

Այս խօսքերուն մայրս յուսահատ մը պոռաց, և սաստիկ լալ մը փրցնելով, այն խիստ և բացարձակ հրամանը տուողին դիմաց ծնկան վրայ ինկաւ։

— Ա՛հ, պարոն, կ՚ըսէր մայրս, հաւատա ինծի, տղաս անմեղ է. կարող չէ այդպիսի ոճիր մը գործելու։

— Այնչափ աւելի աղէկ իրեն համար, պատասխանեց պաղ կերպով մը այն պարոնը. եթէ անմեղ է՝ մէկէն ազատ կ՚արձակուի. իսկ եթէ յանցաւոր է, պէտք եղած խստութեամբը կը պատժուի։

Ու առանց ուրիշ բան ըսելու, հրաման տուաւ զինուորներուն որ զմեզ բռնեն տանին։

Շատ մը բազմութիւն ժողովրդեան, տանտիրոջ մահուան լուրէն շարժած, որ մէկէն գեղին մէջ տարածուեր էր, դպրոցին դրան առջև ժողվուեր էր։ Ես և Լամբերտ, և երկու զինուոր հետերնիս, հարկեցանք այն բազմութեան մէջէն անցնիլ։ Ամենքն ալ զարմանքով մեզի կը նայէին։ Ինչպէս եղաւ, ամբոխին մէջ ձայն մը տարածուեցաւ թէ մենք երկուքնիս թունաւորեր ենք զտանտէրը։ Անզգամներ բան է ինչ կատարութիւն որ ունեցան այն լուրին բոլոր այն պարզամիտ բնակիչքը. մեզի դէմ սոսկալի հայհոյութիւններ արձակեցին. և ամբոխին մէջ այս ձախող ձայնն հնչեց. Ի մահ մարդասպանքն։ Ի մահ մարդասպանքն, կրկնեցին մէկէն հազար ձայներ զարհուրելի կատաղութեամբ։ Այն այլեկոծ ամբոխին այսպէս պոռալը և մոլեգնութեամբ և բարկութեամբ վրանիս վազելն մէկ եղաւ։ Զինուորներն իրենց ամենայն ուժովը այն բռնութեան դէմ կեցան. մերթ աղաչանօք և մերթ սպառնալեօք այն մոլեգնելոց կատաղութենէն կ՚ազատէին զմեզ։ Հուսկ վերջը ստիպուեցան սուրերնին մերկացնել և նաև աւելի յանդուգններուն քանի մը հարուած ալ տալ՝ որ զմեզ մոլեգնութենէն ազատեն։ Ես սաստիկ կու լայի, և Լամբերտին կը պլլուէի որ այն չփոթութեան մէջ մեծագոյն պաղ արեամբ և զարմանալի անխռովութեամբ կեցեր էր։ — Մի՛ վախնար, Հենրիկ, կ՚ըսէր ինծի գրեթէ խնդալով. քեզմէ մազ մը խլելէն առաջ՝ նախ զիս պէտք է մեռցնեն։

Բայց երբոր բանտին մօտ հասանք, ամբոխը երթալով աւելի բազմացաւ։ Բարկութիւնն ու զայրացմունքը որչափ մեծագոյն բռնութիւն կը գտնէր, այնչափ փոխանակ նուազելու աւելի կը սաստկանար։ Ամբոխը երթալով աւելի վրանիս ինկաւ. և երկու զինուորներն չէին կրնար բռնել զայն։ Աւելի սրտոտներէն ոմանք ինչուան նաև ձեռք երկընցուցին Լամբերտին. բայց ինքը քանի մը ուժով և չեչտակի հարուածով զիրաւ կրցաւ ինքզինքը վրանէն յարձակող-

ներքէն բաժնել։ Իր անձին համար չէր վախեր. ինծի համար էր վախը, որ պզտիկ ըլլալով, այն կատաղի և խառնակ յորդ ամբոխին կառքին տակ ճխլուելու մեծագոյն վտանգի մէջ էի։ Այնչափ չորս կողմի բազմութենէն ճըմռուած՝ գրեթէ խեղդուելու մօտ էի, մէյ մ'ալ Լամբէրտ թեւերովս ու արմկներով քիչ մը տեղ բանալով, գեանէն կը վերցընէ զիս և ուսերուն վրայ կ'առնէ։ — Վիզիս լաւ մը պլլուած կեցիր, տղաս, և մի վախնար ամենևին։ — Վերջը իրեն մօտ կեցող յաղթանդամ և ջղուտ գեղացւոյ մը ձեռքէն խոշոր գաւազան մը խլելով, զոր ինծի պաշտպանելու համար վերուցեր էր, և աղաղակ մը արձըկելով՝ որ բոլոր մարդիկը սարսեցուց, կը սկսի այն գաւազանով աջ և ահեակ հարուած տալ յուսահատաբար։ Գրեթէ գիշեր էր, և բազմութիւնը այն աղաղակէն և այն հարուածներէն սարսափած խուճապաւ կը փախչէր, առանց տեսնելու թէ ուր կ'երթար. վերջը անանկ խառնակութիւն մը եղաւ որ կարծես թէ աշխարհքիս վերջն էր։ Ջինուորներն՝ վրանիս թափած ժողովրդեան բռնութեամբը բաժնուեր էին մեզմէ. Լամբէրտ տեսաւ զայն, և դարձեալ յանձնելով ինծի որ վիզին պլլուած կենամ, գաւազանովը ճամբայ բացաւ ժողովրդեան մէջէն, որ առաջ այնպէս կատղած էր և վերջը վախէն թուլցած, և երեք կամ չորս մը ցատքելով, կարծես թէ ուսին վրայ բան մը ունեցած չըլլար, և քանի մը նեղ ճամբաներէ, զորոնք քայլ առ քայլ կը ճանչնար, սկսաւ վազել որչափ աւելի արագութեամբ որ կրնար։

— Բռնեցէք, բռնեցէք, պոռաց ամբողջ ամբոխը, բայց ոչ ոք սիրտ կ'ընէր ետևնէս վազելու։

Խեղճ Լամբէրտին վազելէն ու աշխատութենէն հոգին բերանն եկեր էր. բայց այնու հանդերձ անդադար երագութեամբ վազելը կը շարունակէր։ Երբ իրեն երևցաւ թէ ապահով է, սկըսաւ քայլերը կամցցընել։ Իրեն ըսի որ զիս վար դնէ, վասն զի կրնայի ստքով իրեն հետևիլ։ Բայց բացարձակապէս չուզեց այնպէս ընել, և երկայն ժամանակ այն կերպով երթալնիս շարունակեցինք։

Թանձր անտառի մը մէջ քիչ մը առաջ գացեր էինք, մէյմ' ալ եկեղեցւոյն զանգակին՝ ժողվուելու համար զարնելը լսեցինք, այն զօրաւոր և բոթաբեր զանգերն մեր սրտին խորը թնդացուցին։ — Զանգակն ընդհատ կը զարնեն, ըսաւ Լամբէրտ. նշան է թէ կ'ուզեն ետևնէս իյնալ։ Սիրտ ընենք ուրեմն, Հէնրիկ. պէտք է ամենայն կերպով ապահովցընենք զմեզ։ — Աս ըսելով, քայլերը արագցուց, և ճամբան թողլով՝ դէպ 'ի ձախ դարձաւ, մինչև աւելի անտառին խորերը մտնելու համար։ Բայց այն կողմէն՝ դէպ 'ի ուր որ կ'երթայինք, սուր և կատաղի ոռնալ մը լսուեցաւ՝ որ զմեզ սարսափէն պաղ կտրեցուց։ — Ո՛վ Տէր, աղաչած կանչեց Լամբէրտ, ով Տէր, սև արջ մըն է։ Շուտ, շուտ, ատ ծառին վրայ ելլենք։

Ես տերևի մը պէս կը դողայի, և չարաչար կուլայի։ Բայց վտանգին երևոյթը և Լամբէրտի խրատները քիչ մը ոգի տուին ինծի։ Ոտքերովս ու ձեռքերովս հին կաղնիի մը պլլուեցայ և Լամբէրտին օգնելովը խոշոր ճիւղի մը վրայ ելայ. ինքն ալ վեր ելաւ և ինծի պատուիրելով որ ամենևին ձայն չհանեմ, սկսաւ արթնութեամբ դիտել։ Արջոյն ոտնաձայները մինչև երթալով աւելի սաստիկ և մեզի մօտանց կու գային. նշան էր թէ կենդանին դէպ 'ի մեր ուղղութեամբ կու գար։ Լամբէրտ ձեռքը բռնած էր իր խոշոր գաւազանը զոր բարեբաղդաբար մեր այնպէս խուճապաւ վազելուն ժամանակ ձեռքէն չէր թողուցած։ Տեսնելով որ արջը մինչև աւելի կը մօտենար, ինծի ըսաւ որ չվախնամ թէ որ յանկարծ մեր ապաստանած ծառին պլլուելու ըլլայ. և աւելցուց որ այն ժամանակ կաղնիին ճիւղերուն պլլուիմ և որչափ կրնամ՝ աւելի վեր ելլեմ։ Իսկ իրեն համար՝ իր գաւազանը բաւական էր։

Քանի մը վայրկեան վերջը՝ ծառերէն

Թափած չոր տերեւներուն վրայ կոխկըռտել մը կը լսուի. արջն էր, որ հոտոտելով, մեր կաղնիէն քիչ հեռու էր: Գիշերուան մթութիւնը չէր թողուր որոշել թէ ուսկից կու գար և ինչ կ'ընէր: Բայց քանի մը վայրկեան ետքը մեր կաղնիին տակ վիթխարի արջ մը տեսանք, որ ահագին բերանը բացած և դէպ 'ի մեզի բարձրացուցած, երկայն և կատաղի մռնչիւն մը կ'արձակէր:

— Վե՛ր, վեր, պոռաց Լամբերտ, և բռնէ մը մի՛ վախնար:

Երկու անգամ գլուրցել չառաւ. շուտով մը ճիւղերուն պլլուելով՝ գգալի վեր բարձրացայ: Բայց վերէն բուսական աւելի բան կը տեսնէի. և անանկ տեսարանի մը ներկայ եղայ որ այսօր ալ մինակ մտածելով՝ սոսկալէս ու սարսափէս մազերս կը տնկուին:

Վայրագ գազանը իմանալուն պէս որ այն ծառին վրայ պահուըտող կայ, ետևի ոտքերուն վրայ շիտակ կայնեցաւ, վերջը թաթերը կաղնիին բնոյն կըռթընցնելով, անանկ սաստկութեամբ ցնցեց զայն, որ կարծես թէ արմատէն կը շարժէր: Լամբերտ, հանդարտ և անխռով, գաւազանը ձեռքը, իրեն աթոռի տեղ ծառայող խոշոր աչքէ մը դուրս ցցուած երկայն ճիւղի մը վրայ հեծած կեցեր էր: Զինուորի մը նման, որ բերդի մը պատնէշներուն վրայ կեցած, և ոտքը ամուր հաստատած, թշնամւոյն յարձակմանը կը սպասէ: Ու շատ չուշացաւ յարձակմունքը. արջը թաթերովը ծառին կեղևը բռնելով, թէպէտ դժուարութեամբ՝ բայց սկսաւ վեր ելլել: Բայց այն միջոցին որ կը գալարի որ մօտ հասնի, Լամբերտ գաւազանը կը վերցնէ, և որչափ ոյժ ունէր՝ արջոյն գլուխը սոսկալի հարուած մը կ'իջեցնէ: Գլուխը վեր բռնած՝ կայծակող աչքերով Լամբերտին կը նայէր. հարուածը խոնարհեցուց զայն, և զարհուրելի կերպով ծառին բունին զարնել տուաւ. սաստիկ երկու ահագին հարուած առաւ. սարսափելի ողբաձայն մը արձըկեց, բայց յարձակելէն ետ չկեցաւ. մանաւանդ թէ աւելի կատղած կրկին յարձակիլ կը փորձէր: Արդէն առջևի թաթերովը Լամբերտի կեցած ճիւղը բռներ էր, և քիչ մնաց որ բերնովը իրեն մէկ սրունքը խածնէր: — Հոս դքեզ կ'ուզէի, ուրախութեամբ մը պոռաց Լամբերտ. հիմա կը տեսնենք:

— Աս ըսելով, գրպանէն դանակ մը կը հանէ, և իմ ըսելէս շուտ արջին կռնակը կը ցաթկէ. ձախովը քթէն կը բռնէ, և աջովը դանակը բռնած կը սկսի զարնել յուսահատաբար: Արջը այն հարուածներուն՝ կը պոռայ, և հազար կերպ շարժելով կը գալարի և կը կատղի. բայց Լամբերտ գազանին կռնակը միշտ ամուր կը կենար, և իր վայրագ հակառակորդին մերթ գլխուն և մերթ վզին դանակի հարուած տալէն չէր դադրեր: Ձնկարագրելու բան է այն կռիւը և այն մենամարտը: Վիրաւորեալ արջոյն արիւնը թանձր ցայտելով կը թրջէր զկաղնին, և Լամբերտին ձեռքերն ու երեսը բոլոր արեամբ ներկած ու կարմրացած էր: Յանկարծ արջը խղդուկ աղաղակ մը, մանաւանդ թէ սուր և խորին խորդիւն մը կ'արձակէ. վերջը զինքը մէկ կողմէն կախուած կը տեսնեմ. ետքը թնդիւն մը կը լսեմ որ գետինը և իմ կեցած կաղնիս սարսեցուց, անկէ ետև ոչ արջը և ոչ Լամբերտը տեսայ:

Վախէս և սարսափէս որ Լամբերտ արջէն սպաննուած կամ իյնալու ատեն մեռած ըլլայ, ճիւղէն վար կ'իջնեմ, և բնոյն ծայրը կենալով, բարձր և տագնապեալ ձայնով մը կը պոռամ. Լամբերտ, Լամբերտ: փոխանակ Լամբերտէն պատասխան մը առնելու, քանի մը ձայներու պոռալը կը լսեմ. Հոս են, հոս են. վերջապէս հասանք վրանին:

Մն. շարունակելի :

---

Մարկոս Աւրելիոս ինքնակալին առ Եպեսիպպոս իր քեռորդին գրած թուղթը։

Մարկոս ինքնակալ Հռոմայ, առաջին հիւպատոս, արիութեան ժողովրդեան և քրմապետ, Եպեսիպպոսի իր քեռորդւոյն ողջոյն։

Նոյեմբերի քսանուհինգին՝ Աննիոս Վերոս հօրեղբօրորդիդ եկաւ, բոլոր ազգատոհմերս ուրախացուց իր գալովը ու Յունաստանէն բերած լուրերովը։ Ամենուն հետ խօսեցաւ, իրենց զաւկըներնուն ու բարեկամացը վրայ տեղեկութիւն տուաւ։ Ետքը ինքն ու ես մէկդի քաշուեցանք, քու մէկ թուղթդ տուաւ ինծի, որ բոլորովին հակառակն է ուրիշներուն Յունաստանի վրայ գրածներուն։ Դուն ինծի կը գրես որ ստակ խրկեմ քեզի՝ ուսմունքդ շարունակելու համար, ուրիշները կը գրեն որ օր օրի վրայ թեթեւութիւններդ կ'աւելցընես, ու աշխարհային բաներու մէջ կ'ընկղմիս։ Դուն իմ մարմինս ու արիւնս ես, իմ քեռորդիս ես, իմ աշակերտս եղած ես. դուն աղէկ որ ըլլայիր, զքեզ զաւկի տեղ կը դնէի. բայց դիք չեն ուզեր որ և ոչ քեռորդիս ըլլաս, և ոչ զքեզ որդի կոչեմ, քանի որ սա թեթեւութեանցդ մէջ կը տեւես. վասն զի մարդս պէտք չէ գէշերու հետ ազգականութիւն ունենայ։ Ջեմ կրնար ուրանալ որ զքեզ սրտանց սիրելուս համար՝ աչքս չգալարին քու կործանմանդ վրայ։ Գիտցիր որ թուղթդ կարդացած ատենս, իմանալով որ ճամբէ դուրս ելեր ես, արցունք թափեցի. բայց իմաստուն ու զգաստ մարդիկ թէ և ցաւ ըզգան շատ բաներ լսելով՝ այսու ամենայնիւ կ'ուզեն լսել, ճարը ընելու համար։ Գիտեմ որ չես կրնար գիտնալ, բայց լաւ կ'ըլլաս, որ խեղճ մայրդ Աննիա Միլենա, որ իմ քոյրս էր, գեռահաս մեռաւ՝ հազիւ տասնըութը տարուան էր. դուն անոր մեռած ատենը չորս ժամուան տղայ էիր. դուն աստըւանց ծնար, ինքը կէսօրը մեռաւ, զաւկին կեանքը սկսած ատենը՝ մօրը կեանքը լմնցաւ։ Դուն քու մայրդ կորսընցուցիր, ես իմ քոյրս՝ որուն նմանը թերեւս ուրիշ մը չկայ Հռոմայ մէջ. վասն զի իմաստուն ու զգաստ էր, խոհեմ, պարկեշտ ու գեղեցիկ, որ թշուառաբար հռոմայեցի կանանց վրայ քիչ կը գտնուի։ Քոյրս ըլլալէն 'ի զատ՝ ես զինքը պահած ու հարս ըրած ըլլալովս, շատ կը սիրէի զինքը. երբոր ինքը մեռաւ հոս 'ի Հռոմ, ես 'ի Հռոդոս ճարտասանութեան դաս կու տայի. ամեն ունեցածս ճարտասանութեան դասատալէն էր։ Երբոր այն տխուր լուրը առի որ Աննիա Միլենա քոյրս մեռեր էր, ամեն ուրախութիւն գնաց սրտէս, անանկ նեղութիւն մը եկաւ վրաս՝ որ բոլոր անդամներս դողալ սկսան, աչուըներէս անդադար արցունք կը վազէր, ախուվախ ընելէս հեղձամղձուկ կ'ըլլայի, հազար հառաչանք կ'ելլէր սրտէս, ու տրտմութիւնը սրտիս մէջ իր ամեն ուժը թափելով՝ անանկ եղաւ որ ամենէն ուրախ ընկերութիւնը ինծի վիշտ էր, մինակութիւնը միայն զիս կը մխիթարէր։ Ջեմ կրնար բացատրել որ ինչ ցաւ եղաւ ինծի Միլենա քրոջս մահը. քունիս մէջ զինքը երազ կը տեսնէի, արթուն ատենս՝ իրեն յիշատակը միշտ աչքիս դիմացն էր. յիշելով իր կենդանութիւնը՝ կը վշտանայի որ ինչպէս մեռաւ։ Կեանքս ինծի դառն էր, սիրով կ'ուզէի գերեզման երթալ. վասն զի ով որ սրտանց կը ցաւի ուրիշի մահուանը վրայ, կը տրտմի իր կենացը վրայ։

Միտքս բերելով որ քոյրս իր կենդանութեանը ատեն՝ ինչպէս զիս կը սիրէր, ես ալ ինչպէս զինքը կը սիրէի, ու ինչպէս իմ աչքս իրեն ցուցուցի մեռած ատենը, մտածեցի որ ուրիշ բան մը չէի կրնար ընել իրեն անանկ հաճոյական՝ ինչպէս մեծցընել իր պզտիկ թողուցած զաւակը. վասն զի մայր մը մեռնելու ատեն մանր զաւկըներ որբ ձգելէն մեծ ցաւ չկրնար ունենալ։ Քոյրս մեռածին պէս Հռոմ եկայ, ու զքեզ կապուա խրկեցի սնուցանելու, ուր ե-

կու տայի կաթնատանն եղար իմ՝ աշուրջներուս գնալը. վասն զի ինչ որ կը վաստըկէի ճարտարասանութեան դաս տալով 'ի Հռոդոս, հազիւ կը բաւէր ամեն օրուան ծախուցս. անոր համար գիշերներն ալ քանի մը ժամ դաս կու տայի, ու անկէց վաստըկածս կու տայի ծիծմօրդ. անանկ որ դուն իմ կենացս գինն ես: Երբոր կաթէն կտրուեցար, Բիւզանդոն քաղաքը խրկեցի զքեզ Լուկիոս Վալերիոս բարեկամիս, որուն քովը կեցար ինչուան հինգ տարուան որ եղար. հոն թէ քեզի համար և թէ իրեն կը վճարէի. վասն զի շատ աղքատ էր ու շատախօս, անանկ որ պամէնքը կը ձանձրացնէր. ասանկներուն աւելի վճարես որ լռեն, ինչպէս իմաստուններուն՝ որ խօսին:

Հինգ տարուան որ եղար, խրկեցի զքեզ 'ի Տերինդոն կամպանիոյ քաղաքներուն մէկը. հոն վարժապետ մը կար Եմիլիոս Տորկուատոս անունով, որ տըղոց վարպետութիւն կ'ընէր: Քեզի երեք տարի կարդալ գրել սորվեցընելու համար՝ իր մէկ որդին ինծի տուաւ որ չորս տարի յունարէն դաս տամ իրեն. անանկ որ՝ չէի կրնար քեզի կրթութիւն ու առաքինութիւն վաստըկցընել, առանց ես աշխատելու: Երբոր ութը տարուան եղար, ու աղէկ կարդալ ու գրել գիտէիր, խրկեցի զքեզ 'ի Տարենտոն ուսմունք ընելու. հոն ալ ես տեսայ ծախքդ չորս տարի, առատ վճարելով վարպետներուդ. վասն զի դժբախտաբար հիմա մէկը չգտնուիր՝ որ առանց ստըկի բան սորվեցընէ: Լալով կ'ըսեմ որ Կուինտոս Կինկիննատոսին ատենէն ինչուան 'ի Կիննա ու Կատուլլոս՝ իմաստասիրութեան վարժապետները ամենևին վճարք չէին առներ մէկէն՝ դաս տալու համար. իրենց վարձքը սրբազան ծերակոյտը կու տար, ու չէր թողուր որ մէկը առանց չունենալուն համար զրկուի սորվելէն: Վասն զի ան ատենները ով որ կ'ուզէր առաքինութիւն ու գիտութիւն սորվիլ, պէտք եղած ծախքը տէրութիւնը կը հոգար: Մեր առջիններն որ ամեն բանի մէջ կարգաւորեալ էին, չէ թէ միայն պաշտօնները կարգով կանոնով կը բաժնէին, այլ ծախք ընելու ալ կարգ կանոն ունէին. վասն զի հասարակաց բաժինը՝ հասարակաց գանձէն կը վճարէին: Նախ՝ քուրմերուն ապրուստը. երկրորդ ուսմանց վարժապետներուն. երրորդ՝ այրիներուն ու որբերուն. չորրորդ՝ օտար ասպետներուն, որոնք ինքնակամ Հռոմայեցի կը դառնէին. հինգերորդ՝ ծեր զինուորներուն, որոնք որ երեսունըվեց տարի պատերազմի մէջ ծառայեր էին. վասն զի ասոնք իրենց պատուովը իրենց տունը դառնալով, տէրութենէ ունէին իրենց ապրուստը:

Տասը տարիէն ետքը՝ ես անձամբ եկայ 'ի Տարենտոն, ու զքեզ Հռոմ բերի, հոս քեզի ճարտարասանութեան, քերականութեան, մաթեմաթիկայի ու աստղաբաշխութեան դաս տուի. իմ տունս պահելով զքեզ ինծի ընկեր, ինծի հետ կերակուրդ կ'ուտէիր, իմ անկողինս մէջ կը քնանայիր, զքեզ սրտիս ու հոգւոյս մէջը կը պահէի, զոր աւելի աղէկոր սեպես քան թէ քեզի տունս ու ամեն բան տալս. վասն զի այն է ճշմարիտ բարեբարութիւն, որ առանց շահու մը ակնկալութիւն ունենալու կ'ընէ մարդս: Անանկ ալ կեցար հետս 'ի Լաւրենտոն, 'ի Հռոդոս, 'ի Նէապոլիս և 'ի Կապուա, ինչուան որ աստուածները զիս Հռոմայ իշխանական ըրին. ան ատենը միտածեցի խրկել զքեզ, ինչպէս որ խրկեցի՝ 'ի Աթենաստան՝ որպէս զի յունարէն սորվիս, ու փորձիս ընելու ինչ որ ճշմարիտ իմաստասիրութիւնը կը սորվեցընէ: Վասն զի ճշմարիտ ու առաքինի իմաստասէրը պէտք է իր գործքովը հաստատէ ինչ որ բերնով կը քարոզէ. այնչափ պարսաւելի չէ անարգ մարդ մը՝ որ ինքը զինքը խելացիի տեղ կը դնէ, ու կ'ուզէ որ ուրիշներն ալ զինքը առաքինի մարդու տեղ դնեն, ինչպէս ան որ շատ կը խօսի ու քիչ կը գործէ, վասն զի աղէկ խօսող ու անիրաւութիւն ընող մարդը, կ'աւրէ հասարակապետութիւնը, ու ետքը ետքը կը կործանէ:

Երբոր դքեզ Հռոմէն հանեցի ու Յունաստան խրկեցի, դքեզ ընկերութենէս հեռացընելու համար չըրի, որպէս զի աղքատութեանս համը առած ըլլալով՝ յաջողութեանս համը չառնես, այլ վախցայ որ կորիճ առողջ ու ազատ ըլլալովդ՝ չըլլայ թէ արքունեացս մէջ աւրուիս. կարծեցի որ դուն ալ զիս անանկ կը սիրես, ինչպէս որ ես դքեզ կը սիրեմ՝ քեռորդիս ըլլալովդ. վասն զի թագաւորներն որ դեռահասակ բարեկամներ կ'ուզեն քովերնին, խոհեմութիւն չեն ըներ, ու անոնց թեթեւ ըլլալուն պատճառ կու տան:

Պատմեցի քեզի ինչ որ ես քեզի ըրի. հիմայ կ'ուզեմ ըսել ինչ որ ամենն ալ գիտեն որ դուն ըրիր ու կ'ընես 'ի Յունաստան: Միտքդ դնելով որ գեղեցիկ կորիճ մըն ես՝ ամեն ուսմունքդ թողուցեր, ու արհամարհելով իմ խրատներս՝ թեթեւ պատանեաց հետ մէկ եղած, ինչ ստակ որ քեզի կը խրկեմ գրեանք գնելու՝ խաղի ու մոլութիւններու կը մըսխես եղեր: Թէպէտ և ըրածդ՝ քեզի վնաս է, բայց ինծի ցաւ կու տայ. վասն զի հասարակօրէն աղայ մը որ գէշ կ'ելլէ, զինքը նայողները կը մեղադրուին: Չեմ ցաւիր որ քեզ պահեցի, քեզի կարդալ և ուսմունք սորվեցընել տուի, դքեզ տունս ու իմ անկողինս առի. չեմ ցաւիր որ քեզի համար այնչափ ծախք ըրի, այլ իրաւցընէ կը ցաւիմ որ դուն կ'ըլլաս պատճառ որ դադրիմ քեզի բարիք ընելէն. վասն զի աստ թագաւորները բանէ մը անանկ չեն վշտանար, ինչպէս իրենց բարերարութեանը արժանի մարդ չգտնելէն: Ըսին ինծի՝ ինչ առողջ ու գեղեցիկ ես եղեր, բայց բնութեան տուած աս ձիրքերովդ անանկ հպարտացեր ես՝ որ անոնք վայելելու համար իմաստասիրութիւնը մեկդի ձգեր ես: Աս բանը շատ վշտացուց զիս. վասն զի մարմնոյ գեղեցկութիւնը՝ թէ շուտ թէ ուշ՝ կը կորսուի գերեզմանին մէջ. բայց առաքինութիւնն ու գիտութիւնը անմահ կ'ընեն մարդուս յիշատակը: Ոչ դէք հրամ- մեցին, և ոչ տկարագեմիանները կ'ուզեն որ մարդս իմաստասէր ըլլալու համար կայտառ դէմք ու փայլուն մարմին ունենայ. ճշմարիտ իմաստասէրին աչուները խորունկ՝ ընքուները այրած՝ գլուխը ճաղատ՝ ծնօտները ներս քաշուած՝ երեսները դեղնած՝ մարմինը տկար ու ցամաք՝ ոտուըները բոպիկ՝ հագուստը հին կ'ըլլայ. քիչ կ'ուտէ, քիչ կը քնանայ, վերջապէս սպարտացիի մը պէս կ'ապրի, ու յոյնի մը պէս կը խօսի: Քաջ զօրավարի մը նշանը սպիքն են, ու քաջ իմաստասէրին նշանը խստակրօն կեանքը՝ վասն զի այնչափ պէտք է ցաւի իմաստուն մը անկիրթ բռնուելէն, որչափ որ զօրավար մը վախկոտ բռնուելէն: իմաստասէր եղողը պէտք է որ իր նախնեացը հնութիւնները սորվի, խորունկ բաներ գրէ յետնոց համար, ճշմարիտ վարդապետութիւն սորվեցընէ կենդանի եղողներուն, գիտնայ աստղերուն շարժմունքը, տարերաց փոփոխմունքը: Բայց գիտնաս երկեւիղպաս որ՝ ոչ աք, ոչ 'ի Հռոմ և ոչ 'ի Յունաստան, աս բաները սորվեցան՝ առանց անդորր միտք ունենալու ու առանց մարմնոյ փափկութիւնները մեկդի ձգելու: Անասնոց ազգակից ենք մարմնով, իսկ հոգւով ազգակից ենք աստուածներուն. մարմնոյ անասնականութեանն որ հետեւինք, մեզմէ վար կ'ըլլանք. մեր հոգւոյն որ հետեւինք, մեզմէ վեր կ'ըլլանք. վասն զի զգայականութիւնը ըզմեզ անասուններէն վար կընայ ընել, իսկ բանականութիւնը՝ մարդիկներէն վեր: Մարդս 'ի բնութենէ կը բաղձայ վեր ելլել՝ քան թէ վար իջնալ, ծաղկիլ՝ քան թէ ցրուել, հրամմել քան թէ հնազանդիլ. թէ որ աս անանկ է՝ ինչու մոլութիւններով նուաստացնենք զմեզ քան զանասունները, երբոր կընանք առաքինութիւններով մարդկանցմէ վեր ըլլալ: Ան բաներուն մէջ, որոնցմով մարդս կընայ պարծիլ, ամենէն գերաբեկը՝ ամենէն դիւրաւ աւրուողը՝ առողջութիւնն ու գեղեցկութիւնն է, որոնցմով կը հպարտանանք: ինծի կ'երեւնայ որ առողջութեան ու գեղեցկութեան

վրայ պարծէլը՝ երազի մէջ հարուստ ու իշխան ըլլալու պէս է, որ մարդ արթընցածին պէս կ'իմանայ որ աղքատ ու անկարող է։ Իրաւցընէ ատանկ ըլլալը իմանալու համար՝ երեւակայէ գեռահասակ կորիճ մը, գլուխը չափաւոր, մազերը դեղին, ճակատը լայն, աչուըները սեւ, ծնօտները ճերմակ, քիթը սուր, շրթունքը կարմիր, մօրուքը երկու դին ճղքուած, դէմքը զուարթ, վիզը կլոր, մարմինը առողջ ու համեմատ անդամներով, անանկ որ ամեն տեսնողին աչքը կը պարարի, ու սիրտը կը սիրէ զինքը։ Թէ որ ասոր կորիճը ատանկ աղուոր ու առողջ երկան ատեն տեւէր իր գեղեցկութեանը մէջ, պէտք էր բաղձալ գեղեցկութեան ու պահել. վասն զի թէ որ անասնոց վրայ ալ՝ շէնքերու վրայ ալ՝ կը սիրենք գեղեցկութիւնը, բանաւոր բան է որ մեր վրայ ալ բաղձանք ունենանք։ Բայց սա գեղածաղիկ հասակը ծաղկաւէտ ծառի մը պէս է, որ երէկ առողջ գեղեցիկ ու ամբողջ կեցած էր՝ առանց վախի մը որ իր գեղեցկութիւնը կորսընցընէ, յանկարծ տապախտան խորշակ մը տապանաց կ'այրէ զանիկայ, թշնամւոյ կացին մը կը կտրէ, անկարծելի պատահարաց մեղուները կը ցամքեցընեն, կարճութեան կենաց որդը կը կրծէ, ու մահուան փտութիւնը զինքը կը կործանէ։ Ո՛վ կեանք մարդկային, միշտ թշուառ. երկնից աստեղատուննե՛րը անորոշ ըսեմ, թէ զքեզ դժբախտ. վասն զի անոնք ատանկ ուզելով, ու դուն դէմ չկենալով անոնց, քունիդ մէջ զուարճութիւն կու տան քեզի, արթընցած ատենդ տառապանք. նեղութիւնները քաշել կու տան քեզի, հանգիստը հեռուանց կը ցուցընեն. ձախորդութիւնը փորձել կու տան, յաջողութիւնը տեսնալ միայն. կեանքը չափով կու տան, մահը առանց չափի։

Չար ու ախտաւոր մարդիկ կ'ըսեն որ խիստ զուարճալի է իրենց զբօսանաց ու հեշտութեանց մէջ ապրիլը. բայց ես երդում կ'ընեմ որ իրենց մոլութիւններովը զուարճացողներուն մէկը չէ եղած, որ ետքը անոնցմէ մեծագոյն վիշտ ունեցած չըլլայ. կ'ուզէի որ աչուըներնին բացուէր, ու տեսնէին որ ինչ պատրանաց մէջ են։ Հեշտութիւնները ախորժելի ըլլալով մեր մարմնոյն՝ կը խաբեն զմեզ որ մեզի հետ պիտոր կենան, բայց կ'անցնին կ'երթան, ու կը թողուն հիւանդութիւն ու տառապանք՝ որոնք հոգինիս կը մաշեն։

Նոյնպէս, կը զարմանամ որ ինչպէս չես մտածեր քու գեղեցկութեանդ ինչ ըլլալիքը, տեսնելով ուրիշներուն գերեզմանին մէջ ինչ ըլլալը։ Քանի որ ծառերը պարտիզին մէջն են, տերեւներուն ու պտղոց զանազանութենէն կը ճանչցուի տարբերութիւննին. կաղնին տերեւներէն, արմաւենին պտուղէն, որթը ողկոյզներէն. բայց երբոր արմատնին կը չորնայ, պտուղնին կը քաղուի, տերեւնին կը թափի, ու կը կտրուին՝ կրակը կը ձգուին՝ մոխիր կ'ըլլան, կը հարցընեմ որ ով կրնայ ճանչնալ որ մոխիրը որ ծառինն է։ Ասանկ ալ մենք ենք. քանի որ կ'ապրինք՝ մէկը իր տերեւներէն՝ այսինքն խօսքերէն կը ճանչցուի, մէկը իր պտուղներէն՝ այսինքն բարերարութիւններէն, մէկը իր կեղեւէն՝ այսինքն հարստութենէն, մէկը իր ծաղկէն՝ այսինքն գեղեցկութենէն, մէկը պզտիկութենէն՝ ինչպէս գաճաճը, մէկը մեծութենէն՝ ինչպէս հսկայն. բայց միայն մէկ բանի մը մէջ տարբերութիւն չունինք, այսինքն որ ամենքս ալ դէպ 'ի գերեզման կ'երթանք միշտ առանց կենալու։ Հիմայ կը հարցընեմ. երբոր մահը ամենքս ալ վերցընէ աշխարհքէս ու գերեզմանին մէջ փտեցընէ, ինչ տարբերութիւն պիտոր ունենայ գեղեցիկը տգեղէն։ Չեմ ուզեր ասով քու մահդ գուշակել. վասն զի մոլութեանց մէջ ընկղմած՝ չես ուզեր մահուան անունը լսել. բայց սա միայն կ'ըսեմ քեզի, թէ և ծանր գայ ականջիդ. ծնար մեռնելու համար, ու կ'ապրիս մեռնելու համար. մէկը կը ծնանի, մէկալը կը մեռնի՝ անոր տեղ տալու համար. տղու մը ծնանիլը՝ իր պապն ու հայրը գերեզմանի հրաւիրել է։ Մէկը

հարցընելու որ ըլլայ ինծի՝ թէ մահը ինչ է, կ'ըսեմ որ աս ողորմելի կեանքէն ազատիլ է։ Ամեն տեղ կարդացեր եմ, շատ անգամ տեսեր ալ եմ հիմակուան ատենս, ու կը մտածեմ որ ինչուան ետքն ալ ասանկ պիտոր ըլլայ. այսինքն երբոր մէկը իր կենաց քաղցրագոյն վայելքին մէջն է, մահը վրայ կը հասնի. երբոր աւելի կը սոսկայ մահուընէ, ան ատենը կեանքը կը կորսընցընէ։ Ո՛վ դիք, չեմ գիտեր որ զձեզ անգութ կոչեմ թէ գթած. որ մեզի մարմին ու ոսկերք կու տաք, պատիւ, հարստութիւն, զուարճութիւն, ու ամեն անասուններուն վրայ իշխանութիւն, բայց կենաց վախճանն ալ մէկտեղ։ Զկրնալով ընել որչափ որ կ'ուզեմ, կը հարկաւորիմ ուզել որչափ որ կրնամ. ուստի թէ որ ուզածիս պէս կարենայի ընել, աւելի կ'ուզէի օր մը պայծառ կեանք ունենալ քան թէ Հռոմայ ամեն հարստութիւնը։ Ի՞նչ օգուտ է աշխատիլ պատիւ ու հարըստութիւն ունենալու, երբոր ամեն օր կը պակսի կենացս մէկ օրը։

Բայց մեր առջի խօսքը դառնանք. դուն, Եպեսիպպէ, որ քու գեղեցկութեանդ համար՝ վրադ ատ մեծ համարմունքը ունիս, կ'ուզէի որ ըսէիր ինծի՝ թէ քու և թէ ուրիշ աղուոր կտրիճներու կողմանէ, կը մտածէք որ օր մը պիտոր ծեր ըլլաք։ Երբոր կը մտածեմ որ քանի՛ բարեկամներս քիչ տարի առաջ գեղեցիկ կտրիճներ էին, ու հիմայ ծեր՝ նիհար՝ հիւանդ ու տգեղ կը տեսնամ զիրենք, ինծի կու գայ որ ան ատենը երազ կը տեսնէի, կամ թէ հիմակուան տեսածներս անոնք չեն։ Ի՞նչ սոսկալի բան. թէ որ մէկու մը միայն պատահէր՝ անհաւատալի կ'ըլլար, բայց ամենուն կը պատահի. քիչ ատենի մէջ բերնին համեմատութիւնը կը փոխուի, դէմքին փայլունութիւնը կ'երթայ, երեսները կը կուընճմըտին, աչուըները կը պղտորի՝ մշուշ կը տեսնայ, փղոսկրի պէս ճերմակ ակռաները կը սեւնան, արագընթաց ոտուըներուն կապ կը դնէ տկարութիւնը, սիրուն բազուկները կաթուածով կը խեղանան, ողորկ վիզը կը խորշոմի, շիփշիտակ հասակը կը կորանայ. վերջապէս ինքը զինքը չճանչնար թէ նոյն մարդն է։

Քեզի կ'ըսեմ, Եպեսիպպէ, որ գեղեցկութեանդ վրայ կը պարծիս. պարծէ որչափ որ կրնաս, մեծ բանի տեղ դիր զքեզ գեղեցկութեանդ համար, բայց գիտցիր որ գեղեցկութիւնը ուրիշ բան չէ պատանեաց համար՝ բայց վարագոյր մը աչուընուն առջին, քար մը՝ ոտուըներին անոր զարնելու ու իյնալու, ձեռնակապ մը՝ գործքի հետ չըլլալու, դահիճ մը՝ իրենց սիրտը տանջելու, գող մը իրենց ժամանակին, վտանգ մը իրենց կենացը, պատճառ մը նախանձու, ու պղծութեան դրդիչ։ Ես որովհետեւ ուսմունքդ ձեռքէ ձգեր ես՝ ասկէց ետքը պարտական չէի քեզի ստակ ղրկելու, մանաւանդ քու ըրածներուդ համար. այսու ամենայնիւ՝ Աւլոս Վեգեննոսին հետ երկու հազար սեստերս կը ղրկեմ քեզի հագուստի համար։ Բայց իրաւցընէ շատ ապերախտ կ'ըլլաս, թէ որ ըրած մեծ բարիքս չճանչնաս։

Հոս տեղի վրայ ուրիշ բան չունիմ գրելու քեզի, բայց միայն որ Աննա քոյրդ հարս եղաւ, ու գոհ եմ կ'ըսէ. բայց դիք շնորհեն որ այնպէս ըլլայ. վասն զի մարդիկ կրնան ատըկով օգնել աղջիկներուն հարս ըլլալու, բայց գոհ ըլլալնին՝ դիք միայն կրնան ընել։ Տորինկա հօրեղբօրդ դուստրը Սպանիա գնաց. ստոյգ կ'ըսեմ որ քիչ հոգ չունեցայ իր վրան, իրեք օր Սալարեան ճամբուն մէջ պահուըտելէն՝ ի վեր. վասն զի աղջիկ մը որ իր այգեկութը տանէն առաջ կ'ընէ, պէտք կ'ըլլայ որ պատերազմական մարդկանց հետ ըլլայ։ Աննիոս Հռուփոս բարեկամդ ու ընկերդ՝ գիտցէր որ Պոնտոսի կղզւոյն քաղաքապետ գնաց ծերակուտին կողմանէ. թէ և դեռահասակ է, բայց խոհեմութիւնը արժանի կ'ընէ զինքը ատ պատուոյն։ Յուսամ որ իրեն յանձնուած պաշտօնը աղէկ կատարէ. վասն զի շատ ծերերուն ու խոհեմ պատանեաց մէջ աւե-

լի կ'ընտրեմ պատանեաց խոհեմութիւնը քան թէ ծերոց ալիքը ։ փաւստինաս քեզի բարև կ'ընէ . ստոյգ գիտցիր որ քեզի համար շատ կը բարեխօսէ ինծի. ամեն օր գլուխս կը ցաւցընէ որ հետդ չորգողիմ, ըսելով որ խոհեմ մարդիկ պատանեաց թեթևութիւններուն պէտք չէ նային, ու ծեր չկայ որ ամենայն մասամբ պատանի եղած չըլլայ ։ Աս նիւթիս վրայ ուրիշ բան չեմ գրեր քեզի, աս միայն կ'ըսեմ . դուն աղէկ որ ըլլաս, ես չեմ կրնար ուրանալ քեռորդիս, իմ ձեռասունս ու աչկերուս ըլլալդ ։ Թէ որ տեսնեմ քու զգաստանալդ, հետդ կը հաշտուիմ . վասն զի իրար սիրողներուն սրտէն ուրիշ բան չկրնար բարկութիւնը դուրս ընել, բայց միայն իրենց յանցանքը ճանչնալն ու ուղղելը ։ Աս բաները քեզի գրելուս պատճառը՝ փաւստինայիին գլուխս ցաւցընելը եղաւ ։ Դիք ամեն վտանգէ պահեն զքեզ . խնդրէ իրենցմէ որ քու վարքդ կարենաս ուղղել ։ Մարկոս Ինքնակալ Հռոմայ իր ձեռքովը կը գրէ քեզի Աննիոսի Եպկսիպպոսի ։

---

ՃԱՆԱՊԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

ՋՈՒԱՐ ՃԻԹԷՐՃԻ ՕՂԼՈՒ ՔԱՀԱՆԱՅԻ

(Տես երես 145)

Եղբայր, այսուհետև պատմեմք սուրբ Յորդանանու զգնալն և զգալն մի ըստ միոջէ:

Յորժամ կամենաս գնալ 'ի սուրբ Յորդանան, ծաղկազարդին օրն քիրաճիքն և ֆէլլահներն գալ և գնալ են . ոմն ղաւնբրմայ ձգէ փէհ[1] . և ոմն ախվայ . թէ այլ ուրիշ մարդու տավար չի բռնեն ակյլ . ապա առաւօտուն տեսանես, եղբայր, վանից դուրս առջևն՝ մի կողմն բէթլէհէմի ֆէլլահներն, միւս կողմն շամցի ղաթրճիքն . նոքա կ'ըսեն թէ մեր կու տանիմք . միւսն կ'ըսեն թէ մեր կու տանիմք . և ես դուրս ելայ գեղացն նայիլ գնացի . նա տեսնեմ որ մէկ զմէկ ինկան՝ սօփայ սօփայի . ուղտերն մէկ մէկի խառնվեցան . քարն իբրև անձրև կու թափի . եկն միտս իմ, մնայ ուղտին փորուն ներքև, հազիւ ազատեցայ . և վանից դուռն ճորով գըտայ . նա տեսանեմ արապ թէլլալն եկ, ելաւ բարձր տեղ և ձայնեց . ամենեքեան լուռ կացին թէ տեսանեմք ինչ կու կանչէ . այսպէս ասաց . թէ, Շամցիք տանին ըխտաւորք զջուրն, ապա թէ զի օգտէ՝ ապա Բէթլէհէմցիք տանին ։ Եւ ֆէլլահնին նկուն եղեն, և ես տեսա անդ ղաթրճի մի զօրեղ, և տաւարնին լաւ . իսկոյն ձեռացն բռնեցի և ասացի, քանի տաւար ունիս . նա ասաց թէ ութը տաւար . չորսն բռնեցի, քաշեցի ներս վանքն ։

Եւ հեծաք ելաք ճանապարհ ղաթար ղաթար . հազիւ հասաք 'ի մէկ մէյտան լեառ մի, և անդ սակաւ մի էկլէնմիշ եղաք՝ մինչև յետի ըխտաւորն գայ, անտի չուվեցաք . ահա կու գնամք սարպ տեղ . նեղ և լայն, դուր և փոս . եօխուշ մի վայր իջաք, մեծ եաղըյ[1] մի, չատըրները տեսաք . և պայրախներն 'ի մեր առաջևէ . եթէ հարցանես, մինչև քառասնըեօթը պայրախ համարեցի ։ Սա եազն Երիքով է եղբայր . և ես լուեալ էի թէ վանից չատըրին քով իջի . հետս ունէի փոքր չատըր մի, իջայ անդ . չուտով տղաքն ղուրմիշ արին, քանզի օտան էի մոռացեր, անդ ֆէլլահնին ղանութ են ղուրմիշ արեր, մէկ օխլամուր սըրըխն՝ վեց փարայ առաք . — այ ախմախ . քան փարայ ուզէ, քանզի պիտոյ է . — և մտաք 'ի մէջն, որ այն ղանութնին մեր դիմացն էր . զինչ ուզես անդ գտանի ։ Ձախ կողմն բարձր լեռներ, բայց մի լեռն կայ քան զամենայն բարձր է . և կայ գլուխն եկեղեցնայ տեղ . սա է փորձութեան լեառն, որ ասաց սատանայ, եթէ դու ես Քրիստոս՝ ասա զի քարինքս այս հաց լինիցին . և ասաց

1 Գրաւական ։

1 Դաշտ մարգագետին ։

Քրիստոս. ոչ փորձեցես զանէր Աստուած քո։ Եւ անդ է ջուրն՝ որ սամփիոն իշու չէնէկէով (հազար) հոգի ջարդեց. և անդ է Զաքէի տունն։ Օրտու պազար, ով կու քնանայ. հէլէ սակաւ մի ննջեցինք. զարթեաք, հագըր եղաք. նոպէթն զարկին մէկ հեղ. ձիեանն բեռցաք երկրորդում եղանակին. հեծաք երրորդում եղանակին, պայրախնին առաջնէ, ահա կու գնամք ուղղ Յորդանան. լուսինն տասնըհինգ աւուր պէտիր, ճ՞նչ կանես գծէներն և զմաշալան. այս ճանապարհն լայն և հանգիստ է. յետևէ փաշին քեահեան՝ չիֆտէ մէչալէով. առաջնէ քամբեօթը պայրախ ոէյմէնով. հետևակն ուրիշ ձիաւորն ուրիշ. քանզի կանուխ էր՝ երեք թէրճիմաննե հետ, ապաներն 'ի վերան։ Անդ կայ զումլուխ մի, զմեզ անդ առգելցին, մեք այլ վար իջաք զումին վերայ գնացաք։ Եղբայր, այսպէս տեղս աչքըր բաց պիտի. վէ զանթրճին այլ ղուռնուզ, որ Սէյտի Ահմէտ կոչիւր, քան զամէնն յառաջ կու գնայր, անկարծ զալքը խասախ առեր՝ 'ի բաց կու ցաթկեն ձիուն վերայ որ մուլթն կու բաժանի. այնպէս կու քշենք՝ որ մէնզիլն ճ՞նչ պիտի լինայ. լուսացաւ, առաջնէ գնացող պայրախներն ճկեցան, ձախ կողմն բարձր լեառն ելան, և պայրախնին անկեցին սրայով. մէհտէրխանան կու ծեծեն։ Գնացաք ջուրին եզերն, իջաք ձիուն 'ի վար. շուտով հանուեցաք. անդ էիր և տեսեալ էիր. իջաք 'ի ջուրն և անդ հինգ հոգի մկրտեցի. և ապա Գաբրիէլ անուն վարդապետ մի զիս մկրտեց. և ջուր լցաք մաթարայն[1]. շուտով հագուեցաք ելաք 'ի ձի. այսչափ մարդս որ կայեաք մինչև հազար հոգիէն աւելի. կէս սահաթն մկրտուեցանք. ամենն՝ եարան զողն չատ, աh չատ, լէվէնտներին չորս կողմէն չալլախ թրով՝ տէկյինտի թէգ եղեք, առեալ, հագիւ ճանապարհ ելաք։

Այս տուղղ Յորդանան չատ լայն չէ, կարի խոր է. և ջրին վաղելն պատյառանելով է. ներքնագոյն կու վազէ, քաղցրահամ, խմելով չես զովանար։ Ի յետ դառնալն՝ երկու տաւշան եւ դէմերնիս, զարկին սպանեցին. երեք էր, մինն դայլ էր՝ փախեաւ. և յետ նորա փաշին քեահիեան անցաւ առաջ ըշտապով. չատըր զարկին ճանապարհին բերանն. նախ ցուէնկն էանց, և ապա հոռոմն ապա թէ մեք. չորս զռուշ մէկ թիւլբն[1] տուք և անցիր։ Դարձեալ եկաք 'ի աեղերնիս կրկին Երիքով. շուտով չատըրն մտաք. վանից չատըրներուն մօտէ միայն մեր չատըրն. ամենեքեան մաթ մնացին՝ թէ այս տեղս այլ թէ տարկըմ՞վ ես։ Եղբայր, չող և տաք որ չեմ կրնար դատմէր. մինչև 'ի յետինք այնչափ ջուր խմեցինք՝ որ աւելու չէ. բայց տաղ ջուր, իսկի ինճիթմիշ չարաւ. այս այն ջուրն է՝ որ Եղիսէ աւրհնեաց։ Ինչ և իցէ՝ երեկոյ եղեւ. չորս կողմէն կրակ տուին հաւըլ հաւըլ կու վառի. և փոքր խօսք լսեցի թէ քեահիեան պիտի չուէ. զերա քօմն տասը քէսէ բառկէն եւել եզև, նորանից կու վախէ. կամ թէ ֆէլլահն պիտի կոխէ. ղասոնք լսեցի կամինց մի, ձան չի հանեցի. գնացի չատըրն աւերիցի. ղուրճին մէջն դրի, միւս կողմն եօրղանն և գետ Յորդանան ջուրն. և հագայ ճիզմէս և նստաք։ Ոմանք ասացին թէ չորրորդում սահաթին կ'ելնեմք. իչտէ այս գիշերն իսկի չի քնացաք մինչև սահաթն հինգն գնաց հեծաք. բայց առաջի գիշերվան պէս նոպէթ չի չալեցին, չորս կողմն կրակն բազմացաւ. քըշեցին այն եաղըն. եկաք դար մի վեր. այնպէս կու քշենք՝ որ գիտես թէ փախ են ձգեր։ Իչտէ այս տեղս զմաթարան այն անիծեալ ֆէլլահն զողցաւ. հարամ լինա։ Հազիւ առաւ անցաք և աղատեցաք 'ի յղոնցն, մինչև 'ի յարեւծագուն եկաք հասաք 'ի Բեթանիեայ. և անտի սորայ գիւղին պատին քովով կու անցանես. ապա Համբարձումն կու երևի, դէպի փրկչի դուռն կանգներ են 'ի մեր միաբանից.

1 Կաշեայ ջրամանն։

1 Երրորդ. մաս։

ձայնեն, թէ այս կողմն եկէք. եայ եղբայր, քաղաքացիք բերդին վերայ ելած նստած, զմեզ թամաշա կ'անեն: Եկաք փրկչի դուան. մէկ մէկ փարան կու տաս մտնես քաղաքն, և գնաս 'ի սուրբ Յակոբ: Բայց զայս ես ծանիք սիրելիք. որ ծաղկազարդէն երկու երեք օր յառաջ՝ գիւղօրէից Արապներ կու գան սուրբ Երուսաղէմ. նոքա այլ ուխտ կ'երթան Հազրէթի Մուսա կ'ըսեն. անդ գնան ութը օր. 'ի մեր գնալն սուրբ Յորդանան՝ նոքա աջ կողմն կու ճկին դէպի Սոդոմ կու գնան. որ յետ դառնալն մեր Յորդանանու հետ՝ պարապար կու գան. նոքա սուրբ աստուածածնայ դռնէն կու մտնեն. 'ի մեր գալն, եղբայր, դեռևս նոքայ չէին եկեալ, զիրա մեք կանուխ շարժեցաք: Այն սուրբ Աստուածածնայ դռանն դրսի դիհն սուրբ Ստեփաննոսի քարկոծման տեղացն վերև մեծ լեառ մի է. անդ նստեալ են քաղաքացւոց տաճկի կանայք. սուտ չի խօսիմք. զիրա հաճի եմք, մինչև երեք հազար կին. առաջին և յետոյն այր մարդ, նոյնպէս համար չի գար. զմեզ և զնոքա թամաշա կ'ընեն. հէմէն մահանա մի կ'ուզեն որ դուրս թափին. այր և կին ծեր և տղայ կերակրով և այլ ամենայն կերպիւ կերպիւ չէյերով, որ այլում տեղ գրեալ կայ. այս այսպէս: Ի մեր գնալն սուրբ Յորդանան. տես թէ միւսեյլիմըն ի՞նչ է արեր. որչափ առուն կայ՝ կու կոխէ, կամ դաւթայ մարգարէին սարայէն քանըրութը հոգի կու հանէ, ընդ ամէնն վատսուն հոգի, որ զինքն պահեալ էր. ձեռք խնկածն հինգ ղուռուշ և կէս առեր. սանկի կոմրիւկէն ըռզակ որ փախցնէ ոմն ձեռք որ անկանի երկու կոմրիւկ կու առնեն. նոյնպէս սոցա չորս ղուռուշ մէկ թիւլթին տեղն. ոմանց վեց ղուռուշ առին, ոմանց հինգ և կէս ղուռուշ: Եայ եղբայր, 'ի ճանապարհին դալն՝ ձիուն վերայ կու քըրտնիս. և այնչափ տաւարին ոտաց հոսմունքն երես 'ի վեր կու գայ՝ որ մօրուք և երեսի վերայ թօղն կու նստի. դու ես փէլլահ կու դառնաս. շուտով օտատ կու գաս լուացվիս և հանգստանաս: Եթէ կամիս մէկ քիչ քնացիր, զիրա քընհատ ես և խոնճած: Այսքան առ այս սուրբ Յորդանանու բաւէ:

Սա որ կայ կամիմք պատմել, պիւրքէն[1] և Դաւթայ մարգարէին պալատն մի ըստ միոջէ:

Յորժամ գնան ըխտաւորքն մտանեն հայր Աբրահամու դուռն, աջ կողմն բաց և խոր, զէթունի ծառք համարք չի գար. պիւրքէ մի մեծ այս կողմն է, և այս պիւրքէին զպատճառն ասեմ ըսկիզբէն: Յորժամ գնաց կոստանդիանոս ունէր հետն զհայրապետն Սեղբեստրոս, և թագաւորն Տրդատ ունէր հետ ըզսուրբ Գրիգոր լուսաւորիչ. ապա վիճակ ձգեցին թէ որն չինէ սուրբ Յարութիւն, կամ որն չինէ զսուրբ Ծնունդն. և ել վիճակ Տրդատու թէ սուրբ Յարութիւնն չինէ. և ապա զմտաւածեալ սուրբ Գրիգոր Լուսաւորիչն և ասաց, որդեակ իմ Տրդատ, պարտ է քեզ ասել կոստանդիանու թէ քո հրամանքդ չինէ զսուրբ Յարութիւնն, քանզի նա մեծ է քան զքեզ. և նա յանձն առեալ գնաց առ կոստանդիանոս և ասաց. Հայր իմ, ինձ չելաւ վիճակն սուրբ Յարութեան. և նա ասաց նմա. քո հրամանքդ չինեա: Եւ յորժամ լուաւ զայս խօսքն ասաց թէ ով եղուր զայս խրատն քեզ. և Տրդատ ասաց հայրն իմ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ. և ասաց թէ բարի: Սոքա ունէին վարպետք հիւսանք. մեծ խորհուրդ արաւ 'ի միտք իւրում, և չինեաց նախ և առաջ զայս մեծ պիւրքէն. քաղաքէն դուրս խոր, և արար ճանապարհ գետնի ներքևէն մինչև քաղաքին մէջն. և անդ ևս չինեաց պիւրքէ մի այլ. դրսի պիւրքէէն ներսի պիւրքէն գայր ջուրն. և անտի չինեաց ճանապարհ սուրբ Յարութեան մէջն փոքր հաւուզ մի. որ վարդապետք և ըաբինչպէրք անտի առնէին զջուրն. բոլոր տարի մի ջուր ժողովեաց. և ամենայն

1 Ջրի համբայ:

իրք պխտոյից հազր առաւ. ապա սկըսաւ հիմն արկանել։

Եւ կամիմք մտանել դուռն քաղաքին. կու իջանես 'ի գրաստէն, և կայ ձախ կողմն պաղչայ մի որ ժամանակաւ բաղանիս է եղեր. և կին Ուրիայի անդ լուացվեր. և աջ կողմն սարայն դաւթայ մարգարէին. և կայ անդ փէնճէրէ մի. անտի տեսաւ զկին Ուրիայի Բերսաբէ, և ցանկացաւ։ Եւ աջ կողմն դառնաս, և է բերդին դուռն. ներս մտնելն երկու կողմն փէքէ. և այս դուռն երկաթ մամուր. այլ ներս կ'երթաս մեծ դուռ մի այլ փայտէ վերան քեավկեր քէմէրով. և աջ կողմն կայ մէրտիվէն մի քանըրութը ոտք, կ'ելանես վեր գըլնաս ճուկ ճանապարհներով. դուռ մի փոքր փայտէ, անդ կայ չորս հինգ օտայ. և մին օտային ճակատն փէնճրէ մի որ կու հայի ճանապարհին վերայ. և աստ նստէր մարգարէն Դաւիթ, և արմունկն փէնճէրէին մէջ տեղն կդնէր, սաղմոս ասէր. և արմնկին տեղն փոսցեր ձեռաց մի ղատար[1]։ Ուխտ արէ և տուր երկու փարան եղի ըստակ։ Ելանես դուրս կայ անդ նեղ մերտիվէն մի տասուերկու ոտք. կ'ելանես վեր փոքր սիրուն չորս քօշէ օտայ մի, ունի երկու տախտակ փէնճէրէ, որ անդ նստեալ քնարիւ զսաղմոսն երգեր է. և այժմուս նօպէթճիք զուռնա տաւուլն անդ չալեն. և իջանելն մէրտիվէնն 'ի վայր՝ կայ անդ չորս թօփ. իջաք գէպ 'ի վար, չատ գնացաք մութ տեղով. և անդ մեծ տեղ մի և մէջ տեղն հոր մի, և տեսաք սախան ջուր քաշեց, և մեք խմեցաք ցուրտ և անուշահամ. և մեզ պատմեց չուրջ ածողն՝ թէ այս ջուրս հայր Աբրահամու կու գայ. եթէ այս քաղքիս ջուրն հատնի՝ սա կու զովացընէ, այնչափ առատ է։ Ելաք անտի գնացաք բանտն, և բացեալ զդուռն ներս մըտաք մութ. և կայր անդ հինգ Քէլլահ ոտքերնին ղատանայ, և վզերնին զէնճիլ հաստ և փայլուն. երկու խաթ է դուռն. ներսի խաթն՝ հաստ փայտ վերան երկաթ զաւիլը, տասնըվեց աչք. և երեք կողմէն հաստ զէնճիլ. և միւս դուռն՝ զուտր երկաթ երեսունըվեց աչք և երեք կողմէն հաստ զէնճիլ. և մինն միւսի վրայ կու կղպէ։ Եւ կայ սորայ քով օտայ մի որ պահապանք անդ նըստին և պառկին. և անտի ելաք 'ի պէտէնն[1]. քանըր չորս ոտք մէրտիվէն. աստ կու կենան տնվորնին. և անտի այլ առաջ կայ նեղ մէրտիւէն մի տասնըչորս ոտք որ այլ վեր կու ելանես, որ չորս կողմն Երուսաղէմի կու տեսանես. և անտի իջաք 'ի վայր և ելաք 'ի դուրս. կայ դռան դիմաց երեք պօյլու թօփ և ղարապա տեղ. և աստ կայ ջուհանկի մեծամեծ օտաներ. անցիր առջեւէ և գնա ուղիղ. ձախ կողմն Թումայի առաքելոյն վանքն որ Քրիստոս աստ ծախեց գնա. և մեծ քէմէր մի՝ որ սեղանատունն սորա վերան է. յառաջ երթաս սուրբ Յակոբայ դռան վերան քէմէր, և մէջ տեղն նօմոս թագաւորական, և դուռն երկաթ մամուր. օրթայ տեղն փոքր դուռ մի անճախ էշ մի առանց բեռ կու մտանէ. և ունի զոց ուխթը. և լիակատարն յայլում տեղ գրեալ կայ։ Եւ յորժամ չինեաց կոստանդիանոս զսուրբ Յարութիւնն. յետ նորա չինեաց զսուրբ Յակոբ և ետուր սուրբ Լուսաւորչի փէշքէշ 'ի պատիւ այնր որ ասաց Տրդատայ, երթ գնա ասա թագաւորին թէ դու չինեա զսուրբ Յարութիւնն. նորա համար պատիւ ետ սուրբ Յակոբ Լուսաւորչի. ամէն։

Կը շարունակուի։

1 Ջափ։

1 Պարիսպ։

# ՍԱՐԴՔ

(Տես երես 200)

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## ՑԻԾԱՂԱԿԱՑ ԲԱՆՔ

### ԺԵ

«Վերջապէս այդ խորհրդաւոր ալքիմիստը ճահճի մը մօտ թողուած խրճիթ մը գտնելով, իր առանձնութեան արշաւանաց կեդրոնը ըրաւ, ու բնակութիւնը հոն հաստատեց։ Մինակ և ամենայն հալածմունքէ ազատ, ամեն օր արեւուն մտնելէն ետքը ընթացքը դէպ 'ի հոն կ'ուղղէր, իբր գանձ մը կրելով իր տուփը, որ անշուշտ հազարումէկ հետաքրքրական առարկաներով լեցուն էր։ Բայց խօսք կը քալէր որ գիշերուան լռութեան մէջ կախարդական բանի մը կը զբաղէր. վասն զի մինչև խոր գիշերը խրճիթին ծակերուն մէջէն կանթեղի մը մշուշ լոյսը կը տեսնուէր հեռուանց։

«Ինչպէս կ'ըլլայ, գիշեր մըն ալ նոյն սովորական լոյսը չտեսնուիր. երկրորդ գիշերը նոյնպիսի խաւար մըն է կը տիրէ փիլիսոփային խրճիթը։ Զարմանքը կը տիրէ ամենուն վրայ. կերպ կերպ մտածութիւններ կը սկսին յաջորդել մէկմէկու ետևէ»։

— Ո՞ գիտէ, կ'ըսէր մէկ մը, գուցէ գուբ մը ինկեր է։

— Ո՛հ, չէ, կ'ըսէր ուրիշ մը, թերևս լուսոյ բոցի մը պէս անհետացեր է. կամ թէ գետինը բացուեր, ողջ ողջ կլլեր է զինքը։

«Խօսակցութեանց ծայրը չէր գար. կերպ կերպ մեկնութիւններ կու տային ալքիմիստին այդպէս յանկարծակի անյայտ ըլլալուն. երբ յանկարծ երրորդ օրը իրիկուան դէմ հովիւ մը անտառոր ճամբէ մը գեղը դառնալով, կը հանդիպի փիլիսոփային, որ ժայռի մը քով խոտին վրայ ինկած կարծես թէ քուն կ'ըլլար։ Սարսափէն ինքիրմէն դուրս ելած, մէկ շնչով կը վազէ, գեղը կը մտնէ ու լուրը կու տայ։

— «Այս Աստուծոյ պատիժ մ'է, ըսին ամենքը։ Երեկուան օդը ամպրոպային խաւարամած էր. անշուշտ կայծակէ մը զարնուած պիտոր ըլլայ։

Բայց որովհետև բազմութեան մէջ միշտ կտրիճներ ալ կը գտնուին, ասոնց քաջասիրտներէն ալ ոմանք մէկմէկու սիրտ տալով, «Երթանք տեսնենք», ըսին, և իսկոյն ճամբայ ելան։

Բայց երբ տեղւոյն մօտ հասեր էին, մութը սկսեր էր կոխել, ճամբան ալ կամաց կամաց դժուարագնաց փոխուիլ, մերթ ընդ մերթ խոտերուն մէջ կորսուելով։ Զորս կողմի տեսարանին վայրենի երևոյթը մէկ կողմանէ, միւս կողմանէ դիւազգեաց սեպուած մարդուն մերձաւորութիւնը՝ սկսաւ սրտերնին ահուդողով լեցընել. թեթև աղմուկ մը, տերևներուն խշրտոցը, հովուն ձայնը, ամեն շարժում միով բանիւ, զիրենք սարսափով կը խռովէր։ Անանկ որ ալ ոչ ոք ուզելով առջևէն երթալ, կը մըտածէին առաջադրութիւնը թողուլ ու ետ դառնալ, երբ յանկարծ առաջնորդ հովիւը կանգ առնելով,

— Ահա հոն է, կանչեց։

«Ամենքը աչքերնին հոն տանելով, տեսան վերջապէս դժոխապարտը, որ քարերուն մէջ խոտերուն վրայ փըռուած, աչուըները գոց, երեսը խաղաղ, ձեռուըները կուրծքին վրայ ծալլած՝ հանդարտաբար քնացող մարդու մը կերպարանքն ունէր. բայց շունչը միայն կը պակսէր։

Գեղացիներէն մէկը փիլիսոփային ձեռքը պղնձէ խողովակ մը տեսնելով,

— Ահա իր մոգական հայելին, կանչեց։

«Ամենքը միակամ մօտ գնացին առարկայն տեսնալու. և ալ աւելի սիրտ ընելով՝ կ'ուզէին այն կարծուած հայելին առնել տանիլ. բայց ոչ ոք կը համարձակէր նախ ձեռք մերձեցնելու։

«Վերջապէս կտրիճ երիտասարդ մը սիրտ ըրաւ,

— Ի՞նչ վախնալու բան կայ, կանչեց. հիմայ ես կ'առնեմ. մարդը արդէն մեռած է։

«Այս ըսելով ծռեցաւ, բռնեց խողովակը և քաշեց որ առնէ։ Բայց կարծես թէ խեղճ ալքիմիստին ալ վերջին մտածութիւնը խողովակը եղած պիտոր ըլլար։ Անանկ ամուր սեղմած էր իր պաղած մատուըներուն մէջ, որ յափըշտակողը խողովակը քաշած ժամանակը՝ դիակն ալ միատեղ քաշեց։

«Միւս ընկերները սկսան ծիծաղ ընել զինքը։

— «Կարելի չէ, կ'ըսէին. չկարենայ պիտի ձեռքէն առնուլ։

— «Պիտոր առնում», կանչեց միւսը. և բոլոր ուժովը մեռելին մատուըները բանալով, «Ահա հոս ձեռքս է» ըսաւ, խողովակը ընկերներուն ցուցընելով։

## ԺԶ

«Մոգական հայելին առին, բայց մութն ալ երթալով կը կոխէր։ Վախնալով որ չըլլայ թէ գիշերը պատէ զիրենք այնպիսի վայրենի տեղ մը, մէկէն ճամբայ ելան գեղը դառնալու, թողլով դիակը անխնամ գտնուած տեղը։

«Գործիքը ձեռքերնին առած՝ ամենքը սկսան զննել. վեր կ'ընէին վար կը դարձընէին, ամեն դի կը նայէին, և ամեն մէկը դիւրին նշանը յայտնի տեսնել կը կարծէր. բայց թէ ի՞նչ բանի կը ծառայէր, ոչ ոք կրնար մեկնութիւնը տալ։

«Երբ յանկարծ ծեր գեղացի մը որ այբուբենի ծանօթութեամբ քիթը սըրբած կ'երևար, քովիններուն ուսով ձեռքով մէկդի հրելով,

— «Ասով է, կանչեց, որ աստեղագէտք աստղերուն մէջ կը կարդան ու կը դուշակեն։

«Ու մէկէն խողովակը ընկերոջը ձեռքէն քաշելով, համարձակ կերպով մը մէկ ծայրը աչքին յարմարցուց, միւս ծայրը դէպ 'ի երկինք ուղղեց։ Բայց ի՞նչ եղաւ իր սարսափը, երբ աստղին վրայ նշան մը տեսնելու՞ տեղ, դիտակին մէջ տեղը խոշոր կենդանի մը տեսաւ, փետրազարդ, ճիրանաւոր և ահագնատես, անանկ որ սատանայ կարծելով՝ ահուդողով մէկդի նետեց գործին։

«Բարեբաղդաբար չփշրուեցաւ. բայց ա՛լ անկէ ետքը ոչ ոք կը համարձակէր անոր ձեռք դպցընելու։ Միայն գեղացի մը աւելի խելքով մտածելով վազեց մերձակայ վանքը կրօնաւոր մը կանչելու, որ կարծուած դևը երդուընցընէ։

«Կրօնաւորը շատ չուշացաւ. բայց անմիջապէս աչքը խորհրդաւոր խողովակին տանելով, զարմացաւ թէ ինչպէս կարելի էր որ անանկ ոչինչ պարզ առարկայ մը կրնար այնչափ վախ ազդել։ Կասկածելով չըլլայ թէ զինքը խաղ ընել կ'ուզէին, կը պատրաստուէր ետ դառնալու. բայց աչքը ուշադրութեամբ չորս դին դարձընելով ու տեսնելով յայտնի ամենուն երեսը տարակուսանաց ու սարսափի նշանները, ինք զինքը բռնեց, ծռեցաւ, գործին ձեռքը առաւ։ Ամենքը լուռ կեցած կը նայէին։ Կրօնաւորը խողովակն աչքին տանելով, դէպ 'ի երկինք նայեցաւ։

«Վերջալուսոյն թողած մթնշաղ լուսովը, խողովակին մէջ արտաքոյ կարգի կենդանի մը տեսնելով, զոր երբեք չէր տեսած, վախնալու տեղ՝ զարմացաւ, ափշեցաւ. վասն զի Ֆիզիգայի օրինաց հմուտ ըլլալով, հասկըցաւ որ այն խորհրդաւոր խողովակը՝ գեղեցիկ դիտակ մը կը բովանդակէր։

«Կրօնաւորը՝ այդպիսի անակնկալ դիպուածի մը հանդիպելով, անհամբերութեամբ մեծաւ կը տագնապէր խողովակին խորհրդոյն ծանօթանալու։ Ջանաց գեղացոց անտեղի երկիւղը հանդարտեցնելու, համոզելով զանոնք որ այն խողովակին խորհրդաւոր կերպարանքը՝ ամենաբնական երևոյթ մըն էր. ու գործիքն առնելով՝ փութաց վանքը դառնալու. սրտին մէջէն համոզուած ըլլալով՝ որ ստացածը ամենահրաշալի գիւտերէն մէկն էր։

«Անմիջապէս սենեակը քաշուելով՝ առջի գործողութիւնն եղաւ մեքենան մեծ ուշադրութեամբ մը քակելու։ Մէջը ամենափոքր սարդ մը գտաւ, որ ապակիներէն մէկէ մը չափաւոր հեռաւորութեամբ յարմարցուած դրուած էր. հասկցաւ իսկոյն թէ ինչպէս ճարտար ու գիտուն յարմարութեամբ մը, համեմատ տեսաքանութեան օրինաց, այն չնչին էակը՝ ահաւոր խեցեմորթի մը կերպարանքն ու մեծութիւնը կըրնար առնուլ։

— «Ահաւասիկ ամենաասքանչելի գիւտերէն մէկը, ըսաւ ինքնիրեն» — ու միւս եղբայրակցաց ձայն տալով՝ պզտիկ սարդին տեսարանին հանդիսակից ըրաւ։

Ա՛լ անկէ ետքը ոչ գիւին և ոչ կախարդին վրայ խօսք եղաւ. բայց իբր փոխարէն այն գիտուն ալքիմիստին, կրօնաւորք քրիստոնէաբար շարժելով, հանդիսաւոր թաղում մը ըրին։ Ցետոյ խրճթին այցելութեան ելլելով, շատ մը գրուածներ գտան, որոնց մէջ կար նաև յիշատակարան մը նկատմամբ այն զգուշութեանց՝ որոնց ուշ պէտք էր դնել աղէկ կերպով մանրադէտ մը շինելու համար։

Բաց ասկէ գտան նաև շատ մը անծանօթ միջատաց պատկերներն, հանդերձ իրենց հետաքրքրական պատմութիւններովը. և մութ անկիւն մը փիլիսոփային բարձին տակ՝ հատորաւոր ձեռագիր մը, տնկոց բնախօսական կազմութեանը վրայօք. որոնց մէջ՝ թէպէտ չփոթ և առանց մասնաւոր կարգի՝ անանկ նախատեսութիւններ կային, որ յետոյ գիտութիւնը ստուգելով ճշմարտեց։»

Հոս քերթողը հանգիստ առաւ, ու մէյմը սեղանին վրայ եղած մանրադէտ գործիքին նայելով,

Կը տեսնե՞ս ուրեմն, ըսաւ ժպտելով, սարդագնին դու, ինչպիսի՜ պարագաներու պարտական ենք այդ սքանչելի գիւտը։ Թերևս բոլորովին լռութեան մէջ թաղուէր, եթէ հովիւ մը իր սովորական ճամբէն խոտորելով, չհանդիպէր փիլիսոփային դիակին՝ անտառին խորերը, խոտերուն մէջ ինկած, ուր թերևս մարդու ոտք չէր կոխած. և եթէ դարձեալ քանի մը գեղացի աւելորդապաշտական հետաքրքրութենէ մը շարժած՝ չյորդորէին անոր տեսութեանը երթալու. և հուսկ յետոյ եթէ գործիքը անանկ հմուտ ձեռաց մէջ չիյնար։ Ո՜ գիտէ որչափ ժամանակ անցնէր պիտի՝ անոր գաղափարը մէկու մը մտքին մէջ ծնանելէն յառաջ։

— Իրաւցնէ, պատասխանեցի, որ այդ գիւտին պատմութիւնը որչափ առասպելական կ'երևայ, նոյնչափ ալ բնական ծագման մը հետևանքին բացատրութիւնն է։ Բայց ինչպէս ալ հնարուած ըլլայ, ճշմարիտ է որ ուսեալ կրօնաւորի մը ձեռքէն անցեր է, անոր պարտական ենք եթէ կանուխ հրատարակուելով՝ այսչափ կատարելագործութեան հասած է հիմայ։

— Ստոյգ է որ այնպիսի հրաշալի գիւտի մը հռչակը լռել չէր կրնար, պատասխանեց քերթողը։ Քիչ ատենուան մէջ Եւրոպայի ամեն կողմը տարածուելով, այն ամեն գիտնականք որ այնքան զարմանալեաց դժուարահաւատ կ'ըլլային, կրօնաւորաց աբբայարանը կը փութային, լսածնին աչքով ալ ստուգելու համար։ Հմուտ մեքենանագէտք աճապարելով՝ օրինակեցին զայն, և ամեն դի ցրուեցին, և հետզհետէ կատարելագործուելով՝ գործածութիւնը դիւրինցաւ։ Համբերող գըլուխներ իրենց մտածութեանց միջոց առնելով զայն, սկսան էակաց պատմութեան մթին կէտերուն մէջ լոյս ծագել։ Գիւտէ գիւտ անցնելով մտքերնին խրախոյս առաւ. սկսան մեծագունին ձեռք զարնել. հիւլէին քննութիւնը, կենաց սկզբնատարրը։ Բայց այն կէտին վրայ խաւարը՝ ամենասուր միտքն ալ կը պատէ։ Կարելի է ըսել — «ցայս վայր կեանքը կը ձգի, անկէց անդին բան չկայ։ — » Մտաց պարտանք, մոլար հետևութիւն։»

Այս ըսելով քերթողը ելաւ մեկնե-

ցաւ առանց պատասխանի մը սպասելու. մինչդեռ ես ապշած կեցած էի իր այս յետին խօսքերուն վրայ, որոնցմով համախոհ և ծանօթ կը ցուցընէր ինքզինքը իմ մտածութեանցս։

## ԺԷ

Երբ առանձին եղայ, նօտայ լամծներս և դիտողութիւններս նշանելու, բացի բնապատմական գիրք մը ուր համառօտ կերպով մը այսպէս կը ստորագրէր զսարդը։

« Սարդին գլխալանջքը մէկհատիկ կտորէ բաղկացեալ է, և կլորաձև կամ ձուաձև որովայնին կարճ կանթիկով մը կը յարի։ — Աչուըները թուով վեց են կամ ութ։ — Ծնօտիկները անմիջապէս ճակտին վրայ տնկուած են, և շարժուն ու սրածայր կեռով մը կը վերջանան, որուն ծայրը ճեղք մը կայ՝ ուսկից թոյնը կը կաթի, որ նախընթաց յօդին մէջ գտնուող գեղձիկ մը կը թորէ։ Ասոնցմէ զատ ուրիշ զոյգ մը ծնօտք ալ կան և մէկ շրթունք մը։ Ծնօտիկներուն քովէն մէյմէկ շօշափուկ կ՚ելլէ, որ ոտից նման են։ Իգին շօշափուկները ճիրանակերպ կը վերջանան. իսկ արուինները՝ տարբերութիւն մ՚ունին ծայրերնին, ուռած են ու խրթին կազմութիւն մը կ՚երևցնեն։ Թաթերը՝ գրեթէ բոլորշի ձևով գլխալանջքին չորս դին տնկուած են։ Թուով ութ են և ամէնը մի և նոյն ձևով. եօթը յօդուած բաժնուած են, ու երկու աղեղնաձև կեռով կը վերջանան, որ սանտրակերպ ակռաներ ունի։ »

## ԺԸ

Այս ամէնը ստուգիւ իմ դիտողութեանցս համեմատ էր. բայց շօշափուկներուն դիտողութիւնը քննութեանցս մէջ լոյս կը ծագէր։

Համանման անշնչացեալ սարդիս՝ ուրիշ մ՚ալ գտեր գաւաթիկի մը տակ փակեր էի. բայց մարմնով՝ աւելի նազիկ քան զառաջինը, փոքրով՝ աւելի վայելուչ, շարժմամբք՝ աւելի ճկուն։ Ցուել ասոնց վրայ շօշափուկներու տարբերութիւն մը՝ որ զիս կը շփոթեցընէր։

Արդեօք այս ալ առջինին համարնակից տնէ՞ն է. արդեօք երկուքն ալ մի և նոյն կարգի զուգահաւասար դասելու է։ Մարմնոյն գոյնը, կազմութիւնը, երևոյթը, այս ըսել կու տային ինծի. միայն շօշափուկները դէմ կ՚ելլէին. ասոնց այլազան վերջաւորութիւնը աւելի կարճի շօշափուկներու նմանութիւն մ՚ունէր։ Հարկ էր քննել. հարկ էր ստուգագոյն տեղեկութիւններ փընտռել. և ահա այդ տեղեկութիւնը և լոյսը՝ համառօտաբար կը նշանակէր բնապատմիչ մը։

Մէյմը ստուգելէն ետքը որ երկրորդ բանտարկեալս առջինին արուն էր, ուզեցի անոր շօշափուկներուն ձևը դիտել մանրադիտով։ Կտրել շօշափուկներէն մէկը ու գործիքին վառարանը անցընել՝ անհրաժեշտ գործողութիւն մ՚էր. բայց կենդանին ողջ և աշխոյժ ըլլալով՝ դիւրին չէր ատանկ գործողութիւն մը ընել, առանց անոր կենաց վնաս մը հասցընելու։

Այն ատեն զգացի ճարտար ձեռքի մը յարգն ինչ ըլլալը, և թէ ինչ աստիճանի հարկաւոր բան է ուսուցչի մը համար կտրիճ պատրաստող մը ունենալը. որուն պաշտօնն է դիտողութեան առարկաները կտրել, կարգել, պատրաստել։ Այսպիսի պատրաստողի մը վարպետութենէն կախում ունին ճիշդ և աղէկ դիտողութիւններ։ Ինչուան որ մէկը աղէկ վարժ չըլլայ, դիւրին չէ անդամի մը մէջէն ջիղը ողջ և անարատ դուրս հանել, մերկացնելով զայն ամէն երկրորդական մասերէ. դիւրին չէ ըղեղը բանալ, մաշկը վերցընել, ծալքերը քակել, կենաց ծայրը հանիլ, և այնպէս զուտ և անխառն՝ աշակերտաց առջին դնել, որ որոշ դիտեն և ստոյգ չափեն. մանաւանդ այն ենթակայից վրայ, որոց թանձրացեալը՝ մեծ և ստուար, այլ հայեցողականը՝ անստոյգ և անորոշ է։

Բարեբաղդաբար պայմանս այս առ-տիճանի ճարտարութիւն չէր պահան-ջեր. որով դարմանը շուտով գտնուե-ցաւ: Մեքենագէտ մը ճամբէն խոստո-վանելով սենեակս մտաւ:

— Բարեբաղդ վայրկեան, ըսի, յար-մարագոյն դէպք մը չէր կրնար ձեր այցելութիւնը աւելի փափաքելի ը-նել:

— Ի՞նչ է այդ բարեբաղդութեան պատճառը, կանչեց զարմանալով, որ այցելութիւնս փափաքելի կ'ընէ:

— Պարզ խնդիր մը. թեթեւ, ճար-տար և զգոյշ ձեռքի մը պէտք ունիմ. և այդ 'ի ձեռ կրնամ գտնել, կը յու-սամ:

— Ես սիրով պատրաստ եմ. եթէ ընելու գործողութիւնը կարողութենէս վեր չէ:

— Ստոյգ որ դիւրին բան մըն է ը-նելիքը իմ ձեռնտուութեամբս հան-դերձ:

— Ի՞նչ է ուրեմն:

— Պզտի կենդանւոյ մը անդամներէն մէկը կտրել. բայց անանկ զգուշու-թեամբ որ փափուկ մարմինը չվնա-սուի:

Ծիծաղեցաւ, կարծելով որ զինքը խաղ ընել կ'ուզէի:

— Իրաւցընէ. — կատակ կը խօսիս, ըսաւ:

— Այո, պատասխանեցի. մտքս ծիծաղ ընել չէ:

— Բայց չես գիտեր որ ոչ վիրաբոյժ եղած եմ և ոչ ալ սպանդանոցի ծա-ռայած:

— Ջերթանք այնչափ հեռու. ահա ուղածս սա կենդանւոյն չօշափուկնե-րէն մէկը կտրելն է, ըսի, սարդը ցուցը-նելով. կը տեսնէք որ դիւրին գործո-ղութիւն մըն է, բայց զգուշութեամբ ընելու, ենթակային նազիկութեանը պատճառաւ:

— Ծիծաղս կը շարժես, ըսաւ խըն-դալով, աստանկ չնչին բաներու իմնալ ի՞նչ վախճան ունիս:

— Ամենապարզ վախճան մը, գիտո-ղութիւնը:

— Ի՞նչ բանի կրնայ ծառայել այս գիտողութիւնը:

— Պատճառը պարզ է, ըսի, բայց պատմելու երկայն: Միւս կողմանէ մի և նոյն համգամանաց մէջ ենք: Մեքե-նագէտ մը մետաղի կտորներու կոյտի մը յարմարութիւնը կը քննէ, որ ան-շունչ զսպանակով մը կը շարժի, կը քալէ, կը կարդէ և կը զբօսնու: Ես բնական մեքենայի մը անիւները կը զննեմ, որ դերագոյն արուեստաւոր մը հնարած է, և անտես զսպանակի մը զօրութեամբը կը շարժի. չունիմ և ես իրաւունք նոյն զբօսանքը զգալու:»

Երեսս նայեցաւ ուշադրութեամբ մեքենագէտը.

— Ճշմարիտ է ըսածդ, պատասխա-նեց. մի միայն իրական մեքենագէտը բնութիւնն է. մարդ իր դիւտից մէջ անոր օրէնքները կ'օրինակէ. և անոնց քննութեամբը իր վրիպանքները կ'ուղ-ղէ: ինչ որ գիտենք, անոր առաջնոր-դութեամբն է որ սորվեր ենք: Բայց հիմայ ինչո՞վ կրնամ ծառայութիւն մը ընել քեզի:

— Օգնութեան ձեռք մը տալով, ըսի:

Ու գաւաթիկը ձեռքս առնելով՝ սարդը ցուցուցի իրեն, որ հանդարտած կարծես թէ զմեզ կը դիտէր:

— Կը տեսնէք, ըսի, այս ոտուընե-րուն առաջին զոյգը:

— Աղէկ կը տեսնեմ:

— Շօշափուկ ըսուած գործարան-ներն են, որ շօշափելու գործի կը զոր-ցուին:

— Եւ իբր ձեռք կը ծառայեն ուրեմն:

— Այո, ըսի. բայց նաև ուրիշ բա-նի ալ որոշեալ են: Եւ որովհետև դի-տողութիւնս այս մասին համար է, կ'ուզեմ ասոնցմէ մէկը կտրել մանրա-դիտով զննելու համար:

— Շատ աղէկ, հասկըցայ. կ'ուզես որ կտրելու օգնեմ քեզի:

— Եթէ ծանրութիւն մը չէ, կը փա-փաքիմ:»

Այս ըսելով, գաւաթիկը բացինք. բայց հազիւ թէ կենդանին ազատ օդը զգաց, սկսաւ թաթից արագութիւնը

փնտռել։ Նու եթէ չաճապարէի նորէն գաւաթիկին տակը ամփոփելու, անշուշտ մեքենագէտս պարապ տեղ աշխատութիւնը յանձն առած կ'ըլլար։

Այդ կերպով գործողութիւնը կատարելը դժուարին էր։ Բայց յանկարծ միտքս գալով անոր կեղծաւոր բնութիւնը, մէկէն գաւաթիկը ամուր մը շարժեցի։ Սարդը սարսափած, իբր անշունչ դիակ ճերմակ թղթին վրայ փըռուեցաւ։ Բացի շուտ մը գաւաթիկը, ու գրչի մը ծայրովը թեթև մը անոր մարմինը ճնշելով, մեքենագէտը՝ մկրատը ձեռքը պատրաստ, կտրեց շօշափուկը, մինչդեռ սարդը տագնապողական շարժմունքներով փախուստ կը փնտռէր։ Րոպէ մը ետքը նորէն գաւաթիկը անոր ամեն փախուստը կը խափանէր։

ԺԹ

Շօշափուկը մանրադիտակիս վառարանը անցուցի։ ի՞նչ տարբեր տեսարան ներկայացուց ինծի. մտածեցէք մանրագոյն գնդասեղի մը գլուխը՝ երեքհարիւր անգամ խոշորցուցած. ահաւասիկ տեսարանիս մեծութիւնը։ Բայց անոր կազմուածքին բացատրութիւնը որչափ ալ խօսքով ուզենանք տալ, կարելի չէ ականատես աչքի հասկըցողութեանը հասնիլ։ Ընդհանրապէս երևոյթը կարճի մը աքցանակերպ շօշափուկին վերջաւորութեանը կը նմանէր։

Շօշափուկին վերջի յօդուածին արմատէն՝ ուռած մարմին մը կը բուսնի, որ իր ձևին պատճառաւ՝ կատարեալ տանձի մը նմանութիւնը կը բերէ։ Իր խարսխովը, կամ թանձր կողմովը ըսեմ, յօդուածին մօտ կողմնակի կպած ըլլալով, կը նեղնայ, կը նրբանայ, մինչև վայելուչ ծռութիւն մը առնելով՝ ինչպէս չ'ի մը գլուխը կը վերջանայ։ Մինչդեռ բոլոր շօշափուկը խիտ սանտրով մը ծածկուած է, այս ուռոյցը բոլորովին լերկ ու փայլուն է։

Այսպիսի երևոյթ մը կ'երևցնէ մանրագիտով արու սարդի մը շօշափուկին վերջաւորութիւնը։

Ասկէ ետքը առի իգինը դիտելու. լերկ ուռոյցը վրան չգտայ. բայց շօշափուկին ծայրը եղջերեայ ամուր կեռ մը նշմարեցի։

Հիմայ այս երկու դիտողութիւնները միացնելով՝ հետևանքն այս է.

Իգին շօշափուկը իբր շօշափելու գործարան կը ծառայէ։

Արուին շօշափուկին մէկ մասը իբր շօշափող կը ծառայէ, իսկ միւս լերկ ուռոյցը՝ է անոր զուգաւորութեան գործարանը։

Ի

Լմնցուցի այս դիտողութիւններս. բայց որովայնին ալ ուզելով արտաքին ընդհանուր հայեցուածք մը տալ, առի առձեռն ոսպնաձև մը։ Դիտեցի ու տեսայ որ այն ձուաձև որովայնը փշակերպ մազով մը ծածկուած էր։ Կռնակին վրայ պառկեցնելով, գլխալանջքին հետ յարող գծին մօտ՝ երկու կողմը, երկու կլորաձև դեղնագոյն ուռոյցներ տեսայ, որ աւելի շարաւալից փշտիկներու կը նմանին։

Ասոնք երկու հատիկ թոք են, շնչելու գործարանք, որոնք մէյմէկ անցք ունին, օդն ընդունելու համար. և այս յատկութեանս պատճառաւն է որ սարդք՝ թոքաւորք կը կոչուին։

Ցետին դիտողութեանց նայելով, Սէժէսդրի ըսուած սարդերը ոչ միայն թոքով, այլ և միջատաց պէս խռչակներով ալ կը շնչեն։ Մինչդեռ երկու անցքը՝ օդը թոքոց մէջ կը տանին, ուրիշ երկու անցք ալ կայ՝ որ նոյնը խռչակներու մէջ կը մտցընեն։

Ասկէ զատ որովայնին ծայրը կենդանւոյն սրբանը կայ, և մէյմ՚ ալ անոր անմիջապէս մօտ, սարդին գործատունը կամ թելհան գործարանները։

Այս է արտաքինն Արաքնէ։

## ԻԱ

Հոս կը թողում զքեզ՝ անդամատեալդ Արաքնէ․ կը յանձնեմ զքեզ այն ճակատագրին՝ որուն ենթարկեալ են ամենայն էակք։ Դու յառաջեցիր՝ ՚ի Հարկէ կամ բռնութեամբ, և այլք քեզի պիտի հետևին կամաւ կամ ակամայ։ Շրջան մ՚ է, որուն սկիզբը և վերջը՝ մի և նոյն կէտին վրայ կը յանգի։

Բայց անոնք որ ետևէդ թողուցիր, ծեր կը բնակին և ինչով կը զբօսնուն։

Հ. Յ. Վ. ԻՍԱՎԵՐԴԵՆՑ

Կը շարունակուի:

---

## ՄԱՐԴԱԲԱՆՈՒԹԻՒՆ

### Մարդն ու անոր բռնած տեղին արարչութեան մէջ։

Ըստ կարծեաց Հենրիկոս Պլէնվիլ անուանի բնապատմին՝ կենդանական թագաւորութեանց բնական պատմութիւնը վախճան մը չունենար եթէ իմաստասիրութեան հիմունք չըլլայ, վասն զի բնապատմութիւնն հին կենդանաբանութեան[1] անուամբ հողագրնտիս պատմութեան կարևոր տարերքը կը ցուցընէ, բնախօսութեան անուամբ կենսակիր էակաց ծագման և զանազան կարողութեանցը կը պարապի։ Այս հանգամանեաց նկատմամբ բնական պատմութիւն էապէս իմաստասիրական գիտութիւն մըն է վերոյիշեալ բնագիտին փափաքանացն համեմատ. բայց անոր կարծիքը ճշմարիտ է մանաւանդ բնապատմութեան այն մասին համար, որ առարկայ ունի զմարդս, և կը կոչի մարդաբանութիւն[2]։

Մարդաբանութիւնը փակուած դաշտ կը նմանի, որուն մէջ փիլիսոփայական վարդապետութիւնները կը մարտընչին։ Գիտութեանս եռևէ եղողներէն ոմանք՝ բանականութեան՝ զգայարանաց միջոցաւ ստացածէն աւելի ուրիշ բան չեն շնորհեր, և մարդս իբր պարզ կենդանի մը կը նկատեն. ահա այսպէս է բնախօսական վարդապետութիւնն որ մարդուս գործարանաւորութեան նկարագիրը պատճառ բերելով, անոր որոշիչ կարողութիւնքը իբրև արդասիք մը կը սեպէ գործունեայ գործարանաւորութեանը։

Ընդհակառակն փիլիսոփայական վարդապետութիւնն մանաւանդ պէս մարդուս միաւորական կարողութեանցը կը դիմէ, անոր կարողութիւնքը, այսինքն բացարձակապէս նոր յատկութեանց էութիւնք կը հաստատէ, մարդս յանասնոց կը զատէ անոր նախատիպերը[1] ցեղապետութեան[2] բարձրացընելու համար։

Այս վերջինս վսեմ գաղափար մըն է անշուշտ, և իսկզբան կրնայ միտքը յափշտակել. սակայն անոր վտանգները մեծ են բնապատմութեան մէջ, վասն զի աւելի ներքին զգացմունքէ առաջ եկած է քան թէ իրաց դիտողութենէն։ Բնախօսք իրաւամբ այս վարդապետութեանս բազմաթիւ ընդդիմագրութիւններ առաջ կը բերեն։

Մարդս իր ներքին գործարանաւորութեամբը և անճման եղանակաւը կատարեալ կենդանի մըն է, ողնաւոր կենդանի. կը ծնի և կը մեռնի միւս կենդանեաց պէս. դարձեալ անոնց պէս կը սնանի և իր ներքին գործարանաւորութեան ձևով ողնաւոր կենդանեաց հիմնական պայմանքը կը վերարտադրէ. ուրեմն մարդս ողնաւոր կենդանի մըն է։ Բայց այս խմբիս մէջ աւելի կաթընտուաց կը մերձենայ, և իր անճման ամեն պարագաներով միեղբայր կաթընտու[3] է։ Այս բանս տարակոյս չի վերցըներ, երբ կը տեսնենք մարդուս վրայ հերքը, կաթնային ան-

1 Գղ. Paléontologie.
2 Գղ. Anthropologie.

1 Գղ. Tipe.
2 Գղ. Règne.
3 Գղ. Mammifère mono delphe.

ջատումը[1] իր մասնաւոր գեղձերովը, ջղային և տեղափոխութեան կազմարանաց տրամադրութիւնը, որ զկաթնասուն կենդանիքը կ՚որոշէ։

Բայց մարդս միեղբայր կաթընտու մը չէ․ Լիննէոսի կարծեաց համեմատ առաջնականաց[2] գլխաւորն է։ Արդի անդամազննիկք առաջնականաց կարգը տարօրինակ կերպով համառօտեցին կապկաց կարգ մը ձևացընելով միայն, որուն մէջ Լիննէոս մարդս, կապիկը, մաքինները և չղջիկանքը կը դասէր։ Արդ ըստ կարծեաց Հեգքսլի անգղիացի երևելի բնագիտին, մարդն իրանկութանի, շիմբանզէի և մեծ կորիլի աւելի կը նմանի, քան թէ այս վերջինները սաքաժուշից և հարաւային Ամերիկոյ մազլաւոր պզտի կապկաց։ Մարդոյ և կապկի մէջ այս բաղդատութիւնը ռամիկն ալ ինքնիրեն բնականապէս կ՚ընէ, և այս նմանութիւնը այնպէս կը տեսնէ, որ մարդանձև կապիկները իրեն համար անտառային մարդիկ են։ Հանոն կարքեդոնացի ամիրապետին ընկերներն մեծ կապկի էգեր բռնելով, վայրի կանանց տեղ կը դնէին զանոնք։ Իրանկ բառն մարդ կը նշանակէ․ ուստի Պօրի տը Սէն-Վէնսան բնագէտն նոյն կապիկը մարդու տեղ դնելու կը հակամիտէր, թէպէտ և զայն ինչպէս որ պէտք է չէր ճանչնար։

Այս ընդդիմախօսքը հերքելու համար, նախ հարկ է անոնց կարծեաց մէջ եղած ճշմարտութիւնները ընդունինք, և կերպով մը մենք մեզմէ իրենց զէնքեր տանք․ վասն զի զինուք կ՚ուզենք զանոնք հերքել և յաղթել։ Խնդրոյն նիւթական կէտը եթէ միայն նկատելու ըլլանք, ճշմարիտ է թէ մարդս շատ հանգամանօք կապկի կը նմանի, ինչպէս որ պիտի ապացուցանենք։

Արտաքին ձևոյն վրայ չենք խօսիր որ երկու խմբին մէջ ալ յայտնապէս նման է իր մեծ գծերովը։ Բայց մարդուս կմախքը կապկաց կմախքին հետ շատ յարաբերութիւններ ունի, և այս նմանութիւնը կը շարունակուի դարձեալ որովայնային գործարանաց, արիւնային անօթոց, զգայարանաց գործարաններուն և ատամնային դրութեան մէջ։ Ուղեղային գործարանաւորութեան վրայ եղած արդի հետազօտութիւնները նոյն հետևանքը կը ցուցընեն․ ապացուցուած է դարձեալ թէ մարդն կապիկներու շատ կը մօտենայ, աւելի ևս բացարձակապէս անոնց կը նմանի․ այնպէս որ եթէ օր մը կաթընտու կենդանիքն իրենց ուղեղին ուսմամբը դասաւորելու ըլլուին, այսինքն կենդանական դերագոյն գործարանին համեմատ, առաջնականաց խումբը (մարդս և կապիկները բովանդակելով) միեղբայր կաթընտուաց բաժանման մէջ ստորադաս աստիճանի մը բարձրացընելը հարկաւոր պիտի ըլլայ։

Անդամազննական քանի մը տեղեկութիւններ կարևոր են այս ներքին յարաբերութիւնքն ըմբռնելու համար, և որոնց կարևորութիւնն առաջ երթալով պիտի յայտնուի։

Ողնաւոր կենդանեաց, որով և կաթընտուաց վրայ, ջիղք բունի մը կը հասնին, որ միջնողային ծուծ[1] կը կոչուի։ Այս բունը գանկին մէջ կը թափանցէ, ուր չորս ջղային նոր զանգուածներով կ՚աւելնայ, որոնք ներսէն դէպ 'ի առաջև իրարու կը յաջորդեն, և են փոքրուղեղը[2], տեսողական բլթակներն[3], հոտոտելեաց բլթակներն[4], և ասոնցմէ վեր, այսինքն տեսողական և հոտոտելեաց բլթակներուն մէջտեղը, ուղեղին երկու կիսագնտերը[5]։ Փոքրուղեղն իմացականութեան գործարան մը չէ, այլ ինքնաշարժ մեքենային շարժմունքները կը կառավարէ․ սքանչելի կարգադրութիւն, վասն զի եթէ իմացականութիւնը մարմնոյն կատարած ամեն շարժմանցը շարունակ ուշադրու-

1 Գղ․ Sécrétion lacteé.
2 Գղ․ Primates.

1 Գղ․ Moelle épinière.
2 Գղ․ Cervelet.
3 Գղ․ Lobes optiques.
4 Գղ․ Lobes olfactifs.
5 Գղ․ Hémisphères.

թիւն գտնելու ըլլար, ժամանակ չէր ունենար գլխեցիկը տեսնելու և ճշմարտին ետևէն երթալու։ փոքրուղեղը, այսինքն շարժմանց կարգաւորիչ գործարանն, լսողական ջղին հետ ներքին յարաբերութիւններ ունի։ Տեսողական բլթակները մեքենական շարժմանց կեդրոններ են և տեսողութեան ջղին հետ ուղղակի յարաբերութիւններ ունին, և մարմնոյն կ'առաջնորդեն լուսոյ ազդեցութեանց միջոցաւ։ Հոտոտելեաց բլթակներն հոտոտելու և թերևս ճաշակելու զգայարանաց հետ յարաբերութիւն ունին։ Բայց ուղեղն ամեն բանի հետ յարաբերութիւն ունի. ներդաշնակութեան պայմանն է. մեծ խորհրդականութեան որանն է, եւէքէն բժշկին բատծին պէս, և կամ Մալբրկիի բանաստեղծական և աւելի ճիշդ բացատրութեամբը՝ տաճար մըն է ուր Աստուած կը բնակի։

Կապիկներէ վերջը եղող միևոյնայր կաթընտուաց ամենուն վրայ ուղեղը դէպ 'ի ետև երկընցնելով՝ տեսողական բլթակները՝ կը ծածկէ, բայց փոքրուղեղը ազատ կը թողու. Հոտոտելեաց բլթակները շատ մեծ են, բաց 'ի քանի մի պարագայութենէ, որոնք աւելի կամ նուազ ջրային բնակութեան պատշաճական են. տարածոյնին երբեմն ուղեղին տարածոյին կը հաւասարի։ Ուղեղին երկու կիսագնտերը մէկմէկէ բաժնուած են, և իւրաքանչիւրն իրեն ներսի դին կէս լուսնոյ ձևով խոռոչ մը կը պարունակէ, որ կողմնաձիգ խոռոչ[1] կ'ըսուի. այս խոռոչն երբեք երկայնաձգութիւն կամ յետնակողմեան եղջիւր[2] մը չունի։ Ուղեղին երկու կիսագնտերէն դարձեալ ջղային միջանկեալ թել մը կ'անցնի, զոր անզամանգնեն [?] առաջնակողմեան յօդէ[3] անուամբ կը ճանչնան։ Այս յօդս ուղեղին առաջնակողմեան բլթակաց հետ անհաստատ յարաբերութիւններ ունի, այլ գրեթէ բոլորովին հոտոտելեաց

1 Գդ. Ventricule latéral.
2 Գդ. Corne postérieure.
3 Գդ. Commissure antérieure.

բլթակներուն մէջ կը ցրուի և անոնց հետ կ'աճի և կ'աներևութանայ։ Ահա այսպէս կենդրին որոնք ծովուն մակերևութին ջուրը փրփրացընելով հասարակութիւն կ'ընեն, հոտոտելու բլթակը և առաջնակողմեան յօդը ունին. իսկ այս միսանց երկուքն ալ կ'աներևութանան դլփիններուն վրայ, որոնք ջրերու տակ որսերնին կը փնտռեն, այսինքն այնպիսի միջավայրի մէջ, ուր կաթընտու կենդանին չկրնար շնչել։ Վերջապէս տեսողական ջղերն ուղղակի յարաբերութիւն մը չունին ուղեղին հետ, այլ. ինչպէս որ կը տեսնուի՝ մեքենական շարժման կեդրոնի մը մէջ կ'երթան, որք են տեսողական բլթակները։ Այս դրութիւնս կապիկներէն վար եղող ամեն կաթընտու կենդանեաց վրայ կը գտնուի առանց զարտուղութեան, այլ կապկացը կը զարտուղի. առանց ուղեղային ուրիշ նախապատկեր մը կ'ընծայեն։

Եւ իրաւցընէ կապկաց ուղեղը դէպ 'ի ետև երկընցնելով փոքրուղեղին վըրայ, զայն բոլորովին կը ծածկէ։ Հոտոտելեաց բլթակները նուրբ խուրձի մը վերածուած են, բայց այս տեսակ վերածումը շրջապատող միջավայրէն առաջ չիգար, վասն զի կապիկներն ամենն ալ օդային կենդանիներ են։ կողմնաձիգ խոռոչներուն մէջ մեծ յետնակողմեան եղջիւր մը կայ, որ կիսագնտից յետնակողմեան բլթակաց ամբողջ ներսի դին կը գրաւէ. իսկ առաջնակողմեան յօդն հոտոտելեաց բլթակաց հետ ամենևին յարաբերութիւն չունի, ուղեղին յետնակողմեան բլթակաց մէջ ամբողջապէս կը ցրուի։ Վերջապէս տեսողական ջիղն, որ միւս կաթընտուաց վրայ մեքենական շարժման կեդրոնի մը մէջ, այսինքն տեսողական բլթակաց կ'երթար, այս բլթակաց միայն նուրբ արմատ մը կը ղրկէ, և գրեթէ ամբողջապէս ուղեղային կիսագնտից մէջ կը տարածուի, այսինքն իմացականութեան գործարանաց մէջ։

Այս վերոյիշեալ գիւրապատրելի [?] իրերը ճշգրիտ նշանակութիւն մը ունին.

հոտոտելիքը առաջին նախապատկերին մէջ բացայայտ կը տեսնեն, երկրորդին մէջ կապկաց վրայ լուսոյ հանգամանքը կ'իշխէ. առաջինքն՝ հոտառու կենդանիք են, երկրորդքը՝ լուսատես կենդանիք։

Մարդս իր ուղեղային գործարանաւորութեան ընդհանուր գծագրութիւնը բոլորովին կապկաց կը մերձենայ։ Ուղեղը դէպ 'ի ետև երկննալով փոքրուղեղը ամբողջապէս կը ծածկէ և շատ անգամ զայն կ'անցնի։ Հոտոտելեաց բլթակքը միայն գծագրուած են և կապկաց նոյն բլթակներէն ալ աւելի փոքրկացած. կողմնաձիգ խոռոչն ունի իր յետնակողմեան եղջիւրը, որ կապկաց եղջիւրէն աւելի նեղ է. առաջնակողմեան յօդն հոտոտելեաց բլթակներուն հետ ամենևին յարաբերութիւն չունի, այլ ամբողջապէս ուղեղին յետնակողմեան բլթակաց մէջ կը տարածուի։ Վերջապէս տեսողութեան ջիղը տեսողական բլթակաց ամենանուրբ արմատ մը կ'արձակէ և բազմաթիւ արմատք ուղեղային կիսագնտից ներքևը կը տարածուի։

Ուրեմն մարդուս գանկին գործարանքը կապկաց նոյն գործարանաց հետ նախապատկերական նմանութիւն մը կը ցուցընեն, և այս նմանութիւնս անհողորդական է. մարդս միայն կապկին կը նմանի և կապիկէ ուրիշ կենդանւոյ չնմանիր։

Այս նմանաձևութիւնքը դեռ կրնանք շարունակել. մարդուս ուղեղին մակերևոյթը ծալլուած է, և ծալքերը կամ պտոյտքն հաստատուն կարգաւ շարք մը ունին. նոյն կարգն է կապկաց համար ալ, բաց 'ի քանի մը մանրամասնական տարբերութեանց, որոնք ընդհանուր կարգադրութիւնը չեն այլափոխեր։

Համեմատական անդամազննութիւնը կը ցուցընէ մեզի այս նմանաձևութիւնքը. ամեն տարբերութիւնք երկրորդական նկարագրաց վրայ կը տեսնուին, ինչպէս տարածոցի, մասանց կցորդութեան և փոխադարձ համեմատութեանց. բայց այս տարբերութիւնքը կերպով մ' ալ նախապատկերին միութիւնը չեն այլայլեր, տեսանելի և անժխտելի իրերով ապացուցուած են, զորոնք ուրանալը յայտնի բաները մերժել ըսել է։

Ահա այս իրերս են որ բնախօսական վարդապետութիւնն առաջ կը բերէ, որոնք ճշմարիտ են. բաղդատութիւնները ինչուան վերջի սահմանը հասուցինք. դարձեալ կը կրկնենք՝ առաջ բերուած իրերը ճշմարիտ են, բայց արդեօք ամբողջ ճշմարտութիւնն անոնց վրայ կայացած է։ Նմանութիւնները աչքերնուս առջև կը դնեն, այլ տարբերութիւններ ալ կան զորոնք չեն խոստովանիր։ Արդ անկատար և կրճատուած ճշմարտութիւնը մերձակայ է մոլորութեան։

Բնական պատմութեան օրէնքն է՝ առանց զարտուղութեան թէ նմանք նման եղանակաւ կը զարգանան. տեսակաց աճման կարգը մի և նոյն բնական ազգի մէջ՝ սաղմնական աճման կարգին համաձայն կերպով կ'ըլլայ։ այս օրէնքիս դէմ ամենայն զարտուղութիւն առանց օրինակի անկանոնութիւն մը կը կացուցանէ և կամ ըսենք ճշմարիտ հրաշալիք մը. արդ այս հրաշալիքը մարդով կը կատարուի։

Վերագոյն յայտնեցինք թէ չափահաս մարդոյ ուղեղը կապկի ուղեղին նման է, և սակայն զանազան նկատմամբք բոլորովին տարբեր եղանակաւ կը զարգանայ. զոր օրինակ, կապկաց ուղեղին ծալքերն նախ ստորին բլթակաց վրայ կը տեսնուին և վերջէն ճակատու բլթակաց. ընդ հակառակն մարդուս ճակատու ծալքերն առաջ կը գծագրուին, յետոյ ստորին ծալքերը. որով սաղմնական կենաց ժամանակ տարբերութիւններ առաջ կու գան, և մարդս այս նկատմամբ իբր անլուծանելի զարտուղութիւն մը կ'երևնայ։ Ահա այսպէս բնաւ տեսեն մը մարդկային ուղեղն՝ որ նման է ըստ իւր նախապատկերին կապկի ուղեղին, կապկի ուղեղ չէ. ընդհանուր օրէնքէն կը խոտորի։

նիւթական մարդով ոչ ցեղապետութիւն մը, ոչ ճիւղաւորութիւն[1], ոչ դաս, ոչ կարգ և ոչ ալ ազգ մը կարգի կրնայ կազմուիլ. իրեն ամենէն նըմանող էակներէն տարբեր էակ մըն է. կրնանք ըսել որ իբր անկանոնութիւն մը կ'ելլէ բնապատմչին աչքին առջև, որ զայն կապկաց մէջ կը դասակարգէ։

Ինչուան հիմա վերացեալ կերպով ձևերը նախապատկերին համեմատ նըկատեցինք առանց արտաքին պաշտամունքը դիտելու. բայց ամեն կենդանի զարգանալով՝ աշխարհքիս ներդաշնակութեան մասնակցութիւն կ'ունենայ, ստեղծուած էակաց ընդհանրութեան մէջ պաշտօն մը կը կատարէ, իր սեպհական բնաւորութիւնը ունի, և պաշտօնը գրուած է գործարանացը վրայ՝ որոնք մասնաւոր սովորութեանց միջոցաւ այլափոխուած են։ Այս այլափոխութիւնները կենդանւոյն սեպհական նկարագիր մը կու տան. կենդանւոյն ձևը պարզ սահման չէ, այլ խորհրդական նշանակ մը, գրոյցք մը որ տեսանելի կ'ընէ էակին անտեսանելի բնութիւնը։

Բաղդատենք ուրեմն այս նկատմամբ ձևերու խորհրդական նշանակութիւնը կանոնաւոր առաջնականաց, այսինքն կապկին վրայ. և զարտուղի առաջնականաց, այսինքն մարդուս վրայ։ Մեծ կապիկները կ'ընտրենք, որոնք իրենց նմանութեամբը մարդուս՝ մարդակերպք կամ մարդաձևք կոչուած են, ինչպէս իրանը, չիմբանզէն և կորիլը. և համառօտութեան համար քննենք մասնաւորապէս ձեռքը և դիմաց գծագրութիւնը։

Կապկին ձեռքը (և այս անունս տալով այն գործարանին՝ կը փախենք հայհոյութիւն մը զուրցելէն), մարդակերպ կապկին ձեռքը՝ բռնող ճանկ մըն է։ Մատակ կապկին և մաքաքին ձեռաց վրայ բթամատն ամենևին ազատութիւն չունի, անոր ձգանքը միւս մատերը կրկնել տուող ձգանքէն առաջ գալով, ամեն ծայրերուն կրկնուիլը միատեղ կը կատարուի. բայց բթամատն անկախ չըլլալով՝ սաստիկ զօրութիւն ունի։ Պզտի կապկաց բթամատին ազատութեան պակսիլը, արդե՞օք մարդակերպ կապկաց բթամատը կը ստանայ այն ազատութիւնը. բթամատը շարժող ձգանքը մասնաւոր մկանի մը վրայ վերջանալով ազատաբար կրնայ գործել։ Ո՛չ. հապա այս ձգանքը կ'անհետանայ և բթամատին զօրութիւնը կը կորսուի, երբեք չկատարելագործուիր և կը խանգարի։ Հազիւ կապկին թեքեալ երկայնաձիգ մատուըները կրնան ծռելով մէկիկ մէկիկ բթամատին եղընգային ծայրը դպչիլ։ Բթամատը վերջացընող եղունգը կարճ, տձև և անծռելի է, ճանկ մըն է վերջապէս և շօշափման շատ անկատար գործի։

Բայց այս ձեռքն որ այնչափ անկատար է շօշափման համար, որ իրեն վերաբերեալ նպատակ մը չէ, ինչպիսի հրաշալի կերպով յօրինուած է ծառերու վրայ ցատկռտող կապկին մասնաւոր պիտոյիցը համար. ինչպիսի ճըշտութեամբ կը յարի իր ամեն մասունքը ծռելով գլանաձև ճիւղերուն վրայ. ինչպիսի զօրութիւն ունի այս կախող ճանկն։ Այլ ձեռքին շարժմունքներն յետնակողմեան անդամոց շարժմանց հետ միանալով՝ չորքոտանի կենդանեաց տեղափոխութեան սովորական գործարանն է. կապիկք երկրիս վրայ հանգիստ չեն ըլլար, իրենց երկիրը ծառերուն ճիւղերն են, որով ձեռքը միայն կենդանւոյն հանգստեան ժամանակ ազատ կրնայ ըլլալ, և այս ազատութիւնն ալ կը կայանայ անասնական շարժմունքներէ՝ ուտելը բռնելու համար։

Կը շարունակուի։

1 Գղ. Embranchement.

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




# ԲԱԶՄԱՎԷՊ

ՌՑԺԸ · 1808 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ · — ՍԵՊՏԵՄԲԵՐ


## ԲԱԺԻՆՔ ՀԱՑՈՅ ՄԵԾԱՑ

Մինչչեւ ծընեալ ի լերինս այլախօսիկ արձագանգք,
Մինչ ծիր ծովուն եւ ցամաք անմարդաձայնք եւ անծանք,
Եւ չեւ լարեալ սահմանաց զաղինս երկրի միաբուն,
Ցարփիասկիզբն արեւելս տատուածակերտ կանգնէր տուն,
Ի սարահարթ բարձրակուռ քաջարոյս վայր գեղունակ
Ծովասարաս ոռոգեալ աղբեր գնացիւք քառարձակ ։
Երանութեան արգասեօք սարեալ առ մարդ բարեշուք.
Ցորմէ օցտեալ պատրանօք՝ անկաւ արտաքս, ո՜հ, եղո՜ւկ.
Եւ ի Նայիդ՝ դէմ փակեալ բնակարանին յարեւելս՝
Ըղձահացու կենցաղոյն լալեօք քրտամբ կրկէր թելս ։
Երանի՜ թէ ՚նդ վեղջն իսկ ոչ զըղջայր Տեառն աններէր.
Գուցէ զՀաստչին զըրդեալ գութ՝ ըղհօրն յանցուածըս քաւէր.
Եւ վարսահուր սրովբէին ճեպեալ սուսեր ի պատեան՝
Համարձակէր արդեօք մարդ դառնալ ի հեշտն իւր ոստան,
Եւ ոչ ոճիր առ ոճիր բարդեալ՝ զատարերըս գըղըրդէր,
Սանդարամետք գոռային եւ զայրանայր խորն եթեր.
Հաստատութեանց պատառեալ տիրամանուածքըն տոռունք
Երկինք ու անդունդք ձուլէին անդրէն ի թոհըս զեռունք.

Ի լուծական խաւարի զուղեալ հանդոյն այսակէր
Ու առեալ շրջան քառատան՝ ոչ ժամանէր տիւ յերկիր։
Մի միայն երգ տատանեալ իբր ի տաշեղ անտառի
Ի ծագս ալեաց անբաւից տենչայր ըզհանդիպաըն հեռի,
Որ հաղ ընդ հաղ նուաղեալ ըզվրիժառուըն զայլս
Անդնդամուղ վերբերէր նաւահանգըստեան ըզՄասիս.
Ցեղեմունակն ի վայր նոյն նորոգէր նոյ զօթեւանն,
Եւ քառատաղն յայլափոխ շրջան գայր դեռան յերկրեան.
Ոձն ընդ հիւսիս դարաւլաղ քարակըռտուր խընդրէր ծով,
Միւս՝ թափ ընդ թափ դաշտանայր արեւելից կարօտով,
Եւ լըծակիցք ընդ հարաւ՝ Տիգրիս և Եփրատ բարձրաբարուղի՝
Ի հեռաստան յունչ Հնդիկն ովկիանու խառնել ուղխ։
Անէր դիմէր նորաստեղծըն մարդկութիւն շըջացեր.
Ցաբեթածինք յանդըրդումք ժառանգէին զմէջըն ծիր.
Որդի յորդւոյ՝ նախ Գոմեր, ապ՝ Աշքանազ եւ Թորգոմ՝
Հսկայակերպ ութեքումք զաւակօք ճոխ եւ ճռոմ.
Ցարեւմըտեանն՝ Աշքանազ՝ մինչ յառաջէր ծովուն խաղ,
Մինչ հաւ Գոմեր անդրադոյն ի միջերկրեայըն խաղաղ,
Եւ հեղաշուք Սեմականըն զարմ ընդ ելս եւ հարաւ,
Ինքըն Թորգոմ ըզհիւսիս յորդիս տրոհէր վիճակաւ։
Իսկ անդրանիկն եռանդուն որ էջ ի դաշտ Սենայար
Ու ամբարտաւան Ներբրովթայ անձնանաց կաց կռփահար,
Որդւովք թոռամբք ու եռարիւր քաջաղեղամբք դարձ առ հայր,
Զողջոյն Տաւրի կովկասայ դըխադանն ունէր միջավայր.
Ցորմէ խայթանկն ըզհըրակայն խաղաղարարու վանեալ Բէլ՝
Տիրաբար յիւր անուն ՀԱՅՔ՝ ու արժանն իսկ տայր զայն կոչել.
ՅԱշքանազեան ծըփանաց մինչ ի կասպից կոհակս հեղգ,
Ի պահակէն Ալանաց մինչ ի զանխուլ Հոնաց փեղկ,
Ու ի պոնտամերձ Գարխարաց մինչ ի Զագրոսայ մարական՝
Առ հասարակ հռչակիւր անուն հսկայիցն՝ ՀԱՅԱՍՏԱՆ։
Իսկ քաջանետ քաջաղեղն եւ քաջաձի զառն արանց
Ըզհայրենի հեղութեամբ եւ զառհեմանօք խառն մի զանց՝
Զհիւսիս զհարաւ քերելով անդրատարէր յարեւոյն մայր՝
Ընդմիջելով ըզՓոնտոս, Գամիրս, Կիւլիկ ծովածայր,
Անէլ սփռել ընդ երկիր ըզհայկեան կրօնս եւ լեզու.
Ցայնմհետէ Մեծ կոչէին Հայք դէմ նորայն եւ փոքու.
Եւ Միջագետք հայկականք ընդ Ցանկաստան ու Ասորիս,
Եւ Լեռնականք՝ Լըփինք, Սօդք, Աղուանք եւ Մեդիք ընդ Եգերս.
Աշխարհաւորք երեսուն ընդ հայութեան հովանեաւ,
Ու երէր հնդեակ բընաշխարհք ըզախրապանձն սատանաւ.
Մէն զահանկալ ունելով ճոխ նախարար ալքաշուք,

Ըստ ձեռանէն՝ մեծամեծ դաստառակաւք զառ գլխուք.
Երկերիւրոց եւ յիսնից հնչէ հռչակ ի մեծ Հայս,
Եւ անուանուն հարիւրոց չորից ի կայս եւ ի կայս,
Որք ի տաճար արքունի 'նդ. ապաստարեար ներփակեան՝
Ի ընդ. պաշտօնեայս բազմէին յիսուն հարիւր բարձ գաւառական.
Նազէր ի մէջ բարձրագլուխ՝ երբ ընդ. լերանց սարս արեւ՝
Այրարատեան Թագաւոր՝ Հայկայ ժառանգն արդարեւ.
Զօրիւք բիւրուք քաջ արանց ներփակեալ Նորին վաշտ,
Ի ուխտուն եւ չորս հազարաց Նախարարեան մասն ի դաշտ.
Իսկ որ ուստեք ի մարզից եւ ընդ. ձեռամբ ապաստանօր
Գումարտ գնդից եւ հրոսից՝ զայն ո՛ արկցէ ի համար.
Կարմիր կանաչ եւ կապոյտ ստուարացեալ դրօշից դրօշք
Զրահաւորական արքենեաց բարձրաձայնքն քաջորոշք ․․․․
Իսկ մինչ ըզբաղդըմն շրջեալ ընդ. կղզին բիւրաւոր ամենայն՝
Թաւալեցոյց զՀայ փառօք անյուշութիւն մեռուանակ,
Զաւեր զդերբուկ կանգնելով անցականին մահարձան,
Անուանք մարզից եւ ցեղից անդամ սուղեալ մոռացան.
Ոչ եւս բընիկ Կալլիոպէ յայգիս Գողթան հովանեաց
Վիպասանիցըն բամբռամբ բամբէ զհամբաւ հայրենեաց.
Այլ հայկայուշ դու Մնեմիս՝ եկեալ գէթ խուն մի յողոք
ԶՀայոց Մեծաց ինձ թըւեա զկապուտ բաղդին անողոք.
Քանզի, ասա, գաւառք անդ, եւ ներփական առհմք եւ բարձ,
Եւ որ ի մարդս ինչ սակաւ, (բաւս թէ բնաւին է անդարձ.)
Զի ծանիցէ զարմն ազնիւ զինքն Հայութիւն յուսակիր՝
Որում այնքան թողին հարքն համբաւ եւ նիշ ընդ. երկիր ։
Նախ յարեւմուտս հիւսիսոյ Հայոց Մեծաց աշխարհն՝ ՏԱՕՔ,
Գետահովտաց Ճորոխի եւ Կըլի զօլ զուգակայք,
Օժանդակօք վըտակօք կըտրեալ դոդեալ ի լերանց,
Յութեակ տրոհեալ փարաձեւ գաւառս ամուրս անթափանց.
Յոր հնասերունդ տեղածին ազգ. կորովի կալեալ վայր՝
Ի փառապարուտ թագաւորութիւնս խարձից ու այրից ամրանայր,
Մինչեւ հսկայք Թորգոմեանք անդր արկին ձեռն եւ լեզու,
Ըղտայեցի կորդ. բարբառ եղեալ Հայկին սպասարկու,
Եւ զամրական ըզբնութիւն վայրաց հինից ապաստան,
Որ զեղեցիկ աշխարհիս, աւաղ, ածին բիւր աւազան ։
Խեթկեալ երբեմն ի Պարսից՝ Հելլենիկ վաշտ եռանդուն
Յաշակերտէն Սոկրատայ վարիւր ի վայրըս Թաքուն,
Ընդ. ամբաստեան վերելեակ բանակապան կիրճ լերանց՝
Ի տայեցի սարափոյ սաղմնադէր բուրըն քարանց,
Այ՝ յուսահատ խեղդախեալ յանստատամբ դադարթան՝
Մինչ ըզյամառ դիքմակայսն ի բուռն տանել դոյր ժամուն,

Նորա զաղատ մահն ի Տայս քան զգերութիւն Աստղկին
Ընտրեալ՝ յախուռն եւ ընդ գահս դարահողով Թօթափին ·
Կորզեալ զմանկիկն ի ստեանց՝ մայր մոլեալ ի քէն եւ ի գութ
Գարսէ ի վիհ խորանդունդ եւ զհետ դրդի 'նդ խէթ եւ խութ ·
Յերկոցուն ոչէր խանդակաթ հաւատարիմն ամուսին
Ըղձախակամքըն Թափեալ՝ գերեզմանէ ի գրկին ·
Հուսկ բընաւից զստս առեալ պահակապետն անողոք ,
Յայն ինչ վազելն ընդ կատարն ընդ վիհն անհաշտ զգուանօք՝
Ի Սոխումիպալեանն Ենէայ թռնաբարեալ ի յապրուստ՝
Ըղնոյն յանդուգն ըմբռնող՝ ձրգէ խորոց յորկորուստ ·
Ի խառնադոչ ծորոխայ յորձանս ճողփեալ դի առ դի՝
Արկադացի 'նդ Տայեցւոյ պանդուխտ մահուամբ պատանդի ։
Արշակունեաց նախաթադ ուշիմն արքայ եւ յաղթող՝
Մինչ պոնտական մրցանաց զԳարխար Թողոյր իւր կոթող ,
Ի մառախլուտ ի մայրիս մրխէր Տայոց լոռաէտ՝
Ջամրարանի հովանոցս հիմնել ի սար բարձրաղէտ ,
Եւ ի Թիկունս Թասարայս կոհակաց՝ գոմս որսականս
Թագապարմիցն եւ դրանկաց հրահանգարան եւ զբօսանս ։
Պարտիզափոր զանունն յայնժամ առնոյր նախըն գաւառ ,
Եզեմատունկ Թէ ոչ դրախտն իսկ ամփոփէր անդ պայծառ ·
Փորակաւոր ընկերացն անուանք յայժմուս անտոռը ,
Իւր լոկ լըռի պերճաբար եւ յայլազգւոյն իսկ ցայսօր ·
Ամրակառոյց Բերդացփոր , Ազորդափոր , Արսեաց փոր ,
Ճակք եւ Բուխա , Ոքաղէ եւ կող՝ Կրըրի ականց հոր ·
Քաջարուսակ պատղաւէտ մինակք՝ ալեօք կարկաջուն ,
Վաղարշակայ զբօսարանք այգիք եւ գունք որսասուն ։
Աշխարհ երկրորդ ԳՈՒԳԱՐԱՑ՝ ըղձիւախնեաւ առեալ պատ ,
Հուպ Եգերաց եւ Մեսխաց , Վրրաց դրացի անանջատ ,
Բռնաբարեալ ի Քարթլեանց եւ ի Հայկեանց ընդ երկար ,
Հնգետասան ունելով եւ աւելի եւս գաւառ ·
Բազում փորակք եւ ձորակք , լըճակք , լերինք եւ մայրի ,
Առատ բովուք պըղընձոյ , բուսով գեղով իսկ վայրի ·
Քուիշափոր ,Նխրամիձոր , Մանգլեացըն փոր , Բողնափոր ,
Եւ յարեւելս՝ Ջորոփոր , Ծոբոփոր , հուսկ Կողբոփոր ·
Կողարչք , երբեմն առանձնակ աշխարհ դրացի Եգերաց ,
Ջաւախք երկիր լըճաշատ , Կանգարք լեռնոտ մայրաբարձ ,
Արտահան , Թռեղք եւ Պարուար ընդ Վրաց դաշտ մօտ ի Տփղիս ·
Տաշիրք Վերին եւ Ստորին , Բամբակ եւ Ջոր Սեւորդիս ։
Երրորդ աշխարհ յարեւելս ի նոյն կուրայ ի հովտի՝
Ուտարախօս եւ Թաքուն ծաղմամբ անուան իւր ՈՒՏԻ ·
Գաւառ նախկին Միափոր՝ հուպ փորակաց Գուգարաց ,

կայենք աշխարհ յորջորջեալ՝ ժառանգութիւն հզօրաց.
Բագրատունեաց մարզ Աղուէ եւ Ցուշքարակ կամ Ցաւուշ.
Բոռապացեան, Արանառ, եւ Ցախ, անյայտք եւ անյուշ.
Ի միջնաշխարհըն Գարդմանն՝ բերկրեալ ազգաւ քաղաքանց,
Սակաց ընտակ Շակաշէն, յորում Գանձակ մեծագանձ.
Շամքորաձոր եւ Սագամ՝ ի միջին գօտըս հռչակք,
Եւ Աղուանից գահավայր Պարտաւ՝ յՈւտի առանձնակ:

Զորրորդ՝ Սիւնեաց զուգանուն եւ զուգատիպ՝ մուտն ԱՐՑԱԽ,
Ցախուտ, մայրուտ եւ ժայռուտ աշխարհ ամուր եւ խիզախ,
Ի նմա Հաբանդ միւս՝ զուգորդ Սիսականին գաւառի,
Եւ Վայկունիք ագուցեալ յեղուզակէն անկատի.
Բերձոր յամուրըս վիմաց եւ փառիսոս փառաւորանց՝
Քուստի Փառնէս եւ Զարէ նոյն յորջորջեալ յայլ ումանց.
Կողթ եւ Բռառն Ծիսական՝ հուպ մեծապանծն աշխարհի,
Մեծիրանք՝ ուր Ամարաս հանգիստ թոռին Գրիգորի,
Եւ զուգանուն Մեծկողմանք՝ կոչեալ ի նորս Ճարաբերդ,
Եւ Թագափայլըն Խաչէն՝ մասըն նոցին ամրակերտ.
Պարծկանք՝ որ այժմըս Շուշի, Մուխանք՝ երէց Մուղանին,
Հարճլանք, Պիանք անծանօթք, կամ թէ Դիզա 'նդ Վառանդին:

Ցեղեմախառն Եփրատայ յակնահովիտ մաքրայորդ
Ցարեւմըտեան հիւսիս կան ԲԱՐՁՐ ՀԱՑՔ աշխարհ հինգերորդ,
ԿԱՏԱՐ ԵՐԿՐԻ կոչեցեալ բարձրակառոյցըն դըրիւք,
Ու ԱՇԽԱՐՀ ԿԱՐՆՈՑ՝ յոր անուն դաշտագաւառն համազգ.
Եւ Թէոդու Պօլիս ցարդ մայր քաղաքաց հուսկ ի Հայք.
Հովանաւոր Շաղագոմք հուպ՝ Մեսրոպեան վարժից կայք.
Ըսպեր՝ խաղտեացըն դըրացի արծաթանոխ հին սահման.
Եւ ըստ Կարենոյ հարաւոյ միհրապաշտիկըն Դերջան,
Մեծապաշտօն եւս Եկեղք՝ Անահտականըն գաւառ,
Ցեառոյ անուն կոչեցեալ Լուսաւորչին վեհափառ.
Սալանոշնիք ի միջի որ եւ Երկիր կոտերոյ,
Ուստ՝ հայրապետն Թէոդոր՝ զոր սարեկայն չեղերծ խոյ.
Դարանաղի կամ Կամախ, Մանանաղի համակոչ՝
Թարգմանք բովուց եւ ծորից աղի յիւրեանցըն խորոց.
Անեղանունըն եւ Թաքուն Աշիշ ի ծայր աշխարհին,
Եւ համատիպ մուտ Մնձուր ի լեռնախիտ կարկառին:

Միջահովիտ Հայութեան մարզից Երասխ հարազատ՝
Զորից գլխաւոր աշխարհաց. նախ պանծալին ԱՅՐԱՐԱՏ,
Ըզմիջնադիրն ունելով վայր՝ սեփական Հայոց տուն,
Ցեղերական աշխարհաց շրջապատեալ եօթնեցուն,
Ի քսան եւ հինգ զատուցեալ գաւառս՝ ի դաշտ սարահարթ
Խաղիւք վաղիւք Երասխայն առոգացեալ գեղազուարթ.

Մերձ ի Կարին նախ Բասեան վերին ու Անփայտն Ըստորին,
Լայնածաւալ գիւղաշատ արգաւանդ դաշտ գեղերին.
Որում Վանանդ յարակից՝ կըրող զԿարուցըն քաղաք,
Եւ Զարիշատ Վանանդայ բաղորդ եւ հուպ ի Շիրակ՝
Որկորէին Հայկազնոյ հացաւէտ դաշտ թաթաւուչ,
Ցետին գահոյք արքայանց մերոյ՝ Անի սրտառուչ.
Ըստ հարաւոյ տարածեալ զոյգ Գաբեղեան ու Աբեղեան,
Թաթլոյ դաշտաւք եւ վարդկան օձակալ հարց հոգեձայն.
Եւ նոցին հուպ Հաւնունիք բազէակաւք արքայից,
Ձորովք պատեալ յարձնտռանդն Երասխ յանձուկըս կրճից,
Երասխաձոր կոչի, նոյն Արշարունիք ւ Արշունիք,
Տրդատայ տուրք առ Կամսար, Երուանդայ նախ արքունիք.
Զոյգ քաղաքկնեար ի կրկին անկիւնս յախուռն Ախուրեան,
Անդ Արտագերք եւ Կապոյտ բերդք, յուշք լալեաց եւ արեան.
Արագածոտն ի Շիրակ հուպ լեռնաբերձ չքնաշատ
Ուր դահնադլուխք քաղաքաց՝ հինն Արմաւիր ու Արտաշատ.
Թալին, Թալիշ եւ Կարբի, Անբերդ եւ զոյգ Բիւրական
Տրոհեալ մնացուածք վիճակօք՝ կրօնից եւ գրոց տապանաւն.
Մօտ աշխարհին՝ Գուգարաց գրաւի Աշոցք լեռնաշար
Վաղարշական վիճակեալ առ հայկազնեանըն Գուշար։
ՅԱրագածեան տարածեալ բարձանց ցըծով Գեղամայ՝
Վարաժնունիք քաղէրէ՝ վարժոցք Միջնոյ Տիգրանայ,
Նոյն բիւրաւորս երփներանգ անուանեալ Ձոր Ծաղկունիք
Ուր Նախամարց գեօղ եւ բարձրըն ծովադէտ ճապատիկ.
Կոտայք՝ ուր նոր աշխարհին մայրաքաղաք Երեւան,
Հիւսիսական հըսկային պատուեալ ի Հայս հանգըրուան.
Նիգ ու Ապարան նոր վիճակք, այլ հինաւուրց չքնաղի՝
Աստուածընկալ եւ Փառաւղ, փառաժնակերտ եւ Բջնի։
Գեղամաշէն՝ սիւսական Գեղաքունեաց թիկնակից՝
Մազազունեաց սեփական, յորում Գառնի՝ գործ վեհից,
Եւ հրաշակերտ վանորայ ի պառանձաւս վիմայլեր՝
Գեղարդայ-վանք, Հաւուց Թառ՝ ուր տիրատիպըն պատկեր.
Ուրծ եւ Արաճ ծովամերձ վիճակք վերայ Նորանուն,
Ուր Սադրայ-բերդ վաղեմի ու Արջառերեկ վանատուն.
Շարուր՝ նոցին հարթայատ դաշտ ծաւալ յեզըր Սիւնեաց,
Եւ Մաստարակ զուգաւանն՝ ուր Մարակերտ նիստ Նախճնեաց.
Բարձրաբերձին յարանուն լերին Մասեաց-ոտն յերի
Ուր Գինեգոյն գետոյն գիւղք, եւ այդ աւերն Ակոռի.
Անդ Ամատեայ գաստակերտք զոյգ՝ Փառախոտն եւ Ցօլակ,
Ամուրք Ջաղկերս, վարագկերս, կաղամարթայըն նըրուակք.
Սահմանակից առ ի մուտըս ճակատաք ձոխ աղահանք,

Զոր Նոյըայն բարձըր բերէ բլրակ Բարդող նուաղանց ։
Իսկ ընդ հարաւ եւ ընդ ելս՝ Թիկունք Մասեաց լայնանիստ
Նոյն Կոգովիտ, եւ Դարօնք՝ ուր փրկչին տիպք եւ հանգիստ.
Եւ պաժգալին գաւառակերտ Արշակունեան չարայուշ՝
Զորոյ կանգնողն եղյծ վրէժ յարատաւեկին բերդ Անյուշ ։
Երասխայ հուսկ բաժին յայսքան գաւառաց շրջապատ՝
Բնաւորեցըն պարծ գաւհագլուխ մայրագաւառն Այրարատ,
Հընոցք սիրոյ հայրենեաց եւ հաւատոյ լուսոյ գանձ,
Ոստան Հայոց հոկայից պըսակապերճ քաղաքանց.
Անդ Վարդգէսի հին աւան Վաղարշակերտն—Արտիմէդ՝
Տուն Տրդատայ՝ Գրիգորի լեալ Քրիստոսի իջման կէտ.
Գաւառաք կրկին յերասխեան գետահովտէ տարագէմ՝
ԾԱրածանույ ծաղկածիր բարձունս նըստին զոյգք յնդէմ.
Ծաղկոտն յելից՝ բիւրզափայլ աղբերակամց խանձարուր,
Ուր ոռոգատն արգաշուք Շահապիվան սիրամուր.
Լերինք ծակկեալք անդ եւ Դրախտք, լերինք Ոսկեայք եւ Լըսին,
Ուր առդ Խաւնուր եւ Բաղնոց՝ բերդավիճակք զոյգք լըսին.
Միւսն ի մըտից երկայնեալ դաշտ ընդարձակ ու արգաւանդ՝
Յարատաշխեան պարմանեաց պատուեալ տոհմք Բագրեւանդ.
Յորում Նըպատ բարձրանայ, Սուկաւ՝ սիրող Ալանաց,
Եւ գիւղաղանց դըօշեալք խիտ առ խիտ բագինք աւանաց.
Զերաւ ցըուող սեաւ Գայլեց ի Նեբխաէ հոգէհուր,
Ուրում ոգւոյն համնափառ՝ անդ հուսկ հանգիստն ի Բըլուր ։

Հ. Ղ. Մ. ԱԼԻՇԱՆ

(Զմեռագորդն առեալ յամրատարին Հնդկամբերի.)

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

### Դրաքեանի մը անտիպ յիշատակա-գիրք։

(Տես երես 234)

### Զ

Ցայտնուեր էինք. անոնք որ ժողվուելու համար պարնող պանդակին ձայնէն՝ երկայն ատեն ետեւէս ինջեր էին, մեր այն անտառին մէջ պահուըտած բլլալնին իմացան։ Իսկ երբոր իմ ղլամբերը կանչելու լսեցին, ալ աւելի վրանիս հասած բլլալնուն վրայ հաւատատուեցան, զոր յայտնի հանուԹը կ'ըսէին ու կը կրկնէին։ Քիչ վերջը խիտ անտառին մէջ քանի մը ջահերու փայլերը տեսայ, և այն լուսով տեսայ որ հրացաններու եղէգներ և Նիզակաց սլաքներ կը շողային։ Վերէն այս աւենը կրնայի տեսնել, բայց ոչ և զմեզ հալածողներուն Թիւն իմանալ. սակայն եղած ձայներու և աղաղակներու չընկալէն ինծի կ'երեւար Թէ քիչ չէին։

Այն վայրկենին սաստիկ տագնապեցուցիչ անստուգուԹեան մը մէջ էի։ Կ'ուզէի մէկ կողմանէ գիտնալ Թէ ինչ եղաւ Լամբերտ, որ կը վախնայի Թէ արջէն պատառուած կամ ջախջախուած ըլլայ. մէկալ կողմանէ կը ջանայի

կաղնւոյն ճիւղերուն և տերևոց մէջ պահուըտիլ, երբ զմեզ հալածողներն կը մօտենային։ Բայց սակայն իմ անձնական ապահովութեանս խնամքէն աւելի՝ Լամբերտի սէրն յաղթեց ինծի։ Թէպէտ և իմացայ որ զմեզ բռնելու համար եկող ամբոխին մէջէն աւելի սրտոտներն ու վազողները մեզմէ հեռու չէին, բայց և այնպէս՝ աւելի ցած՝ բայց որոշ ձայնով ուրիշ երկու անգամ ալ կանչեցի զԼամբերտ։ Բայց միշտ նոյն խորին լռութիւնը իմ կանչելուս կը յաջորդէր։ Գիշերուան մթութեան մէջ, և կեցած կաղնւոյս բունն բաւական բարձր ըլլալով, չէի կրնար որոշ տեսնել ոչ արջը և ոչ Լամբերտը. չիոթ և հազիւ անորոշ կերպով ծառին քովը ինկած թանձր և մութ բան մը կը տեսնէի, որ ինծի կ'երևար թէ արջին ըլլայ։ Բայց Լամբերտին ոչ հետքն և ոչ ստուերը կը տեսնէի. ուստի մահաբեր ստուգութիւն մը միտքս պաշարեց թէ իյնալու ատենը վայրագ կենդանւոյն տակը մնացած ըլլայ, և անոր ահագին ծանրութենէն անշուշտ ջախջախած ըլլայ։

Դիւրին է երևակայել իմ անձկութիւնս և ցաւս. անհրաժեշտ զիս կորսուած կը սեպէի, չգիտնալով ինչ ընել զիս ազատելու համար։ Կրնայի դարձեալ կաղնւոյն ուժով և երկայն ճիւղերուն պլլուիլ, և կրցածիս չափ տերևոց մէջ ծածկուիլ, և թերևս չէի յայտնուէր։ Բայց ցաւէս քար կտրածի պէս եղեր էի. ունեցած անձկութիւնս այնպէս խելքս դարձուց, որ այն վայրկենին չկրցայ այսպիսի պարզ և դիւրին ազատելու միջոցի մը ձեռք զարնել։ Անոր համար հազիւ թէ քանի մը հոգի՝ որոնց մէջ նաև զինուոր մը՝ վառած լապտերներով իմ կեցած կաղնւոյս մօտեցան, մէկէն տեսան զիս, և սպառնալեօք ու հայհոյութեամբք սկըսան բռնադատել զիս որ վար իջնեմ։ Բայց հազիւ թէ մօտ հասան, յանկարծական սարսափ մը բռնեց զիրենք, այն արջը գետինը տեսնելով. բայց շուտով իմացան որ մեռած էր, անոր համար ալ ուշ չըրին անոր, հապա խելքերնին իմ վրաս էր։

Այնչափ հայհոյութեանց և սպառնալեաց չկրցայ դիմանալ. և վախով ու դողալով մէկէն վար իջայ ծառէն, և հազիւ թէ ոտքս գետինը դրի, անոնցմէ երկու հոգի բռնեցին զիս և ուժով մը կապեցին։ Լապտերաց լուսովը տեսայ արջը արեան մէջ թաթխուած, և անկէ քանի մը քայլ անդին խեղճ Լամբերտը, որ կենդանութեան նշան մը չէր տար։ Իմ բարեկամս այնպէս տեսնելով, չկրցայ արտասուքս բռնել, և կը ջանայի ազատել զիս որ իրեն քով վազեմ. բայց արգիլուեցայ այն դահիճներէն, որոց թիւը երթալով կը բազմանար։ Նոյն վայրկենին ծառի ճիւղերէ անշուք դագաղ մը ձևացուցին, և խեղճ Լամբերտը բոլորովին արիւնլուայ՝ գետնէն վերցնելով անոր վրայ դրին. չորս հոգի ուսերնուն վրայ առին, և զիս ալ ետևնէն քշելով սկսան դէպ 'ի գեղը երթալ։

Ճամբուն վրայ արանց և կանանց խումբերու և բազմութեան կը հանդիպէինք, որոնք երեսնուն վրայ իրենց բարկութիւնն յայտնելով՝ ետևնէս եկեր էին։ Բայց իրենց բարկութիւնը մէկէն կը մարէր, երբ զԼամբերտ այնպէս այլափոխած ու մեռած կը տեսնէին. շատերուն ատելութիւնն ու կատաղութիւնը՝ կարեկցութեան կը փոխուէր, և ասիկայ կերպով մը կ'ազատէր նաև զիս, որ անտարակոյս շատերուն ոտնկումն կը պատճառէի, զիս մեր թշուառ տէրոջը մահուան գործակիցներէն մէկը կարծելով։ Մանաւանդ կը լսէի որ բազմութեան մէջէն մէկը կը գոչէր. Անկարելի կ'երևայ որ ասանկ տղայ մը այնպիսի եղեռնաւոր ոճիր մը գործէ։ Այս խօսքերը սրտիս խորը կը վիրաւորէին, և կը սոսկայի՝ մտածելով միայն որ զիս մարդասպան կը կարծեն։ Բայց իմ խիղճս կ'ապահովէր զիս. և հանդարտ խղճէն աւելի մեծագոյն սփոփումն չկայ, զոր կը զգայ մարդ թէ արդարութեան և թէ թշուառութեան առջև։

Երբոր գեղն հասանք, կրնամ ըսել որ բոլոր բնակիչքն հոն կեցած մեզի կը սպասէին։ Հազիւ մեր ետևէն հասնիլն ու բռնուած ըլլալն իմացուեցաւ, այն բազմութեան մէջ գովութեան և հաճութեան խուլ շշնջիւն մը լսուեցաւ. և մանաւանդ թէ առջինին պէս մեզի դէմ հայհոյութիւններ արձակելու վրայ էին, մէյմ՚ալ ամեն մարդ համր և լուռ մնաց, երբ այն անշուք դագաղը տեսնուեցաւ որուն վրայ խեղճ Լամբերտը մեռած տարածուեր էր։

— Աստուած զինքը պատժեր է արդէն — կ՚ըսէր մէկը, մինչ ուրիշ մը կը կանչէր — Մարդասպանաց կատարածն ունեցեր է։ — Ուրիշ երրորդ մը կը բողոքէր թէ պէտք էր զինքը կենդանի բռնել, և գեղին հրապարակին մէջ կախել, որ ամենուն օրինակ ըլլայ։ Մէկ կին մը, մօրս հին խնամի, առջևէս անցնելու ատեն՝ սուր և գրեթէ կատաղութենէն խղդուած ձայնով մը ըսաւ. Շատ աւելի աղէկ էր որ հօրդ հետ մեռած ըլլայիր։

Այս ձայնարկութիւններով ու բացագանչութիւններով հասանք բանտը։ Զիս թաց և հոտած խուց մը մտուցին. բանտապանը պզտիկ ամանով մը ջուր բերաւ, անկիւն մը տարածուած քիչ մը յարդ ցցուց, և առանց ուրիշ բան ըսելու՝ կրկին փականքով դուռը գոցեց, զիս կատարեալ մթութեան մէջ թողլով։ Սկզբան ապուշ դարձածի պէս մնացի. ինչ որ ինծի հանդիպած էր՝ ես ինծի չէի կրնար հաւատացնել, և երազելու մը պէս կու գար։ Ձեռքերս կուրծքիս վրայ դրած՝ բանտին պատին կռթընեցայ, և կատարեալ անզգայութեան և անտարբերութեան վիճակի մէջ երկայն ատեն անշարժ կեցայ, իբրև թէ աշխարհքիս մէջ չըլլայի և դեռ ապրելս չզգայի։ Բայց կամաց կամաց ցաւագին յիշատակներ սկսան միտքս լեցուիլ, և իմ տագնապեալ և խռովեալ երևակայութիւնս անցելոյն պատահարացը մէջ, և զիս այն թշուառ վիճակին հասցնող զանազան պարագայից մէջ կը պտըտէր։ Ա՛հ, այն գիշերը ինչպիսի սոսկալի գիշեր մը եղաւ ինձի համար. ինչպէս այլայլութիւն իմ մանկական միտքս կը տագնապէր, և ինչպիսի զգացմանց յուզմունք մը իմ խեղճ սիրտս կը տատանէր։ Հազիւ տասը տարուան՝ սեպէ որ ամբողջ կենաց մը ընթացքն ըրեր էի, և մարդ և աշխարհ իրենց բովանդակ անիրաւութեամբն ու գարշելի հրապոյրներովն առջևս պարզուեր էին։ Առաջին անգամուն ես ինծի, թէպէտ շփոթ կերպով մը և գրեթէ առանց իմ անդրադառնալուս, այն հարցմունքը ըրի որ ամեն մարդ իր անձին կ՚ուղղէ երբ երիտասարդութեան քաղցր պատրանքներն անցնելէն ետև, այրական հասակին իրականութեանն առջև կը հանդիպանայ. Ի՞նչ բան է ուրեմն կեանքս, կ՚ըսէի միտքէս, և ինչպէս բան է մարդս, ուսկից այսպէս յաճախ կը վախնանք և կը զարմանանք վրան։ Անկէ ետև մարդուս և աշխարհքիս վըրայ շատ դէշ գաղափար մը ստացայ. բայց ուրիշ ամեն բանէ աւելի անիկայ մէկէն առջևս ներկայացաւ իբրև տեսակ մը հրէշ, իբրև գազանական և անհաշտ թշնամի մը, որուն էութիւնը և ջանքը միայն ուրիշները կործանելու և ջնջելու համար է։ Բանտին միայնութիւնը, անմեղիս կրած հալածմունքը, չարութեան երևոյթը՝ որուն ուրկէց և ինչու կատարուած ըլլալը լաւ գիտէի, բանտապանին ինծի ցուցըցած խիստ և անգութ վարմունքը, միտքիս մէջ այս տխուր տպաւորութիւններն և այս խիստ գաղափարներն կը տածէին և կ՚աճեցնէին։

Երեսուն օր շարունակ այն սոսկալի բանտին մէջ փակուած մնացի։ Միայն բանտապանը կը տեսնէի, որ կանոնաւորաց ողորմելի կերակուրը կը բերէր ինծի. անկէց դուրս գիշեր ու ցորեկ մինակ էի։ Այնպիսի տխուր միայնութեան մէջ սիրուն ընկեր մը միայն ունէի. և էր պզտի ծիծառնիկ մը որ ամեն առաւօտ և իրիկուն կու գար իմ խցիս պատուհանին վրայ կը հանգչէր. որ թէպէտ բարձր էր, բայց ես կը

թը տեսնելու։ Ուշադրութեամբ զննեցի, և դարձընելով, իրիկուան արձըկած աղօտաճաճանչ լուսովը ինծի երևցաւ որ վրան բան մը գրուած ըլլայ. սակայն չէի համարձակեր փրցընել զայն։ Բայց ծիծառնիկը շարունակ գլուխը կը ցնցէր, և կարծես թէ կ՚ըսէր որ այն թուղթը առնեմ։ Սովորականէն աւելի ուշացաւ, և որչափ ալ զինքը բոլորովին ազատ կը թողուի, ինքը դեռ երթալու կամք չէր ցուցըներ։ Չորս կողմս կը թռչըտէր և մէկ ձեռքէս մէկալը կը ցատքըտէր։ Վերջապէս որոշեցի որ այն թուղթը վըզէն հանեմ. և հազիւ թէ քակեցի, ծիծառնիկը մէկէն թռաւ, և մեծագոյն ուրախութեամբ գեղգեղելով ելաւ գնաց։

Մէկէն թուղթը բացի. և իրաւցնէ վրան բան մը գրուած կար. բայց որովհետև բոլորովին իրիկուան ըլլալով, շատ քիչ լոյս կար, որչափ որ ջանացի որ մէջի եղածը կարդամ, չկըցայ որոշ իմաստ մը հանել. և կարդալը վաղուան թողուցի։ Բոլոր գիշերը շատ քիչ քուն եղայ. վայրկեանը մէյմը կ՚արթըննայի, և այն թղթին մէջ ինչ գրած ըլլալը տեսնելու անձկութիւնս այնչափ և այնպիսի էր որ ինչուան լուսանալը ինծի հազար տարի կ՚երևար։ Ինչ և իցէ, վերջապէս առաւօտ եղաւ. մօտըկելով ինչուան պատուհանը ելայ, և մեծ սրտադողով բացի թուղթը. և տեսայ որ կարմիր գոյնով քանի մը բառեր գրուած էին։ Բայց ինչ զարմանք և ցաւ զգացի երբոր կարդացի. «Լամբերտ մեռնելէն առաջ Հենրիկին իր վերջին բարևը կը խաւրէ»։

Է

Այն խորհրդաւոր բառերը կարդալով զգացած ցաւս աւելի դիւրին է երևակայել քան նկարագրել։ Ես Լամբերտ մեռած գիտէի, վասն զի ես անձամբ զինքը տեսեր էի այն աղետաբեր կաղնոյն քով շնչասպառ գլուխ մը, և յանդպատապատակ շինուած դագաղին վրայ՝ որով որ դիերը փոխադրուեցաւ։

Մէկալ կողմանէ չէի կրնար ըմբռնել որ, անհնարին ենթադրութիւն մ՚ ալ ընելով թէ Լամբերտ կենդանի եղած ըլլայ, ինչպէս կրնար այն տողերը գըրած ըլլալ, մինչ անտարակոյս բանտն էր և ինծմէ աւելի խստիւ պահպանուած, մանաւանդ դատապարտուած ըլլալով։ Ես վերջը, կ՚ըսէի մտքէս, ինչպէս կրնար ինքը գիտնալ որ այն թռչնիկը ինծի այցելութեան կու գայ, և անկէ աւելի՝ ինչպէս կրնար ինքը երևակայել և ենթադրել, որ ես այս անբուն ծիծառնիկին հետ այնչափ ընտանութիւն ունենամ, որ ինչուան կարենամ զինքը բռնել և ինծի ուղղուած տոմսակը վըզէն հանել։

Բոլոր այս հարցմունքներն ու խորհրդածութիւններն գլխս տխուր անըստուգութեան վիճակի մը մէջ կը ձգէին։ Այսչափ վարանմանց մէջ միայն այն միտածութիւնը թէ Լամբերտ դեռ կենդանի է, մասամբ մը կը մխիթարէր զիս։ Բայց այս մխիթարութիւնը մէկէն կ՚անհետանար, և սաստիկ ցաւ մը կը յաջորդէր անոր, երբ այլայլեալ երևակայութեանս առջև այն գաղափարը կու գար թէ իր կեանքը անարգ կախաղանի մը վրայ պիտի լմնցնէ։ Երբեմն ալ ինծի անանկ կ՚երևար որ այս ամէնը մէկու մը ըրած դժպհի խաղն ըլլայ, զիս աւելի չարչարելու, կամ գէթ իմ թշուառութեանս մէջ զիս ծաղր ընելու համար։ Մէկալ կողմանէ չէի կրնար մէկու մը տալ սանկ վատ կատակի մը միտածութիւնն ու գործադրութիւնը. վասն զի չէի կըրնար հասկընալ թէ սանկ յիմարական խաղով մը ինչ նպատակի կրնար հասնիլ։

Քանի մը օր այս տագնապող անստուգութեան մէջ մնացի, որովհետև ուրիշ մարդ չէի տեսներ բայց եթէ բանտապանը, որուն չէի համարձակեր խօսք մը զրուցելու, և սովորական ծիծառնիկը, որ հաւատարմութեամբ առաւօտ ու երեկոյ ինծի այցելութեան կու գար, իր սովորական հացի պատառի բաժինը առնելու համար, զոր

խնամքով մը կը պատրաստէի ։ վերջապէս առաւօտ մը բանտին պահապանը խոշոր և խիստ ձայնով մը հեռու կը խօսի ։ Հազիւ ներս կը մտնէ, կ'ըսէ ինծի. — Ժամէ մը դատաւորին դիմացը պիտի տարուիս, և քու գեղեցիկ գործողութեանդ վրայօք պիտի հարցուիս. նայէ որ ճշմարիտը զուրցես, և ամեն բան խոստովանիս. վասն զի թէ որ յամառելով ստես և ուրանաս, աւելի գէշ կ'ընես քեզի քան թէ աղէկ ։ —

Ես անտարակոյս պատրաստ էի ճշմարտութիւնը զուրցելու, և հետևաբար բանտապանին յանձնարարութեան երկրորդ մասին մէջ գոհ չէի կրնար ընել զինքը ։ Ես լաւ գիտէի թէ ինչ բանի համար որ կ'ամբաստանուէի՝ բոլորովին անմեղ էի. անոր համար բացարձակ պիտի մերժէի ինչ բանի համար որ կ'ենթադրէի թէ պիտի հարցուիմ ։ Առաջին լսելուս որ դատաւորի մը դիմաց պիտոր երևնամ՝ շատ շփոթեցայ, որովհետև կը վախնայի թէ ինծի սպառնալիքներ ընեն՝ իմ ենթադրեալ յանցանքս խոստովանցընելու համար ։ Ա՛հ, եթէ Լամբերտ հոն ինծի հետ մէկտեղ ըլլար, կ'ըսէի մէկէն, որչափ գոհ կ'ըլլայի. կ'ազատէր զիս նեղութենէ, և ինձմէ աւելի փորձ ըլլալով, այնպէս մը բաներ յառաջ կը դնէր որ ինծի միտքս մը չէր ըլլար, և ճշմարտութիւնը բովանդակ իրեն պայծառութեամբը կ'երևար ։

Մինչդեռ այս խորհրդածութիւններս կ'ընէի, մէյմ' ալ բանտիս դուռը բացուեցաւ, և բանտապանը սեմին վրայ կենալով՝ իր սովորական խիստ և խորունկ ձայնովը ըսաւ ինծի. Դատաւորը քեզի կը սպասէ ։ Այն հրաւէրքին՝ երկաթէ ձեռքի մը սիրտս ճնշելու պէս զգացի. բայց և այնպէս հնազանդեցայ, և տարտամ ու դողդոջուն քայլով անցայ այն զարհուրելի և աղտոտաբեր սեամը ։ Երկայն և ծուռումուռ սրահներէ անցնելով՝ խուց մը հասայ, որուն դրան քով զինուոր մը կեցած էր ։ Ինծի հրաման եղաւ որ կոշտ աթոռի մը վրայ նստիմ, և երբ կատարեցի, պահապանը ըսաւ ինծի. Քիչ ատենէն կու գայ դատաւորը ։

Սենեակը այնչափ մեծ չէր, և հազիւ ցանկով ամրացած պատուհանէ մը լոյս կ'ընդունէր ։ Ուրիշ բան չկար բայց եթէ կանաչ կերպասով ծածկած սատակ մը, վրան կաղամար մը, գրիչներ և թղթի խոշոր կապոց մը ։ Այն տխուր սենեկին բոլոր կահկարասիքը՝ քանի մը հին աթոռներ էին ։ Քանի մը վայրկենէ վերջը պարոն մը կը մտնայ, հետն ալ ուրիշ մը ։ Առաջինը մէկէն ճանչցայ այն մարդն ըլլալը, որ ատանատերոջ գիւղին մէջ զիս բռնել հրամայեր էր ։ Ինքը դիմացս նստաւ, միւսն ալ քովս ։ Նախ խորունկ ու սուր կերպով մը երկայն բարակ նայեցաւ ինծի. վերջը հարցուց անունս, մականունս, տարիքս, բնակութիւնս և վիճակս. այս ամենուն բաւական համարձակ ու քաջասիրտ կերպով պատասխանեցի ։ Անկէ ետքը դատաւորը աւելի խիստ կերպ և աւելի ծանր ձայն մը առաւ, երկայն ազդարարութիւն մը ընելով որ ճշմարտութիւնը զուրցեմ ։ Արդէն, աւելցուց, արդարութիւնը ամեն բան գիտէ, որով քու ստելդ աւելորդ բան է ։

— Բայց թէ որ արդարութիւնը ամեն բան գիտէ, վրայ բերի մէկէն աշխուժութեամբ, ինծմէ ուրեմն ինչ կ'ուզէ գիտնալ ։

Իմացայ որ դատաւորը այս իմ համարձակ պատասխանիս վրայ բռնուած մնաց ։ Սովորականէն աւելի ծուռ մը նայեցաւ ինծի, և զայրացած կերպով մը կանչեց. Բանը կատակի մի դարձըներ, ապա թէ ոչ կը հասկըցնեմ քեզի ինչպէս կ'ըլլայ խաղալ հետս ։ Ես լռեցի և աչքերս վար առի, միտքս դնելով որ ուրիշ բան չըսեմ բայց եթէ լակոնական և ցամաք այո մը կամ ոչ ։

Չեմ ուզեր լայնաբար մէջ բերել այն երկայն, խարդախ և նենգաւոր հարցափորձը որ ունեցայ երկու ժամէն աւելի ։ Ես միշտ պնդեցի թէ անմեղ եմ ։ Բայց ինչ զարմանք զգացի երբ դատաւորն ըսաւ թէ Լամբերտ ամեն բան խոստովանեցաւ ։ Լամբերտի

տեսածը լսելուս, ուրախութենէս ինչ ըլլալս չէի գիտեր։ — Այո՛, Լամբերտս կենդանի է, բրտօրէն կրկնեց անիկայ, բայց քիչ ժամանակուան համար։

Այս խօսքերէն՝ պարզուեցաւ ինծի այն տոմսակին մէջ պարունակուած գաղտնիքը. այն ատեն իմացայ որ Լամբերտ կենդանի էր, և մահուան դատապարտուած պիտի ըլլայ։ Փուճ տեղ ջանացի համոզել դատաւորը որ Լամբերտ ինծի պէս անմեղ էր տանտիրոջ մահուան խնդրոյն մէջ. այն դահիճը քան թէ դատաւորը միշտ կը կրկնէր թէ մեր տիրոջը մարդասպաններն մենք երկուքնիս էինք։ Դու գնա, կը կանչէր մերթ ընդ մերթ, քու մատաղ հասակիդ շնորհակալ եղիր. ապա թէ ոչ քու ալ անմեղ երեւցընել ուզած անօրէն գործակցիդ հետ մէկտեղ կը կախուէիր։

Ցնանելով վերջապէս որ անիրաւ տեղը դրպարտուած յանցանքին խոստովանութիւնը բերնէս չկրնար փրցընել, բանտապանը կանչել տուաւ. պատուիրեց իրեն որ զիս նորէն իմ բանտատանը, ինծի անկողնի տեղ ծառայող յարդը վերցընէ որ մերկ գետնի վրայ պառկիմ, և մինչև 'ի նոր հրաման՝ ինծի կերակուրի համար հաց և ջուր միայն տայ։ Ըս սաստիկ անգութ հրամանի մը չէի գիտեր ինչ պատասխան տալ. ուստի լռութեամբ բանտապանին ետեւէն գացի, և սիրտս դառն անձկութեամբ նեղուած, խոնաւ և մութ սենեակը դարձայ, ուսկից մէկէն վերուցին այն փչրած և հոտած յարդը՝ որուն վրայ որ կը պառկէի։ Վերջը կտոր մը սեւ հաց և աման մը ջուր բերին. ասիկայ, ըսաւ բանտապանը, ինչուան վաղը քեզի պիտի օգտէ։ Ըս աս ըսելով՝ կռնակը դարձուց, գոցեց շառաչմամբ մը երկաթի դուռը, և բռնութեամբ մը փականքներն հրեց, իբրև թէ կարծելով որ ես փախչիլ կ'ուզէի։

Այն օրուան այլայլութիւններն զիս դրեթէ ապուշ և անզգայ ըրեր էին։ Չեմ գիտեր որչափ ժամանակ հոն ներսը այն ողորմելի կերակրով անցուցի. միայն թէ քիչ օր վերջը՝ այն խիստ կենաց չդիմանալով, սաստիկ հիւանդացայ։ Ան ատեն անկէց վերուցին զիս և ուրիշ խուց մը տարին, և անկողին դրին, հետս ալ ուրիշ ընկեր մը։ Դատաւորը եկաւ գտնելու զիս, և հարցուց թէ ժխտելուս վրայ հաստատուն պիտի կենամ. ես՝ Այո պատասխանեցի. ինքն ալ աս լսելով, կոշտութեամբ մը կռնակը դարձուց գնաց։

Կամաց կամաց բաւական վրայ դրի։ Բանտի ընկերս այնպիսի խնամք և գորով մը կը ցուցընէր, որ ինծի շատ օգնեց։ Ասիկայ քառասուն տարուան մօտ մարդ մըն էր, պզտի հասակաւ, և քիչ ու անհարթ մազերով, որոնք լայն ճակտին երկու կողմէն երկնցած վար կ'իջնէին, և անկէց վար՝ երկու կրակոտ սեւ աչքեր կը փայլէին։ Բաւական աստիճանի մարդ մը կ'երեւար. բանտապանը ակնածութեամբ և կերպով մը մեծարանօք կը վարուէր հետը. և քանի որ ատոր քով դրուեցայ, ինծի հետ ալ կերպը փոխեր էր։

Այս մարդը քիչ կը խօսէր. միայն դատաւորին երթալէն վերջը եղաւ որ հետս երկայն խօսակցութիւն մը ըրաւ։ Նախ հարցուց թէ ինչ էր ըրած յանցանքս. և երբ պատասխանեցի որ անմեղ եմ բոլորովին, շրթանցը վրայ հեգնական ծիծաղ մը ըրաւ, և մէկ ձեռքէս բռնելով. Հա՛պա, աղնիւ տղաս, կանչեց գորովալիր ձայնով մը, քեզ տեսնեմ. ես քու դատաւորդ չեմ, և ոչ ալ դատախազդ պիտի ըլլամ. կրնաս համարձակ ըսել ճշմարտութիւնը անանկ մարդու մը, որ աշխարհքիս և դատաստանական բաներու փորձ ըլլալով, կրնայ քեզի այդ գժպատեհ կնճիռէն ազատելու կերպը սորվեցնել։

Իմ անմեղութիւնս կրկին և կրկին ապահովցնելուս, իրաւցնէ ըսածներուս ճշմարտութեանը համոզուիլ մը ցուցուց։ Երկայն ատեն նայեցաւ ինծի, և մէկ ձեռքը գլխուս վրայ դնելով, ըսաւ. Ոչ, քու երեսդ յանցաւորի և մարդասպանի երես չէ։ Կը հաւատամ քեզի, աղնիւ մանուկ, կը հաւատամ

քեզի. դուն անմեղ ես, և թերևս դուն ես դիպուածին և կամ ամբարիշտի մը, որ իր գլուխը ազատելու համար, զքեզ կ'ուզէ կորսնցնել: Բայց ինծի ճշմարիտը ըսէ համարձակ. դուն գիտես ով քու տէրդ թունաւորեց:

Այս հարցմունքը զիս բաւական նեղը ձգեց. զոր ինքն ալ իմանալով, մէկէն վրայ բերաւ. Մի վախեր որ ես ուզենամ քու վստահութեամբդ շահիլ, զքեզ կորսնցնելու համար, թէ և յանցաւոր ալ ըլլաս: Ոչ, իմ արուեստս՝ ամբաստանողի արուեստ չէ. Թերևս ես ալ քեզի չափ գիտեմ. միայն կ'ուզեմ ամեն տարակոյս փարատել: — Հանդերձ այսու, դեռ ես վարանելով կեցեր էի, և չէի կրնար հաւանիլ՝ ամեն գիտցածս իրեն յայտնելու: Այն ատեն այս խորհրդաւոր մարդը աչքերը չորս կողմը դարձնելով, իբրև թէ ապահովելու համար թէ արդեօք մինակ ենք, ինծի մօտեցաւ և ձայնը ցածցնելով, սաանկ խօսեցաւ. — Մտիկ ըրէ, տղաս. ես կարծեմ որ քու տիրոջդ մարդասպանը կը ճանչնամ. ես անուն մը տամ, և քու ըսելիքդ միայն այո կամ ոչ ըլլայ: Ցանձն կ'առնուս: — Այո, պատասխանեցի, կ'առնում յանձն: — Աղէկ ուրեմն. այս մարդասպանը Գաւաոիի կոմսն է: — Այս անունիս, հրախառն փայլակ մը բորբոքեց երեսս բարկութեամբ և այլայլութեամբ. աչքերս խոշոր մը բացի և քարանալով դիմացինիս վրան տնկեցի: — Է՛հ ուրեմն, ինչ կը պատասխանես. այո թէ ոչ: — Այո, կրկնեցի սոսկմական և դողդղացկոտ ձայնով մը, այո, իմ թշուառ տիրոջս մարդասպանն անիկայ է, և ոչ ուրիշ մը: — Իրմէ առած պատասխանս՝ սովորական հեգնական ծիծաղն եղաւ:

Երկայն ատեն լուռ կեցաւ, և ծանր մտածութեանց մէջ ընկղմած կ'երևար: Ես չէի համարձակեր զինքը իր մտածութիւններէն մէկդի կեցընել: Ինծի համար միշտ աւելի խորհրդաւոր կ'ըլլար այս մարդը. Գաւաոիի կոմսին իմ տիրոջս մահուան պատճառն ըլլալը ինչպէս գիտէր. արդեօք կը ճանչնայ զինքը, թէ ինքն ալ այս ատակալի չարութեան գործակից է: Այս հարցմանցս ինչ պատասխան տալ չէի գիտեր: Ցանկարծ կը կենայ, ձեռքերը իրարու վրայ՝ կուրծքը դրած, վայրկեան մը կը նայի ինծի այնպէս խոր և հետազօտ աչքով մը, որ ամենագաղտնի իմիններս վար խոնարհեցնել. այնչափ զօրութիւն կ'ազդէր ինծի իր սուր և թափանցող նայուածքը: Վերջը սկսաւ, լեր՝ բայց միանգամայն ազդու ձայնով մը ըսաւ ինծի. — Որդեակ, ինծի մտիկ ըրէ: Անհրաժեշտ շատ տարիներ թիաւորութեան պէտք դատապարտուեր: — Այո, ես ալ ծանր դատակնիք մը ընդունեցայ: Բայց կ'անցնին տարիները, կանչեց տաքութեամբ մը, և բանտի մէջ ալ կ'անցնին: Գիտի իմանայ անիկա, որ այնչափ անարդարութեամբ զիս հոս նետեր խաթեց: — Վերջը ինծի դառնալով հարցուց. Որդեակ, քանի տարեկան կաս: — Ցասը: — Ցասը՝ տասն ալ քսան կ'ընէ: Շատ աղէկ: — Ես չէի իմանար որ ինքը բանիկաւ ըլլայ. և հաճութեամբ մը կը կրկնէր. Ցասը, տասն ալ քսան կ'ընէ. շատ աղէկ: Ցասը տարին շուտով կ'անցնի: Որդեակ, զօրացիր. տասը տարիէն վերջը դուն ծաղիկ հասակիդ մէջ ես, մինչդեռ ես ծերանալու մօտ կ'ըլլամ: Բայց փոյթ չէ. ես իմ խելքս և փորձառութիւնս քեզի համար կը ծառայեցնեմ, դուն ալ քու բազուկդ և զօրութիւնդ ինծի համար կը գործածես: Կ'ընդունիս այս փոխադարձութիւնը, կը խոստանաս որ մեր համաբանկաց վրէժխնդրութեան ատակալի օր իմ ամենավստահութեանս հետեւիս:

Այս ատակութեամբ և ցասմամբ զուրցուած խօսքերուն չկրցայ բան մը պատասխանել, որոնք սրտիս մէջ խոստովանելի կերպով արթնցուցին այն ատելութեան և դաւաճանութեան զգացմունքները, զոր այնչափ ատենէ 'ի վեր կը զգայի, և որոնք այն հալածումէն՝ կարծես թէ առաջինէն աւելի բուռն և ուժգին կերպով եռացին: Ես անսա-

բակոյս բարկութեամբ և զայրացմամբ բորբոքած աչքերով անշարժ իրեն երեսը նայեցաւ. և ինքը իմացաւ և ըմբռնեց մէկէն որ իր առաջարկութիւններն վրաս խոր տպաւորութիւն մը ըրեր էին: — Ըսէ ինծի, կանչեց յանկարծ. դու ալ թշնամի մը ունիս, և արդեօք տասնակ կը ցանկաս իրմէն վրէժ առնելու: — Այո, կրկնեցի լալով. Ինչպէս իմ սիրտս կը կարդաս: — Մի լար, որդեակ իմ, մի լար: Հանգիստ կեցիր մանաւանդ. տասը տարին կ'անցնի, և երկուքնիս ալ լոմին մեր վրէժը համած կ'ըլլանք: — Երկուքնիս ալ, հարցուցի մէկէն. բայց դու հեռու ինչ ընելիք գործ ունիս: — Որչափ որ դու չես կարծեր: Քու թշնամիդ՝ նաև իմս ալ է. այն զօր ես անհրաժեշտ կ'ուզեմ կործանելը, նոյնն է ուսկից դու կ'ուզես վրէժ խնդրել: — Աղէկ ուրեմն, ըսի. Ինչ է թշնամիդ անունը: — Դու ինքնին կրնաս ըսել զայն. քու հակառակորդիդ անունն է: — Կարելի բան է: — Այո, քու թշնամիդ՝ նաև իմս է. այն որ տասը տարիէ ի վեր ձեռքովը ղեկի էինայ, Պաւոլի կոմսն է: —

Այս լսելուս՝ ափշած մնացի: Այս անհասկանալի մարդը երթալով ինծի համար անիմանալի և խորհրդաւոր բան մը կը դառնար: Ի՞նչպէս կրնայ ասիկա, կ'ըսէի մտքէս, իմ Պաւոլի կոմսը մահացու կերպով ատելս գիտնալ, մինչդեռ ես բնաւ մէկու մը չեմ յայտնած: Բայց ով է ասիկայ, ուսկից կու գայ, ինչ կը մտածէ, և ինչու ինքն ալ իմ թշնամիէս կ'ուզէ վրէժ խնդրել: Մինչդեռ այս հարցմունքներս կ'ընէի, մէյ մ'ալ եկեղեցւոյն զանգակին տխուր և դանդաղ ղանջիւնը կը լսուի: Իմ ընկերս այն ձայնը լսելուն, իր ընկղմած խորունկ մտածութենէն կը սթափի. ձեռքէս կը բռնէ, և աչքերը դրեթէ դուրս ելած՝ կը կանչէ. Ուրեմն, որդեակ իմ, միասնեղ վրէժնիս կը հանենք: Երդուընցիր Լամբերտին գլխոյն վրայ, որ հիմա դահճին տապարին տակ իյնալու վրայ է:

# ՄԱՐԴԸ

(Տես երես 250)

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

### ԱՐՈՒԵՍՏԱՒՈՐԸ ԵՒ ՏԱՆ ՇԻՆՈՒԹԻՒՆԸ

### Ա

Հողը ամեն էակի հայր է, ամենայնի ծնող: Իրմէն ծագեցաւ ամենայն մարմին և հլութեամբ 'ի նոյն դարձ կ'ընէ: Ամենուն սրտին մէջ լռելեայն կը խօսի ու հաւասարութիւնը կը դուրցէ. բայց և այնպէս թշնամութիւնը, հակառակութիւնը վերցընել չկրնար: Վասն զի, թէպէտ ամենք եղբայր և եղբայրակից են՝ օրէնք մը կայ գարանակալ, որ բաժանումը և ապականութիւնը՝ անհրաժեշտ պայման մը կը համարի էութեան:

Բայց և այնպէս, բարերար հաստատակշռութեան մը վախճանաւ, ամենայն էակ՝ այս օրինաց հակառակելու համար ընդունած է 'ի բնութենէ յատուկ իմացական շառաւիղ մը: Անով իր գարանակալաց դէմ կը զգուշանայ և անձնական էութիւնը կը պաշտպանէ: Էակի մը կենաց պաշտպանութեան առաջին և ամենաբնական պայմանը՝ բնակարանի մը պարապայց ապաւէնն է. տեղի անքոյթ թշնամեաց արշաւանքներէ, և վայր հանգստեան ընդդէմ անձրևաց, հողմոց և ցրտոյ:

Այս հասարակաց բնածին հակամիտութեանը կը հետևի նաև մարդը: Իր քրտամբը կանգնած բնակարանի մը որմոց մէջ ամփոփուելով, կ'անհետանայ ամեն աչաց: Թշնամին կը հասնի անոր սեմոց առաջքը. վեր վար կը դառնայ. չորս կողմը կը շրջի. մուտք մը կը փնտռէ. անօգուտ աշխատանք: Մետաքսեայ պարիսպ մը անջրպետ է 'ի մէջ հալածեալն և հալածչին:

Այսպէս մէջը ապաւինած մարդը, ինքզինքը կը պահպանէ. այլ և միանգամայն, իբր արթուն պահակ, ուշա-

դիր կ՚ըլլայ, կը սպասէ որ որս մը իր պարապին քովէն անցնի, կամ բնակարանին շրջակայքը Թափառի։ Իսկ բորդի մը պահապան՝ հազիւ Թէ զգայ որ ցանկապատին մերձեցող կայ, դուրս կը յարձակի յանկարծուստ, և անզգոյշ Թափառողը գերելով՝ բնակարանը կը տանի, ուսկից անկենդան կ՚ելլէ։

Բ

Ըստ այլ և այլ սարդից կը տեսնենք որ ճարտարութիւնը երԹալով կը կատարելագործուի. և կարծես Թէ ուշադիր մտածութիւնը պիտոյքը կը կշռէ, բնակարանին այլ և այլ մասանց բաշխումը ըստ ճարտարապետական օրինաց գործադրելով։ Այսպիսի է այն տեսարանը որ կը ներկայացնեն մեզի մէկքանի տեսակ սարդք գլխաւորապէս։ Իսկ ճշմարիտ ճարտարապետ, ուսեալ ոչ դպրատան մը ճշգրիտ վարդապետութեամբք, այլ նովին իսկ բնութեան անսխալ դասատուութեամբ, գործաւորը՝ իր բնակարանին հիմունքը դնելու առեն, անոր ծառայութեան վախճանը կը դիտէ։ Ուստի և ուշադիր դիտողութեամբ կը տեսնես նախ գաւիԹ մը, որ ձագարաձևի մը լայն կողմն է. յետոյ կու գայ հարսին կամ փեսային սենեակը, տեղի հանգստեան և ապաստանի։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և ոմանք դարձեալ կանխազգուշակ իրենց պիտոյից, գիտեն որ իրենց բնակարանին մէկ անցքը բաւական ապահովութիւն մը չէ։ Վասն զի Թէ որ զօրաւորագոյն Թշնամի մը բնակարանը պաշարելով մուտքը գրաւէ, և կամ աւելի յանդգնելով զայն բռնաբարէ, ուսկից կրնան օգնութեան ձեռք մը յուսալ։ Թող որ ըստ պիտոյից հարկ է նաև համառօտագոյն ճամբայ մը փնտռել որսին վրայ յանակնկալս իջնալու համար։

Պէտք է ուրեմն ուրիշ միջոց մը մտածել աւելի զգուշաւորութեան համար. և այս միջոցը՝ երկրորդ անցք մըն է որ միւս հակառակ կողմը կը պատասխանէ. ծառայելով ըստ դիպաց ելԹէ իբր ելք և ելԹէ իբր մուտք։

Այլ այն որ դեռ ևս զարմանալի կը գտնենք ոմանց սարդից վրայ, է այն բնազդման լոյսը՝ որ դրան մը գիւտին կը մղէ զանոնք։

Հոս կարծես Թէ սարդից տեսակը կատարելագոյն քաղաքականութեան մը կը դիմէ։ Ոչ միայն ապահով ու հանգիստ բնակարան մը կը պատրաստէ, ուր աշխատութենէ ետքը գլուխը հանգչեցնէ, այլ և դռնակով մըն ալ կ՚ամրացնէ, դռնակ՝ որ ծխնիի մը վրայ կը շրջի։ Զգուշութիւն զարմանալի, որուն վախճանը անշուշտ կ՚ըմբռնէ։ Այդպիսի կանոնաւոր երևոյթ մը, և ոչ իսկ բարձրագոյն կենդանեաց վրայ կը տեսնենք. և սակայն սարդը ամենափոքրիկ էակներէն մէկն է։

Գրաւիլ մանր սարդ մը կայ, որ իր բնակարանը անմիջապէս ոստայնին կեդրոնը կը կախէ։ Երբ կը տեսնէ որ վտանգ մը կը սպառնայ իրեն, կամ Թշնամի մը զինքը կը դիտէ, շուտ մը բնակարանը կը փութայ, ու հազիւ Թէ մէջը կը մտնէ, անմիջապէս դռնակ մը վրան կը գոցուի։

Ահա ինչպէս տրամադրեալ է այն էակը, որուն ճակատագիրը կարծես Թէ անիծից օրէնքով մը վճռեալ է։ Միշտ մենաւոր, առանձնակեաց, իբր ազգատեաց՝ իր նմանէն կը փախչի։ Ամեն զին իր կենաց դարանակալ կը տեսնէ. և նոյն իսկ իբր Թշնամեաց մը, իր ազգակից եղբօրն արիւնը ծծելու չխնայեր։ Երկչոտ և վատասիրտ, բնակարանի մը պէտք ունէր. բոյն մը՝ ամենայն զգուշութեան միջոցներով ամրացուցած։

Գ

Միգալ և իր բնակարանը։

Միգալք՝ սարդից մէջ ամենահռչակաւորներն են։ Ասոնց ազգը խառն կը բովանդակէ մեծագոյն և մանր, զօրաւորագոյն և անզօր սարդեր։ Բայց ըն-

նուազումը, այն առաջնորդ գաղտնի զօրութիւնը, որ անբան կենդանեաց գործոց ուղղիչն է, անանկ ճարտարութեան մը ընդունակ կ'ընէ զիրենք, որ անզօրին տկարութիւնն ալ անով կը քօղարկի։

Ասոնց մեծագոյնները Ամերիկա կը գտնուին. անանկ արտաքոյ կարգի մեծութեամբ, որ սրունքներն երկնցուցած՝ ուժը ինը բթաչափ տրամագծով բոլորշի միջոց մը կը գրաւեն։ Բնակարաններն՝ թռչնոց բոյն կը նմանի, որ ծառոց և ուրիշ խորշերու մէջ կը շինեն՝ և ծառոց ճիւղերուն վրայ թափառելով՝ մինչև մանր թռչուններ ալ կ'որսան։

Ասոնց փոքրագոյն տեսակները մեր կլիմաներուն ալ կը գտնուին, և առջիններուն նման՝ գիշերները կ'ելլեն կը թափառին ապրուստնին հոգալու համար։

Բնակարաննին գետնի տակ կը շինեն. խորունկ ծակեր կը բանան, չորս դին մետաքսահիւս մագաղաթ մը կը պատեն, բերանը դռնակ մը կը յարմարցընեն, և իբր մենակեացք՝ ցորեկը մէջը կը ճգնին։

Դ

Տեարք առանձնութեան. Թողունք որ հանգիստ ապրին։ Աշխարհքս մեծ է և գրաւած տեղերնին ոչինչ։

«Ի՞նչ նեղութիւն կու տամ քեզի, անգութ», — կարծես թէ ըսել կ'ուզէ, երբ տունս խնայելու, իր բնակարանէն զրկելով զինքը, կերպարանքը նայիմ. — «Ի՞նչ զրկում կամ վիշտ քեզի կը հասցնեմ։ Տգեղ եմ, իրաւ է. բայց դու զօրաւորդ՝ ի՞նչ իրաւամբ զիս ոտքի տակ կ'առնես, երբ ես քեզի չեմ մեղանչեր։ Անհանդուրժելի է տեսութիւնս, կ'ըսես. բայց անոր համար ալ քեզնէ կը փախչիմ. խաւարը կ'ընտրեմ որ քեզ չզզուեցնեմ։ Եւ է՞ արդեօք բաւական պատճառ արտաքին պատրողական երևոյթ մը, մահագոյժ դատապարտութեան մը համար, երբ շատ անգամ սև մորթի մը տակ ազնուական սիրտ մը կը բաբախէ։ Մի և նոյն է այն պատճառը որ հաւասարապէս երկուքներնուս ալ կենաց լոյսը պարգևեց, զքեզ՝ ազնուագոյն տէր կարգեց, զիս՝ անարգ ստորաքարշ. սակայն ամենն ալ անոր պարգևն է։ Մի՛ ապերախտիր և մի՛ անգթանար ստորնագունից վրայ, որ քեզի վնաս մը չունին։» —

Այս ամենայն լռելեայն կը զուրցէ. ցած և չլսուելու ձայնով մը սրտիս կը խօսի, ազատութիւն և գթութիւն պաղատելով։ Բայց հետաքրքրութիւնը քօղարկելով սրտիս բնական զիջողութիւնը, զիս քննութիւններէ՝ հարցմանց կը մղէ։ — «Համբերէ, կ'ըսեմ, էակ հալածանաց. քիչ մը ինծի ուշ դիր. հարցընեմ, պատասխան տուր. մի՛ վախնար ինծմէ. չե՞ս տեսնար յիս բարեկամ մը։» —

Կը նայիմ կերպարանքին. ափսոս. կը խօսի, բայց ամեն բան չզուրցեր. կամ թէ կը զուրցէ՝ բայց ես չեմ հասկընար։ Կը մերձենամ ձեռքովս. ի՜նչ սարսափ, ի՜նչ տագնապ։ Փախուստ կը փնտրէ և փախուստ շտապողական։ Ալ յիս բարեկամ չտեսներ. այլ թշնամի, և թշնամի խիթալի։ Ա՜յնչափ երկիւղալի է ուրեմն ձեռքի մը շարժմունքը. այնչափ կասկածելի մատի մը մերձաւորութիւնը։

Ճշմարիտ է որ ձեռքի մը շարժմանը վրայ հաստատեալ է կենաց շնորհքը կամ մահու պատիժը. բայց այն՝ իշխանաւորաց նկատմամբ։ Իսկ զիս ո՛վ իշխան կարգեց այդ ձրից։ Եթէ բնութեան ձայնին ուշ դնեմ, այսպէս կը գոչէ յիս. «Ես գթութեան տէր դրի զքեզ։»

Հարկ է ուրեմն որ առանց շարժման նստիմ սարդիս առջին. հարկ է լռելեայն դիտեմ զինքը. տեսնեմ իր շարժմունքները. լսեմ անոր անձայն բարբառը, և անձայն ակնարկութեամբ մը իմաստասիրեմ անոր խօսակցութիւնը։

## Ե

— « Ինծի՛ կը նայիս հետաքրքրաբար. զիս կը դիտես ուշադրութեամբ. դիտէ՛ և հասկցի՛ր Բարձրելոյն իմաստութիւնը։ Կերպարանքս չխաբէ զքեզ. ամենայն մարմինք 'ի հողոյ ստեղծեալ են. նման և հաւասար են իրարու. բայց արտաքին երևութով մէկմէկէ կը տարբերին։

« Եթէ կեանքս գիտնալ կ'ուզես, պարզ է։ Այն ճակատագիրը որ զքեզ աշխարհք ձգեց ու լուսոյն սիրցուց, նոյնը զիս ալ գիշերային զբօսանաց տրամադրեց։ Բնակութիւնս հեռի 'ի շփոթից, հեռի 'ի խռովարար ընկերութեանց կ'ընտրեմ. և այն ալ պարզ և անզարդ. բայց հանգիստ և ապահով, ուր անհոգ հանգչեցունեմ գլուխս։

« Ի՞նչ պէտք են մեծաշէն ապարանից խուռն զարդարանքները անոր՝ որ իր նմանեաց ընկերութենէն իսկ կը փախչի. ծակ մըն ալ շատ է այնպիսւոյն։

« Բայց կը հասկընամ. անունս գիտնալ կ'ուզես. գիտցի՛ր ուրեմն որ զիս Որմնադիր Միկալ[1] կը կոչեն. ճարտարութիւնս է որ զիս այդ անուանակոչութեան արժանի ըրեր է։

« Եւ համառօտ այս է արուեստիս պատմութիւնը։ Բնակարանի մը պէտք ունիմ. 'ի խնդիր կ'ելլեմ գետնի մը, խոտերէ մերկ և քիչ մը բարձրկեկ, որ անձրևի ջուրը չկարենայ յարկս ծածկելով բնակարանս թափանցել։ Մէկ կամ երկու ոտք խորութեամբ խողովակ մը կը փորեմ, միշտ մի և նոյն տրամագծով, և այնչափ լայն՝ որ առանց նեղութեան մէջը կարենամ շարժիլ։

« Բայց գիտես որ հողը անհաստատ՝ կրնայ խողովակին հողերէն թափթըփիլ ու կամաց կամաց բնակարանս լեցընել։ Այս անպատեհութիւնը արգիլելու համար, կոշտ կերպով ոստայնի խաւով մը կը հիւսեմ խողովակին չորս դին, և այն խաւին վրայ ուրիշ խաւ մըն ալ կը ձգեմ, փափկագոյն և մետաքսակերպ։ Այս կերպով հողին խստութիւնը, ներս դուրս ելած մտած ատեն, չկրնար փափուկ մարմնոյս վընասել։ Այսպէս է որ ինծի հանգիստ բնակարան մը կը պատրաստեմ, մաքրափայլ մետաքսապատ որմերով։ »

— « Աղէկ, ըսի մտքովս, բնակարաննիդ հանգիստ ու մաքուր ըլլալը կ'ընդունիմ. բայց եթէ երբեք քունդ խոր կոխէ, չիմանաս որ թշնամի մը մօտ կայ ու ներս կը մտնէ զգուշութեամբ, ինչպէս կրնաս ազատիլ անոր ճանկերէն։

— « Մի՛ տարակուսիր, պատասխանեց լռելեայն. ատոր ալ դարմանը սորվեցուցած է ինծի բնութիւնը։ Նախ բան մը չկրնար հանդիպիլ բնակարանիս մօտ որ ես չիմանամ. վասն զի, թէպէտ և բնակարանիս խորը ըլլամ, այն մետաքսահիւս որմին վերէն 'ի վար մտակերպութիւնը իբր հաղորդիչ ելեքտրական թել մըն է՝ որ ամենայն ձայն ինծի կը հասցընէ։

« Սակայն զգայարանացս միայն չեմ վստահիր. կայ ուրիշ միջոց մը որ 'ի գործ կը դնեմ՝ բնակարանիս մուտքը պահպանելու համար։ Այդ միջոցը բընակարանիս հետքը բոլորովին անհետ ընելն է։ Արդ մտիկ ըրէ։ Եթէ Միկալի մը բնակարանը գտնել կ'ուզես, մեծ ուշադրութեան կարօտ ես։ Թերևս աչքիդ դիմացն ալ ըլլայ, և դու չիմանաս։ Այն հողին երեսը որ կը կոխես՝ թերևս այլ և այլ բոյսեր կը պարունակէ, և սակայն տեսութենէդ կը փախչին։ Եւ գիտե՞ս պատճառն ինչ է. դըռնակ մըն է, բոլորշի հատուածիկ մը, որ շրջապատող հողէն չիզանազանիր. խորամանկութեան միջոց մը՝ որով մեր թշնամեաց խորամանկութեանը կը պատասխանենք։

« Մտածէ մէյմը զիս որ բնակարանիս խողովակին հիւսուածքը լմնցուցած, անոր դռնակը պէտք հիւսեմ, յարմարցնեմ։ Երկայն գործողութիւն

1 Գղ. Mygale maçonne.

մըն է և ձանձրալի. բայց կենաց արեւուն համար՝ կ'աժէ ամենայն աշխատանք և ձանձրութիւն:

«Կլոր մուտքը՝ կլորաձև խփիկ մը պիտոր գոցէ: Այս կլորաձև խփիկը գետնին հաւասար է, և հողով անանկ ծածկած՝ որ քովի գետնէն չորոշուիր: Իսկ որ զարմանքդ բերէ պիտոր անշուշտ, երեսուն կարգ ոստայնով հիւսուած է վրայէ վրայ շարուած, և իւրաքանչիւր կարգին մէջ ալ կարգ մը բարակ հող: Ասով մէկ դռնակը վաթսուն գռնակէ բաղկացեալ կրնայ զուրցուիլ:

«Բայց աւելի զարմանալին, որ ոչ արուեստը և ոչ ժամանակի փորձը ավլեցուցեր է, դռնակիս ծխնին է: Այն երեսուն խաւ ոստայնը որով դռնակս բաղկացած է, մուտքին մէկ կէտի վրայ առանձին առանձին յարեալ են: Ասով տեսակ մը զսպանակ կը ձևանայ, հիւսուածքին առաձգականութեամբը, որ դռնակը բացուելով՝ թողուածին պէս՝ նորէն առաջին դիրքը կը դառնայ:

«Եւ այնպէս ճիշտ կը գոցէ կլորաչէն մուտքը, որ շատ դժուարաւ կրնայ որոշուիլ: Վասն զի դռնակը գլխիվայր դարձած կէս կոնաձև մը կը նմանի, որուն լայն կողմը քիչ մը շրթունք կը ձևացնէ. մուտքն ալ անոր համապատասխանելով քիչ մը ձագարաձև է: Խփիկը մուտքին վրայ իյնալով, ճշգիւ անոր շրթունքները կը շօշափէ:

«Կը զարմանաս համբերող երկայնմտութեանս վրայ. արդար է: Կեանքը գանձ մըն է որուն համար ամեն բան կը զոհուի. բայց դեռ ինծի ուշ դիր:

«Թէպէտ դռնակով մը ամրացած հանգիստ եմ բնակարանիս մէջ, բայց ապահով չեմ թշնամեացս խորամանկութենէն ազատելու: Կրնայ ըլլալ որ թշնամի մը բնակութեանս հետքը գտնայ. և այն ատեն ոչինչ բռնութեան մը առջին դռնակս տեղիք կրնայ տալ ու գիս մատնել: Բայց այս վտանգին դէմ ուրիշ միջոց մըն ալ ունիմ. սողնակ մը որ ծխնիին հակառակ կողմը կը պատասխանէ, գիս վտանգի ատեն կը փրկէ:

«Այդ սողնակը ոչ երկաթեայ է և ոչ փայտաշէն, այլ ճապուկ, դիւրաթեք մարմին մը. միով բանիւ ես՝ ճանկերովս ու ծնօտիկներովս:

«Դռնակիս ներքին երեսը կորընթարդ է, և ոստայնի ամուր հիւսուածքով մը պատած: Ծխնիին հակառակ կողմը երեսունի չափ ծակտիքներ կան: Երբ վտանգը զգամ, երբ թշնամւոյն մերձաւորութիւնը իմանամ, ես կ'ըլլամ կենդանի սողնակը: Թաթերուս ճանկերը մուտքիս կողերուն մէջ կը խոթեմ, ու թաթերուս առջի զոյգը և ծնօտիկներուս կեռերը խփիս ծակտեաց մէջ մխելով, զայն ինծի կը ձգեմ բոլոր զօրութեամբս: Շատ զօրաւոր պիտոր ըլլայ թշնամիս որ կարենայ ինծի յաղթել»

«Բայց 'ի սէր ճշմարտութեան այս պէտք է զուրցեմ, ոչ միայն ինծի համար այլ և բոլոր ազգայնոցս նկատմամբ, որ ցորչափ բնակարանի մը մէջ ապահովցած ենք, զօրաւոր ենք և կըտրիճ պատերազմողք. բայց վայ մեզի եթէ բնակարանէ դուրս ձգուինք. ալ անկէ ետքը ամեն էակներէ վար մենք կ'ըլլանք, և առանց ընդդիմութիւն մ'ընելու թշնամւոյն զոհ կ'ըլլանք:»

— «Ճշմարտախօս էակ», պատասխանեցի այս ետքի խօսքերուն, դաշն ձայնով, «կը տեսնեմ որ տկարութիւնդ խոստովանելու չես քաշուիր. քեզի անարգանք չես սեպեր այն՝ որ երկչոտ բնութեանդ հետեւանք է. և ոչ անօտի միջոցներով և ստութեամբ կ'ուզես ծածկել այն պակասութիւնը, որուն մէջ յանցանք մը չունիս: Յայտնի է ինծի ըսածիդ ճշմարտութիւնը՝ ազգակցացդ գերութեանը ականատես եղած ըլլալուս:

— «Բայց նաև մեր ազատութեանը մէջ ալ, դիմաց ակնարկութեամբ մը կը պատասխանէր, երկչոտ և վատասիրտ էակներ ենք: Թեթև շօշափմամբ մը, ամուր աղաղակով մը կամ աղմուկով մը, սրտերնիս կը լքանի. և ինչ-

պէս թէ ջղային տռաձգական զօրութիւննիս կորսուած, անդամալուծեալ և իբր մեռեալ՝ վերէն վար կը թօթափինք, մեր մարմնոյն ծանրութեամբը. և գետնի վրայ իբր կայծակնահար՝ անշարժ կը մնանք։

— «Այդ շատ անգամ դիտած եմ, պատասխանեցի. փորձով գիտեմ որ այդ կեղծաւորական միջոցով փախուստ կը խնդրէք ձեր թշնամեաց ճիրաններէն։ Եթէ այդպէս վերէն վար իյնալով խոտերուն մէջ խառնուիք, անոնց փնտռելու աշխատանքը դերև կը հանէք. իսկ եթէ հողուն վրայ մանր կոշտերու հետ շփոթիք, ձեր անշարժութիւնը անոնց սրատես աչքը ստէպ կրնայ խաբել։

— «Այդ այդպէս է. որովհետև ամեն էակ, որչափ ալ զօրաւոր երևնայ՝ իր տկար կողմն ունի, մինչդեռ բնութեան հրաւամբ զտկարը կը ջնջէ, ինքն ալ շատ անգամ տկարին խորամանկութեանը զոհ կ՚ըլլայ։ Միով բանիւ տկարը զօրաւորագոյն զէնք մը չունենալով իր զօրաւոր թշնամեաց դէմ դնելու համար, խորամանկութիւնը ստացած է 'ի բնութենէ, որով զօրաւորին առջին ահարկու կ՚երևնայ։

— «Ուրեմն դու ալ խորամանկութիւնն ու խաբէութիւնը այդ պատճառաւ քեզի զէնք առեր ես որ տկարութիւնդ քօղարկես։ Եւ արհամարհութիւն չե՞ս սեպեր այդպէս հաւաստի պակասութիւնդ խոստովանելու։

— «Ոչ. եթէ իրական պակասութիւն մըն է 'ի բնութենէ ստացեալ և ամենուն յայտնի, անօտի է և յիմար անոր վրայ ստութեան քօղ մը ձգելու ջանալ. անով ոչ աչաց տկարութիւնը կ՚ուղղուի և ոչ մտաց կորովը։

— «Խոհեմ էակ, պատասխանեցի, իմաստութեամբ քան զբազումս կը գերազանցես դու։» —

Զ

Այդ Միկալը՝ ճշմարիտ համբերութեան օրինակ մ՚է։ Իր ողջոյն կեանքը՝ բոյնն է, կրնանք ըսել։ Փորձէ՛ փորձէ մէյմը անոր բնակարանին դռնակը բանալու. զինքը անմիջապէս քովը կը գտնես՝ որ ամենայն զօրութեամբը անոր հաստատուած՝ գոց բռնելու կ՚աշխատի։ Ստէպ ընդհատէ փորձդ, հարիւր անգամ դարձիր. կը տեսնես որ անխոնջ և առանց լքանելու իւրաքանչիւր անգամուն բոյնին խորէն դռնակին պահպանութեանը կը յարձըկի։

Փորձէ մէկ կողմանէ խփիկը բանալու ջանալ, միւս կողմանէ բոյնին չորս դին փորել, բոյնը վերցընելու տանելու համար. համբերող կենդանին իբր արի պահապան՝ անշարժ դռնակին քովը կը մնայ։ Ցորչափ դռնակը գոց է՝ բանէ մը երկիւղ չունի։ Միայն երբ դռնակը բռնութեան տեղիք տալով կը բացուի ու լոյսը մէջը կը թափանցէ, այն ատեն է որ բոյնին խորը կը փախչի։

Կտրիճ է ցորչափ բոյնին մէջ խաւարով պատսպարեալ է. բայց մէյմ՚որ բոյնէն դուրս ձգուի, կը կորսուցնէ բոլոր այն կտրճութիւնը՝ որ բոյնը պաշտպանելու կը գործածէր։ Լուսով՝ կը լքանի. ու հազիւ թէ կաղ 'ի կաղ քանի մը քայլ կրնայ ընել. ինչպէս թէ զինքը շրջապատող տարրը՝ բոլորովին օտար ըլլար իր բնութեանը։

Ուստի և գիշերային կը կարծուի. վասն զի ոչ երբեք տեսնուած է որ ինքնակամ բնակարանէ դուրս ելլէ ցերեկ ատեն։ Գիշերն է իր զբօսանաց և աշխատութեան ժամանակը. այն ատենն է որ բոյնին շինութեանը կը զբաղի. և դարձեալ գիշերուան մութին պաշտպանութեամբն է որ կ՚ելլէ իր կերակրիկը փնտռելու։

Իր բնակարանին մօտերը գետնին երեսը՝ այլ և այլ ոստայններ կը հիւսէ. անզգոյշ միջատները մոլորելով՝ անոնց մէջ կը բռնուին, որոնք ժողվելով՝ իր քաղցը կը յագեցնէ։ Նաև բոյնին մէջ ալ կը կրէ կ՚ուտէ. ինչպէս որ ստէպ գտնուած են անոր խորը այլ և այլ միջատաց, նաև մեծ պատենաթևից մնացորդք։

Կը շարունակուի։

## Բարեբանութիւն և աղերս առ սուրբ կոյսն։

Եթէ օգոստոս ամիսը մեր Նաւասարդի տարեդարձը կը յիշեցնէր և հին ժամանակի ազգային աւուր պատշաճ տօնական հանդէսները, միանգամայն մեծ հոգեւորական տօն մ' ալ առջենիս կը բանար՝ որ է մեր երկնաւոր գորովագութ մօրն ու Աստուածամօրը 'ի փառս իւր վերափոխիլը, որ մեր ազգին մէջ Տիրամօր ամեն տօներուն մէջ ցանկալին և փառաւորը սեպուած է, ինչուան առանձին յատկադրոշմ յորջորջմամբ Աստուածածին ըսելով՝ Ս. կուսին վերափոխման տօնն իմանալ. մենք առաջնոյն յիշատակը կ'ակնարկէինք անցեալ ամսաթերթով մեր Հայկ դիւցազներգութենէն Նաւասարդի հանդիսին դրուագը դրած ժամանակնիս. բայց երկրորդն ալ անյիշատակ ընել չուզելով, ահաւասիկ այս ամիս՝ որ դարձեալ Տիրամօր ծննդեան տօնը կը կատարէ բովանդակ ուղղափառ եկեղեցին, կը դնենք Բեդրարքա իտալացի անմահանուն բանաստեղծին կենացը ետքի օրերուն մէջ գրած հռչակաւոր զղջական տաղը առ Ս. Աստուածածին, որ քան զամեն առաջին գրածները կը գերազանցէ ըստ կարծեաց բազում քննադատից։

Կո՛յս գեղեցիկ, պըսակազարդ՝ աստեղալից,
Արփիազգեաց՝ որ հաճոյ վեհ գըտար Արփւոյն
Մինչ զ' ի քեզ ծածկել ըզլոյս իւր հաճեցաւ.
Ըզքէն խօսել վառէ զիս սէր յորդորագոյն,
Այլ կարօտիմ յըսկիզբն առնել՝ քոց Նըպաստից,
Եւ Նըմին՝ որ սիրալիր 'ի քեզ հանգեաւ.
Ըզնա կարդամ ես յօգնութիւն՝ որ միշտ լըւաւ
Հաւատով զինքն հայցողաց.
Եթէ երբեք, կոյս գըթած,
Ընդ մահացուաց սիրտ քո աղէտըս յուզեցաւ,
Ունկըն դիր աղերսագին իմս հայցելոյ,
Ցօգնել մարտիս իմ Նայեաց,
Թէպէտ ես հող եւ Դու երկնից իցես դըշխոյ։

Կո՛յս իմաստուն ւ' ի համարոյ ընտրելոց
Երջանիկ ըզգօնամիտ կուսից դասուն,
Նա՛ պարառաջ եւ քան ըզբնաւըս լուսալից.
Ո՛վ ոգւոց վըշտագնելոց վահ՝ աննըկուն
Ընդդէմ Բաղդի եւ Օրհասին բուռն հարուածոց,
Որով յաղթող լեալ եւ փըրկիմք ի վըտանգից.
Ո՛վ անդորրիչ բոցաճարակ զաչացու կրից
Մոլորամիտ մահացուաց.
Ըզմեղմանոյշ բիբըս աչաց՝
Որք տեսին ըզկերպարանս անգութ դըրոշմից [1]
Ցանձկալի անդամս Որդւոյ քում սիրելոյ,

[1] Իմանայ զվէրս Փրկչին։

Տարակուսեալս յիս յառեաց
Առ անհանճարս՝ ի քոյ խորհուրդըս դիմելոյ։

Կոյս ամբիծ, ամենեւին իսկ սըրբափայլ.
Դուստր եւ մայր ազնըւաշուք քում զաւակին,
Որ լուսաւոր զայս կեանս առնես, եւ պըճնես զայն.
Քեւ որդին քո եւ գերագոյն Հօր որդին,
Ո՛վ պատուհան երկնից շըքեղ եւ լուսափայլ,
Եկն ի փըրկել՝ ժամանակացն ի կատարման.
Ում յամենայն հողեղինաց՝ բընակարան
Եղեր միայն Դու ընտրեալ,
Ամենասուրբ կոյս օրհնեալ,
Որ զնախամօրն արդահատես լալեացն ըղձայն.
Արա՛ 'րժանի զիս՝ որ կարողդ ես իւր շնորհին,
Ո՛վ երանեալ միշտ յաւէտ,
Պըսակաւորըդ յարքունիս անդ վերնային։

Կոյս սուրբ՝ լի ամենայն շընորհօք.
Առ իսկագոյն եւ վեհափառ խոնարհութեան
Ելեալ յերկինս՝ ուստ աղօթիցս ունկըն դընես.
Դու ածեր ի ծնունդ զԱղբիւրըն գըթութեան
Եւ զԱրեգակն արդարութեան մըշտաբորբոք՝
Որ փարատէն զախտից մըռայլս հոծ՝ ի յերկրէս.
Ցանկալի անուանս երիս յանձին կըրես,
Մօր եւ Դըստեր եւ Հարսին,
Ո՛վ հրաշափառ կուսածին.
Տիրուհի Թագաւորին՝ որ զմեր պէսպէս
Հալըբըս լուծեալ՝ ծընաւ ազատս եւ երջանիկ.
Որոյ ի սուրբ վէրան հայցեմ
Սըրտիւս, անխաբդ ուրախարար, հանգչել այժմիկ։

Կոյս միայն անհամեմատ սուրբ ի յերկրի
Որ սըրտակաթ գեղովդ զերկինս արարեր.
Ում առաջին ոք կամ երկրորդ չեկաց համագոյն.
Ցամբիծ խորհուրդս ու՛ ի բարի գործըս սըրբասէր՝
Անսուտ բանին՝ եղեր սըրբեալ եւ կենդանի
Տաճար ի կուսութեան լիաբեղուն.
Դու լոկ մարթիս տալ ինձ կենաց զըւարթութիւն.
Թէ յաղօթից քոց հայցուած,
Ո՛վ Մարիամ կոյս գըթած,
Ուր նախ մեղաց՝ լիցի շնորհաց արդ լիութիւն.
Մըտօքս ի ծունըր խոնարհեալ պաղատագին

Հայցեմ լինել առաջնորդ,
կամ ըղձըրահետ վարեալս ուղղել անդր ի բարին:

Կոյս պայծառ եւ անփոփոխ ի յաւիտեան.
Աստըղ յոյս մըրըրկածուփ ալեաց ի ծով.
Վարիչ անվրէպ յուսով զ' անդունդըս նաւելոց:
Տես զիմորդ ալեկոծեալ ամբոխախռով
Տագնապիմ ես անտէրունչ այսպէս միայն,
Եւ մօտալուտ են ինձ վերջին արդ ճիչքն ողբոց.
Այլ զանձն հոգիս իմ հաւատայ քոյդ խընամոց.
Վըհատապարտ ոչ ժըխտեմ,
Այլ ի քէն, ո՛վ կոյս, խընդրեմ
Զի բերկրեսցի մի կորըստեամբս ոստին հոգւոց.
Յիշեա՛, զ' առ ի փըրկել զմեզ ի մեղաց՝
Զգենուլ մարմին մարդկեղէն
Ի կուսական քում արգանդէ՝ յանձն առ Աստուած:

Քանի՜ արտօսր, ո՛վ կոյս, հեղի ցարդ առաջիկ,
Եւ հրապոյրս եւ աղաչանս ո՛րչափ ունայն
Աղիողորմ ի ցաւս՝ ի վիշտս ինձ վըստանգի.
Յորմէհետէ ծընայ զափամբքն Աւսոնական
Այսր եւ անդր հանապազօր լեալ աստանդիկ,
Աւուրք կենաց իմ միշտ եղեն ի տագնապի.
Գեղ մահացու, գործք եւ բարբառ հընչմանց ձայնի
Ըղձոգիս իմ գերեցին.
Կոյս սըրբուհի երկնային
Մի յապաղեր զի մերձ է ամն ինձ վախճանի.
Աւուրք իմ քան ըզկայծակն երագասուր
Անցին ի հոգս եւ ի մեղս,
Եւ Մահ եւեթ ինձ ակն ունի աւուր աւուր:

Ո՛վ կոյս, արդ հող է նա, եւ ըզսիրտ իմ
Յաւեցոյց, որ կենդանեաւն եա արտասուել:
Ի բիւր չարեացս ըզմին միայն ոչ գիտէի [1],
Եւ ի գիտել՝ որ ինչ եղեւ հարկ էր լինել.
Զի այլ կամք իւր ամենայն մահ էր վասն իմ,
Եւ վասն իւր եղեռնաւոր անուն վատի.
Օ՜ն, Տիրուհի Երկնից, ո՛վ մերս Աստուածուհի,
(Թ՛ է ասելի եւ օրէն).
Քեզ ամենայն յայտնիք են.

1 Ծանուցանէ այսու զաղէտս թշուառութեան իւրոյ, յորժամ հարկաւ էր յանչափս 'ի սէր Լաւրա օրիորդին:

Եւ զոր ոչ ոք, Նոյս վեհափառ, առնել մարթի,
Ոչինչ իմն է առ մեծազօր քո զօրութեան.
Ի ցաւուցս իմ գերծո զիս,
Զ՛ ինձ փրկութիւն եւ քեզ լիցի պատիւ անուան ։

Նո՛յս կարող, ի քեզ յուսամ ամենեւին,
Զի եւ կամիս լինել ի պէտս ինձ օգնական.
Մի՛ զիս թողուր ի վերջին հեռս տարընփոխիս.
Մի՛ հայիր յիս՝ այլ Որ ըստեղծ զիս ինքնակամ.
Ոչ արժանեաւս՝ այլ պատկերաւն իւր երկնային
Որ յիս կրրեմ՝ ողորմեսցիս ինձ վատթարիս.
Մեղուսա եւ կամք մոլար՝ արարին զիս
վէմ՝ հոսեցող սին հիւթոց.
Դու, Նոյս, սրտիս ի խորոց
Բղխեցո՛ սուրբ արտասուս եռանդնալիս.
Զի ջերմագին գոնէ լիցէ արտօսրն յետին,
Անխառն ի սիկ երկրաւոր,
Յիմարութեամբ որպէս եղեւ լալն առաջին ։

Նո՛յս մարդկեղէն՝ հակառակորդ մէս տնքանաց,
Առ սէր ծագման հասարակաց գոռովալիր,
Ողորմեաց ապաշխարող բեկեալ սրտի.
Զի թէ զգոյզըն ցընդելի հող մահակիր
Սէրտ հաւատով այսպէս սիրել անձն իմ կարաց,
Զի՞նչ ինչ ըզքեզն՝ ո՛վ հրաշազեղդ, խորհեսցի ։
Ի հանգամանս իմ չուառական եւ եղկելի
Եթէ ձեռամբ քով յառնեմ,
Առ քեզ սրբեալ եւ նուիրեմ
Ո՛վ Նոյս, զխորհուրդս իմ եւ զհանճար եւ զոճ բանի,
Զլեզու եւ սիրտ, ընդ հեծութեանց եւ արտասուաց.
Հան ի բարի զիս ի հունն
Եւ զյեղափոխ ընկալ ախորժ իղձըս կամաց ։

Մերձենայ օրն եւ հեռի գոլ իսկ չըմարթէ.
Այսպէս սլանայ ժամանակ,
Ո՛վ Նոյս միայնդ եւ միակ,
Եւ զսիրտ՝ խիղճ, եւ մերթ ընդ մերթ մահ տագնապէ.
Աղէ՛ յանձն արասջիր զիս Որդւոյ քում,
Մարդ ճըշմարիտ եւ Աստուած,
Զի զվերջին շունչս ընկալցի 'խաղաղութիւն ։

ԲԵԴՐԱՐՔԱ

ԹԱՐԳՄ. Հ. Դ. ՆԱԶԱՐԵԹԵԱՆ

## ՄԱՐԴԱԲԱՆՈՒԹԻՒՆ

### Մարդն ու անոր բռնած տեղին արարչութեան մէջ։

(Տես երես 256)

Ինչ տարբերութիւն մարդուս ձեռքին վրայ. բթամատը կը մեծնայ, արտաքոյ կարգի զօրութիւն կը ստանայ և գրեթէ առանց սահմանի ազատութիւն կ'ունենայ. շօշափական խիւսը[1] բոլորովին ազատութեամբ ամէն մատերուն խիւսին միատեղ կամ առանձին առանձին կրնայ դպչիլ։ Մատերը ծայրերնին առաձգական եղունգներով ծածկուած՝ ճնշմանց զօրութիւնը ճանչնալու կարող գործարանի մը ամէն պայմանները կը պարունակեն։ Կապիկին ձեռաց ափը միայն գլանի վրայ կը յարէր, այլ մարդկային ձեռաց ափը կրնայ երկայնաձիգ խողովակ ձեւացընել կամ բաժակի ձեւ առնուլ գնտաձեւ մակերեւութից վրայ յարելու։ Պարզ բռնող գործարանը մարդուս վրայ կ'ըլլայ չափակցութեան գործարան. ճանկը կ'ըլլայ կարկին, իսկ կարկինը կ'ենթադրէ արդէն զերկրաչափը։ Երկիրս կամ ճարակը կը բանէր. այսուհետեւ նաեւ գաղափարները պիտի ըմբռնէ։

Մարդուս ձեռքին գերագոյն վախճանն անկախութեանը մէջ գրուած է. մարմնոյն տեղափոխութեան համար յետնակողմեան անդամոց հետ ամենեւին մասնակցութիւն չունի. բոլոր յարաբերութիւնը վերի կարգի զգայարանաց գործարաններուն հետ կ'ըլլայ։ Այսպէս փոխուած՝ մարդուս ձեռքը նոր գործարան մը կը կազմէ. այս կենդանի կարկինը զայն գործածող ճարտարապետը կը յայտնէ։ Ձեռքին կատարեալ անկախութիւնը մարմնոյն ուղղահայեաց դրքին հարկաւոր պայմանն է, այն իշխանական կեցուածքին, զոր կապիկք չեն վայելեր. վասն զի սխալ է այն խօսքը թէ կապիկներն երկու ոտքի վրայ կը քալեն. հազիւ հանդըստեան ժամանակ քանի մը վայրկեան այս դիրքը կրնան ունենալ, բայց շարժելու սկսած ատեն մէկէն չորքոտանի կենդանեաց սովորական ընթացքը կ'առնուն։ Ուղղահայեաց կեցուածքը միայն մարդուս առաւելութիւնն է, ազնուական և խորհրդական նշանակ, որ բանաստեղծք իրաւամբ երգեցին, թէ Աստուած

«Ետ մարդոյ կերպարան վեհ, և ընդ երկինս նայել հրամայեաց»...։

Անցնինք հիմա դէմքին խորհրդական նշանակութեան վրայ, որ աւելի բացայայտ է։

Եթէ անդամազննական բաղադրութիւնը նկատելու ըլլանք միայն՝ մարդուս և կապկին գլուխը բոլորովին իրարու կը նմանին. բայց ինչպիսի խորին տարբերութիւն կը գտնենք կատարեալ նախապատկերին վրայ։

Կապկին գլխուն վրայ երեսը գանկէն այնչափ մեծ է՝ որ զայն ծածկելով գրեթէ ճակատը կը կորսուի։ Ծամելիքներն երեսին խոշոր և գլխաւոր անդամներն են. բերանը ծակ մըն է, որ բացուած ժամանակ չափահաս արուին վրայ խոշոր ակռաներ կը տեսնուին և իրարու մէջ անցած հերձատամունք, մսակեր կենդանեաց ակռաներուն նման։ Այն երեսն որուն վրայ անասնական զօրութիւնն և անյագ կատաղութիւնն իրենց տիրապետութիւնը կարծես հաստատած են, զարշելի տեսք մը ունի. ականջը բլթակիկ[1] չունի, քիթն ոչ ցայտ և ոչ ճշմարիտ ունգունք. հոտոտելիքը շրթանց վերնակողմը խոռոչութեան մը մէջ կը բացուին. այն շրթանց վրայ բնաւ ծիծաղ չկրնար ըլլալ. շրթունքը և ծնօտը կլոր փեղկի[2] մը կը վերածուին, որ վերի շրթանց կը յարի. երբ բերանը փակուած է, բերնին եզերքն իրարու կպած, շիտակ և

1 Գղ. Pulpe tactile.

1 Գղ. Lobule.
2 Գղ. Valve.

տապկած են, և խոնաւուտ Թաղանթի[1] երկայնաձգութիւն չտեսնուիր. միով բանիւ յայտնի կերպով կ'իմացուի թէ այն շրթունքն երբեք բառ մը պիտի չարտայրեն: Երեսը մկանանց կնճռական ներգործութեամբ ծամըռկած, երիտասարդութեան գեղեցիկ և երկնային արտայայտութիւնը չունի. աչքերն՝ որոնց վերնակողմը ճակատ չըկայ՝ կարծես թէ մարմնոյն համար կը տեսնեն, այլ ոչ իմացականութեան համար: Ահա ինչ որ այս երեսը կը պատմէ որ հարիւր անգամ աւելի խանգարեալ է արտայայտութեամբ՝ քան թէ շան երեսը, զոր մարդկային իմացականութիւնն իրեն հաւատարիմ ընկեր ըրած է:

Ի՞նչ կը պատմէ ընդհակառակն մարդուս գլուխը. ճակտին ընդարձակ տարածութիւնը որ կը տիրէ երեսին վրայ՝ ընդհանուր արտայայտութեան մէջ իմացականութեան նշանը կը յայտնէ: Անասնային զօրութեան գործարանքն, այսինքն ծամելիքը՝ կը պզտիկնան. շարժուն շրթունքն՝ որոնց եզերքը թաղանթքը տարածուած են՝ ծնօտը միասամբ կը ծածկեն իրենց կորութեան անդադար ճօճմամբը, որոնք կենաց գաղտնագոյն կրքերն իսկ կը բացայայտեն: Դարձեալ աչքն որ մարդաձև կապկաց վրայ գանկին մէջ խռուած էին, մարդուս երեսին վրայ կը տեսնուին զայն ոգիացընելու համար, և կը կորսընցընեն այն գաղանային արտայայտութիւնը, որով կապկաց աչքը կը նկարագրուի: Քիթին ցայտը կարծես թէ ճակատը երկնցընելով ուղեղին մեծութիւնը յայտնել կ'ուզէ: Ռնգունքն անկախ և շարժուն ըլլալով թեթեւութեամբ կը թրթռին և շրթանց արտայայտութեան կ'օգնեն, որոնց վրայ կ'երևի ծիծաղն, այն օրհնեալ խորհրդական նշանակն քաղցր և բարեսէր ուրախութեան: Դարձեալ քանի մը նշանաց զարգացումը կը դիտենք, որոնց Պլէնվիլ առագաստք[2] կամ նըշանք անունը կու տար, ինչպէս են ականջին բլթակիկն, ռնգունքն և շըրթանց բացուած եզերքը:

Թերևս մեղադրուինք մենք միայն ճերմակ ցեղին վրայ խօսելնուս համար, վասն զի այս ցեղը չէ միայն որ ամբողջ մարդկութիւնը կը կազմէ: Կան յիրաւի սևամորթ և ստորին ցեղերուն մէջ ցայտեալ քթով մարդիկ. այս ցեղերն տգեղաց մարդուս և կապկաց մէջ անցք մը չե՞ն կացուցաներ. — ո՛չ, ամենևին ո՛չ: Անոնց տգեղութիւնն այսպիսի նմանողականութեան իսկ հակառակ կ'ելլէ. մարդկային առագաստքը փոխանակ պզտիկնալու՝ արտաքոյ կարգի մեծութիւն կը ստանան այն ցեղերուն վրայ. ականջին բլթակիկն, ռնգունքն և շրթունքն՝ որ մարդուս բացարձակ նկարագիրներն են՝ մինչև ցտգեղութիւն կը մեծնան. և ի՜նչ զարմանալի բան է այն վայրենիներուն այլանդակ բնազդումը՝ որ բլթակիկներուն համար յիմարութեան գացող սէր մը ունին. անոնց վրայ օղեր, քարեր, ակռաներ, փայլուն փետուրներ կը կախեն, և իրենց միտածութիւնը կը ջանան ամենայն կերպով անոնց վրայ տանելու: Ամեն ցեղերուն մէջ մարդն իր ճակտին վրայ կը պարծենայ, և ամեն ժամանակ ճակատն իշխանական կարողութեան նշանը սեպուած է:

Ուստի սևամորթին տգեղ երեսը կապկին նմանցընելու ամբարիշտ միտածութեան հակառակ կ'ելլեն ամենայն դիտողութիւնք. մարդկութեան նշաններն իր վրայ բացայայտ են, ուղեղին նշանքն՝ այսինքն ազատ ձեռքն և ճակատն, որ երեսէն վար եղող գործարանաց կը հրամայեն:

Ուրեմն մարմնոյ ամենայն արտայայտութիւնքը մարդուս ուրիշ բնաւորութիւն ունենալը կը յայտնեն: Նիւթական մարդն անշուշտ կենդանի մըն է, այլ կերպարանափոխուած կենդանի, խորհրդական նշանակ ունեցող կենդանի մը ըսենք:

Մարդուս գործարանաց վրայ խօսե-

1 Գղ. Membrane muqueuse.
2 Գղ. Pavillons.

ցանք և անոնց գծագրութեամբը կապկէն զինքը բաժնեցինք. կը մնայ մեզի այժմ քննել մարդուս սեպհական կարողութիւնները։

Մարդն իր բարբառովը կապկէն չզանազանուիր. վասն զի ամեն կենդանեաց էակք իրենց յատուկ բարբառ ունին, որ կը յայտնէ անոնց կիրքերը և սեպհական բնութիւնը։ Կենդանական յաջորդութեան մէկ ծայրէն միւս ծայրը՝ կենդանիք ինքզինքնին կը պատմեն ձայներով, ձևերով և դիմաց գծագրութեամբ. բայց աշխարհիս վրայ բան մ՚ ալ պատմած չունին։ Երեսաց բացատրութիւնն ամեն կենդանեաց ընդհանուր է և միակերպ կանոնաց հպատակ, մարդուս վրայ ալ նոյնը կը տեսնենք. այս նկատմամբ ուրեմն մարդս յանասնոց չզանազանուիր։ Բայց ունի ինքը ուրիշ բարբառ մը, որ միայն իրեն սեպհական է. այս բարբառով մարդս միայն ինքզինքը չպատմէր, այլ կը պատմէ նաև տիեզերաց վրայ ունեցած գաղափարները. կենդանեաց մէկն ալ այս կարողութեան հետքն չունի։

Այս բարբառն արդեօք մարդուս մի միայն կարողութիւնն է. ո՛չ։ Կենդանին իր կըրքերուն համեմատ մարմնոյն կը հրամայէ, բայց միայն իր մարմնոյն կրնայ հրամայել. իսկ մարդը կարող է բնութեան կարողութեանց ալ հրամայելու։

Վերջապէս թռչունք բոյներ կը շինեն. շատ կենդանիներ ճարտարապետք և որմնադիրք են. բայց միշտ մեքենապէս և մի և նոյն կերպով կը գործեն. բնազդումն միայն իրենց կ՚առաջնորդէ. վասն զի էական իրաց գաղափարներն անգամ ըմբռնելու կարողութիւն չունին։ Սակայն մարդս ձևեր կը ստեղծէ. միայն ինքը կը քանդակէ և կ՚ուրուագրէ. ձևերը ստեղծելու այս կարողութիւնն աներկբայ նմանութիւն մը կ՚ընծայէ այն կարողութեան հետ, որ ըմբռնեց և ստեղծագործեց արտաքին գոյացութիւնքը. մարդուս սեպհական այս կարողութիւնը կը ճշմարտէ ուրեմն Սուրբ Գրոց խօսքը «Եւ արար Աստուած զմարդն 'ի պատկեր իւր»։ Մարդս ներքին անդադար գործունէութեան և տիրապետութեան պէտոյքէ մը մղուած՝ կ՚ուզէ բնութիւնը իր կարողութեանց տակ հնազանդեցնել։ Կենդանին զգայարանաց հորիզոնէն անդին իր տեսակը անգամ չիճանչնար. այլ մարդն աշխարհքիս ամեն ժողովրդոց վրայ կը դրաղի, ինչպէս նաև անցելոյն և ապագային։ Անցելոյն մէջ ստեղծագործութեան սկզբանցը խորերը չկարենալով թափանցել՝ երկրածնութիւններ կը հնարէ. աս ալ բաւական չէ, հապա կ՚ուզէ նաև տիրել ապագային վրայ, կը նախատեսէ զայն, մտածութեամբը կ՚ըմբռնէ, առանց սահմանի զայն կը նկատէ և անմահութիւն կը խնդրէ։ Մարդուս այս գերազանց բնազդումն արդեօք զինքը պիտի խաբէ՞. բայց բնազդումն երբեք չխաբեր կենդանիները. այդ կենդանեաց բնազդման կարողութիւն որ միշտ ճշմարիտ է, ինչո՞ւ համար մարդուս բնազդումն սխալական կամ խաբեբայ պիտի ըլլայ։

Այս յօդուածը չվերջացուցած կ՚ուզենք յայտնել նաև թէ ինչո՞ւ համար մարդս աւելի կապկի կը նմանի քան թէ ուրիշ կենդանեաց։ Կապկաց մարմնոյն գործարանաւորութեան կարգն աւելի մեծ ազատութիւն մը կը վերարտադրէ. անոնց ուղեղին գործարանաւորութեան կարգը կ՚ընէ որ լուսոյ հետ աւելի յարաբերութեան պայմաններ ունենան։ Արդ բնական է որ մտաւորութիւնը մարմին առնու աւելի ազատ գործարանաց և լի լուսով ուղեղի մը մէջ։

Մարդս ուրեմն իր գործարանաւորութեամբը կենդանի մըն է. բժիշկը զկենդանին կը խնամէ. այս կենդանական մարմինն է որ կ՚անօթենայ, կը ծարաւի, կը տաքնայ, կը մըսի, ցաւ կը կրէ, ուրախութիւն կը զգայ, կը ծնի և կը մեռնի անասնոց պէս։ Բայց մարդոյ կենդանական մարմնոյն մէջ կը յայտնուին մասնաւոր կարողութիւններ,

կարողութիւնք՝ որ միայն մարդուս սեպհական են ։ Ուղեղային գործարանաւորութեամբ մարդուս նմանող կենդանեաց վրայ այսպիսի կարողութեանց և ոչ հետքերը կը տեսնուին ։

Ո՛վ կարող է մեկնելու ուրեմն նման մարմնոց մէջ եղած այս հրաշալի տարբերութիւնները՝ եթէ ընդունելու ըլլանք թէ մարդուս վրայ ամեն բան գործարանաւորութենէն միայն առաջ կու գայ ։ Առանց մարդս կապկին մօտեցընելու միթէ անոնց նիւթական նըմանութիւնը բացայայտ չցուցընէ՞ր այն անսահման անդունդը՝ որ այս երկու էակները մէկմէկէ կը բաժնէ ։

Ուրեմն մտաւոր մարդը կենդանական ցեղապետութիւնը կը պսակէ, կենդանական յաջորդութեան գագաթը կը կենայ . բայց ըստ բացատրութեան Հենրիկոս Պլէնվիլի՝ կենդանական յաջորդութիւնը կ'անցնի և անոր վրայ բարձր կը թռչի ։

ԿՐԱՏԻՕԼԷ

Թարգմ․ Միքայէլ Հէքիմեան.

---

## Հարաւային Ամերիկոյ աղետալի արկածը ։

Բանամա 6 սեպտ. 1868

Հարաւային Ամերիկոյ արևմտեան ծովափունքը սոսկալի երկրաշարժէ մը սասանեցաւ, որուն նմանը պատմական ժամանակներէ ետքը երբեք հանդիպած չէր նոյն երկրին մէջ ։ Հիւսիսէն 'ի Գուիդոյէ (Quito) սկսեալ, այսինքն է՝ հասարակածի գծէն առնելով, ինչուան Քլոէ (Chloe) կղզիներն 'ի հարաւոյ, երկու հազար մղոն, կամ գրեթէ եօթը հարիւր ծովային փարսախ միջավայրի վրայ՝ երկարատև ճօճմունք, որ քանի մը կէտերու վրայ անընդհատ ժամերով տևեցին՝ գետինը ճեղքեցին, ծովը զայրացուցին և աւեր ու արհաւիրք պատճառեցին ։ Քանի նշանաւոր քաղաք և անթիւ աւանք արդ ուրիշ բան չեն՝ բայց եթէ կոյտ աւերակաց ։ Բովանդակ բնակիչք՝ որոնց թիւը 30,000 կը համարուի, կորեան խաղաւ ։ Երեք հարիւր հազար անձինք առանց բնակութեան են և մեծ մասն 'ի սովոյ կը ըկուին ։ Բոլոր Հար. Ամերիկա սուգի մէջ է. դար մը պէտք է այսչափ դըժբաղդութեան դարման ընելու համար ։

Ինչուան հիմա ընդունած տեղեկութիւնիս 'ի հարկէ անկատար են և անմիաբան. շատը չափազանց են, շատն ալ պակասաւոր. սակայն ամեն ծանօթ աղբիւրներէն աւելի կրնայ հիմակուընէ ամենաճշմարտանման համարուիլ այս մանրամասն տեղեկութիւններն որ ես կը խաւրեմ ։

Սկսելով 'ի հիւսիսոյ՝ այս աղէտքէն հարուածեալ երկիրներն են Հասարակածի հասարակապետութիւնը, Բերու, Պոլիվիա և Քիլի ։

Ամսոյն (օգոստոս) 13ին զգալի եղան առաջին ցնցմունքն. 16ին տակաւին ճօճմունքն զգալի էին ամենուրեք և շատ տեղ վտանգաւոր ։

Բերու և Հասարակածն եղան սաստկագոյն վնաս կրողները ։ Բերուի մէջ առաջին զղրդիւնը գրեթէ ամեն տեղ միանգամայն զգալի եղաւ, ամսոյն 13ին՝ երեկոյեան ժամը 5ին մօտ ։ Ամենէն սաստիկ բռնութեամբ ճօճմունք կրող տեղերն են Արեգուիբա (Arequipa) 15 փարսախ ներսով, և Մոգեկուա (Moquegua) 10 փարսախ ծովափունքէն 'ի խոր ։ Արեգուիբա մօտ էր Միսդի հրաբղխին. Մոգեկուա՝ Ուպինաս հրաբըղխին ։ Դաքնա (Tacna) և Իքա (Ica) նոյն գծի վրայ՝ բայց միայն վեց և ութը փարսախ ծովափունքէն հեռու ըլլալով՝ նուազ վնասուեցան. իսկ Քալլաօ (Callao) համեմատութեամբ շարժէն չվնասուեցաւ, այլ իրեն հրդեհն և ողողումը անհնարին աղետից պատճառ եղան ։ Նոյն ժամանակն որ երկիրը կը սասանէր և ծովը փողոցներուն տէրապետեր էր, վաթսուն տուն մոխրի կոյտ դարձեր էին կամ հրդեհէն դառնապէս խանձեր էին ։

Արեգուիբա՝ Բերուի առաջին գեղե-

ցին քաղաքը՝ ալ չկայ. քար քարի վրայ մնացած չէ. 50 հազար բնակիչ ունէր՝ երկու հարիւրը միայն մեռան, այլք փախստականք են, թափառականք, հացադուրկ և տնանկք։

Գետինը նախ շարժեցաւ, յետոյ կոհականման ծփեցաւ. ալ ոտքի վրայ կանգուն կենալն անկարելի էր. տուներն ամենը մէկէն ինկան կործանեցան թղթաշէն դղեակներու նման։ Նոյն գիշերը 9–10 ճօճմունք իմացուեցաւ. գետինը շատ տեղ ճեղքուած է և լայնախոր պատառուածք լի են ջրով։ Մերձաւոր երկու աւանք՝ Դիապայա (Tiabaya) և Սապաւտիա (Sabaudia) և շրջակայ բազմաթիւ գիւղաքաղաքք նոյն աղետալից վախճանն ունեցան։

Արեգուիբայէն ետքը հարաւային Բերուի երկրորդ նշանաւոր քաղաքը Իգուիգա (Iquique) գրեթէ ամբողջապէս քանդեցաւ։ Ամսոյն 13ին՝ ժամը 5ին ատենները ստորերկրեայ թնդմունք նշան տուին. ժողովուրդը փողոցները թափեցաւ և գրեթէ անմիջապէս սասանութիւնն սկսաւ։ Ամենայն ինչ 'ի հիմանց շարժեցաւ. վայրկեան մը ետքը ծովն իր սահմանն ընդարձակեց ահեղագոչ և որոտաձայն մռնչմամբ, և անխտիր մաքրեց սրբեց ինչ որ կանգուն մնացեր էր։

Փայտէ եղած ամենայն ինչ կաղինի կեղևի նման ջախջախեցաւ։ Ժողովրդեան անճապարանօք փախչելովն հանդերձ՝ երկու հարիւր մեռեալ կը համարուի։

Արիգուա (Ariqua) ծաղկեալ քաղաք մ'էր, և թերևս բոլոր հար. Ամերիկոյ արևմտեան ծովափանց առաջին գեղեցիկ ու զարդարուն նաւահանգիստը. իր տեղն ուր որ էր՝ հիմա ամայի ծովեզերք մ'է։ Հոն ապաւինեալ հինգ նաւէն մէկն ալ չալեկոծեցաւ։ Միացեալ–Նահանգաց պատերազմական steamerն էր wateree անունով՝ որ ծովածփանքի մը ծայրը վերանալով գրեթէ երկու մղոն տեղ դէպ 'ի երկրին ներսը տեղափոխեցաւ։ Այլք կորեան իրենց նաւաստեաց մեծ մասովը։

Ամերիկացի Fredonia բեռնաբարձ նաւը՝ մարդիկ և ստացուած՝ ամենայն ինչ կորսնցուց, բաց 'ի երեք սպայից որ ցամաքն էին։

Շալայի (Chala) նաւահանգիստը գրեթէ կէս հեռաւորութեամբ ընդ մէջ Քալլաոյի և Իգուիգայի մեծամեծ վնասներ կրեց։ Շարժ մը անընդհատ քառասուներհինգ րոպէ տևեց և իրարու ետև նոյնչափ տևողութեամբ տասուերկու շարժ համրուեցաւ։

Ծովն իրեք անգամ քաշուեցաւ և իրեք անգամ դարձեալ եկաւ լեցուեցաւ, ամեն մէկ դառնալուն աւերակներ դիզելով։ Նաւահանգիստը խանգարեցաւ։ Բնակիչք քաշուեցան յիսլէյ (Islay), ութը փարսախ հեռաւորութեամբ։ Այս տեղս դրիցը պատճառաւ ծովէն չվնասուեցաւ, թէպէտ ալիք իրեն նաւահանգիստն ալ կ'ողողէին 60 ոտք բարձր շարժուն պարսպի նման։

Canton գաղղիացի եռակայմը՝ որ բեռ առնելու համար հոն կը գտնուէր՝ ծովափունքը նետուեցաւ, բայց ծփանքին ետ քաշուելուն ժամանակ ինքն ալ ետ մղուեցաւ և կրցաւ բացը ելլել։ Քաղաքին մէջ ամենայն ինչ որ քար կամ կրաշաղախ էր՝ փլատակեցաւ։

Դամպոյ աւանը հիմնայատակ եղաւ, ուր հինգ հարիւրէ աւելի մարդ մեռաւ։ Դիապէ, Վիգոր Մալիէնտոյ և Մէճիա (Medjia) անհետացան, ինչպէս նաև հարիւր յիսուն մղոն երկայնութեամբ ամենայն գիւղաքաղաքք։ Մէժիլեոնի հազիւ հետքը մնացած է, ուր Գաղղիա մեծ շահ ունի կուանոյ ըսուած պարարտութենէն։

Ի Դաքնա 64 ցնցմունք զգալի եղաւ և գետինը դեռ կը դողար վերջին լուրերուն ժամանակ. քառասուն տուն հիմնայատակ եղան. մնացածներն էին խեղճ փայտեայ շէնքեր. Սամա, Լոքոմպա ալ նոյն բաղդն ունեցան։ Այս կողմս գետինը լի էր պատառուածներով՝ որոնցմէ տաք ջուրի հեղեղներ կը բղխէին։ Լլուգա հովիտը խոպանացաւ. 'ի Բիզակուա (Pisagua) երեք նաւ՝ մարդիկ և ստացուածք կորուսին։

Դիզոյ բնակութեան ամենևին հետք մնացած չէ. հինգ հարիւր բնակչէն՝ քանը մեռան կամ խղդուեցան. այլք ժամանակ ունեցան փախչելու. sloop մը և երկու goëlette ընկղմեցաւ։

Քինքա (Chincha) կղզիներն անանկ ցնցուեցան որ անկարելի էր ոտքի վրայ կենալ. բնակիչք ամէնքն առհասարակ գետին տապալեցան. կը կարծէին որ իրենց վերջին ժամն հասեր է. սակայն քիչ մարդ զոհ եղաւ։ Հինգ մեծ բեռնաբարձ նաւեր իրարու զարնուեցան ու ջարդուբուրդ եղան կամ սաստիկ վնասուեցան. փոքրիկ նաւերն ամէնքն ալ անհետ եղան։

Յետ Բերուի՝ Հասարակածի հասարակապետութիւնը սոսկալի թշուառութիւններ կրեց. մանաւանդ թէ հոն մեռնողաց թիւը շատ աւելի եղաւ։ Զարմանալի բան. կուայագուիլ (Guayaquil) 13ին ամենաթեթև ժաժ մը զգալի եղաւ, բայց իրեք օր ետքը 16ին եղաւ հոն մեծ շարժը՝ որ ամենայն ինչ քանդեց կործանեց։

Իպարրա՝ Իմպապուրա նահանգին գլխաւոր քաղաքը, Ոլովալոյ, Բինիքոյ (Pinicho), Ս. Անտոն, Ս. Պօղոս (San Pablo), Ադունդագուի (Atuntaqui), Իվանդադ (Iwantadt), Քոդոքախի (Cotocachi) և այլն, հարթայատակ եղան։ Լիճ մը կը ծածկէ հիմա այն տեղն ուր կը ծաղկէր երբեմն Քոդոքախի։ Կուայագուիլ չվնասուեցաւ։ Գուիդոյ հասարակապետութեան մայրաքաղաքը, ինչպէս նաև Լիմա Բերուի մայրաքաղաքը՝ ամբողջապէս չկործանեցան։ Բայց սակայն գրեթէ ամեն շէնքերն այնպէս քայքայած են՝ որ ամենաթեթև շարժմունք մը բաւական է զիրենք կործանելու։ Արդէն կործանած են Ս. Օգոստինոսի եկեղեցին ու վանքը, ուրիշ երկու եկեղեցիք, Մայր եկեղեցւոյն և Ս. Մարկոսի աշտարակները, Ս. Լուդովիկի վարժարանը, և այլն։ Ուրիշ եկեղեցեաց աշտարակները, քաղաքապետին պալատը, շատ մը առանձնական տուներ ճեղքուած են ու վայրկենէ վայրկեան փլչելու վտանգի մէջ են։

Մերձակայ աւաններն որ են Գուիդոյ, Բերուդոյ, Բուեյլարոյ և Քաչիկուանեայ, գրեթէ իսպառ անհետացան։ Քիչ մարդ մեռաւ 'ի Գուիդոյ, բայց բովանդակ տէրութեան մէջ մեռնողներուն թիւը 20,000 կը համրուի։ Իսկ ադրեալներն ամեն կողմ կը փախչէին 'ի սովոյ և դիականց գարշահոտ արտաշնչութենէն հալածուելով։

Քիլի նորօրինակ երևոյթի մը ականատես եղաւ. յայտնի է թէ անիկա շարժէ ազատ երկիր է, սակայն և ոչ ցնցմունք եղաւ հոն. բայց ծովեզերաց բովանդակ երկայնութեամբը, գիշերուան տասներմէկին առեններ, ծովը քաշուեցաւ և դարձեալ դէպ 'ի ափունքը դարձաւ զարհուրելի շառաչմամբ։

Ի Դալքահուան (Talcahuane) նաւահանգստին բնակիչքը իրենց բնիկ փորձովը կամ 1835ին աղետալի արկածից աւանդութեամբը խրատուած՝ առաջին վայրկեանէն որ ջրերն սկսան հեռանալ՝ բարձրերը փախան, և այս կանխատեսութեամբ ազատ մնացին մեծամեծ թշուառութիւններէ։ Ծովը բոլոր գիշերը քաղաքը կը հարուածէր, փողոցներուն մէջ պտուտքելով, մերթ ընդ մերթ նահանջելով, տուներն ու շտեմարանները պարպելով և եղած բաները բոլոր հեռացնելով։

Վալբարաիզոյ վախ կար որ ծովաթումբքն ու քաղաքը ողողին. բայց ծովը հանդարտեցաւ քիչ մը ժամանակ փրփրալից կոյտերով բարձրաւանդակը ծածկելէն և ծովափունքն եղող ամայի բարձր ժայռերը թնդացնելէն ետքը։

Պոլիվիոյ լուրերը դեռ ծանօթ չեն, բայց հաւանական է որ այս տեղեկութեանց վրայ նոր ձախորդութիւններ ալ պիտի աւելցնեն։

Այս սոսկալի աղետից մէջ մխիթարական է լսելը թէ բազումք մարդասիրական զգացմամբ մեծ գործունէութիւն ցուցեր են, և թէ ամենուրեք վարչութիւնք և առանձնական անձինք կը փութան այսչափ թշուառութեանց

օգնութիւն մը մատակարարելու ։ — Բերուի նախագահը ժող. Փալմա յորդորագիր մը հրատարակեց որ գործակից պերճախօսութեան օրինակ է ։ Բաց աստի ժողովքէն (Congrès) անմիջապէս երկու միլիոն թիւաղր ձեռք բերաւ առաջի կարգի շտապողական պիտոյից գործածելու համար ։ Միացեալ-Նահանգաց Powhatan անուն պատերազմական steamerը, Դուանը ծովակալին դրօշովը պաշարաբար՝ Քալլաօյէն Արիգուա ճամբայ ելաւ ։ Լամոթ-Բիքէ գաղղիացի steamerին հրամանատարը՝ որ կայսերական ծովային զինուորութենէն է, ինքզինքը տէրութեանց կամացը յանձնեց և նոյնպէս Արիգուա գնաց ։ Միուրբիւն անունով steamerը նոյնպէս լի պարէնիւք ճամբայ ելաւ, բայց մեքենան փտտելով՝ հարկ եղաւ որ նաւահանգիստ մը ապաւինի ։

Լիմա քաղաքին Բարեգործական ընկերութիւնը վճռեց որ ամեն կործանած քաղաքներէն եօթը տարուընէ վար մնացած որբ տղաքը իր ծախիւքն հոգայ. կառավարութիւնը 18,000 թիւաղր շնորհեց որպէս զի այս վախճանաւ որբանոց մը կառուցուի ։ Նոյն քաղաքին խնամամապետական խորհրդարանը 100,000 թիւաղր փոխ խառերց որպէս զի փութով անհրաժեշտ կարօտելոց օգնութիւն ըլլայ ։ Առանձնականք ալ իրենց գթասրտութիւնը անմիջապէս յայտնեցին. կուանոյի ընկերութիւնը 500,000 թիւաղր տուաւ տէրութեան առանց շահը պահանջելու ։

Բերուի արդարութեան պաշտօնակալը Օժանդակիչ ընկերութեան մը գլուխ անցաւ և դէպ 'ի հարաւային գեղերը սկսաւ պտըտիլ, և ըստ վերջին լրոյ մէկ միլիոն տոլլարի ստորագրութիւն ժողվուեր էր արդէն ։

Վերջապէս Պ. Քալտերոն 50,000 տոլլար ազատ դրամ տուաւ. նոյնպէս նաև Պ. Հէնրիկ Միկս (Miggs) Արեգուիբայի երկաթուղեաց ամերիկացի գործակատարը նոյնչափ գումար մ'ալ ինքը շնորհեց ։

Կը յուսանք որ այս ազնիւ օրինակներն իրենց նմանող նախանձորդներն ունենան և բոլոր աշխարհ ընկերանայ այս բարեգթութեան մեծ գործոյն՝ եղած անհուն թշուառութիւնն սփոփելու համար ։

---

## ԲԱՆԱԼԻՔ

## ԲՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՒԹԻՑ

(Տես երես 195)

### Ա. ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆՔ

122 Ի՞նչպէս կրնայ ըլլալ որ երկրիս թանձր կեղևը կարենայ յագենալ քիչ մը ջրով որ իր վրայ կ'ինկնայ։ — Երկիրս շուտով կը յագենայ ջրով. վասն զի մշակելի հողուն տակ՝ որ փափուկ և ծակոտկէն է, քիչ մը խորութենէ ետև՝ կարծր և անթափանց խաւեր կան՝ որոնց մէջէն ջուրն ճամբայ չգտնար անցնելու. և վրանին մնալով՝ կամաց կամաց կ'արգելու անձրևին մնացեալ քանակութիւնը երկրիս մէջ թափանցելէն ։

123 Այն ջուրն որ կը թափանցէ երկրիս ծակոտեաց մէջ և անթափանց խաւ մը գտնալով վրան կը կենայ, կը մնա՞յ հոն ինչուան որ շոգիացումը զինքը ցնդէ ։ — Ոչ. այլ որովհետև ջուրը միշտ տարածուիլ կ'ուզէ հարթհաւասար, այն անթափանց խաւին ամեն դիրից վրայ ալ ծաւալելով կը ժողվի անոր խորունկ տեղուանքը. և երբ սաանկ տեղ մը հաւաքուի բաւական քանակութեամբ, կը սկսի ունենալ զօրութիւն մը՝ որ կը ներգործէ կողմերուն վրայ սաստիկ ճնշում մը. ինչուան որ կարենայ բանալ բաւական հանգիստ ճամբայ մը և յատակ մը, որուն վրայ կը վազէ երբեմն մղոններով, ինչուան որ հանդիպի յատակին վրայ փոսի մը կամ ուռած տեղւոյ մը, և ստիպուի դարձեալ մակերևութին վրայ ելնել ։

124 Ի՞նչ կ'ըսուին այն ջուրերն որ ինքնին կամ արուեստով երկրիս ծոցէն երեսը կ'ելլեն։ — Բղխմունք կամ աղբիւրք կ'ըսուին ։

125 Ինչո՞ւ համար աղբիւրին ջուրը երբեմն կամաց կը հոսի, երբեմն ալ ուժով կը ցայտէ գետնին ծակերէն, և բաւական ալ կը բարձրանայ։ — Եթէ այն շտեմարանը ուր կը ժողվի ջուրն՝ ստորերկրեայ ջրանցքներուն մէջ մտնելէն առաջ աղ-

բլուրին յատակին հաւասար ըլլայ, այն ատեն ջուրն զանգաղ կերպով դուրս կ'ելլայ, և տկար ույժ մը կ'ունենայ։ Բայց թէ որ շտեմարանը բարձր տեղ մը ըլլայ, օրինակի համար լերան մը վրայ, այն ատեն ջուրն ուժով վեր կը ցայտէ աղբիւրէն, և երբեմն խիստ շատ ալ կը բարձրանայ։

126 Ի՞նչպէս կրնան ջրերու շտեմարանք՝ ձևանալ լերանց մէջ, որոնք անձրևւին ջուրը իրենց կողերէն վար կը վազցընեն առանց արգիլելու։ — Անձրևին ջուրը կը վազէ լերանց քարուտ կողերէն վար. բայց սառերուն ջուրերը որ կամաց կամաց կը հալին գարնան և ամառուան մէջ, կը թափանցեն լերան ճեղքուածներուն մէջ և կը հաւաքուին բնական աւազաններու կամ շտեմարանաց մէջ, և կը գործեն անսպառ աղբիւրներ, որք գետնին տակէն քիչ խորութեամբ վազելով՝ պաղ կը մնան։

127 Ի՞նչպէս կրնայ լեռ մը սնուցանել կամ պահել մշտնջենաւոր աղբիւրներ, որք երբեմն այնչափ առատ կ'ըլլան մինչև գետեր կը ձևացընեն։ — Բարձր լերանց գագաթունք միշտ ծածկուած են սառով և ձիւնով, որոնք շարունակ հալելով և մանաւորապէս տաք եղանակներուն մէջ միշտ ալ ջուր կը հասցընեն գետերուն ընթացքը պահելու համար։

128 Բայց այս սառերը հալելով պէտք է որ երթալով պակսին և ատեն մը գայ որ լեռներէն եկած աղբիւրներն ալ ցամաքին։ — Ոչ. այս բանս չըլլար, որովհետև լերանց վրայ առատ և ստէպ ձիւն կու գայ, որոնք հալած սառերուն տեղը կը բռնեն։

129 Ինչո՞ւ համար գետերը և առուները միշտ կանոնաւոր ընթացք մը կ'ընեն, որ սովորաբար զիրենք դէպ 'ի ծով կը տանի։ — Որովհետև գետինը զառիվայր է՝ ջուրերն ալ կը վազեն անոր յատակին դրից հետևելով. և որովհետև գետինը անզգալի կերպով մը կը հակի դէպ 'ի ծովեզերք, այսպէս ալ գետերը իրենց յատակին հակմունքով կը տանին իրենց ջուրերը այն ընդարձակ աւազաններուն մէջ որք ծով կ'ըսուին։

130 Ինչո՞ւ համար ծովերուն ջուրը աղի է։ — Որովհետև երկրիս մեծ յեղափոխութեանց ատեն ջուրերը կրնան հանդիպած ըլլալ բնական աղի կոյտերու, որոնք իրենց մէջ հալած են։

131 Ինչո՞ւ ուրեմն գետերուն ջուրերն ալ աղի չեն։ — Վասն զի գետերուն ջուրերը առաջ կու գան ծովուն շոգիացեալ ջուրէն. շոգիացումն ալ ծովէն կ'առնու միայն զուտ ջուրը, թողլով աւելի յուգեալ մասը։

132 Այս կերպով յետ շատ տարիներու շարունակ շոգիացման պատճառաւ միթէ ծովուն ջուրը պիտի չնուազի՞ թողլով աղն իր յատակը, չկարենալով զայն լոյծ պահելու։ — Ոչ. վասն զի գետերը կը դարձունեն ծովուն այնչափ ջրոյ քանակութիւն՝ որչափ որ շոգիացումն կ'առնու անկէց. հետևաբար հաւասարակշռութիւն կ'ըլլայ, և ծովուն ջուրերը ոչ կ'աւելնան՝ ոչ կը պակսին։

## Գ. — Հողք:

133 Ի՞նչ պատճառաւ ջուրք գետնին երեսը կը մնան։ — Անոր խաւերուն քիչ կամ ամենևին անթաթաւ ըլլալուն համար։ (122)

133 Միթէ քիչ մը խորութեամբ փորելով գետինը՝ միշտ մեր արտերուն և պարտէզներուն նման հող չի՞ գտուիր հոն։ — Ոչ. մեր տեսած հողը ծանծաղ մը կը ծածկէ ներքևի խաւերը, որոնք որչափ որ խոր իջնենք՝ տարբեր տարբեր բնութիւն ունին։

135 Ինչո՞ւ համար երկրիս բոլոր կեղևը հաւասարապէս մի և նոյն նիւթով կազմուած չէ։ — Վասն զի ինչպէս որ երկրիս վրայ կան աւելի կամ պակաս խիտ մարմիններ, այսպէս երբ իրենք հալած վիճակի մէջ էին՝ խտութեան կարգաւ իրենց տեղերնին բռնեցին. և որչափ որ դէպ 'ի կեդրոն աւելի խոր թափանցուի՝ այնչափ աւելի խիտ և կարծր մարմիններ կը հանդիպին։

Կը շարունակուի:

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ




# ԲԱԶՄԱՎԷՊ

ՌՅԺԸ. 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ. — ՀՈԿՏԵՄԲԵՐ


## ԲԱԺԻՆՔ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

(Տես երես 261)

Աշխարհ վըսեմ եօթներորդ յերախայ ծոց ՍԻՒՆԱԿԱՆ,
կոչուած վեհիցն Հայկազանց Այրարատայ զուգական.
Ցորում գաւառ նախընծայ Գեղաքունին գեղածիր
Դաշնաւորաւ ծովակաւ զուարճացեալ տուն բարձրադիր.
Կոք եւ Մըմակ առանձնակ ի նմա վիճակք ընդ հարաւ,
Եւ գաւառակերտք եւ անուանք նախնեաց քաջաց ոչ սակաւ.
Ծղցնի, Խնձի եւ Վաժոց, Կոտրակ, Կոթակ եւ Գետակ,
Հոգք եւ Մեհոգք եւ Թըմնոկ, Ցոփկք, Կածիկ, Ծագք եւ Ջագ։
Սոթից գաւառ՝ նոյն եւ Արտից՝ յարցախական սարս յերի,
Ցոր Հովուաթաղք, Ծափաթաղք, Շինկք, Շատուան ու Էրէրի։
Եղեգեաց-ձոր կամ Վայոց՝ մենաստանօք մեծապանծ,
Որ զՄեսրոպեայն ընծայեաց փոխան՝ 'ի գեղջ Հողոցմանց.
Անդ Երերուն եւ Երդիչ, Հացիք, Նորիք ու Եղեգիկ,
Եւ Մոզն աւան կընաղէն՝ Սիւնեաց Դիտին դիմարտիկ.
Սիոն, Հերմոն վանորայ, ւ Արատեսից, Թանահատ,
Եւ Նորավանք եւ Կնէվանք, Գլաձոր, Շատիկն անապատ։
Նախիջեւան՝ բըռնավէճ ընդ Վասպուրական եւ Սիւնիս,
Ցոր տարուբեր Երասխ յայս եւ յայն էած կոյս՝ ալիս.

Դաժգոյնք, Ցամբասա՝ մարաքնակ չէնք ի նմա հէնք ընդ խըլբամ,
Ցորում մոլեալն արուայիկ զապատն Հայոց խանձեաց բամ։
Ճահուկ եւ Ջոր Շահպունեաց զուգավիճակ հովիտք հին,
Ուր Խուռունիք եւ Գինհենք, Թատերք, Որդոք եւ Տիկին։
Անառ ամրին Երընջակ բռնաւորաց դիմամարտ,
Ապրակունեօք եւ Քըռնաւ եւ վանօրով բազմամարդ.
Եւ հուպ յայխս կարկաջուն պերճ չահաստանըն Ջուղայ,
Ցոր յիշողին արտասուչ ոգի նուաղեալ կղկըղայ։
Գինեւէտ Գողթն հայերգու միպատանից խանդավառ
Ցազատն ի վեր ի Մասիս հոմերացեալք քաջափառ.
Նորինք կափեալ միջապաց անդ Թանդուզեալ զօղեցին,
Ի հրագիսակ վահագնէ ու ի Տիգրանայ փառաշուին.
Ցիսուաշունչ աստ լըծեալ Բարթուղիմեայ նախ հրաւէր՝
Ըզբամբռապանծ բանաստեղծս երկնանըւագս յարդարէր.
Որոց սերունդք մըտազգաց գեղախօսիկ Ագուլիք.
Անդ փառակերտ եւ Որդուաս, Վանանդ եւ Բուաս հին տեղիք.
Լեառնակըտուր յորձեռանդն հուպ յերասխայն քարավազ
Հինն Արեւիք, Նոր Մեղրի, Մացրի, ու աւանք երրեակ Թաղ.
Եւ զոյգ Տաշտօն ձորամէջ, չէնք հընաշէնք եւ վաներ,
Շիւան, Նուշանց եւ Մանուշ, Ջըւար, Գոմեր եւ կալեր։
Կովսական՝ արդ Ջաւընդուր եւ Գիլաբերդ եւ Գըրհամ,
Ցորում Մենիք, Մարուր, Դից–Մայրի, ու Աղբիւրըն վառամ։
Հաշակապանծըն Հաբանդ՝ յապայն Քըշտաղք–Զագեձոր,
վայրք ամուրք՝ Տեղ, Խոտ, Կորէս, Խախայք, Խորէս եւ Խորխոր.
Եւ հուսկ ազատն հայութեան վէմ՝ Հալիձոր եւ Շնհեր,
Ուր հար երէցն եռանդուն ըզհրոս պարսկին չինաւեր։
Ջուրք, յարանուն Գեղուաձոր եւ Բաղաբերդ տիրական,
Ցեռին Սիւնեաց Թագազանց ամրապահեստ անդ կապան։
Բաղք՝ Աձաւանն մականուն՝ նահապետաց օթեվանք,
Տոգող, Տորդնի եւ Տափեար, Թուլք, Շեկք, Վըչքան, Վարդավանք.
Եւ Քաշունիք՝ որ Միւս Բաղք, նոյն Բարկուշատ եւ Մաղանջ,
Ուր Նախկորզան բարկաշէն մինչ ի Պարսից գայր նահանջ.
Դեզք, Դողար, Դախն եւ Դաղա, կամէն, կամէն եւ Արտեն.
Աժդակ, Աթխոյք, Մոզք եւ Մաճ, Ճօտք եւ Ճապկուր եւ Մեղրէն։
Սիւնեաց մարզից վեհագոյն Ծըղուկք՝ յայժմուս Սիսիան,
Իշխանաշուք անդ Շաղատ եւ բազմահոյլ սըրբարան,
Փոխաբերեալ ի Տաթեւ երկոտասան գխոտաց պետ՝
Հաշակաւորն Որոտան նկատող ի բերդ եւ ի գետ։
Ցուշոյ տեղիք Տըխունիք, Լըծեն, Բըզէն եւ Տոլորք,
Գոմեր, Շըքար, Բռնակոթ, Վաղանդն եւ վանք մերձաւորք.
Եւ սխրալին Հարանավազ գեր Սապփոյեայն սիրոյ խութ

Հոլաթեւիցն հրանըժոյգ Շահանդըխտի չուշանուտ ։
Այլախ՝ Ծըղկանց միաճետ, յորում Բորտան եւ Մըխուր,
Եւ հեզանիստ անապատք Հարանց ու Արանց անըխուր ։
Հուսկ Աղաճէձք՝ յարանուն խոժոռաքերդ ահարկու,
Եւ Քաջաբաղք քաջամուր, վըժան եւ Քարն Որդոու ։

Լայնածաւալ աշխարհ հին ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ վեհանուն
Բազմազարմից օթարան տոհմից, գաւառք քառասուն.
Անդրանձըգեալ քան զնըրասխ ի տափ Տոսպայ ու ի Տիգրիս,
Հայոց, Մարաց, Ասորեաց եւ Թուրքաց լեալ արքունիս ։
Աղի ծովուն գիրկ ածեալ Ռշտունիք նախ ընդ հարաւ,
Մոկաց ու Աղձնեաց մերձակից՝ Գաւաշ յետոյ ձայնեցաւ.
Շէն Ռաշտայ որ զակատն յախս կառոյց զԱղթամար՝
Բանտ Հիւրկանու և Հրէից, դահ Արծրունեաց գեղապար.
Ցուշից չինեար խիտ առ խիտ, քաղաքք եւ գեօղք եւ վաներ,
Ծաղկապըրակ լեառն Արտոս եւ ծովածուփ ծայրն Արտեր.
Իշխանանիստ Մանակերտ եւ զուգանուն Քարադաշտ՝
Ցորոց զահից Մանահճրի ոճիրքն ի ծով՝ քէն անհաշտ ։
Ոստան՝ Գագկայ սիրակերտ, Երուանդունիքըն նախկին,
Եւ ի սկըզբան՝ Հայոց-Ձոր՝ փառաց աղբիւր մեր տոհմին.
Ուր դիւցափառ Հայկին հօր երկնասլաց նետ եռաթեւ
Փըլոյզ զըրաանցն հեղինակ հանգոյն բըգան հիմն յարեւ.
Աստուածաշէն անդ կանգնի՝ Նըւէրք քաջին հուպ յիւր բերդ.
Հիրճ եւ Հերմեր, Ռազմիրան եւ երկուորեակ Մեժենկերտ ։
Ցելից ծովուն տիրապանծ Տուպ եւ գաւառ զոյգ Սըղգայ,
Ցորոց Թիկանց վեհակերպ նազին կատարք Վարագայ,
Ի հրաճեմիկն Հռոփսիմեայ պճնեալ կոճեղք Ցխուսի.
Վեհ ինձ դշխոյ նա քան շուայտըն հրոսանուէր հիւսիսի.
Որ ըզՎանայ քարաբլուր կըռէր կոփէր յապարանս՝
Պչնուլ պանծալ ի բարձուէ յալէկոծիկն ըզքօսանս ։
Համաքատակ առ երի Սանասարըկոյ ապրեալ ճետ՝
Ալանուհւոյն սիրայնոյ սարէր ըզՁարդ ու Արտամէտ.
Ցոր Անգեղ վանք Իւղաթոր՝ հուպ ի Հորդոմ ծովավէժ,
Ահեւականք, Հայկաւանք տարփատենչիկ վայրք յաւեժ ։
Անձեւացիք քարածերպք ըստ հարաւոյ ՚Նդ. մարզ Թուխկաց,
Ցորոց քամիք ըզՏիգրիս յարուցանեն ի խաղաց.
Դարբնաց քարինք դիւաբնակ եւ Ագռաւուց՝ դից դադար,
Հովանացեալք ի Հոգեաց վանս, ու ամրակուռ բերդ կանգուար ։
Ցաջմէ վախուտ Բուղունիք ի լեռնամէջ ձիւնաբուք՝
Ցոր ոչ մըխի ուղեւոր՝ թէ չխօսին հաւք ձայնածուք.
Եւ յահեկէ Մաճողան՝ Տրպատունիք ըստ կարծեաց,
Գուկանք, Ակէ ու Առնոյ-Ոտն՝ ոչ շատ հեռիք յայս վայրեաց ։

Հարաւագոյն բոլորից ողք ի Վասպուր՝ Մեծն Աղբագ,
Յորում ոստան Արծրունեաց Հադամակերտ եւ Առակ։
Սլացեալք ընդ Տոսպ ընդ հիւսիս Առբերանի Գրնունեաց՝
Ջուլամբ ծովուն բոլորեալ՝ յոր Լիմ, Կտուց՝ զոյգ կղզեաց.
Բերկրի քաղաք չինագլուխ ու ամրապահեստ բերդ Ամուկ,
Առեստն աւան ձկնատեանք, Զորոյ, Ցուսկան՝ ու այլ վանիւք։
Քաջբերունիք առ երի ու Արճիշհովիտ արգաւանդ՝
Զոյր ամրապատ գահագլուխն Արճէշ՝ կորզեաց ծովուն խանդ.
վանք Արծուաբեր եւ Մուխար, Ասպիսընկայն և Ուռընկայր,
Եւ գիտնապանծ Մեծոփայն ուխտ՝ գոլ բնաւից վեհավայր։
Աղիովիտ կիսաբած Տուրուբերան աշխարհի.
Գուցէ Կուղանն ընդ նըմին սաստ յարեմուտս յերկարի։
Աստուստ ի վեր յԵրասխայն գետահովիտ միջամուխ՝
Տես յԸնձաճից-ձոր ըզբերդ կոտորս՝ զընդամբըն զեմուզ,
Եւ ոչ ընդհատ ամրութեամբ ի Թոռնաւան բերդ Նըկան,
Ուր խուլ քաջին խաչկայ կոծք յորդին եւ հարազատք վրիժահան։
Ուչ հեռագոյն Ճուաշ՝ Բակեար բերդաւ ու ամուր Շամիրամ,
Եւ ձըմերոցք Արծրունեաց տան՝ Մառական բարեհամ։
Սակաւծանօթք Կրձունիք, Բռնիլովիտ, Մարդաստան,
Եւ Վրնջունիք հուպ յԵրասխ, խառն ի Սիւնիս Նախճաւան։
Հուսկ յարեւելս քաջայայտ եւ հընանունըն Մարանդ,
Բակուրակերտն աւանաւ՝ ուր Արտաշէս կայր հիւանդ։
Ընդ մէջ Երասխ, զինչ Թըւի, ու Ատրպատիկ կոհակաց
Գոլ Բուժունիք, Մեծնունիք եւ Գալունիք գաւառաց.
Պարսպարունիք, Աղուանդոռ եւ Տանկրիայն եւ Բաքան,
Արտաշիսեան, Գաբիթեան, Արտաւանեան, Գազրիկան.
Եւ ի սոյին վիճակեալ Սեւան բերդաւ Լուռմբ փորակ,
Զորոց ըզդէրըս խնդրէ աշխարհագիրն կայր փափագ։
Սոցին գըրեալ ի սակի Դաւնին երբեմըն գաւառ,
Զոր Ծաղկոտան սահմ մերձ եւ յԱղովտէն ոչ բացառ.
Ընդ վաչկատուն Թաթարաց ճամբար հովոց ի խնդիր՝
Ամարանոց կառոյց չէն ի սարահարթ բարձրադիր։
Հուսկ Վասպուրակ գաւառաց եւ քան ըզըրնաւս ընդ հիւսիս
Ի միջադող հայաբուն ընդ մէջ Երասխ եւ Մասիս,
Ըզծիրանի արտասուաց յուշաղբերք աննըւաղ՝
Ըզքեզ կարդեմ սխրափայլ վարդայատակդ իմ Արտազ.
Յոր թագաւորն Հայկազանց հովոցք շըշուն Շաւարշան՝
Յօրինորդէն նախավկայ .քրքմացանեալ ընդ չուշան.
Ալ՝ ի կարմիր վարդանայ սըսկեալ յարիւն եւ ի հուր,
Այն որ սփռէր զահ եւ սէր ընդ արեւելս ընդ հանուր.
Եւ զհայրենեաց եւ կրօնից կընքեալ ըզպարտս յԱւարայր՝

Անմահ Թողլով յուշ՝ յերկինս հսկայապէս վերանայր ։
ՓԱՅՏԱԿԱՐԱՆ հուպ յԵրասխ ու ի կուր աշխարհ ութերորդ,
Մարզ հեռաստան եւ դըրացի կազըից ալեաց անհաղորդ,
Կոչեալ եւ ԿԱՍՊՔ, ազգ. Նախնի, զոր Նուաճեալ ձեռն հայկական՝
Ըղձաբարերձ Արցախոյ մայրս՝ արկ ի ծոցըն ծըփան,
Ընդ անապատըս Սկիւթաց սփռել ըղըոմս Սպերայ,
Եւ զաղխամաղխ արփենից ազանց ածել Թորգոմայ.
Հիմնեցուցեալ յեզր ալեաց զՓայտակարան շահադէտ
Մայր իւրանուն գաւառի եւ աշխարհին իսկ հանդէտ.
Վարդանակերտ վեհակոչ գաւառ, քաղաք նոյնգունակ
Յանկիւնամէջ գըրկածու գետոյն կարգեալ զիւր բընակ ։
Պերոժ անուն յաղթանիշ քառեակ գաւառք յորջորջին,
Հրաքոտ, Որմիզդ, Սպանդարատ, Բիժանհանի հուսկ վերջին,
Ատրպատական աշխարհին սահմանք եւ Դրանըն պարսիկ,
Յորում վիճեալ ոգորէր Արշակունին մեր մարտիկ ։
Ռոտիբալա, Բալանռոտ՝ յերի գաւառք երկուորեակ՝
Քեզ ցուցանեն ըղՊալայ գետով ունել վայր դըրացեակ.
Իսկ Քոյսեկան անծանօթ, ու ոչ քաջայայտ Այեւան,
Եւ զիցանուէր առ Նորումբք կամ միհրապաշտ Բագաւան,
Խանի-արաղ ըստ Պարսկին, զոր Կրակարան կոչէ Հայ,
Անդնդաբուխ նաւթանիւթ հըրոյ աղբերցըն վըկայ.
Եւ մերձանուն մերձավայր Եօթըն-փորակըն Բագինք՝
Զրահեստ մանկանց Զրադեշտի աքանչացեալ վայրք սիրային ։
Եւ հուսկ եւ հաւ բնաւից կազըք, որ առաջինն իսկ կարծի
Շահաստանիկ քաղաքն՝ ուր Սալխան արդ պարծի ։
Երկուց երբեմն ազանց վէճ աշխարհ՝ չորից տարերց արդ,
Գետք քաղցրաջուրք յահեկէ վիժեն, յաջմէն ծով հըպարտ,
Ի սանդարաց սողոսկեալ աստ եւ անդ հուր յարաճօճ,
Եւ յաղթադոյն՝ անապատն ահեղ անբոյս անբողբոջ.
Զոր հինք եւ նորք ճանաչեն յեղբայրն Հայկայ՝ Մովական,
Երբեմն Հայոց եւ Մարաց արօտք ձիոց ձըմերան.
Ամարանի օձագնաց հրատապ երէզ բըռնամահ,
Որ ըղՊոմպէն նըհանջեաց սփռել ի սարս զարծուեացն ահ.
Իսկ ի նորումս Թափառիկ Թաթարաց վաշտք յոքնաբիւր
Ջըմերոցեալ անտանօր հրաւիրեցին ջուրս յեղտիւր.
Պաճարաստն եւ այժմիկ Թուրքաց հօրանք ու երամակք
Ընդ ջերասեր հոյլս հաւուց սպասեն գարնան ծաղկապսակ ։

Հ. Ղ. Մ. ԱԼԻՇԱՆ

(Զաւարտն տեսցես յամսատետրին Նոյեմբերի։)

վտանգի մէջ կը ձգէր։ Վասն զի սարդք այն եղանակին մէջ սովոր են աշխատութենէ դադրիլ ու թմրութեան քնոյ մը ինքզինքնին տալ, մինչև գարունը իր դռները բանալով՝ աստանդական միջատները արթնցընէ։

Միւս կողմանէ, որովհետև ծանօթ է որ սարդք ծանրաչափական օրինաց բնական հմտութիւն մ'ունին, գիտեն կանխազգաց ըլլալ օդուն փոփոխութեանց, կը գուշակէի որ ձմեռն ուշանար պիտի, և դեռ իր յատուկ սաստկութեամբը չյայտնուէր։ Փափաքելի ակնկալութիւն։

## Ժ

Ի՞նչ եղաւ զարմանքս երբ յանկարծ պատուհանիս մէջ ճանճ մը գրեթէ ոստայնին քովէն քերելով՝ արևուն մէջ սկսաւ թռչըտիլ։

Տեսաւ զայն սարդը. գոնէ ես այնպէս գուշակեցի։ Վասն զի իսկոյն գործունէութենէ դադրելով՝ կանգ առաւ, անշարժ մնաց ոստայնին մէջտեղը։

Կարծես թէ ինքնիրեն կը խօսէր. «Արդեօք ինծի մօտ պիտոր գայ. արդեօք որոգայթը տեսաւ. հասկցաւ խաբէութիւնը։ Եկո՛, ճանճիկ. եկո՛ւր, սիրուն. մի՛ վախնար, մինչև հիմայ քեզի համար աշխատեցայ»։

Դեռ ասկէ աւելի անշուշտ կը զուրցէր. անօգուտ սրտատրոփ։ Ճանճը քիչ մը թռչըտելէն ետքը հեռացաւ, ու տախտակի մը վրայ նստաւ հանգչելու։

Սարդը յուսահատած՝ նորէն գործողութիւնը շարունակեց։

## ԺԱ

Բայց ես խաղին վերջը տեսնալ ուզելով, կը վախնայի չըլլայ թէ ճանճը ճամբան փոխելով փախչի։ Մօտեցայ զգուշութեամբ, ու ձեռաց շարժմամբ մը զայն բռնելով՝ ոստայնին վրայ ձըգեցի։

Զարկաւ թևերն ճանճը որ խալըսի, բայց ոստայնին կպչուն թելերն ինչպէս մոգական անտես զօրութեամբ կաշկանդեր բռներ էին։ Եւ փախչելու իսկ ժամանակ չկար։

Վասն զի սարդը գուցէ փախուստ մը խնթալով, աշխատութիւնը ընդհատեց, ու վազեց հիւրն ըստ պատշաճի ընդունելու։ Թաթիկներուն մէջը առնելով խածաւ մէյմը, ու յետոյ կլոր կլոր պտըտցնելով՝ մէկ քանի րոպէի մէջ՝ ոստայնէ քսակով մը ամփոփեց. թելով մըն ալ ոստայնին վրայ կախելով՝ գնաց նորէն ընդհատած գործը շարունակելու։

## ԺԲ

Հանդէսին ոչ միայն հանդիսատես եղեր էի այլ և կերպով մը դերասան։ Գեղեցիկ մասը տեսեր էի, տան մը շինութիւնը, որոգայթի մը լարուածքը, որսի մ'ըմբռնուիլը։ Կամայ ակամայ հարկ էր նաև չար մասին ալ հանդիսատես ըլլայի. դիտածիս ընաջինջ կործանումը։

Անանկ կեդրոնացեր էր միտքս այս մտածութեանցս վրայ, որ չէի զգար ինչ կը հանդիպէր չորս դիս։

« — Հէ՜յ գրացի.. գրացի.. բարեկամ. ինչպէս կանչեմ. ինչ անուն տամ որ հրամանքիդ ընդունելի անցընիմ ու ողջունի մը արժանի ըլլամ։»

Այդ յանկարծական աղաղակին, որ իբր թնդանօթի մը անհեղաղոչ պայթումը ականջիս խլացուց, դարձայ ափշած տեսնելու ինչ էր այն վայրկենին որ այդպիսի յանկարծական արշաւանք մը կ'ընէր։ Չկրցայ ապշութեան զարմանքս զսպել Սիմոնիկ քերթողը տեսնելով. քերթող մը որուն հռչակը նուրբ փետուրի մը պէս բաղդին թեթև հովովը կ'ելլէր կ'իջնէր։ Սովորաբար՝ լռիկ մէկ մըն էր. բայց երբ քերթող խանդից աշխոյժը զինքը բորբոքէր, աշխարհքիս չորս տարերքը տակն ու վրայ կ'ըլլային։

Անանկ օր մը իր ազնիւ այցելութեան գաղափարը միտքէս չէր անցած.

չէի կրնար ալ դուշակել թէ ինչ պէտք զինքը ինծի կ'ուղղէր ։

— « Հէյ ուրեմն, բարեկամ, կանչեց. ինչ է ապշութեանդ լռութիւնը. հա, կ'երեւակայեմ. դարձեալ ունայն բանի մը համար ինկած պիտոր ըլլաս ։ Բայց խօսէ, զրուցէ ։ ի՞նչ է այս երեւոյթը. քարէ արձան մը կտրեր ես. ինչ, արդեօք ներկայութիւնս չես ախորժիր. զրուցէ ուրեմն, երթամ թէ մնամ ։ »

Յանկարծական երեւոյթը անանկ շփոթցուցեր էր զիս, որ ինչ պատասխան տալս չէի գիտեր ։

« — Կեցիր, մնացիր, ըսի. թէպէտ և քերթողացչատ բարեկամ չեմ, բայց թշնամի ալ ըլլալու պատիւը չեմ ուզեր ։

— Է՛հ, գիտեմ. հարկ մը չկայ զրուցելու. բայց երեսիդ վրայ կը կարդամ որ իմ ներկայութիւնս այնչափ ախորժելի չէ ։

— Չէ, չէ, ըսի. մի տարակուսիր ։ Բայց զբաղած էի ու չիմացայ յանկարծական գալուստդ ։

— Հա՛ զբաղած, զբաղած, կը դուշակէի. բայց տեսնանք ինչ էր առարկայն ։

— Անօգուտ բան մը. և թերեւս քերթողի մը հետաքրքրութեանը անարժան ։

— Բայց գոնէ ինչ է, գիտնամ ։

— Զախորժած բանդ է. սա սարդը ։

— Հա՛, հիմայ կ'իմանամ ազնիւ ըզբաղմունքդ ։ Բայց ինչ կ'ուզես. ամեն մարդ իր բնական ճաշակն ունի ։ Ես քերթողական արուեստը կ'ախորժիմ, դու սարդն ու ճանճերը. ինչ գէշ բան կայ ։

— Ես ոչ մի. քերթողը ցնորից աշխարհները կը շրջի. բնապատումը իրը կը շօշափէ, ճշմարտութիւնը ստուգելու համար ։

— Այո. բայց ոչ ոք արհամարհելի է ։ Ես ալ սարդը կ'ախորժիմ. բայց երբ գեղեցիկ յանգով մը ոտանաւորիս ծայրը կու գայ, ինչպէս մարգրիտէ մանեակի հատիկ մը ։ Սակայն անոր տեսքը, անոր երեւոյթը, ժուֆ, տանիլ չեմ կրնար ։ Է՛հ, կարենայի գէթ ալ քերթող չինել...։

— Անշուշտ, մեծ շահ մը կ'ընէիր, ըսի ծիծաղելով ։ Բայց գիտցիր որ իմ դիտողութեանցս զբօսանքը բոլոր քերթութեանցդ հետ չեմ փոխեր ։ Յետոյ գիտցիր որ ամեն գեղեցիկ ուսման հակամիտութիւնը՝ բնական պիտոր ծնանի. ոչ ոք բանի մեծ թուաբան կրնայ ըլլալ, կամ հռչակաւոր ճարտասան ։ Բայց թողունք այդ խնդիրը. տես հիմա այդ ցանցին հիւսուածքը, դիտէ անոր կանոնաւորութիւնը ։ Գիտցիր ստոյգ որ ոչ երբեք կրցեր է մարդ սանկ կանոնաւոր բանուածք մը հիւսել ։ Տես այն գծերուն յստակութիւնը, անոնց կանոնաւոր չափակցութիւնը. ինչպէս գեղեցիկ կերպով ու համեմատութեամբ մէկմէկու կը յաջորդեն ։ Հաւտա որ որչափ գեղեցիկ ու ներդաշնակ ըլլան քերթութեանդ արուեստակեալ յանգերը, ոչ երբեք այդ բնական շարքին գեղեցկութեանը կրնան հասնիլ ։ Ա՛հ, կարենայի գէթ ցնորաբան քերթութեան իջեցնել ու բնութեան իրական զուարճութիւնը շօշափել տալ ։

— Ա՛հ, չէ, զիս ալ սարդաբա՛ն կ'ուզես ընել ։

— Այո. ինչպէս դու ալ զիս քերթող կ'ուզէիր ընել ։

— Բայց գոնէ քերթութիւնը ազնուական արուեստ է ։

— Հապա էակաց պատմութենէն աւելի ազնուական արուեստ մը կա՞յ. հաւտա որ սարդ մը և քերթող մը մի և նոյն բան է ։

— Հայհոյութիւն. ուրեմն քու արուեստդ ատա՛նկ կը սորվեցնէ ։

— Այո. տեսնենք վրիպանքը ինչ բանի մէջ է ։

— Ա՛հ, բարեկամ, եթէ այդպէս է՝ բարով վայելես արուեստդ ։ Թող միշտ ցնորաբան քերթող մնամ՝ քան թէ սարդանման բնապատում ։

— Բայց չէ, ըսի. չխռովիս սիրտդ. աղէկ հասկըցիր խօսքս. կայ տեսութիւն մը որ ոչ միայն քերթող, այլ և բնապատում մը և ինչ և իցէ մարդ մը՝

*տարդի մը հաւասար կը կչռէ ։ Այս տեսութեանը առջին ....*

*— Այդ տեսութեանը առջին իմ ընութեանս ազնուականութիւնը դէմ կը գրգռի ։*

*Բարեկամ, կը թողում զքեզ քու զուարճութեանցդ ու դիտողութեանցդ․ բարով վայելես սարդդ և անոր ազգականները ։ Թող հիւսեն, զարդարեն պատուհանիդ անկիւնները․ ինչ վնաս կ'ընեն քեզի․ զարդ մըն է որ մերկութեան մը վրայ կը ձգեն ։ Բայց քեզի խօսքս վկայ․ այդ աննշանի էակաց տեսութիւնը և ոչ կ'ուզեմ բնականանիս դիմացն ալ ունենալ ։ »*

*Խօսքը չերկնցուցի․ քերթողը ելաւ հեռացաւ․ ինչ ունէր ընելիք ։ Թերևս քանի մը անգամ իր աշխուժից ժամանակը երգած ըլլար այս էակիս համբերութիւնը, ճարտարութիւնն ու արուեստը ։ Բայց չկարծած ժամանակը ցուցընել իրեն այն կողմը որով սարդը իրեն հաւասար կրնար սեպուիլ, այդ յանդգնութիւն մըն էր, որուն դէմ կ'ելլէր բնականապէս իր բնութեան ազնուականութիւնը ։ Բայց ներելի է կ'ըսէի անոր յանկարծական բարկութիւնը․ քերթողները՝ պատճառ հասկընալու պատրաստականութիւնը չունին միշտ ։ Կը մխիթարուէի յուսով որ անկէ ետքը մտածութեանցս արգելք չէր ըլլար ։*

*Սկսայ նորէն սարդիս դիտողութիւնները ։*

*Պարտիզաց սարդն[1] էր, իր կատարեալ հասակին գեղեցկութեանը մէջ ։ Ո՜ դիտէ ինչ պատահարի պատճառաւ ծառի զուարճութիւնը թողլով, տանուվեց ոտք բարձրութեամբ պատ մը ելեր էր․ և հոն անկեան մը պաշտպանութիւնը խնդրելով, գաւոն օրերու այցելութեանը կը սպասէր, վերջին պաշտպանողական պատրաստութիւնները տեսնելով ։*

*Կը դիտէի շարժմունքները, պատյաները, կեդրոնէն շրջապատը՝ շրջապատէն կեդրոն ըրած երթևեկութիւնները, շտապողական աշխուժութիւնը, ամեն բան միով բանիւ՝ դիտողութեան հետաքրքրութիւնս կը գրգռէին ։ Անանկ մը կ'երևնար՝ ինչպէս թէ ինքզինքը խրախուսէր․ « աշխատէ, աշխատէ, ըսելով․ օրը կարճ է, աշխատէ ։ »*

*Վերջապէս նորոգութեան աշխատանքը լմընցաւ․ հիմա ինչ ընէ պիտի, կ'ըսէի մտքովս ։ Իսկ այն կարծես թէ « հիմա կը հանգչինեմ » կ'ըսէր ։ Ու մէյմըն ալ որոգայթին կեդրոնը փութալով՝ գլխիվայր կանկ առաւ մնաց 'ի կախ ։*

*Ի՞նչ կը մտածէր ։ Չէի կրնար ստոյգն իմանալ․ բայց կը գուշակէի որ որոգայթին ամբողջութիւնը կը քննէր․ արդեօք բոլորովին նորոգեր լմնցուցեր էր․ « ինչու համար ատանկ գլխ 'ի վայր կախուեր ես․ չես վախնար, ըսի, որ արիւնդ գլուխդ հոսելով զքեզ մեռցնէ ։ »*

*Կարծես թէ հասկըցաւ հարցմունքս ու տարակոյսս լուծել կ'ուզէր ։*

*— « Մի՛ կարծեր որ սարդը քեզի նման փափուկ կազմուածք ունի․ այս դիրքս փոխանակ ինծի վնաս մը հասցընելու օգուտ կը մատակարարէ ։ Այս առհազին փորուս ծանրութիւնը, եթէ դէպ 'ի վար կախեմ, առհազին տանջանք կ'ըլլայ ինծի․ մարմինս երկու բաժնելու չափ կը ծանրանայ ։ Բայց դէպ 'ի վեր բռնելով՝ ջղոտ բազուկներուս վրայ կը յեցընեմ ու հանգիստ կ'ըլլամ ։ » Այս ակնարկելով կը հասկըցնէր, ու դէպ իր մաշկապատ որսը առաջարկելով՝ բերանը կ'առնէր որ բոյնը տանի ։*

Հ. Յ. Գ. ԻՍԱՎԵՐԴԵՆՑ

*Կը շարունակուի :*

1 Գղ․ Epeire diadème.

բարոյական և քաղաքական տեսութիւն ։

( Տես երես 163 )

Բ. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ

Հիմունք Բարոյականի ։

Միրըպոյի մէջ հետեւեալ տասնըհինգ օրը Տիւքրէի ըրած իմաստալից խօսակցութեանը վրայ խօսուեցաւ. կրօնաւէր անձինք ուրախ էին այնպէս աղէկ ջատագովութիւն մը ունենալնուն համար ընդդէմ կատականաց խառնակեցից և ամբարշտաց ։ Տկարամիտք և երկչոտք երջանիկ կը սեպէին զիրենք հաւատքնուն մէջ հաստատուելնուն համար. առհասարակ ամենքը այս համախմբութեանց փափաքողք էին՝ որոնցմով լաւագոյն պիտի ըլլար իրենց վիճակը ։

Այնպէս երկրորդ անգամ հաւաքուելու որոշեալ կիրակին՝ ժողովը աւելի բազմաթիւ եղաւ ։ Շատերը Տիւքրէի խօսիլը լսելու հաճութեան համար գնացեր էին, որ կենդանացնելով ախորժելի կ'ընէր միշտ ըսածը ։ Երիտասարդք լսելու փափաքանօք եկեր էին թէ ինչպէս արդեօք պիտի խօսէր այն խնդրոց վրայ՝ որոնց մէջ տարտամութեամբ կը տատամսէին, կամ թէ զՏիւքրէ տարակուսութիւններով նեղը ձգել կ'ուզէին ։

Կային նաև քանի մը յուսահատ անձինք ալ որոնց համար պէտք մ' է ուրիշներէն տարբեր խորհիլը, և քանի մ' ալ ախտերով կամ անձնական շահերով կուրցած մարդիկ ։ Այս վերջինները մեծ յարգ մը չէին տար բժշկին խօսած խնդիրներուն, բայց կը վախնային որ իր խորհրդածութիւնները Միրըպոյի բնակչաց բարուցը վրայ ազդեցութիւն կրնան ունենալ. և սիրտ չընելով առաջին խօսակցութեան իսկոյն վրան յարձակելու՝ մտքերնին դըրած էին որ պարագային համեմատ իրենք զիրենք պաշտպանեն ։

Ասոնց թիւէն էր Վինկենտիոս Տառնիէ զարբինը՝ բուռն բնաւորութեան տէր մարդ մը. Ժարլան՝ որ թշուառութիւններով դառնացած անձ մի էր, և գործառնութեանցը մէջ չյաջողելուն՝ Աստուծոյ և մարդկանց հետ թշնամացած էր. Պասսէ պանդոկապետը և Բասըմար սրճապետը, որոնք աղէկ աչքով չէին տեսներ իրենց շահուն դէմ եղած այսպիսի հաւաքումներ. Վիէօլէն՝ որ տարակուսութիւններ ընելու իր գիտութիւնը ցուցընելէն դուրս՝ ուրիշ պատճառ չունէր. Մօքօր՝ գործեր վրան առնող մարդ մը, որ աւելի յաջողութիւն ունէր դանոնք խառնակելու՝ քան թէ կարգի դնելու, և որ քանի մը վաշխառուաց հետ միաբանած կ'ենթադրուէր ։

Միւս կողմանէ շատ աւելի բազմաթիւ էին բարոյականի սահմանները յարգելու վարժած անձինք, որով նաև բժշկին խորհուրդը մտիկ ընելու պատրաստ էին. պէտք չունէին զուրցածներուն համոզուելու համար՝ իրեն մտիկ ընելու, այլ կ'ախորժէին սորվիլ իրմէ թէ առ հասարակ ամենուն բերանը եղած առարկութեանց ինչպէս պատասխանելու է ։

Ասոնց մէջ նախամեծարելի էր Պերդրան նշանաւոր վարձուորը, որ խնայողութեամբը շատ բարիք կ'ընէր, Թովմաս Ռօշըյ՝ որուն հետ արդէն ծանօթացանք, ամենուն սիրելի անձն մը բարեսրտութեանը համար. Ռոմէն Տիւրուր՝ ուրիշ երկրագործ մը, անկեղծ և զարմանալի զգօնամիտ մէկն, բայց ազատ վարմունքին հետ քիչ մըն ալ բիրտ. Սոժոն՝ ճարտար հիւսնը, շատ ընդունելի հոգով խնամքով ըրած աշխատութեանցն համար. Ոնօրիոս Պիւդէ՝ երիտասարդ ոստայնանկը, որդէն բազմաթիւ ընտանեաց մը հայր, անխոնջ աշխատող, որ օրուան մէջ տասուերկու ժամ ծռած արհեստին վրայ կ'աշխատէր և մնացած ժամանակն իր պզտիկ դաշտը կը մշակէր ։ Պէտք է յիշենք նաև զՏիւպլիւսոն՝ որ Լընուարի ընկերագիրն էր, մանարանին տէրը՝ արդար և

բարի մարդ, նաև հաստատուն ու մասնաւորապէս աշխատութեան տենչութիւնը վրան առած. և Հոյլմնս դաստիարակն՝ ըրած ծառայութեանցը պատճառաւ սիրելի և մեծարելի, որ և իրմէ կրթուող պատանեաց վրայ մեծ ազդեցութիւն ունէր։

Զուարթութեան նշոյլ մը փայլեցաւ բժշկին ճակտին վրայ՝ երբ մտածին պէս ժողովարանը այդպէս լեցուն գտաւ. բարերարն Ցիւբբէ կ'ուրախանար ինքզինքը վախճանին հասած տեսնելով։

— Ազնիւ բարեկամքդ իմ, ըսաւ, երբ դահլճին մէջէն անցնելով՝ առ իւրաքանչիւր ոք բարեկամական խօսք մը զրուցելով՝ տեղը հասաւ ու նստաւ. շնորհակալ եմ ձեր մեր ժողովները գալու համար ցուցած փութոյն։ Կը հաւատամ որ ձեր կողմանէ քիչ մը իմ վրաս ունեցած սէրերնիդ է, վասն զի մեր խօսակցութեանց նիւթը շատ ծանր է, և դուք չէք կրնար յուսալ որ ես զուարճացնեմ. միայն պիտի ջանամ հետաքրքրութիւննիդ շարժելու և մասնաւորապէս ձեզի օգտակար ըլլալու։

Հաստատական ձայներ պատասխանեցին իր այս խօսքերուն, և Ցիւբբէ սկսելու վրայ էր՝ երբ Մորոր որ կ'ուզէր զինքը չփոթել, արտաքսապէս անկեղծ հետաքրքրութիւն մը ձևացնելով, ըսաւ.

— Պարոն բժիշկ, մեզի տասնըհինգ օր առաջ Աստուծոյ վրայ խօսեցար անանկ իմաստներով որ իրաւցնէ զմեզ ափշեցուցին։ Անշուշտ չկայ մէկը մեր մէջը որ Աստուծոյ գոյութիւնը տարակուսի տակ ձգէ. այս նկատմամբ և ոչ մէկ անհաւատ մը կրնաս գտնալ Միրըպոյի մէջ։ Հիմակուան ժամանակս ալ անժխտելի է Աստուծոյ էութիւնը. բայց ի՞նչպէս ճանչնալու է. կրնա՞նք ըմբռնել զինքը. և ի՞նչ պարտքեր անկէ առ մեզ կը ծագին։ Ահաւասիկ ասոնք են մեր միտքը զբաղող խնդիրները, և որոնց լուծումը հրամանքէդ կը փափաքինք լսել՝ եթէ պատշաճ կը դատես։

— Պարոն Մորոր, պատասխանեց Ցիւբբէ, ուրախ եմ երբ հաստատապէս հրամանքէդ կը լսեմ թէ Միրըպոյի մէջ անհաւատ չկայ, և ուրախակից եմ հրամանքիդ. բայց գոհ չես Աստուծոյ էութեանը վրայ սոսկ հաւատալով՝ և կ'ուզես իմանալ թէ ի՞նչ է։ Որովհետև կը հարցընես՝ ազատաբար իմ կարծիքս զրուցեմ։

Աստուծոյ էութեանը վրայ եղած խուզարկութիւնները բացարձակապէս չեմ մերժեր. ով որ այս նիւթիս վրայ երբեք խորհրդածութիւն ըրած չէ՝ յայտնի կ'երևցնէ թէ թեթևամիտ է. բայց զգուշանանք. Աստուծոյ ի՞նչ ըլլալը գիտնալու պէտքը միթէ անհաւատութեան հին խմորին մէկ մնացորդը չէ, որով Աստուծոյ հլութենէն և 'ի սիրոյն ազատելու համար՝ նախ և առաջ Աստուծոյ ի՞նչ ըլլալը գիտնալու կարևորութեանը կը դնէ։ Կը ջանա՞նք նաև մեզի մերձաւոր բաներուն ալ խելք հասցընել, զանոնք վայելելէն առաջ լաւ մը ճանչնալու համար։ Դուք, բարեկամքդ իմ, որ ձեր քրտամբը երկիրը կ'ոռոգէք, միթէ ցորենի հատիկ մը հողոյն ծոցը աւանդելնէդ առաջ կը կենա՞ք ու կը ջանա՞ք ըմբռնել թէ ի՞նչ խորհրդաւոր զօրութեամբ պիտի ծլի, արմատները հողոյն մէջ պիտի տարածէ և ցօղունը դէպ 'ի երկինք պիտի բարձրացնէ։ Գիտէք որ ըլլալիքն այդ է, ուրիշ բան չէք մտածեր, և շնորհակալ կ'ըլլաք Աստուծոյ որ ձեր աշխատութիւնները կ'օրհնէ։ Դու, Վինկենտ, երբ ատրաշէկ երկաթդ սալին վրայ կը ծեծես՝ կանխաւ ջանացե՞ր ես հասկընալ թէ ի՞նչպէս կրակը կը կակղացնէ զայն և ուռան հարուածովը տարածուելու և քու ուզած ամեն ձևդ առնելու յատկութիւն կը հաղորդէ այնմ։

— Ոչ, ըսաւ Վինկենտ. գիտեմ թէ այս այսպէս կ'ըլլայ, ալ ուրիշ բան չեմ մտածեր։

— Ի՞նչ պիտի ընէինք եթէ որ և իցէ բան՝ դեռ ձեռք չզարկած հասկընալ ու քննել ուզենայինք։ Միթէ կ'ըմբռնե՞նք նայինք ինչ որ յարատևաբար աչքերնուս տակն ունինք. միթէ մեր մարմի-

նը առաջին և զարմանալի հրաշալիքը չէ՞. և սակայն չենք ետևէ լինար որ այս առեղծուածը մեզի մեկնուի։ Մենք մեզի համար գաղտնիք ենք, և կը զարմանանք որ Աստուած ալ մեզի համար գաղտնիք ըլլայ։

Որովհետև Աստուած նիւթեղէն չէ՝ զինքը սոսկ իբրև հոգեղէն կրնանք ըմբռնել։ Աստուած անապակ հոգի ըլլալով՝ մեզի միայն մեր հոգւովը կրնայ յայտնուիլ որ իրեն նման ոգի մ՚է։ Ես միթէ չե՞յայտնուիր կը հարցընեմ ձեզի, բարեկամքդ իմ. ձեր մտացը ու ձեր սրտին հետ չե՞խօսիր։ Ես չեմ ճանչնար զինքը անանկ ինչպէս որ կը ճանչնամ աչքով տեսածս ու ձեռքով շօշափածս, բայց հաստատապէս այնմ կը հաւատամ. մանաւանդ թէ ոչ միայն կը հաւատամ՝ այլ և կը զգամ զինքը 'ի միտս և 'ի սրտի և բովանդակ իմ էութեանս մէջ. կը զգամ այն երախտեաց մէջ՝ որոնցմով անպակաս զիս կը լցուցանէ։

Ամենայն ինչ Աստուծոյ էութիւնը կը յայտնէ ինծի. այս բանս բաւական է ինծի համար և չեմ ջանար իր բնութէը գաղտնեացը խորը թափանցելու։ Ի՞նչպէս կրնամ ես անսահման և յանհունս մեծ էակն ըմբռնել։

— Բայց, ըսաւ Անտրէոս Պիւզէ տայնանկը՝ որ օրուան մէջ տասներվեց տասներեօթը ժամ աշխատելով՝ իր բազմաթիւ ընտանիքը հոգալու համար, և կիրակի օրերը հանգչելով ժամերով կարդալով կ՚անցընէր, եթէ չենք կրնար ըմբռնել զԱստուած՝ չե՞նք կրնար ու պարտական չե՞նք իր գործերն հետազօտելու, որպէս զի իրենց վախճանն հասկընանք։

— Անշուշտ, Անտրէոս, պատասխանեց Տիւբրէ. Աստուծոյ գործոց հետազօտութիւնը մեծապէս փրկաւէտ է, վասն զի կը հաստատէ 'ի մեզ իր բարութեան և մեծութեան մտածութիւնը։ Կ՚ուզէի, բարեկամքդ իմ, որ ամենքնիդ ալ գիտնական ըլլայիք. զարմանքնէդ կ՚ապշէիք տեսնելով թէ ինչպէս ամենայն ինչ այս աշխարհիս վրայ կը կապակցի և շղթայի պէս իրարու հետ կը միանայ. այնչափ որ բան մը փոխուելուն պէս՝ իսկոյն այլ ամենայն ինչ պէտք է փոխուի, կամ թէ մարդուս էութիւնը անկարելի կ՚ըլլար աշխարհիս վրայ։

— Բայց, ըսաւ Թովմաս Ռավօյ, միթէ մենք տգէտքս չե՞նք կրնար հասկընալ թէ ինչու համար մեր շրջակայքը տեսած բաներնիս այդպէս եղած են։ Օրինակի համար շատ բաներ կան աշխարհիս վրայ՝ որոնց օգտակարութիւնը չեմ ըմբռներ. սակայն շատ ուրախ կ՚ըլլայի եթէ գիտնայի թէ ինչ կարծիք պէտք է ունենամ։

— Գովելի է փափաքդ, Պ. Ռավօյ. բարեբաղդաբար անոնք որ գիտութենէ զուրկ են՝ շատ գիրքեր կրնան գտնալ յորս բնութեան գիտութիւնը իրենց յարմար ոճով գրուած է։ Դպրոցին մատենադարանին մէջ այսպիսի գրքեր շատ կան, զորս Պ. Հուայմոնտոս կարդալ ուզողներուն կու տայ. ապահով եղէք որ ասկէ աւելի օգտակար ընթերցմունք չէք կրնար ընել։

— Շատ աղէկ, Պ. Տիւբրէ, բայց ամեն մարդ կարդալու յաջողակութիւն չունի, գիտես. իմ ժամանակս դպրոց չկար՝ և յետոյ սորվելու համար տարիքս առած սեպեցի ինքզինքս։ Համառօտ ըսեմ ցաւովք սրտի որ կարդալ չեմ գիտեր. ուստի կը յանձնեմ մանաւորապէս պատանեաց որ ինծի պէս չըլլան։ Բայց կան բաներ որ միտքս կը չփոթեն և շատ գոհ կ՚ըլլայի եթէ խելք կարենայի հասցընել։ Այսպէս ինծի կ՚երևայ թէ ամենայն ինչ աղէկ չերթար աշխարհիս վրայ, և թէ երկրագործաց համար հողը շատ պինդ է։

— Այդպէս է, Պ. Ռավօյ. բայց ուրիշ կերպ չկրնար ըլլալ։ Այս աշխարհիս վրայ ամենայն ինչ իրեն սեպհական զանազան գործածութիւնը պէտք է որ ունենայ. արդ եթէ հողը աւելի կակուղ և թեթև ըլլալու ըլլար՝ աւելի դիւրաւ կ՚աշխատէիր, բայց աւազի կամ տղմի պէս մէջը կ՚ընկղմէիր։ Չէինք կրնար տուներ շինել, վասն զի

հաստատուն հիման մը վրայ չէին հանգչեր. նոյն իսկ ծառերը չէին կրնար հողոյն վրայ կենալ, թեթեւ քամիով մը տապալելով։

— Ըստ ամենայնի իրաւ է, Պ. Տիւբրէ. այս բանս չէի մտածած. շնորհակալ եմ տուած բացատրութեանդ, որով կը սորվիմ որ և իցէ բանի վրայ իսկոյն չգանգատելու։

— Նոյն բանը պէտք է ըսեն նաև անոնք որ միայն զիրենք հոգալու տեղ՝ պէտք են նաև քիչ մը զուրիշներն ալ մտածել. մանաւանդ ահա Մարտիալէսի խանութին կամ Վինկենտիոսի դարբնոցին առջևէն անցած ժամանակս՝ շատ անգամ լսեր եմ քրտինքնին սրբելով քարին և երկաթին դէմ իբրև սաստիկ պինդ նեղանալնին։

— Իրաւ է, ըսին Մարտիալէս և Վինկենտիոս, երկուքը մէկէն, բայց գոնեա պարապորդ մարդիկ չենք։

— Գիտեմ, բարեկամք. դուք կորիճ անձինք էք և անոր համար զձեզ օրինակ բերի. կրնայի նաև Բենեդիկտոս Տուսսէին ալ յիշել՝ որ անտառին մէջ ծառերը կտրելուն ժամանակ շատ անգամ իր երգերը ահագին երգմունքով մը կ'ընդհատէ։

— Կը խոստովանիմ որ իրաւունք չունիմ, Պ. Տիւբրէ, բայց թէպէտ և մեղեխս ամուր է, սակայն ծառերը երբեմն սաստիկ պինդ են տապարիս հարուածոյն առջև։

— Ըսածիդ ես ալ չեմ տարակուսիր, Բենեդիկտոս. բայց անիկա պատճառ չէ Աստուծոյ նախախնամութեանը դէմ հայհոյելու, և կարծելու թէ ամեն բան աղէկ ստեղծած չէ։ Թէ որ Վինկենտիոսի աշխատութեան երկաթը այդպէս ամուր չըլլար, կարելի՞ բան էր արդեօք որ առանց փշրուելու հողը ճեղքէր, Մարտիալէսի քարերը հանէր կամ Բենեդիկտոսին ծառերը գետին տապալէր։ Իսկ դու, ըսէ, Մարտիալէս, եթէ քարդ այդչափ պինդ չըլլար՝ կարելի՞ էր որ մեր տանց շինութեանը և ուրիշ ամենայն պիտոյից ծառայէր։ Ու եթէ ծառերուն փայտը այդպէս հաստատուն չըլլար՝ ի՞նչպէս կրնար մեր բնակութեանցը և այնչափ ուրիշ գործածութեանց ծառայել։ Այս օրինակներէս կը տեսնես թէ անիրաւ ենք երբ զԱստուած կ'ամբաստանենք, վասն զի մենք զմեզ միայն կը տեսնենք կամ ներկայն։ Այսպէս ամառուան տաքին կը տժգոհանք առանց մտածելու անոր մեր հունձքը հասունցնելու համար ունեցած կարևորութիւնը. ձմեռը՝ ցրտին դէմ կը մռմռանք, որ հողոյն ժամանակ կու տայ ներկայ տարուան հունձքը սնուցանելու համար պէտք եղած հիւթերը պատրաստելու, և երկրագործին հանգիստ, առանց որոյ չէր կրնար ամառուան տաժանելի աշխատութեանց դիմանալ։ Ու դարձեալ եղանակաց այս փոփոխութիւնները որ ոմանց տրտունջը կը սաստկացնեն, են պատճառ կենդանութեան այլոց։ Եթէ կարենայի մէջ բերել ամեն աշխարհիս վրայ եղածները, կը ցուցընէի ձեզի որ ձեր մտացը հակառակ շատ բաներ անհրաժեշտ կարևոր են ձեր ապրելուն համար։ Բայց սակայն երբ մեր խօսակցութեանցը մէջ առաջ երթանք՝ անդադար գիտել պիտի տամ ձեզի նախախնամական օրինաց ներդաշնակութիւնը, որով նիւթական և միանգամայն ընկերական աշխարհս կը կառավարուին։

— Բայց, վրայ բերաւ ան ատեն Բասսըմար, եթէ այդ կարգաւորութիւնը օգտակար ալ ճանչնանք՝ կատարելութիւնը չենք տեսներ. որովհետև Աստուած ամենակարող է՝ կրնար ուրիշ կերպով ընել։

— Տարակոյս չկայ, ամենայն ինչ կրնար ուրիշ կերպ կարգաւորուիլ աշխարհիս վրայ. անիկա Աստուծմէ միայն կը կախուէր. բայց ուրիշ կերպ ընելու կարելիութիւնը չնուազեցներ ամենևին այն շնորհակալութիւնը՝ որ իրեն պարտական ենք հաստատած կարգաւորութեանը համար. վասն զի ասոնք այնպէս կապուած են՝ որ եթէ մէկը փոխուի, իսկոյն մարդս կը նեղուի կամ չկրնար ապրիլ։ Ասկէ ի՞նչ հետևանք կ'ելլէ, բարեկամքդ իմ, բայց եթէ՝ այս

աշխարհիս վրայ ամենայն ինչ մարդուս համար եղած է. և ես իմանալէն ետքը ինչպէս կարելի է շնորհակալ չըլլալ Աստուծոյ:

— Սակայն ինծի կ'երևայ թէ ամենայն ինչ ոչ է աղէկ աշխարհիս վրայ, առարկեց թթու երեսով մը Ժարլան, որ դժգոհ վիճակին մէջ ամեն բան գէշ կը տեսնէր: Միթէ իբրև Աստուծոյ բարիքը կը համարիս հիւանդութիւնները, տկարութիւնները, սովը, կարկուտը, մրրիկները, ողողումները և երկիրս աւերող ամենայն դժբաղդութիւնները, առանց համրելու մարդուս նեղութիւն տուող կամ ստացուածոցը վրայ յարձըկող անասունները:

— Յայտնի է թէ աս ամենը բարիք չեմ համարիր, Պ. Ժարլան, թէպէտ և տեսութեան կէտով մը՝ որուն վրայ դեռ մենք չխօսեցանք, ան ամենն ալ մարդկանց համար իրենց օգտակարութիւնն ունենան, շատ անգամ նաև անոր համար որ կը կրէ: Մեր թշուառութիւններէն շատը մեր սխալանացը պատճառաւ է և մենք կրնայինք անոնցմէ ազատ ըլլալ, կամ անոնց դառն արդիւնքը կանխատեսել լաւագոյն կենօք կամ աւելի նախազգուշութիւն բանեցնելով: Բաց ասկէ՝ ինչ որ քանի մը անհատից համար մեծ հարուած է, յաճախ բովանդակ երկրի մը բարերարութիւն է, ինչպէս են մրրիկք որոնք մթնոլորտը կը մաքրեն և բեղնաբեր անձրևներ կը բերեն: Նոյնպէս են նաև անհամար բաներ, որոնց համար կը գանգատինք, որոնք կը մղեն զմարդ իր կարողութիւնները գործածելու. կը զարթուցանեն ընկերականութեան բընական զգացումը՝ զոր Աստուած մարդուս սրտին մէջ դրեր է, բարի բարի վերաբերութիւններ կը հաստատեն և գործնական առաքինութեանց ասպարէզ կու տան: Բայց այս բանս հասկընալու համար հարկ է որ մարդուս այս աշխարհիս վրայ ունեցած վախճանը ճանչնանք:

Ի՞նչ է մարդս և ինչու եղած է: Աշխարհիս ստեղծուելէն 'ի վեր այս հարցմունքը եղած է, որուն գոհացուցիչ պատասխանը ինչպէս մեր դարուն հըռչակաւոր մէկ փիլիսոփան ըսած է, կը գտնուի միայն փոքրիկ գրքի մը մէջ որ ամենքնիդ ալ գիտէք, և այս նկատմամբ շատ աւելի բան կը սորվեցնէ՝ քան ինչ որ մարդկային ոգւով գըտնուած դրութիւնները: Այս փոքրիկ գիրքը՝ քրիստոնէականն է:

— Ի՞նչ, ըսաւ Վիկէոլէն, միթէ զմեզ քրիստոնէական սորվելու կ'ուզես խաւրել:

— Ինչու չէ, եթէ քրիստոնէականը մեզի խելք կը սորվեցնէ:

— Բայց քրիստոնէականը տղայոց համար շինուած է:

— Նաև մարդկանց համար ալ կը պատշաճի, և կը յուսամ որ այսմ զքեզ կատարելապէս համոզեմ: Եւ իրաւցնէ քրիստոնէականը մեզի կը սորվեցնէ որ Աստուած զմեզ ստեղծեր է զինքը ճանչնալու համար, զինքը սիրելու և իրեն ծառայելու համար. և այս կերպով յաւիտենական երջանկութեան արժանի ըլլալու համար: Այս սահմանը ամենայնի պատասխան է, ամենայն ինչ կը բովանդակէ, և կը տարակուսիմ ուրիշ մը գտնալ որ մարդուս ինչ ըլլալը լաւագոյն բացատրէ: Ճանչնալ, սիրել ու ծառայել Աստուծոյ՝ այս երեք բանը ամբողջապէս կը կապեն զմարդ և իր ամենայն պարտքը կը բովանդակեն:

Ի՞նչպէս ուրիշ կերպով ճանչնալ զԱստուած՝ քան հետաքննելով իր գործերը, և ինչպէս ուսմամբ հետաքննել զանոնք՝ առանց մեր միտքը մշակելու: Որչափ աւելի մարդս ուսեալ և կըրթեալ ըլլայ՝ այնչափ աւելի կրնայ ճանչնալ և խելք հասցընել Աստուծոյ ստեղծածներուն: Քրիստոնէականին պատասխանն ուրեմն կը պարտաւորէ զմեզ որ կրթուելու ջանանք: Կրնաս կարծել ասկէ ետքը, Պ. Վիկէոլէն, որ քրիստոնէականը տգիտաց համար միայն ըլլայ:

— Իրաւունք ունիս, պատասխանեց

վիճոլէն, առաջին բացագանչութեանը վրայ քիչ մը ամչնալով, բայց ամենէն աւելի զգայուն կողմէն հարուած մ'ընդունելով, որ էր ինքզինքը գիտնական սեպելը։ Տիւբրէ շարունակեց։

— Քրիստոնէականը մեզի կ'ըսէ նաև թէ մարդս զԱստուած սիրելու համար ստեղծուած է։ Եւ իրաւցնէ՝ ինչպէս կարելի բան է Աստուծոյ արարածոցը վրայ խորհիլ ու խոկալ և ամենայն զօրութեամբ հոգւոյ չսիրել զայն՝ որ մեզի համար ըրած է ամենայն ինչ այս աշխարհիս վրայ և կը հոկէ մեր ամենուս վրայ։ Ուրիշ կողմանէ ժխտելը թէ Աստուած կարենայ կենալ մեր վրայ զբաղիլ՝ սահման դնել ուզել է իրեն կարողութեանն ու բարութեանը, որպէս զի կարենանք մեր երախտագիտութեան և սիրոյ պարտքէն ազատիլ։

Բայց ինչպէս այս երախտագիտութիւնն ու սէրը ցուցընելու է իրեն՝ բայց եթէ ծառայելով. և ինչպէս ծառայելու է Աստուծոյ. հպատակելով հրամանացը և իր կամքը կատարելով։ Սակայն գերագոյն արդար ու բարի էակ մը միայն բարի կամք կրնայ ունենալ. Աստուծոյ ծառայել ու իրեն կամքն ընելը՝ բարիք ընելն է ուրեմն, փախչիլ 'ի չարէ, զգուշանալ այլոց վնաս ընելէ, որչափ աւելի կրնանք ծառայութիւն մատուցանել իրեն. մէկ խօսքով՝ առաքինութիւն գործել։ —

Պասսէ դեռ բերանը չէր բացած, սակայն շատ ծուռ աչքով կը տեսնէր այս հաւաքմանց ընթացքը, որով գինետանը երթևեկը շատ կը նուազէր։ Յարմար ժամանակ սեպեց առ 'ի շահ անձին դիտողութիւն մ' ալ ինքն ընելու։

— Որովհետև Աստուծոյ ծառայելու համար բարիք գործելը բաւական է, կը համարձակիմ ըսել թէ պէտք չունինք ան ամեն բաներուն որ քահանաները կ'ըսեն։ Եթէ իրենց մտիկ ընելու ըլլանք՝ Աստուծոյ ծառայելու համար միշտ եկեղեցին ըլլալու է։

— Քիչ մը շատ շուտ առաջ կ'երթաս, Պ. Պասսէ։ Աստուծոյ ծառայելու լաւագոյն կերպն՝ առաքինութիւն գործելն է, բայց բաւական չէ։ Հօրդ վրայ սէր ցուցած կ'ըլլաս հպատակելով միայն իրեն կամացը՝ առանց ամենևին գորովոյ և յարգանաց նշան մը յայտնելու։ Անտարակոյս՝ չէ։ Նոյնպէս պէտք է որ յայտնենք Աստուծոյ զինքը սիրելնիս, տուած շնորհացն համար շնորհակալ ըլլանք, և պէտք եղած պաշտօնն ընծայենք իրեն։

— Բայց, Պարոն, վրայ բերաւ Պասսէ. ինչ պէտք ունիմ աղօթելու համար եկեղեցի երթալու. միթէ Աստուած ամեն տեղ ներկայ չէ՞. ինքը մեր աղօթքը՝ առանց եկեղեցի երթալնուս ալ կը լսէ։

— Իրաւ է, Պ. Պասսէ, թէ Աստուած՝ որ ամենուրեք ներկայ է, նաև գինետանց ալ մէջն է և կը տեսնէ ամեն հոն հանդիպածը, մեր սրտին ամենագաղտնի խորհուրդներն ալ կը կարդայ, և ուր որ ալ ըլլանք՝ մեր աղօթքը կը լսէ։ Բայց եթէ իրաւցնէ կ'աղօթենք Աստուծոյ՝ ինչու համար կը քաշուինք մեր ժողովեալ եղբարցն առջև նոյնն ընելու։ Միթէ այս ամեն պատրուակներուն տակ կրօնքնիս խոստովանելու խորշումը չէ՞ որ կը ծածկուի, վասն զի այս խոստովանութիւնը կը պարտաւորէ զմեզ որ վարքերնիս դաւանանքնուս հետ յարմարի։

— Բայց միթէ Աստուած մեր աղօթիցը պէտք ունի, հարցուց ըստ իւր կարգին Բասսըմար։

— Անշուշտ չէ. Աստուած մեր աղօթիցը պէտք չունի, բայց մենք պէտք ունինք իրեն աղօթելու։ Աղօթքը փըրկաւէտ է մարդուս, իր պարտուցը ըզգացմունքը կ'արթնցընէ. անդադար իր պէտքը հոգալու զբաղած ըլլալով՝ կըրնայ իրբև մարդ ունեցած պարտքերը մոռնալ, եթէ որոշեալ օրերու և ժամերու մէջ կրօնական հրահանգներ իրեն վախճանը մտածել չտային։ Ամեն տեսակ ներողութեանց ձեռքը մատնուած ըլլալով՝ երբեմն կրնար վհատիլ, եթէ աղօթքը՝ յոյսն ու վստահութիւնը չաւելցնէր, բարեկամ մը՝ պաշտպան

ձը, հայր մը ցուցընելով երկնքը իրեն համար: Աստուծոյ մէկ նոր բարերարութեանցն իբրև պարտք մեր վրայ դրուած աղօթքը՝ իր սիրոյն մէկ ապացոյցն է. վասն զի մարդուս տկարութեանը օգնութիւն է, և մխիթարութիւն մը ու երջանկութիւն:

Աս բաւական չէ աղօթելը. հասարակաց պաշտամունքն ալ պարտք է առ Աստուած և առ մարդիկ:

— Միթէ Օրինաց մատեանը նոյնը մեզի չի՞ սորվեցներ կրօնից նման, առարկեց Մոզեր:

— Հրամանքդ, Պ. Մոզեր, արհեստդ ըլլալով Օրինաց մատեանը ինծմէ աղէկ գիտես. բայց պէտք է գիտնաս թէ ընդ մէջ այն բաներուն որ մարդկային օրէնք կ'արգելուն և բարոյականը կը ներէ՝ անհուն միջոց մը կայ ուսկից անդին չանցնիր երբեք ողջամիտ մարդը. Լուդուիկ Մօրանի օրինակը նոյնը կ'ապացուցանէր մեզի անցեալ օր: Կախաղանի համեստ մարդ կ'ըսենք, խօսելով անոնց վրայ որ օրինազանց ըլլալու չափ խոհեմութիւն ունին, բայց օրինաց արգելած բաներէն դուրս ամէն ուզածնին կ'ընեն: Գիտէք թէ ինչ համարմունք կ'ունենանք այնպիսեաց վրայ և ինչպէս ամենքնիս կը զգուշանանք իրենցմէ:

Բայց մի կարծէք, բարեկամքդ իմ, իբրև թէ ես ուզենամ մարդկային օրէնքները պարսաւել. քաւ լիցի. ամենամեծ ծառայութիւն կ'ընեն ժողովրդեան, և երբեք ընկերութիւն մը առանց անոնց չկրնար ըլլալ. բայց աս ալ կայ որ ամենքը չեն կրնար սորվիլ շատ և խճողած ըլլալնուն համար. և սակայն կան շատ մ'ալ բաներ որոնց վրայ չեն խօսիր, և բարոյականը կը սահմանէ կամ կ'արգելու: Դատաստանական Օրինագիրքն ուրեմն բարոյականի օրինագիրք չէ:

— Երկուքին ալ պէտք չունիմ, կըցեց Վիէուլէն, ինչպէս նաև կրօնից ալ, ինչ կերպով կեանք անցընելիքս գիտնալու համար: Իմ շահս ատոնց ամէնէն աւելի կը սորվեցնէ ինծի:

— Կը կարծես; Պ. Վիէուլէն:

— Կը կարծեմ. մանաւանդ թէ ապահով եմ:

— Զգոյշ եղիր. ապահովութիւնդ կրնայ շատ անգամ խաբէութիւն մ'ըլլալ: Եթէ ըսելովդ թէ մեր շահը կը ցուցընէ մեզի ինչ որ պարտական ենք ընելու, այնպէս կը հասկընաս թէ մեր ճշմարիտ շահուն կը ծառայենք, նոյն մտքի վրայ ենք: Ես այսպէս երջանիկ կը համարիմ ինքզինքս հիմակուընէ կարենալով զրուցել իմ ունկնդրացս՝ թէ մարդուս իր շահուն ծառայելու լաւագոյն միջոցը պարտքերը կատարելն և կրօնից ու բարոյականի սահմանները բռնելն է: Անդադար առիթ պիտի ունենամ ցուցընելու ձեզի շահու և պարտուց անխզելի միութիւնը, և նաև ապացուցանելու որ բարոյականի օրինաց յարմարելով՝ ինչ որ աւելի օգտակարագոյն է մեզի զայն կ'ընենք: Այս բանս պիտի ըլլայ միանգամայն նոր նիւթ մը Աստուծոյ բարութեանը վրայ զարմանալու՝ որ այսպէս աղէկ կարգաւորեր է ամենայն ինչ, որ բարոյականի օրէնքները պահելով՝ մեր անձանց օգտակար ծառայութիւն մ'ըրած կ'ըլլանք:

Բայց եթէ դու առանձնական շահու վրայ կ'ուզես հիմնել հասարակաց և մասնաւորաց բարոյականը, ներէ ինծի որ կարծիքդ չեմ կրնար ընդունիլ. այս բանս շատ անգամ փորձուած է և միշտ 'ի զուր: Այս նկատմամբ՝ որովհետև ընթերցասէր ես, կը խաւրեմ հրամանքիդ մեզի ժամանակակից անուանի փիլիսոփայի սքանչելի գիրքը ի վերայ ճշմարտի, գեղեցկի և բարւոյ: Բայց որովհետև աշխարհիս մէջ ունեցած կարծեացդ շատ պաշտպաններ կան, ներէ ինծի որ քանի մը խօսք զրուցեմ այս նկատմամբ:

Ըսի թէ մեր պարտքը ճշմարիտ շահերնուս հետ մէկ է, և ըսածս կը հաստատեմ: Այսու կը հասկընամ որ պարտքերնիս կատարելով՝ մեզի օգտակար եղածը գործենք. բայց պէտք չէ ասկէ հետևցնել թէ պարտքերնիս կատարելու համար բաւական է շահեր-

նիս նայիլ։ Այս բանս կարելի էր եթէ մեր սառոյգ շահը ձեռք բերելու համար մոլորելու տրամադրեալ չըլլայինք. սակայն շատ անգամ մեզի շահաւոր կը համարինք՝ ոչ եթէ ինչ որ ստուգապէս օգտակար է, այլ ինչ որ հաճոյական է։ Նախ քան զամենայն մեր հանգստութիւնը, վայելքն ու հաճոյքը կը սիրենք և անդադար մեր ճշմարիտ շահը վայրկենական հաճոյից կը զոհենք. եթէ ուրեմն շահերնիս մեզի առաջնորդ առնելու վարժինք, սխալելու և վնասով ելլելու ենթակայ կ'ըլլանք։ Վաղանցուկ հաճոյք մը, ախորժ մը, մոռացածնիս քմաց յարմար բան մը՝ կրնայ ըլլալ որ իրական և յարատև շահու տեղ սեպենք։

Թող որ այսպիսի վարդապետութիւն մը զմարդիկ մեծամեծ տագնապներու մէջ կրնայ ձգել. վասն զի եթէ շահերնին իրենց վարուցը կանոնն է, և որովհետև ինչ որ իրենց հաճոյ է զայն շահաւոր կը սեպեն, ա՛լ ես չեմ կրնար գիտնալ թէ ինչ պէտք է մտածեմ իմ իրենց հետ ունեցած վերաբերութեանս ժամանակ, մէկուն հաճոյ եղածը միւսոյն անհաճոյ ըլլալուն պատճառաւ։ Ուրեմն բարոյականը՝ որ է ըսել մարդկանց վարուցը կանոնն՝ ըստ իրենց ախորժին պիտի փոփոխութիւն կրէ, և որչափ մարդիկ՝ այնչափ ալ բարոյական պիտի ըլլայ. նոյն իսկ իւրաքանչիւրոց բարոյականը օրըստօրէ պիտի փոփոխի. վասն զի այսօր մէկուն ախորժելի եղածը՝ վաղը անախորժ պիտի ըլլայ։

Եթէ ես մարդկանց քմահաճոյ պարտքէն ու երևակայութենէն կախումն պիտի ունենամ, շնորհակալ եմ բարոյականիդ. աւելի կ'ախորժիմ սովորական բարոյականը, այսինքն է կրօնից և պարտուցը. գոնեա գիտեմ ինչ բանի վրայ հաստատուիլ, ամեն մարդկանց համար՝ ամեն ժամանակ և ամեն տեղ նոյնն ըլլալով։

— Թողութիւն կ'ընես, Պ. Տիւբբէ, ըսաւ այն ժամանակ Վիէոլէն։ Հրամանքդ անցողական և սխալ շահու վրայ խօսք կ'ընես. բայց իմ ըսածս յարատև և աղէկ շահու համար է, ընդունելով որ աղէկի՝ գէշի գաղափարները ըլլան. ներէ ինծի որ միտքս բացատրեմ։ Բարին այն է որ մեր շահուն կը յարմարի. իսկ չարն անոր հակառակն է. ախտն՝ այն մոլորութիւնն է որով ճշմարիտ երջանկութիւնը զոհ կ'ըլլայ վնասակար և անտևող հաճոյից. առաքինութիւնն ընդհակառակն այն իմաստութիւնն է՝ որ տևողական երջանկութեան մը փոխանակ կրից հրապուրանաց դէմ կը կենայ։ Շահու բարոյականը կը հաստատէ այսու այն ամենայն պարտքերն՝ որ սրբանուէր եղած են հասարակաց կարծեօք. անոնք պարտք են՝ վասն զի մեր անձնական շահուն համեմատ են. մարդկանց բարիք ընելն ամենէն աւելի ապահովագոյն ճամբան է, որպէս զի իրենք ալ նոյնը մեզի ընեն, վասն զի լաւագոյն միջոցն է իրենց համարմունքն ու համակրութիւնն ստանալու։ Կը տեսնես, Պ. Տիւբբէ, որ սովորական բարոյականին պահանջածներն իմ շահս ինքնին կը պահանջէ որ ընեմ, և անոր արգելածներէն զիս կը զգուշացնէ. ա՛լ ուրեմն ես պէտք չունիմ հրամանքիդ կրօնիցն ու բարոյականին. աւելի ապահով առաջնորդ մ'ունիմ. վասն զի բան մը այնպէս հարկեցուցիչ և անվրիպելի չէ՝ ինչպէս մարդուս շահը։

— Պ. Վիէոլէն, շնորհակալ եմ հրամանքիդ բացատրութեանը, որ ճիշդ կը ծառայէ ինծի մոլորութիւնդ ապացուցանելու համար. վասն զի եթէ բարոյականն ու շահը մի և նոյն բերանը կը բանեցնեն, չեմ իմանար թէ ինչու համար մենք մէկը մէկալին հետ պիտի փոխենք. և ոչ իսկ զշահը իրաւապէս անվրէպ առաջնորդ մը կը գտնեմ. այդ դիւրին է ինծի համար ասոր հակառակը ձեզի ապացուցանել։

Միտ դիր նախ և առաջ. շահերնուս մեր պարտուցն հետ ունեցած համաձայնութեամբն հանդերձ, միութիւն մը՝ որուն ես կը հակառակիմ ու չեմ ընդունիր, երբեմն բարոյականն առաջինը

երկրորդին զոհել կը հրամայէ․ այս խորհրդածութիւնը կը դատապարտէ ուրեմն այնպիսի վարդապետութիւն մը՝ որ մեր գործոցն իբրև միակ կանոն կու տայ շահերնիս․ կ'ըսեմ, միակ՝ լաւ ուշ դիր․ վասն զի ես հրամանքիդ չափ բացարձակ չեմ խօսիր։ Հրամանքդ կրօնքը իբրև քաղաքականի հիմունք՝ բոլորովին մէկդի կը ձգես և շահով զոհ կ'ըլլաս․ ես շահը չեմ արհամարհեր, քաւ լիցի․ մանաւանդ թէ քաղաքականի օգնութեան կը կանչեմ․ բայց զայն իբրև հիմունք համարելէն կը զգուշանամ։

Երբ կրօնքն ու խիղճ կը պատուիրեն մեզի գործել զբարի, խորշել 'ի չարէն, զրկել զմեզ 'ի պարապելի հաճոյից, չափաւորել մեր կիրքերը․ երբ ծանր պարագայից մէջ կը հրամայեն մեզի նոյն իսկ մեր շահն ալ զոհել, չեն հրաւիրեր զմեզ առ այս՝ մեր այսու ստանալիք յարգանացն և համակրութեանն համար, և կամ յապագայս յուսալի մեծագոյն և յարատև հաճոյից համար, այլ կը հրամայեն իբրև պարտք և կը փութացնեն քան զամենայն երկրաւոր շահս գերագոյն բարւոյն խոստմամբ, այն է՝ յաւիտենական երջանկութիւնը։

— Ո՛հ, ահաւասիկ վերջին մեծ խօսքը, գոչեց Պասալ․ ինչ խօսք․ քանի որ կ'ապրինք՝ զմեզ ամեն բանէ զըրկենք, մեռնելնէս ետքը երջանիկ պիտի ըլլանք․ միշտ մի և նոյն եղանակն է․ և ով կ'երաշխաւորէ մեզի հրամանքիդ յաւիտենական երջանկութիւնը։

— Իսկ ով կ'երաշխաւորէ հրամանքիդ վաղուան երջանկութիւնդ, Պ․ Պասալ․ ապահով ես տարիներով՝ ամիսով՝ շաբաթով ապրելուդ վրայ։ Աղէկ առողջ եմ, կ'ըսես․ բայց ամեն չար պատահարները պակաս չեն․ հիւանդութիւն մ' է կու գայ ու կ'առնէ կը տանի․ 'ի զուր կը ջանաս, զրկումներ կ'ընես հաճոյքդ երկընցնելու համար, վասն զի ներկայն միայն անձիդ կը վերաբերի, և զրկումներդ կ'ըլլան սոսկ 'ի կորուստ․ թաքթափէ ուրեմն 'ի խորս հաճոյից, և որովհետև կեանքն անստոյգ է, նայէ որ, ինչպէս կ'ըսեն, կարճ ու աղէկ ապրիս։

— Բայց աս չուզեցի ես ըսել, վրայ բերաւ Վիքթօրէն․ այս թանձր քաղաքականը մարդկանց համար չէ՝ այլ անասունոց համար, եթէ քաղաքական ունենալու ըլլային։

— Գիտեմ, պատասխանեց Տիւբրէ, և այս գաղափարները հրամանքիդ չեմ ընծայեր․ բայց զգուշացիր, դրութիւնդ հոն կը տանի։ Եթէ հրամանքդ այս հետևանքը չես հաներ, այլք կը հանեն։ Կ'ուզես որ զիս զրկեմ քանի մը հաճոյքէ՝ որպէս զի յապագայս աւելի երկայն ժամանակ զանոնք վայելեմ․ բայց ո՞ւր է իմ շահս՝ եթէ այս ապագային չեմ հասնիր․ զրկումը կը մնայ և հաճոյքը կը սահի կ'անցնի․ 'ի զուր խաբուեցայ, 'ի զուր թշուառացայ։

Կը կարծես որ ես բարիք գործեմ մարդկանց յարգանացն ու բարեսիրութեանը արժանանալու համար․ կ'ընդունիմ․ բայց մի՛ ըսեր թէ առ 'ի շահ անձիս․ վասն զի ի՞նչ շահ ունիմ աղքատներն ու թշուառները ինծի պարտական ընելով։ Երբ ընչիցս մէկ մասը իրենց համար զոհելու ըլլամ՝ փոխարէն չեն հատուցաներ․ և եթէ խեղճութեան մէջ իյնամ՝ հասարակաց համարմունքը կ'ազատէ զիս անկէ։ Եթէ բարին առ 'ի շահ կը գործեմ, շահուս հակառակը տեսնելով՝ ես կը կենամ անկէ։ Եթէ հասարակաց համարման համար է ըրածս, կը դադրիմ ընելէ երբ ոչ ոք կրնայ գիտնալ։ Դարձեալ՝ եթէ այս խորհրդածութիւնս՝ առ ընկերս պարտքեր վրաս կը դնէ, անձիս նկատմամբ բնաւ պարտք մը չհրամայեր, և իսկոյն ներելի է ինծի համար ամենայն ինչ, երբ անպատուհաս կըրնամ նոյնը գործել և յայնմ իմ շահս կամ հաճոյքս կը տեսնեմ։ Անզգամ եմ, անառակ, մոլորեցուցիչ, չնացող, երբ կրնամ ըլլալ առանց համբաւս, ազատութիւնս ու կեանքս արատաւորելու։

Տես նաև թէ ուր կը տանի զմեզ այս

գրութիւնը. Ի՞նչչափ ուսմունք կը պահանջէ, որչափ հաշիւ հետը մէկտեղ կը բերէ։ Բովանդակ մտացս կարծութիւնները պէտք է որ 'ի գործ ածեմ 'ի խնդիր իմ շահուս, և սակայն ապահով չեմ այնմ հասնելու. կրնամ խոհեմութեամբ և կամ ըստ պարագայից՝ բաղդս ու յաջողութիւններս աւելցնել. սակայն միշտ ձախորդութիւններ ալ կը հանդիպին, և կամքս անոնց դէմ բան մը չկրնար ընել. վախճանը միշտ անստոյգ է։ Ընդհակառակն կրօնից վախճանական նպատակը անխաբ է. այս աշխարհիս վրայ բարեկեցութիւնս փնտռած ժամանակս՝ կարելի է որ չյաջողիմ, սակայն հատուցմունքն անփախուստ է. վասն զի իմ կամքէս ու ջանքէս կախումն ունի։ Այսպէս պարտքը երջանկութիւնս ինծի կը յանձնէ. գերագոյն բարին՝ յաւիտենական երջանկութիւնը միայն ինծմէ կը կախուի։

— Շատ աղէկ, Պ. Տիւբրէ, կեցց վիէօլէն. բայց այս բանս ապագայ կենաց գոյութեանը վրայ կը հանգչի՝ զոր անշուշտ չեմ ուզեր ժխտել. բայց սա ալ կայ որ վերջապէս ոչ ոք աներկբայելի կերպով կրնայ հաստատել։

— Ուրիշ շատ բաներէ աւելի աղէկ կ'ապացուցուի, որոնք ամենևին հակառակութիւն չեն կրեր։ Շատ աղէկ, Պ. վիէօլէն, դէշ տեսնենք եղածը և համարինք թէ հանդերձեալ կեանք չկայ. Ի՞նչ կը հետևի անկէ. խաբուած կ'ըլլամ, 'ի զուր յուսացած կ'ըլլամ, բայց գոնեա այս յոյսը կենացս մէջ ինծի ամրութիւն կ'ըլլայ։ Իսկ հրամանքդ ի՞նչ ունիս որ ձեռնտու ըլլայ բարի գործելու և չարին փորձութեանը հակառակելու. վասն զի շահու բարոյականը քարոզելով՝ պարտուց և կրօնից բարոյականէն զուրս աւելի թոյլ բարոյական մը չես ուզեր քարոզել. և ինքզինքդ կրօնասէր անձանցմէ նուազ համեստ չես համարիր։

— Յայտնի է թէ չէ։

— Պատասխանէդ ինծի նիւթ կ'առնում, Պ. վիէօլէն. իսկ եթէ կենցաղավարութիւնդ պէտք է որ նոյն ըլլայ, եթէ չես ուզեր զգօնութեամբդ և առաքինութեամբդ ստորին ըլլալ քան զկրօնասէր անձինս, եթէ ուրիշ բանով չես համարիր տարբերիլ՝ բայց եթէ հաւատքով, ան ատեն ինչու համար այս զանազանութիւնը. կամ կ'ուզես ազատ ըլլալ սովորական բարոյականի և կրօնից պատուէրներէն, և կամ անոնց հպատակիլ։ Եթէ վախճանդ ազատ ըլլալ է՝ վարդապետութիւնդ բաւական երաշխաւորութիւն չընծայեր ինծի, որով և չեմ վստահանար։ Եթէ ընդհակառակն կ'ուզես որ հրամանքդ բարոյականին օրինագիրքը քան զիս ստորնագոյն չըլլայ, ինչու համար իմ հաւատքիս դէմ կը կռուիս, որ նեցուկ մ'է ինծի համար և այլոց համար երաշխաւորութիւն։

— Աղէկ կը պատճառաբանես, Պ. Տիւբրէ, և ասոր դէմ առարկելու խօսք չունիմ. բայց ինչու համար կրօնք կը հրամայեն մեզի հաւատալ այնպիսի բաներու որ միտաց խորթ կու գան։

— Կեցիր, Պ. վիէօլէն, ոչ թէ անոր համար որ զիս կը վիրաւորես բանովդ, այլ վասն զի այնպիսի գաղափարաց շարքի մը մէջ կը մտնես՝ որոնց չեմ կրնար հետևիլ, երկայն ժամանակի կարօտ նիւթեր ըլլալով. մէյմ' ալ որ կրօնից ջատագովութիւն ընելու պաշտօնը իմս չէ։ Միայն այնչափ կ'ըսեմ հրամանքիդ, որ մեծամեծ հանճարներու հետ ընդունելով Աւետարանին մէջ յայտնեալ ճշմարտութիւնները, ոչ տգիտութիւնս և ոչ ալ տկարամտութիւնս յայտնած կ'ըլլամ։ Ես ալ կայ որ իմ միտացս ամենևին խորթ չեն գար քրիստոնէական կրօնքին սահմանները, վասն զի աւելորդապաշտութիւնք միայն խորթ են, որ ոչ են կրօնք և կամ բարոյականի դէմ եղող բաներ են։ Արդ կա՞յ բան մը մեր կրօնքին մէջ որ հրամանքիդ անբարոյական երևնայ, կամ արդարութեան և առաքինութեան հակառակ։

— Այս չէր ըսածս, Պ. Տիւբրէ. Աւետարանի բարոյականէն աւելի մաքուր և ամբիծ բարոյական չկայ։

— Գիտէի կանխաւ թէ տատանկ կը մտածես, բայց շատ գոհ եմ բերնէդ լսելուս համար։ Թող որ ուրեմն խօսքս վերջացնելով ըսեմ թէ ինչ կ'արգելու զմեզ որ չհաւատանք. ոչ խորհուրդք և ոչ կրօնական տարօրինակ վարդապետութիւնք, այլ սոսկ մեր հակամիտութիւնքն ու պակասութիւնները։ Առանց մեր կրիցը՝ բոլորով սրտիւ կ'ընդունէինք ինչ որ կրօնից մէջ մեր մտքէն վեր է. բայց հաւատալնուս պէս հարկ է որ վարքերնիս ալ ըստ այնմ ըլլայ, կրօնից պատուէրները կատարել, խորշիլ իր արգելած բաներէն և յաճախ մեր հաճոյքն ու ախորժները զոհել։ Եռանդ չունինք և կը ջանանք արդարացնել զմեզ, չենք հաւատար ըսելով։ Է՛հ, բարեկամս, հրաժարինք մեր կրքերէն և բան մը արգելք չըլլար քրիստոնեայ ըլլալնուս և կոչուելնուս։

Բայց հոս կանգ կ'առնում. բաւական երկայն բանեցի զձեզ այսօր. առանց միտք ունենալուս՝ զձեզ բարձր պաքարացուցի, դաւ անգամ կ'իջնանք դարձեալ յերկիր, աշխարհի մէջ մեր ունեցած զրիցը վրայ զբաղելու համար։

ՌԱԲԷ

Կը շարունակուի։

---

## Աթէնքի Ակրոպոլսոյ հարաւակողման աւերակները։

Աթէնքի Ակրոպոլսոյ հարաւակողման ստորոտը, գրեթէ մոռցուած ըլլալով 'ի հողոց, մինչև ցայսօր հաչակաւոր աւերակները կը տեսնուին. որոյ սոսկ չեղջակոյտը պաշեցուցած էր դիտողաց աչքերը, մինչդեռ չէին կրցած որոշել թէ այն աւերակները հնութեան համբաւաւոր յիշատակաց մը զատուն կը վերաբերէին։

Ակրոպոլ կառուցեալ է ժայռի մը ստորոտը բարձրահայեաց դիրքով, որ կ'իջնայ հին միջնաբերդին հիւսիսային և արևելեան կողմերը։ Դէպ 'ի արևմտեան կողմը միայն ունի զառ 'ի վայր կճեայ մեծագործ սանդուղ մը, որոյ ստորինմանները դուրս հանեց 1853ին Գ. Պէուլէ իր պեղմունքներովը։ Այս սանդղոյն մուտքը Աթենացիք փակեցին նախապղրանց շինութեան ժամանակ։ Կը տեսնուի ցարդ դաւթին պատերուն և սեանց մի մասը որք շարուած են թանգարանին մուտքին առջև։ Քառակուսի բարձր աշտարակն՝ որ մուտքին վրայ կը նայի, յիշատակ մի է երրորդ դարու տիրապետութեան զարդիկացի իշխանաց՝ որ դուրս եղան Աթենայ։ Իսկ այն փոքրիկ շէնքը որ աշտարակին ստորոտը կ'իջնայ, է Յաղթութեան մեհեան, որուն կողմնական մի երեսը դարձած է դէպ 'ի արտաքին պատուարը, և իր յառաջակողմը և յետակողմը ձևացած են սիւներով կամարակապ սրահներ։ Իսկ Պարթենոն՝ որ դաշտավայրին ամենաբարձր կէտին վրայ է, Յունաստանի ամենագեղեցիկ շէնքերէն մէկն ըլլալով, իսկոյն իրեն կը ձգէ ճանապարհորդին աչքերը։ Քիչ մը դէպ 'ի ձախակողմը կը տեսնուին Երեքթէոնի աւերակները, Բոլիատեան և Պանդրոսեան Աթենասայ կրկին մեհեանը. և հարաւային կողմը կը տեսնուին կարիատիդներն, որք իրենց գլխուն վրայ կը տանին մեհենին շքեղ վերնատան վերնախարիսխը։

Պատուարը որ յեցեալ է որմակալներու, և կը շրջապատէ Ակրոպոլսոյ բոլոր այս մասերը, չէ նոյնը ինչ որ շինեց կիմոն՝ Միլտիադեայ որդին՝ իրեն ծախիւքը, այլ Տաճկաց շինածն է, որ դրցած է առջինը, բայց այսու ամենայնիւ կիմոնի պատուարն ալ կը տեսնուի ուրեք. իսկ պատուարաց ստորոտէն մինչև 'ի վայր ժայռը սեպաձև է։ Ժայռին քանի մը դիւրամատոյց տեղերուն վրայ կը տեսնուէին երբեմն սիւներ, բարձրաքերձ կոթողներ, որք նուիրուած էին 'ի յիշատակս իրենց երաժշտութեան և բանաստեղծութեան մրցանաց մէջ ըրած յաղթութեանց։ Կային ուրիշ յիշատակարաններ ալ որք նոյն նպատակաւ փորուած էին լերան կողերուն վրայ։ Նոյնպիսի էր նաև

Տրասիլլեայ թատերական հիանալի յիշատակարանը, որ գրեթէ մինչև մեր օրերը իր կատարելութեանցը մէջ մնացած էր, բայց Տաճկաց ռումբերէն տապալեցաւ։

Այս յիշատակարաններս՝ որ Բաքքոսի նուիրեալ են սպանդարամետական հանդէսներու մէջ մրցող յաղթականներէն, կը ցուցընեն թատերց մերձաւորութիւնը, ուր ստացած էին այս մրցանակներս։ Ասոնք են այն թատրըները որոց աւերակները կը տեսնուին մինչև ցայսօր Ակրոպոլսոյ հարաւակողմը։ Ձախակողմը Ատտիկոսի Հերոդեայ թատրը կ'իյնայ, իսկ քիչ մը առաջ երթալով Բաքքոսի թատրէն, որ շինուած է մօտ արևելեան ծայրին, ընդ առաջ կ'ելնէ ծածկեալ կամարակապ սրահը, զոր կառոյց Եւմենէս Պերգամացւոց թագաւորը, երաժշտաց կրթանաց տեղ ըլլալու համար, իսկ հանդիսականաց ալ՝ անձրևի ժամանակ պատսպարան։

Կը տեսնուին չորս կողմ կամարաձև յարկեր որք թաղուած են մինչև կամարաց պատուանդանը։ Աղեքսանդրի յաջորդ թագաւորները շատք համարեցան զարդարել Աթէնքը նորանոր յիշատակներով, որոնց վրայ արձանագրեալ էր իրենց անունը։ Նմանեցան անոնց նաև Հռովմայեցւոց կայսերաց շատերը, որոց մէջ Ադրիանոս քան զամենքը գերազանցեց։ Աթենացի սոսկական մարդ մը՝ որ կը կոչուէր Հերոդէ Ատտիկոս՝ նախանձեցաւ ասոնց փառացը վրայ։ Այս անձս Մարաթոն ծնած էր, և աշակերտած նոյն ժամանակին համբաւաւոր պերճախօսներուն։ Ինքն իսկ ճարտասան և քաջ մատենագիր էր. իշխանապետ եղաւ 137ին, և ապա բդեաշխ 143ին. առանձնացաւ վերջապէս հասարակաց կեանքէն, և այն անհամար հարստութիւնները՝ որ ձգած էր իր հայրը ու ինքը աճեցուցած, գործածեց 'ի գեղեցկաշինութիւն քաղաքին Աթենացւոց։ Վերստին շինեց կճեայ կամ աթենական կրկէսը, և արժանաւորեցաւ հոն թաղուելու։

Բայց իր գլուխ գործոցը եղաւ թատրը կամ Ոդէոնը, զոր կառոյց Ակրոպոլսոյ մօտ, և անուանեց Ռէգիլլա 'ի պատիւ իր կնոջը զոր մահը կորզեր յափշտակեր էր իրմէ. այս յիշատակարանս կործանեցաւ հռովմէական ինքնակալութեան վերջին տարիները։ Վալերիոս փոխեց զայն ամրոցի. եղաւ ապա ապաւէն բազմաթիւ ընտանեաց, և կամաց կամաց թաղուեցաւ աւերակաց տակ, որք դիզուեցան բարձրացան մինչև ցհաւասարութիւն յարկաց երկրորդ դստիկոնին։ Յետագայ դարուց հնագէտ ճանապարհորդները, ուրիշ թատրոնի նշաններ ալ գտնելով, զասիկայ Բաքքոսի թատրը համարեցան։ Նախ Փանտըլէր տուաւ անոր իր ճշմարիտ անունը։ Եղան նաև ուրիշ քանի մը պեղմունք ալ, մին՝ 1848ին, ծախիւք Աթէնքի հնախօսական ընկերութեան, և գտան տեսլարանին մի մասը. 1857ին ձեռք զարկին մաքրել միայն շինուածոյն ներքին կողմը՝ որ գրեթէ 20,000 խորանարդ մեդր աւերակներով ծածկեալ էր։ Աշխատութիւնը մեծաւ գործունէութեամբ առաջ տարուելով՝ քիչ ատենէն 'ի լոյս հանեին կիսաբոլոր աստիճանները որք կ'իյնան տեսլարանին դէմ, և որոյ վրայ կրնան նստիլ ութ հազարէն մինչև ցտասն հազար հանդիսատեսք. վեց սանդուղք որք կը տանին այլ և այլ տեղեր, երաժշտաց կիսաբոլոր վերնատունը, որուն յատակը Ելևսինի սեաւ մարմարիոնէն շինեալ է, և այս յատակիս ներքև ջրհոր մը. վերջապէս տեսլարանը, և ուրիշ այլ և այլ շինուածներ, որք յարակիցք են գլխաւոր շինուածոց։

Բաքքոսի թատրին մօտ կայր քարանձաւ մը որ նուիրեալ էր նոյն դից, և որուն ճակատը տեղ կը ծառայէր Տրասիլլեայ թատերական յիշատակարանը։ Ըստ սովորութեան Յունաց թատրը ժայռին յեցած է, որք այս կերպ շինուածոց մէջ երկրին բնական կորութիւնը իրենց օգտակար կ'ընեն։ Փանտըլէր անգղիացին, որ իր խորին նրբամտութեամբը ճանչցաւ Հերոդէ

Աստիկեցւոյն Ոդէոնին գիրքը, նոյնպէս ինքն եղաւ առաջին որ ցուցուց Բակքոսի Թատեր գիրքը։ Իր կարծեացը հետեւեցաւ նոյնպէս Պարդէլըմի գաղղիացին, Անաքարսեայ ճանապարհորդութեան հեղինակը։ 1857ին ուրիշ պեղումներ ալ 'ի լոյս հանեցին վերի կողմերէն քանի մի աստիճաններ ալ Տրասիլլեայ յիշատակարանին մօտ։ Այս պեղմանց մէջ գլխաւոր պատիւը կը պատշաճի բրուսիացի Պ. Ստրաք անուամբ ճարտարապետի մը, որ Աթէնք եկաւ 1862ին, յիշատակարանները քննելու համար, համազգի հռչակաւոր իմաստնոց ժողովով մը։ Պ. Ստրաք երկիրը քննեց, բայց բոլորովին կործանման և խառնակութեան մէջ էր, անանկ որ երկար ժամանակ անյուսութեան մէջ մնաց կանոնաւոր ձև մը գտնելու համար։

Սակայն 'ի սկզբան՝ տեղւոյն յատակագիծը հանեց, և ապա երկրին կորութեանը կիսամասնեայ պատկերը։ Եւ այս չնչին ուրուագիծ պատկերներով փորձեց 'ի լոյս հանել վաղեմի Թատրը. և այս աշխատանքս որ առաջ տարաւ մեծաւ գործունէութեամբ՝ շատ կարեւոր արդիւնքներ ունեցաւ։ Հնախոյզ ճարտարապետը ցուցուց որ վաղեմի շինուածքին ստորին կարգին աստիճանները պէտք է որ եօթը ութը մետր խորութիւն ունենան։

Յետ ութօրեայ անօգուտ ջանից, երբ բոլորովին յուսահատած կը տեսնուէին, 1862ին, մարտի 22ին, վերջապէս 'ի լոյս հանեցին հռչակաւոր չէնքի մը սանդղին առաջին աստիճանը։ Նորոգ եռանդեամբ վառուելով, 'ի լոյս հանին հետզհետէ եօթնևտասն սանդղամատունք, և երեք համակեդրոն սանդուղներ, որք կը տանէին դէպ ամեն կողմ։ Դիւրին է իմաստասիրել հնախոյզ գիտնոց սրտին տագնապը, որք մէկուկէս ամիս շարունակ աշխատելով, կրցան վերջապէս ամբողջացունել Աթէնքի հնագոյն Թատրին մնացորդները, որ օրինակ եղած էր այն ամեն Թատերաց, զոր կանգնեցին յետոյ Յոյնք և Հռովմայեցիք։ Ո՛վ չըլլար հաղորդակից այս սրտի յուզման, խորհրդածելով որ այս չէնքս օրրան եղաւ երբեմն Թատրոնական արուեստին, և Թէ այս տեսլարանիս վրայ, այս աստիճանաց առջև են, որ Եսքիլ, Սոփոկլ, Եւրիպիդ և Արիստոփան հանդիսացուցին իրենց հրաշալի քերթութիւնները, որոնք հրաշակերտք կրնան ըսուիլ մարդկային հանճարոյ։

Գիտեմք որ մեր Թուականէն հինգ դար առաջ, Աթէնք փայտաշէն Թատր մը միայն ունէր, որ կործանեցաւ՝ երբ կը հանդիսացուէր Պրատինաս քերթողին մէկ խաղը։ Թեմիստոկլ քարաշէն նոր Թատր մը շինեց, որ լմնցաւ պերճախօս Լիկուրգոսին դատաւորութեան ժամանակ, Քրիստոսէ 360 տարի առաջ։ Այն պեղումներն որ Պ. Ստրաք սկսաւ իր ծախիւքը, և զոր շարունակեց Աթէնքի հնախօսական ընկերութիւնը, ծանուցին մեզ այն մնացորդները՝ որք կը վերաբերին շինութեան այս երկու տարբեր Թուականներուն. նոյնպէս և Հռովմէական Թատրոնին մնացորդներն ալ. որ բարձրացեալ էր հնոյն աւերակաց վրայ՝ անտարակոյս այն Թուականին, երբ Ադրիանոս ինքնակալը կը լեցունէր իր գեղեցկաշինութեամբքը քաղքին բոլոր այս կողմերը։ Այս աւերակներս հետազօտելու ժամանակ զարմանալի է տեսնել, որ Թատրոնը երթալով կը չափաւորուի իր էական և պիտանի մասերուն մէջ, և անձուկ տեսլարանն որ կը բաւէր մեծամեծ քերթողաց Թատերական խաղերը ձևացնելու՝ կ'ընդարձակի երաժշտաց վերնատունը մէջ առնելով. ապա այս վերնատունը փոխեցաւ այն չափուն՝ որ կը տեսնուի հասարակօրէն հռովմէական Թատերց մէջ. և յետոյ բարձաւ բոլորովին մարդկանց հրապարակ ըլլալու համար, որք փոխանակեցին հանճարեղ Թատերական խաղուց տեղ՝ Աթէնքի յետամնացութեան ժամանակ, երբ ապականեալ Աթենացիք անոնցմէ ախորժ չէին զգար։ Այն ատեն հանդիսականները խաղացողներէն բաժնելու

համար, կառուցին աստիճանաց ներքև կռուանոց մը, կամ ցած պատուար մը, ինչպէս որ կայ հռովմէական տեսարանաց մէջ, ընկչամարտկաց ասպարէզը հանդիսականաց բեմէն բաժնելու համար. և այս պարապաց տակ առուակ մ' ալ փորեցին, որպէս զի մեռելոց արիւնը մէջը վազէ ։ կռուանոցին ետև երաժշտաց վերնատանը բարձրութ՟ը, և անմիջապէս ետևի աստիճանաց վըրայ, գտնուեցան կճեայ նստարաններ, կրելով իրենց վրայ նշանակիչ գրութիւններ, որոց վրայ կը բազմէին աւագորեար անձինք. որք Աթէնքի մէջ քաղաքական կամ քահանայական գըլխաւոր պաշտօնները կը կատարէին. իսկ անոնց կեդրոնը գտնուեցաւ այն բազմոցը ուր կը նստէր Բակքոսի քուրմը. որ կ'որոշուի ամենէն քանդակներով զարդարեալ ըլլալով ։ Տեսլարանին ետևը, զուգահեռական ուղղութեամբ երկայն և լայն վայրադաւիթ մը կար որ կը ծառայէր այն տեղւոյն՝ զոր մենք ժողովետղ կ'անուանեմք մեր արդի թատերաց մէջ ։ Ասիկայ հանդիսականաց համար շրջագայելու տեղ մի էր հանդիսացման կանխ առնելու ժամանակ ։

Իսկ ընտրեալ հանդիսատեսաց աչքը՝ որք ըստ սովորութեան կը բազմէին ստորին աստիճանաց վրայ, կը հայի դէպ 'ի սիւնազարդ սրահ մը, որ այժմ կործանեալ է. և պէտք էր ըստ սովորութեան յօրինուած ըլլար ճարտարապետական ճոխ զարդարանքով, և ունենար նշանաւոր խորութիւն մը ։ Իսկ անոնք որք կը բազմէին ընդհակառակն աւելի բարձր աստիճանաց վրայ, կրնային իրենց աչքը պատուարին բարձրութենէն ալ անդին տեսնել ։ Պատուարը և Էգինեայ ու Սիւնիոնի հեռաւոր ժայռերը իրենց համար Թատրոնական ճշմարիտ զարդեր էին ։

## ՏԱԿԷՌ

Լուդովիկոս—Յակոբ—Մանտէ Տակէռ, ծնեալ 1787ին, Գորմէյլի մէջ, 'ի սկզբան Մաքսաւորութեան գործոց մէջ դրուեցաւ ։ Իւր վաղվաղուն և կրքոտ բնութիւնը չկրցաւ երկար ատեն դիմանալ հանդարտ և նիւթական հաշիւներու մէջ ։ Եւ գեղարուեստից մասնաւոր բերում յանձին զգալով, թողուց փութապէս իւր պաշտօնները՝ ինքզինքը նկարչութեան վարժից տալու համար, և թատրներ զարդարող Տէկոդդիին արուեստանոցը մտաւ ։ Այն ժամանակները շատ ետև էր այս արհեստը. Տակէռ նշանաւոր կատարելագործութիւններ ըրաւ անոր վրայ ։ Առաջինն այս է, որ գունոց պատրանքին վրայ լուսոյ արդիւնքն աւելցուց, այնպէս զի նոյն ժամանակի թատերական նկարուց յաջողութեանց մեծագոյն մասին ինքն պատճառ համարուած է ։

Բայց Տակէռ նկարչութե՟ նշանաւոր հանճարէն զատ ունէր նաև ուրիշ ձիրք մը որ զինքը շատ փնտռել կու տար Բարիզու ընկերութեանց մէջ. այսինքն շատ զարմանալի պարող էր այնպիսի ժամանակ՝ յորում դահլիճաց պարը դըժուարին արհեստ էր ։ Սորված էր նաև լարով պարելը, և այն աստիճան ճկունութիւն և դիւրաշարժութիւն մարմնոյ ունէր, որ Արգուա կոմսին պէս (կարոլոս Ժէն ետքը), որ կը մրցէր անուանի նաւարէններին հետ, Տակէռ ալ կրնար առանց ստորին մնալու հրապարակաւ մրցիլ անզուգական Ֆուրիոզոյին հետ ։ Բայց այս յաջողութիւններն ու յաղթանակները, զորոնք կը վայելէր սաստիկ սնապարծութեամբ հանդերձ, չէին կրնար բաւական ըլլալ իրենին պէս գործօնեայ և յանդուգն հանճարի մը ։ Բրէվոսթ, հեղինակ զանազան համայնացուցից, իրեն օգնական առաւ զՏակէռ, որ իւր կատարելագործող հանճարովը, այս տեսարանս ալ կատարելագործեց, և աւելի բնականութիւն տուաւ պատրանաց ։ Ասով է որ դըր-

նուեցաւ Ցեւսարիւնացոյցը, որ կ'ընծայէ մեծադիր տեսարան մը արդարեւ մոգական, յորում գունոց և լուսոյ ճարտար խառնմամբ հանդիսատեսին աչքէ յափշտակիչ ցնորք մը կը ներկայանայ։ Վուգոն նկարչին հետ միանալով, Սամսոնի պանդոկին հողին վրայ ընդարձակ շէնք մը կառուցանել տուաւ, ուր 1822էն մինչև 1839 ժողովուրդը յաճախեց զարմացմամբ դիտելու այն նկարները, որոց մեծ մասը արդարեւ հրաշակերտք են արուեստին։

Իւր տեսարանացուցին մեծապէս հռչակուելուն ժամանակն, այս անխոնջ աշխատաւորը բարձրագոյն փառք մը երազելով, դժուարին գիւտերու ձեռք զարկաւ, որոնց յաջողութիւնը իւր առաջին աշխատութեանց յիշատակը պիտի եղծանէր։ Ցակէռ տեսնելով տուերագծարանին զուարճալի պատկերները ու սաստիկ զարմանալով, շատ անգամ մտածեր էր թէ ինչպէս այն զուարճալի՝ բայց փախստական նկարներուն հաստատութիւն տայ։ Բայց թէ 1826էն առաջ յաջողած էր արդեօք իւր փորձերուն մէջ և յաջող սկզբունք մը ընդունած էր, դժուարին է յայտնապէս ստուգել։ Եւ դարձեալ, նոյն ժամանակները լսած էր Նիկեփոր Նիէբսի անունը, որ 1814էն 'ի վեր նոյն գիւտերուն վերայ կ'աշխատէր։

Մէկէն սկսաւ վերաբերութիւն հաստատել անոր հետ, և առաջարկութիւններ ըրաւ, զորոնք 'ի սկզբան թէպէտ մեծ տարակուսանօք ընդունեցաւ Նիէբս, սակայն վերջապէս յանձն առաւ առժամանակեայ միաբանութեան դաշնագրութեան մը ստորագրելու (14 դեկտեմբեր 1826)։ Այս դաշնագրութեան իմաստը թոյլ կու տայ ենթադրել որ տեսարանացուցին գտիչը իւր հանճարէն զատ ուրիշ բան չէր բերեր ընկերութեան, մինչդեռ Նիէբս արդէն գիւտ մը ստացեր էր, որ թէ և անկատար, սակայն ըստ բաւականին արդիւնաբեր եղած էր։ Ինչ որ ալ ըլլայ, Նիէբսի մտածութիւնքը չուշացան արգասաբեր ըլլալու Ցակէռի ճարտար ձեռաց մէջ։ Իւր ընկերին արեւագրական գիւտերուն տեղեկանալուն պէս, իւր Տեսարանացուցին արուեստանոցին մէջ փակուեցաւ, խստիւ արգիլեց որ մէկը հոն չմտնայ, և չելաւ նոյն տեղէն մինչև որ իւր ճգանցը վախճանին չհասաւ։

Այս իւր փակուիլը և գոգցես մտացածին նպատակի մը յամառութեամբ եռեւէ ըլլալը, իւր բարեկամաց քիչ մը երկիւղ տուաւ, որ չըլլայ թէ խելքին վնաս մը հասած ըլլայ։ Խրախուսական ընկերութեան աղէկ խօսուած ճառի մը մէջ (6 ապրիլ 1864), Պ. Տիւմա կը պատմէ, թէ նոյն ժամանակները իւր մէկ բարեկամը իրեն այցելութեան եկեր է, որ խորհրդածելով Ցակէռի անսովոր ընթացիցը վրայօք իրեն հարցուցեր է թէ ինչ կը մտածէ ճարտար արհեստաւորին խօլական մտածութեանց վերայ, որ իւր վրձինները թողուցած, յիմարաբար կ'աշխատի թուղթի վրայ բնական ու տեւական կերպով տպաւորելու առարկայից պատկերը։ Այսպէս, անօգուտ և բազմածախ փորձերով ու խարեբայ ճգամբք անցաւ տասնըհինգ տարի։... Ցակէռ, դարձեալ կը յաւելու Պ. Տիւմա, Ցակէռ որուն արուեստասիրական բարակ ըղձացմունքը այնչափ կը դժուարէր գոհ ըլլալու, և ուսումնական անբաւական կրթութիւն մը ամեն դիպուածոց մէջ անստոյգ տարակուսանք ընդ առաջ կը հանէր, կը տեսնէր որ փոփոխակի կը մօտենայ ու կը կորսնցնէ իւր անխոնջ ջանիցն առարկայն... Մերթ ինքն իրեն կը հարցնէր, թէ արդեօք սնոտի և մտացածին ցնորքի մը եռեւէ չէր երթար, և մերթ կը մտածէր որ գիւտը գտած օրէն ետքը՝ ալ թատր զարդարողի մը վիճակին մէջ պիտի չմնար։

Այնպիսի էր իւր այս նկատմամբ ունեցած բնական տարակուսանքը, որ ստէպ նիւթերը կը փոփոխէր, և իրեն պէտք եղած տարրաբանական գոյացութիւններէն զատ, քանի մը գոյացութիւններ ալ կը դնէր, որոնք բոլորովին անօգուտ ըլլալէն զատ, նաև

միտքը կը շփոթէին։ Եւս և իւր փորձերուն հանգամանքն յաճախ կը ստիպէին զինքը ճամբաներու կամ ընդարձակ դաշտերու մէջ իւր փորձերն ընել. և այն ատեն ամենուն վրայ կը սկսէր կասկածի երթալ. թէ որ մէկը անցնէր երթար, մտքէն կ'ըսէր թէ շատ անտարբեր կերպ ցուցուց. իսկ թէ մէկը կանգ առնուր, շատ հետաքրքիր կերպ ունի կ'ըսէր. եթէ ուրիշ մը սկսէր հեռանալ, ծածուկ պահելու բնականէ դուրս ըլլալուն համար է, կ'ըսէր։ Այսպիսի անհանգիստ կեանք մը անցուց Տակէռ այն տասնուհինգ տարուան մէջ. սակայն պէտք է ըսել, որ միշտ իւր ճըգունքը օր օրուան վրայ արդասաբեր եղան։

Ի սկզբան Տակէռ որոշեց Նիէբսի ոճը կատարելագործել, զոր քանի մը բառով կ'ուզեմք հոս յիշատակել։ Արծաթի թիթղան վրայ կը տրուի տեսակ մը ջնարակ, որ բաղադրեալ է 'ի կպրոյ Հրէաստանի՝ լուծեալ յիսկական իւղ Լաւանդի։ Այս կուպրը լուսոյ ազդեցութիւնը ընդունածին պէս, կը փոխուի և կ'ըլլայ անլուծանելի։ Ուրեմն եթէ այս կերպով պատրաստուած թիթեղ մը դրուի Ստուերագծարանին մէջ, և պէտք եղածին չափ առարկային ներկայացունելէն ետքը՝ լուացուի Լաւանդի իսկական իւղոյն մէջ, ջնարակին այն կտորները որոնց վրայ լոյսը զարկած է, անայլայլակ կը մնան թիթղան վրայ. իսկ այն կտորները որք իրենց վրայ այն ազդեցութիւնը չունեցան, կը լուծուին իսկական իւղոյն մէջ։ Այս կերպով կրնայ տպաւորուիլ որ և է առարկայից պատկերը՝ որոյ մէջ լուսաւոր կէտերը կպրային ծեփին վրայ ճերմակ դարձած են, իսկ սեաւ կէտերը ապականման կ'երևին, որոնց վրայէն ծեփը ջնջուած է։

Տակէռ Հրէաստանի կպրոյ տեղ փոխանակեց այն մնացորդը զոր կը թողու Լաւանդի իւղը թորուելէն ետքը. այս մնացորդը ալքոլի կամ եթերի մէջ լուծեալ՝ կը թափէր թիթղան վրայ, որ հորիզոնական դրիւք բռնուած պիտի ըլլար, և ցնդելով՝ բարակ մաշկ մը կը թողուր անոր վրայ։ Դարձեալ, փոխանակ պատկերը Լաւանդի իսկական իւղոյն մէջ լուծանելու, սկսաւ նոյն կամ ուրիշ իսկական իւղ մը թեթև մը տաքցունել և անոր շոգւոյն վրայ բռնել թիթեղը։

Այս իւղոյն շոգին կը թափանցէր ծեփին լոյս չտեսած մասերուն մէջ, և կու տար անոնց այնչափ աւելի թափանցկութիւն՝ որչափ լոյսը նուաղ էր։ Ընդհակառակն լոյս տեսած մասերը անայլայլակ կը մնային, եթէ շոգւոյն ազդեցութիւնը ընդերկար չտևէր։ Այս դեռ Նիէբսի ոճն էր ըստ ինքեան, սակայն կիրառութիւնը աւելի դիւրացած էր և գիւտոյն յաջողութիւնը աւելի ապահովցած։ Տակէռ այս ոճով, որ կոչուեցաւ ոճ Նիէպսի կատարելագործեալ, կը ստանար աւելի փայլունութիւն, գունոց մէջ զանազանութիւն և կիսերանգները աւելի կատարեալ։

Սակայն այս կպրային ծեփերն երկու գլխաւոր անպատեհութիւնք ունէին. առաջին, որ սաստիկ դանդաղութեամբ կ'առնուին լուսոյ ազդեցութիւնը, այնպէս որ արևու մէջ դնելէն ետքը շատ ժամեր պէտք են պատկերները տպաւորելու համար. երկրորդ, այն փաշխային դիրտը որ զլուսաւոր կէտերը կը ներկայացունէ, քիչ մը գունաւոր կ'ըլլայ, այնպէս որ քիչ տարբերութիւն կայ լուսոյ և ստուերի մէջ, և պատկերը անորոշ կ'ըլլար։ Այս բանս տարակուսանաց մէջ ձգեր էր նաև զՆիէպս, որ փորձած էր սևերը ստուարացունել՝ ընկղմելով թիթեղը զանազան տարրաբանական ազդակաց մէջ։ Ուրիշ գոյացութիւններէ զատ փորձած էր նաև զմանիշ, բայց շուտ մը մէկդի ձգեր էր. ուրիշ կողմանէ՝ աղէկ չէր ըրած այս ազդակը ընտրելը, վասն զի արծաթոյ մակերևոյթը կը փոխարկէ 'ի մանիշակ որ սեաւ չէ. այլ դեղին ոսկէգոյն, որ և շատ դիւրաւ կը խանգարի լոյս տեսնելով։

Մինչդեռ Տակէռ առանց շատ յաջող ելք ունենալու կը կրկնէր այս փորձե-

ր, և ահա բարեբախտ դիպուած մը, յն դիպուածներէն մէկը որոնցմէ գե-ագոյն հանճարները միայն գիտեն օ-ւտ քաղել, մտուց զինքը այն ճամ-ան մէջ՝ յորում էր արդարև գիւտոյն ջողութիւնը։ Մանչուկին օծեալ ար-աթի թիթեղան մը վրայ մոռցուած գդալ մը իւր պատկերը թողուց անոր վրայ. ասով Տակէռի միտքը արթնցաւ։ Նկէ ետքը թողլով ամենայն կպրային փերը, անոնց տեղ սկսաւ գործա-ծել զմանչուկ արծաթոյ, գոյացութիւն մը անհամեմատ աւելի յարմար լուսով տպագրելու, և գործածութիւնը աւելի դիւրին։ Բայց մանչուկացեալ թիթե-ղը, սաուերագծարանի մէջ դրուելէն ետքը, զգալի փոփոխութիւն մը չէր ցու-ցըներ, այլ թագուն կը պահէ յին-քեան զպատկերը. պէտք է զայն դուրս ցատկեցնել արտայայտիչ ազդակի մը ձեռքով։ Տակէռ գիւտը գտաւ, և իւր գիւտոյն գլխաւոր կէտն այս է, որ եթէ տաքցուցած սնդիկով լեցուն աման-նի մը վրայ դրուի մանչուկացեալ թի-թեղ մը, մետաղական շոգին միայն այն կէտէրուն վրայ կը փակչի, որոնց վրայ լոյս զարկած է, և այնչափ աւելի առատութեամբ՝ որչափ որ լոյսը սաս-տիկ ըլլայ։ Այս թիթեղան վրայ, որ սաուերագծարանէն ելնելու ժամանակ դեռ դեղին ու միակերպ գոյն մը կը ներկայացունէ, կը սկսի տեսնուիլ պատկերը հրաշալի կերպով. կրնամք ըսել Արակոյին հետ, «որ գոգցես կարդէ դուրս ճարտար վրձին մը պատ-շաճ համեմատութեամբ կը գծէ թիթե-ղան ամեն մասերը»։ Արդ հիմայ, ա-անց Տակէռի գիւտոյն մանր մասե-րուն իջնելու, յիշատակեմք միայն որ պատկերը տպաւորելու համար՝ որպէս զի յետոյ լուսոյ մէջ դրուելով չայլայ-լի, պէտք է լուանալ թիթեղը 'ի լուծ-ման ենթածծմբակի նատրոնի, ետքն ալ տաք ջուրի մէջ։

Նիէբս շատ չապրեցաւ՝ իւր բովան-դակ ճգանցը առարկայն 'ի գործ դը-րուած տեսնելու համար. 1833ին ինքը մեռաւ, բայց իւր որդւոյն և Տակէռի մէջ նորոգուած էր ընկերութեան մուր-հակը։ Միաբան հաւանութեամբ եր-կու ընկերները իրենց գաղտնիքը յայտ-նեցին Տէրութեան, և Արակոյի պատ-մածին նայելով, օրէնք մը հրատարա-կեցաւ (յուլիս 1839), որ Տակէռի 6,000 ֆրանքի հաս մը կը կապէր, և 4,000 ֆրանքի հաս մ' ալ Իսիդոր Նիէբ-սի, ոչ այնչափ փոխարէն մը ընելու դիտաւորութեամբ, որչափ ազգային վարձատրութիւն մը։ Անկէ քիչ ժա-մանակ առաջ Տակէռ տեսեր էր իւր Տեսարանացուցին մոխիր դառնալը, որ իւր առաջին գիւտերուն թատրոնն էր։ Այնուհետև քաշուած կեանք մը ան-ցուց, և մեռաւ 'ի Բրդի–Գռի–սիւր–Մառնը, 12 յուլիս 1851։ Գեղարուես-տից ազատ ընկերութիւնը անոր յի-շատակին շիրիմ մը կանգնեց տեղւոյն գերեզմանատան մէջ։

Ոմանք ուզեցին զլանալ Տակէռի այս գիւտոյն հեղինակութիւնը, որ իւր անունը կը կրէ։ Նիէբսի անունը մթու-թեան մէջ ձգելէն ետքը, ուզեցին դարձեալ տալ իրեն իւր աստիճանը. և 'ի նպաստ նորա եղած փոփոխա-մտութիւնը չափազանցութեան գնաց։ Մինչև անգամ զՏակէռ ուզեցին ցու-ցանել տեսակ մը խորամանկ, որ այլոց գաղափարները իւր շահուն ծառայե-ցուցեր է, և բռնաբարեալ փառքով մը ուզեր է պճնիլ։ Մեզի այս ամբաստա-նութիւնք անիրաւ կ'երևի։ Հեռի է մեզմէ Նիկեփոր Նիէբսի արդիւնքը վար զարնելու մտածութիւնը, որոյ աշխատութիւնքը շատ լաւ կերպով շա-րունակուեցան մեր օրերուս՝ Գ. Նիէբս տը Սէն–Վիքթոր իւր եղբօրորդւոյն ձե-ռօք։ Տարակոյս չկայ որ Նիէբս 1814էն 'ի վեր դէմքերը ճիշտ օրինակելու գիւ-տոյն վրայ աշխատած էր, և իրական արգասիքներ ընդունած և ցուցած էր, մինչդեռ Տակէռ դեռ բան մը գտած չէր։ Ուրեմն Շալոնացի գիտնականն է առաջին գտակ լուսանկարի, և անտա-րակոյս իւր փորձերը մեծ օգնութիւն ըրած են Տակէռի։

Սակայն իւր գիւտը Տակէռի գիւ-

ուէն շատ տարբեր էր, և ճշմարիտը կ'ըսենք որ չենք կրնար ըմբռնել թէ ինչպէս կարելի է հաստատել թէ «Տակէռի գործելու կերպերը նոյն էին Նիկեփոր Նիէպսի կերպերուն հետ, փոխելով միայն Հրէաստանի կուպրը և Լաւանդի իւղը»։ Ո՛չ ահա ամենայն ինչ այս փոփոխութեննէս կախուած է. կպրոյ տեղ զմանչուկ արծաթոյ փոխանակելը, երագութիւն և ապահովութիւն տուաւ գիւտոյն, մինչդեռ կուպրն ոչ գին ունէր և ոչ գիւան։ Իսկ մանչին գալով, իրաւ է որ Նիէպս շատ առենէ 'ի վեր զայն կը գործածէր, բայց գործողութիւնը լմննալէն ետքը իւր նկարներուն ստուերները միայն սեւցունելու համար. երբեք միտքէն չանցաւ որ զանիկայ իբրև զգայուն գոյացութիւն մը իրեն ծառայեցունէ, և աս բանիս վկայ կեցած է իւր թղթակցութիւնը։ Ընդհակառակն մանչոյ գործածութեան բոլորովին ընդդիմութիւն կը ցուցընէր, և կը ջանայր իւր ընկերին այս միտքն ալ փոխել։ Դարձեալ, Տակէռի գիւտոյն մէջ սնդկի գործածութիւնը, ամենևին նմանութիւն չունի Նիէպսի ոճոյն մէջ Լաւանդի իսկական իւղոյն գործածութեան հետ։

Արդ մեզի կ'երևի որ եթէ արդարացի է Նիկեփոր Նիէպսի համարել լուսանկարչական ոճոյ առաջին գիւտը, անիրաւութիւն է զրկել Տակէռէն այն գիւտերուն հեղինակութիւնը, որոնց վրայ ժամանակակցաց հիացումը իւր անունը դրոշմեր է։

## ՃԱՆԱՊԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ
### ՋՈՒԱՐ ՃԻՑԷՐՃԻ ՕՂԼՈՒ ՔԱՀԱՆԱՅԻ

(Տես երես 246)

Խորւայր, այտուշևուն պատմնդ
սուրբ Ցորդանանու զգևայն և զզ
մի բար մրոչէ։

Ցորժամ կամենաս գնալ 'ի սու
Ցորդանան, ծագկազարդին օրն քիր
ճիքն և ֆէլլահներն գալ և գնալ են
ոնն ղանբրմայ ձղէ փէհ[1], և ոնն
վայ. թէ այլ ուրիշ մարդու տամար
բանես ունիր. ապա առաւօտուն
նես, եղբայր, վանից գաւան առջին՝
կողմն բեթլէհէմի ֆէլլահներն, մի
կողմն շամցի ղաթրճիքն. նոքա կ'ըսե
թէ մեք կու տանիմք. միւսքն կ'ըսե
թէ մեք կու տանիմք. և ես գուրս
լայ՝ զուգան նայիլ գնացի. նա տեսնե
որ մէկ զմէկ ինկան՝ սոփայ սոփայ
ուղտերն մէկ մէկի խառնվեցան. քա
իբրև անձրև կու թափի. եկն մի
իմ, մնայ ուղտին փորուն ներքև, հա
գիւ ազատեցայ. և վանից դուռն
րով գայ. նա տեսանեմ արապ թէ
լալն են. ելաւ բարձր տեղ և ձայնեց
ամենեքեան լուռ կացին թէ տեսա
նեմք ինչ կու կանչէ. այսպէս ասաց
թէ Շամցիք տանին ըխտաւորք զ
ապա թէ չի օգտէ՝ ապա բեթլէհէմցի
տանին։ Իւ ֆէլլահնին նկուն եղեն.
ես տեսայ անդ ղաթրճի մի զօրեղ,
տաւարնին լաւ. իսկոյն ձեռացն բան
ցի և ասացի, քանի՞ տաւար ունիս. նա
ասաց թէ ութը տաւար. չորսն բան
ցի, քաշեցի ներս վանքն։

Իւ հեծաք ելաք ճանապարհ զա
թար ղաթար. հազիւ հասաք 'ի մ
մէյտան լեառ մի, և անդ սակաւ
էկլէնմիշ եղաք՝ մինչև յետի ըխտա
ւորն գայ. անտի չուեցաք. ահա կ
գնամք ռաւր տեղ, նեղ և լայն, գ
և փոս. եօխուշ մի վայր իջաք, մ

1 Գրաւական։

ղըյ[1] մի, չատորներն տեսաք. և պայ-
խներն 'ի մեր առաջևէ. եթէ հար-
նես, մինչև քանը եօթը պայթախ
ամարեցի: Այս եաղըն Երկըով է եղ-
եր. և ես լուեալ էի թէ վանից չա-
րին քով իջի. հեռու ունէի փոքր չա-
ր մի, իջայ անդ. շուտով տղաքն
բումիչ արին, քանզի օտան էի մեռա-
ր: Անդ Ֆէլլահնին ղանութ են ղուր-
շ արեր. մէկ օխլամուր սըրըխն'
ց փարայ առաք. — ոչ ախմախ. քը-
ն փարայ ուզէ, քանզի պիտոյ է. —
մաք 'ի մէջն, որ այն ղանութնին
ր գիմացն էր. զինչ ուզես անդ գը-
նի: Ձախ կողմն բարձր լեռներ,
յց մի լեռն կայ քան զամենայն
րձր է. և կայ գլուխն ծկեռեցնայ
եղ. սա է փորձութեան լեռն, որ
աց սատանայ, եթէ դու ես Քրիս-
' ասա զի քարինքս այս հաց լինի-
ն. և ասաց Քրիստոս. Ոչ փորձեսցես
էր Աստուած քո: Եւ անդ է ջուրն'
ր Սամփսոն իշու չէնկէով (հաքար)
ոգի ջարդեց. և անդ է Զաքէի տունն:
Երտու պազար, ով կու քնանայ. հէլէ
կաւ մի ննջեցինք. զարթեաք, հա-
ըր եղաք. Նօպէթն զարկին մէկ հեղ,
ձիանն բեռցաք երկրորդում եղանակին,
հեծաք երրորդում եղանակին. պայ-
թախնին առաջևէ, ահա կու գնամք
ուրըն Յորդանան: Լուսինն տասնըհինգ
ուր պէտիր, ինչ կ'անես զՖէնէրն
ք զմաշալան. այս ճանապարհն լայն և
հանգիստ է. յետևէ փաշին քեահեան'
յֆոտէ մէշալէով. առաջևէ քանըեօթը
պայթախ օէյմէնով. հետևակն ուրիշ,
ձիաւորն ուրիշ. քանզի կանուխ էր' ե-
րեք ժէրճիմանն հետ, ապաներն 'ի վե-
րան: Անդ կայ ղումլաւխ մի, զմեզ անդ
րգելեցին. մեք այլ վար իջաք ղումին
վերայ գնացաք: Եղբայր, այսպէս տեղս
ջը բաց պիտի. վէ ղաթրճին այլ
գուռանազ, որ Սէյտի Ահմէտ կոչիւր.
քան պամէնն յառաջ կու գնայր. ան-
կարծ զալը խանիս տանըն' 'ի բաց կու
թկես ձիուն վերայ որ մութն կու

1 Դաշտ մարգագետին:

բաժանի. այնպէս կու քչենք' որ մեն-
զիլն ինչ պիտի լինայ: Լուսացաւ. ա-
ռաջևէ գնացող պայթախներն ճկեցան,
ձախ կողմն բարձր լեռան ելան. և
պայթախնին տնկեցին սրպյով. մէհ-
տէրխանան կու ծեծեն: Գնացաք ջու-
րին եղերն, իջաք ձիուն 'ի վար. շու-
տով հանուեցաք. անդ էիր և տեսեալ
էիր. իջաք 'ի ջուրն և անդ հինգ հոգի մը-
կըրտեցի. և ապա Գաբրիէլ անուն վար-
դապետ մի զիս մկրտեց. և ջուր լցաք
մաթարայն[1] շուտով հագուեցաք ելաք
'ի ձի. այնչափ մարդս որ կայեաք մին-
չև հազար հոգիէն աւելի. կէս սահաթն
մկրտուեցանք. ամմա' եարան գողն
շատ, ահ շատ. լէվէնտնին չորս կողմէն
չպլախ թրով' տէյյինտի թէզ եղէք, ա-
սելով, հազիւ ճանապարհ ելաք:

Այս ուրբ Յորդանան շատ լայն չէ,
կարի խոր է. և ջրին վազելն պտոյտ
առնելով է. ներքևագոյն կու վազէ,
քաղցրահամ, խմելով չես զովանար:
Ի յետ զառնալն' երկու տաւշան եւ դէ-
մերնիս, զարկին սպանեցին. երեք էր,
մինն գայլ էր' փախեաւ. և յետ նորա
փաշին քեահեան անցաւ առաջ ըշտա-
պով. չատըր զարկին ճանապարհին
բերանն. նախ ֆաէնկն էանց, և ապա
հոռոմն, ապա թէ մեք. չորս ղուուշ մէկ
թիւղթն[2] տուաք և անցիր: Դարձեալ ե-
կաք 'ի տեղերնիս կրկին Երիքով. շու-
տով չատըրն մտաք. վանից չատըրնե-
րուն մատէ միայն մեր չատըրն. ամե-
նեքեան մաթ մնացին' թէ այս տեղս
այլ թէտարիքով ես: Եղբայր, շող և
տաք որ չեմ կրնար պատմէր. մինչև 'ի
յետինք այնչափ ջուր խըմեցինք' որ ա-
սելու չէ. բայց սառ ջուր, խակի ինճիթ-
միշ չարաւ. այս այն ջուրն է' որ Եղիսէ
աւրհնեաց: Ինչ և իցէ' երեկոյ եղև.
չորս կողմէն կրակ տուին հառըլ հա-
ռըլ կու վառի. և փոքր խօսք լսեցի թէ
քեահեան պիտի չուէ. զիրա քոմն
տանը քէսէ ըստկէն ևել եղև, նորանից
կու վախէ. կամ թէ Ֆէլլահն պիտի

1 Կաշեայ ջրաման:
1 Երրորդ մաս:

կոխէ. զատոնք լսեցի կամաց մի, ձայն չի հանեցի գնացի չատըրըն աւերեցի. զուրճին մէջն դրի, միւս կողմն եօրղանն և գետ Յորդանան 'ի ջուրն. և հագայ ճիզմէս և նստայք։ Ոմանք ասացին թէ չորրորդում սահաթին կ'ելնեմք. իշտէ այս գիշերն իսկի չի քնացայք մինչև սահաթն հինգն գնաց հեծայք. բայց առաջի գիշերվան պէս նօպէթ չի չալեցին. չորս կողմն կրակն բազմացաւ. քըշեցին այն եաղըն. եկայք դար մի վեր. այնպէս կու քշենք՝ որ գիտես թէ փախ են ձգեր։ իշտէ այս տեղս զմաթարան այն անիծեալ ֆէլլահն գողցաւ. հարամ լինա։ Հազիւ առաջ անցայք և ազատեցայք 'ի յղտիցն, մինչև 'ի յարևծագուն եկայք հասայք 'ի Բեթանիեայ. և անտի սորայ գիւղին պատին քովով կու անցանես. ապա Համբարձումն կու երևի. դէպի փրկչի դուռն կանգներ են 'ի մեր միաբանից. ձայնեն, թէ այս կողմն եկէք. եայ եղբայր, քաղաքացիք բերդին վերայ ելած նըստած, զմեզ թամաշա կ'ընեն։ Եկայք փրկչի դուռն. մէկ մէկ փարան կու տաս մտնես քաղաքն, և գնաս 'ի սուրբ Յակոբ։ Բայց զայս ևս ծանիր սիրելիք. որ ծաղկազարդին երկու երեք օր յառաջ գիւղօրէից Արապներ կու գան սուրբ Երուսաղէմ. նոքա այլ ուխտ կ'երթան հազրէթի Մուսա կ'ըսեն. անդ գնան ութը օր. 'ի մեր գնալն սուրբ Յորդանան՝ նոքա աջ կողմն կու ճկին դէպի Մոդոմ կու գնան. որ յետ դառնալն մեր Յորդանանու հետ՝ պարապար կու գան. նոքա սուրբ Աստուածածնայ գունէն կու մտանեն. 'ի մեր գալն, եղբայր, դեռևս նոքայ չէին եկեալ, զիրա մեք կանուխ շարժեցայք։ Այն սուրբ Աստուածածնայ դուռնն դրսի դիհն սուրբ Ստեփանոսի քարկոծման տեղացն վերև մեծ լեառ մի է. անդ նստեալ են քաղաքայոց տաճկի կանայք. սուտ չի խօսիմք. զիրա հ'աճի եմք. մինչև երեք հազար կին. առաջին և յետոյն այր մարդ, նոյնպէս համար չի դար. զմեզ և զնոքա թամաշա կ'ընեն. հէմէն մահանա մի կ'ուզեն որ

դուրս թափին. այր և կին ծեր և զայ կերակրով և այլ ամենայն կեր կերպիւ չէյէրով, որ այլում տեղ ըեալ կայ. այս այսպէս։ Ի մեր գն սուրբ Յորդանան. տես թէ միւսեյլի ինչ է արեր. որչափ տուն կայ՝ կոխէ, կամ Դաւթայ մարգարէին րայէն քանըրութը հողի կու հա ընդ ամենն վստատուն հողի, որ զի պահեալ էր. ձեռք ինկածն հինգ ռուշ և կէս առեր. սանքի կօմրիւ ըուզակ որ փախցնէ ոմն ձեռք որ ան նի երկու կօմրիւկ կու առնեն. նայէ սոցա չորս ղռուշ մէկ թիւլթին տե ոմանց վեց ղռուշ առին, ոմանց հի և կէս ղռուշ։ Եայ եղբայր, 'ի ճան պարհին գալն՝ ձիուն վերայ կու քըր նիս. և այնչափ տաւարին տաց հա մուկքն երես 'ի վեր կու գայ, որ րուք և երեսի վերայ թօզն կու նստ դու ես ֆէլլահ կու դառնաս. չուատ օտատ կու գաս լուացվիս և հանգստ նաս։ Եթէ կամիս մէկ քիչ քնացիր գիրա քընհատ ես և խանճած։ Այսքա աւ այս սուրբ Յորդանանու բաւէ։

### Սա որ կայ կամիմք պատմել պիր քէն[1] և Դաւթայ մարգարէին պա լատն մի քառ միոջէ։

Յորժամ գնան ըխտաւորքն մ նան հայր Աբրահամու դուռն, ա կողմն բաց ես խոր, զէթունի ծառ համարը չի դար. պիւրքէ մի մեծ այ կողմն է, և այս պիւրքէին զպատճառ ասեմ ըսկիզբէն։ Յորժամ գնաց կո տանդիանոս ունէր հետն զհայրապետ Սեղբեստրոս, և թագաւորն Տրդատ ունէր հետ զսուրբ Գրիգոր Լուսաւորիչ. ապա վիճակ ձգեցին թէ որն չինէ սուրբ Յարութիւն, կամ որն չինէ ըղսուրբ Ծնունդ. և ել վիճակ Տրդատ թէ սուրբ Յարութիւնն չինէ. և ապա զմտաւ ածեալ սուրբ Գրիգոր Լուսաւորիչն և ասաց, որդեակ իմ Տրդատ, պարտ է քեզ առել կոստանդիանու

1 Զրի համբայ։

թէ քո հրամանքդ շինէ զսուրբ Յարութիւնն, քանզի նա մեծ է քան զքեզ. և նա յանձն առեալ գնաց առ կոստանդիանոս և ասաց. Հայր իմ, ինձ եղաւ վիճակն սուրբ Յարութեան. և նա ասաց նմա. քո հրամանքդ շինեա: Եւ յորժամ լուաւ զայս խօսքն ասաց թէ ով ետուր զայս խրատն քեզ. և Տրդատ ասաց՝ հայրն իմ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ. և ասաց թէ բարի է: Դոքա ունէին վարպետք հիւսանք. մեծ խորհուրդ արաւ 'ի մտի իւրում, և շինեաց նախ և առաջ զայս մեծ պիւրքէն. քաղաքէն դուրս խոր, և արար ճանապարհ գետնի ներքևէն մինչև քաղաքին մէջն. և անդ ևս շինեաց պիւրքէ մի այլ. դրսի պիւրքէէն ներսի պիւրքէն զայր ջուրն. և անտի շինեաց ճանապարհ սուրբ Յարութեան մէջն փոքր հաւուզ մի. որ վարդապետք և ընէնչպէրք անտի առնէին զջուրն. բոլոր տարի մի ջուր ժողովեաց. և ամենայն իրք պիտոյից հազր առաւ. ապա սկըսաւ հիմն արկանել:

Եւ կամիմք մտանել դուռն քաղաքին. կու իջանես 'ի գրաստէն և կայ ձախ կողմն պաղչայ մի որ ժամանակու բաղանիս է եղեր, և կին Ուրիեայի անդ լուացվեր. և աջ կողմն սարայն Դաւթայ մարգարէին. և կայ անդ փէնճէրէ մի. անտի տեսաւ զկին Ուրիեայի Բերսաբէ, և ցանկացաւ: Եւ աջ կողմն պանաս, և է բերդին դուռն. ներս մտնելն երկու կողմն փէքէ, և այս դուռն երկաթ մամուր. այլ ներս կ'երթաս մեծ դուռ մի այլ փայտէ վերան քեավկիր քէմէրով. և աջ կողմն կայ մէրտիվէն մի քանըրութը ոտք, կ'ելանես վեր գնաս ճուկ ճանապարհներով դուռ մի փոքր փայտէ, անդ կայ չորս հինգ օտայ. և մին օտային ճակատն փէնճրէ մի որ կու հայի ճանապարհին վերայ. և աստ նստէր մարգարէն Դաւիթ, և արմունկն փէնճէրէին մէջ տեղն կոխնէր, սաղմոս ասէր. և արմնկին տեղն փոսցեր ձեռաց մի ղատար[1]:

1 Զափ:

Ուխտ արէ և տուր երկու փարան եղի ըստակ: Ելանես դուրս կայ անդ նեղ մերտիվէն մի տասուերկու ոտք. կ'ելանես վեր փոքր սիրուն չորս քօշէ օտայ մի, ունի երկու տախտակ փէնճէրէ, որ անդ նստեալ քնարիւ զսաղմոսն երգէր է. և այժմուս նօպէթճիք զուռնա տաւուլն անդ չալեն. և իջանելն մէրտիվէնն 'ի վայր՝ կայ անդ չորս թօփ. իջաք դէպ 'ի վար, շատ գնացաք մութ տեղով. և անդ մեծ տեղ մի և մէջ տեղն հոր մի, և տեսաք սախան ջուր քաշեց, և մեք խմեցաք ցուրտ և անուշահամ. և մեզ պատմեց ջուրջ ածողն՝ թէ այս ջուրս հայր Աբրահամու կու գայ. եթէ այս քաղքիս ջուրն հատնի՝ սա կու զովացընէ այնչափ առատ է: Ելաք անտի գնացաք բանտն, և բացեալ զդուռն ներս մտաք մութ. և կայր անդ հինգ Փէլլահ ոտքերնին ղատանայ. և վզերնին զէնճիլ հաստ և փայլուն. երկու խաթ է դուռն. ներսի խաթն՝ հաստ փայտ վերան երկաթ ղափըլը, տասնըվեց աչք, և երեք կողմէն հաստ զէնճիլ. և միւս դուռն՝ զուտ երկաթ երեսունըվեց աչք և երեք կողմէն հաստ զէնճիլ. և մինն միւսի վերայ կու կըպէ: Եւ կայ սորայ քով օտայ մի որ պահապանք անդ նստին և պառկին. և անտի ելաք 'ի Պէտէնն[1]. քառասնըչորս ոտք մէրտիվէն. աստ կու կենան տնվորնին. և անտի այլ առաջ կայ նեղ մէրտիւէն մի տասնըչորս ոտք որ այլ վեր կու ելանես, որ չորս կողմն Երուսաղէմի կու տեսանես. և անտի իջաք 'ի վայր և ելաք 'ի դուրս. կայ դրան դիմաց երեք պօլլու թօփ, և ղարապա տեղ. և աստ կայ ջուլհակի մեծամեծ օտաներ: Անցիր առջևէ և գնա ուղիղ. ձախ կողմն Թումայի առաքելոյն վանքն, որ Քրիստոս աստ ծախեց զնա. և մեծ քէմէր մի՝ որ սեղանատունն սորա վերան է. յառաջ երթաս սուրբ Յակոբայ դրան վերան քէմէր, և մէջ տեղն նօմոս թագաւորական, և դուռն երկաթ մամուր. օրթայ տեղն

1 Պարխսպ:

փոքր դուռ մի, անձուկ էջ մի առանց բեռ կու մտանէ. և ունի գոց ուխտը. և լիականարն յայլում տեղ դրեալ կայ։ Եւ յորժամ շինեաց Կոստանդիանոս զսուրբ Յարութիւնն, յետ նորա շինեաց զսուրբ Յակոբ, և ետուր սուրբ Լուսաւորչի փէշքէշ 'ի պատիւ այնր որ ասաց Տրդատայ, Երթ գնա առ թագաւորին՝ թէ դու շինեա զսուրբ Յարութիւնն. Նորա համար պատիւ ետ սուրբ Յակոբ Լուսաւորչի. ամէն։

Կը շարունակուի :

---

## ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆՔ

*Գաղղիոյ Ռոճիկները։* — Դրօփլօն՝ երրորդ նախագահ ծերակուտին և երրորդ ծերակուտի անդամ, նախագահ Դատաստանարանին (Cours de Cassation) և Ուսումնարանին անդամակից կ'ընդունի, 196,500 ֆր. տարւոյ հաշուելու բնակութիւնն և ուրիշ շահերը։ Նիէլ մարաջախտը երրորդ ծերակուտի անդամ, մարաջախտ, պատերազմի լէգէոնին մեծ խաչ պատուանշանը կրող և պաշտօնակալ պատերազմի 193,000 ֆր։ Մաք-Մահօն մարաջախտն՝ ընդհանուր կուսակալ Ալճերիոյ ֆր. 188,000։ Պարակէ-տ'Իլլիէ, Ուրնեոյ տը Սէնժան տ'Անժէլի, Քանրօպէր և Պազէն՝ իւրաքանչիւրն առանձին առանձին 163,000 ֆր։ Վայեան մարաջախտն՝ երրորդ պաշտօնակալ կայսերական տան և մեծ մարաջախտ Պալատան 229,000 ֆր։ Ծովային պաշտօնակալը Ռիկոյ տը Ժընուլլի ծովակալը 163,000 ֆր։ Պարոշ և Մանեը պաշտօնակալքն իւրաքանչիւրը 130,000 ֆր. Բերոյենեի, Տրուէն տը Լիւիս, և Լավալէթ՝ երրորդ անդամք գաղտնի խորհրդոյ իւրաքանչիւրը 105,000 ֆր։ Կոյեոն զօրավարը 105,000 ֆր։ Մոնդոպան զօրավարը 148,000 ֆր։ Ֆլէօրի զօրավարը 119,000 ֆր։ Նաւակար Նէյ 118,000 ֆր։

*Խուսափական ծովը։* — Ըստ գրելոյ Moniteur Universel լրագրին նորընծայեցին պարաններ ձգելու համար՝ գնտաշարութեամբ եղած փորձերով ծովուն այլ և այլ կողմեր ունեցած խորութիւնն գտնուեր է. — ընդ մէջ Ֆրանսայի և Գերմանիոյ՝ Գաղլիկ ծովուն խորութիւնն է 40 մետր. Ադրիականին ընդ մէջ Վենետկոյ և Դրիէստոյ է 42. Մանշը՝ 100։ Իռլանտայի ծովուն հարաւ-արևմտեան կողմը 660. Միջերկրականը՝ [illegible] բայց արևելեան կողմը 100. Ապենինոյ ծով[illegible] 2,000. Հոռն և Բարելյաւայ սարերուն ծ[illegible] 5,000 մետր։

*Նոր մագնիսական։* — Pays լրագրին մէջ [illegible] կարդանք որ Սաքսոնիոյ մէջ մագնիսայերա[illegible] մը գտնուեր է, որուն մէջէն մագնիսական [illegible] թէ երակ մը կ'անցնի քանի մը հարիւրամետր թանձրութեամբ։ Խնչուած հիմա ճանչցուածներուն մէջ ամենէն աւելի հարուստ մագնիսահանքն է, յորմէ արդէն իսկ հիմակուընէ մեծահատոր զանգուածներ դուրս հանուած են։ Իր մէջէն ելած մագնիսը բաւական է բոլոր աշխարհիս համար։ Գ. Տաւր (Dower) պերլինցի ընդդէմը այս հանքէն կտոր մը ունեցեր է որ 30 հազարակրամ կը կշռէ։

*Մեռելութիւն 'ի Լոնտրա։* — Լոնտրայի վիճակագրութիւնը կը հաշուէր անցեալ տարի 3,082,372 բնակիչ, 340,917 տանց մէջ, 122 քառամղոն տարածութեամբ. և նոյն տարուան մեռելութիւնը սակաւաթիւ է համեմատութեամբ նախընթաց տարիներուն. միջին հաշուով ըլլալով 23 առ 100, մինչդեռ 1866ին եղաւ 26 $^1/_2$ առ 100։ Հիւանդութեանց մէջ առաջին կարգը բռնողն եղաւ ծաղկախտը, որով 13,032 անձինք մեռան։ Ուրիշ հիւանդութիւն մ'ալ, ծիւրական ըսուած ախտը 8817 աղայոց մահ պատճառեց։

### Առածք Սկովտիացոց

Ամեն ծառի հարուած տուողը՝ մէկն ալ չկործաներ։

Աւելի աղէկ է տաքցընող քիչ կրակը՝ քան կիզանող մեծ հուրը։

Լաւագոյն է սատանան տնէն դուրս թողել՝ քան դուրս ընել ջանալ։

Ո'վ որ երբեք նեղութիւն քաշել չուզէր՝ բնաւ բարեաց արժանի չէ։

Լաւագոյն է որ մարդ մը շատ քիչ նորալուր ունենայ, քան թէ իր հօրը կախուած ըլլալը պատմէ։

---

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՅԺԷ· 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ· — ՆՈՅԵՄԲԵՐ

## ԲԱՐՈՅԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ

(Տես երես 303)

### Գ. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ

*Մարդուս դիրքը աշխարհիս վրայ, և մարդկային վիճակին աստիճանաբար բարելաւնալը։*

Տիւրբէ վերջին խօսակցութեամբը շատերուն սրտին մէջ փափաքներ արթընցուցեր էր, զորոնք կը ջանային լեցունել. ուստի երկրորդ օրը մէկէն Հուայմնեստա իրեն դիմողաց խումբը սովորականէն շատ աւելի շատուոր գըտաւ. բազմութիւ հարցմանց պատասխանեց, և հասարակութեան մատենադարանէն՝ որուն պահպանութիւնը իրեն յանձնուած էր, շատ գիրքեր ձեռքէ ձեռք անցան, որոնք մինչուան այն ժամանակ քիչ ընթերցող ունեցեր էին. կ'ուզէին քանի մ'ընտիր գիրքեր կարդալ՝ որոնց օգտակարութիւնն հասկըցուցեր էր բժիշկն, ըրած խօսակցութիւններովը։

Սակայն Միրըպոյի ամենայն ընակէնչքն այս օրինակիս չհասնեցան. պանդոկներ ու արհեստանոցներ յաճախողներն իրենց ժողվուելու վարժած տեղերը դարձուցին ընթացքնին, բայց սովորականէն շատ աւելի սակաւաթիւ դառան եկողները. բժշկին խօսակցութիւններն արդէն քանի մը հոգւոյ անոնցմէ հրաժարելուն պատճառ եղեր էին։ Բասսըմոր և Գասսէ, որոնք իրենց վիճակովն ան սակաւաթիւ անձանցմէ էին որոնց շահը չմիաբանիր միշտ հասարակաց բարւոյն հետ, կը կատղէին եղածին վրայ. կը ջանային ուրեմն Տիւրբէի խօսակցութեան արդիւնքը փճացնել, բայց իրենց նպաստամատոյց յաղթահարել առարկութեանց զինարանը միայն ունէին. և թէպէտ

ստիպեալ աշխատէի, և զաւակներ ունենայի՝ որոնք օր մը իմ մխիթարութիւնս ըլլային։

— Մի՛ կարծեր, Գ. Տիւրուր, թէ ըսածս նախանձու համար էր։ Թէպէտ զաւկըներս ծանր բեռ մ՚ են, բայց իրենք են որ զիս ՚ի գործունէութիւն կը քաջալերեն. երբ չորս կողմս իրենց խաղալն ու ծիծաղելը կը տեսնեմ, իմ վիճակս քուկինիդ հետ չեմ ուզեր փոխել։ Գիտցիր որ շատ անգամ ցաւեր եմ վրադ, ուստի միայն իբրև օրինակ յիշեցի զքեզ, և վասն զի աչքիս հանդիպեցար։ Բայց՝ ինչպէս որ կ՚ըսէի, Գ. Տիւբրէ, ոմանք շատ տղաք ունին և այլք քիչ. ոմանք տկար են, այլք՝ առողջ ու կորիճ. կան ոմանք որոնք երբեք յաջողութիւն չեն ունենար, մանաւանդ թէ շատ տեսակ դժբաղդութեանց կը հանդիպին. այլք ընդհակառակն ինչ բանի ձեռք զարնեն՝ կը յաջողցընեն, և քնացած ժամանակնին բաղդերնին կը բանի։ Իրաւունք է ասիկա. և ինչու համար ասանկ պիտի ըլլայ։

— Ոնորիոս, դու այս զանազանութեանց արդարութիւնն ու պատճառը կը հարցընես. ասոնք երկու այլ և այլ խնդիրներ են՝ որոնց զատ զատ պատասխանը պիտի տամ։ Ոչ, բարեկամդ իմ, արդարութիւն չէր ըլլար՝ եթէ այս կեանքով ամեն բան լմըննար. բայց ամենայն ինչ կը փոխուի եթէ աչքերնիս երկինք վերցընելու ըլլանք։ Այս աշխարհիս վրայ եղած անհաւասարութիւնը անդին հատուցանելի արգարութեամբ կը հաւասարակշռի։

Այս ակնկալութիւնը մեզի համար ամենուս համար ալ հարկաւոր է, թէ աղքատաց և թէ մեծատանց համար. վասն զի ամենքնիս ալ մեր կրելիք վիշտերն ու նեղութիւններն ունինք։ Հիւանդութիւնք, տկարութիւնք, մեր բարեկամացն ու մերձաւորացը կորուստը, ամեն տեսակ ցաւ, դառնութիւն և տանջանք. ամենքնիս ալ կենաց փորձանաց մասն ունինք։ Ամենքնիս ալ նոյնպէս կը գանգատինք մեր վիճակին

վրայ և լաւագունին կը փափաքի
վասն զի մարդուս ստեղծուածն այնպ
է որ իր երջանկութեանն համար փ
փաքն անհրաժեշտ հարկաւոր է. և
րաւի ծնանելէն ետքը մինչև ցմահ մի
փափաքելու հետ է. աղքատութե
մէջ բարեկեցութեան կը փափաք
պէտք եղածն ունեցած ժամանակը՝
աւելորդին կը փափաքի. և երբ աւելոր
տը կ՚ունենայ՝ առաւելագունին կը փ
փաքի. վասն զի իր բնութեան մէջ կ
միշտ փափաքիլ։ Բոլոր սրտով փափա
քած բաները՝ մէյմը ձեռք ձգելէն ետ
քը, ա՛լ բան մը չեն երևնար աչքի
կ՚արհամարհէ զանոնք և ուրիշ բանե
ստանալու համար սիրտ կը հատցը
ու կը հառաչէ՝ զորոնք յետոյ նմանա
պէս կ՚արհամարհէ։ Ստանալէն ետք
աւելի եւս փափաքը կը գրգռուի, այ
պատճառաւ որ աւելի գոհ կ՚ըլլայ վայե
լելու մօտ եղած ժամանակը՝ քան թ
երբոր բուն կը վայելէ. վասն զի փա
փաքին հասնելէն՝ անտարբերութիւ
կը ծնանի, և անոր ալ իսկոյն յափրանք
կը յաջորդէ, ախորժ չզգալով հան
գերձ։

Այս անհուն իղձերն՝ ինծի համա
նոր հաւաստիք մ՚է հոգւոյս անմահ ըլ
լալուն. հոգւոյս խորը անսահման պա
րապութիւն մը կայ զոր բան մը երբե
չիկրնար լեցունել. կը զգամ յիս յաւե
տե անձկութիւն մը առ երջանկութիւն զոր չեմ կրնար հասկընալ, բայց որուն առջև աշխարհիս գերագոյն երջանկութիւնն ալ խեղճ ստուերագիր մը պէտք է որ ըլլայ։ Այս աշխարհիս վրայ ըստ
խս իմ հոգիս աքսորեալ մը կը նմանի որ հեռաւոր հայրենեացը հաճոյիցը կարօտով կը հառաչէ։ Կը յուսամ ուրեմն լի վստահութեամբ առ աստուածային բարութիւնն. տնկելով ՚ի ներքս ՚ի յիս փափաքներ՝ զորս աշխարհս կարող չէ գոհ ընելու. անկարելի է որ ուզած ըլլայ զիս անվախճան տանջանաց դատապարտելու, այսինքն է փափաքելու միշտ առանց վայելման հասնելու, նշմարել երջանկութիւնը՝ առանց ձեռք բերել կարենալու։

Ես ալ աւելցնեմ՝ Մնորիոսի առաջին խնդիրը բոլորովին լուծելու համար, թէ տրուած միայն յերկինս հաստատած նեղութեան հատուցմունքը, մանաւանդ թէ շատ անգամ աշխարհիս վրայ չարիք գործողները, որոնք որ աշխարհակեր են, կարգաւորեալ ու խելացի, անոնց ճգանցն հատուցմունքն այս կեանքը մէջ կը սկսին ընդունիլ, մինչդեռ թէ միշտ դժբաղդութիւննիս մեր վալանացը պատճառաւն է. ժամանակաւ պիտի ապացուցանեմ նաև այս բանս: Գանք հիմա երկրորդ խնդրոյն. Ի՞նչ համար է այս աշխարհիս վրայ մարդկանց մէջ եղած զանազանութիւնը:

Այս զանազանութեան պատճառն է, բարեկամք իմ, մարդուս ընկերական ըլլալը, այսինքն է՝ իր ընկերացն հետ ապրելու համար եղած ըլլալը: Իր կոխճանն է ընկերութիւնը. յայնմ ժամայն կրնայ իր էութեան կատարելութիւնն ստանալ: Իրաւցնէ՝ յընկերութեան մարդուս զանազան յարմարութիւններն իրենց կիրառութիւնը կը գտնեն, եւ մարդուս սրտին մէջ եղած բարեսրտութեան եւ մարդասիրական զգացումները գործածութեան առիթ կ'ունենան: Որպէս զի այս զգացումները կարենան առաջ գալ՝ պէտք էր որ մարդիկ իրարու կարօտ ըլլային, որպէս զի փոփոխակի մէկմէկու ծառայութիւն ընեն. Համառօտ ըսել՝ պէտք էր որ այս աշխարհիս վրայ տկարներ ու զօրաւորներ, մեծամեծք եւ փոքրկունք, գիտնականք և տգէտք, տնանկք և մեծատունք ըլլային:

— Ահաւասիկ, գոչեց Անդրէաս, ապահով էի այս բանիս վրայ. կը տեսնես Մնորիոս, պէտք է որ ինծի ու քեզի պէս աղքատներ ըլլան որ աշխատին, որպէս զի մեծատունք բան մը չկորսնցնեն: Ինչ. դու այս բանիս բացատրութեանը կը կարօտիս, որ լուսոյ պէս պայծառ է: Համբերութիւն. դեռ ուրիշ աղէկ բաներ ալ պիտի լսես:

— Անդրէաս, ըսաւ մեղմով ու լուրջ դիմօք Տիւլրէ, կարծեմ թէ բաւական խնամք ցուցած ըլլամ աղքատաց վըրայ, և առանց վիճակ տարբերելու ամենայն մարդկանց բարեկամ երևցած ըլլամ, որպէս զի չունեցած կարծեացս համեմատ իմ վրաս դատաստան չըլլուի:

— Ո՛հ, Պ. Տիւլրէ, փութաց ու պատասխանեց Անդրէաս, հաւտա որ ամենևին հրամանքիդ ապերախտ ըլլալու համար չէր ըսածս. գիտեմ թէ ինչ աստիճան պարտական են հրամանքիդ բովանդակ Միրըպոյի աղքատները: Կ'աղաչեմ որ ուրեմն ըսածս պարզ կատակաբանութիւն համարիս, անշուշտ եղիր որ ծիծաղելու համար միայն ըսի:

— Կը հաւատամ, Անդրէաս, բայց ամեն բանի ժամանակ կայ, և ծանր հակաճառութեանց ժամանակ կատակաբանութիւնն անճահ է: Երբ պատճառաբանելու տեղ կը կատակաբանենք, իբրեւ փաստ չունեցող կը համարուինք: Ես որ աղէկ փաստեր ունիմ՝ հակաճառութենէ ամենևին չեմ վախնար և կը վիճեմ որչափ երկայն ատեն որ կը հաճիք լսել: Ինծի ուղղած ամենայն առարկութիւննիդ մէկ կ'ընեմ և որչափ որ կրնամ կը պատասխանեմ: Բայց կը կրկնեմ դարձեալ որ նիւթն երկայն է, և չեմ կրնար ամենայն ինչ միանգամայն ըսել. կը խընդրեմ ուրեմն ձեզմէ որ ամենայնի ժամանակին սպասէք, որով ամենևին բան չէք կորսնցներ:

Այսպէս ահա ձեզի ըսած ժամանակս՝ եթէ ուզեց Աստուած որ մարդ երջանկութեան արժանի ըլլայ, ըսի նաև թէ ամենայն ինչ ըրած է 'ի ձեռընտուութիւն, որպէս զի իր պանդըխտութեան օրերն այս աշխարհիս վրայ հանգստեամբ անցընէ, եւ ծանուցի ձեզի որ պիտի ապացուցանեմ: Եւ արդարև կ'ուզեմ ցուցընել ձեզի թէ ամենուրեք աղէկը՝ գէշին մօտ դրած է, և նեղութենէն ետև հաճոյքը. և թէ այնպէս կարգադրած է ամենայն ինչ որ բարեաց բովանդակութիւնն աւելի է քան զչարեացը. և թէ մեր կրած թշուառութեանց շատին պատճառը մենք ենք. և հազարումէկ միջոց տուած է մեզի մեղ-

մելու համար անպատճառ մեր վրայ եկած թշուառութիւնները ։ Եթէ փափաքիս համնելու ըլլամ՝ ինչպէս որ կը յուսամ, աւելի արիասիրտ կ'ըլլանք այս կենացս դառնութիւնները կրելու, ուր ոչ ոք անխառն երջանկութիւն կրնայ ունենալ ։

— Քաջ իսկ կը հաւատամ որ այս աշխարհիս վրայ երջանկութիւն չկայ, գոչեց Ժարլան. միայն սրտնեղութիւն ու տհաճութիւն է ունեցածնիս. և երջանիկ սեպելու ենք զմեզ՝ երբ ներկայ ժամանակիս սովոյն պէս աղէտք չեն կրածնիս ։ Այս բանս պակաս էր միայն ։

— Իրաւունք ունիս ըսելու, Պ. Ժարլան, թէ մարդս աշխարհիս վրայ կատարեալ երջանկութիւն չկրնար վայելել. միայն աշխատելու պարտաւորութիւնն իսկ արդէն իրեն համար շատ էր. բայց որովհետև այս բանս մեր բընութեանն օրէնքն է, պէտք է որ հաճութեամբ կամ բռնի հպատակինք ։ Արդ որչափ աւելի կամովին հպատակինք՝ այնչափ աւելի նուազ ծանր կ'երևայ մեզի նեղութիւնը, մեզի մօտ բարեաց անհուն աղբիւրներ կը գտնենք, զորս մեր դանդաղներովը կը թունաւորենք և յաճախ անխոհեմութեամբ կը ցամաքեցնենք ։ Զմոռնանք նաև որ մարդըս 'ի մարմնոյ և 'ի հոգւոյ բաղկացեալ է. առաջնոյն վրայ շատ կը մտածենք, երկրորդին վրայ քիչ. գլուխնիս եկած ամենայն վշտաց մէջ մարմնոյ փորձանքը կը տեսնենք, և չենք հաշուեր առնուր հոգւոյն այն նեղութիւններէն կրած օգուտները ։

— Բայց, Պարոն, ըսաւ Լէոնարտոս, միթէ պէտք չէ որ մեր մարմնոյն ալ զբաղինք եւ զայն աղէկ վիճակի մէջ պահելու ջանանք. առանց այնմ բան մը չենք կրնար ընել ։ Եթէ մեքենայիս վրայ խնամք չտանիմ, անիւները չեղոտեմ՝ քիչ ատենէն կանգ կ'առնու ։

— Իրաւ է, Լէոնարտոս, պէտք է որ մարմիննիս խնամենք. ինչու համար Աստուած աշխատութեան պարտքը դրաւ վրանիս. որպէս զի մեր պէտքն հոգանք. բայց միթէ մարմնոյ համար ա-

մեն ըրածնուս մէջ կ'արդարանա[illegible]
Մեր գրեթէ ամեն ըրածին վախճ[illegible]
է վայելք ճարել, և ամեն ատեն [illegible]
վայելքը՝ վերծանելնուս համար, [illegible]
ի տոյժ են եւ ի վնաս ։ Հանգիստ[illegible]
փնտրուենք ու մեղկութեան կը զարն[illegible]
առողջութիւննիս ալ անշարժութե[illegible]
կը խանգարենք ։ Ապրելու համար [illegible]
տելու պէտք ունինք, և շատ ան[illegible]
սեղաններ վայելելով չափը կ'անցընե[illegible]
յետոյ չափազանցութենէ առաջ եկ[illegible]
անհանգստութիւնը կը ստիպէ որ դ[illegible]
չանանք ։ Ի՞նչ են գրեթէ մեր ամեն [illegible]
ւանդութիւնները. — մեր անխոհեմ[illegible]
թեանը կամ զեղծմանը հետևանք. [illegible]
փազանցութիւն ուտելու խմելու, վա[illegible]
լից, հանգչելու, նոյն իսկ աշխատելու[illegible]
վասն զի երբեմն կարողութիւններն[illegible]
աւելի կ'աշխատինք. ամեն տեսակ [illegible]
խոհեմութիւն ու զեղծմունք ։

Ուրիշ կողմանէ՝ յանկարծական պա[illegible]
տահեններ, հովու անցուդարձին մէջ կ[illegible]
նալներ, պաղ ըմպելիք կամ տաքցա[illegible]
ժամանակնիս բաղնիք երթալ, խոնա[illegible]
կամ վատառողջ տեղ բնակիլ, օդ [illegible]
լոյս չունեցող տուներ, գրեթէ ամեն [illegible]
րածնուս մէջ զգուշութեան պակասու[illegible]
թիւն. անհնարին են թէ որ հա[illegible]
րելու ըլլամ այն ամեն մեր տուած պա[illegible]
ճառներին՝ որով կը հիւանդանանք ։ Կ[illegible]
տեսնայիք որ այսպիսի ապիթներու[illegible]
պատճառեալ հիւանդութիւններն ա[illegible]
համեմատ աւելի են՝ քան թէ յանկար[illegible]
ծական վրանիս եկածները ։

— Այն ատեն, ըսաւ Անդրէաս, ին[illegible]
չու համար մարմիննուս կազմութիւն[illegible]
անանկ է որ այսչափ բաներ կը կրէ ։

— Անդրէաս, ըսածիդ պատասխան[illegible]
հարցմունք մը կ'ընեմ ։ Եթէ մարմիննի[illegible]
ցաւ չզգար՝ կրնայի՞ր հաճոյք զգալ ։

— Ստոյգ է, Պ. Տիւբրէ, այս բան[illegible]
չմտածեցի. կը տեսնեմ որ առանց մ[illegible]
տադրութեան խօսեցայ ։

— Ասիկա շատերուն կը հանդիպի[illegible]
նը տեսնէք, բարեկամքդ իմ, որ աշ-
խարհիս վրայէն ցաւը վերցընելը, հա-
ճոյքն ու երջանկութիւնը վերցընել ը-
սել է ։ Այս առթով նաև ձեր ուշադրու-

ինը կ'արթնցընեմ որ գիտէք եթէ ղէս նախախնամութեան զարմանաբաշխմամբը բարին չարէն շատ աւելէ ։ Ես իրաւցընէ․ բարին՝ անթիւ ու անհուն պարգեւագոյից մէջ Աստուծոյ ձրի պարգևն է, և ամեն վայրկեան կը վայելենք առանց ամենևին հոգ ընելու ։ Կը վայելենք բնութեան տեսարանը, չնչած ծաղիկներս, զմեզ լուսաւորող արևը, մեզի պարգևած քաղցր ջերմութիւնը, մտերմաց զուարթութիւնը, ծաղկանց անուշահոտութիւնը, պտղոց համեղութիւնը․ վերջապէս՝ սրտերնիս կը վայելէ նաև ի ներքուստ Աստուծոյ ըղձայն ընելովը բարեկամութեան հաճոյքն և մեր ազգականացն ու բարեկամաց ընկերութեան քաղցրութիւնն ու զմայլումը ։

Կը տեսնէք որ բարին ամենուրեք ինքիրեն կ'ընծայուի առանց ամենևին մեր կողմանէ զայն վայելելու համար ջանք ունենալնուս․ և օր ըստ օրէ մեր մտացը մէջ անոր քանակը կը շատանայ ։ Դադրինք ուրեմն, բարեկամուհիդ իմ, աս Աստուած անիրաւելնէս, և ալ չըսենք թէ չարն աւելի է քան զբարին, մանաւանդ թէ ընդհակառակն է․ և'ի բաց առեալ աշխատելու պարտաւորութիւնը՝ որ ըստ ինքեան չարիք չէ, վասն զի կեանք մը առանց աշխատութեան մահուչափ ձանձրալի կ'ըլլար, զլուխնիս թափուած չարիքը մեր սխալանացն արդիւնքն են, որոնցմէ ազատ մնալու համար փոյթ ու խոհեմութիւն պէտք է ։

Ժարլան՝ որ զլուխն եկած թշուառութեանց պատճառ միշտ զուրիշները կ'ուզէր սեպել՝ չկրցաւ լռել ։ — Ի՞նչ, Պարոն Տիւբրէ, կարծես թէ մեր վրայ եկած փորձանքը սխալմունքնէս է․ Հըրդեհին տանս կէսն այրած ժամանակը ես ի՞նչ յանցանք ունիմ․ դարձեալ՝ ո՞րն է յանցանքս երբ հիւանդութեամբ եզներս կը սատկին, կամ երբ կառքս կը ջախջախի ու ձիս կ'իյնայ կը մեռնի․ իմ կողմանէս ի՞նչ յանցանք կայ երբ ցորենատանս որմը կը կործանի ու կովս կը ջախջախէ․ միթէ ճակատագիր չէ՞ ասիկա ։

— Սիրելիդ իմ Ժարլան, ոչ զքեզ և ոչ զոք օրինակ կ'ուզէի առնուլ․ բայց որովհետև անձամբ զինքդ յիշեցիր՝ կը պատասխանեմ ։ Անշուշտ է որ ուղղակի յանցանք չունիս հրդեհին տանդ կէսն այրելուն մէջ․ բայց զաւակդ եթէ դըպրոց զացած ըլլար և ձեռքը ծծմբային լուցկիք տրուած չըլլային՝ այդ արկածը չէր հանդիպեր ։ Դարձեալ, հրդեհէն այն անհնարին վնասը չէիր կրեր եթէ կանխաւ խոհեմութեան համար խորհուրդ տուողներուն մտիկ ընելով ապահովագրած ըլլայիր տունդ ։ Կը հաւանիմ որ եզներուդ սատկելուն կամ ցորենատանդ կործանելուն ու կովուդ մեռնելուն պատճառը դու չեղար․ բայց ինչու համար յամառեցար աւանապետին ազդարարութենէն ալ եզը և ցորենատանդ մօտ առանց ցանկեցնելու թողուցիր այն լճացեալ մօրուտը, որ խոնաւութիւն կը պատճառէր և եզներուդ հիւանդանալուն պատճառ եղաւ, և մեղմամբ հողը ճաթեցնելով վնասեց պատին․ և դարմանելու անհոգանալովդ՝ ինկաւ կործանեցաւ ու կովդ ջախջախեց ։ Ես ոչ իսկ կառքիդ կոտրուիլն ու ձիոյդ սպաննուիլն դու եղար․ բայց ինչու համար անանկ երեսի վրայ ձգեցիր զաւթիդ մուտքը․ և ինչու համար այդպիսի վիճակի մէջ եղած ժամանակը, ան աստիճան կառքդ բեռցուցիր ։ Կըրնաս հիմա ըսել թէ ճակատագիր է, և թէ քու կողմանէդ յանցանք չունեցար կրած արկածներուդ մէջ, կամ անոնց պատճառաց հետևանաց մէջ ։ —

Ժարլան չփոթած չհամարձակեցաւ պատասխան տալու․ Վիէոլէն զինքը տագնապէն ազատեց մտադրութիւննին ուրիշ կողմ դարձընելով ։ — Սակայն, Պ․ Տիւբրէ, ըսաւ, չես կրնար ժխտել եթէ անակնկալ դիպուածներ ալ չհանդիպին առանց ամենևին մեր կողմանէ պատճառ տալերնուս ։ Ասանկ ահա այն դժբաղդ դիպուածն որ Լուդովիկ Մօրանի մահ պատճառեց՝ յանցանք չըլլալէն զուրս նաև ընդհակառակն անձնանուիրական գործ մ'էր ։

— Պ․ Վիէոլէն, ան որ իրաւ է՝ չեմ

ուրանար . բայց եթէ անակնկալ դիպուածներ կան , այլ շատ քիչ են անոնք որոնց հետեւանքը նախատեսութեամբ չկարենանք նուազեցնել ։ Այսպէս Լուդ . Մորանի մահուան հետեւանքն իր ընտանեացն համար զգալի կը նուազէին՝ եթէ անխոհեմութեամբ նեղութեան մէջ ձգած չըլլար ։ Նաեւ հիմակուան ժամանակս ալ այն պարագաներն որոնց մէջ կը գտնուինք՝ բանս կը հաստատեն . վասն զի եթէ հիմակուան կրած կերպ մը սովերնիս այն դժբաղդութիւններէն է որ մեր ամենայն խոհեմութեամբն հանդերձ չենք կրնար խափանել , սակայն մեզմէ կը կախուի անոր արդիւնքը ծանրացնելը կամ նուազեցնելը . և այս բանս ուրիշ անգամ մանրամասնաբար կը քննենք ։

Տարակոյս չկայ որ մարդիկ շատ վնասաբեր արկածներ կը կրեն իրենց ամենայն զգուշաւորութեամբն հանդերձ . որոնցմէ ոմանք առակալի են , ինչպէս մրրիկք , ողողմունք , սովք , փոխադրական հիւանդութիւնք , որոնք ամբողջ քաղաքի մեծ վնաս կը հասուցանեն . և այլք՝ ինչպէս են վէրք , դիպուածական հիւանդութիւնք , հրդեհք , և ամենայն աղէտք որ կը վնասեն ոմանց անձանց կամ ընչից , անակնկալ պատահարներ են , զորս անհնարին է կերպով մը նախատեսել և շատ անգամ խափանելն իսկ անկարելի ։ Կը տեսնէք որ ես նուազեցնել չեմ ջանար առանց մեր պատճառ տալուն կրած դժբաղդութիւններնուս թիւը ։

— Սակայն դեռ չխօսեցար ծերութեան և անոր ընկեր տկարութեանց վրայ , ըսաւ հայրն Ֆրաքէն . որ անտարակոյս մեծ դժբաղդութիւն է , վասն զի անբուժելի է ։

— Դիտմամբ չխօսեցայ անոր վրայ ։ Ծերութիւնը դիպուածական չարիք չէ . մարդկային կենաց տեւողութեան հետեւանքն է . բայց այնպէս դոյզն է այս թշուառութիւնը , որ եթէ այնմ չհասնէինք՝ կը նեղուէինք ։

— Ո՛հ , ստոյգ է աս բանս , ըսին հանդիսականները ամենքը միաբերան ։

— Իրաւունք ունէի ուրեմն ծերութիւնը անոնց թուոյն մէջ չհամրելու . և այս նկատմամբ ներեցէք որ դիտողութիւն մ'ընեմ ։ Թշուառ և տառապեալ անձանց իսկ ի մահուանէ զգացած վախը՝ մի թէ ապացոյց չէ եթէ կեանքը ինքնին՝ ամենամեծ բարիք է , հանդերձ ամենայն չարեաց որոնց համար կը գանգատինք ։

Իրաւցընէ ծերութիւնը հետը մէկտեղ շատ տկարութիւններ ունի որ զմարդ աշխատելու անկարող կ'ընեն . բայց անիկա աշխատութեան ժամանակ չէ՝ այլ հանգստեան , եւ պէտք էինք այնմ պատրաստուիլ ։ Եթէ երիտասարդութեան ժամանակ նախատես , աշխատասէր և խնայող եղած ըլլանք , պէտք է որ նոյն ատեն ալ ապրելու համար միջոցներ ձեռք բերած ըլլանք ։ Եթէ դժբաղդութեանց պատճառաւ չըկըրցանք , հիմա ընկերութիւնը ձեռընտու կ'ըլլայ թոշակի արկղներով , ապահովագրութեամբք և շատ մը ուրիշ միջոցներով , զորս պիտի ծանօթացնեմ ձեզի ։

Ոչ աղքատաց համար միայն ծանր տանջանք է ծերութիւնը , այլ և ամենայն մարդկանց կենացը գլխաւոր մըտածութիւնն է ։ Ծերութեան հեռաւոր հոգը՝ մարդու իր ընտանիքը պահպանելու և կարգաւորելու փափաքին հետ խառնուած , կենաց առաջին խայթն ու գրգիռն է ։ Իր տղոցը վիճակն ապահովցնել և ծերութեանը ժամանակին համար հանգիստ ճարելն է՝ որ զմարդ մանաւորապէս աշխատութեան կը յորդորէ ։ Կը տեսնէք որ Աստուած աշխատութեան օրէնքն հաստատելով՝ իրեն օգնական զօրութիւն մը տուած է . և այս զօրութիւնն է ապագային մտածութիւնը ։

Արդարեւ մարդս անբանից պէս վայրկենական պիտոյիցն հաճոյիցը մէջ թաղուած չէ . բանականութիւն ունի որով իրեն ներկայ պիտոյքը կը լեցընէ , և ապագային համար ալ կանխաւ կը նախատեսէ ։ Բայց շատ անգամ բանականութիւնը մշակելը կը մոռնայ , մանա-

ւանդ թէ ստէպ գէշի կը բանեցնէ. յայսմ միայն յանցաւոր է. զանձ մ'ունի յինքեան, ինչու համար չիգործածէր. և սակայն Աստուած զինքը միշտ առ այն կը հրաւիրէ: Մեր դժբաղդութիւններն իր բարութեանը յարատև հրաւէրքն են որպէս զի մեր հոգւոյն գեղեցիկ գեղեցիկ կարողութիւնները գործածենք: Մարմնոյ առողջութիւնը խանգարող հիւանդութիւնք՝ խոհեմութեան և ժուժկալութեան դառնալու ազդարարութիւնք են. ծերութիւնն իսկ զմեզ 'ի նախատեսութիւն յորդորելու մի միայն յատուկ է. նոյնպէս են նաև երբեմն աշխարհիս մէկ կողմը ամայացնող չար պատահարներն ու արկածները: Այս դժբաղդութիւններն՝ որ եթէ մարդուս մարմնոյն նկատմամբ մտածելու ըլլանք վնասակար են, երբ իբրև բարոյական էակ խորհելու ըլլանք զինքը՝ մեծապէս օգտակար են:

— Ի՞նչպէս օգուտ կրնան ունենալ, ըսաւ Պ. Տիւրուր, հիմակուան ժամանակիս հացի կարօտութիւնը, ինչպէս նաև ողողմունք, մաղձախտ, գետնախընձորի և որթոյ հիւանդութիւնը. շատ դժուար է ըմբռնելն ինչ շահ որ կրնան բերել այս հարուածները:

— Վասն զի քու կրած չարիքդ միայն կը տեսնես, առանց ուշ դնելու անկից ծագած բարւոյն: Կրօնից ըսածները շատ անգամ մոռնալով՝ կը կարծենք թէ երկիրս զբօսանաց վայր մը պէտք է ըլլայ, և պարծելով մը հանճարոյ հնարագիտութեան վրայ՝ որ զաշխարհս կ'այլափոխէ, չենք յիշեր այլ ևս զԱստուած, և խաբող ապահովութեան մը մէջ թմրած կը մնանք. այն ատեն Աստուած այն բարդաւաճ յաջողութեան ժամանակ հարուածներ կը խաւրէ վըրանիս, որպէս զի մեր հպատակութեան զգացմանցը դառնանք:

Բայց բարեկամք իմ, այս հարուածներն որ աշխարհիս ցաւ կը պատճառեն, մարդուս սրտին մէջ ընկերականութեան բնական զգացումը կ'արթընցընեն: Գիտէք ինչ ազնուական զգացումներ որ պատճառեցին մեր գեղեցիկ հայրենեացը մէջ այն դառնաղէտ արկածները՝ զորոնք կը յիշէք. ո՜րչափ ստակ հաւաքելներ, ինչչափ առատաձեռնութիւնք, և ո՜րչափ պարգևք ու ամենազգի ձեռնտուութիւնք. այլ և այլ նահանգաց ինչ փոյթ ու խնամք իրարու օգնելու: Այս փոփոխակի մէկմէկու օգնելու նախանձորդութիւնը տեսնելով՝ քաղցրութիւն մը կը զգանք սրտերնուս մէջ, և կարծես թէ կը մոռնանք այն արկածներն որոնք ասանկ հրաշալի բարեգործութեանց պատճառ կ'ըլլան:

— Այս նկատմամբ իրաւունք ունիս, ըսաւ Տիւրուր. բայց հանդերձ այսու ամենայնիւ չեմ իմանար թէ ինչպէս հացի կարօտութիւնն օգտակար կրնայ ըլլալ մարդկանց համար:

— Ոչինչ աւելի կամ պակաս միւս հարուածներէն: Եթէ աշխարհիս վրայ միշտ սակաւադէպ պատահմունք ըլլային, հանդիպածները յանկարծահաս փորձանաց պէս կը մնային մեզի և ամենևին խրատ մը չէինք քաղեր անոնցմէ. սակայն մի և նոյն դիպուածոյ յար և նման պարագայից մէջ հանդիպելը տեսնելով՝ զգուշութիւն կ'ընենք. փորձոյ խրատն օգտակար ընելով, այն արկածից կրկնութենէն կ'ազատինք՝ որոնք երբեմն ստէպ կը պատահէին: Իմաստուն խնամովք տղաքը հոգալով, լաւագոյն կանոն մը բռնելով՝ անթիւ հիւանդութեանց առաջը կ'առնունք, որոնք ատեն մը ժողովրդեան տասնին մէկը կը ջարդէին: Այսու է որ մարդուս կենացը միջին տևողութիւնը շատ աւելի երկնցած է. օրինակի համար այս դարուս սկիզբը Գաղղիոյ մէջ միայն քըսանուինն տարի էր, և հիմակուան ժամանակս երեսուն ու եօթը կը համրուի:

Ի հարկէն ստիպուած մարդուս միտքը շատ ուրիշ բաներու ալ իշխեց. բազմաթիւ կողմանց օդն առողջարար ըրաւ, ուր առաջ անպակաս էին թըշուառութիւն և հիւանդութիւնք: Ջեզմէ շատերը կը յիշեն ինչ որ էր այս հովիտը՝ մեծամեծ աշխատութիւններով այսպէս կերպարանափոխուելէն առաջ: Ասիկա գոյզն օրինակ մի է մարդուս

հողագնտին երեսն ըրած այլափոխութեանցը։ Ամենուրեք ու միշտ պէտքը գլխու եղած է մարդուս իր հանճարն արթնցընելու։

Մեծամեծ սովերու վախն՝ որ երբեմն շատ աւելի յաճախ ու ահաւոր կերպով կը հարուածէին երկիրս, մարդուս մասնաւորապէս ջանքն ու ճիգը սրեց. անհուն դաշտեր մշակել տուաւ, մշակութիւնն ինքնին կատարելագործել տուաւ. նորանոր տունկեր ծանօթացուց ու ծաւալեց, որովք նուազեցաւ սովերուն թէ ահաւորութիւնն և թէ յաճախութիւնը։ Այս վախճանը տեսնելով՝ կրնանք տակաւին ըսել թէ հարուածներն ինքնին ընդհանուր մարդկութեան համար իրենց օգտակար կողմը չունենան։

— Բայց, Պարոն, խորհրդածեց Լէոնարտ, մարդս սաստիկ աշխատելով այդ վախճաններուն կը հասնի. չարիքէ մը կը փախչի ուրիշ չարիք գլուխը կապելով. չեմ ըմբռներ թէ յորում է շահը։

— Կը խաբուիս, Լէոնարտոս, մարդս նախատեսութեամբ կը զգուշանայ 'ի չարեաց որոնք մարմինը կը տառապեցընեն և կենացը վտանգ կը սպառնան. մարմնական կրելիք նեղութիւններնէս մտաւորական աշխատութեամբ կ'ազատինք. սակայն կայ մէկը մէջերնէդ որ ուզենայ գանգատիլ անոր համար որ մարդս օր ըստ օրէ խոհուն և բարոյական էակ մը կ'ըլլայ։

Սակայն մեր տրտնջանքն հանդերձ մարդուս վիճակը բարելաւնալու հետ է ըստ ամենայն մասին. հիմա կեանքերնիս անցնելոյն պէս տաժանելի չէ, այլ շատ աւելի հանգիստ է և շատ փորձանքէ զերծ. այլ պէտք չէ կեղծել՝ քանի որ իրեն նիւթական վիճակը կը բարելաւնայ՝ բարոյական պատասխանատուութիւնն ալ կ'առաւելու։ Մարդս շատ նեղութիւններէ ազատ կրնայ ըլլալ և շատ աւելի բարեկեցիկ ապրիլ, բայց պայմանաւ որ մտաւորական կարողութիւնները լաւագոյն կերպով 'ի գործ ածէ։

Այսպէս ընկերութեան օր ըստ օրէ յառաջադիմելով հաստատուած կարգերովը՝ կրնայ աշխատութեամբ, կարգով ու խնայութեամբ այն ժամանակին համար ալ ապրուստ ունենալ՝ երբ ծերութեամբ ու հիւանդութեամբ անկարող կ'ըլլայ աշխատելու, և նաև այն ժամանակներու մէջ ալ որ գործ չըլլար աշխատելու։ Խնայողութեան արկղները ստորնագոյն տնանկաց իսկ խնայողութեամբ աւելցուցածը օգտակար կ'ընեն։ Նախահոգակ և փոփոխակի օգնութեան ընկերութիւնները նըպաստաւոր կ'ըլլան հիւանդութեան ատեն մէջ կանխաւ անոնց բարիքն ապահովել գիտցողներուն։ Քիչ ատենէն խնայողութեան արկղը[1] ծերոց համար իրենց կենացը վերջի օրերուն ապահով ապրուստ է, եթէ կանխաւ ապագայն մտածեն։ Հիմկու հիմա ամեն տեսակ ապահովագրութեան ընկերութիւնքն առջևնիս բաց են, որով հանդիպած պատահարաց դժնդակ հետևանքէն կ'ապրեցնենք զմեզ։ Նախահոգ ըլլալը կ'ազատէ զմեզ նաև յապագայս բացարձակ կործանումէ, ներկայապէս թեթև զոհ մ'ընելով։ Չեմ կըրնար այսօր մանրամասնաբար ծանօթացնել ձեզի այս բարեկարգ հիմնադրութիւնները. բայց ուրիշ անգամ առիթ կ'ունենամ, և կը տեսնէք թէ որչափ միջոց ունիք ձեր անձանցն օգնական ըլլալու։ —

Այսու Տիւքրէ ցուցուց եթէ ձախորդութիւնք և արկածք աշխարհիս վրայ նուազելու հետ են, և թէ ընկերութիւնը մեծաւ ջանիւք հետզհետէ կը պակսեցնէ անոնց պատճառած դժնեայ հետևանքը։ Բայց որովհետև նոյն ժամանակի պարագաներն ամենուն միտքը միշտ մի և նոյն մտածութեան գրաւած էին, Միքայէլ Դէրրիէն դերձակը՝ ժառլանի պէս թթու բնաւորութեամբ մէկը, սկսաւ այսպէս ըսել։

— Հրամանքերդ պէս մենք ալ կ'իմանանք որ ձախորդութեանց թիւը պակ-

1 Ծերոց խնայողութեան արկղը բժշկին այս խօսակցութիւնն ըրած ժամանակը դեռ չկար, ու յետոյ հաստատուեցաւ։

ներու հետ է, և թէ զգուշաւորութեամբ կրնանք անոնց հետևանքը թեթևցնել. բայց ձախորդութիւն մը կայ՝ որ է սովը, ուսկից կանխատեսութեամբ չենք կրնար ազատիլ: Թողութիւն կ'ընեմ դարձեալ այս նիւթոյն դառնալուս, բայց հրամմանքդ ալ գիտես թէ որչափ սրտմաշուքի պատճառ է. արդ երբ առջի տարւոյն հունձքը բաւական չկըլնար ըլլալ ինչուան յաջորդ տարւոյն հնձոց ժամանակը, ինչպէս է այս տարի, չեմ կրնար ըմբռնել թէ ինչպէս մարդուս բովանդակ խոհեմութիւնը կրնայ այնմ դարման ընել:

— Հիմա կը բացատրեմ քեզի, Միքայէլ, և ասիկա նոր օրինակ մ'է ապացուցանելու թէ ինչպէս մարդկային իրք զարմանալի կերպով բաշխուած են: Հացի ու ապրանաց կարօտութիւնք եղանակաց խառնակութենէն կը պատճառին. արդ ստոյգ է որ կլիմայից զանազանութեամբը ընդհանուր աշխարհիս վրայ հացի պակասութիւն չկայ: Մինչ օդոց անբարեխառնութիւնը պատճառաւ երկրագնտիս քանի մը կողմը բաւական հունձք չըլլար, տարբեր բարեխառնութիւն մը ուրիշ կողմեր առատ հունձք կը պարգևէ. տեղւոյ մը առատութիւնը ուրիշ տեղեաց նուազութիւնն ու կարօտութիւնը կը լեցընէ: Ի՞նչ պէտք է առ այս. առատ կողմերն երթալ ու նուազ եղած տեղերը ցորեն բերել:

Ստոյգ է, երբեմն հարկ կ'ըլլայ հեռու երկիրներ երթալ. և երբ մարդիկ նախատես չեն եղած և երբ շատ ուշ կը մնան, ինչպէս այս տարի, ուշանալը վախ ու սղութիւն կը պատճառէ: Բայց իրաւցնէ մեծ սովէ մը պէտք չէ վախնալ. Եւրոպայի արևելեան կողմը լիուլի շտեմարաններ կան որոնցմէ կրնանք քաղել. սակայն կը մտածէք թէ առանց ծախքի չըլլար անանկ հեռու տեղեր երթալ ու մեծ քանակով ցորեն բերցընելը. հարկ է ուրեմն որ գինը սուղնայ որպէս զի մատակարարողք ծախքերնին կարենան գոցել. արդ կ'ըմբռնէք որ այս բանս կ'ըլլայ միայն որպէս զի ցորենը մէկ տեղէ միւս տեղ ազատաբար շրջան ընէ: Վասն զի ի՞նչ ընելու էր՝ եթէ ունեցողները չունեցողներուն չուզենային տալ:

Այս խնդրոյս վերաբերեալ շատ ուրիշ բաներ ալ ունէի զրուցելիք՝ բայց անանկ բացատրութիւններ կը պահանջեն որոնք սովորական չեն ձեզի. անոնք ալ ըստ ժամանակին: Հիմկու հիմա այսմ համոզուեցէք որ կարօտութիւնք հացի, ինչպէս նաև այլ ամենայն աղէտք, իրենց դառն ներգործութեամբն հանդերձ, օգտակար են մարդուս համար իբրև բարոյական էակ: Կը զարթուցանեն յինքեան ընկերականութեան սկզբունքը, վաճառականութեան գործունէութիւն կու տան, և կը միաբանեն զժողովուրդս 'ի շահ հասարակաց: Գալով հիմակուան ժամանակիս պարագայից, եթէ ցայսօր եղածն չափազանց վախ տալու երևութով մը ներկայացաւ, վասն զի Գաղղիոյ մէջ նախատեսութիւնը պակաս եղաւ. սխալ հաշիւներ եղան, և շատ ուշ մնացինք հնձոց պակասը լեցընելու հնարքը գտնելու համար. բայց արդ հիմա դժուարութիւնը բոլորովին պարզուած է, ոչ ոք այլ ապրուստին համար պէտք է վախնայ. և յապագայս խոհեմութեամբ այս սոսկալի աղետից արդիւնքն իր ոյժը կը կորսնցնէ[1]:

ՌԱԲԻ

Կը շարունակուի:

1 Ինչպէս որ եղաւ 1855ին և 56ին. պատերազմ և յաջորդաբար անյաջող հունձք ըլլալով հանդերձ, աչալուրջ արթնութեամբ 1846էն աւելի չբարձրացան գիները: Վաճառականութեան ազատութիւնն 1862ին աւելի զգալի օգուտներ ունեցաւ. Թէպէտ և 1861 տարւոյն հունձքը բոլորովին անյաջող եղեր էին, այլ հացին գինը 1862ին դրեթէ ամենևին չաւելցաւ:

## ԲԱԺԻՆՔ ՀԱՑՈՑ ՄԵԾԱՑ

(Տես երես 293)

Ցանհարաղատ վայրէս դարձ ի ցանկալին արասցուք
ԵԱրածանւոյ գետահովիտ, յորում աշխարհք մեր երկուք.
ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ եւ ՁՈՐՐՈՐԴ անուանեալ ՀԱՅՔ ի յաջմէն.
Սա Տիգրիսի մանակից, նա ի Տօսպայ մեծ տափէն.
Յորում Տարօն առաջին՝ մայր գաւառաց գերապանծ,
Տուն Նախագիւտ զերծելոցն ի հեղեղացն համախանձ.
Ի սեմածնէ Տարբանայ շինեալ Տաղօնք եւ Ցըրօնք.
Վայրք՝ զոր օրհնեաց արութիւն, իմաստութիւն եւ կրօնք.
Հայոց Հնդկաց երբեմն անդ բազմապաշտօն դիւցարան,
Ապա Քրիստոս մէնն Աստուած զանդրանկաշէնն եդ խորան.
Ի Սլկունեաց հին տերանց ագուցեալ ձեռըն Մամգուն՝
Յանուն Գրիգոր եւ Տրդատ՝ կըրեաց նիզակ միշտ կանգուն.
Լերինք եւ ջուրք, չէն եւ վան, յիշատակաց դէպք անբաւ,
Ընդ վսեմական հընութեան եւ նորութիւն անպարսաւ:
Բարձրակառոյց դահագլուխ հընաբոյրն արդ բազմի Մուշ,
Ի մեղրաբուխ Մեղեայ դաշտ արբշիռ անոյշ եւ մըշուշ.
Վիշապ քաղաք՝ արդ աւեր, Օձ՝ որ Պարսկին է Գորպէս,
Քարուտ Գրդուոյ եւ հրացայտ Նեբրովթ լերանց 'ի ստորեւս,
Ուր աղտաղտուկ ծաւալին Տխայ ծովուն ծիրք ի ման:
Տիրակատար լեռնաբերձ քաղաք դիտակն Աստղըկան,
Քարքեայ սարակք իննակնեան հնդկազգալուծ դիցաւէտ,
Յորմէ մերժեալ զԳիսանէս՝ կալաւ փրկչին կարապետ.
Վահեվահեան ընդ հիւսիս եւ Յաշտիշատ հայ մեհեանք,
Մեծ Պարթեւին Սահակայ կալուածք ի կեանս եւ դամբանք:
Ամպարհաւաճն Ոգկան բերդ՝ հանդէպ հեղոյն Հացեկայ,
Որ զհեղինակն ընծայեաց նոր դպրութեանցըս Հայկայ,
Եւ պատմահօր քերդողին մեր խանձարուրքըն խորօնք,
Մօրխ դինաւէտ եւ Մեղտի, Արտօնք, Աստղօնք եւ կաճկօնք.
Մուշեղաշէն քաղցրայուշ, վահանովիտ մեհ ազդու,
Ամենազան իմացուածք վայրիւք կենաց եւ Մահու:
Տուրոսական բարձրաբերձ կարկառք կանգնեալք ի թիկանց
Աշտէակիր քաջասուն տածեն սերունդ խոյք արանց.
Ասպագոշնիք եւ Գաւառ, համավիճակ կոգովիտ՝
Ուր ի Հռովմէ Պետրոսի Մատն ըղձանգիստ իւր եգիտ:
Յարեւմըտից Տարօնոյ հին կողմն Արջուց՝ արդ Շատախ.

Տուն շատախօս իշխանի, Ծիծուան վանից սուրբ փարախ.
Եւ Գայլունիք առ երի՝ յորում Հոռեան եւ Նըւառս,
Սանատրըկեանըն Մըծուրք, Եփրատայ վազք ընդ կարկառս.
Ի բազմաղբիւր լըճակէր ի Սրմանց սարս Աշմունիք,
Երէզ աւան եւ Ծախնոտ՝ Մանդակունեայն հայրենիք.
Տաշտէն Տօղուտի վիճակըք եւ որ այժմիկ է Վարդոյ.
Գաւառամ՝ Նախնեաց աղգարար գեղածաղիկ վայրք հովոյ:
Հայոց Բարձանց մերձաւոր աղահամբար Մարդաղի,
Լերինք Շուշար, Հաւանիչ, քաղաք ամուր Աղօրի:
Ի քուրդէից կողոպտեալ Վարաժնունիք վայրք սիրուն,
Գաւառք Դալսար, Դասնաշորք, Ցուարածառաթ՝ արդ Կէօկտուն:
Ի յեզս Հարաճից զետեղեալ Ապահունիք արեգդէմ
Դաստակերտաւ հայկածնին Մանաւազայ ճոխանեամ,
Շէն քաջահին եւ ամուր, յոր դուժ սուլտանըն Սաղջուկ՝
Բազմանարուխ յերիցուն քարէ՝ դառնայր անձուկ.
Աստ Դալարեաց գիւղ զարքայ Տիրան տեսեալ աչաղաւ
Ի պարսկանիւթ նախանձուէ՝ դառնայր որդով յԱծուղ սեաւ.
Աստ Գալլիկեան սերմըն ժանտ վերածնանէր ի Թոնդրակս
Գարկեշտ վառուց եւ կրօնից խեղաշրջեալ հակառակս:
Գաւառաման հայկազնեան դեհիս եւ դաշտ Խանազակ,
Եւ մարզ յելից Աղիովիտ՝ կից Վասպուրայ ու ի նոյն ճահ.
Իսկ ըստ մըտից հարաւոյ՝ Կորի գաւառ նոյն եւ Ջոր,
Ուր Լիզ եւ Կոր արդ վիճակք, այլ եւ լըճակք ղուզաւոր.
Ոմըն Նազուկ Նարմանայ, միւսըն Խաչուռ խառնախեռ,
Զի պշանթաշարժ ասըն արքայ Գաւօշ ընդ Գլեճան անդ մըխէր.
Եւ հակառակս ի կորդէլ՝ Թաւալդըլորք ի սարէն
Վիժեալ որդւոցն երկոցուն՝ եւ ցարդ զայխըն պատղեն:
Խորխոռունիք՝ կորովոյն Հայկեան Խառայ շինավայր,
Մինչ ի Մասիք հրագագաթն որ ի Տոսպեան ծովու ծայր,
Ուր ցարդ կանգուն զուգակից Մանազկերտի գիւղ Խառանց,
Մալխազունեաց ուստի տոհմն ընծայեցաւ Հայկազանց:
Հայկայ թոռին մեան յերի բազմամանուած Բզնունիք
Ցարեւմըտից հիւսիսոյ մածեալ ծովուն գեղեցիկ,
Որ երկոքումբ քաղաքօք յերկուս հաշուեալ եւ մասունս,
Արճկէ ՚նդ հիւսիս՝ որ բարիս բաւոյց եւ չար երիցունս.
Շուրջ ոլորտից վեհագոյն նախաձեռնող եւ յալիս՝
Այնք որ կըլին ըղձիպան, Ցըքան եւ Արձակ իւր կղզիս.
Ընդ արեւմուտքս Խըլաթ՝ երբեմն աթոռ արքենին՝
Որ կըէր զանուն Հայկազեան, անհարազատ դըխուկին.
Բաղում բըռանց ձեռնակոծ՝ դեռ հայակալ անձայր,
Բրդաբոլոր մահարձանք՝ յոր աւն ունայն ոչ հայի:

Ծըղակ, կծուակ եւ Աղաղ՝ զոր ծով ծեծէ հանապազ,
Եւ ի խոնարհ կայս Դատուան նաւակայիք բարձրանալ.
Յարեւմըտից ընդ հարաւ հուսկ գաւառաց Երիվարք՝
Ուշտունեաց մէջ եւ Աղձնեաց՝ ծովուն ծծմանց լեալ աւարք.
Ուր Եղեգիս լիճ երբեմն ապարաքաձեւ սերմնարկս,
Արդ ի ճախին մօրացեալ յընձայքիւր թիկանց կայս:
Բերդք անդ փարհուաց եւ Գազայ, վանքք Թովմայ եւ Գոմաց,
Կիւրձկան անուն արդ. տեղւոյս հուպ ի մայրիսըն Մոկաց:
Արածանւոյ, Տիգրիսի համամլինակ ու Եփրատայ
Ի ծագ. մըտից հարաւոյ ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՈՑ աշխարհ կայ,
Միջագետաց և Ասորւոց ու Եփրատացւոց յարակից
Բազկաւ նուաճեալ Արամայ հայրենական գահոյից.
Խորձայն գաւառ մայրեւոր մերձ ի Տարօն եւ Կարին
Երկնամլինակ արդ. յերբ կեղի Սոսրին եւ վերին.
Արածանւոյ ծաւալոցն եւ ամբարերգ ճապաղչուր,
Գաւառագլուխ չէնք Մորմոնք եւ կոհեր լեառն յաղթակուռ,
Կից ի Տարօն գրգարան արքայազանց հեշտ Հաշտեանք,
Յորոյ Թիկանց Դկլաթայ դրդեն կայտառ կարկաջանք.
Անդ գեղանեամ գագաթանց քաջանըշան Տափարակ,
Յորում երբեմըն սփռեալ Հոնաց յոխորտ ասպատակ՝
Ջահերըն այրեաց հրաւիրէր ի մենակռիւ ըզՏրդատ,
Որ սրակոտոր սատակէր ըզգըլուխ եւ զյոյսըն զորադատ:
Մեծի Ծոփաց՝ յոր անուն կոչի աշխարհն իսկ ողջոյն՝
Ընդ հարաւ կայս տարածին յայժմուս վիճակք բազմազոյն.
Աղախ, Լըճէ եւ Հազրոյ բընակ Հայոց սակաւուց,
Կարկաթակերտ անդ քաղաք յունածանօթ վաղընջուց.
Դեգիք, Դովրէք անծանօթք, արդեաք հուպ յԱկն եւ յԱրկնի,
Յորոց մի՝ հինն Անգեղտունն վայր քաջաց դէց հանգնի,
Արմենակեանն ուր Բագրատ, ատեն, հիմնէր զոստանն այն
Եւ ի խոժոռ երեսացն հալածէր վայրն Անգեղեայն.
Կամ ի Տորքայն Գաքամեան՝ հսկայ տափունչ եւ միթխար,
Որ ըղպոնտեան Գխսկոն պարգեւալ ըզօք պարապար՝
Հինայարձակն ըղատրմիդ ապարքեզք տարակայ
Կոծէր ընդ վիհս անդընդոց ու նոյ. լեռնարերձ կոհակաց:
Հուպ Անգեղ տան Գաղնայ-տուռն ի լեռնավայր սահմանի,
Յորմէ Յովսէփըն Թադդման սատառածաշունչ մատենի.
Բաղանոյիտ առ երբ՝ ուր Թարգմանչաց հայր Մաշտոց՝
Ասեն՝ երկնեաց ազօթիւք ըղձալի տառից հայ գըրոց.
Քաղցրահայեաց քաղցրանան անդ մենաստան Տիրամօր,
Եւ վանք Խաչկայ, Չէթ, Նոր գիւղ, Հաւաւ, Խոշմատ, Քարաձոր.
Թիլուրն վիճակ տառանօր, ուր գ. անուանի Թըլեթուխ՝

Զոր սուր պարսիկն ամիրայ զգեցոյց ըստոյգ յարեան Թախ։
ԶԱրածանեաւ ու Եփրատաւ զոյգ մածեալ Ծոփք Շահունեաց,
Յամպայն՝ Բերդեկ եւ Ցաղմաձ, վանիւք Երկայն-Ընկուզեաց.
Մեֆկերտ, Խոզան, Զմրշկածագք, յորմէ Յոլհան գոռ կեսար.
Կարմիրղարուկ աղուաշէց, եւ վանք Կարմիր, Խարտիշար.
Արծաթաբերըն Կապան յանուժ կրկնակն Եփրատայ,
Լուսաթառին երբեմն անդ քաղաք՝ որ յուշ քաջերէկ առայ.
Եւ յոլորուտ առմբկանըն պարուրեալ Այտունհետ,
Յորում Մըշար կմբրաձեւ երկայնանիստ սար ի վեր,
Ուր փիլարիտըն բանի Յունահայ սէգ ինքնիշխան
Սարոստանեկ Սամնեցւոյն սատէր նուաճել յիւր հրաման.
Իսկ Թոռնիկ Թափ ի Յուրեան զարից առեալ զխմահար՝
Քաջ ջոկատին ըղձամբարն ահեղ սանձէր գիր եւ սար,
Եւ չիկահեր չահատակք Ուլմբալեայ՝ փռանկ ամբաձիգք՝
Ի հայկաճօճ նիզակաց գնային ի մահ կամ գերիք.
Զարիւն քաջացըն ծըծէր դաշտ Ալէյուայ ի Հանձիթ.
Գաւառագլուխ ուր Խորբերդ կանգնի յամուր քարաքէթ,
Հովանացեալ հարիւրոց յիանից չինէից ցեր ընդ ցեր
Ի քաջուոց հացաւէտ անդս եւ ի մարգ ծաղկածիր.
Քառից ծաղաց սրբազէտ կանգնեալ յայժմուս մենաստան,
Որոց Դատեմ կուանանէր խնձ զահապրուխ սփրակուն.
Շէնք Բաղմաշէն, Գաւանակերտ, Քրմատարին եւ Հառքիկ,
Շեամուշ, Շնթիլ, Զարգարիչ, Ճոլսոր ու Ախոռ ու Ապողիկ։
Յեղը աշխարհին ծածանի ծիածառայըն Ծովակ
Ուր Գրիգորեանց ամբարձաւ գերատաճանըն գահակ։
Յեփրատ Տիգրիս մերձագոյն կէտ փուանկատառըն Տըլուրք,
Ուր ծծմածուխ եւ հրացայտ աղբերանան ժիր Ջերմուկք.
Եւ անդըրադոյն յարեւմուտս եփրատական նաւանցիկք.
Բեւեռաքանդակ անդ արձանք՝ զարմանապէծ յիշեցք,
Յորում սիրեմ զհայրասէրն իմ տեսանել քաջն Արամ,
Եւ ըղկափեալն ի Նմանէ հսկայ ի վըտակըն Բարշամ։
Ի տաճկագէտն արդ դարձցուք հարաւահողմն երկիր Հայ,
Յոր լեռնաբերձ աշխարհք չորք զաջեռ ըմպեն Դկլաթայ.
Նախ ԱՂՁՆԻՔ նիստ բըդեշխից, ասորախառըն գաղութ,
ԶՍենաքերիմ սատակեալ ետ Հայկազըն ոյժ յանուժ.
Ուրայ գաւառ Նփրկերտ՝ մեծ քաղաքըն յարանուն,
Զոր դըրակից Ծոփք զըռուեցին երբեմն յասան համարտուն,
Իսկ տէրըն Ուլթայ վըկայից սիրող՝ Նացին նուէրէր
Սրբոց բիւրուց երեւնից կազմեալ խորան խընդաբեր։
Արդըամելայ հայրապատան նիստ նախնի Արզնի գաւառ.
Ուր վէճ Յունաց եւ Պարսից ի կռուէմաանըն Քաղմար.

Եւ յունազարդ հիազարդ Տիգրանակերտ չէն սիգին՝
Որոց կառաց անդրուվարք Թագակիր պետք չորեքին.
Մինչ փոխէին հրաշալեօք անդր Ցանիա եւ Աթէնք՝
Ի չտապ ժամու յանդրդունքն հոլովէին Հռովմայ հէնք.
Ցեառյ Սասանն աւերիչ քինու ձեռն անդ արկանէր,
Ի մոռացօնս հընութեան Թաքչի անուաւ անդ մրթեր.
Արքունաճոխ ի նոյն վայրս եւ Բաւաւէշն էր աւան՝
Ուր զանաչառ Ծերունին գձձէր խանձառըն Տիրան.
Խարզուն, Խըզոռ արդ վիճակք քըդաժառանգք աղխատրոյղ,
Քեղ եւ Կերիկ լեռնախոր դաւառք ի յուշ խորասույղ.
Հայկազն Հրանտայ յուշարար արդեօք եւ գեհ Բնոռաւան,
Կամ լեռնանիստ Պըչեռի եւ զուգակերպըն Խիզան.
Ազնըռաձոր կարկառեալ հարաւադէս նըրբովիտ,
Եւ անդրադոյն սատակախօս Սերխերք Սըղերտ պաղախիտ.
Գըզեռ-Խիզան բազմաչատ ի մենաստան եւ ի չէն,
Գամազիէլ եւ սուրբ խաչ Եօթընխորան սրբաչէն.
Խուպ եւ խուպան եւ խակեւ, Եղունց, Գարեւնց եւ Անդենց,
Գալխուր, Խանուս եւ Սիգերք, Որճոկ, Իւրեանց եւ Գառօշենց.
Իշխանաստուն Աղձնեաց Հողց՝ մինչ ի Տապեանըն ծովակ,
Ցոր ի խըթին խոխոմիցն իջուցանէ զթուխ վըտակ.
Ընդ ձոր անցեալ գեղեցիկ՝ զոր տըգեղեաց խօլն Ահմատ՝
Մատնիչ ձեռին դաւանօք զարքայն հարեալ մեծ Սմբատ.
Երկաթհատից լեառն հարուստ ծովակարկառ՝ նոյն Բեղու,
Ընձաքիսար-Կապուտկող, վանք Ըղդօնին Ցակորու.
Կոտոմն աւուր կայարան զանխուղ ազին Ջուրարիկ,
Որոյ վիմօք զԱղթամար կառուցանէր գոռ Գագիկ.
Տիրապետող դաւառաց քրդապերճիկ Մաչնաձոր,
Ուր քաջողկոյզըն Սալին, Բաղէշ այժմուս գահաւոր,
Ի բազմառու հեղեղաց եռակըռուր սարաղար
Գեղահայեաց գեղատաշ սաղարթաճեմ օդապար.
Ջուրց եւ ժայռից ու անձաւաց չինից վայրից ըղքանչանք,
Անցք վիմափորք ի հովիտ ձեռանց զարամուր իջեւանք.
Թաղէաչէն հին ատճարք եւ մենաստան հնդեբեակ,
Ցաւաչադէմ Ամրոդին՝ գիտասիրաց համբարակ.
Բաբշէն, Խախրեւ եւ Կամախ, Խուլթիկն աւան, Քարակուս,
Գոռ եւ Աւեխ, Խմբեղջուր, Ջըլար, Փարխանտ, Ամպ եւ Թուէթ.
Հուսկ եւ ըսկիզբըն մարզից քաջորերոյ բնակատուն
Ի տաւրական դարեւանդս՝ Արզըն զուգակ Սանասունն,
Աստուրաչէն տուն Սանասունք՝ որ արդ Դաւթի կոչի Բերդ.
Մըթերք անթիւ արութեանց՝ զոր չերգեաց բան սեթեւեթ,
Ի մըրըրայօն պարըպեալ լերանց Մարաթ, Քայլիթուն՝

Գետօղեան համակ հայակոչ անդ տաւել քան վաթսուն.
Կորով, Կօշակ եւ Կորդեր, Հառչօնք, Հռեկօնք եւ Խարծուկ,
Զիթէնք, Դաստանք, Մկնդէմք, Մաղէնք, Բրսանք եւ Բրլիկ.
Նիչ, հայրատուն Եսայեայ վարժապետին ի Գլաձոր,
Մանկիկ, Մարգդատ եւ Քիսդատ, Դարուք, Դարհօր, Դալըրձոր:
Մարգք մերձակայք Բռնաշէն եւ Թուխ, եւ վանք Աղբերիկ,
Գետօղ Տաշտադէմ եւ Կրձանկ, Կոստ եւ Շընիկ ու Ընկուզիկ:
Թեր Ռշտունեաց եւ Աղձնեաց մայրաքաղաք աշխարհ ՄՈԿՔ,
Կից ի Թիկանց պարըսպեալ հորձայից կորդ կարկառօք,
Անծանօթի հընարուն Նախապետի շառաւեղք.
Երից ընդ մուտս անուն տան գաւառաց՝ գրաստք ականջեղք.
Իշոց ու Իշայր, որոց ճահ եւ նոր անուն Ջըռըրգան,
Եւ բազմաշէն դեհ Քրդից տոհմից արձակըն Շըրուան.
Հուպ բուն Աղձնեաց՝ գոգ եւ միան իսկ նոյուն հին Մաւրուանք,
Իշխանանիստ աւանաւ Ասուր գրոհին՝ Ապարանք.
Յորում փայտին կենսակիր հրաշակառոյց մենաստան,
Զոր՝ գեր գանձուց զարդարեաց Նարեկայ նուագ ճոխաբան:
Առուեանց-ձոր՝ վանագնեանն Առաւենայ ոստան հին,
Յորմէ Ռոստոմ՝ մըտերիմն Երրորդ Արշակ արքային:
Կարկառ վիճակ ստստանօք մենաստանաւ Մըկորու,
Գետօք՝ Տափ, Որեղ, Յաղթ, Բերդակ, Գինճի, Մճկանց եւ Մօկու.
Երկիր անյուշ ի գըրոց Սպարկերտ վիճակ առ կըռան՝
Շիրնից վանիւք եւ Թաղու, եւ գետօք Ներքան եւ Կըռան:
Մոկք առանձնակք՝ մարզից մայր մայեկամած սարաստան,
Նաւթաղեան աւանաւ գետակըրտուր՝ հին ոստան,
Բոցաճեմիկն Աստղկայ քարակարաւ տապարէս,
Որ յորս ցըռուց եւ կնճից ձաղէր զՇապուհ քաջապէս:
Վայր հին կըճաւ կամ կըճառն՝ ուր դիւահոյլ երամ Թիւր
Հակառակեալ Հռիփսիմեանց եւ ծանակեալ ծայրատիւր,
Իսկ յաղթական կուսից գունդ զկանանց կանգնէր վանս եւ խաչ.
Անդ եւ Մոգլին՝ որ փրկչին նորածնի գնաց ընդ առաջ
ՅԱմենափրկիչն տանն վանս գոլ Գասպարայ գերեզման.
Մինայ, Փասայ, Վարդանանց ու Ակընդաշտայ մենաստան.
Գետօղեան շատ, Բար եւ Ողիմն, Լուլենց, Բուլենց եւ Խալենց,
Ծափանց, Ծառաստանց, Աստիճանց, Յառենց, Հանենց եւ Արբենց:
Արգառուլիտ ու Արքայից գաւառ անյայտք եւ Միջա,
Հուրանց, Յերոււն, Շինուձոր վիճակք նոցին տեղակայ.
Եւ հուպ կեցան՝ յորում վանք Սմբատաշէն Տիրամօր
Սմբոն, Կանջառք, Սորովանք, Դաշտ եւ կարք գետօք անտանօր:
Հուսկ յարեւելս Ջերմաձոր՝ տիգրիսաբուխ արդ Շատախ,
Յորում կլետուրքն են վիմաց կածանք կապանք գահավէժ.

Ահեակն անտառաւ Դըկլաթայ սահի բաղուկն ոլորուն .
Ցանձաւածոր ուռուցեալ վիժից ւ ուղխից Ագռաւուն .
Դիտակ անկոխ պահակին կառեալ Ջրդղայլ ղարամուր ,
Ուր եւ կարմիրըն վարդան զօղեալ մռնչէր բոցահուր ։
վաներ՝ Դարենց Տիրամօր , Ջօռ՝ Սոեփանու եւ Ծաղկայ ,
Գեօղեան՝ Ծիծանց եւ խաչանց , Առեղ , Մարծեղ , Գրխաւայ ։
Այլ հիմ կոչումըն Ջերմին՝ փոխեալն ի Շոխ արդ ու ի Տաք ,
Ցոր եւ գետ Ջերմն հընակոչ . — այս առ յինէն մութ եւ փակ ։
ՑԱսորեստան միջամուխ ահա կարկառք ԿՈՐՃԱՅՒՑ՝
վայրագասուն ի սկըզբանց ազանց աշխարհ Քուրդէից ,
կոհակակոյտ խորտաբորտ մերխվայրեալ բովանդակ
Ցորձանապատոյտ հեղեղաց ձորահերձիկ խոր յատակ .
Կուրդուշաց գաւառ Նախիչխան՝ յորում քաղաք Թըմանին՝
Նախիջեւան ութեցունց դերծելոց տամբ տապանին .
Մեծաց Մասեաց մրցամարտ սարաւանդեալ Սողոփի ,
Ընդ որ վազէր անդանդէտ սուրբ հարան Հայոց Հոռոփի .
Բերկացռոց անդ գաւառակ՝ յաշխարհն ամուր մօտ Տմորիք ,
Ուր եռատոռհքըն վերին , Միջին , Ստորին են Կորդրիք .
Ամրապահեստ բերդք Տմորեաց եւ Ալկի չէն Հայկազուն ,
Ուր ծերունին Այրարաջ սփափէր կընաւ միրասուն .
Ֆընդրգ , Ֆընդուրգ յայժմուս մարզք՝ զամուրն յիշեն Պինակայ ,
Որոց զուգակ ինձ Ալկի ըստրաբոնեան Սիտ—ալգա ։
Այտուշանք , Այգառք , Մորողանք , կարապուճիք , անյայտք ուր ,
Արդ Հագարի Քաղդէից հազարամեայ վայրք ամուր ,
Ջոր ասա ուրեմն հինահար արեանարբու հրոս Քրդաց
Առհասարակ համակէր ի սպանդ յաւեր եւ յայրեաց ։
Բաղմամամանեալ վիճակք Բազ եւ Տէզ , Թոպի , Թխարի ,
Մորողանից մերձաձայն Թխումա եւ մեծ Պերվարի ։
Որսիրանից—ձոր ընդ ելս , յորում երբեմն Արեան լիճ
Հուպ ի Թըլայն գեօղ՝ փոխեալ ի պըակարգս արդ ճահիճ ։
Ճախուշ՝ ամրուն հաշակեալ ու Ագարակաց կուռ բերդաւ ,
Առ բարձրաբերձըն ճեղու՝ ուր եւ վիճակըն Ճեղլաւ ։
Հուսկ գաւառաց ընդ հիւսիս եւ կից Մեծին՝ փոքր Աղբակ ,
Ուր ճոխամերկ՝ Ջըլմայրն հին՝ վերաբաղմի արդ քաղաք .
Եւ Սմբատայ եւ Սըընդի բերդեան անցեալք ի հանդէս ,
Դիտապետին Քաղդէից այժմիկ կայանք Քոչ—Հաննէս ։
Ղօղեալ իսպառ եւ անյուշ մըր վիճակեալ գաւառի
Ապուջաբրին բերդ ամուր հուպ ի քաղաքըն Վհրի .
Այլ մեհագոյն ինձ խնդիր առս գաւառի Հայաստանն .
Որ եւ Հայկայ Նախահարց թըւի բընիկն այն ոստան ,
Ուր դիւցազինըն գաղարք ու արի Թոռին կաղմեալ տուն՝

Յոր Տիրանեան զուր գիմէր Թորգոմազանց բանսարկուն.
Դէմ հարաւոյ ճետ քաջին բիւրուք արամբք կայր պահնակ՝
Յերբ ամբառնայր ձեռն ի Հայս Արշակունեաց տէրունակ.
Իսկ ի վառել չամշելոց շուայտից չիդարն ալքայից՝
Թագադրաւակ ինքնագլուխ նաղէր եւ Տէր կործայից:

Յաշխարհ յետին ժամանեալք Մեծի երկրիս՝ ՊԱՐՍԿԱՀԱՅՍ՝
Յերկուց դըրացի ազանց վէճ՝ յարեաց ու արեանցըն վըկայս.
Քօղարորբեալ պարսկայնոյն պատըրուակաւ մարգք սորին,
Կուրիձան՝ նոյն եւ Այլի, Թրաքի, Ացուերս եւ Մարին.
Ըռնա, Տամբերս, զոր ի մեծ քաղաքն առեմ մօտ յՈրմի,
Ուր մազդեզանցն հեղինակ ընձուեալ ի կեանըս՝ պատմի.
Դաշտադետին բարեբուղխ յեցեալ ի ծով կապուտան,
Բազմահարիւր բազմաշէն բազմալեզու գեօղաստան.
Յերի վայրացն եւ Ռուսթաւ՝ առաքելոց ապարէս,
Բարթուղիմեայ եւ Յուդայ եւ Սիմոնի սուրբ հանգէս:
Սուրենապատ ըղձայրօքս՝ ըստ կարծ ծանօթըն Շինոյ,
Յորում Հայք գիւղ, ու ի լերին՝ բեւեռաքանդակ տաշածոյ:
Ջարեհաւան ըստ հնախս՝ որ ծով Ըրմեայ եւ Վարազ,
Եւ Զարեւանդ՝ որ Տիլման եւ Սալամաստ զուգանայ.
Խոսրովաւան արդ շըքեղ եւ փաղաղուկ քաղաք հին,
Ամպրիոտիկ, Հաւաղուռն եւ Սաւուռա գեօղք յիշին:
Գաւառադլուխ տարակաց Հեր՝ յերասխեան ի հովիտ
Որ Խոյ կոչեալ եւ պարսիկ նախարարի այժմ է նիստ.
Անդ փեռատակ, Նըւարսակ եւ հովուավանք Մալխազան՝
Յոր Արտաշէսն յերուանդայ փախուստ լինէր ապաստան.
Լայնածաւալ հովտաձեւ դաշտ քաղաքին շըրջապատ,
Ուր Դերանկին զաւ դընէր Ապըլխարիպ առ նախատ.
Վասպուրական ծայր ի ծայր ու աշխարհ Հայոց համօրէն
Նըզովէին հազար դէպ ըզտիրանենգն անօրէն.
Սթափեալ քաջին՝ թափէ զվրէժն որպէս գինի գլխահար,
Դարանամուտ ի նոյն դաշտ՝ դարձուցանէ զտէրն արդար,
Եւ զպըլպղին հրապուրիչ՝ հարեալ ցրուեալ ռամթուր՝
Յերկաթի դուռն ակառանն նըշան վարսէ գյաղթըն թուր.
Սեւասարաս անիծից մըրուրք մերժեալ տարադրին,
Ըսպարապետն եւ արքայն եւ Հայք համայն համբուրին:

Հնդեստան քեզ ցայս վայր Մեծաց Հայոց մեր աշխարհդ,
Եւ երկերիւր ընդ յիսնից իշխանանիստ ճոխ գաւառք:

Հ. Ղ. Մ. ԱԼԻՇԱՆ

## ԻՄ ՎԱՆՔՍ

### Դրապետանի մը անտիպ յիշատակագիրք։

( Տես երես 267 )

### Ը

Այս հրաւէրքին չէի գիտեր ինչ պատասխան տալ. տառապագին երկիւղի մը մէջ էի, և չէի կրնար համոզուիլ որ Լամբերտ իրօք մահուան դատապարտուած ըլլար։ Բայց զանգակին այն ագգու և չարագուշակ ձայնը կարծես թէ մերթ ընդ մերթ կ'ըսէր ինծի թէ՝ քիչ ատենէն իմ խեղճ բարեկամս չարագործաց և մարդասպանաց փայտակերտին վրայ պիտի անչնչանայ։ Այս գաղափարը ոչ միայն կը տագնապէր զիս, այլ և կատաղութիւն մը կը բերէր վրաս։ Մոլեգնագոյն կատաղութենէ բռնուած, և յուսահատ գործ մը կատարելու պատրաստուողի մը պէս ակռաներս կը կրճըտէի և ձեռքերս կը սխմէի։ Իմ այս զարհուրելի այլայլութիւնս իմացաւ ընկերս, և փոխանակ զիս հանդարտեցնել ջանալու, կարծես թէ ամեն հնարք կը փնտըռէր աւելի սաստկացնելու և ճարակելու զայն։ Կէս գըրգռող աչքով մը կը նայէր ինծի, և իր շըրթանցը վրայ սովորական հեգնական ծիծաղովը կարծես թէ անդադար իմ կիրքս կը գրգռէր, հասկցընելով ինծի որ փուճ տեղը կը զայրանայի, որովհետև այն վայրկենին բոլորովին անկարող էի կիրքս և կատաղութիւնս յագեցընելու։

Այն միջոցին վարէն ձայներու շըշունջ մը լսուեցաւ, որ ծանր դիպուածի ականատես եղող և սգաւոր տեսարանէ շարժող բազմութեան մը կ'երևար։ Զանգակը իր դանդաղ և միակերպ վարնուածքով հնչելը կը շարունակէր, և եթէ կարելի էր՝ մեր սրտին մէջ նոր տխրութիւն մը կ'աւելցնէր։ Ընկերս մատովը բանտին պատուհանը ցուցընելով, Ահաւասիկ, կանչեց, մա[...] համրաւէր ամբոխը կ'անցնի. կու[...] տեսնել։ — Ոչ, պատասխանեցի մէկէն[...] ոչ, վասն զի ի մահ տարուող բարեկա[...]մի մը աղէխարշ տեսութեանը չեմ[...] կրնար դիմանալ։ — Աւելի գէշ, կըր[...]կնեց միւսը, աւելի գէշ. մանաւանդ թ[...] պէտք է ամեն բան տեսնես որ աւել[...] իմանաս թէ ինչպիսի անօրէնութեան[...] կարող է մարդս, և մասնաւորապէս այ[...] որ շուտ կամ ուշ մեր ձեռքովը պիտ[...] իյնայ։

Այս ըսելով, անհնարին երագու[...]թեամբ մեր անկողինները պատուհա[...]նին տակ իրարու վրայ կը դիզէ. վերջ[...] ձեռքէս բռնելով, ինծի հետ միատեղ[...] վրան կ'ելլէ։ Այս ընելէն ետև զիս իր[...] ուսին վրայ կը զետեղէ, և մէկ ձեռքովը վանդակը բռնելով, ինծի կ'ըսէ որ ես ալ երկու ձեռքերովս ամուր մը բռնեմ զայն։ Ես այն դըրդմանց չկըցայ հակառակիլ. կ'ուզէի վար կենալ, բայց ինքը այնպիսի հրամայողական և բացարձակ կերպով այս հրամանները տուաւ՝ որ ամենևին չհամարձակեցայ ընդդիմանալ։ Հոն վերէն գեղին մեծ մասը և գլխաւոր ճամբան կը տեսնուէր, ուր որ ժողովուրդը խուռն լեցուած կը սպասէր դատապարտելոյն անցնիլը տեսնելու։ Այն երեսներուն վրայ կարծես թէ աւելի կարեկցութիւն՝ քան թէ զայրոյթ կը նշմարէի. բայց և այնպէս ամենուն վրայ սաստիկ հետաքըրքրութիւն մը կ'երևար, որպէս թէ տեսնելու հանդէս կամ թափօր մ'ըլլար։

Հոն վերը կենալնուս վրայ քանի մը վայրկեան անցաւ, և ահա բազմութեան մէջ շշնջիւն մը լսուեցաւ. Ահաւասիկ, ահաւասիկ։ Կը նայիմ ամենուն ցուցըրցած կողմը, և իրաւցնէ կը տեսնեմ քանի մը զինուորներ որ ճամբայ կը բանան. վերջը ճանչցայ մէկէն խեղճ Լամբերտը որ ոտքով, քովն ալ ժողովրդապետը, երկու կարգ զօրաց մէջէն ազատաքայլ կը յառաջէր։ Անօգուտ է ստորագրելս ինչ որ այն վայրկենին զգացի. թէ որ ընկերս ամուր մը բըռնած չըլլար զիս, անշուշտ գետին պիտի

ճայի. այնչափ ցաւ տըւեց ինծի տարաղդ բարեկամիս անտալթիւնը:

Լամբերտ բանտէն առջևէն անցնելու ատեն, աչքերը կը վերցնէ և մէկէն զիս կը տեսնէ ու կը ճանչնայ. յանկարծ կանգ կ'առնէ և հաստատուն ու յստակ ձայնով կ'ըսէ ինծի. — Մնաս բարով, Հէնրիկ. արքայութեան մէջ կը տեսնուինք: Ես անմեղ կը մեռնիմ, ինչպէս որ դուն ալ գիտես: կը ներեմ թշնամեացս և զիս մեռցնել տուողին: Դուն ալ նոյնը ըրէ. և լաւ յիշէ որ ինչպէս Քրիստոս իր խաչահանուացը ներեց, մենք ալ պէտք է մեր չարարարացը ներենք: Մնաս բարեաւ: Արդար կը մեռնիմ, անոր համար խաղաղ ալ կը մեռնիմ: — Աս որ ըսաւ, վեր բարձրացուց շղթայակապ ձեռքերը, իբրև թէ զիս ողջունելու համար: Ես չկրցայ և ոչ խօսք մը զուրցել. սկսայ լալ սաստիկ, և վանդակապատին մէջէն թևս երկընցընելով, ձեռքովս վերջին բարև մը տուի: Հազիւ թէ տխուր ամբոխը քիչ մը յառաջեց, տեսանք որ լայն վերարկուի մէջ պլլուած մարդ մը զատուեցաւ բազմութենէն. նայեցաւ ժողովրդեան որ տխրական պարուն ետևէն կը խռնէր. վերջը աչքը մեր կեցած պատուհանը վերուց. սաստիկ ծիծաղ մը փրթուց և ճեպշտապ քայլով մը դէպ ի ետ դարձաւ: Ընկերս անշարժ երեսս նայեցաւ ու ըսաւ. — Հէնրիկ, չճանչցա՞ր ուրեմն այդ մարդը: — Ոչ, պատասխանեցի. ո՞վ է արդեօք: — Պաւտոի կոմսն է:

Ա՜հ, անզգամ, գոչեցի սաստկութեամբ, ա՛հ ամբարիշտ, սիրտ ալ ունեցար որ գաս մինչև գերեզմանին եզերքը քու զոհդ նախատես: — Ուրեմն, Հէնրիկ, այդպիսի մարդ մը արժանի է ներողութեան: — Ոչ, բիւր անգամ ոչ, կրկնեցի լալով. բիւր մահուան արժանի է: — Նա պիտի մեռնի, անանկ չէ՞, հարցուց մէկալը՝ գրեթէ ինքիրմէ դուրս ելած: — Այո՛, պիտի մեռնի. կ'երդնում Լամբերտի գլխուն վրայ, որ անարգ տանջանարանի մը վրայ թերևս ինկած է հիմա: — Շատ աղէկ, ըսաւ անիկա յայտնի հաճութեամբ մը. այսպէս երդուցնէ մարդ ես:

Ես արդէն բոլորովին մոռնալու էի այս չարագործ ոգւոյն ձեռքը, որ չեմ գիտեր ինչպիսի ձախողակ դժբաղդութեամբ մը քովս դրուեր էր: Վրաս այնպիսի ազդեցութիւն մը կը ներգործէր որ ես այլ ևս իմ անձիս տէր չէի. ամենայն ինչ իր իշխանութեանը տակ էր, հոգիս, սիրտս, և նաև իմ սաստկագոյն զգացմունքս: Մերթ քաղցր կերպերով կը շողոմէր և գոգցես կը հրապուրէր զիս. և մերթ խիստ սպառնալեօք կը նուաճէր զիս և կը զարհուրեցընէր: Ինչ որ կ'ըսէր կամ կը գործէր, ինծի համար հրաշքի պէս բան մըն էր. կը փափաքէի ազատիլ այս գերութենէն, բայց անկարելի էր: Որչափ կը ջանայի իր կապանքէն ազատիլ, այնչափ աւելի անոնք զիս չորս կողմէս կը կաշկանդէին, և հետ զհետէ աւելի կը կախարդէր և կը նուաճէր զիս այս մարդը, զոր խորին գաղտնիք մը կը պատէր:

Գիշեր մը երազիս մէջ Լամբերտը տեսայ մահուան փայտակերտին վրայ, մինչ պարանոցը տապարին տակ կը խոնարհեցնէր: Մահաբեր հարուածն ընդունելէն առաջ ինծի դարձաւ, և աչքերն արցունքով լեցուած յանձնեց ինծի՝ ներել թշնամեաց, և մասնաւորապէս կը յորդորէր որ մէկդի թողում ամենայն ատելութիւն ընդդէմ կոմսին Պաւտոի, և ներեմ իրեն և սիրեմ զինքը իբրև թէ իմ լաւագոյն բարեկամներէս մէկն ըլլար: Ինծի անանկ կ'երևար թէ զիս յայտնապէս երդուընցուց որ մեր հասարակաց թշնամւոյն բոլորովին կը ներեմ: Ժողովրդապետն ալ երկնից եզերքէն եղողին աղաչանացը հետ իր յորդորները միացուց. և ես չկարենալով այս վեհանձն թելադրութեանց ընդդիմանալ, հեկեկալիր ձայնով Աստուծոյ և Լամբերտի առջև կ'երդուընայի որ ալ չեմ ատեր զկոմսը, և բոլորով սրտիւ կը ներեմ իրեն: Այն ատեն, դարձեալ երազիս մէջ, լսեցի Լամբերտին կանչելը. Հիմա գոհ կը մեռ-

նիմ։ Եւ տեսայ որ անարգ կոճեղին վրայ գլուխը խոնարհեցուց. և երբ դահիճը անոր իրանէն բաժնուած գլուխը՝ սարսափած բազմութեան ցուցուց, կարծես թէ տեսայ որ արքայութեան ծիծաղ մը շրթանցը վրայ փայլեցաւ, և ինծի անանկ կու գար որ այն կերպով իր առջի հայցուածքը կը կրկնէր։

Սաստիկ այլայլութեան մէջ արթընցայ. և աչքերս ինքնաբերաբար դէպ ի թշուառութեան ընկերոջս անկողինը դարձուցի. օրուան առաջին արշալոյսը բանտին պզտի պատուհանէն ներս կը թափանցէր։ Տեսայ որ կը քնանար. բայց քունը ամենևին հանդիստ չէր։ Գլուխը կը ցնցէր, ձեռքերն ու թևերը կը շարժէր, մերթ ընդ մերթ կիսակըտուր բառեր արտաբերելով։ Ուշադրութեամբ մտիկ ըրի թէ ինչ կ'ըսէր. սակայն ուրիշ բան չէի կրնար հասկընալ, բայց եթէ կիսատ խօսք մը կամ անիմաստ վանկ մը։ Մի միայն բառը որ ստէպ կը կրկնէր և ես շատ որոշ կը լսէի, Պաւտի անունն էր։ Այս անունը տալու ատեն կը տեսնուէր որ երեսը այլայլած կը ծամածռէր, և շատ անգամ ալ ձեռքը բռնցի ամփոփելով օդոյն մէջ կամ անկողնոյն վրայ հարուածներ կու տար։ Ես կը հասկընայի որ այս մարդը անդադար վրէժխնդրութեան փափաքով բորբոքած, և կոմսին դէմ անհաշտ ատելութեամբ վառուած՝ կ'երազէր թերևս որ իրմէ վրէժը կը հանէ, և սիրտը դաշոյն մը կը խոթէ։ Ինչպիսի տարբերութիւն երազոց, կ'ըսէի ինքնիրենս։ Ես կ'երազեմ բարեկամ մը որ Աստուծոյ ատենին առջև ելլելու մօտ՝ կը յանձնէ ներել թշնամեաց, ինքը անձամբ ներելէն ետև անոր՝ որ չարութեամբ զինքը յանիրաւ մահ կը քարշէր։ Ասիկայ ընդհակառակն վրէժխնդրութեան և արեան տեսարան մը կ'երազէ, և փոխանակ այն բարեգութ ձայնը լսելու՝ որ իրեն աւետարանին մեծ պատուիրանը և աշխարհի փրկչին ազնուական օրինակը կը յիշեցնէ, թերևս վրէժխնդրութեան դևին չարագուշակ կառանչը կը լսէ, որ նաև քու-

նին մէջ իր թշնամին աշխարհէս վերց-
նելու կը հրաւիրէ զինքը։ Այս աղդ-
բաղդատութեան, և սրտիս մէջ ծնած
հանդարտութեան վրայ, մինչդեռ թշ-
ղութեան վսեմ ձայնը սրտիս խոր-
կրկին կը հնչէր, միւսը դժոխ որ վրէժ-
խնդրութեան ամենայն խորհուրդնե-
րէն ետ կենամ, և այն կէտին խոստա-
ցայ Աստուծոյ որ կը ներեմ թշնամւոյս
Ո՛հ. երանի թէ այս սուրբ առաջադրու-
թիւնս միշտ շարունակած ըլլայի։

Քանի մը վայրկենէ վերջը ընկերս արթընցաւ։ Անանկ զարհուրելի երպարանք բնաւ կենացս մէջ չեմ տեսած։ Մազերը ճակտին վրայ տնկուած, և անանկ երկու աչքեր որ կարծես թէ իրենց շրջանակէն դուրս պիտի ելլէին։ Զիս արթնցած տեսնալով, Բարի լոյս ըսաւ, և հարցուց թէ գիշերը ինչպէս անցուցի։ — Շատ աղէկ, պատասխանեցի. բայց ինչ որ ինծի կ'երևայ դու այնչափ աղէկ չես անցուցած։ — Ես ընդհակառակն, կրկնեց, դժոխային գիշեր մը անցուցի։ — Ես ալ իմացայ։ — Ի՞նչպէս իմացար։ — Տեսայ որ քունդ խաղաղ ու հանգիստ չէր, և երբոր արթընցար՝ կերպով մը երեսիդ վրայ անհանգստութեան և տագնապի նշաններ տեսայ։ — Իրաւունք ունիս. կ'իմանամ թէ ինչուան որ վերջապէս իմ վրէժխնդրութիւնս չկատարուի, ես ոչ գիշեր և ոչ ցորեկ խաղաղութիւն ու հանգիստ պիտի չունենամ։ — Իսկ ես կարծեմ որ, աւելցուցի մէկէն, այն ատեն հիմակուընէ աւելի անհանգիստ և թըշուառ պիտի ըլլաս։ Նայէ, ես այս առաւօտ շատ գոհ և գրեթէ երջանիկ եմ։ — Բայց ինչու դու այնչափ խաղաղութեան մէջ ես, մինչդեռ ես սըրտիս մէջ դժոխք մը կը կրեմ։ — Վասն զի ես քու ըրածիդ ճիշդ հակառակը գործեցի։ — Ի՞նչ ըրիր։ — Փոխանակ թշնամիէս վրէժ առնելու մտածելու, որոշեցի որ ներեմ իրեն. ահաւասիկ իմ հանդարտութեանս և երջանկութեանս ճշմարիտ աղբիւրը։ — Խեղճ տղայ, կը ցաւիմ վրադ, ըսաւ, դառնապէս ծըռտելով. սպասէ որ մարդ ըլլաս, և վրէժ-

ինդրութեան անպատմելի քաղցրութիւնը բոլորովին կ'ըմբռնես, և կը տեսնես թէ ինչ խենթութիւն է թեթեւամտութեամբ մը ներել թշնամւոյն: — Բայց բանին սահմանն է. ես միտքս հաստատուն որոշած եմ. Պաւոլի կոմսին ներեցի, և ինչ որ ալ ըլլայ, թեթեւ չարիք մ'ալ պիտի չընեմ իրեն:

Այս ազդուութեամբ և որոշողութեամբ զուրցուած խօսքերս լսելով, ձախողակ աչքով մը նայեցաւ ինծի, որպէս խորը զննել ուզելու մը պէս, թէ արդեօք իրաւ կ'ըսէի: Իմացաւ թերեւս թէ չէի կեղծեր. և ճակատն ու յօնքը կնճռելով, ելաւ նստաւ անկողնոյն վրայ, և հեգնական ծիծաղով մը կանչեց. Ապրիս, Հենրիկ, իրաւցնէ մեծ մարդ ես եղեր: Կ'ուզես քու հօրդ մարդասպանին և տիրոջդ միակ ազգական ապագայ դահճին ներել: —

Այս կշտամբանքը ինծի համար իբրև կայծակի հարուած մը եղաւ: Անկողնոյն վրայ չնչասպառ հօրս, և ամբարիշտ Պաւոլիէն այնպէս չարչարուած պզտի Կարոլինայի յիշատակն՝ սոսկալի կերպով մը խռովեալ երևակայութեանս առջև ներկայացաւ: Նոյն վայրկենին բոլոր թողութեան առաջադրութիւնքս անհետացան, և սրտիս խորը միայն աղէի ատելութիւնն և վրէժխնդրութեան հին իղձը մնաց: Ինծի համար ինչպիսի՜ թշուառութիւն: Մինչդեռ բարեկամի մը հայցուածքը և թողութեան սուրբ ձայնը՝ դառնութեան և վրէժխնդրութեան պատճառած խոր վէրքը առողջարար բալասանով մը պատեր էր, և ահա գոգցես դժոխքէն ելած սատանայ մը յարմար ատեն կը գտնայ գալու և այս մխիթարութիւնն ինծմէ յափշտակելու, և յանկարծ նորէն զիս անդունդը կ'ընկղմէ՝ ուսկից քիչ մը վեր ելեր էի: Այս մարդը, որ առաջին վայրկենին մխիթարիչ հրեշտակ մը երևցաւ ինծի՝ վերջին կործանումս եղաւ, մանաւանդ միակ պատճառ այն սոսկալի ոճրագործութեան հասնելու, զոր այնչափ տարիներէ ետև դեռ կ'ողբամ, և ի խորոց սրտէ կու լամ դառնապէս:

Ա՛հ, եթէ այս խղճի և ապաշխարանաց արտասուօք դրոշմուած յիշատակարանքն օր մը պատանւոյ մը աչքին հանդիպելու ըլլան, կը պաղատիմ իրեն յանուն այն ամեն բանի որ սուրբ և պաշտելի են յերկինս և յերկրի, յիշել միշտ՝ որ մասնաւորաց, ընտանեաց և մարդկային ընկերութեան միակ և ճշմարիտ երջանկութիւնը Քրիստոսի մեծ պատուիրանին վրայ հաստատուած է, այսինքն միշտ մեր անձնական թշնամեաց և մեզի չարիք ընողներուն ներելուն վրայ: ՅԱստուծոյ սիրոյն ներշնչեալ սէրը զօրաւորագոյն կապն է որ հոս զմարդիկ իրարու հետ կը միացնէ. միայն սէրը կարող է այնչափ բիւրաւոր հոգիներէ ու սրտերէ մէկ սիրտ ու մէկ հոգի մը միայն կազմել: Ատելութիւնն զմեզ այլոց կցորդութենէն կը զատէ, և ատողը չարագոյն է քան ըզվայրենին որ մենաւոր անտառին մէջ կը սնանի: Ես շատ տարիներ այս ցաւագին միայնութիւնն զգացի, և միայն այն ատեն որ որոշեցի ներել՝ զիս բոլոր աշխարհքիս հետ միացած կը զգայի, մինչդեռ բանտի մը ամայութեան մէջ թաղուած էի:

Անիկայ իմացաւ իր ժանտաբարուղխ խօսքերուն վրաս ըրած տպաւորութիւնը. հասկըցաւ որ այս ինծի համար այնչափ զգայուն զսպանակին դպչելով, չէի կրնար իր թելադրութեանցն ընդդիմանալ: Անոր համար ամեն անգամ որ իր ապերասան խորհուրդներուն օգնելու թեթև տարտամութիւն մը կը տեսնէր վրաս, և զիս աւելի հակամէտ կը ցուցընէի Լամբերտի խորհրդին հետևելու քան իր չար խրատուցը, միշտ մթին երևոյթներով հօրս մահը և խեղճ Կարոլինայի վշտակրութիւնքը կը նկարագրէր: Այս ցաւագին պատկերին դիմաց միշտ կը յաղթուէի. և այս դառն յիշատակաց հետևանքը՝ յորդառատ արտասուք կամ ծայրայեղ յուսահատութիւն մըն էր:

Ես իրօք տասը տարուան արգելականութեան դատապարտուեցայ, ինչպէս որ ընկերս առաջուց ըսեր էր ինծի:

բնաւ ատեանի մը դիմաց չերեւցայ, ուրիշ հարցափորձ չունեցայ, վրաս ուրիշ քննութիւնք չեղան, և առանց պաշտպանութեան և առանց դատաստանական դոյզն հանդիսի մը, հանդերձ անմեղութեամբս, այսպիսի ծանր պատուհասի մը դատապարտուեցայ։ Երկայն ժամանակէ ետև իմացայ թէ վրաս այսպիսի որոշողութիւն մը եղեր էր. կրնամ ըսել որ դիպուածով առաւօտ մը գիտցայ, երբ բանտապանին հարցուցի թէ արդեօք կրնայի՞ տեսնել մայրս. և ան ալ պաղ պաղ պատասխանեց. Տասը տարիէն վերջը կը տեսնես։ Մեծաւ դժուարութեամբ, ինչպէս որ ինքն ալ պատմեց, կրցաւ ժողովրդապետը զիս տեսնելու հրամանն ընդունիլ։ Ո՛հ. այն երջանիկ վայրկեանին ինչպիսի՜ և որչափ մխիթարութիւն զգացի։ Տեսայ դարձեալ և գրկեցի զայն որ ինծի ճշմարիտ հայր եղեր էր, որ իմ կենացս առաջին տարիներուն՝ ինծի նեցուկ եղեր էր, և իմ պառաւ մօրս պաշտպանն եղեր էր։ Այս սրբասուն կնկան օրհնութիւնը բերաւ ինծի, և իրենն ալ տալով, քրիստոնէական յորդորներով քաջալերեց զիս, և երթալէն առաջ գրեթէ մարգարէական ձայնով մը ըսաւ. Հենրիկ, մեծամեծ վըտանգներ և մեծամեծ փորձութիւններ կը սպասեն քեզի։ Հաւատ ունեցիր առ Աստուած, և թշնամեացդ աւելի՛ սուտ բարեկամներէ զգուշացիր։ Չեմ գիտեր թէ մէյմ՚ ալ պիտի տեսնեմ զքեզ. շատ ծեր եմ, ուստի շուտով մեր գերագոյն դատաւորին ահաւոր բեմին առջև պիտի երևնամ։ Դու ալ, թէպէտ պատանի ես, օր մը հոն պիտի երթաս. այն օրը քու դատաւորդ պիտի ներէ քու յանցանացդ, եթէ, քու ատելեացդ ներած ըլլաս։ Դու պատուհաս մը կը քաշես որուն չէիր արժանի. յանձն առ զայն հաւատար համակամութեամբ և խնդութեամբ այն Յիսուսին սիրոյն համար՝ որ մեզի համար այնչափ վշտաց տարաւ։ Եւ վրէժխնդրութիւն մը, լաւագոյն վրէժխնդրութիւն մը պէտք է հասցնես քու թշնամեացդ վըրայ, իբրև ճշմարիտ քրիստոնեայ, ինչպէս որ դու ես ճշմարտապէս։ Կ'ուզեմ վրէժ խնդրել։

Այս հարցմունքը մեծապէս տպաւորեց զիս. անշարժ՝ ժողովրդապետին երեսը կը նայէի, գրեթէ չկարենալով համոզել զիս թէ ինքը այս հարցմունքը կ'ընէր ինծի։ Բայց ինքը պնդութեամբ երկու կամ երեք անգամ կրկնեց զայն, և ես չկարենալով պատասխան տալէ հրաժարիլ, զայրագին կերպով մը պատասխանեցի. Այո՛, հայր իմ, կ'ուզեմ վրէժ խնդրել։

— Բայց ի՞նչպէս և ե՞րբ։

— Իմ վրէժխնդրութեանս ոչ կերպը և ոչ ժամանակը գիտեմ. միայն գիտեմ որ կ'ուզեմ վրէժ խնդրել։

— Աղէկ ուրեմն, կրկնեց ժողովրդապետը բոլորովին պաղ արեամբ, որ շատ յայտնի կը տեսնէր իմ սրտիս զայրացմունքը. աղէկ ուրեմն, շուտով մը վրէժդ հանելու կերպը սորվեցնեմ քեզի։

— Այս վայրկեանիս ի՞նչ կրնամ ընել, մինչդեռ բանտուած և աչաց տեսութեան տակ եմ։

— Բայց և այնպէս կրնաս շատ աղէկ և այս վայրկեանին քու վրէժդ առնել։

— Չեմ հասկնար։

— Հիմայ նայէ։ Այս ըսելով գրպանէն փայտէ պզտի խաչելութիւն մը հանեց։ Ես մէկէն ճանչցայ այն ըլլալը՝ զոր հայրս անկողնոյն վրայ կը կախէր, և ամեն իրիկուն պառկելէն առաջ, և ամեն առաւօտ ելլելէն առաջ պատկառոտ սիրով մը կը պագնէր միշտ։ Ձեռքս երկնցուցի որ առնում զայն. այնչափ կը փափաքէի իմ կենացս պատճառ եղողին այն անգին յիշատակը պահելու. բայց ժողովրդապետը քաշեց ձեռքը և, կամաց, ըսաւ, ես քեզի այն ատեն կու տամ այս խաչելութիւնը, երբ զայն ներկայացընողին և այնչափ տարի զինքը քրիստոնէաբար մեծարողին արժանի ըլլաս։

— Ինծի մտիկ ըրէ, Հենրիկ, շարունակեց ժողովրդապետը, քիչ մը ատեն կենալէն ետև. ահաւասիկ քու վրէժ-

խնդրութեանց գործին. ինքն իսկ վրէժ խնդրելու կերպը կը սորվեցնէ քեզի։ Ինքն ալ յանիրաւի դատապարտուեցաւ, և ինքն ալ մեռնելէն առաջ ուզեց վրէժ խնդրել։ Պատրաստ ես վրէժ խնդրելու ինչպէս որ ինքն ըրաւ։

Սենեկին մէկ անկիւնը լուռ և հանդարտ կեցեր էր իմ թշուառութեանս ընկերը։ Ժողովրդապետին այս հարցմանը, պզտի շարժմունք մ՚ ըրաւ. ինքնաբերաբար աչքս իրեն դարձուցի, և տեսայ որ շրթանցը վրայ իր սովորական հեգնական ծիծաղովը թեթև մը գլուխը կը շարժէր։ Լաւ կը տեսնէր որ յաղթահարուելու վրայ էի, և իր քանի մը ամսուան չարահնար թելադրութեամբքը ստացած յաղթանակները մէկ վայրկենի մէջ պիտի կորսընցնէր։ Այս հնարքներն իրաւցնէ սիրտս կարծրացուցեր էին, և զայն կակղեցնելու համար շատ քիչ կ՚ազդէին բարի ժողովրդապետին քաղցր յորդորները։ Տեսաւ անիկայ իմ տարտամութիւնս, և առանց վհատելու՝ սրտաշարժ և միանգամայն իշխանական ձայնով մը կրկնեց.

— Շատ ատեն չկայ որ այս խաչելութիւնը ներկայ եղաւ անանկ դիւցազնական գործոյ մը որ ամբողջ կեանք մը կը փառաւորէ։ Այս յարգելի Տիրոջ վիրացը վրայ քու բարեկամդ Լամբերտը իր վերջին համբոյրը դրոշմեց, և իրեն առջևը վերջին բառը արտաբերեց։

— Ի՞նչ եղաւ այս վերջին բառը, հարցուցի անհնարին անձկութեամբ։

— Թողութիւն։

Ա՛լ չկրցայ դիմանալ. ծնկան վրայ ինկայ, սաստկութեամբ մը խաչելութիւնը յափշտակեցի, պագի զայն շատ մ՚ անգամ, և սաստիկ լալ սկսելով՝ կանչեցի. Կը ներեմ և ես։

— Հիմայ քուկդ է խաչելութիւնը։

Երբ աչքս վերուցի, արդէն գացեր էր ժողովրդապետը։ Այն եղկելին իր անկիւնը խթուած՝ արձանի մը պէս անշարժ կեցեր էր. և այս սրտաշարժ տեսարանին անայլայլակ կերպով ականատես եղեր էր։ Մեր աչքերն իրարու հանդիպեցան. իրենը ալ այնպէս վայրագ և մթին չէր. մանաւանդ թէ կարծես թէ աչքը աւելի պարզ, և սիրտը աւելի խաղաղ ու հանդարտ էր։ Ժողովրդապետին հետ խօսակցութեանս յաջորդած լռութիւնը երկայն ատեն երկուքնէս մէկն ալ չընդհատեց. բայց եթէ խօսք չէր արտաբերեր լեզուն, մեր աչքերը պերճաբար կը խօսէին, և զարմանալի կերպով իրարու միտքը կը հասկընայինք։ Յայտնապէս յուզեալ էր ընկերս, և անշուշտ չէր կրնար զայն կեղծել։ Ես միշտ ձեռքս բռներ էի խաչելութիւնը. և տեսայ որ ինքը երբեմն անոր կը նայէր, և ամեն անգամ որ աչքը վրան կը տնկէր, իր մահու նման տժգոյն երեսը թանձր կարմրութեամբ մը կը գունաւորուէր, և կարծես թէ բոլոր մարմինը քամնաստարսուռ դողով մը բռնուած էր։ Ես չէի կրնար իմ խաչելութեանս տեսութեան իրեն վրայ պատճառած այս խորհրդաւոր ներգործութիւնքը պարզել. գոնեայ կը յուսայի որ այն յուսահատ հոգին կամաց կամաց կակղացնէ և այն քարացեալ սիրտը շարժէ։

Վերջապէս ես լռութիւնը կտրեցի, ըսելով.

— Ուրեմն լսեցի՞ր իմ հանդիսաւոր խոստմունքս։

— Այո՛ լսեցի. կը զարմանամ վրադ, բայց..., և հոս խոր հեծութիւն մը արձակեց։

— Ինչու՞ չես լմընցներ։

— Վասն զի սատանայ մը հրեշտակի մը հետ չիկրնար խօսիլ։

— Աս ի՞նչ կը զուրցես։

— Պարզ ճշմարտութիւնը կը զուրցեմ։ Խաչելութեան մը տեսութիւնը քու սիրտդ սիրոյ քաղցր գորովը կը զարթուցանէ. իմ սիրտս ընդհակառակն ատելութեան յամառ կիրքը կը գրգռէ։

— Բայց այդ ի՞նչպէս կրնայ ըլլալ։ Քրիստոնեայ չե՞ս։

— Էի երբեմն. բայց հիմա այն աղանդաւորն եմ, որ Քրիստոսի և անոր կրօ-

նիցը անհաշտ և յաւիտենական ատե-
լութիւն երդուընցած է։

Այս խօսքերը սոսկմամբ քամենցու-
ցին զիս։ Բացատրութիւն մը ուզելու
վրայ էի, մէյմ՚ալ բանտապանը կը
մտնէ, և իշխանական կերպով մը կ՚ը-
սէ․ Երկուքդ ալ ետեւէս ելէք։

Թ

Մենք զարմացած և լուռ՝ գացինք
բանտապանին ետեւէն, որ զմեզ պզտի
դաւիթ մը տարաւ, ուր կառք մը կե-
ցեր էր հանդերձ երկու զինուորով։
Հրաման տուաւ որ վեր ելլենք, զոր ա-
ռանց ընդդիմութեան մը կատարե-
ցինք․ վերջը զինուորաց թուղթ մը յան-
ձնեց, և մեզի ծանր կերպով մը ըսաւ․
Բարի ճանապարհ։ Դարձուց կռնակը
և մեր ելած դռնէն մտնելով, շտապա-
մամբ փակեց զայն։ Զինուորները հրա-
ման տուին կառավարին որ ճամբայ
ելլէ․ ան ալ հնազանդեցաւ, և վայր-
կենէ մը վերջը բաց դաշտի մէջ էինք։

Այնչափ ամիս բանտարգելութենէ
ետև, չեմ կրնար ըսել որչափ սիրտս
բացուեցաւ դաշտաց տեսարանէն, և
այն ազատ օդը որչափ սփոփեց զիս։
Ինքնաբերաբար իմ տնակիս կողմը
դարձուցի գլուխս, որ մէկ անգամ
մ՚ալ տեսնեմ զայն, բայց միահարթ
դղեակն իր բարձր աշտարակովն անոր
տեսութիւնը կ՚արգելուր։ Բայց նաև
այս դղեակն ալ իմ ուշադրութիւնս կը
գրաւէր, և աչքս իրեն կը ձգէր․ վասն
զի հոն երկայն ատեն բնակեր էի, հոն
պատահեր էր այն ողբալի տեսարանը
որ զիս այնչափ թշուառութեան հա-
սուցեր էր, և վերջապէս հոն էր մայրս
և պզտի կարոլինան։ Այս ամեն յիշա-
տակներն և այս անձինքը, աշխատեալ
սրտիս բաւական մխիթարութիւն պատ-
ճառեցին․ բայց շուտով ցաւագին յի-
շատակներն ալ արթնցուցին։ Որչափ
երթալով կառքը կը հեռանար և դղե-
կին մեծայաղթ պատկերը միշտ աւելի
կը պզտիկնար և աչքէս կը ծածկուէր,
աշտարակին ծայրի շերտերը միայն բա[...]
թողլով, ես այն ատեն զգացմ[...]
կ՚իմանայի՝ որ տարագրեալ մը սիր[...]
կը զարթնու, երբ իր հայրենի երկի[...]
կը թողու։ Կամաց կամաց այն շերտեր[...]
ալ անհետացան, և ա՛լ իմ գիւղիս ըն[...]
հետք մը չտեսայ։ Այն վայրկենէն բա[...]
լոր այն ցաւն զգացի՝ զոր կ՚անեն[...]
մարդ երբ կը հարկադրի վերջին բարև[...]
տալ հայրենեաց, ծնողաց և բարեկա[...]
մաց։

Այն ատեն չկրցայ արցունքս բռնել,
և սկսայ անտանկ սաստիկ և յորդ կեր-
պով լալ, որ զինուորաց իսկ գութը
շարժեցաւ, և քանի մը մխիթարական
խօսքեր ըսին ինծի։ Ընդհակառակն
իմ ընկերս տխուր էր և կերպով մը
գոհ ալ էր։ Իմ լալս տեսնելով, իր սո-
վորական հեգնական ծիծաղը շրթանցը
վրայ ձևացուց, իբրև թէ ցաւելով
վրաս, կամ մանաւանդ թէ տկարու-
թիւնս և տրտմութիւնս ծաղրելով։
Բայց սակայն շատ մը ճամբայ ընելէ ե-
տև, բաւական քաղցր ձայնով մը հար-
ցուց ինծի․

— Ինչո՞ւ կու լաս, Հենրիկ։

— Կրնաս երևակայել։

— Իրաւցնէ չեմ գիտեր ինչ պատ-
ճառաւ այնչափ պիտի լաս և յուսահա-
տիս։ Նոյն բանը չէ՞ քու գեղիդ բանտը
կամ ուրիշ քաղքի մը թիոյ պատժա-
րանն ըլլալ։

— Չեմ կարծեր։ Հոն գէթ իմին-
ներուս մօտ ըլլալու մխիթարութիւնն
ունէի, և թերևս օր մը կրնայի մայրս
ու ժողովրդապետը տեսնել։

— Փուճ բան։ Արդէն զինքը տեսար․
իսկ մայրդ ամեն անգամ որ խնդրեց
գալ գտնել զքեզ, միշտ հրամանը
մերժուեցաւ իրեն։

— Թերևս յապաղայն այդ խոստու-
թիւնը կը նուազէր։

— Չայդ մի կարծեր, սիրելի․ միշտ
ամենայն հնարքով որ և իցէ անձ քեզ-
մէ հեռու պիտի բռնէին, վախերնէն
որ դու կրնաս նիւթ հայթայթել քու
անմեղութիւնդ ցուցընելու։

— Բայց ինչո՞ւ պիտի արգիլեն որ

տանմէց պատճառի չարչարուող անմեղ մը իր անմեղութիւնը ճանչցընէ։

— Վստահ դի այն ատեն ճշմարիտ յանցաւորը կը յայտնուէր, և կը պատժուէր այն՝ զոր ամենայն հնարքով ազատել կ'ուզեն։

— Բայց ճշմարիտ անօրէնութիւն մըն է ասիկայ։

— Ես ալ անանկ կը կարծեմ, և այնչափ աւելի համոզուած եմ, որչափ որ ես ալ քու վիճակիդ մէջն եմ։

— Բայց ինչ. դու ալ յանիրաւի ամբաստանուեցար։

— Ոչ բոլորովին, ինչպէս դու։ Ես յիրաւի յանցաւոր եմ, բայց իմ ըրած եղեռնագործութեանս մէջ փոքրագոյն մասն ունեցայ ես. և ուրիշ մը ինծմէ շատ աւելի յանցաւոր՝ ոչ միայն չպատժուեցաւ, այլ և իմ դատախազս եղաւ. միայն իր վկայութեանը վրայ՝ տասը տարուան թիոյ պատժարանի դատապարտուեցայ։

— Ի՞նչ ոճիր գործեցիր։

— Մտիկ ըրէ, Հենրիկ. քիչ ատենէն պիտի բաժնուինք իրարմէ. և մէյ մ'ալ տասը տարուընէ ետև պիտի տեսնուինք։ Բովանդակ պատմեմ քեզի այս ցաւագին պատմութիւնը, որպէս զի միշտ աւելի հասկընաս թէ որչափ իրաւունք ունիմ իմ այնչափ թշուառութեանցս պատճառ եղողէն կատարեալ վրէժխնդրութիւն պահանջել ուզելու։

Հոս ձայնը քիչ մը ցածցուց որ կառավարն ու զինուորները չլսեն. աւելի մօտեցաւ ինծի և այսպէս խօսեցաւ.

— Գիտցիր, Հենրիկ, որ գիշեր մը քու գեղէդ քիչ հեռու թանձրախիտ անտառի մը մէջ եղած քարայրէ մը դուրս կ'ելլէի՝ ընկերութեամբ մէկու մը որ զինքն ինծի բարեկամ կը կեղծէր։ Ինքը յայտնեց ինծի խորհուրդ մը զոր մտածեր էր՝ ազնուական և զօրաւոր ընտանիք մը ոչ միայն կործանելու, այլ և բոլորովին բնաջինջ ընելու, ի բաց առնել պզտի աղջիկ մը, զոր կ'ուզէր օր մը իրեն հարսն ընել, որ անոր հայրենի ժառանգութենէն ունեցած անբաւ հարստութիւնները վայելէ։ Պատմեց ինծի որ արդէն այս ընտանեաց վերաբերեալ շատ մը շէնքեր այրել տուեր էր, և թէ քիչ գիշեր առաջ անոր հայրենական գիւղին մէջ կրակ ձգել տուեր էր, ցաւելով որ եղած պատրաստական նպատակներն՝ չկրցան զայն աւերակաց կոյտ մը դարձընել։ Վերջը հարցուց ինծի թէ կ'ուզե՞մ արդեօք իրեն մտածած մէկ գործոյն օգնել։ Խոստացայ իրեն. և քիչ օրէն վերջը բոլորովին յայտնեց ինծի զայն։ Քիչ խօսքով կ'ուզէր քու տէրդ թունաւորել։ Ինծի յանձնեց որ թոյնը գտնեմ, և իր ծառաներէն մէկը փնտռեմ, որ զայն իրեն խմցընելու գործը վրան առնու։ Երկայն պտոյտներէ ետև, կրցայ յարաբերութիւն հաստատել Փիլիպպոս անունով մէկու մը հետ, զոր դու ալ կը ճանչնաս, որուն գումար մը ստակ խոստացայ, եթէ իր տէրոջը ըմպելիքի կամ ուտելիքի մը մէջ թոյնը լեցընելու ըլլայ։ Յանձն առաւ այս գործը, և իմ կարծածէս աւելի շուտով կատարեց զայն։ Բայց առաջուց ամեն բան պատրաստուած էր. յանցանքը ընտանեացմէ ուրիշ մէկու մը վրայ պէտք էր իյնար. այն քու առած և Լամբերտի յանձնած թուղթդ՝ դաւաճանութեան կնիքը եղաւ։ Ոճիրը կատարուելէն անմիջապէս վերջը, դղեկին մութ սրահի մը մէջ Փիլիպպոսը տեսայ և իրմէ իմացայ որ ամեն բան եղեր էր։ Քու այն թուղթը առնուդ տեսայ, և մէկէն ըսի զայն անոր՝ որ ինծի յանձներ էր այդ ողբալի ձեռնարկութիւնն 'ի գործ դնելու։ Անիկայ առանց ժամանակ կորսնցընելու գնաց ամեն բան պատմեց դատաւորին, որ մէկէն դղեակն եկաւ։ Մնացածն ինծմէ աւելի լաւ գիտես։

Այս պատմութիւնը սարսափի քըրտինք մը բերաւ վրաս, և բարկութիւնս բորբոքեց։ Այն ատեն հանդերձ իրենց ամենայն ճշմարտութեամբը պարզեցան դիմացս քանի մը բաներ, որոնց վրայ անորոշ կասկածներ ունէի միայն. և այն գիշերը ապաստանած քարայրիս մօտ լսած խօսակցութիւնս իբրև թել մը եղաւ ինծի, որ այս անօրէնութեանց

և ամբարշտութեանց բազմակնճիռն բաւղին մէջ առաջնորդեց ինծի ։

— Բայց դեռ չլմընցաւ բոլոր, աւելցուց ընկերս ։ Այն անզգամը զոր իբրև Պաւլոսի կոմսը ճանչցած ես, գիտէր որ ինծմով իր ոճրագործութեանը վկայ մը կը մնար ։ Այն ատեն մտածեց զիս ալ աշխարհքէ վերցընել, և չսոսկացաւ ամբաստանել զիս իբրև պատճառ դղեկին այրելուն ։ Զանազան պարագաներ և սուտ վկայութիւններ ճարտարեց, որով ես բոլորովին յանցաւոր երևցայ ։ Բարեբաղդաբար վկաներէն ոչ ով համարձակեցաւ իմ կրակ տալս տեսնելը խոստովանիլ· այն ատեն 'ի մահ կը դատապարտուէի· բայց ինչպէս որ գիտես, անանկ չեղաւ, հապա միայն տասը տարուան բանտի դատապարտուեցայ ։ Ինքը թէ՛ ինծի դէմ, և թէ քեզի ու խեղճ Լամբերտին դէմ վկայեց երդմամբ ։ Այս անզգամն է միայն որ պատճառ եղաւ հօրդ մեռնելուն, Լամբերտի կախաղան ելլելուն, և մեր երկուքին երկայն և դառն բանտարգելութեան մը մէջ հեծելուն ։ Հիմա ըսէ ինծի թէ ուրդեօք այս մարդը արժանի չէ՞ յաւիտեան աշխարհիս վըրայէն վերցուելու ։

Այսպիսի յայտնութեանց վրայ՝ համր և յափշտակեալ մնացի ։ փուճ տեղ միտքս կը բերէի Լամբերտէն լսած թողութեան վերջին խօսքերն և ժողովրդապետին քաղցրալուր խրատներն ։ ինծի անանկ կ'երևար որ այնչափ չարութիւն չէր կրնար թողութեան արժանի ըլլալ· և միշտ կը զգայի որ այն լիուլի և սոսկալի վրէժխնդրութեան առաջին հարկը սրտիս խորը կը հաստատուէր ։

Ընկերս ցրուեց ինծմէ այս տխուր մտածութիւններն ։ Լայն ճամբու մը գլուխն հասեր էինք ։ — Նայէ, ըսաւ մէկէն, այս ճամբուն գլուխը պիտի ըլլայ մեր բաժանմունքը· և տասը տարի պիտի տևէ այս բաժանմունքը ։ Բայց մի՛ տարակուսիր, կ'անցնի տասը տարին· այս ժամանակէն ետև նորէն կը տեսնեմ զքեզ ։ Ուրեմն յիշէ միշտ Մարտինոսի քեզի ըսածներն ։ Օր կուգայ որ աշխարհքս ու մարդիկ կը ճանչնաս, այն ատեն ա՛լ չես մերժեր չարաբաղդ Մարտինոսի խորհուրդներն · և այս բախտէն այնչափ հարուածեալ և մարդկանցմէ հալածեալ անձը՝ պիտի դողացնէ բոլոր այն ամբարիշտներն, որ զինքը ոճրագործութեանց և թշուառութեանց այսպիսի ողբալի անդունդի մը մէջ դահավիժեցին ։

Այս խօսքերս արտաբերելու ատեն սովորականէ դուրս ոգևորուած էր· իր դէմքին և դալկահար այտերն թանձր կարմրութեամբ մը գունաւորեցան, և իր անդադար մտախոյզ աչքերն անանկ կենդանութեամբ մը ցոլացին, որ կարծես թէ կը բռընկէին ։ Երկու ձեռքերս բռնեց· քաղցրասարսուռ դողի մը մէջ էր· խորունկ հետազօտիչ և կախարդիչ աչքով մը երեսս նայելով կանչեց · — Երդուընցիր մի անգամ մ'ալ որ անորէն Պաւլոսէն միատեղ վրէժ պիտի առնունք ։ Վերջին խօսքն ըլլայ այս, զոր քեզմէ բաժնուելու մօտ՝ բանտի ընկերոջդ կը զուրցես ։ —

Իր ձայնը, խօսքերը ու նայուածքը անանկ զօրաւոր ազդեցութիւն մ' ըրին վրաս որ չկրցայ ետ կենալ ըսելէն ·

— Այո՛, կ'երդնում ։

— Այսպէս աղէկ է, պատասխանեց անիկա · հիմա գոհ եմ ։

Քիչ վայրկենէ ետև՝ երկու ճամբու գլուխ մը հասանք ։ Հոն երկու զինուոր կեցեր էին, որ յայտնի կ'երևար թէ մեզի կը սպասէին ։ Եւ իրաւցնէ մեր առաջնորդներէն մէկը վար իջեցուց կառքէն Մարտինոսը, և մէկալ երկու զինուորաց յանձնեց ։ Մարտինոս իջնելու ատեն համբուրեց զիս և դաշն ձայնով մը կրկնեց · Տասը տարիէն կը տեսնուինք ։ Ինքն ալ ճամբան բռնեց, և իմ նստած կառքս դէպ 'ի ձախ դարձաւ ։ Նայեցայ Մարտինոսի ետևէն որ անգամ մ'ալ զինքը տեսնեմ· Նաև ինքն ալ ինծի կը նայէր ։ Ձեռքով ողջունեց զիս, ես ալ իրեն պատասխանեցի ։ Քիչ ատենէն հին ծառերու անտառ մը զինքը ծածկեց, և մէյ մ'ալ չտեսայ ։

ուտելեաց և ըմպելեաց մասնական ազդեցութիւնը ջղային դրութեան վրայ։

Նոր դիտողութիւններ։

Ոչ ոք կը հակառակի ուտելեաց և ըմ-պելեաց, իմացականութեան՝ զգացման և երևակայութեան վրայ ունեցած ազ-դեցութեանցը. բայց թէպէտև այս ազ-դեցութիւնս ամենուն ընդունելի եղած ըլլայ. — և նաև արդի բնախօսներէն ո-մանց համար չափազանց ընդունելի, ո-րոնք 'ի զուր կարծեցին իբրև զէնք մը համարիլ զայս՝ հոգւոյ անձնաւորու-թեան հոգեկան վարդապետութեանը դէմ. — սակայն այս ազդեցութեան կերպին և աստիճանին վերաբերեալ ուղղակի դիտողութեան գործերը շատ քիչ են, և կ'արժէ որ այս նիւթոյս վը-րայ նոր և յայտնապէս որոշողական փորձ մը մեր ընթերցողացը ծանուցա-նենք։

Այս փորձս երկու տարի առաջ Գաղ-ղիոյ Ուսմանց ճեմարանին ներկայա-ցուց Գ. Ռամպոսսոն յետագայ հետե-ւանքն հաստատելով։

Կան սննդեղէններ որոնք կ'ազդեն 'ի մասնաւորի շարժման ջղերու վրայ, և այլք որ կ'ազդեն 'ի մասնաւորի ըզ-գացողութեան ջղից վրայ։

Այն սննդեղէններն որոնք 'ի մասնա-ւորի կ'ազդեն շարժման ջղերու վրայ, ազդեցութիւն ունին նաև 'ի մասնաւո-րի իմացականութեան վրայ. և անոնք որ մասնաւորապէս զգացողութեան ջը-ղերու վրայ ազդեցութիւն ունին, նաև առանձնակի կ'ազդեն զգացմանց վրայ։

Կան սննդեղէնք որոնք մի և նոյն ժա-մանակի մէջ կ'ազդեն շարժման և զգա-ցողութեան ջղերու վրայ, և հետևա-բար ազդեցութիւն ունին իմացակա-նութեան և զգացմանց վրայ։ Իւրաքան-չիւր սննդեղէն ընդմիջական տեղ մը ունի 'ի մէջ սաստիկ ազդեցութիւն ու-նողաց, եթէ ըլլայ շարժման և եթէ ըզ-գացողութեան ջղերու վրայ։

Դիտող գիտնականը այս ծանօթու-թիւններս ստացեր է շատ տարիներով և մեծաւ խնամովք ըրած անհամար փորձերովը։

Եւ դարձեալ ապահով ըլլալու հա-մար թէ եղածն ոչ սոսկ անձնական էր այլ ընդհանուր, բազմաթիւ ուրիշ ան-ձանց ալ հարցափորձեր է, որոնք ի-րենց կանոնաւորութեամբն ու վիճա-կովը կրնային լոյս տալ իր փորձերուն, համոզուելով այսու որ մեր կանխաստա-ցեալ սկզբունքն՝ բնախօսական և հո-գեբանական օրէնքներ կը հանդիսացը-նեն. վասն զի ամենայն ոք յար և նման պարագայից մէջ աւելի կամ նուազ կը զգան եղեր յանձինս այն երևոյթներն՝ որոնց վրայ այս սկզբունքն կը հանգչին, և որոնց ընդհանուր ձևն են միայն։

Հոս դնենք միայն իրարմէ բոլորովին որոշեալ կերպով ազդող սննդեղինաց վերաբերեալ փորձերը, որ են խահֆէն և գինին, որոնցմէ մէկն է շարժական և իմացականութեան ջղաց վրայ ազդող, և միւսը զգացողութեան և զգացմանց ջղերու վրայ։ Այս երկու ըմպելիքն՝ ո-րոնք ընդհանուր գործածութեան մէջ են, ըստ այսմ հետաքրքրական պէտք է ըլլան մեր ընթերցողաց մեծ մասին։

Հեղինակը բան մը զանց չէ ըրած ամենայն կարևոր ճշդութեամբ երևոյթ-ները քննելու համար. այս պատճա-ռաւ իրար ետև շատ օր նոյն ըմպե-լիքը խմեր է, որուն վրայ փորձ մը կ'ու-զէր ստուգել, հաց ու խահֆէ, հաց ու գինի և կամ հաց ու թէյ, և այլն։ Շատ անգամ քառասուն ժամ առանց բան մը բերանը դնելու անցուցեր է, ոչ ըմ-պելիք և ոչ ուրիշ ուտելու բան, բայց եթէ խէժի քանի մը գնտակ, որպէս զի ստամոքսը բոլորովին պարապ ըլլայ և փորձելի ըմպելւոյն արդիւնքը հակա-ռակ ազդեցութիւններով չչէզոքանայ։

Չափաւոր քանակով մը պուտ պուտ և ծանր ծանր սաստիկ խահֆէ խմա-ծին պէս՝ մի և նոյն վայրկենին փոփո-խութիւն մը զգացեր է ինքիր վրայ. զգացմունքը կը մարէին և միտքը ան-սովոր պայծառութիւն մը կը ստանայ

եղեր ։ Հաղորդական ըլլալէն դադրելով ցուրտ և բիրտ կ'ըլլայ եղեր, ունեցածին ամենևին հակառակ բնաւորութիւն և հակամիտութիւններ ստանալով ։ Ընդհակառակն՝ միտքը առանց դժուարութեան, մանաւանդ թէ յանկամս իսկ կ'աշխատի եղեր . բայց երկայն աշխատելուն պէս՝ ալ միտքը չկրնալով արտաքերել միշտ չփոթած կ'ըլլայ եղեր . քնոյ տեղ տեսակ մը քնէութիւն կ'ունենայ եղեր . մէկ խօսքով շարժմունքն ու միտքը կը տիրէին վրան. թէպէտ և երակները սաստիկ տկար ու քիչ կը զարնեն եղեր ։

Եթէ ընդ հակառակն ասոր փոխան քիչ մը գինի խմէր՝ ըմպելի հանդարտութիւն մը կ'ունենար, և ասոր վրայ զգացողութիւնն ու զգացմունքը կ'աւելնար . և եթէ այդ փորձին ժամանակ խաշֆէին ազդեցութեամբը գրած իմաստներուն վրայէն անցնէր, կը զարմանար մասնաւոր յատկութիւն մը անոնց վրայ գտնելով, թէպէտ և առաջին վիճակին մէջ գրած ժամանակ իրեն անմնարնական ալ երևցած ըլլային ։

Գ . Ռամպոստոն անձին վրայ գիտեց նաև ըստ ամենայնի իրեն հանդարտութիւնը պահելով, գինւոյ մասնական ազդեցութիւնը ։ Ասոր համար օրերով բաց 'ի հացէ ու գինիէ՝ ուրիշ բան բերանը չդրաւ, գինիին վարժեցնելով ինքզինքը, որ շատ դիւրին է՝ ստամոքսին պարապ եղած ժամանակը փորձերն սկսելով ։ Անմիջապէս արդիւնքն առաջ եկաւ . բայց երևոյթք չափազանց եղան . միտքը մթագնեցաւ՝ ոչինչ բանով չփոթելու չափ . ամենէն պարզ վերաբերութիւններն ալ չկրցաւ իմանալ . կը վախնար որ առանց իմանալու ուրիշներուն զարնուի . վերջապէս խաշֆէին մասնական ազդեցութեանը տակ զգացածին բոլորովին հակառակ ազդեցութիւն կ'ունենար ։ Բայց սակայն եթէ այս վիճակին մէջ գէշ զգացման մը ազդեցութեան տակ ըլլայ մարդ՝ սաստիկ կը զգայ և յայտնի կ'ընէ ։ Գինւոյն ազդեցութիւնը շարունակուելով մարդուս վրայ ծանրութիւն և քնածութիւն մը կու գայ և հանդիստ կը փնտռուէ . միտքն ալ չքանիր . ալ անկէ ետքը միայն զգացողութիւն և շարժումն է ։

Ոչ թէ միայն ուրեմն տեղաշարժ և զգացողութեան ջղաց, բանականութեան և զգացմանց վրայ կ'ազդեն ասոնք և ըմպելիք՝ այլ նաև բնական և բարոյական զօրութեանց վրայ այլայլութիւն կը բերեն ։

Ցետ այս ամեն փորձերն ընելու հեղինակը մեր կանխաւ ըսած օրէնքները ծանոյց . դիւրին է այս օրինաց հետևանքը նախատեսել 'ի բնախօսութեան, յառողջապահութեան, յախտաբանութեան, հանգստականաց վարդապետութեանը մէջ, 'ի հոգեբանութեան, և այլն ։

Կարելի է անանկ դէպքեր յիշել որ կանխատեսցեալ դիտողութեանց իբրև դէմ ելլել կարծուին, բայց 'ի խորս որ դիտելու ըլլանք կը հաստատեն զանոնք, թէ որ խնամով միտ դրուի ամենայն պարագայից և մասնական տրամադրութեանց՝ որոնց մէջ կարելի է գտնուիլ, և որոնցմով տարբեր կերպ կ'առնուն դիտուած երևոյթք, մանաւանդ ըմպելիք մը հետազննած ժամանակնիս ։

Այս երկու ըմպելեաց՝ գինւոյ և խաշֆէի՝ մասնաւորապէս իրարմէ այսպէս տարբեր ըրած ներգործութիւնքը առիթ եղան հետախուզին հաստատելուն, թէ կան ըմպելիք որք յատկապէս շարժողական և մտաւորական ջղաց վրայ ազդեցութիւն ունին, և այլք՝ որ զգացողութեան և զգացման ջղաց վրայ ։ Ամեն տեսակ ըմպելեաց վրայ զանազան փորձեր ընելով կ'իմացուի այս օրինաց ճշդութիւնը ։

Այս դիտողութիւնները մասնաւոր հետաքրքրութիւն մ'ալ կը բերեն . փափաքելի է որ այլ և այլ փորձողներ զանազան անգամ կրկնեն այս փորձս և այլ և այլ պարագայից մէջ . նոր երևոյթ մը կը լուսաւորեն բնական ներգործութեան տակաւին խորհրդաւոր առեղծուածը մարդուս բարոյականին վրայ՝ իրենց ուսումն աւելի ընդհանուր է . յայտնի է թէ հասկնալով որ ժողովրդոց

կերակրեղինաց ու ըմպելեաց նկատմամբ ունեցած ոճէն ու կարգաւորութենէն իրենց բարեխառնութիւնն ու յատկութիւններն ալ մեծ կախումն ունին ։ Տեսած ենք ու գիտենք որ անգղիացի և հոլանտացի ընտանեաց մեծ մասը քիչ գինի կը խմեն, կամ շատեր որ և ոչ զայնը տեսած են, և երբ առաջին անգամ գինի կը խմեն շատ անպիտան կու գայ իրենց համար համը ։ Գերմանիոյ մէջ գարեջուր խմելու շատ գործածութիւն կայ, և լիմոնաջուր 'ի Նորմանտիա ։ Պուրկոնեի գինին թեթևագոյն է . Հարաւային Գաղղիոյ գինիներն աւելի ծանր են ։ Դիւրին է աշխարհացոյց մը շինել և գունաւորել ըստ բնութեան զանազան նահանգաց, այն կողմերուն բնակչաց սովորական եղող ըմպելեացն համեմատ ։ Երկիւղած և անձնանուէր անձանց ըրած գիտողութիւններն անոնց սեպհական գործարանաւորութեանց նկատմամբ՝ առհասարակ կարևորք են և արդարև իսկ ընկերութեան օգտակար ։

---

## Որսորդութիւն Արխանկելի մէջ ։

Բրդոտ կենդանեաց և թռչնոց որսը գլխաւորապէս վերին Բեչորայի բնակիչքը կ'ընեն. չորս հինգ հոգի միանալով աշնան ատեն՝ կ'երթան կը բնակին Ուրալ լերանց անտառացը մէջ. ամեն մէկ խումբ հմուտ որսորդաց մէջէն մէկը իրեն առաջնորդ կ'ընտրէ, որ իրենց առջևէն կը քալէ ։ Որսորդք շինականաց գործածած հրացանը կը կրեն, որուն գնտիկը ոլոռան մը մեծութիւն ունի. դարձեալ ամեն խումբ կ'առնէ լայնափող և երկայն հրացան մը՝ արջի և ուրիշ մեծ կենդանեաց վրայ պարպելու համար ։ Որսորդք օրը քսան ու հինգ վերստ ճամբայ ընելով՝ երկու երեք հարիւր, և մինչև չորս հարիւր վերստ իրենց բնակութենէն կը հեռանան ։ Երթալիք տեղերնին հասածնուն պէս՝ առջի գործերնին կ'ըլլայ ցարասի կեղևները մէկմէկու կապելով վրան մը կանգնել. սովորական որսերնին է սկիւռ, տեսակ մը աքլոր և սալամբ (tétras) ։ Ամեն մէկ որսի եղանակի մէջ իւրաքանչիւր որսորդ 300էն 600 սկիւռ, 400 աքլոր և 200 սալամբ կ'որսայ. ամեն խումբ հազիւ երկու սամոյր կը սպաննէ և 10էն ինչուան 100 սպիտակ աղէս կ'որսայ ։

Հրացանի տեսակ զէնքերէն զատ որոգայթներ ալ կը լարեն նապաստակաց և աղուեսուց, կամ. թունաւոր մսի կտորներով կը սպաննեն զանոնք. (Օտար ընթերցողք պէտք չէ զարմանան այս եղանակաւ նապաստակները սպաննելնուն վրայ, վասն զի Ռուսաստանի բնակչաց մեծ մասը այս կենդանւոյս միսը չուտեր, անտառի կատու սեպելով զայն), միայն մորթը առնելու համար կը մեռցընեն ։ Ճերմակ և կապուտագոյն աղուէսները ճախնային տեղեր կ'որսան ։ Կաքաւի որսը անհամար է 'ի Բեչորայ, սակայն արդասիքը ամեն տարի նոյն չէ. անցքի չորս տարիներուս մէջ սպաննուած կաքաւուց միջին թիւն է 80,000. ուրիշ տարիներ երկու միլիոնի կ'ելլար ։ Որսորդք կը հաստատեն թէ երկայնատև քամի մը փչելով 'ի հիւսիսոյ և 'ի հիւսիսային արևելից, գիւղերուն մէջ կը թափէ բազմութիւն մը կաքաւուց, բայց եթէ հարաւային հովն երկայն տևէ՝ կաքաւը չկարենալով թըռչիլ՝ կը քշուի դէպ 'ի ծով և հոն կը կորսուի ։

Ահաւասիկ տարուան մէջ վաճառուած բրդոտ կենդանեաց միջին թիւն.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 200,000 | էն | 400,000 | սկիւռ. արժէքը | 22,000 | ռուբլի, որ է իւր գահեկան | | 440,000 |
| 15,000 | – | 22,000 | սպիտակ աղէս | 54,000 | ռ. | » | 1,080,000 |
| 20,000 | – | 40,000 | նապաստակ | 3,000 | ռ. | » | 60,000 |
| 3,200 | | | Ճերմակ և կապուտագոյն աղուէս | 2,450 | ռ. | » | 40,000 |
| 200 | | | բարակագայլ | 1,200 | ռ. | » | 24,000 |
| 175 | | | գայլ | 526 | ռ. | » | 10,520 |
| 260 | | | արջ | 1,426 | ռ. | » | 28,520 |

*Իսկ թռչնոց տարեկան միջին թիւն է*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 40,000 | էն 70,000 | զոյգ. աքլոր | 13,750 | ռուպլի, | գանձեկան | 275,000 |
| 10,000 | | սագ և բադ. վայրի | 1,400 | ռ. | » | 28,000 |
| 1,200 | | կարապ | 1,200 | ռ. | » | 24,000 |

Իսկ ծովային կենդանիները, ինչպէս փոկը՝ հրացանով կ'որսան. խարխափ ունեցող փոքր նաւեր կը գործածեն ծովու հորթը որսալու, զոր զարնելու համար՝ փքին մ'ունին, որուն մէկ ծայրէն 240 ոտք երկայնութեամբ կաշիէ չուան կ'անցընեն պզտի տակառի մը հաստատած. ասկէ զատ տակառին հաստատուած է 300 ոտք երկայնութեամբ պարան մ'ալ։

Ծովու հորթը կը գտնան ծովեզերքը կամ սառոյցներու վրայ քնացած, բայց կը ջանան արթընցնել. որովհետև քնացած ատեն կաշին կ'ամփոփուի և անանկ խիտ ծալքեր կը ձևացընէ, որ փքինը չիկրնար ծակել։

Կենդանին վիրաւորուիլը զգալուն պէս ջուրը կը նետուի, որսորդները կ'ճապարեն ջուրը նետելու կաշիէ չուան և տակառը. յետոյ տակառին կապուած պարանին ծայրը բռնելով կը ցատքեն ծովեզերքը կամ սառուցին վրայ, ու հաստատուն ցից մը տնկելով պարանին ծայրը անոր կը կապեն։ Քանի մը վայրկեան լողալէն ետքը՝ կենդանին կը տկարանայ. ան ատեն ծովեզերք կը քաշեն զայն. մորթը երկու կը կտրեն, և գրեթէ երեք շաբաթ չափ կը թաղեն, որպէս զի կակղնայ, և յետոյ ճարպը տակառներու մէջ կը դիզեն։ Ծովային կենդանեաց որսորդք 240 հոգի են. 200էն ինչուան 500 ծովու հորթ կը սպաննեն, 400 թառափ մեծ (ստուրիոն) և ուրիշ ծովային կենդանիներ։

## ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆՔ

Առանց գլխոյի Արուսեակ մոլորակը փնտռել։ — Այս պայծառ մոլորակ աստղը վրայ հետաքրքրական տեղեկութիւն մը տուած է Նորեռ աստղագէտ մը, և կը հաստատէ որ պարզ աչքով ալ Արուսեակին շրջանակը գիտելը կարելի բան է, մանաւանդ թէ դիւրին է. զարմանք է, կ'ըսէ, թէ ինչպէս այս գեղեցիկ մոլորակը որ բնականապէս ալ իրեն կը քաշէ հետաքրքրաց աչքը, այսչափ դարերէ ի վեր առանց զննութեան թողուած ըլլայ՝ ինչուան որ գիտակները հնարուեցան, կամ թէ ինչպէս Կոպեռնիկոս այս աստղին երևոյթները չգիտեց, զոր կը հաստատէր, և գրեթէ կը մարգարէանար, և որոնք իր աստեղաբաշխական դրութեանցը ամուր նեցուկ մը պիտի ըլլային։ Ինչ և իցէ, ամեն զննողք, միայն թէ քիչ մը հմտութիւն ունենան, կրնան այսուհետև ստուգել այն երևոյթը մինչդեռ Արուսեակը իր շրջանին այն կէտին մէջն ըլլայ որ գեղեցիկ կերպով կ'երևի. բայց գիտելու համար պէտք չէ գիշերուան սպասել. վերջալոյսին աղօտացած ժամանակը յարմարագոյնն է, երբ Արուսեակը գեղեցիկ աստղ մը կ'երևի, դեռ իր բոլոր կրակներովը չփայլած. այն ատեն եթէ պայծառ մթնոլորտ մ'ըլլայ՝ սովորական աչք մ'ալ աղէկ գիտելով կրնայ մոլորակին բարակ մահիկն ալ տեսնել. բաւական է թէ գիտնայ մէկը թէ ո՛ր եղանակին որուն լոյսը կ'առնու Արուսեակը և որչափ։

Նաւթ կամ փեդրոլ (Pétrole). — Ըսեւար և Օէ մուռնոյ լեռներուն վրայ նաւթի աղբերաց համար արդեանց ջրհորոց նման փորուածք կ'ընեն. անոնցմէ մէկը մինչև 253 ոտք փորեր են։ Եղած նեթերը այն տեսակ խեղով ապարել են զոր Ամերիկացիք կ'անուանեն Մաչերլաքի էղ, և որ սովորաբար Եւրոպայի մէջ գործածուածէն աւելի սև է։ Անոր համար որոշած են մինչև 600 ոտք խոր փորել, ու կը յուսան բուն քարձիւթը գտնել և շատ ալ առատութեամբ։

Վառնգոպէյեայ ջերմաչափ. — Լոնտրայի ծովային վաճառականութեան մթերանոցներուն մէկուն մէջ մեծ հրդեհի մը պատահելով, հնարեցին ամեն մթերանոցաց մէջ՝ ուր դիւրավառ վաճառք կան, նոր տեսակ ջերմաչափ մը հաստատել. որուն սնդիկի սիւնը երբոր որոշեալ աստիճանի մը հասնի՝ կ'ազդէ ելեքտրական թելի մը վրայ՝ որ հաղորդուած է գործիքի մը հետ. ասալ մէկէն զանգակ մը կը հնչեցնէ ջրհանուորաց կեցած տեղը. այնպէս որ երբ այսպիսի կրակ հանդիպի՝ մէկէն ջերմաչափը կը բարձրանայ, և վտանգը կ'իմացընէ։

---

ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ




ՌՑԺԸ. 1868 — ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ. — ԴԵԿՏԵՄԲԵՐ

# ՍԱՐԴՔ

(Տես երես 303)

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

### ԱՐՈՒԵՍՏԱՒՈՐԸ ԵՒ ՏԱՆ ՇԻՆՈՒԹԻՒՆԸ

ԺԳ

Բայց դու մուսայդ Սիմոնիկի, հոս ինծի թիկունք հասիր . այս տխրութեան ժամու՝ լռեցուր քու զուարթ երգեբուդ ձայները, և փոխանակ հնչեցուր այն աղիողորմ սգոյ հառաչանքները՝ որ թշուառ դէպքիս կը վայելէ։ Արդեօք չարութեան վերջնեմ գանգատ, եթէ անիմաստ կատակասիրութեան։

Այս մտածութեանց բոլորովին մտքու վերացած, չէր տեսներ ինչ կը հանդիպէր չորս դիս։ Երբ յանկարծ օդուն մէջ սև մարմին մը տեսայ՝ որ լռութեամբ և զգուշութեամբ սարդի ոստայնին կը մերձենար։

Անակնկալ երևոյթը սիրտս թռուց հանեց. ձեռքս դէպ այն մարմինը վերցընել ու ետև դառնալ նայիլս՝ մէկ ըրի։

Բայց ի՜նչ եղաւ ափշութեանս զարմանքը, երբ Սիմոնիկ քերթողը տեսայ, որ ձեռքը երկայն կոթով աւել մը՝ ոստայնը վար առնելու կը փութար։

— Խնայէ, ըսի, անմեղին . կ՚ուզեմ որ տեղը մնայ։

Բայց բանը բանէ անցեր էր։

— Ասկէ ետքը, վստահ եղիր, պատասխանեց քերթողը, որ եղած տեղը հանդարտ կը մնայ։

Եկուր հիմայ դիտենք մէկտեղ և մօտանց այդ ցանցին գծերուն կանոնաւորութիւնը։ Ցուցուր ինծի տեսնեմ, ո՛ւր է այն բնական կանոնաւորութիւնը որ քերթողական արուեստին ամեն կանոնաց կը յաղթէ։ Այս ըսելով կը ծիծաղէր բարձրաձայն, մինչդեռ ես

դառնացեալ՝ աչքերս պատուհանիս անկիւնը կը վերցնէի։ Աւա՜ղ. ա՛լ սարդի ոստայնին նշանն իսկ չէր մնացեր. միայն մէկ երկու թել, որ աւելին բռնութիւնը չէր կրցած վար առնել, թեթև մը կը ծփծփային։

— Զարկը ըրիր, ըսի. անգութ և անիմաստ էր վրէժխնդրութիւնդ, ուր իրաւունք մը չունէիր։

Այս կտրուկ խօսքին քերթողը զգալով որ անխորհրդաբար վայելչութեան դէմ յանցաւոր եղեր էր, ձեռքը ինծի երկնցուց։

— Զարկը, եթէ կրնայ զուրցուիլ, եղաւ, կանչեց. և դարման չկայ. բայց խաղաղութիւննիս չաւրենք։ Քիչ մը զբօսանք փնտռելու համար քեզի եկեր էի. գիտմամբ կամ առանց ուզելու, չեմ գիտեր, բնական զգացմունքս խռովեցիր։ Քերթողաբար վրէժխնդրութիւն մը մտածեցի. բայց այսչափ դառնութիւն մտքէս չէր անցած։ Լմընցնենք խնդիրը իբր սիրելի բարեկամք. միւս կողմանէ չաժէր չնչին բանի մը համար բարեկամութիւննիս աւրել. իմաստութիւն է արդեօք սարդ մը վեր դընել քան քերթողի մը բարեկամութիւնը։ Մ'ըլլար և դու անոնցմէ որ վերադոյն կը սեպեն Եսքիլոսի բոլոր ողբերգութիւններէն՝ քաղդէացի հնաւանդ արձանագրի մը մէկ տառը։ Մ'արհամարհեր քերթողական զգացմունքը՝ անոր համար որ նոյն աշխուժին մասնակից ըլլալու յորդոր չես ըղձար։»

Ցեսայ որ յանկարծական կրից յուզումը մէկդի դնելու ժամանակ էր. քերթողը կը խոստովանէր իր անխոհուրդ վրէժխնդրութիւնը, և իբր ներումն կը խնդրէր։ Ձեռքը սեղմելով,

— Անօգուտ է, ըսի, ա՛լ ասոր վրայ վիճել. միթէ կրնանք եղած չարիքը նորէն ետ դարձնել։

Իրաւ որ մեծ զբօսանքէ զիս զրկեցիր. բայց տարակոյս չկայ որ քերթողի մը բարեկամութիւնը աւելի կ'աժէ։

— Ես ալ կը զգամ հիմայ ըրած վընասիս ծանրութիւնը, և եթէ հնար էր դարման մ'ընել, չէի դանդաղեր. բայց կարելի չէ։ Կը հասկընամ, թէպէտ շատ ուշ, ինչպէս անգութ է տկարին վրայ անգթանալ։ Ա՛հ. եթէ ներէիր, զուրցել կ'ուզէի սարդին գանգատը, և իր դժբաղդութիւնը, առակաբար խօսքով. այս առիթը միտքս անոր կ'արթընցնէ։

— Ի՛նչ է արդեօք, կանչեցի հետաքրքրաբար. եթէ ծանր չէ կը փափաքէի լսել։

— Դիւրին բան. ուշ դիր, ահա Լաֆոնդէն ինչպէս կ'առակաբանէ Սարդն ու Ծիծառը։

Ո՛վ դու Արամազդ, որ ի քոյ ուղղոյդ,
Նորահնար գիւտիւ՝ ի նորոգ ծընունդ
Ածեր ըզՊալլաս, զիմ հին թըշնամի,
Լուր արդ բողոքոյս ի կեանս անգամ մի։
Պրոկնէ զիմ պատառս տանի կողքելով.
Շուրջ յածեալ, հատեալ զայերս եւ ըզծով,
Զիմ ճանճս ըմբռնէ հուպ դրանս առ երի.
Այնք բաժին իմ են. եւ ցանցիս պատառ
Լի նոքօք լինէր, թէ չէր հաւդ այդ ժանտ.
Զի ես պընդակալ նիւթով զայն յեռի։
Այսպէս յանդուգն ի բերան
Սարդն՝ ոստայնանկ երբեմն՝ ունէր ըզբողոք.
Որ լեալ զարդիս մանող դք,

Ժպրհէր կապել զամէն միջատ թեւական ։
Փիլոմելայ քոյրն ունելով որսոյն ուշ ,
Առ սարդն հեռանալ՝ չորթէր ըղձանձ յայերաց ,
Վասըն մանրիկ ծնընդոյն եւ իւր , վայելք դուժ .
Զոր ուկորուստ ձագունքն՝ ի կտուց մըշտաքաց ,
Թերակատար ձայնիւ՝ թոթովախօս երամ խուռն ,
Թախանձէին յանյօղաւոր դեռ ի ճիչ ։
Ի սարդըն հէգ չըմնայր ինչ
Բայց գլուխն եւ ոտք միայն , անդէպ դարմանիչ .
Ածաւ ընդ քարշ ինքն համբուն .
Ծիծառն անցեալ՝ տարաւ զոստայն եւ զայլ ախ ,
Սարդն ըղծայրից առ ի կախ ։

— Հիմայ կը տեսնես որ այդ առակը Փոքր մեր դէպքին պատմութիւնն կրնայ զուրցուիլ . ծիծառը թռչնտելով՝ իբր աւելի զօրաւոր՝ սարդ և ոստայն վերուց մէկէն տարաւ ։ Ես ինչ տարբեր բան ըրի ։

— Բարեկամ , պատասխանեցի . աղէկ կը մտածես . իրաւունքը միշտ զօրաւորագոյնին կողմն է ։ »

Ելաւ հեռացաւ . մնացի միայն ։

ԺԴ

Բայց սարդը մտքէս չէր ելլեր . աչքս այն անկիւնը սեւեռած՝ ուսկից անանկ անդթութեամբ անյայտ եղեր էր , անանկ մը կ'երեւնար ինծի , ինչպէս թէ դեռ ես հոն ըլլար և աշխուժութեամբ իր գործքին զբաղեր ։ Մտաց խաբէութիւն . ան բոլորովին անյայտ եղած էր ։

Սակայն մտածութենէ մտածութիւն երթալով , յիշեցի որ ուրիշ անգամ մըն ալ սարդի մը ոստայնին շինութեանը ականատես եղած էի ։ Պարտէզ մը գտնուելով , շաւղէ մը անցած ժամանակս՝ օդու մէջ կախուած սարդ մը տեսայ . մօտեցայ , տեսնեմ որ լարէ կամուրջ մը երկու ծառոյ մէջ տեղ ձգուած էր . ծառերուն մէկ մէկէ հեռաւորութիւնը երկու և կէս մեդր կար ։ Զարմացեր էի տեսնելով ինչպէս այն պզտի արարածը՝ առանց թեւ ունենալու , կրցեր էր ծառէ ծառ թռչիլ իր կամրջին հիմունքը հաստատելու համար ։ Եթէ վերէն վար իջնելով անցքը ոտքով ուզենար քալել , ճամբուն վրայ այնչափ խոտի և արգելքի կրնար հանդիպիլ , որ թելը անոնց մէջ խառնուէր և արգիլէր ։ Ի՞նչ ճարտարութեամբ ուրեմն կրնար ծառէ ծառ , և բաւական հեռաւորութեամբ , կամուրջ ձգել , կը հարցնէի ինծի . մանաւանդ մտածելով որ երբեմն ալ ջրի վրայ կը կախուի , գետակի մը երկու եզերքը թելը հաստատելով ։ Կարելի՞ է , կ'ըսէի , այսպիսի պարագայի մէջ առանց մակուկի ջուրը անցնիլ ։

Լսեր և կարդացեր ենք շատ անգամ այն լարաձիգ կամ երկաթեայ կամուրջները՝ որ մարդկային ճարտարութիւնը երկուց ժայռից մէջտեղ անդնդի մը վրայ կանգներ է ։ Բայց այն կամուրջները ձգելու համար որչափ ժամանակ , որչափ մեքենական արուեստ , որչափ աշխատանք չէ կարօտացած մարդկային հնարիմաց մեծագործութեանը ։

Ընդհակառակն այսպիսի դէպքերու մէջ սարդին բանեցուցած մեքենականութիւնը պարզ է . այսպիսի գիտութիւն մը սարդը ծնանելով կը ժառանգէ , մինչդեռ մարդ բազմամեայ փորձառութեամբ կը սորվի ։

Ահա ինչպէս սարդը առանց ոտքը թրջելու ջրին վրայէն կը քալէ , կամ բարձրէն ծառէ ծառ կ'անցնի՝ աներկիւղ , առանց վար իյնալու ։

Երբ հովիկ մը կը զգայ որ հեղիկ մը կը շնչէ, կ'աճապարէ քարի մը եզերքը, կամ ծառի մը ճիւղին ծայրը թեթեւ մը կը նստի։ Ետեւի թաթիկներովը իր համբարանոց որովայնին ծայրը կը ճզմէ, ուսկից թել մը կը սկսի ելլել, կախուիլ, օդուն մէջ ծփալ։ Հովին բռնութիւնը ա՛լ աւելի կ'երկընցնէ զայն, մինչեւ կը հասցնէ այն հեռաւոր մարմինը՝ դէպ ուր որ սարդը կ'ուզէ հաստատել իր երթեւեկութիւնը։

Արթուն եւ միշտ հսկող, երբեմն երբեմն թելը իրեն կը քաշէ թեթեւ մը՝ որ զգայ երբ մարմնոյն հանելով փակչի։ Հաստատուածին պէս՝ իրեն կը ձգէ, ու միւս ծայրը իր կեցած տեղը ձիգ մը կը փակցնէ։ Այնուհետեւ հաստատուն կամուրջ մըն է իրեն այն լարը, ուսկից իբր ճարտար լարախաղաց մը պարելով՝ եզերքէ եզերք կ'երթեւեկէ։ Բայց միանգամայն աւելի զգուշութեան համար ուրիշ թելերով ալ կը պատէ ու կը պրկէ, որ կարող ըլլայ ոչ միայն իբր հիմն ծառայել իր ձգելու որոգայթին, այլ եւ հովուն սաստկութեանը դէմ դնէ։

Այսպէս լարը ապահովցնելէն ետքը, անոր ամրութիւնը հասկընալու համար՝ այլ եւ այլ կէտերէն ինքզինքը լարով մը վար կը ձգէ. եւ յետ իմանալուն որ կտրելու վտանգ չկայ, կը սկսի իր որոգայթը լարելու։ Եթէ տակը ցամաք է, լարին մէջտեղէն՝ վերէն վար թել մը կը ձգէ. կամ թէ տեղւոյն ու մերձակայ մարմնոց համեմատ, թելերով՝ սրանկիւններ կամ բթանկիւններ կը գծէ, որոնց մէջ կարող ըլլայ բազմանկիւն մը շինելու։

Բայց եթէ շինելու որոգայթին տակը ջուր է, եւ կ'ուզէ անմիջապէս մէջտեղը հիւսել իր ոստայնը, լարին մէկ կողմը երկրորդ թել մը յարելով՝ ջրին միւս կողմը կ'անցնի, ու վար կախուելով՝ ինչ եւ իցէ մարմնոյ մը վրայ կը յարէ միւս ծայրը. որով կը ձեւանայ սրանկիւն մը։ Հիմնական լարին վրայ ելլելով դարձեալ, ուզած կէտէն թել մը կը ձգէ որով կը վերածէ եռանկիւն մը։

Այդ եռանկիւնը՝ շատ մը աղեղնիկ ձգելով՝ կ'ընէ բազմանկիւն. յետ մէջտեղէն ուղղահայեաց թել մը ձգելով՝ երկու կը բաժնէ, ինչպէս բոլորակի մը տրամագիծը։ Այս կերպով կը ձեւանայ որոգայթին կմախքը, որուն վրայ պիտոր հաստատուի բոլոր միւս հիւսուածքը։

Տրամագծին կեդրոնը գտնելով՝ դէպ 'ի բազմանկեան կողմերը շառաւիղներ կը սկսի ձգելու. միշտ նոր ձգած շառաւիղին վրայէն կեդրոնը դառնալով՝ որ ամրութիւնը փորձէ. եւ եթէ տկար մը գտնէ, կը փրցնէ ու նորէն կը շինէ։

Զարմանալի է այս շառաւիղներուն մէկմէկէ ունեցած կանոնաւոր հեռաւորութիւնը, որոնց չափը եւ ճշգութիւնը՝ սարդին բազուկներն են. բայց որովհետեւ իրենք միայն բաւական չեն որսը ըմբռնելու, ուրիշ պարուրաձեւ թելով մը բազմանկեան բոլոր շառաւիղները կը բաժնէ, այնպէս որ ուռկանի մը կերպարանք կ'առնու։

Այս բաժանումը ընելու համար, բազմանկեան շրջապատէն կը սկսի, ոլորտ ոլորտ քաշելով՝ թաթիկներովը միջոցը կը չափէ. եւ ամեն անգամուն որ շառաւիղէ շառաւիղ կ'անցնի, թելը կը փակցնէ։ Այս կերպ պարուրաձեւ ընթացքով, կ'երթայ կեդրոնը՝ գործողութիւնը կը լմընցնէ։

Հոն կը լմըննայ իր աշխատութիւնը. բայց իր պաշարն ալ եթէ բոլորովին չէ սպառած՝ գոնէ շատոնց նուազած է։ Հարկ է հանգիստ առնու, ու քիչ մը կերակրով համբարանոցը նորոգէ։

Ոստայնին կեդրոնը գլխիվայր կը կախուի ակնկալութեամբ սպասելու. «արդեօք որսիկս շատ պիտոր ուշանայ» կ'ըսէ. եւ սիրտը անտարակոյս դող կ'ելլէ որ չըլլայ թէ գիշերային երկայնութիւնը անսուաղ փորով անցնէ։

«Մի՛ խռովիր, էակ համբերութեան, մի՛ տարակուսիր. կայ քեզ ալ կերակրող մը։ Արդէն գիտես որչափ փափաքելի են զբօսասէր մանկութեան զուարճութիւնքն։ Այդ անզգամ մանուկ միջատը՝ որուն փնտռուածը անհոգ վա-

կեցն է, բարձրանայ պիտի գետնէն, երեւիչը առնելով, յանգգաստ՝ ոստայնին մէջէն օդը պատռել պիտոր ուզէ: Բայց կախարդական ուժ մը զինքը արգիլու պիտի ոստայնին թելերուն վըրայ. և դու անճապարելով՝ թաթերուդ մէջ առնուս պիտոր, որ չըլլայ թէ ազնապողական շարժմունքներովը որոգայթդ պատռուտելով, աշխատանքդ պարապի հանէ: Ահա կերակրիկդ:»

## ԺԵ

Բայց իր խոհեմութիւնը քիչ մը աւելի է. գիտէ որ անզգուշութիւնը պատահեկութեան արգասիք է, և անվրէպ այսօր կամ վաղը, անհոգ, անփոյթ ոտիկ մը որոգայթին մէջ պիտոր իյնայ. 'ի վերայ այսր ամենայնի ասանկ վրիպելու ենթակայ ապահովութեան մը վրայ բոլորովին յոյսը հաստատել չուզեր:

Վասն զի գիտէ որ իր մարմնոյն այլանդակ երևոյթը հեռուանց իսկ անցաւորաց սիրտը սարսափով կրնայ լեցընել. կ'ըմբռնէ որ ներկայութիւնը՝ որոգայթին առջը մատնելով՝ ամեն ճանապարհորդաց ճամբան փոխել պիտոր տայ:

Ի՞նչ ընէ որ իր ներկայութիւնը ծածկէ:

Եթէ տեսնես որոգայթ մը լարուած և տէրը հոն չգտնես, մ'ըսեր թէ յուսահատած տունը փոխեր, կամ անյայտ եղեր է: Փնտրէ թելաձիգ կամրջին մէկ ծայրը. տերևի մը տակ, քարի մը ծոցին ներքևը, մետաքսահիւս բոժոժ մը կը գտնես: Եթէ ուշադրութեամբ նայիս՝ կը տեսնես որ սարդը մէջը պատսպարուած՝ լարին շարժմանցը ուշադրութիւն կ'ընէ, գիտցած ցնցմունքը զգալուն պէս՝ որսին վրայ իյնայ փութով:

Այն բոժոժին մէջ վստահ է որ իր որսիկին զգուշութիւնը կը խաբէ. միանգամայն ինքն ալ ապահով է իր թշնամեաց ճանկերէն, հովը կամ անձրևը զինքը չնեղէր, և ոչ սաստիկ արևը զինքը կը տոչորէ:

Այս պարտիզաց մեծափոր սարդն է, որ երկրաչափական համեմատութիւններով՝ իբր ուսեալ, կանոնաւոր ոստայն մը կը հիւսէ:

Կան ուրիշ տեսակ սարդեր՝ որոնց ոստայնը խառն 'ի խուռն ուղղութեամբ թելերով, առանց մասնաւոր կարգի մը շինուած է: Այլք դարձեալ, որոնց ոստայնը խիտ հիւսուածքով գորգի մը կը նմանի: Եւ այս հիւսուածոց տարբերութեամբ, ամրութեան նկատմամբ՝ ոստայն ոստայնէ կը տարբերի:

Մեր կլիմայից սարդի ոստայնքը, միայն միջատ արգիլելու յարմար են: Բայց եթէ ուզենանք հաւատք ընծայել, կան ճանապարհորդք որ օտար սարդի ոստայնից համար կ'ըսեն որ մինչև պզտի թռչուն ալ արգիլելու կը զօրեն:

Մարդկային ճարտարութիւնը գեղեցիկ յուսոյ շառաւիղի մը ժամանակ, մտածեր է այս սարդի ոստայնը մարդկութեան օգտեցնել. փորձը գլխաւորաբար նպատակ առաւ սարդին բոժոժակերպ բնակարանը և անոր ձուոց քսակը. անոնց հիւսքը թելի վերածելով՝ հիւսեց կերպաս, ձեռնոց, գուլպայ:

Այս ամենայնի տեսքը, երևոյթը, գոյնը՝ գեղեցիկ, սիրուն և ախորժելի աչաց: Ի՞նչ օգուտ:

Բարիզու գիտութեանց ճեմարանը, այս հիւսուածները հռչակաւորն Ռէոմիւրի քննութեանը տալով, իմացաւ որ եռացեալ ջրի մէջ կը լուծուին. սակայն և այս թերևս նուազ չար: Ի՞նչպէս կրնար մարդ իր անձնական շահը մտածելով այնքան բազմաթիւ սարդից սնունդը հոգալ թեթև ծախքով: Եւ եթէ կարելի ալ ըլլար, անհատներ պէտք էր պահել. վասն զի ուր բազմութիւն սարդից, հոն արիւնահեղ պատերազմները անպակաս են. հզօրը տըկարը կը ջնջէ, տկարը զհզօրը:

Հետաքրքրական փորձեր ըրին. բայց վրէպ յաջող հետևանքէ: Եւ ամենայն ինչ մոռացութեան մէջ ընկղմեցաւ:

## ԺԶ

### Հիւսելու կազմարանը.

Տեսանք սարդը, շօշափեցինք ոստայնը, դիտեցինք նրբատես թելը. բայց ուսկից բղխելուն՝ մանրադիտով միայն հայեցուածք մը տուինք: Լաւ է ուրեմն երկու խօսքով ալ զուրցենք այն գործարանը՝ որմէ կը կախուի սարդին կեանքն ու մահը:

Սարդ մ'որ դիտես աշխատութեանը ժամանակ, կը տեսնես որ իւրաքանչիւր անգամուն որ պոչին ծայրը տեղ մը դըպցնէ և անկէ բաժնէ, թել մը կ'երկըննայ: Ուրեմն ըսել է որ անոր համբարանոցին աղբիւրը հոնտեղ փնտըռելու է:

Այս ծայրը՝ մանրացուցով չորս կոծիծ կը տեսնուի, որոնք գիտակի մը յօդուածներուն նման կրնան երկել և իջնալ: Այս կոծիծներն են սարդին թելհան գործարանները, որ պտկունք [1] կը կոչուին. իրենց չէնքն ուշադրութեամբ դիտելու է:

Թերևս անանկ կարծուի որ այդ չորս պտկունքներէ միայն չորս հատիկ նրբաթել կը բղխի, որոնց միութենէն կը կազմուի սարդին սովորական թելը: Ընդհակառակն զօրաւոր մանրացուցով կը տեսնուի որ այս պտկանց իւրաքանչիւրը իր չորս կողմը հազարաւոր նուրբ ծակտիք ունի, որոնցմէ առ հասարակ կը հոսէ իր ամենանուրբ շառաւիղ թելահիւս նիւթը:

Ասկէ ուրեմն հետևցնենք որ սարդի մը իւրաքանչիւր թելը՝ չորս, և ըստ այլ և այլ սարդից՝ հինգ և վեց հազար ամենանուրբ թելերէ կը բաղկանայ. որոնց բազմութիւնը՝ դեռ ևս նոսր, դեռ ևս նուրբ թել մը կը հիւսէ:

Այս թելհանին մետաքսեայ նիւթը մատակարարողը՝ որովայնին մէջ գտնուող մասնաւոր ընդունարաններ են, թւով վեց մեծ և երկու փոքր. որոնք՝ մեծ սարդերու վրայ առանց մանրադիտի օժանդակութեան ալ կ'երևնան, երբ կանխաւ սարդը ջրի մէջ խաշուի, կամ թէ քանի մը ժամ գինւոյ ոգիքի մէջ թողուի, ու յետոյ փորը ճեղքուի:

Այս ընդունարանաց մէջ բովանդակուած մածուցիկ նիւթը, որպէս զի կարենայ իբր թել քաշուիլ, հարկ է որ իր մէջը պարունակած ջրային դոլորշիքը ցնդի: Եւ այս գործողութիւնը պըտկունքները լեցուելու ժամանակը կէս մը կը կատարուի. հետզհետէ որ ճամբայ կ'ընէ, խոնաւութիւնը կը կորսնցընէ, կը ցամքի, ու գործարանէ ելլելէն ետքը բոլորովին կը չորնայ:

Թերևս դիւրաւ ու շուտով չորնալու կը ծառայեն պտկանց հազարաւոր ծակտիքը, որոնք թելը բաղկացնող շառաւիղները առանձին առանձին օդուն ցուցընելով՝ շուտով կը ցամքեցնեն:

Ցամքելով թէպէտ կը կորսնցնէ ըստ մասին իր կպչուն յատկութիւնը, 'ի վերայ այսր ամենայնի միշտ մասնաւոր աստիճանաւ մը կը պահէ զայն, ինչպէս ամենօրեայ փորձով կրնանք ստուգել:

Այս թելից նկատմամբ դիտելու բանը այս է, որ ամենուն բնութիւնը մի և նոյն չէ. տեսակաւ և ամրութեամբ կը տարբերին: Մասնաւոր են անոնք որ որոգայթը հիւսելու կը ծառայեն և են չոր. տարբեր են նաև անոնք՝ որ կպցնելու կը ծառայեցնէ: Բնակարանին շինութեանը մասնաւոր թանձր և ամուր թելեր կը գործածէ, և նմանապէս նոյներով ձուոց բոժոժը կը հիւսէ: Իսկ այն բրդեղէն խառնախուռը՝ որոնց վրայ ծնած ձագերը ժուռ կու գան, մասնաւոր տեսակ մը բամբակ է:

1. Գղ. Mamelons.

# ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

## ՑՆԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ

## ԺԷ

Կեանքը գեղեցիկ երազ մըն է, ճշմարիտ է. բայց աւելի՝ հայելի մըն է, կ'ուզէի ըսել: Մէկ երեսովը ամեն բարեաց պատկերը քեզի կը ցուցընէ. խաբէութեամբ ամեն երջանկութիւն կը

խառնամբոյ ։ Երբ մերձենաս, կը փնտըռես, չըգտնելով կ՚ուզես․ ոչընչութիւն․ անանուն ինչ անյայտ եղած՝ միայն ինքզինքդ կը գտնես ։ Սակայն անոր միւս երեսը, խաբուած յոյզ ստուգագոյն կը խօսի․ դառնութիւնը՝ սրտիդ կը ցուցընէ ։

Ասոր խայթը խիստ է․ միայն առանձնութեան ու լռութեան մէջ է որ թեթեւ հանգիստ ու խաղաղութիւն կը գտնես ։

Առանձնութեան բնակարաններդ որոնք կը խափանեն խռովիչ աղմուկը որ մինչեւ քեզի չհասնի, ճշմարիտ է․ բայց մէկ խօսք մըն ալ կայ որ մեծ ճշմարտութիւն մը կը բովանդակէ․ « դուրսէդ քեզի հետ կը կրես » ։ Իմաստ մըն է որ քեզի կը հասկըցնէ թէ որչափ ալ ջանաս երջանիկ ըլլալու, անկարելի է կատարելապէս հասնիլ, ցորչափ սիրտ մ՚ունիս որ այս կենաց շնչովը կը բաբախէ ։ Որչափ ալ կարծես որ երջանկութիւնը գտեր ես, միշտ մէկ մնանաւոր փափաք մը պիտի զգաս, որ վըկայէ պիտի այս ճշմարտութեանը ։

Եւ սակայն միշտ մէկ յոյս մը կայ մեր սրտին մէջ որ զմեզ այս երջանկութիւնը փնտռելու կը մղէ ։ Գիտե՞ս որո՞ւն կը նմանինք ։

Կենացս մէջ մէկ մարդ մը ճանչցեր եմ, որուն մի միայն փորձութիւնը՝ անկարելի մըն է․ մշտնջենաւոր շարժմունքը գտնալ ։ Մի միայն երազածը այս երջանկութիւնն է․ քանի որ այս ցնորքը միտքին մէջ ծնաւ, բան մը չկայ աշխարհքիս մէջ որուն վրայ սիրտը կապէ ։ Թէպէտ ունի օրինակ իր առջին այն բազումքը որ նոյնը երազեցին եւ չերեւակայած փակարանի մէջ գտան, 'ի վերայ այսր ամենայնի կը կարծէ որ կէտ մը միայն մնացեր է այն երջանիկ վայրկեանին հասնելու, որ Արքիմեդէսին Գտայն կանչէ ։ Եւ յիրաւի որ քանի մը անգամ գտնելու բարեբաղդութիւնն ունեցած է․ բայց աւա՜ղ, երազ է եղեր ։ Նոյն պայմանին մէջ չէ՞ այն ալ՝ որ այս աշխարհքիս վրայ կատարեալ երջանկութիւնը կ՚երազէ ։

## ԺԸ

Մտածութիւններ են, որ միտքս կուգան սարդիս վրայ խօսիլ ուզելով ։ Ստոյգ որ մեր իմացականութիւնը չենք կրնար պահանջել տասնկ ողորմելի էակէ մը․ սակայն այս ալ սիրտ մ՚ունի, կը զգայ եւ կը զանազանէ այն որ բարիք է, եւ տեսակ մը երջանկութիւն կը բերէ իրեն, անկէ որ չարիք է եւ թշուառութիւն կրնայ պատճառել իրեն ։

Ի՞նչ կը փնտռէ, ի՞նչ բանի կը փափաքի ։

Տարակոյս չկայ որ մեծ երջանկութեան մը համար հասնելու բաւական մտածութիւն չունի․ բայց գոնէ քիչ մը հանգիստ, կտոր մը խաղաղութիւն․ մէկ քանի օր պիտոր ապրի․ բայց գոնէ առանց սրտի անհանգստութեան անցունէ․ առանց կասկածի աչքը քնոյ հանգստեան մը փակէ․ չա՞տ բան է արդեօք խնդրածը ։

Կը տեսնե՞ս զինքը, առանձնակեաց է, մինաւոր, լուիկ․ վասն զի առանձնութեան ու միայնութեան մէջ է որ այդ փոքր երջանկութիւնը կը գտնէ ։ Մի՛ արհամարհեր այդ խոնեմ էակը, այլ զարմացիր անոր իմաստուն ընտրութեանը վրայ․ գիտէ որ այն լռութեան խաղաղութենէ դուրս ուրիշ բան չի մնար իրեն, բայց եթէ խռովութիւն, պատերազմ, դառնութիւն, մահ ։

Ստէպ աստանդական կը տեսնես զինքը․ բայց կերակրիկ հոգալու համար կ՚ընէ զայն, քան թէ զուարճութեան մը եռեւէ կը թափառի ։ Զայն գտածին պէս, իսկոյն ծակամուտ կ՚ըլլայ, որ չըլլայ թէ զուժաբեր փորձանք մը իր աւերը խափանէ ։

Ուրեմն սարդի մը տեսական կենաց բոլոր վայելքը առանձնութիւն է ։ Քաղցրութիւն մը, որ 'ի մեզ մինչեւ որոշեալ սահման մը կրնայ ըլլալ փափաքելի․ վասն զի բնութեամբ ենք ընկերասէրք, ուր սարդը ազգովին է ազգատեաց ։

ԺԹ.

Ու սակայն կը հասնի մէկ ժամանակ մըն ալ որ իր առանձնութեան լռութենէն կը ձանձրանայ։ Ներքին ըղձացում մը զինքը ընկերութեան քաղցրութիւնը փնտռելու կը մղէ. կը յորդորէ զինքը որ մխիթարութեան մը անուշութիւնը ճաշակէ տան մը, գերդաստանի մը, ընտանեաց, միով բանիւ որդւոց սիրոյն ու տեսութեանը։

Այս ձայնին՝ բոլոր իր վայրենութեան անձնասիրութիւնը կը մոռնայ։

Ի

Համբերող դիտողութեամբ կրնաս փոքր սարդի մը հանդիպիլ ամառուան վերջերը, որ խոժոռադէմ և ստուարամարմին սարդի մը կը մօտենայ։ Քայլ մը կ'առնու, կը կենայ, կը դիտէ տարակուսեալ. «արդեօք յառաջեմ, կ'ըսէ մտքէն, արդեօք մօտենամ. բարեկամ պիտոր գտնեմ թէ թշնամի։»

Արդէն է որ այսպէս երկիւղածութեամբ ու տարակուսանօք 'ի խնդիր կ'ելլէ։

Ստուարամարմին սարդուհին որ ոստայնէն կամ բոյնէն զինքը կը տեսնէ, կամաց մը կը շարժի, ծանրութեամբ մէկ երկու քայլ կ'առնու, կը մնայ, կը սպասէ. կարծես թէ իրեն սիրտ կ'ուզէ տալ ըսելով. «եկուր, մի վախնար»։

Բայց արդէն միշտ կասկածոտ չվըստահիր այն հրաւէրքին. ոստայնին վրայ կ'ելլէ. քայլ մը կ'առնէ ու քայլ մը ետ կը դառնայ։ Ուշադրութեամբ կը դիտէ անոր շարժմունքները, անոր երեւոյթը, որուն վրայ կ'ուզէ կարդալ սէրը կամ թշնամութիւնը։ Կը մօտենայ ինչպէս դողդղալով, կը հասնի սարդուհւոյն. մէկ չօշափուկը վախով անոր կը դպցնէ, և ինչպէս կայծակնահար եղած՝ ինքզինքը ոստայնին վրայէն կը գահավիժէ, թելի մը ծայրին վստահանալով բոլոր մարմնոյն ծանրութիւնը։ Շատ անգամ ալ կը տեսնես որ դեռ մօտ չգացած, յանկարծ գլուխը կը դարձընէ, և չտապողական փախստեամբ մը՝ մէկ րոպէի մը մէջ աներեւոյթ կ'ըլլայ։

Ու շատ խելքով կը շարժի. վասն զի եթէ սարդուհիին սիրտը նոյն ժամուն չէ խօսած, խարխափելով կը մերձենայ. ու յանկարծ դժբաղդ բաղդախնդրին վրայ յարձակելով, մինչև ետքի կաթիլին արիւնն ալ՝ մարմնոյն մէջէն կը ծծէ։

Ու այս խոհեմութիւնը արդէն նոյն իսկ պսակաւորութեան ժամանակը 'ի գործ կը դնէ. հազիւ թէ բնութեան օրէնքը կը լմընցնէ, իսկոյն աներեւոյթ կ'ըլլայ. մէկ րոպէ մ'ալ յապաղելը ամենախիթալի է. սարդուհին ոչ ազգակցութեան կը նայի և ոչ գթոյ զգացման մը տեղիք կու տայ։ Իր պիտոյքը լմնցածին պէս՝ չորս դին ամենայն ինչ թշնամի կը տեսնէ. «եթէ այրի՝ որսորդութեան նախանձորդ պիտոր ըլլայ ինծի», կ'ըսէ։

Անզօր է արդէն իգին հակառակելու. էգը անոր կրկին մեծութիւնն ունի, աւելի ուժով է, ծնօտիկները աւելի մեծ և զանոնք շարժող ջղերներն՝ աւելի զօրաւոր։ Ասով յայտնի է որ արուն ամենայն զգուշութեան պէտք ունի. յանդուգն վարմունքով մը՝ կրնայ կեանքն ալ կորսնցնել։

ԻԱ

Օր մըն ալ կը տեսնես որ սարդուհիին վրայ նոր աշխոյժ մը կը վառի. ծնողական պարտքը կը դրդէ որ մայրական խնամոց աշխատութեան ձեռք զարնէ։ Կը զգայ որ ձմեռն բոլոր իր խստութեամբը չնչէ պիտոր իր ապագայ զաւակացը կեղեւիկին վրայէն. հապա հիւթիկն որ սառի՝ ուստի իրեն յաջորդութիւն։

«Հանգիստ ուրեմն հիւսենք» կ'ըսէ. գործածը մետաքս մըն է թանձրագոյն և աւելի ամուր քան զսովորական ոստայնը։ Այս մետաքսեայ հիւսուածքին մէջ կ'ամփոփէ իր ապագայ սերունդը, իր անկերպարան զաւկըններն, մէկ խօքով ձուոց կոյտը. և այնպէս իբր է-

ցուն քսակ մը կը կախէ որմոյ մը անկիւնը, կամ ծառի մը ճիւղի և կամ խոտի մը վրայ։

Այսպէս կը շարժի այն մայր սարդուհին, որ յոյսը երկայն կենաց վրայ չհաստատեր. «եթէ յանկարծ մահուան հանդիպիմ, թող զաւակս ապահով ապաստանարան մը ունենայ», կ'ըսէ։

Բայց անդիէն ուրիշ անսակ սարդուհի մը այլապէս կ'ըմբռնէ մայրական սէրը։

«Կեանքը պարգև մըն է, կ'ըսէ. տուրք մըն ենք բաղդին ձեռքը. Թեթև քամի մը կը վերցնէ կը տանի, ճշմարիտ է։ Բայց քանի որ կ'ապրիմ, ցորչափ որ այդ պարգևը կը վայելեմ, կ'ուզեմ գիտնալ որ երկնած զաւակներուս ապագայն ալ ապահով է. և եթէ հարկ ըլլայ. կեանքս ալ կ'ուզեմ պաշտպանել անոնց»։

Այս մայր սարդուհին վեհանձնագոյնն է. կը տեսնես որ իր ձուոց սերմնիքը փոքր քսակի մը մէջ ամփոփած միշտ հետը կը կրէ։ Եթէ թշնամւոյ մը հանդիպի՝ չլքանէր իր ձուոց քսակը, այլ կարծես թէ բոլոր իր զգուշութեան ուշադրութիւնը՝ անոր վրայ կը կեդրոնացնէ։ Անոր համար կը կռուի մինչև ցյետին շունչ. և երբ կը տեսնէ որ ալ յոյս չկայ զաւակաց սերմնիքը ապրեցնելու, վատաբար չփախչիր զաւկները թողլով, այլ անոնց սիրոյն համար ինքն ալ ինքզինքը զոհ կ'ընէ ու թշնամւոյն որկորը կ'իջնայ։

Ճշմարիտ սէր մայրենի, որուն առջին մահն իսկ կը քաղցրանայ. «եթէ զաւկներս, թէպէտ դեռ անկերպարան, ոչնչանալու ըլլան, ինծի ինչ պէտք կենաց. ես անոնց համար եղեր եմ, անոնց ետևէն պիտոր երթամ»։

Այսպէս գթոյս պատճառաւ է որ ինքն ալ իր վարձքն ունի։ Կը յիշէք անշուշտ միջատը, գիտէք որ այն ինչ աչքերն այս լուսոյն կը բանայ՝ ինքզինքը որբացեալ կը տեսնէ անծանօթ աշխարհքի մը մէջ։ Ուստի ծագումն ունեցաւ. ով ծնաւ զինքը. գաղտնիք մըն է իրեն համար։ Եւ մօրն իսկ թերևս անծանօթ էր այն ժամանակը, որ մասնաւոր խընամքով և զգուշութեամբ իր ապագայ սերունդը կ'ապահովցնէր բոյնի մը մէջ։ Համբերութեամբ մեծաւ աշխատանքի մը կը զբաղէր. բայց այն աշխատանքը բոլոր իր զօրութիւնը կը սպառեցնէր, և առանց որդւոյն ծնընդեանը սպասելու, հազիւ թէ բնակարանին խցիկը կը գոցէր՝ անմխիթար անոր սեմին առջին կ'իյնար, գերեզմանի մը խաւարը կը ծածկուէր։

Երջանկագոյն քան զմիջատն է սարդը. կ'աշխատի, կը տանջուի ու կը հոգայ. բայց այս աշխատանաց ու հոգոց փոխարէնը՝ տոյգ է որ պիտի ընդունի։

Յետ ձմեռնային դառնութեանց, երբ արևուն ջերուցիչ ճառագայթները բընութիւնը կ'արթընցնեն, սարդին ձուոց գլուխներն ալ կը սկսին հասուննալ, պատռիլ, ծակծըկիլ. և մայրն որ անհամբեր նոյն վայրկենին կը սպասէր, հատիկ հատիկ կը թուէ զաւկըներն, որ դուրս կը սկսին խայտալ։

## ԻԲ

Ահա բողբոջեցան, ծնան ամենը. ձևացաւ ընտանիքը, առաւելաւ ծնողին հոգը։ Թէպէտ առջի օրերը ուտելու կերպարանք չեն ընծայեր. բայց կամաց կամաց այդ պիտոյքն ալ կ'արթննայ. և մայրն այնուհետև հարկ է որ կրկին աշխատի որ այն վաթսուն եօթանասուն որովայնը յագեցնելու նիւթ մատակարարէ։

Աշխատութիւն և տանջանք խեղճ մօրը, յիրաւի. բայց ինչ ընէ. կրնա՞յ արդեօք անոնց ալմկալից աղաղակներէն ազատելու համար զանոնք քովէն մերժել. և այն անանկ մատղաշ հասակի մէջ։

Քաւ այդպիսի մտածութիւն մըն ալ. անանկ ատեն այնպիսի գթասէր մօր մը հոգը մեծ է, ճշմարիտ է. բայց նախախնամութիւնն ալ անհուն։ Մինչև այն ատեն նոյն բաղձալի վայրկեանին հառաչելով կը սպասէր. հիմայ որ հասաւ, իր գործունէութիւնն ալ կրկնա-

պատկեր ։ « Զասոնք ես ծնայ, կ'ըսէ. հիմայ զիրենք ես պիտոր դարմանեմ. արխանանք, որսը մեզի մօտ կը թափառի. ժամանակ կորսընցնելու չենք ։ »

Կը տեսնես որ խնամքով որոգայթներ կը լարէ ։ Անզգոյշ մժղուկներն որ անհոգ պարելով անոնց քովէն կը քերեն, իբր մագնիսէ մը ձգեալ վրան կը յարին ։ Սարդուհին կ'աճապարէ, իր ոստէն ձգելով զաւակաց խումբը, պատարոյծ այլոցակերաց բազմութիւն մը. որոց մէկ հատիկ զբօսանքը՝ խաղը և որովայնին ծառայութիւնն է ։

Ամենէ գերեալ մժղուկներուն վրայ կը զրկէ, ոյք 'ի բնէ սորված են ու գիտեն ինչպէս ըմբռնեն, խածնեն ու ծըծեն անոսկր, անփուշ որսիկները ։

Ինքն ուրախութեամբ լցուած՝ մէկդի կը քաշուի և անոնց զուարթ խաղերովը կը պարարի ։ Շատ իսկ վայելեց կանխաւ միայնութեան կենաց քաղցրութիւնը և ձանձրութիւնները. հիմայ որդւոց սիրովը կը հալի և անոնցմով կ'երջանկանայ ։

Սակայն միայն զաւակաց զուարճութիւնն չէ իր այժմեան վայելքը. անոնց պահպանութեան հոգն ալ վրան է ։ Հոն, անոնց մօտ՝ անշարժ զինքը կը տեսնես. բայց իր հսկող աչքը չորս դին կը պտըտի. թշնամի մը որ տեսնէ, իսկոյն զաւկըներուն իմաց կու տայ ։ Արդէն իւրաքանչիւր զաւակը նուրբ թելով մը իրեն յարեալ է. բաւական է որ թելերը քաշէ, որպէս զի ամենը աճապարելով՝ վրան ելլեն, որ զիրենք ապահով տեղ մը տանի ։

## ԻԳ

Բայց այս մայրական գութը, հոգը, զբօսանքը, իրենց վերջին ունին. կեանքը շտապողաբար կ'արշաւէ. ինչպէս ցորեկուան՝ գիշերը, այսպէս ալ մանկութեան՝ պատանեկութիւնը ու չափահաս հասակը կը յաջորդէ ։ Շատ եղան մինչև այն ատեն մայրական խնամքը. պէտք է որ վերջ մըն ալ ունենան ։

Զաւակներն ալ բաւական մեծցած ըլլալով՝ կարող են իրենց որոգայթը լարելու ։ Իրաւ դեռ ուժերնին կատարելապէս չեն ստացած, բայց մժղուկներու ու մանր ճճիներու դէմ կրնան կռուիլ. և նաև բնական խորամանկութեամբ մը թշնամեաց ճիրաններէն ազատիլ ։

Այնչափ բազմութեամբ մէկ բնակարանի մը մէջ բնակիլը ալ դժուարին կ'ըլլայ. ու՛ր թողունք որ բանուած որսերն իսկ ոչ միայն քիչ կու գան այնչափ բազմութեան քաղցը յագեցնելու, այլ կռուի ու հակառակութեան պատճառ կ'ըլլան ։

Կամաց կամաց մայրական սէրն ալ կը սկսի նուազիլ, զաւակներուն ապստամբութիւնը կ'աճի, ատելութեան դրդիչները կը շատնան. վերջապէս վերջին ժամը կը հասնի, որ մայրական ու եղբայրական սէրը մահու չափ ատելութեան կը փոխուի ։ Հարկ է այնուհետև որ մէկմէկէ փախչին և ամեն մէկը ինքն իրեն համար հոգայ ։ Ո՛հ աստղիս, ո՛հ անդին կը ցրուին, մէկմէկէ կը բաժնուին, առանձնակեաց անապատականներ կ'ըլլան ։ Մինչև ցայն ատեն իբր եղբայր և քոյր սիրով մէկտեղ կ'ապրէին. բայց անկէ ետքը եթէ մէկմէկու հանդիպին՝ զօրաւորը տկարը կը ճաշակէ. դաշնադրեալ իրաւունք է ։

Դառն պայման արդարև, որուն օրինակը նիւթապէս կամ բարոյապէս ամեն դին կը նշմարուի ։

## ԻԴ

### Սարդ մը և իր սարդոստայնը .

Բաւական է սրահէ մ'անցնիլ, սանդուղէ մը իջնել, դուռնէ մը ելլել, պարտէզս մտնելու համար ։ Այդ անցքը օր մը գարնանային սկիզբներն ըրի ։ Սարբինայի մը քովէն քերելով, աչքս՝ ուռած տկռած սարդի մը վրայ ինկաւ, որ հետը ճերմըկեկ քսակիկ մը կը կրէր ։

Զգուշութեամբ ամփոփելով սենեակըս տարի ապակեայ զանգակի մը տակ, եթէ ոչ զուարթ, բայց գոհեայ հանգիստ օրեր անցուց ։ Ժամանակին որ՛

փիկը, կերակրիկը պատրաստ՝ իր հարկինքը կ'ընէր. ինչ կը պակսէր իրեն. ազատութիւնը. տարակոյս չկայ. բայց գոնէ փոխարէն ապահովութիւնը ունէր։ Վախ չունէր թշնամեաց ձեռքը իյնալու. կրնար հզօրագոյն զօրութեան մը վրայ հանգչիլ ապահով։ Ի՞նչ պէտք, ի՜նչ փափաք կրնար ունենալ. բոլոր ուրախութիւնը, բոլոր մխիթարութիւնը՝ այն ձուակիկն էր՝ որ իր ապագայ զարմը կը պարունակէր։

Օրերը սահեցան անցան. արեւ՝ երկրիս պաղութիւնը ցրուեց, ծառերը ծլեցան, միջատքն արթնցան։

Ապակեայ զանգակիկն ուշադրութիւնս իրեն կանչեց. ծռեցայ տեսնելու. զարմանալիքն եղած էր, այլակերպութիւնն կատարուած էր։

Ձուոց պզտի քաակին վրայ փոքրամարմին սարդք կը զեռային. սարդուհին՝ ապուշ դանդաղութեան վիճակի մէջ կ'երեւնար. զուարճութեան զգացմունք տալու էր անշարժութիւնը, եթէ հոգոց ու մռմռտուքի։

Իրականն այս է որ ձագերն հազար ու մէկ խաղի կը զբաղէին։ Նուրբ թելերու վրայէն արշաւելով մօրերնուն վրայ կը թափուէին, որ անոնց տուած նեղութիւնը՝ մեծաւ սիրով կը տանէր։

Տեսարանը գեղեցիկ էր. զուարճութեան առիթը պատեհ. միտքս հաստատեցի անոր պահպանութեանը հսկելու. կերակուրը խնամքով մատակարարելու։ Դիւրին գործ էր. վասն զի որսականն ալ երթալով կը շատնար։

Առջի օրերը յարատեւեցի դիտմանս վրայ. պզտի քաղքիս բնակիչքն սկսան ուտել, մեծնալ, խաղերնին շատցնել, աշխուժութիւննին աճեցնել։ Գործունէութիւնը կ'առաւելուր. թելերուն հիւսուածքը հետզհետէ մէկմէկու կը խառնուէր. նաւաստեաց բազմութիւն մըն էր կարծես թէ՝ որ նաւուն լարերուն վրայէն ել և էջ կ'ընէին. և ուշադրութեամբ դիտած ժամանակս անանկ մը կու գար՝ ինչպէս թէ բազմութեան մը աղմկալից ձայնը լսէի։

## ԻԸ

Բայց կարելի՞ է արդեօք առանց գլթելու կեանք մ'անցնել. կրնա՞նք ըսել ապահովութեամբ որ միշտ հաստատուն պիտի մնանք մեր առաջադրութեանց վրայ։ Հաստատեր էի մտքիս մէջ զուարթ սարդակերտը խնամքով պահելու։

Օր մը մոլար ախորժ մը հետաքրքրութիւնս դրդեց. «Ինչ կ'ըլլայ քաղաքիս վախճանը, ըսի, եթէ կերակուր տալը դադրեցնեմ։»

Այն վայրկեանէն ետքը կերակուր տալը դադրեցուցի։

Վրան օր մը անցաւ, յետոյ երկու, իրեք և չորս։

Զուարթութիւնը դեռ.ևս կը շարունակէր. բայց մայր սարդուհին անհանգիստ կ'երեւնար։

Անսուաղութեան օրերն բազմեցան. բնակչաց խաղերն նուազեցան, թելերուն վրայէն ել և էջքն քիչցան. ընդհանուր դանդաղութիւն մը տիրեց. յայտնի կը տեսնուէր որ մռմռտուքը տիրած էր ամենուն վրայ։ Անշուշտ սովը ահարկու երեւոյթներով կը ներկայանար սարդակերտին իւրաքանչիւր անհատին վրայ։ Ի՞նչ ունէին ընելու. անդամանդեայ պարիսպք իրենց փախուստը կ'արգիլէին. և չկար դետնափոր անցք մը՝ ուստի կարենային ճողոպրել։ Կը մնար միայն դառն մահուան մը ճակատագիրը։

Բայց անկէ առաջ կար պզտի միջոց մը մէկ քանի օր մահուան կնիքը հեռացնելու. և այդ՝ եղբայրակերութիւնն էր։ Մինչև այն ատեն համբերեր էին, միշտ լաւագոյն ապագայի մը յուսով անշուշտ. բայց երբ բանը այն աստիճանի հասաւ որ տեսութիւնը սկսաւ խաւարիլ, պատերազմը ծագեցաւ։

Առջի հարուածոց զոհ՝ արուներն եղան, որք մարմնոյն նազիկութեամբը՝ էգերէն կը զանազանուէին։ Այնուհետեւ աշխոյժ, վազվզող սարդից տեղ, թելերուն վրայ անշարժ սև գնտիկներ

կը տեսնէի, անզգայ, անշունչ էակներ։ Իսկ ապրեալքն անդադար մէկմէկու ետեւէ կը վազէին. ու երբ կը յաջողէին մէկզմէկ բռնելու, միշտ տկարագոյնը միւսին ճանկերուն մէջ անշարժ կը մնար։

Այս կերպ պատերազմական ջարդքանի մը ժամանակ գնաց։

Մայր սարդուհին որ 'ի սկզբան պատակաց եղեռնագործութեանը մասնակից ըլլալ չէր ուզած, վերջապէս ստիպուեցաւ ինքն ալ անոնց հետեւելու։ Մոռնալով զաւկըներուն սէրը ու մայրական գութը մէկդի դնելով, սկսաւ անոնց մարմինը ուտել։

Սակայն այս որդեկերութեան բռնի պայմանը՝ շատ երկայն չքշեց։ Չեմ գիտեր ինչ պատճառաւ, օր մըն ալ զինքը անսովոր անշարժութեան մէջ տեսայ. գրգռեցի քիչ մը, ամենեւին զգայութեան նշան մը չտուաւ։ Առի զինքը սարդատանէն դուրս, որ պատերազմի դաշտ կը նմանէր դիականց բազմութեամբը, բայց ուր հանդչեցուցի՝ մնաց անշարժ ամենեւին։

Ուստի պատճառեր էր մահը, չկըրցայ ստուգել. անշուշտ որդեկերութեան կսկիծը չէր կրնար ըլլալ պատճառ անանկ յանկարծական անշնչութեան մը։ Բայց կասկածի գացի չըլլայ թէ զաւկըներէն մէկը մահուան տագնապին ժամանակ՝ թունալից ծնօտիկներովը զինքը վիրաւորած ըլլայ։

## ԻԶ

Սարդուհւոյն անշնչանալէն ետքը՝ մնացեալքն շարունակեցին մէկզմէկ ջարդելու. մինչեւ հուսկ յետոյ զօրաւորագոյնն մնաց միայն։ Տէր էր ընդհանուր սարդատանին որ եղբարց եւ քերց արեամբը ստացեր էր։ Ազատ էր ամենայն նախանձորդէ. բայց ինչ օգուտ. վերջին քրոջը մահուամբը ամենայն ապրանաց յոյսն ալ լռեց։

Թէպէտ սաստիկ անդին կ'երթեւեկէր, անշուշտ որս փնտըռելու դիտաւորութեամբ կամ միջոց մը մահուան բոյնէն փախչելու, անօգուտ աշխատանք. ամեն դին մեռելոց դիականց միայն կը հանդիպէր։ Կամայ ակամայ հարկ էր ինքն ալ անգութ պայմանին խոնարհէր. դառնագոյն կերպով կեանքը կնքէր։

Օր մըն ալ շարժելէն դադրեցաւ։

Վերցուցի ապակեայ զանգակը. ճերմակ թուղթը՝ որուն վրայ հաստատուած էր բոլոր սարդատանը՝ պատուհանիս վրայ դրի։ Գրչի մը ծայրովը գրգռեցի յետին մնացորդին ամփոփեալ բազուկները, որոնց վրայ դեռ եւս ջղային ձկտիչ զօրութիւն մը կար։

Բայց այս միջոցին հովիկ մը որ անըդբաղ կը թափառէր, թեթեւ մը թըղթիս զարնելով, սահեցուց պատուհանին սեմէն. ձեռքիս շարժմունքը չօգնեց. տարաւ տարաւ զայն, թաղեց մոռացութեան գիրկերը։

Հ. Յ. Վ. ԻՍԱՎԵՐՏԵՆՑ

Կը շարունակուի:

---

## Անակրէոնեան երկու տաղեր։

### ԱՆԱԿՐԵՈՆ Ա.

Կամիմ ոգել զԱտրիդայս,
Կամիմ երգել եւ զԿադմոս.
Սակայն ջութակս ի լարիցն
Ըղձէր եւեթ ինձ հընչէ։
Ջաղիսն յեռանդ փոխեցի
Եւ բովանդակ ըղըընարս,
Եւ զհերակլեան ըղմըրցանսն
Երգէի ես, իսկ զավինս
Անդրէն ըղձէր ինձ հընչէր։
Ցայսմհետէ դուք դիւցազունք
Բարեաւ մնասջիք, զի ջընարս
Ըղձէր միայն նըւագէ։

### ԱՆԱԿՐԵՈՆ Բ.

Բնութիւն եղջերս ետ ցըլուց,
Կարծըր սըմբակըս ձիոց,
Նապաստակաց ոտս երագ,
Առիւծուց վիհ ատամանց,

Զըկանց տրուեստ լուղնկան ,
Հաւուց թըռիչըս թեւոց ,
Արանց խորհուրդ հանճարոյ ,
Կանանց մընաց եւ ոչինչ ։
Իսկ զինչ ապա տացէ . գեղ .
Փոխան բոլոր ասպարաց
Բնաւից փոխան գեղարդանց .
Զի որ է կին գեղեցիկ ,
Պարտէ զերկաթ եւ ըզհուր ։

Ո՛վ դու սիրուն աղաւնեակ ,
Ուստի՞ ուստի՛ թռուցեալ դաս .
Ուստի՞ այսքան իւղ անոյշ
Ընդ օդս երկնից ընթացեալ
Շընչես եւ շաղ տարափես .
Ո՞վ ես , և զինչ գործ է քո ։
Անակրէոն յղեաց զիս
Առ Բաթիլլոսըն մանուկ ,
Որ արդ ի վեր քան ըզընաւս
Հըզօրացեալ բռնանայ ։
Վաճառեաց զիս Կիթերեանն ,
Առեալ տաղիկ մի փոքրիկ ։
Իսկ ես այսչափ ինչ ըսպաս
Անակրոնի հարկանեմ ։
Արդ եւ զնորին , տեսանես
Զնամականիսըն տանիմ ։
Ասէ իսկ նա զիս ազատ
Վաղվաղակի արձակել .
Այլ ես , թէպէտ թողցէ զիս ,
Ծառայ մնացից առ նըմա ։
Զի զի՞ պիտի թռչել առնուլ
Ինձ ընդ լերինս եւ ընդ դաշտս ,
Եւ ի մայրիսըն նըստել
Եւ ճաշակել ինչ վայրի ։
Ուր այժմ ահա հաց ուտեմ
Յափըշտակեալ ի ձեռաց
Անակրոնեայ իսկ նորուն .
Եւ ինձ ըմպել տայ զինի
Մատըռուակեալ զոր պաշտէն ։
Եւ եմ արբեալ՝ կաքաւեմ ,
Եւ զտէրն իմովքըս թեւօք
Ծածկեալ լինիմ հովանի ,
Եւ մինչ նիրհեմըս , նընջեալ
Ի նոյն քնարին իսկ վերայ ։
Ահա լըւար զամենայն ;
Երթ ի բաց այր դու եղիր
Զիս քան զագռաւ շատախօս ։

Թարգմ . Հ . Ա . Կ . Բագրատունեաց ։

---

## ԻՄ ՎԱՆՔՍ

### Դրաքեանի մը անտիպ յիշատակագիրք ։

( Տես երես 344 )

### Ժ

Երեք օր չարունակ քալեցինք , գեղերու , աւաններու և զանազան քաղաքներու մէջէն անցնելով ։ Ամեն տեղ ժողովուրդը զարմացած և հետաքրքրութեամբ ինծի կը նայէր . ամենքը կը հարցընէին ուղեկցիս՝ թէ ինչ յանցանաց պարտաւոր էի . մէկ անգամ մը միայն զինուոր մը ըսաւ թէ ես դեղատու մըն էի ։ Կառքիս չորս կողմը քիչ քիչ տղայոց ամբոխ մը ձեւացաւ , մինչդեռ քաղաքապետին տունը անցագիրս կը ցինուէր ։ Այս սրիկաներն սկսան կանչել և սուլել , ինծի դէմ թշնամանք ու անէծք արձըկելով ։ Հինաւուրց և ծանրակաց ծեր մ՚ անցաւ անկից , որ անշուշտ տեղւոյն ժողովրդապետն էր , և այն պզտի այսահարեալները սաստկութեամբ յանդիմանելով , իշխանական կերպով մը անոնց ժողովը ցրուեց , և ամենքը քաշուեցան , քանի մը քայլ հեռու տուներուն անկեան մը ետև կամ հրապարակին մէջ եղած ջրհորին մօտ կենալով ։

Բարի քահանան մօտեցաւ ինծի , և քաղցր ու հեզ ձայնով մը հարցուց թէ ինչպէս սաանկ թարմ հասակի մէջ արդարութեան ձեռքն ինկեր էի ։ Պատասխան տուի որ ամենևին չգործած յանցանքի մը համար ամբաստանուեցայ , և աս ըսելով սկսայ լալ ու հեկեկալ ։ Ծերունի ժողովրդապետը գութը շար-

ժիլ երեցուց իմ խօսքերուս, և իմ թշուառութիւններս պարզմտութեամբ պատմելէս՝ համոզուիլ ցուցուց անմեղութեանս վրայ։ Այն ատեն վրաս հըսկելու համար մնացած զինուորին հարցուց թէ ուր պիտի տարուիմ։ Անիկայ պատասխանեց թէ գաւառին գլխաւոր տեղը՝ զինուորաց կայարանը պիտի տանէր, բայց ուր սահմանուած ըլլալը չէր գիտեր։

Հանդերձ այնու աղաչեց իրեն որ տալիք թուղթ մը բանտին քահանային յանձնէ, ուր որ իմ պատիժս պիտի վճարէի։ Զինուորին հաստատական պատասխանին վրայ, իմ ժողովրդապետ ենթադրածս մտաւ քաղաքապետին տունը, և քիչ վերջը ելաւ անկից նամակ մը յանձնելով զինուորին։ Վերջը նորէն ինծի դառնալով, սիրով և քաղցրութեամբ ողջունեց զիս, յայտնապէս գորովեալ կերպով մը ըսելով ինծի. «Մտիկ ըրէ, տղաս. եթէ յանցաւոր ես, ընդունէ դատապարտութիւնդ ’ի քաւութիւն քու յանցանացդ. եթէ անմեղ ես, նոյնպէս յանձն առ զայն համակամութեամբ և համբերութեամբ ’ի հատուցումն քու մեղացդ»։ Վերջը Աստուածածնայ մետալ մը տուաւ ինծի ու գնաց։

Այս խօսակցութենէն ետև, անդրադարձայ որ ժողովուրդը, որ չորս կողմս խռներ էր, մեծագոյն մարդասիրութեամբ կը նայէր ինծի, և մեծարանօք մը կը դիտէր զիս։ Տղաքը, որ առաջ այնպէս անհերես էին, համր և լուռ կեցած կը դիտէին զիս, և ամբոխին բերնէն վրաս քանի մը կարեկցութեան խօսքեր ելլելը լսեցի։ Նաև կին մը հաց և պտուղ բերաւ ինծի, խեղճութեանս վրայ ցաւելով։ Ամեն բան կերպայ ախորժով, և առաջին անգամ հանդարտութիւն ու հանգստութիւն մը զգացի։

Երկու օրէն ետև հասանք բանտարգելութեանս տեղը։ Ոչ այնչափ մեծ քաղաքէ մը քիչ հեռու շինուած բերդ մըն էր։ Մուտքին քով վերացեալ կամուրջ մը կար, որ վար իջեցուեցաւ, երբ մեր տխուր և պզտի դասակն հասաւ։ Զինուորներն յանձնեցին զիս փոքրահասակ և յաղթանդամ և մեծամեծ մոխրագոյն ընչացքներով մարդու մը, զոր Պարոն Հրամանատար կոչելով մեծարանօք կը բարևէին։ Տարին զիս կրկին վանդակապատ պատուհաններով սրահ մը, ուր երկու հարիւրէն աւելի գրեթէ իմ հասակիս տղաք կային։ Ազնիւ կուսան մը եկաւ ձեռքէս բռնեց, անունս, ծննդեան տեղս հարցուց, բայց առանց իմ դատապարտութեանս պատճառն հարցընելու։

Վերջը հագուեցուցին ինծի բրդէ հաստ զգեստներ, կրկնագոյն ժապաւինեալ, գորշ և ճերմակ, ինչպէս բոլոր մէկալընոնցն էր։ Ուրիշ կուսանքներ տղոց առջևէն ետևէն կը պտըտէին իրենց աշխատութեանը ժամանակ վրանին հսկելով։ Ես դրուեցայ կօշկակարի մը քով, որ տասնուհինգ կամ քսան տղոցմով մութ սենեկի մը մէջ կ՚աշխատէր։

Ամեն բան ըսած կ՚ըլլամ, եթէ գրուցեմ որ տասը տարի շարունակ սորվեցայ այս կերպով ապրելու։ Երեք տարիէ ետև ուրիշ բանտ մը փոխադրուեցայ։ և հոս ալ հարկ էր որ աշխատէի գլխաւոր արուեստաւորի մը հսկողութեան տակ, որ խելքէ դուրս խիստ և պահանջող մարդ մըն էր։ Հոն, ինչպէս մէկալ բանտին մէջ, այն բարի կուսանաց սիրալիր խնամոցը մխիթարութիւնը չունէի։ Ստահակ և ապականեալ պատանեաց մէջ գտնուեցայ։ Իմ պարզութիւնս և երկչոտութիւնս զիս անոնց կատակի նիւթ ըրեր էին. և անդադար անոնց խաղուցը և նենգութեանցը զոհ կ՚ըլլայի, և շատ մը անգամ խիստ պատիժներ կրեցի այս երկկայից պատճառաւ, որոնք բոլորովին անպատուհաս կը մնային։ Դիւրին է երևակայել թէ որչափ սիրտս կը դառնանար, և որչափ իմ վեհանձն զգացմունքներս քիչ ատենէն չար կրից և անպիտան յօժարութեանց կը փոխուէին։ Չարութեան, ոճրագործութեան և թշնամանաց հետ անդադար կռուոյ մէջ էի. փուճ տեղ կը ջանայի սիրտ ընելու

և միտք բերելու այն քրիստոնէական վշտակրութեան զգացումները, որ այնչափ խնամքով ինծի ազդուած էին։ Անդադար խաղալիկ եղած այն թշնամանքէ և անհանգարտութենէ պատճառած բարկութեան, զոր իմ պատժակցացս կամակորութիւնն յիս կը զարթուցանէր, գրեթէ ուրիշ բան չէի տածեր սիրտս, բայց եթէ ատելութիւն և զանութիւն ընդդէմ իմ նմանեացս։ Անմեղ մտայ այն բանտը, և ճշմարիտ յանցաւոր ելայ։

Ցանկարծ կ'ընդհատեմ կենացս այս վշտալից միջոցին ախտաւոր յիշատակները։ վասն զի հարկ կ'ըլլայ ինծի ուրիշ բան չյիշել՝ բայց անընդհատ շարք մը անարգ գրգռութեանց, գայթակղական օրինակաց և յանցաւոր որոշողութեանց։ Այս տասը տարուանս մէջ իմ կեանքս յարատև փոփոխութիւն մը միայն եղաւ նուաստութեանց, անարգանաց, մղձկեալ տրտմութեան և յուսահատ խորհրդոց։ Մէկալ կողմանէ դեռ ուրիշ ցաւալի դիպուածներ եկան խռովեցին իմ տաժանեալ անձս, որոնք սրտիս վրայ այնպիսի խոր և գրեթէ արմնազանգ հետքեր թողուցին, որ բովանդակ անցեալն ինծի մոռցընել տուին։

Քսան տարուան՝ ազատութիւնս ըստացայ։ Պատուիրեցին ինծի որ իմ բնիկ գիւղս չերթամ, հապա հեռացեալ հինգ տարին, ոստիկանութեան հսկողութեանը տակ, գետի մը եզերք եղող գաւառական պզտի քաղաքի մէջ բնակիմ, որուն յիշատակը չելլեր միտքէս։ Հոն ծեր կօշկակարի մը քով դրուեցայ, որ դատաւորին առջև իմ գնացքիս երաշխաւորութիւնը վրան առաւ։ Պզտի և թաց խուց մը տուին ինծի, որուն մէջ խեղճ անկողնոյ մը վրայ կը հանգչէի, կամ լաւ ևս՝ օրական վաստակոյն երկայն աշխատութիւններէն տկարացած մարմինս կը տարածէի։ Ամեն հընարք փնտռեցի որ իմ երկրիս, մօրս ողջ ըլլալուն, և իմ հին տէրերուս վըրայօք լուր մը առնում։ Բայց ամեն բան անօգուտ եղաւ։ Գրեթէ ամենայն յիշատակ կորսընցուցի այն տեղերուն և այն անձանց, որոնք նաև հեռաւոր օտարութեան մէջ և բազմամեայ բացակայութենէ ետքն ալ չեն մոռցուիր։ Թշուառութեան անընդհատ հարուածներուն և վիրաւորեալ հոգւոյ մը և կատաղի ու անարգ կրքերէ սաստիկ պաշարուած սրտի մը անմիտ յիմարութեանց տակ քարացեր էր սիրտս։

Ա՛լ չկարենալով դիմանալ այն բազմավիշտ կենաց մէջ զոր չորս տարիէ 'ի վեր կ'անցընէի, որոշեցի որ փախչիմ այն ինծի համար զզուելի տեղերէն։ Առաւօտ մը կանուխ արևը չծագած առանց մէկու մը բան մը զուրցելու, ակըսայ դէպ 'ի բաց դաշտը երթալ։ Երկրին բոլորովին անտեղեակ ըլլալով, դիպուածով դիմացս ելած առաջին ճամբան բռնեցի. բայց վերջը տեսնելով որ յաճախեալ է, և վախնալով որ չյայտնուիմ ու չբռնուիմ, ինծի բոլորովին անծանօթ ճամբաներու մէջ ձգեցի զիս։

Երկայն ատեն ըստ բախտի թափառեցայ, առանց գիտնալու թէ ուր կ'երթամ։ Վերջապէս իրիկուան դէմ զառ 'ի վեր բլրակի մը ծայրը շինած պզտի եկեղեցի մը հասայ։ Ո՛ գիտէ, ըսի մէկէն միտքէս, թէ հոն վերը քիչ մը հիւրընկալութիւն չեմ գտներ. տղայութենէ վարժած էի եկեղեցին իբրև թըշուառութեան ապաւէն և լքելոց օթարան սեպելու։ Այս զգացումներս քիչ մը փոխուած էին, որովհետև իմ բանտարգելութեանս տասը տարուանը մէջ կրօնից և անոր տաճարացու պաշտօնէից դէմ կատարեալ հակառակութեան զգացումներ ազդուած էին ինծի։ Բայց սակայն այն բովանդակ ամայութեան վայրկենին, և այն մերձաւոր վտանգի կէտին մեծապէս ուրախացայ՝ խաչ մը ու եկեղեցի մը տեսնելով. ասիկայ ինծի համար իբրև նաւահանգստի լապտեր մը եղաւ, որ նաւաբեկեալն կամ մըրրկաց մէջ թաւալող նաւաստուոյն սասանեալ աչացը կը տեսնուի։

Աւելի համարձակ քայլով և աւելի հանդարտ սրտով լեռնէն վեր ելայ. և երբոր կատարն հասայ, արդէն սկսեր

էր գիշեր ըլլալ ։ Ամէն կողմ խոր լռութիւն մը կը տիրէր ։ Եկեղեցւոյն քով միայարկ անշուք տնակ մը կը կցէր. և մեծաբերձ կնձնի մը իր թանձրախիտ և լայնարձակ ճիւղերովն անոր տանիքը կը ծածկէր. ամենայն ինչ խաղաղաւէտ միայնութեան երևոյթ մը կուտար ինծի ։ Քիչ մը ժամանակ վարանեալ կեցայ թէ արդեօք այն մենաւոր բնակարանին դուռնակը զարնեմ, և այն գիշերուան համար հիւրընկալութիւն խնդրեմ։ Սկզբան յանկարծ միտքս ընկաւ որ ծառին տակը տարածուիմ, և անոր պաշտպանող հովանւոյն տակ արշալուսոյն ծագելուն սպասեմ։ Բայց վերջը այն անապատ տեղը միայնակ գըտնուելուս վախը զիս բռնադատեց որ անշուշտ ներսը բնակող քահանայէն ապաստանարան մը խնդրեմ։

Զարկի դրան. նուրբ և սուր ձայն մը հարցուց մէկէն. Ո՞վ է զարնողը ։ Պատասխանեցի որ խեղճ ճամբորդ մը, գիշերը վրան հասնելով, ապաւէն մը կը խնդրէ ինչուան վաղը ։ Ոտքերու թեթև կոխել մը լսեցի, վերջը դրան ճեղքուածէն պզտի լոյսի մը փայլելը տեսայ ։ Քիչ մը վերջը բացաւ դուռը ծեր քահանայ մը, որ երկաթէ կանթեղ մը բռնած էր ձեռքը ։ Կարգէ դուրս մարդասիրութեամբ հրաւիրեց զիս ճամբուն մուտքին մօտ բոլորովին ծխոտած պզտի սրահակ մը մտնելու ։ Նստեցուց զիս. և կանթեղը ճեղքած սեղանի մը վրայ դնելով, կարմիր կաշիով պատած՝ պատռտուած աթոռի մը վրայ նստաւ ։

— Ինչպէս եղաւ, պատանեակ, սկըսաւ ազնիւ ծերը, որ այս կողմերս կը գտնուիս և ատանկ ուշ ժամանակ ։

— Տեղերուն անտեղեակ ըլլալով, վրայ բերի մէկէն, այս եկեղեցւոյն մօտ գիշերը վրայ հասաւ ։ Մոլորելէ վախնալով, և չգիտնալով թէ որչափ հեռաւորութեամբ գեղ մը կրնայ գտնուիլ՝ հոն պառկելու համար, ստիպուեցայ հրամանքէդ հիւրընկալութիւն խնդրելու ինչուան առաւօտ ։

— Շատ բարով եկար ։ Բայց դէպ 'ի ո՛ւր պիտի երթաս, սիրելի հիւրս, հարցուց քահանան մեղմաւոր դողդոջ[...] ձայնով, խառն հետաքրքրութեան կ[...] ալով մը ։

Այս հարցմունքը զիս քիչ մը նե[...] ձգեց ։ Չէի ուզեր յայտնել իրեն [...] ճամբորդութեանս նպատակը, վախն[...] լով որ զիս վտանգի մէջ կը ձգեմ. բ[...] մէկալ կողմանէ յայտնելու ալ հար[...] կը զգայի, որովհետև իմ գեղս տա[...] ճամբան չէի գիտեր ամենևին ։ Դա[...] ձեւ նաև այս ծեր քահանային երև[...] թը, և անանկ մարդասիրութեամբ զ[...] ընդունելը կ'ապահովցնէր զիս իր վ[...] րայօք, և ինծի կը հաւատացնէր որ ին[...] աւելի լաւ կրնար օգնել ինծի քան Թ[...] ուրիշ մը, առանց եղածը մէկու մը յայտ[...] նելու ։ Անոր համար առանց վախի ի[...] մացուցի իրեն ո՛ւր երթալիքս, և առանց լռելու ըսի իրեն իմ բնիկ գիւղիս ա[...] նունը ։

— Հասկցայ, հասկցայ, կրկնեց մէկէն, այն գեղը շատ լաւ կը ճանչնամ։ Բայց դեռ լիովին երկու օրուան ճամբայ հեռու ես անկից. և անանկ դիւրաւ ալ չեմ կրնար քեզի ճամբան սորվեցնել. վասն զի հոն հասնելէն առաջ պէտք է շատ մը մէջէ մէջ պտոյտներ ընել ։ Բայց և այնպէս վաղը առաւօտ կը ջանամ կրցածիս չափ քեզ ճամբան ցուցընել, և մէկու մը որ հանդիպիս՝ հարցընելով, եթէ Աստուած ուզէ, կը հասնիս հոն առանց շատ դժուարութեան ։ Բայց դու անօթի պիտի ըլլաս, սիրելի պատանեակս, քիչ մը կեր ու վերջը պառկէ ։

Սիրով իր հրաւէրն ընդունեցայ, և կերայ. ինքը բարի գիշեր ըսաւ, և քաշուեցաւ, ըսելով. Վաղը առաւօտ կը տեսնուինք ։

Այս ծեր քահանային ձայնն ու կերպարանքն ինծի նոր չէին գար. կարծես թէ ուրիշ անգամ տեսեր էի զինքը. բայց որչափ ալ գաղափարներս կը կապակցէին և իմ այնչափ պատահարներուս յիշատակներն միտքս կը բերէի, չէի կրնար յիշել ոչ ո՛ւր և ոչ ե՛րբ իրեն հանդիպած ըլլալս, բայց և այնպէս համոզուած էի թէ այն առաջին անգամն չէր որ ինքը հետս կը խօսէր ։ Բոլոր-

դոկ գիշերը, որ չկրցայ աչքս գոցել, մերթ ընդ մերթ միտքս այն ազնիւ քահանային կ'երթար, և չէի կրնար իմ հետաքրքրութիւնս լեցընել: Վերջապէս առաւօտանց կանուխ ելայ զինք տեսնելու, որ արդէն ելած էր: Բարի լոյս մաղթելով, փութացուց որ երթամ. որովհետև, ըսաւ, դու պէտք ունիս աւելի գիշեր քան թէ ցորեկ ելնել անկից:

Այս իր խօսքերն շատ յանկարծակի բերին զիս, և չկրցայ կենալ առանց բացայայտութիւն մը խնդրելու իրմէ:

— Կարծեմ որ չեմ խաբուած. դու փախստական մը պիտի ըլլաս:

— Ի՞նչպէս գիտես այս բանս:

— Գուշակեցի. բայց մի՛ վախեր, ես քեզի վնասելու միտք մը չունիմ. մանաւանդ թէ ուր որ կրնամ օգնել քեզի, սիրով կը կատարեմ: Կրնաս ապահով ըլլալ վրաս: Բայց մեկնելէդ առաջ կ'ուզեմ բան մը հարցընել քեզի: Տասը տարի մը կայ, գեղի մը մէջ որ հիմայ չեմ յիշեր թէ ո՛րն է, կառքի մը վրայ հանդերձ երկու զինուորով տղայ մը տեսայ, որ ճիշդ քու երթալիք գեղէդ էր. անգութ ոճրագործութեան մը ամբաստանուած էր և անոր համար տասը տարուան բանտարգելութեան դատապարտուած էր: Իր անկեղծ պարզախօսութեանը վրայ գութս շարժեցաւ, և իր տարուելիք բանտին քահանային յանձնարարական թուղթ մը տըւի, թէպէտև ճիշդ տեղը չէի գիտեր: Մտածեցի որ քահանան թէպէտ զիս չէր ճանչնար, բայց հարկաւ իր եղբայրակցի մը խօսքը սիրով կ'ընդունէր: Բայց վերջէն բան մը չլսեցի ոչ պզտիկ բանտաւորին և ոչ իմ յանձնարարութեանս վրայօք:

— Քու թուղթդ ոչ երբեք իր ուղղեալ տեղը հասաւ:

— Բայց ո՞վ ըսաւ քեզի:

— Կրնաս ապահով ըլլալ. որովհետև այն տղան զոր տասը տարի առաջ այն կառքին մէջ տեսար, ես ինքն եմ:

— Իրաւցընէ՞. ուրեմն պատիժդ լմընցուցիր:

— Այո՛:

— Հիմա տո՞ւնդ կ'երթաս:

— Կը յուսամ:

— Գնա ուրեմն, և աղէկ ատեն կը հասնիս. ամենայարմար ժամանակին հոն կ'ըլլաս:

Այս վերջին խօսքերը շատ խորհրդաւոր կերպով մը հնչեցին ականջս. բայց չուզեցի ուրիշ բան հարցընել, վախէս որ չլուսընայ: Ողջունեցի և շնորհակալ եղայ բարերար հիւրընկալիս, և իր ցուցած ճամբէն գնացի. բոլոր օրը և գիշերուան մեծ մաս մը քալեցի: Հարցուցի թէ դեռ շատ հեռու էր իմ գեղս, և պատասխան տուին ինծի որ չորս ժամէ ետև կը հասնիմ: Թէպէտ երկայն ճամբէն յոգնած ու տաժանած էի, միտքս դրի որ ճամբաս շարունակեմ: Կը փափաքէի վայրկեան մը առաջ գեղը հասնիլ որ տեսնեմ թէ ինչ կ'ըլլար հոն, այն քահանային ապահովցընելէն ետև թէ աղէկ ատենին կը հասնիմ հոն:

Արևը քիչ մը բարձրացեր էր, երբ կը տեսնեմ կաղնիներու վրայէն դղեկին աշտարակին դուրս ցցուած կատարը, որուն վրայ մեծ դրօշ մը կը ծածանէր, զոր ուրիշ անգամ տեսած ըլլալս յիշեցի: Անբացատրելի է ուրախութիւնն որ յիս արթընցաւ այն աշտարակին տեսութեամբն՝ որ իմ ծննդեանս տեղը կը ցուցընէր, և ուսկից այնչափ տարի բացակայ էի: Սիրտս սաստիկ կը բաբախէր, և կարծես թէ անկէ ետև ճամբուն յոգնածութիւնն չէի զգար:

Շարունակ աչքս դէպ 'ի աշտարակին շերտերն ուղղեր էի, և միշտ աւելի երագաքայլ ընթացքով ան կողմը կ'երթայի, ինչպէս թէ այն շերտերն նաւորդին ճամբայ ցուցընող բարենշան աստղըն ըլլային: Կամաց կամաց աշտարակը երթալով աւելի կը տեսնուէր, դարնանային գեղեցիկ օրուան մը արևուն ճառագայթներէն լուսաւորուած, որոնք կարծես թէ աւելի պայծառ և լուսափայլ կերպով մը վրան կը զարնէին, զինքն իր բովանդակ վայելուչ չքեղութեամբն ինծի ցուցընելու համար:

Բայց երբ իմ հայրենի երկիրս մօտեցայ, չարագուշակ վախեր սկսան պաշարել զիս։ Մօրս վրայ կը մտածէի, առանց զինքը տեսնելու յոյս մը ունենալու։ Ինծի անանկ կու գար որ արդէն մեռած ըլլայ, այնչափ թշուառութեանց ծանրութեանը չկարենալով դիմանալ։ Վերջը խռովեալ երեւակայութեանս առջև կու գար այն ազնիւ ժողովրդապետը որ ինծի այնչափ բարիք ըրեր էր, և չէի յուսար զինքը մէյմ՚ ալ տեսնելու։ Վերջապէս այն աշտարակը մտքս կը բերէր այն հրդեհին սոսկալի գիշերը, հօրս մահը, տիրոջս սպանութիւնը, և Գաւառին կոմսին անզգամութիւնները և ուրիշ այնչափ ցաւագին յիշատակներ, որ զիս կը կեղեքէին և սիրտս կտոր կտոր կ՚ընէին։

Այս տխուր մտածմունքներով պաշարուած, կարծես թէ կը կլլէի դեռ այն քիչ մը ճամբան որ զիս գեղէն կը բաժնէր։ Մէյմ՚ ալ երբ ճամբուն պզտի դարձուածք մը հասայ, բովանդակ դղեկը և գեղին մեծ մաս մը դիմացս ելաւ։ Բայց ինչ զարմանք ունեցայ երբ բոլոր դղեակը կերպասներով և ծաղկեայ դրօշակներով զարդարած տեսայ. և լսեցի եկեղեցւոյն զանգակները որոնք ոչ թէ սրտիս այնչափ մեծ տրտմութիւն պատճառող չարագոյժ զանչերն կ՚արձըկէին, հապա 'ի նշան հանդիսի լայնաձայն կը հնչէին, նման այն տօնական օրերուն, որ իմ տղայութեանս ժամանակ այնչափ կը զուարթացնէին և կ՚ուրախացնէին զիս։ Ճամբուն վրայ խումբ խումբ այր և կանայք, զուարթացած և շքեղ զգեստնին հագած, մեծագոյն ուրախութեամբ դէպ 'ի գեղը կը վազէին, և մերթ ընդ մերթ հրացանաց և թնդանօթից բազմախուռն բոմբիւններն օդը կը հնչեցընէին։

Հանդիսի օր եկայ, ըսի մտքէս. բայց արդեօք ինչ կայ, կը հարցընէի ինքնիրենս մեծ հետաքրքրութեամբ և միանգամայն մեծագոյն անստուգութեամբ։ Երթանք տեսնենք։

Քանի մը վայրկենէ ետև գեղը մտայ։ Տնակի մը առջևէն անցայ, որուն պա[illegible]տուհաններն ու դուռը բոլորովին գ[illegible] էին. Ճանչցայ մէկէն որ այն տունն [illegible] ուր ծներ էի և ուր հայրս վախճանե[illegible] էր։ Ցարգանօք մը նայեցայ անոր, [illegible] երկրորդ անգամ տեսնելուս՝ [illegible] րայ արտասուաց երկու խոշոր կաթի[illegible]ներ ինկան։ Բայց այն գոցած դռնե[illegible] ու պատուհանները, այն չորս կող[illegible] տիրած լռութիւնն, և հոն կենդանի [illegible]րարած մը չտեսնելս, ազդոյ և անբարբառ լեզուով մ՚ ըսին ինծի, որ այն տնակին մէջ վախճաներ էր ուրիշ ինծի սիրելի և երկրիս վրայ ինծի միակ մնացած արարած մը. մայրս։ Զկրցայ անգամ մ՚ ալ հոն դարձընել աչքս և կրկին ու յորդառատ արտասուք չթափել։

Փութացայ եկեղեցին երթալու։ Առջևի հրապարակը լեցուած էր բազմախուռն ժողովրդեամբ որ սաստիկ ուրախութեան մէջ կը ցնծար։ Կը մտնեմ եկեղեցին, և փառաւոր զարդարուած կը տեսնեմ. աւագ խորանին դիմաց տեսայ զանազան կերպասապատ և ոսկի ժապաւէններով զարդարած նստարաններ։ Կը տեսնուէր որ ամենքը հետաքրքրութեամբ մը կը սպասէին, միշտ դէպ 'ի եկեղեցւոյն դուռը նայելով։ Ես այս ամեն բանը տեսնելով զարմացեր էի, և չէի կրնար երեւակայել թէ ինչ պատճառաւ այնչափ հանդէս կ՚ըլլուէր և այնչափ բազմութիւն ժողվուեր էր։

Քիչ մը ատենէն վերջը հրապարակին մէջ ցնծական աղաղակներ և շառաչող ծափահարութեամբ կանչեր լսեցի. կեցցեն ամուսինքն։ Եկեղեցւոյն մէջ ընդհանուր շշնչիւն մը ելաւ, և ամենքն սկսան իրարու ականջէն ըսել. Ահաւասիկ, ահաւասիկ։ Հետաքրքրութենէ շարժած կ՚ելլամ հրապարակը, և կը տեսնեմ որ դղեկէն երկայն դասակարգ մը կ՚ելլէ, անբաւ բազմութենէ շրջապատած, որ չերեւակայելու եռանդնոտութեամբ կը ծափահարէր։ Դասակարգը դէպ 'ի եկեղեցին կ՚ուղղուի. և անոր գլուխը դեռահասակ օրիորդ մը կար, ճերմակ հագած, գլուխը շուշանափայլ քօղ մը, վարդէ պսակով մը բոլ-

բած ։ Անոր քովը կեցեր էր փառաւոր հագուած մարդ մը, որ իրեն ձեռք կու տար․ այն ատեն իմացայ որ անոնք ամուսինք էին որ խորանին դիմաց հաւատարմութեան երդումն տալու կ'երթային ։

Անօգուտ է ստորագրելս ինչ որ այն վայրկենին զգացի ։ Ճանչցայ մէկէն որ այն օրիորդը Կարոլինան էր, իմ թըշուառ տիրոջս աղջիկը, և այն որ իրեն փեսայ պիտի ըլլար նոյն ինքն ամբարիշտ Պաւտին էր ։ Ոտքէս ինչուան գլուխս կը դողայի չար քան զանդամալոյծ. կ'ուզէի բազմութեան մէջ նետուիլ, այն անմեղ աղաւնին խլել այն բազէին ճիրաններէն, և անանկով զինքը այնպիսի թշուառութենէ մը ազատել ։ Բայց կը զգայի որ կարող չեմ քայլ մը ընելու. այնչափ զարմանքն ու զայրացմունքը քարացուցեր և ոտքս կոխած գետնին վրայ գամեր էին զիս ։

Դասակարգը մտաւ եկեղեցին ․ ամուսնոց ետևը կեցեր էր տանտիկինն, երեսը դեղնած և նիհարացած ․ կարծես թէ իր աղջիկը ոչ թէ հարսանեաց՝ այլ կախաղանի կը տանէր ։ Ես ալ մտայ եկեղեցին ․ և տեսայ խորանին քով ոտքի վրայ կեցած ծեր և տկար քահանայ մը, և ճանչցայ մէկէն ժողովրդապետն ըլլալը ։ Բայց ես իրեն շատ ուշ չըրի ․ խուռն ժողովրդեան մէջէն առաջ նետուեցայ և երկու ամուսնաց առջևն հասայ այն վայրկենին որ հարսանեաց արարողութիւնն կը սկսէր ։ Կարոլինա վեր վերուց քօղը և այնպէս բոլոր երեսը բաց թողուց ։ Գեղեցիկ էր իբրև գարնանային առաւօտեան ծաղիկ մը ․ կը նմանէր այն պարկեշտ և մաքուր կուսանաց, որոնք երկրիս վրայ հրեշտակաց գեղեցկութիւնն կը ցոլացընեն ։ Ես զինքը մէյմ'ալ չէի տեսած այն աղիտաբեր օրէն ետև, որ իմ չարաբաստ տիրոջս վերջինն եղաւ ։ Նաև մանկութեանը ժամանակը իր պատկերը միտքս տպաւորուած էր միշտ կենդանի քաղցրութեամբ ․ տեսնելով զինքը այնպէս գեղեցիկ, և իր ու նաև իմ հօրս սպանողին հարսն ըլլալու մօտ, խեղճ սրտիս մէջ կրից այնպիսի աղմուկ մը արթընցաւ, զոր խօսքով չեմ կրնար բացատրել ։ Կրօնական լռութեամբ բովանդակ արարողութեան ներկայ եղայ․ երբ Կարոլինային հարցուեցաւ թէ կ'երդնու կամաւոր յօժարութեամբ հաւատարմութիւն և սէր առ կողմն Պաւտինի, ինքը վերուց աչքերը աւագ խորանին վրայ եղած խաչելութեան, և երեսը կրակի պէս կարմիր կտրեցաւ, և դողդողուն ձայնով այո մը ըսաւ, որ լաւ կը տեսնուէր թէ բերանը կը հնչէր, բայց սիրտը չէր կրկներ ։

Այն միջոցին մէկ ծեր մը, աւելի աշխատութեանց և չարեաց բեռան տակ քան թէ տարիներէ ու ծերութենէ կորացած, ճակատը լերկ և գորշագոյն հերաց երկայն խոպոպներով, որ ուսոցը վրայ կ'իջնէին, ինծի կը մօտենայ և ցած բայց լաւ մը լսուելու ձայնով կ'ըսէ․ Հէնրիկ, լսեցիր․ անմեղ սպանդը տրուեցաւ'ի պատարագ իւր անգութ դահճին ։

Ան ձայնին որ բոլորովին նոր չէր զար ինծի, յանկարծ կը դառնամ և սաստիկ մտադրութեամբ այն անծանօթ խօսակիցս կը դիտեմ ։ Լաւ մը երեսը կը նայիմ, և իր գծագրութիւնն ինքնին ինծի բոլորովին անծանօթ չէր ։ Անիկայ հազիւ թէ ժպտելով հարցուց ինծի․

— Հէնրիկոս, զիս չե՞ս ճանչնար ։

— Կը ճանչնամ զքեզ, բայց լաւ միտքըս չգար ։

— Ես երդուընցայ քեզի որ տասը տարիէ ետև անհրաժեշտ դարձեալ կը տեսնեմ զքեզ․ ահաւասիկ իմ խոստմունքս պահեցի ։

— Ո՛հ, կանչեցի երազողի մը պէս, դու ես...

— Մարտինոս տարագիր ։

Այս անուան՝ ցուրտ սոսկում մը անդամներս պատեց ։ Կարելի՞ բան, ըսի միտքէս, որ այս չարագրգիռ ոգին դեռ հալածէ զիս ։

— Տե՛ս, Հէնրիկ, կրկնեց անիկայ բոլորովին պաղ անտարբերութեամբ մը անօրէն Պաւտին ահա իր չարութեանց, ոճրագործութեանց և նենգութեանց նպատակին հասաւ, և խորանին առ-

ջև, և նաև Աստուծոյ գիմաց, լիովին յաղթանակաւ մը իր անօրէնութիւնները կը կնքէ ։ Կը զոհէ սպանդ մը, մինչդեռ ուրիշ երկու սպանդներ վկայ են իրեն ։ Սոյն այս եկեղեցւոյն մէջ կը պտըտին հիմա երկու սրտմտալից և դեռ անվրէժ ստուերներ որ կեցած պայրագին այս անօրէնութիւններն կը դիտեն. քու հօրդ և տիրոջդ ստուերներն են անոնք. մէկը կը տեսնէ իր աղջիկը զինքը սպաննողին ձեռքը մատնուած. մէկալը կը նայի իր որդւոյն որ անտարբեր իր դահճին յաղթանակը կը տեսնէ ։ Փառաւոր յաղթութեան պսակը ժառանգեց, մէկ միջոցին հինգ անմեղ սպանդներ ոտքի տակ առնելով ։ Հենրիկ, կը յիշես դեռ այն երդմունքն որ ինծի ըրիր տասը տարի առաջ այն երկուղւոյն վրայ ուր իրարմէ բաժնուեցանք ։ Ես դեռ կը յիշեմ զայն, և եթէ դու չես յիշեր, այս ամբարիշտ տեսարանն որ աչքիդ առջևն ունիս, պէտք էր լաւ միտքդ բերեր զայն ։

Այս խորամանկ և համոզիչ խօսքերն իբրև թնդանօթի փոշւոյ կոյտի մը մէջ նետուած կրակախառն խանձող մը եղան ։ Այն ատեն զգացի որ սրտիս մէջ դարձեալ արծարծեցաւ նախկին ատելութիւնը, անցեալ դառնութիւններն, և այն վրէժխնդրութեան սաստիկ ծարաւը, զոր ժամանակն ու թշուառութիւնը քիչ մը մարեր էին ։ Բայց և այնպէս բառ մը չըսի. կոկորդս չորցածի պէս էր, և լեզուս այնպէս պնդապէս կաշկանդեալ էր, որ փուճ տեղ պիտի ջանայի քակել զայն ։

Երբ արարողութիւնն լմնցաւ՝ ամենքն ալ դուրս ելան եկեղեցիէն. ամուսնաց երևնալուն՝ առջի ծափահարութիւնքն և ուրախութեան ցոյցքն կրկնուեցան ։ Մենք ալ ժողովրդեան ետևէն գնացինք. զանգակներն դարձեալ հանդիսապէս կը զարնէին, հրացաններն ու թնդանօթները թանձրախուռն շառաչմամբ կը թնդային ։ Մարտինոս ձեռքս բռնելով և ուժգին ամփոփելով զայն՝ ըսաւ. Այս իրիկուն գիշերուան երկուքին՝ անտառին բերանը քեզի կը սպասեմ ։ Մեծ կարևորութիւն ունիմ քեզի հետ խօսելու ։ Պէտք է որ բոլոր այս օրս պահուըտած մնանք. ուրեմն այս իրիկուն կը տեսնուինք ։

Կը շարունակուի :

---

## Հին Ամերիկացւոց աստղաբաշխութիւնը.

### Մեքսիկոյի զոդիակոսը.

Բնական գիտութեանց մէջ աստղաբաշխութիւնը անտարակոյս ամենէն աւելի հետաքննական է, երբ մտածուի անոր թէ՛ նախնական և թէ ըրած կամ ընելիք յառաջադիմութեանց վրայ ։ Երկնից կազմութիւնը, ինչպէս որ արև, լուսին և աստղեր մեզի կը ցուցընեն, ամենէն առաջին խնդիրն է զոր մարդկային ճարտարութիւնն ուզեր է լուծել ։ Աստեղական մեծ մարմինը՝ ուսկից կու գան լոյս, ջերմութիւն, կենդանութիւն, ծաղկանց և պտղոց գեղեցկութիւն, արդէն մեր կողմանէ ստիպիչ և իրաւացի հետաքննութեան առարկայ մ'եղած է. բայց այս հետաքննութիւնը կը կրկնապատկի երբոր այս աստղին օրական և տարեկան շարժմունքը դիտենք ։ Օրուան և գիշերուան, վաստակոց և հանգստեան կառավարիչն, իշխանն ժամանակի և եղանակաց, թերևս միայն ինքն իր յատուկ լուսով փայլփլողն, միով բանիւ արևն՝ բնաւ մեր իւրաքանչիւր մտածութեանց և գործոց հետ ընկերացած է ։

Հին աստղաբաշխութեան պատմութիւնը յայտնապէս պատմագրողաց գրչին համեմատ՝ զանազան ազդեցութիւններ կ'ընէ ։ Փիլիսոփայի մտածութիւնները՝ անծանօթ արգասիքներէ և անկատար դիտողութիւններէ խորին ճշմարտութիւններ առաջ բերած են, հիմնեալ մերթ յարմար մերթ հակառակ կանխակալ կարծեաց և ազգային սնապաշտութեանց վրայ ։ Զանազան ազ-

բաց աստղաբաշխութեան պատմութիւնը համառօտ մը երկրորդելով՝ աւելի աղէկ կը հասկցուի այս բանս։ Հիմակու հիմայ Ամերիկոյ հին ժողովրդեան վրայ զբաղինք։

Կարմիր ցեղը՝ որուն քաղաքակրթութիւնը Մեքսիկոյի և Բերուի մէջ իր բարձրագոյն զարգացմանը հասաւ, յիրաւի նշանաւոր ծանօթութիւն մ'ունէր երկնային երևոյթից։ Օրինակի համար, հին Մեքսիկոյի գիտունք խաւարմանց պատճառը կը ճանչնային, շատ գիսաւորաց վրայ հաշիւ կուտային. ունէին նոյնպէս համաստեղութեանց դրութիւն մը, կը ճանչնային չորս մոլորակ արուսեակով մէկտեղ։ Կ'երևի թէ արևելքի հին ժողովրդոց նման, քարէ խողովակներ կը գործածէին աստղերը դիտելու համար։ Ամերիկայի հնախօսութիւնը կարմիր ցեղին աստղաբաշխութեանը վըրայօք քանի մը հետաքրքրական ծանօթութիւններ կուտայ, զոր հոս նշանակենք։

Նախ իրենց տումարին վրայ գալով, Մեքսիկացւոց տարին տասնեւութ ամիս բաժնուած էր, իւրաքանչիւրը քսան օրով, ամեն մէկ ամիս ալ չորս շաբաթ հինգ օրով. ամսոյն ամեն մէկ օրերն ալ մասնաւոր բառերով կը նշանակուէին, որք են. ծովային կենդանի մը, հողմ, տուն, փոքր մողէզ, օձ, մահ, այծեամն, ճագար, ջուր, շուն, մեղու, մարդ, եղէգն, յովազ, արծիւ, թռչուն, արևու շարժումն, կայծ, անձրև, ծաղիկ։ Երկրիս չորս կէտերն ալ յարմար դիրքով մը նշանակուած էին. ըստ Մեքսիկացւոց առջի կէտը արևելեանն էր՝ որուն նշանն էր եղէգ մը, արևմուտքի նշանն էր տուն մը, հիւսիսին՝ կոպիճ մը, հարաւին՝ ճագար մը։ Միջին Ամերիկոյ տումարներն ալ ընդհանրապէս Մեքսիկացւոց նման էին, սակայն քանի մը ցեղերուն տարին լուսնական ամիսներով կը լրանար, և իրենց քահանայքը ժամանակին ընթացքը կանոնաւորելու համար՝ դիտողութիւններ կ'ընէին։ Քիլիի մէջ Աւրօքանեանք արեգակնային տարի մ'ունէին 365 օրով, և տարի մ'ալ լուսնական՝ 12 ամսով, իւրաքանչիւր ամիսը 30 օր։ Այս գիտուն ժողովուրդը՝ մոլորակները աստղերէն կը զանազանէր. կը ճանչնար նաև արևադարձները և գիշերահաւասարները, և աստղերը համաստեղութեանց կը վերածէր։ Ուրիշ մասնաւորութիւն մ'ալ կարմիր ցեղին աստղաբաշխութեանը այս է՝ որ երկնային մարմնոց երևոյթները ճանչնալու համար, գետնին վրայ աստղաբաշխութեան պատշաճ շէնքեր կը բարձրացընէին։ Ինչպէս, Տարիվղէրեքի մէջ կանգնած էին երեք խոշոր քարեր այն դիրքով՝ որ արևելք և արևմուտք նշանակեն, և իրենց շուքովը ցուցընեն արևուն ելլելուն և մտնելուն որոշ վայրկեանը, արևադարձներուն և գիշերահաւասարներուն ժամանակը. բոլոր տարուան ընթացքին մէջ ալ իւրաքանչիւր միջօրէն։ Խոչիքոլքոյ բլրին կամ ծաղկանց լերան վրայ քննութիւն ընելու առեն խուց մը գտնուեցաւ՝ որուն առաստաղին վրայ բլրին գագաթան համապատասխանող ճեղքուած մը կար, և այնպիսի դիրքով մը՝ որ երբ արևուն ճառագայթները անկէ թափանցէին՝ հոն դրուած սեղանի մը վրայ կ'իյնային՝ ճիշդ այն միջոցը՝ երբ արեգակը կը կտրէր արևադարձները։ Քիտոյի մէջ արևադարձները դիտելու և արեգակնային տարին կանոնաւորելու համար՝ քարէ սիւներ կը գործածէին։ Նոյն քաղաքին մէջ կային նաև տասներկու սիւներ՝ մայր տաճարին չորս կողմը կանգնուած, որք արևու ժամացոյցի սլաքներուն պէս՝ 12 լուսնական ամսոց առջի օրը նշանակելու կը ծառայէին։ Թէպէտև Բերուի բնակիչքը այնքան յառաջադիմութիւն չէին ըրած որչափ Մեքսիկացիք, սակայն իրենք ալ շատ զարմանալի աստղաբաշխական կազմածներ ունէին. օրինակի համար 16 խողովակաձև աշտարակք Քուզքոյի բոլորտիքը, ութը արևելքէն ութն ալ արևմուտքէն բարձրացած, արևադարձները և ուրիշ երկնային մարմինները նշանակելու կը ծառայէին։ Նմանապէս

արևադարձներուն օրերը իմանալու համար, իրենց տաճարին առջև առանց ծածկի միջոցի մը մէջ քարէ սիւն մը կանգնած էին. այս սիւնը շրջանակի կեդրոնը դրուած էր, և իր ոտքէն դէպ 'ի արևելք և արևմուտք, գիծ մը քաշուած էին, որ ցորեկը որոշեալ կէտերու վրայ սեան շուքէն կտրուելով, արևադարձներուն մօտ ըլլալը կ'իմացնէր: Յայտնի է որ այս արևապաշտ ժողովուրդներուն քով, շատ զոհակալներ պիտի գտնուէին. և կը յիշուին անոնցմէ շատերը որ թէ շինուածքին նիւթովը, թէ մեծութեամբ և թէ աշխատանքով նշանաւորք էին: Այս բանս կը հաստատուի Մոնդէզումայի առ Գորդէզ ղրկած ընծաներուն ցանկէն, որուն մէջ նշանուած են երկու կլոր (զոհական) ափսէներ, որոնցմէ մէկը ոսկիէ էր՝ միւսը արծըթէ, երկուքն ալ կառքի անուոյ չափ մեծ: Անոնցմէ մէկն հիանալի քանդակագործութեամբ աշխատուած էր, ծաղիկներ և կենդանիներ ներկայացընելով. Գորդէզի զինուորները գտան նաև Կուադէմոզինի պարտէզին ջրհորին մէջ գեղեցիկ ղարև մը, ինչպէս այն ատեն կ'անուանէին: Քէնվէնուդոյ Չելլինի այս զոհակալներէն մէկ քանին տեսնալով հիացաւ: Աւելորդ է ըսելը որ այն ամեն բաները որ ոսկիէ և արծըթէ էին շատոնց կորան:

Մեքսիկոյ գտուած զոհակալը քարէ է, և գտուեցաւ 1790ին, աւերակաց տակ. շատերը ասոր վրայօք գրած են, մանաւորապէս Հումպոլտ, որուն գրածը միայն բաւական է զմեզ համոզելու Ամերիկացւոց աստղաբաշխական հմտութեանը վրայ: Այս քարէ զոհակալը ծակոտկէն երկաթակճէ (պազալդ) մը կտրուած և Մեքսիկոյ փոխադրուած էր, բայց որոշուած տեղը դնելու մօտ՝ զանիկայ բռնող կապերը կտրուելով՝ ընկաւ լճին մէջ, ուր կորան նաև քրմապետն և ուրիշ անձինք: Անձինքը կորան, բայց զոհակալը ջրէն հանուելով փոխադրեցաւ Հուիցիլոբոջդլիի տաճարը, ուր պատերազմի գերեաց անողորմ զոհերովը իր տօնախմբութիւնը կատարուեցաւ. այս բանս 1512ին եղաւ, Գորդէզին և իր ընկերացը հասնելէն քանի մը տարի առաջ: Հիմայ այս զոհակալը, արդէն շատ մաշած, Մեքսիկոյի միջնաբերդին մէջ է, օդին ամեն մասսուց ենթակայ: Երանի թէ ամեն կարելի ջանք ըլլայէր՝ մերձակայ և անտարակոյս ապականութենէ ազատելու՝ այնպիսի նշանաւոր քաղաքականութեան հետաքրքրական մնացորդը, որուն նման շատ քիչ հետք թողած է:

---

Սպանիոյ հին, միջին ու ներկայ ժամանակաց պատմութիւնը.

(Տես երես 172)

Հին ժամանակք: — Սպանիոյ նախկին բնակիչքն եղան իբերացիք և կելտք, որք ըստ Դիոդորի Սիկիլիացւոյ յետ ընդերկար պատերազմաց միաբանեցան երկիրը մէջերնին բաժնելու, նաև դաշնադրութիւնք իրարու հետ խառնուեցան, և տեղ տեղ մի և նոյն ժողովուրդը ձևացան: Կելտք հիւսիսային և արևելեան կողմերը ստացան. իբերացիք ալ հարաւային և արևմտեան մասերը գրաւեցին. իսկ կելտիբերացիք 'ի միջին բնակեցան: Քաղաքականօրէն անհամար ցեղերու բաժնուած ըլլալով երկիրը՝ և լերանց պարերով 'ի բնէ կտրուած ըլլալով՝ ընդդիմակալութեան զարմանալի հանճարովն հանդերձ չկրցաւ ետ մղել յաջորդաբար վաճառականութեան սիրով և արծաթի և ոսկւոյ հանքերը պեղելու փափաքով իր վրայ յարձակողները: Փիւնիկեցիք և Յոյնք գաղթականութիւններ հաստատեցին հոն ծովեզերաց մօտ. առաջիններն 'ի հարաւոյ ի կադէս կամ Գատիքս 1100էն սկսեալ Գարտէիա, Հիսպալիս կամ Սեւիլլիա, Մալակա, Գորտովա, և այլն. և երկրորդները հիւսիսային արևմտեան կողմէն 'ի Հռոդոս կամ Հռոզաս՝ կառուցեալ 'ի Հռոդացւոց 900էն ատենները, Սագունտոս կամ Մուրվիէտրոյ (Գաղթականութիւն Զակինթացւոց), էմպո-

ըսոն կղզւոյն Ամպուրիաս (Գաղթականութեան Մարսիլլիոյ), և այլն։ Բայց Կարքեդոնացիք Գ դարուն կէսէն հրաւէրին իրենց շահաւոր ընելէն ետքը բովանդակ հարաւային ծովափանց տիրապետելու համար, առաջին պունիկեան պատերազմէն ետքը ուզեցին Սիկիլիոյ մէջ ըրած կորուստնին Սպանիոյ մէջ դարձեալ ձեռք բերել և յաջողեցան։ Ամիլկար Բարկաս ինն տարուան մէջ Թերակղզւոյն ամբողջ հարաւային և արևմտեան մասը նուաճեց և Լուսիտանիացւոց դէմ ըրած դժբաղդ մարտակռուոյն մէջ ինկաւ մեռաւ 237-229։ Ասդրուբալ իր փեսան ու յաջորդը գընաց յարևելից նոր Կարքեդոնը (Կարթագինէ) հիմնեց և ինչուան Էպրոյ առաջ գնաց, ուր Հռովմայեցիք արգիլեցին զինքը 227ին դաշնադրութեամբ. յորում պայմանեալ էր նաև զէն չհասցընել իրենց դաշնակից Սագունտոս քաղաքին որ այս գետին հար. կողմը կ'իյնար։ Աննիբալայ այս քաղաքս պաշարելն ու գրեթէ ամբողջապէս կործանելը 219ին՝ պատճառ տուաւ երկրորդ պունիկեան պատերազմին, որով Կարքեդոնացիք կորուսին զՍպանիա և Հռովմայեցիք ստացան։ 197էն սկսեալ երկու նահանգ բաժնուելով 'ի վերուստ 'ի հիւսիսոյ Տուրոյի և Էպրոյի, և վարով 'ի հարաւոյ, երկայն ժամանակ ժողովրդեան չարքաշութեամբն ու քաջութեամբը ինքզինքը պաշտպանեց և միայն իր ցեղերուն անմիաբանութեանը ընկճուեցաւ, բազմաթիւ և կիրթ թշնամւոյն պաղարիւն անգթութեանբըն ու վատ դաւաճանութեամբը։ Երբոր Վիրիաթ անունով լուսիտանիացի հովիւ մը կրցաւ քիչ մը ատեն դարձեալ այս բաժանեալ ժողովուրդները միաբանել, հետզհետէ վեց զօրավարաց յաղթեց և Հռովմայ հետ հաւասար շահով դաշինք դրաւ. Կեպիոն զինքը սպաննել տուաւ 140ին, և Սկիպիոն 133ին բովանդակ Թերակղզւոյն տիրեց. որ 'ի զուր ջանաց դարձեալ գլուխ վերցընելու պաշտպան և թիկունք կենալով աքսորեալ Սերտորիոսին ազնուապետականաց կողմնակցութեանը դէմ, զոր Սիլլա զօրացուցեր էր. 81-72։ Միայն Պիրենեան պարալերին ցեղերը կիսով անկախ մնացին, նոյն իսկ Օգոստոսի իրենց դէմ ըրած յաղթական արշաւանքէն ետքը. 26-21։ Իրեն հրամանաւ Սպանիա իրեք նահանգի բաժնուեցաւ 26 տարի Ն. Ք. զոր յետոյ Վեսպասիանոս չորս նահանգի վերածեց. յետոյ չորրորդ դարուն մէջ հինգ նահանգ եղաւ, և այս հինգ նահանգները՝ Բալէարեանց և Տէնգիտանեան Մաւրիտանիոյ հետ կազմեցին Սպանիոյ Թեմը, որ էր Կելտաց իրեք կուսակալութիւններէն մէկը։

Լուկանոս, Սենեկայք, Մարտիալէս և Տրայիանոս կայսրը սպանիացի էին։

*Միջին դար. Հռովմէական և արաբական առաջին արշաւանք։*— Սպանիա ալ Կելտաստանի նման առաջին հռովմէական երկիրն եղաւ ուր գերմանացի Պէրպէրք թագաւորութիւններ հաստատեցին. 409էն 'ի վեր Սուեվեանք արևմտեան հիւս. կողմը հաստատեցան, և 'ի Կալիցիա և Գարրաքոնէզի մէկ մասին մէջ. Ալանք յարևմուտս և միջին կողմերը, ի Լուսիտանիա և 'ի Կարթագինէ. Վանտալք հար. կողմը և 'ի Բետիկէ։ Քանի մը տարի ետքը, 412էն 416, Ադոլփեան վիսիգոթք Գաղալոնիոյ վրայ յարձըկեցան, որ Հռովմայեցւոց էր տակաւին. և երկայն ժամանակ բովանդակ Թերակղզին իրենց հնազանդեցաւ։ Վալլիայի իշխանութեան տակ 417ին Վանտալաց թագաւորութիւնն 'ի շահ հռովմէական կայսրութեան կործանուելէն ետքը, որ թէպէտ 421ին դարձեալ կանգնեցաւ՝ բայց քիչ ատենէն 429ին Ափրիկէ փոխադրեցաւ, և Ալանացն իսկ կործանելէն ետքը՝ որ անհետ եղաւ ան ատեն 'ի պատմութենէ, իրաւ է որ Գադալոնիան Թողուցին ուր հաստատուած էին նախ և գնացին Կելտաստանի հար. արևմտ. կողմը, զոր տուաւ իրենց Ոնորիոս կայսրը 419ին. բայց այսու կրցան յետոյ քաջասիրտն Եւրիկեայ հետ բովանդակ Սպանիան ձեռք ձգել, 466—

469 ։ Սուեվաց սրածայր երկիրն ալ որուն նախ չէին տիրած, 585ին ձեռքերնին ինկաւ. բայց արդէն նոյն ժամանակէն իրենց տկարանալն սկսեր էր ։ Կլովիս յաղթական հանդիսանալով 'ի Վուիյլէ 507ին կելտասատանի մէջ ունեցած ամենայն կալուածներն յափշտակեր էր, ի բաց առեալ զՍեպտիմանիա ։ Ցուստինիանոս յոյն կայսրը երկու թագաւորական գահուն ցանկացողաց մէջ յարմար և չահաւոր ժամանակը գտեր էր և գրաւեր էր զվալենցիա և զԲետիկէ արևելեան ։ Եթէ 624էն առաջ Վիսիգոթք կրցան Յոյները հալածել, դար մը ետքը նոյն յաջողութիւնը չունեցան ընդդէմ Արաբացւոց. Խսերէսի մարտակաւով 711ին ամբողջ թագաւորութիւնը մահմետականաց ձեռքն անցաւ, և հազիւ կրցան անկախութեան պաշտպան կեցող քանի մ'անձինք Գելագիոսի առաջնորդութեամբն ազատութեամբ յԱստուրիա մնալ ։

**Պայքարումն Արաբացւոց եւ Քրիստոնէից ։** — Սպանիա նախ և առաջ Արաբացւոց ընդարձակ պետութեանը մարզ ըլլալով, զոր 750էն սկսեալ Ապասեանք կը կառավարէին՝ բաժնուեցաւ իրենցմէ 756ին, և խալիֆատ Ապտիռահմ առանձին տէրութիւն մ'ըրաւ, Արևմուտից կամ Գորտովայի խալիֆայութեան ։ Այս խալիֆայութեան պայծառութիւնն ու փառաւորութիւնք երկու դարի չափ արգելք չեղաւ Աստուրեայց փոքրիկ տէրութեան անցր քան զՏուրոյ գետ տարածուելու, և 792ին Ովիէդոյի թագաւորութիւն ըլլալու և յետոյ 913ին Լէոնի. ուրիշ կողմանէ Գեպինոս կարճն նուաճեց զՍեպտիմանիա և Կարոլոս Մեծն Էպրոյի հիւս. կողմն երկու մարզիզութիւն (Marches) հաստատեց, որոնցմէ մէկը Թ դարուն Պարցհելոնայի անկախ կոմսութեան այլափոխեցաւ, և միւսը 'ի սկիզբն Ժ դարուն 905ին Նաւարրայի թագաւորութեան ։ Այս երկքին վրայ կ'աւելնային արդէն, ոչ այնչափ իրական՝ որչափ անուանական աւագութեամբ, Լէոնի և Նաւարրայի թագաւորները, Գաստիլլիոյ և Արակոնայի կոմսութիւնները, որ խալիֆայութեան քանի չափ աններշան իշխանութեանց բաժնուելէն վերջը 976–1031, թագաւորութիւն կանգնեցին և թագաւոր եղան 1034ին Նաւարրայի Մեծին Սանչին երկու որդիքը, որոնց հայրը 1028ին ժառանգ եղեր էր այս երկու թագաւորութիւններէն առաջնոյն կոմսութեան ։ Մահմետականք 1085ին ինչուան Դակոյ հալածուելով և զԴոլետոյ կորսնցընելով Նաւարրայի հզօր ազգատոհմին պատճառաւ՝ որոնք Լէոնի թագաւորութիւնը ստանալով 1037ին հինգ քրիստոնեայ տէրութիւններէն չորսին տէր եղեր էին, իրենց օգնութեան կանչեցին մոլեռանդն Ալմորավեանքը, որք Մարոքի տէրութիւնն ու քաղաքը հիմնած էին ։ Ափրիկէի այս վայրագ թափառականները հաւասարապէս վնասակար եղան թէ Արաբացի և թէ քրիստոնեայ Սպանիոյ. 1086ին յաղթական ելլելով 'ի Զէլագա, նախ և առաջ կարող սեպուեցան բովանդակ թերակղզին ընկճելու ։ Բայց և Սպանիացիք իրենց կողմանէ բաւական նեցուկ և թիկունք գըտան. գաղղիացին Հենրիկոս տը Պուրկոնեը և անոր որդին Ալփոնսոս Աշխարհակալը (el Conquistador) նոր թագաւորութիւն մը հաստատեցին, որ է Պորդուգալի թագաւորութիւնը, 1034-1139, երբ ամուսնութեամբ մը Լէոնի և Գաստիլիոյ թագաւորութիւնը նոյն ազգատոհմէն ուրիշ ճիւղի մը կ'անցնէր 1126ին, և երբ Արակոնայի գահը Պարցհելոնայի գաղղիական ազգատոհմին կը վիճակէր, 1137ին ։ Մինչ դար մ'ետքը 1234ին Շամբանեի կոմսերը Նաւարրայի թագաւոր եղան՝ քրիստոնեայ Սպանիոյ հարստութեանն գաղղիական սերունդքն էին որ տեղացի հարստութեանց սկսած անկախութիւնը ամբողջացուցին բովանդակապէս ։ Ալմոհատեանք Ափրիկէի մէջ ի կէս ԺԲ դարուն Ալմորավեանց յաղթելով՝ ուզեցին իրենց պէս տիրել Սպանիոյ, բայց 1212ին Լաս-Նավաս-տէ Դոլոզայի մեծ յաղթութեամբ՝ ամենայն վտանգք որ նախ անկախութեան վնասել կը սպառնային՝ բարձան, և քրիս-

տոնեցայք ամեն կողմանէ մահմետական երկիրներուն մէջ յառաջեցին. յաջորդելով Արականն մեծցաւ իրենց փառավոր տուժիւք Բալէարեանց և Վալենցայի թագաւորութեան. 'ի միջոցի, Ս. Փերդինանդոս Գ. Գաստիլեան՝ մօրաքեռորդի Ս. Լուդովիկոսի 1217-52, տիրապետեց բովանդակ հուատալքիվիրի (Գորտովա, Մուրցիա, Ցաէն, Սեւիլիա). յաջորդ, Ալփոնսոս Գ. Լուսիտանիացին 1249—53 Ալկարվեանքն բռնացաւ. միայն մաւրիտանացի թագաւորութիւն մը մնաց որ է Կրանադայինը, և զայն 'ի վեր փորձեցին կանգուն պահել Մերինեանք յաջորդք Ալմոհատեանց 'ի Մարոք 'ի վերջ ԺԳ և յսկիզբն ԺԴ դարուց. 1340ին Դարիֆայի մօտ Ռիոյ Սալատոյի ափանց վրայ բոլորովին յաղթուեցան։ Եթէ Կրանադա դիմակալեց ինչուան ԺԵ դարուն վերջը, պատճառն ան էր որ միաձակայ երեք տէրութիւնք՝ Արական, Գաստիլիա և Բորդոգալ, ուրիշ գործոց և ձեռնարկութեանց և կամ քաղաքական պայքարմանց զբաղած էին, որով չկրցան անընդհատ առաջ տանիլ Սպանիոյ հին խաչակրութիւնը։ Գաստիլիա անդադար ներքին հերձուածներով կը կեղեքէր. Արականն կը յափշտակէր զՍիկիլիա Անժուի ազգատոհմին ձեռքէն, 1282ին, Բիզացւոց ձեռքէն զՍարտենիա, 1323-26, կը տանէր զՆափոլի 1435ին։ Բորդուգալ ԺԵ դարուն սկիզբէն Ափրիկէի ծովեզերաց վրայ տիրապետութիւններ ընելու և նոր երկիրներ գտնելու զբաղած էր։ Վերջապէս Գաստիլեան Իզապելլայի Փերդինանդոս Արականացւոյն հետ ամուսնանալը 1467ին և յաջորդաբար երկու ամուսնաց այս երկու աշխարհաց թագաւորութեան գահակալելը, 1474—1479, Կրանադայի թագաւորութեան անկումը պատճառեցին 1492ին և Նոր Սպանիոյ սկզբնաւորութիւնը։

Մի և նոյն ժամանակի մէջ որ սպանիական պետութիւնք կը ձևանային կը մեծնային, իրենց կառավարութիւնք կանոնաւորեալ էր. Վիսիգոթաց՝ Դոլետոյի ժողովոցն և խառն ժողովոց, որոնք մի և նոյն անունը պահեցին արքայական տիրապետութենէն ետքը, յաջորդեցին ԺԲ դարուն Գորդէս ժողովները, երբ քաղաքաց երեսփոխաններն երկու արտօնութեան պատուէրներն ստացան։ Այս ժողովները կը սահմանաւորէին մանաւորապէս թագաւորական իշխանութիւնը, զոր արդէն իսկ նուազեցուցած էին քաղաքաց առանձնաշնորհութիւնները (fueros), և Ալգանդարայի, Գալատրավայի, Ս. Յակոբայ, Ավիզի կրօնաւորական և զինուորական կարգաց իշխանութիւնը, որք հիմնուած էին ԺԲ դարուն ըստ նմանութեան յԱրևելս եղածներուն։

Նոր ժամանակք. 1. Փերդինանդոս Ուղղափառ և Աւստրիոյ ազգատոհմը։ — ՅԱրականնա և իրմէ կախումն ունեցող իտալական երկիրներու մէջ (Սիկիլիա, Սարտենիա, Նափոլի), 'ի Գաստիլիա և Կրանադայի թագաւորութեան մէջ, Փերտինանտոս Ուղղափառ մինչդեռ թագաւորաց իշխանութիւնը կ'ընդարձակէր՝ նաև աւելցուցեր էր յայսկոյս Պիրենեանց, Սպանիական Նաւարան 1512ին. և յայնկոյս Ռուսսիլեոնը, Արականացի իշխանաց հին կալուածը՝ որ քիչ մը առեն իրենց ձեռքէն կորզեալ էր, 1493ին. Միջերկրականին միւս կողմը Ափրիկէի շատ քաղաքներ (Օրան, Պուճիա, Դրիբոլի, 1509—10)։ Գոլոմպոս ալ իրեն ժամանակը զԱմերիկա գտաւ (1432) ուր սկսեր էին գաղթականութիւններ ձևանալ, և որուն քիչ առենէն նաև մեծ մասին տիրեցին (Մեքսիքոյ, Բերու և այլն)։ Այս ամենը ժառանգութիւն եղաւ 1516ին իր թոռանը (petit fils) Կարոլոս Աւստրիացւոյն (Կարոլոս Հինգերորդ) որ արդէն իր հօրը Փիլիպպոս Գեղեցկի մահուամբը ժառանգեր էր 1506ին Ստորին Նահանգները և Ֆրանշ կոմսութիւնը, որուն նաև քիչ առենէն հայրական պապուն Մաքսիմիլիանոս Աին մահուամբը ժառանգութիւն ինկաւ 1519ին Գերմանիոյ մէկ մասը և կայսրութեան տիտղոսը։ Եթէ

Ցանիկը դարձեալ ձեռք ձգեցին իրենց թագաւորութեան ժամանակ Տրիպոլի և Թունիս 1551–55, ինքն անոր փոխարէն Միլանու շրջակայ երկիրներն առացեր էր 1535ին և իր որդին Փիլիպպոս Բ. անոնց վրայ աւելցուց նաև Բորդուգալը 1580ին: Սպանիական պետութիւնը ԺԶ դարուն մէջ ուրեմն առաջին հզօր և վտանգաւոր տէրութիւնն էր: Բայց Կարոլոս Հինգերորդի սերնդոց ժամանակ փութով անչքանալով կերպով մը հետևեցաւ իրեն վրայ թագաւորող ազգատոհմին: Փիլիպպոս Բ.ի անզիջողութիւնն ու բռնակալ վարչութիւնը Ստորին–Նահանգաց բաժնուելուն պատճառ եղաւ, յորմէ ելաւ Միացեալ–Գաւառաց հասարակապետութիւնը, 1566–1648. նաև ինքնին Բորդուգալ իրեն լուծը թօթափեց հանգերձ իրեն գաղթականներովը՝ Փիլիպպոս Դ.ի ժամանակ 1640ին. Արգուա, Ռուսսիյիոն, Հար. Ֆլանտրա, Ֆրանշ-կոմնութիւնը հետզհետէ Գաղղիոյ ձեռքն ինկան, 1640, 42, 67, 74, որոնք ձգեցին դաշնադրութիւնք Պիւրենեանց, Էքս–լա–Շափէլի և Նիմէկի 1659, 68, 78:

Մի և նոյն ժամանակի մէջ նաև Սպանիոյ ժողովուրդը, երկրագործութիւնը, ճարտար արուեստներն ու վաճառականութիւնը կը նուազէին և կ'իյնային: Բազմաթիւ Սպանիացւոց արտաքին նահանգներու մէջ պանդխտիլը զանոնք վարելու և բռնելու համար, և բաղդախնդրութեան համար Ամերիկա երթալը, Փիլիպպոս Բ.ի հարստահարող քաղաքագիտութիւնը, Փիլիպպոս Գ.ի ժամանակ Լերմեայ դքսին պատճառաւ մեկդի ձգուելով, որ դարձեալ Փիլիպպոս Դ.ի ժամանակ Օլիվարէս ձեռք առաւ. Հաւատաքննութեան արքունական ատենին խստութիւնքն՝ որ Փերտինանտոս Ուղղափառէն ետքը ամենայն սաստիկ միջոցներու ձեռք կը զարնէր, Թերակղզւոյն մէջ բռնութեամբ կրօնական միութիւն պահելու համար. այս ամենայն պատճառները Սպանիոյ մէջէն շատ բազուկներ և անբաւ հարստութիւն հեռացուցեր էին. 1492ին Հրէից աքսորուիլը, ինչպէս նաև Մաւրիտանացի սերնդէ եղող ամենայն ընտանիքաց արտաքսուիլը 1609–10 զրկեր էին զինքը իր ամենէն աւելի գործունեայ և ճարտար ժողովրդէնէն. ասոնց հետ մէկտեղ նաև հարաւայնոց անհոգութիւնը և ձեռագործական աշխատութեանց դէմ ունեցած նախապաշարմունքնին, Ամերիկայի մեծագին մետաղաց տուած նախապատուութիւնը՝ քան թէ երկրի և ճարտարութեան իրական գանձուցը. Մեսդայի հօտից ներբեալ ասպատակութիւնքը, անթիւ երկիրներու անմշակ կամ ամենաքիչ մշակեալ ըլլալը, անհամեմատ և ընկճող եկեղեցական մատակարարութիւն մը. ահաւասիկ այլ և այլ կործանման պատճառներ որոնցմով չմնաց 'ի Սպանիա 1700ին՝ երբ 6,000,000 բնակիչ ունէր միայն, ոչ հասարակաց գանձ, ոչ բանակ զինուորական և ոչ ծովային զօրութիւն:

Սպանիոյ մէջ ԺԶ դարուն և ԺԷին առաջին մասին մէջ փայլեցաւ Սրբուհին Թերեզիա վեհ նրբութեամբ 'ի հոգևորս (mysticisme), և Սերվանդէս՝ անհամեմատ կատակաբանութեամբ. Նշանաւոր եղաւ Ալոնզոյ տէ Էրչիլլա փորձած Արաուգանեան դիւցազներգութեամբը՝ որուն մէջ տեղ տեղ աղէկ յաջողած է. անուանի եղան պատմագրաց դասէն Մէնտոզա, Մարիանա, Հէրրէրա և այլն. և երկու թատերգակ բանաստեղծք Լոբէ տէ Վէկա և Քալտէրոն, որոնք իրենց մտաց անսպառ բեղնաւորութեամբը մեծ արդիւնք ստացան. Նոյն դարուն մէջ նկարչութիւնը փառաւորողքն ալ էին տէ Վէլասգուէս, տէ Մուրիլլօ, տէ Զուրպարան, տէ Ռիպէրա: Բայց 'ի վերջ ԺԷ դարուն կարծես թէ գրականութիւն և արուեստք Սպանիոյ մէջ մարելու վրայ էին՝ ինչպէս այլ ամենայն ինչ, երբ նոր հարստութիւն մը թագաւորական աթոռը ելաւ:

2. **Բուրպոնի ազգատոհմը.** — Կարոլոս–Հինգերորդի վերջին սերնդեանը մահուամբը 1700ին, սպանիական

պետութիւնը անցաւ Լուդովիկոս ԺԴ.ի մէկ թոռանը, Փիլիպպոս Ե.ի բայց Գուրպոնի ցեղին այս կրտսեր ճիւղը եւրոպական պատերազմէ մ'ետքը կրցաւ հաստատուիլ՝ որ Ուդրեխդի դաշնագրութեամբը լմնցաւ, 1713ին, անդամատութեամբ մը՝ որուն դէմ Ալպէրոնի քանի մը տարի ետքը 1717—19, 'ի զուր փորձեց բողոքել: իր Թերակղզւոյն նահանգացը վերածուելով 'ի բաց առեալ զՃիպրալթար, և Ամերիկայի գաղթականութեանցն և Բալէարեանց՝ 'ի բաց առեալ զՄինորքա, գոնեա թագաւորութիւնը 'ի ներքուստ քիչ մը վիճակը բարելաւցուց: Նոյն հարստութեան առաջին թագաւորները՝ Փիլիպպոս Ե. Ֆերտինանտոս Զ. Կարոլոս Գ. կարգաւորեցին բանակը, զօրացուցին ծովային ուժը, ելեւմուտքը շտկեցին և պաշտպան եղան վաճառականութեան և արուեստից: Երբ 1788ին վերջին թագաւորը մեռաւ, Սպանիոյ ժողովուրդը տասը միլիոնն անցեր էր, Մինորքա դարձեալ ընկճուած 1781ին ինչպէս նաև Լուիզիանա 1763ին: Բայց այս յառաջադիմութիւնք տեղի տուին ուրիշ նոր անկման մը առջև, և արդէն Կարոլոս Դ.ի ժամանակ Սպանիա կորսնցուցած էր զՕրան ու 1782ին Ալճերիացւոց ձգեր էր Ս. Դոմինիկոսի սպանիական մասն ու Լուիզիանան Գաղղիոյ պահանջմացը պատճառաւ 1795—1801. Երրորդութեան կղզին ալ Անգղիոյ թողեր էր 1802ին երբ Նաբոլէոնի կողմանէ իր եղբօրն Յովսէփ Պոնաբարդի Սպանիոյ թագաւորական գահը ելլելովը ծագեցաւ Թերակղզւոյն մէջ անկախութեան սոսկալի պատերազմ մը, 1808—13: Գորդէս ժողովքը չուզելով Գաղղիական թագաւորի մը գահը ելլելը 1812ի Սահմանադրութեամբ 1791ին խռովյուզեալ Գաղղիոյ օրինադրութեանցը կը հետևէին. գերագոյն տէր ազգը կը հրատարակէին և թագաւորութիւնը՝ որ երկու դարէ 'ի վեր գրեթէ միահեծան էր Սպանիոյ մէջ, իր իշխանութեանը մէջ սաստիկ չափաւորեալ տեսակ մը ժառանգական նախագահութիւն մը կ'ընէին: Գաղթականութիւնք ալ իրենց կողմանէ 1808էն 'ի վեր մայր հայրենեաց տագնապն ու վիճակը պատեհ առնելով ջանացին ազատութիւննին ձեռք ձգել: 1814ին Ֆերտինանտոս Է. դառնալով բացարձակ իշխանութեան հաստատուած ժամանակ՝ քիչ ատենէն տեսաւ խռովարար մասին 1820ին դարձեալ 1812ի Սահմանադրութիւնն իրմէ պահանջելը և Գորդէս ժողովոյն համահաւաքումը, և գաղղիական արշաւանքը պէտք եղաւ 1823ին զինքն իրեն արտօնութեանցը մէջ հաստատելու համար: իսկ արտաքոյ ստիպուեցաւ որ Նոր-Աշխարհին գաղթականութիւնները վերստին ստանալու ակնկալութենէն հրաժարի: Քաղաքական սկզբանց պայքարմանը յաջորդեց իր մահուամբը 1833ին յաջորդութեան համար ծագած քաղաքական պատերազմ մը: Զօրութեամբ երկրին հին Սահմանադրութեանը և Գորդէս ժողովոյն 1789ին ըրած որոշմամբը՝ որ հրատարակեցաւ 1830ին, Իզապէլլա Բ. իր դուստրը՝ մայր դշխոյին Մարիա-Քրիստինայի խնամակալութեանը ներքև թագուհի հրատարակեցաւ. 1834ին խնամակալուհին արքունական պայման (statut royal) անուամբ սահմանադրական հրովարտակ մը հանեց, միջին սահմանաւ ընդ մէջ միահեծան վարչութեան և 1820ի ազատ կառավարութեան. բայց Տոն Քարլոս՝ նորահասակ թագուհւոյն հօրեղբայրը երբև անվաւեր քարոզեց 1789ին գործը, և թագուհւոյն դէմ՝ ինքնիշխան-միաբանութեան (auto-acordado) վրայ յեցաւ, որով Փիլիպպոս Է. 1713ին հաւանութեամբ Գորդէս ժողովոյն՝ իգական սեռը թագաւորելու իրաւունքէն զրկեր էր: Ասկէ արիւնահեղ կռիւ մը ծագեցաւ որ և վերջացաւ սակ 1839ին պահանջողին բանի հեռանալովը, և խռովարար կամ յառաջադիմութիւն ուզող մասին նորանոր փորձերովը ճղճղեցաւ, որ 1836ին պահանջեց առ ժամանակ մի դառնալ 1812ի դրութեան և յետագայ տարին սահմանադրութիւնն

աչքէ անցընել։ Երկու անձինք մասնաւո֊րապէս նշանաւոր եղան Իզապէլլայի Բ.ի գահը պաշտպանողներուն մէջ, Էսբար֊դէրոյ՝ որ 1839ին դուքս Յաղթութեան կոչուեցաւ, և Նարվաէզ՝ անուանեալ դուքս Վալենցիայի 1843ին։ Ապստամ֊բութիւն մը 1840–43 պատճառ եղաւ որ Էսբարդէրոյ ինքնին ձեռք առնու Մարիա – Քրիստինայի խնամակալու֊թիւնը. ուրիշ երկրորդ խռովութեամբ մը յետոյ հալածեցաւ ինքն 'ի Սպա֊նիոյ, և այս՝ տարի մը առաջ կանխել տուաւ Թագուհւոյն օրինաւոր հասա֊կաւորութիւնը, և այն ժամանակէն ին֊չուան 1851 միշտ երկրորդն եղաւ վա֊րիչ գործոց տէրութեան. 1845ին աւելի միապետական մտքով աչքէ անցընել տուաւ 1837ին սահմանադրութիւնը։ 1854ին զինուորական ապստամբութիւ֊նը գարձուց զԷսբարդէրոյ և յառաջա֊դիմութիւն սիրողներն յիշխանութիւն, զոր չափաւորականք կորզեցին իրենց ձեռքէն. 1858ին Օ' Տոննէլ իր ժողովա֊կաններովը՝ որ այս կողմին բարակի֊մաստ մասերէն մէկն էր, յաջողու֊թեամբ Մարոքի պատերազմն 'ի գլուխ տարաւ (1859–60), և անկէ ետքը Սպա֊նիա եւրոպական մեծ տէրութեանց կարգն անցաւ։

Այս վերջերս ալ՝ ինչպէս յայտնի է, Սպանիա՝ յետ քանի մը տարի առաւե[...] լագոյն ազատութեան և լաւագոյն յա[...] առաջադիմութեան սիրով ընդ երկա[...] յուզուելէն ետքն այլ և այլ անգամ ընդունայն փորձերով, վերջապէս այ[...] տարի դարձեալ զխաւարապէս Բրիմ[...] զօրավարին գործոյն շարժիչ ըլլալովը[...] բովանդակ ազգութեամբ և քաղաքա[...] բողոքեց Պորպոնեանց ցեղին թոյլ ու[...] յետամնաց կառավարութեան կերպին դէմ, և դրած պահանջողական պայման֊ներովը ստիպեց զԹագուհին հեռանա֊լու իր գահէն և օտար երկիր պան֊դըխտելու. ամենայն գլխաւոր քաղա֊քաց համար առ ժամանակեայ խնա֊մատարութեան վարչութիւններ հաս֊տատեց, և որ զարմանալին է Սպանիոյ համար և անշուշտ ցաւալին՝ իր հին և աստուածեանն նախանձաւորութիւ֊նը մոռնալով, ամենայն կրօնից համար֊ձակ ազատութիւն տուաւ, և արդ հե֊տամուտ է արդի քաղաքականութեան կամացն համեմատ վերստին նոր սահ֊մանադրութիւն մը հաստատելու, համ֊դերձ նորընտիր պայազատութեամբ թագաւորական գահուն։

Ի վերջոյ դնենք հոս Ֆերտինանտո֊սէն և Իզապէլլայէն ետև Սպանիոյ գա֊հակալող թագաւորաց անունները։

Գաստիլիա

Իզապէլլա . . . . . . 1474–1504

Արակոնա

Ֆերտինանտոս Ուղղափառ. 1479–1516
Խնամակալ Գաստիլիոյ 1504էն մինչև 'ի յունիս 1506 սեպտեմբերէ 1506 մինչև իր մահը։

Ազգատոհմ Աւստրիոյ

Փիլիպպոս Ա. Գեղեցիկ, փեսայ Իզա֊պէլլայի. իրապէս իշխանութիւնը 1506ին ձեռք ձգեց և իրեք ամիս ետքը մեռաւ։

Կարոլոս Ա. (Կարոլոս Հինգերորդ) իր հաւուն Ֆերտինանտոսի խնամակալու֊թեանը ներքև, – 1506 – 1516։ Կը թա֊գաւորէ միայն Սպանիոյ վրայ 1516ին.

Ստորին — Նահանգաց գահէն կը հրաժա֊րի 1555ին և Սպանիոյ թագէն 1556ին։

Փիլիպպոս Բ. . . . . . 1556–1598
Փիլիպպոս Գ. . . . . . 1598–1621
Փիլիպպոս Դ. . . . . . 1621–1665
Կարոլոս Բ. . . . . . 1665–1700

Ազգատոհմ Պուրպոնի

Փիլիպպոս Ե. . . . . . . . 1700
Կը հրաժարի . . . . . . . 1724
Լուդովիկոս Ա. . . . . . . . 1724
Փիլիպպոս Ե. երկր. անգամ. 1724–1746
Ֆերտինանտոս Զ. . . . . 1746–1759
Կարոլոս Գ. . . . . . . 1759–1788

Կարոլոս Դ. . . . . . . .
Կը հրաժարի. . . . . . . 1808
Փերտինանտոս Է, թագաւոր հրատարակեալ 1808ին և գրեթէ իսկոյն հրաժարելու ստիպեալ։
Յովսէփ Պոնապարդ . . 1808-1813
Փերտինանտոս Է, դարձեալ աթոռը կ'ելլէ . . . . 1813-1833
Իզապելլա Բ. 1833. կ'ամուսնանայ 1846ին մօրաքեռորդւոյն Տոն Ֆրանսուայի հետ. կը ստիպուի դահէն հեռանալու 1868ին։

---

## Ի ԾՆՈՒՆԴ ՏԵԱՌՆ

Որպէս խարակ ի ծագաց
Բարձու լերին առապար
Անկեալ թափով դղրդման
Թաւալագլոր սըրավար,
Դ'ոլորտապտոյտ ափափայս
Ճախր ի հովիտըն յորսայս
Առեալ՝ մըլսի եւ մընայ.

Անդ ուր անկաւն անյարիր
կայ ծանրաբեռն յիւր կուտակ.
Եւ ոչ դարուց ի շըրջել
Ի վաղեմին անդր ի ծագ
Տեսանէ զակն արեւու,
Թէ զօրութիւն ձեռըստու
Ոչ վերառնուլ զինք ջանայ.

Սապէս անկեալ որդին հէք
կայր յանցանացն առաջին,
Յօրէ յորմէ խոստացեալ
Յաւուրն անճառ, դառնագին
Արկ զինքն յաղէտըս ցաւոց,
Ուստի զիւրըն խրոխտ պարանոց
Չմարթէր այլ եւըս կանգնել։

Ո՛վ յառեալ ծընելեաց,
Ո՞վ ոք ուրեք էր կարող
Ասել առ Սուրբըն սըրբոց
Յանմատչելին՝ Ներեա, թող.
Կըռել նոր դաշն յաւիտեան,
Եւ զդըժոխոց յաղթական
Առնուլ զաւարն և կորզել։

Ահա Մանուկ մեզ ծընաւ
Ահա տըւաւ մեզ Որդի.
Դողան ոսոխ զօրութիւնք
Շարժման յունիցն առ ահի.
Նա զձեռն առ մարդ կարկառէ,
Որ ողջացեալ և յառնէ
Քան ըզնախկին փառաւոր։

Յեթերական կայենից
Բըղխէ աղբիւր վայրիջեալ
Ընդ ապալերըս փըշոց
Կենդանացայտ ծաւալեալ.
Կողերք ըզմեղըր ծորեն
Եւ տատասկաց փոխարէն
Փըթթի ծաղիկ անդանօր։

Ո՛վ Դու Որդի էակից
Մըշտընջենին, միշտ իւրեւ,
Ո՞ր դար կարէ քեզ ասել
Ըսկիզբըն եղեւ քո ինեւ.
Որ եւդ յերկնից լայնատիռ
Անպարագիծ դու ի ծիր,
Զոր բանք քոյին ըստեղծին.

Եւ Դու զգենուլ յանձն առեր
Հողազանգուած զայս մարմին.
Զի՞նչ արժանիք, ո՞ր շընորհ
Յայսքան պատիւ զնա հանին.
Թէ ի խորհուրդս իւր թաքուն
Յաղթող գտանի թողութիւն,
Անհուն է յոյժ գութ Նորին։

Ծընաւ Նա՛ յաօր. յեփրաթա
Ի Նըկատեալ անդ տեղին
Կոյս ոք վեհազն եւ գըննաց
Իսրայելի փառք տոհմին,
Յըղի որդւով այնպիսեաւ.
'Ստ իւրոց խոստմանց Նա ծընաւ
Յորմէ սպասեալն էր՝ եկաց։

ԶԱստուածորդւոյն մայրն անճառ
Պատեաց ի կուսական գրկում,
Եւ ի մսուրն աղքատին
Մեղմագորով եդ հանգոյց.
Եւ, երանի՛, գետնամած
Երկիր եպագ առ Աստուած՝
Զոր սուրբ արգանդ իւր եբաց։

Հրեշտակ յերկնից առ մարդիկ
Աւետաւոր բաստիս այս,
Ոչ հզօրաց սաւառնի
Պաշտպանական անդր ի կայս.
Այլ յերկիւղած մէջ հովուաց,
Խիստ աշխարհի անգիտաց,
Լուսապայծառ երեւի։

Զօրով ընդ ցայգըն ծաւալ
Երամովին շուրջ գալով
Բիւր գունդք զուարթնոց փարեցան
Հրացայտ թեւքն յածելով.
Եւ վառ յեռանդն հեշտային
Փառս առ Աստուած երգեցին
Որպէս յերկինս անդ երգի։

Կըրկնեցին զերգն հրճուական
Դարձ արարեալ ի բարձունս.
Ընդ անցեալ ամպովըն փեռեկ
Վերհամբարձաւ եւ յանհունս
Ձայնն հեռացաւ սըրբանուէր,
Մինչ զի ոչ եւս այլ լըսէր
Դասակ հովուացն երջանիկ։

Փութանակի ի խընդիր
Օթեւանին այն հէքի
Ելին նոքա եւ տեսին
՚Ըստ ասացելոյն օրինի.
Խանձարրապատ անդ տեսին
Տղաւարեալ ի մըսրին
Ծըչել զերկնիցն արքայիկ։

Նընջեա՛ Որդեակ, եւ մի՛ լար,
Նընջեա՛ Զաւակդ երկնաւոր.
Ոչ իշխեսցեն ըզգըլխովդ
Շաչել մըրրիկք ահաւոր.
Կազմք յամբարիշտ ի յերկրի,
Հանգոյն ձիոց ի մարտի,
Վաղել քոյին յանդիման։

Նընջեա՛ ո՛վ Դու Երկնային.
Ազգք եւ ազինք ոչ գիտեն
Ո՛վ ոք ծընաւ. այլ ընդ փոյթ
Վեհ ըստացուած քո լիցին.
Եւ զԹագաւոր իմասցին
Անդ ի խոնարհ հանգըստին
Եւ ընդ հողով ծածկութեան։

Ալ. Մանզոնի.

ԹԱՐԳՄ. Հ. Դ. ՆԱԶԱՐԵԹԵԱՆ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

## ԲԱՐՈՅԱԿԱՆՔ



## ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ



### Ազգային սովորութիւն.



## ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ



## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ



### Առակ.



### Վիպասանութիւն



## ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ



### Սովորութիւն



## ԲՆԱՊԱՏՄԱԿԱՆՔ



### Բնականք



## ՃԱՐՏԱՐՈՒԹԻՒՆ, ԱՐՈՒԵՍՏՔ



## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԴԷՊՔ



### Մանր գիտելիք և Հետաքրքրականք



ՎԵՆԵՏԻԿ Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

